ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ

ՍՈՒՐԲ ԵՓՐԵՄ

ՍՐԲՈՅՆ

# ԵՓՐԵՄԻ

## ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

---

### ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՐԱՐԱԾՈՑ ԵԼԻՑ ՂԵՒՏԱՑՒՈՑ ԹՈՒՈՑ
ՕՐԻՆԱՑ ՅԵՍՈՒԱՑ ԴԱՏԱՒՈՐԱՑ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ ԵՒ ՄՆԱՑՈՐԴԱՑ






## Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

---

ՅԱՄԻ 1836 ՌՄՁԵ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Նշխարս 'ի ճոխ վարդապետութեանց մեծին Եփրեմի ասորւոյ վարդապետին 'ի հայերէնասէր բարեպաշտիցն պահեալ անկորուստ եւ աւանդեալ փափագողացս պայծառութեան լեզուիս եւ դպրութեանս հարստութեան, տամք աւետիկ 'ի վայելս հասարակաց. իբրեւ զի եւ սա մի է 'ի պատուական վաստակոց նախնեացն մերոց երանաշնորհ Թարգմանչաց: Որոց 'ի սեամն անդ ծաղկելոյ հայ դպրութեանս զցանկալի ցանկալի մատեանս զառ 'ի սրբոց հարցն անշիջ աւանդս եկեղեցւոյ ամփոփեալ յամենայն ուստեք հայերէնախօս բարբառովք թողին մեզ որդւոցս 'ի զբօսանս հոգեւոր ջանից. մեծաւ իմաստութեամբ կըշռեալ թէ քան զամենայն բանս մեծահանճար իմաստնոցն ըստ աշխարհի, յորոց եւ չերկեան անճաշակք, սաքա 'ի վեր են եւ պատուով եւ շահաւէտութեամբն: Նմին իրի այն ինչ յաղագս իւրաքանչիւր Յունաց եւ Ասորւոց հռչակ հարկանէին սրբոցն բանք, ոճն սքանչելի պերճախօսութեամբն եւ միւսն նուրբ եւ հոգեբուղխ քաղցրութեամբ եւ այլք այլօրինակ, անդէն 'ի սուղ ժամու եւ հայեցի խօսիւք լսելի եղեն յաշխարհս մեր: Յորս նորատեսիլ իմն հանդիսացաւ սուրբ Հայրս մեր. ոչ այնքան 'ի վարժոցս հպատակեալ կանոնագրութեանց հանճարոյ մարդկան, քան թէ 'ի

չնորհաց Հոգւոյն սքանչելեօք հմուտ գտեալ խորոցն Աստուծոյ. արդարեւ քարոզ աստուածային օրինաց եւ քաջածանօթ ամենայն շարժմանց սրտի դիւրասաց մարդոյս: Նմին իրի այլ շաւիղ յայլոցն կալեալ 'ի տիպս բանից իւրոց, 'ի վեր քան զբազումս 'ի նոցանէ երեւեցաւ խիտ առ խիտ անակնկալ խելամտութեամբք եւ սուր իմաստիւք: Ի խրատականսն քաղցրախօս եւ որպէս հայր յաղէտս որդւոց կարեկից, եւ 'ի վարդապետութեան սքանչելի նրբութեամբ հանճարոյն զէն անպարտելի ողջամտաց ժամանակին եւ սուր երկսայրի այլանձայն բարբանջելոցն: Այլ նախանձելի օրինակ է նա ամենեցուն յորժամ զմայլեալ սիրով աստուածեղէն տաւիղն սլանայ մտօք 'ի բարձունս վառեալ 'ի սէր արարչին. մանաւանդ ուր առաքելականն նման 'ի յուշ գայ իղձն եռանդուն երանելի ժամուն ընդ փրկչին միանալոյ: Այս առհա կարգք բանից սրբոյ վարդապետիս եւ չափ ներանձնացեալ ոգւոյն:

Պանդաղիմք մի առ մի բան ճառել զմատենից սրբոյ Հօրս զոր 'ի չորեսին հատորս բովանդակեցաք. զի պատկառելի անունն եւեթ Հօր բանիցս գովութիւն է ինքնին խօսիցն, եւ տրիտուր քրտնաջան մերոց վաստակոց: Այլ միայն տացուք համար կարճ 'ի կարճոյ գրչագիր օրինակացն, յորոց զբովանդակութիւնս զայս արարաք:

ՄԵԿՆՈՒԹԵԱՆՆ ԱՐԱՐԱԾՈՑ մինչեւ ցՄՆԱՑՈՐԴՍԸՆ մի եւեթ օրինակ գոյր 'ի ձեռին մերում. այլ բոլորագիր էր ընտիր, գրեալ 'ի ՉԽԸ թուականիս. եւ գործ ճարտար գրչի:

Բայց մեկնութեանն Յեսուայ, Դատաւորաց եւ

Թագաւորութեանց կայր եւ երկրորդ օրինակ նոյնպէս բոլորագիր, գրեալ յերեքտասաներորդ դարու առ ժամանակօք Ստեփաննոսի ուռպելեան. համապատիւ Թերեւս կալեալ էր մեր զսա ընդ առաջնոյ օրինակին, եթէ բաց 'ի մարդկօրէն վրիպակաց, որ անխտրշելի են իսպառ, չէին զեղչեալ 'ի նմա ուրեք ուրեք եւ մեծամեծ հատուածք բանից։ Սակայն ուր կարեւոր այլեւայլութիւնք ընթերցուածոց կային 'ի նմա, 'ի ստորեւ իջեցն նշանակեցան։

Մ՝ԵԿՆՈՒԹԻՒՆ ՀԱՄԱԲԱՐԲԱՌ ԶՈՐԻՑ ԱՒԵՏԱՐԱՆՉԱՑ ԵՒ ԶՈՐԵՔԻՆ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՃԱՌՔՆ. գրեալ 'ի Հաղբատ 'ի Թուիս ՈԽԴ. բոլորագիր անհարթ, այլ ոչ Թերի յերկիւղած հաւատարմութենէ գրչին։ Ի յիշատակարանին Նշանիս ոմն վարդապետ յիշատակեալ զորմէ չունիմ ասել հաւաքող մատենիս իցէ արդեօք եթէ Թարգմանիչն. գովութեամբ խօսի գրիչն վնմանէ՝ Թէ "Որպէս աւանդ հայրենի յաղագս որդւոց յառաջապահեստ արարեալ գանձեալ եւ եդեալ սուրբ եւ արդիւնակատար վարդապետ ոմն Նշանիս ժառանգողաց տանս Հաղբատայ եւ 'ի լուսաւորութիւն հանուրց աշխարհի"։ Ի սմին մատենի զկնի աւետարանական ճառիցն գրեալ էին 'ի նոյն գրչէ եւ երեքին ճառքն, յԵնովք եւ յԵղիա, վասն երաշտի եւ վաշխառուաց, եւ առ Յովսէփ. զորս 'ի հատոր ճառիցն խառնեցաք 'ի տպագրութեանս, անխառն զաւետարանական մեկնութիւնս բանից յայլոցն կալեալ։

Մ՝օտ 'ի վախճան տպագրութեան մեկնութեան աւետարանիս եհաս առ մեզ 'ի բարեպաշտէ ումեմնէ եւ միւս եւս օրինակ բուն մատանց գիր աստուածա-

բեալ հայրապետին սրբոյ Ներսեսի Լամբրոնացւոյ։ Բայց 'ի մատենիս յայսմիկ արտաքոյ մեկնութեանն առաջին եւեթ գոյր 'ի չորից աւետարանական ճառիցն այսու վերնագրաւս Ընդդէմ Մարկիոնի որ ասէ ոչ ի մեռե-նոց. եւ մեկնութիւն յաստակս աւետարանչացն. եւ 'ի վախճան գալստեանն փեսային. այն, որ 'ի մերում օրինակի եդեալ է Խորհրդածութիւն աւետարանին։ Օ յիշատակարան ցանկալի մատենիս ինքն երանելին արձանագրէ զայս օրինակ.

ՓԱՌՔ ԵՒ ԳՈՀՈՒԹԻՒՆ ՆՄԱ, ՈՐ ՍԿԻԶԲՆ Է ԵՒ ԿԱՏԱՐԱԾ,
Ի ՆՒԱՍՏ ՎԱՍՏԱԿԱՒՈՐԷ ՆԵՐՍԻՍԷ։

ՏԱՌԱՊԵԱԼ ՆԵՐՍԵՍ, ՎՐԻՊԵԱԼ ՅԱՌԱՆՁԻՆՆ ԽՈՀՄԱՆԷ,
ՎԵՐԱԿԱՑՈՒԹԵԱՄԲ ՏԱՐՍՈՆԻ ՔԱՂԱՔԻՆ
ԵՒ ՈՐ Ի ՆՄԱ ՄԵԾԻ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ ՊԱՇՏԱՄԱՄԲ
ԶԲԱԽՍԱՆՍ ԻՄՈՅ ԶԲԱՂՄԱՆՑՆ ՍՏԱՑԱՅ ԶՎԱՍՏԱԿ
ԳՐՉՈՒԹԵԱՆ Ի ՄԱՏԵԱՆՍ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ
ԼԵԶՈՒԱՒ ԲԱԶՈՒՄ ԱՆԳԱՄ ԶՔԱՂԱՔԱԿԱՆՆ ԼՆԼՈՎ ՀՈՔՍ
ԵՒ ՀԻՒՍՄԱՄԲ ՁԵՌԻՆ ԵՒ ՄՏԱՑ ԱՍՏ ԴԵԳԵՐԵԼՈՎ
ԶԲՆԱԿԱՆՆ ԵՒ ԶԿՐԹԱԿԱՆՆ ԽՈՀՄԱՄԲ
ՅԱՍՏՈՒԱԾԱՅԻՆՍ ԿԵՐԱԿՐԵԼՈՎ ԶՈԳԻ։
Ո՜Հ Ո՜Հ. ԹԵՐԵՒՍ ԸՍՏ ՄԵԾ ՔՐԻՍՏՈՍԻ ԳԹՈՒԹԵԱՆՆ
ՊԱՏԱՀԵՑԱՅՑ Ի ԶԵՐԿՆԻՑ ԱՐՔԱՅՈՒԹԻՒՆՆ ԲՌՆԱԲԱՐՈՂԱՑ։

Ի ԹՈՒ՛ ՈԽԴ։

Պահեցաք աստէն զսա անթերի, համարեալ հնաւէր հայրենասիրացն ախորժելի գոլ։

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՉՈՐԵՔՏԱՍԱՆ ԹՂԹՈՑՆ ՊԱՒՂՈՍԻ. յորում զՓիլիմոնին իբրեւ զյայտնի ինչ եւ ամենեւին անկարօտ մեկնութեան թողեալ է 'ի բաց ինքն սուրբ վարդապետն, որպէս հաւաստեաւ իմն

կարծեմք. զի օրինակն անթերի է։ Նաեւ այս յայտ անտի է դարձեալ, զի զնոյն առնէ ստէպ 'ի բնաւ մեկնաբանութիւնս իւր, կարեւորագոյն եւեթ փոյթ կալեալ պարզել զիմացուած բանից. մանաւանդ յորս ինքն վարեալ իցէ 'ի խորս զաղտնեացն Աստուծոյ։ Ի կարգին խառնեալ է ընդ այլոցն եւ զԹուղթն առ Երրորդ Կորընթացիս. իբրեւ զի 'ի ժամանակին թերեւս գտանէր յօրինակս ինչ սուրբ գրոց յոյն կամ ասորի, որ ցարդ չերեւեցաւ ուրեք բաց 'ի Հայ թարգմանութենէն զոր ունին ամենայն գրչագիր օրինակք աստուածաշնչիցն մերոց. որ եւ դուցէ ընդունելի եւս կարծէր առ ոմանս յարեւելեայց. այլ առ մեզ ընդ անհարազատս դասեալ է, որպէս եւ առ Լատինս եւ առ Յոյնս։ Օրինակ մեկնութեան Թղթոցս գրեալ է 'ի թուին ՈԽԸ բոլորագիր հին 'ի ձեռն Սիմէոնի ուրումն վարդապետի, զոր նա ինքն գաղափարեալ է յայլ ստոյգ եւ 'ի հին օրինակէ իմեքէ յԱրծրունեաց գաւառի 'ի թագաւորութեան Գագկայ որդւոյ Աշոտի եւ 'ի կուրապաղատութեան Դաւթի։

Զմիահետ գրութիւն երից մատենից մեկնութեանցս բաժանեցաք 'ի գլուխս. զԹղթոցն ըստ գլխակարգութեան աստուածաշունչ գրոց. ընդ որում կարգ բանիցն անսայթաք միաբանէր. իսկ զայլսն բաժանեցաք որպէս եւ հաճոյ թուեցաւ ըստ յայտնի ինչ բանից կամ պատմութեանց։

ՃԱՌՔ ԵՒ ԱՂՕԹՔ։ Զաղօթիցն չմարթի ճշդիւ տալ զօրինակացն զհամար. զի ոչ միախուռն ամփոփ գտանէին եւ ոչ ժամանակք գրութեան նոցա երեւէին բաց յերկուց նոր օրինակաց գրելոց 'ի ՌՃԸ եւ ՌՃԴ։ Այլ զթիւ նոցա որ բազմաթիւ էին, եդաք 'ի

կարգին ։ Իսկ Ճառիցն որ մեծաւ մասամբ յայլ եւ այլ Ճառընտրաց հաւաքեցան որ առ մեզ եւ որ այլուր, այսոքիկ են օրինակք ։

Ա. Ճառընտիր բոլորագիր. գրեալ 'ի ՈՀԳ Թը-ւին. որ Թէպէտ եւ անզերծ է 'ի մարդկօրէն վրիպակաց, այլ գրչին փայլէ 'ի նմա հաւատարմութիւն ։

Բ. Ճառ. երկաթագիր անթուական, հարազատ եւ ընտիր գրութիւն ։ Զսա կալաք մեզ օրինակ յամենայնի որչափ ինչ գտանի 'ի նմա 'ի Ճառիցն Եփրեմի, զոր եւ կոչեցաք Հնագոյն օրինակ. եւ ուր Թերթք ինչ պակասէին առ հնութեանն, նշանակեցաք 'ի կարգին, յայլոցն միաբանութենէ զԹերթն լրացուցեալ ։

Գ. Ճառ. Նօտարագիր ձեւով գրեալ 'ի ՌՁՋ. որ Թէ եւ ըստ ընդհանուր տեսութեան Ճառից իւրաքանչիւր հաւատարիմ Թուիցի, զի չերեւին 'ի նմա ըստ կամս յաւելուածք, այլ ոչ հարազատ եւ երկիւղած է 'ի դարձուածս բանից հարց լեզուիս. զի ստէպ նշմարին 'ի նմա կամաւոր նոր խանգարմունք. գրչին ախորժեալ անշուշտ եւ դաւեհկաց անգամ ժամանակին իմանալի առնել զբանն ։ Սակաւք էին 'ի սմա յեփրեմեան Ճառիցն որ յայլմն չերեւէին ։

Դ. Ճառ. բոլորագիր անթուական. ըստ հարազատութեանն կերպակարծ, եւ գրչին վրիպակք 'ի նմա ոչ սակաւք ։

Ե. Ճառ. բոլորագիր 'ի ՈԿԴ Թուականիս գրեալ. ընտիր եւ հարազատ, եւ անխորշելի վրիպակք 'ի նմա յոյժ սակաւք ։

Զ. Ճառ. բոլորագիր գրեալ 'ի ՊԾԱ. գործ անհըմուտ գրչի եւ ըստ ամենայն բանի Թերութեամբք լի ։

ԺԲ. Ճառ. գաղափարեալ է 'ի Ճառընտրէն որ կայ

'ի սուրբ Կարապետի վանս 'ի Կեսարիա ։

ԺԳ. Λ. բոլորագիր հին, գրեալ առ ժամանակօք առաջնոյ Հեթմոյ Թագաւորին կիլիկեցւոց. որ եթէ հնութեամբն ոչ, սակայն պատուականութեամբն եւ հարազատութեամբն հաւասարապատիւ իցէ արդեօք ընդ Բ. Ճառընտրին ։

ԺԵ. Λ. գաղափարեալ է 'ի Ճառընտրէն որ պահի 'ի վանս Գաղատիոյ ։

ԺԸ. Λ. բոլորագիր անթուական. գործ Ճարտար գրչի, այլ անզերծ 'ի վրիպակաց. եւ ուրեք ուրեք զեղչեալ ։

ԺԹ. Λ. երկաթագիր անթուական. մատեան ցանկալի հնութեամբն եւ հարազատութեամբն ։

ԺԸ. Ոսկեփոր բոլորագիր անթուական. հաւաքող մատենիս է Մովսէս վարդապետ ոմն եզնկացի, եւ գրիչն Մխիթար ոմն. այլ նորա թէ գրչին, չունիմ ասել, անցանէ ըստ չափ անհաւատարմութիւն, ստէպ կցկցելով 'ի խելաց կարկատուն հատուածս, եւ զնոյն զմի Ճառն բաժանելով յայլ եւ այլ Ճառս զանազան վերնագրով. իսկ զեղչել եւ ոչ բնաւ ։

ԽԴ. եւ ԽԵ. գրչագիրք Փարիզու. են երկու Ճառընտիրք անթուականք. առաջինն երկաթագիր, իսկ երկրորդն բոլորագիր գրեալ 'ի ժամանակս կիլիկեցւոց. եւ պահին յարքունի գրանոցին Փարիզու ։

Արդ յօրինակացս աստի յամենայնի զհնագոյնս եւ զընտիրսն առաք մեզ առաջնորդ տպագրութեանս մերոյ. եւ զայլոցն զմիաբան ընթերցուածսն, եւ ըղտարաձայնսն իսկ՝ ուր կարեւոր հմտութիւնք կային լեզուիս, եդաք զամենայնն զգուշեաւ 'ի ստորեւսն. սակաւ ուրեք հետեւեալ այլոց զհնագունիցն առաք 'ի

խոնարհ, ուր մարդկօրէն վրիպակք կարծեցան 'ի մէնջ, կամ վասն այլ ինչ բանի: Յորս եթէ թերի գտեալ իցեմք ճշդիւ դատաստան առնել, ցանկամք ներողամիտ քննաքանութեան հմտից հանդիպել:

Ի ճառից աստի ոմանք թերակատար երեւին, մանաւանդ որոց յոյն եւ կամ ասորի բնագիրն ամբողջ կան. եւ ոմանք եւս հատուածոյք զոր յաւարտ տպագրութեանս ամփոփեցաք. որոց լրութիւնն 'ի հայրենասէր բարեպաշտից խնդրի անձկանօք եւ երախտապարտ գոհութեամբ:

Զայս ամենայն քրտնաջան երկամբք 'ի յաճախաբան մատենագրութեանց սրբոյ վարդապետիս հաւաքեցաք, զորս գտաք զերծեալս 'ի բազմածախ ժանեաց ժամանակին: Բայց ոչ եթէ 'ի սոսին եւեթ սահմանին բանք նորա. զի են եւ այլ բազում մատեանք սրբոյ Հօրս 'ի յոյն եւ յասորի բարբառս, որ տակաւին չգտան 'ի մեզ: Իցեն եւ 'ի մերոց աստի ոչ սակաւք, որ թերի են առ նոսա. որով եւ դպրութեանս մերոյ յաճախեն պարծանք առ այլս ազգաց:

Կան 'ի բազում ճառընտիրս եւ այլ ճառք յանուն Եփրեմի ոչ անծանօթք հնախոյզ ուսումնասիրաց. այլ զնոցանէ տեսցեն փափագողք 'ի մատենագրութեան Յովհաննու մանդակունւոյ, որ ընդ հուպ ելցէ 'ի լոյս:

## ՏԵԱՌՆ

# ԵՓՐԵՄԻ

## ԽՈՐԻՆ ԱՍՈՐԻՈՑ

## ՏԵՍՈՒԹԻՒՆ

## ՅԱՂԱԳՍ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ԱՐԱՐԱԾՈՑ

### ԳԼՈՒԽ Ա

«ՍԿԶԲԱՆՆ հաստատեաց Աստուած զհաստատութիւն երկնից և զհաստատութիւն երկրի»: Քանզի վասն այսորիկ փոյթ եղև Մովսիսի՝ ՚ի ձեռն յայտնութեան Հոգւոյն օրինակագրութիւն Ճշմարտութեան ընդդէմ մոլորութեան կռապաշտութեանն առնել, որք զարարածս արարիչ կարծէին լինել, սկսաւ ուսուցանել՝ թէ է և գոյ արարիչ և հաստիչ աշխարհիս այսորիկ. և մի է Աստուած որ իսկն էր, և կարաց առնել զամենայն յոչընչէ. ՚ի ձեռն այնորիկ ասաց Մովսէս, զի հաւանեցուսցէ և հաճէ՝ թէ ամենայն ինչ արարածք են: Եւ վասն դիցն զի կարծէին թէ ինքնութիւնք էին ՚ի միտս պաշտօնէից իւրեանց, զի յայտ արասցէ թէ և նոքա արարածք են: Եւ սկսաւ ասել. իբրև ոչ ինչ էր ուրեք, խորհեցաւ Աստուած ՚ի կամս բարերարութեան իւրոյ, այն որ ոչն նորոգի ՚ի գիտութեան իւրում, առնել զտունս զայս զերկինս և զերկիր՝ որ ամենայն ինչ փակեալ էր ընդ նովաւ. զի ոչ եղև և ոչ ական թարթափել ՚ի բանալ արտևանացն՝ սկիզբն առնէ պատուէրն հրամանին. և յական թօթափել ՚ի ձեռն հրամանի կատարեցան գործք: Եւ եղիցի վկայ մեզ Մովսէս, որ ՚ի ձեռն յայտնու-

թեանցն ակնարկէ վասն ծածկութ̃եցն· զի 'ի կողմն յոր կոյս և խոնարհին ձեռք, որ է որդի, նոյն ժամայն կատարէր գործն ։ Զի եթէ 'ի ձեռն թոթով ծանրախօսին փութացեալ հաստատեցաւ ակնարկել կամաց իւրոց, զի մի շփոթումն արասցէ և կասեսցէ, ո՛րչափ ևս առաւել 'ի ձեռն միածնին իւրոյ կատարէր ։ Սոյնպէս և 'ի ժամանակի անդ ապականութեան ։

“Երկիր, ասէ, էր թոհ և բոհ„· յայտ արար թէ անպատրաստ էր ցայնժամ և ամայի ։ Յայտ առնէ բանն, զի յառաջագոյն է լինել երկրին քան զջուրցն որ 'ի վերայ նորա· վասն այսորիկ՝ յետ այնորիկ զի ասէ “եղև„, ասաց “Ամայի էր և անպատրաստ„ ։ “Երկիր, ասէ, թոհ և բոհ„· Յոյնն ասէ “Աներևոյթ և անպատրաստ„· զի ջուրք տարածեալ էին 'ի վերայ նորա· և զի երկիր յառաջ էր քան զջուրն, և անապատ էր և ամայի, զոր յայտնէ բանն· և ծածկեալ էր 'ի ջրոց ։ Եւ ապա պատմեաց վասն խաւարին որ 'ի վերայ· զջուրցն ասէ որ 'ի վերայ նորա, զի չև էին ժողովեալ 'ի մի կողմն· զի չև ևս էր ծագեալ 'ի վերայ լոյս, աներևոյթ զայն ասէ· իսկ անպատրաստ դարձեալ, զի բազմութ̃ի ջուրց արգել և խափան էր սերմանեաց և տնկոց· և զի ոչ ևս ցայնժամ առեալ հրաման լինել ծնանել, վասն այսորիկ աներևոյթ և անպատրաստ ։

Իսկ զի ասէ “Խաւար ևս էր 'ի վերայ անդնդոց„· զի 'ի մէջ երկնից և անդնդոց որ 'ի վերայ երկրի՝ տեղի էր բացատ զօդն արգելեալ, և զմթինն որ 'ի մէջ նոցա՝ ասաց խաւար· այն զի բնութ̃ի և արմատ չիք նորա· իբրև ոք զի շինիցէ տուն առանց պատուհանից ։ Արդ 'ի վերայ անդնդոց ասաց· զի ցուցցէ թէ 'ի մէջ երկնից և անդնդոց խաւար էր· զի չև ևս էր հաստատեալ լոյսն երևեցուցիչ բնութ̃եց այնոցիկ՝ որ ոչ կարացին երևեցուցանել զանձինս իւրեանց առանց լուսաւորի ։ Այլ դարձեալ ասասցուք· զի եթէ հաստատութ̃ի սոցա հաստատեալ էր յաւուրն առաջնում, նման էր այս յասել՝ թէ խաւար ստուեր է երկնից· և եթէ 'ի մէջ երկնից վերնոց և ներքնոց լոյս է, որպէս գիրք վկայեն· և յաւուրն երկրորդի

եղև այս հաստատութիւնս՝ ահաւասիկ յայտ է. զի խաւարն որ յաւուրն առաջնումն գրէ թէ եղև, ոչ ստուեր է այս հաստատութեանս. յետ հաստատելոյն հաստատութիւն յաւուրն երկրորդում՝ պաշտեաց ստուեր նորա զգիշերսն որ զկնի անց, այլ նման ներ[illegible] զի յաւուրն առաջնում ընդ հաստատել անդընդոցն՝ հաստատեցան և ամպք, և 'ի ստուերաց անտի ամպոցն հաստատեցաւ խաւար: "Ամպ մի փոքրիկ, ասէ, ելանէր 'ի ծովէ,,: Եւ դարձեալ. "Իմաստութեամբ իւրով պատառեցան անդունդք, և ամպք ցաղեցին,,: Այլ հեբրայեցին փոխանակ այնր զի ասէ թոխ և բոխ, խոր և խաւար ասէ, և խաւար ունէր 'ի վերայ խորոց:

Եւ զի ասէ "Հոգի Աստուծոյ շրջէր և գրգայր 'ի վերայ ջուրց,,. կամ զի թէ և 'ի կազմութենէ թերի էին, և 'ի ձեռն գրգելոյն կատարեալ լինէին. զի 'ի ձեռն շարժմանն որ 'ի շնչելոյ անտի՝ զօրութեամբ կենդանութեամբ իւրեանց ստանային. այլ զի և այսօր իսկ գթայ և գրգէ 'ի վերայ արարածոց, որպէս զի ոգի ամենայնի 'ի նմա կախեալ կայ. զի եթէ ոչ առնու 'ի նմանէ շունչս այս, որ փչեալ է 'ի մեզ, և հանգչէ յայն 'ի գիգիչն՝ հեղձնուս: Կամ յասել իւրում վասն ջուրցն և խաւարին որ 'ի վերայ նոցա, ետ խորհուրդ տկար մարդկան՝ իբրև նկարէ նոցա զխորհուրդ աւազանին մկրտութեան, զի սրբելոց էր նա 'ի գթութեամբ գրգելոյ Հոգւոյն սրբոյ: Քանզի զարարչութեան Աստուծոյ պատմէր, ոչ եթէ արարած յայտ արար ընդ նմա 'ի վերայ ջուրցն որ գրգայր, այլ վասն Հոգւոյն սրբոյ յայտ արար. իբր Հայր ասէր, Որդի գործէր, Հոգին գրգէր և գթայր: Եւ զի կոչեաց զլոյսն տիւ և զխաւարն գիշեր, ինքն իսկ օրն զգենու զամենայն զգոյնս և զամենայն համ և զհոտ. 'ի տուէ 'ի ձեռն լուսոյն սպիտականայ, և 'ի գիշերի 'ի ձեռն խաւարին թխանայ. որպէս բորբոքի հուրն 'ի շնչոյ և շիջանի, և որպէս դառնան ջուրք 'ի կարկուտ և 'ի ձիւն և 'ի սառն, և որթն դառնայ 'ի գինի և լմնանայ:

Յաւուրն երկրորդի մեկնեցան ջուրքն, որ էին 'ի վերոյ քան զհաստատութիւնս, 'ի ջուրց անտի՝ որ 'ի

ներքոյ հաստատութեան : Լուեալ և դադարեաց վա՛սն սկզբանն հաստատելոյ ջուրցն . փոխանակ զի համդերձեալ էր զի 'ի նոցանէ ձգեսցէ հաստատութիւն 'ի մէջ նոցա , արար զնոսա հաստատութիւն : Յաւուրն երկրորդի ձգեաց պարզեաց զնա իբրև զխորան , իբրև զվրան . զի ցուցցէ՝ թէ ոչ տարապարտուց ինչ գըրգայր նա , այլ գրգելովն իւրով զլոյծ բնութիւն նոցա պնդէր : Զի զոր օրինակ անօթս այս որ արարեալ է իբրև խորան , բարձեալ ունի 'ի վերայ մկանանց իւրոց զջուրսն զայնոսիկ՝ որ բնութիւն նոցա կալ առանց շրջանակի կարակնի ոչ կարեն . զի կողմ որ զրկէ 'ի խոնարհել իւրում , անդր յաճախեն բազմանան զեղուլ : Արդ զայս զի գրեաց՝ եթէ մեկնեաց 'ի նոցանէ 'ի վերոյ քան զհաստատութիւն , յայտ արար զի ոչ եթէ բնութեամբ իւրեանց հաստատեալ կան , այլ 'ի զօրութիւն նորա կախեալ կան , և 'ի սքանչելիս հրամանի նորա զանձինս իւրեանց բարձեալ ունին . իբրև այն զի ասէ . "Հաստատեաց զերկիր 'ի վերայ ջուրց ,, . զի անջրպետեաց 'ի մէջ ջուրցն՝ որ 'ի վերոյ հաստատութեան էին , և 'ի մէջ ջուրցն՝ որ 'ի ներքոյ հաստատութեան : Եւ վկայեն վասն այսր ջուրք ծովուց , զի ելանեն մինչև յերկինս , որպէս և գրեալ է . և հասանեն մինչև առ աւազ , որպէս և երևին . և կարկեալ լինին 'ի ձեռն հրամանին , որպէս և ասացեալն վկայէ :

Յաւուրն երրորդի մեկնեցան ծովք յերկրէ . "Ժողովեսցին , ասէ , ջուրք 'ի ժողով մի ,, : Եւ քանզի յամենեցունց 'ի ներքոյ երկնից 'ի մի 'ի բոլոր անդր ժողովեցան , և աղբեւրք որ ծածկեալ էին 'ի մէջ ջուրցն՝ դարձեալ իբրև 'ի բարձանց 'ի միջոյ երկրի յորդեցան և հոսեցան իջին ջուրք 'ի ստորոտս նորա ուր ծովքն էին : Արդ երկուս ասեմք մեք . կամ նոքին իսկ դարձեալ ծովքն ընդարձակեցան անդորրեցան՝ զի բաւական իցեն ընդունել զայլ ջուրս , կամ զոր օրինակ ոչ ընուն ծովք այսօր , սոյնպէս և յայնժամ . և ահաւասիկ յաւուրս Նոյի հոսանք բացան յերկնից և առ ծովս ժողովեցան : Եւ եթէ 'ի վերոյ քան զլերինս յորդեցան ջուրք , իսկ արդ զիա՞րդ ժողովեցան 'ի մի կողմն , թէ ոչ Աստուծոյ հրամանաւն :

Թերեւս ասիցես, թէ հրամանն պատուիրանին նեղեաց զնոսա ։ Այլ ոչ եթէ զբռնութիւն հրամանին պահանջեցի ես 'ի քէն, այլ զբնութիւն ջուրցն. այլ ոչ եթէ 'ի ջուրցն արար զջուրս, այլ 'ի հրամանէ ։ Եւ զի մի նեխեսցին ջուրքն և եղիցին արարածք տառապեալ, յաղեաց զնոսա զի մի նեխեսցին. և միւս ևս, որչափ աղի են՝ ըմպեն և կլանեն զքաղցր ջուրսն որ իջանեն անդր. և թէ ոչ յաւելու, ահաւասիկ յորմէ հետէ հաստատեալ է աշխարհս՝ ընդունի և ոչ դադարէ, և ոչ երբէք երևեցաւ ։ Նա և այսպէս դարձեալ երևեցոյց զմեծութիւն զօրութեան իւրոյ 'ի լճածովս. զի և նոքա արգելեալ կան, և ոչ նեխին կամ զեռացուցանեն ինչ մի չար. և ոչ ջուրք նոցա աղի են. և ծովն զի աղի է՝ առնու ելանէ ջուրն աղի զջուրսն քաղցունս ։

Ի նմին իսկ յաւուր երրորդի պտուղք և ծառք երկրի ։ "Բղխեսցէ, ասէ, երկիր"։ Եւ յայսմիկ յայտ արար, զի իբրև 'ի տան գանձի ժողովեալ ամփոփեալ կային իրքն ։ Եւ քանզի յամուսնուէ ջուրցն բղխելոց էր ամենայն ինչ, նոքին իսկ ջուրքն գանձաւորք եղեն՝ գանձուցն երկրի. զի Հոգին գրգայր իբրև 'ի վերայ կենդանի իրաց 'ի վերայ ջուրցն, զի նոքին իսկ ջուրքն ծնցին զամենայն ինչ ըստ բնութեան իւրեանց. զի 'ի ջուրսն ծածկեալ թաքուցեալ էին ամենայն ինչ ։ "Երկիր, ասէ, աներևոյթ և անպատրաստ"։

Յաւուրն չորրորդի լուսաւորք երկնից ։ Այն լոյսն որ յառաջ էր քան զարեգակն երեքօրեայ ժամանակաւ՝ ոչ էր անփոփ և ժողովլ, այլ տարած և սփիռ էր ։ Յաւուրն չորրորդի արար նմա անօթս, և սփռումն տարածութեան նորա ամփոփեցաւ ժողովեցաւ յանօթն, որպէս պատրաստեցան նմա. բազմութիւն նորա յարեգակն, և սակաւութիւն նորա 'ի լուսին ։ Այլ նմին իսկ տարածելոյն՝ կարգս և սահմանս եդեալ էր նմա. զի յոր վայր կատարէր տիւն, տեղի առնէր գիշերոյն 'ի մտանելն իւրում. այլ ոչ կատարէ՝ թէ եղիցի լոյսն սփիռ տարած առանց տարեր ընչի, զի լոյսն շառայլք ինչ էին իբր 'ի հաստատութէ ընչէ. որպէս ոք զի ասիցէ, լուսաւոր է ոսկին, կամ լոյս ճրագի կամ արծաթոյն, զի 'ի նմին իսկ և

նա յանօթոյ եղիցի լոյս տալ։ Այլ Մովսէս գրեաց և ճշմարիտ է վկայութիւն նորա. և գործն քանի իւրում վկայէ՝ եթէ եղև լոյս։ Այլ դարձեալ, զի «Արար լուսաւորս մեծամեծս» ասէ. և յայնմիկ զի ասաց քայ «մեծամեծս», փոքրկացոյց զառաջինն. զի 'ի մեծութիւն նոցա ընկղմեցաւ առաջինն։ Այս դարձեալ մեծացուցանէ. «Լուսաւորն, ասէ, մեծ՝ իշխանական տուընջեան, և լուսաւորն փոքր՝ իշխանական գիշերոյ»։ Եւ եթէ փոքր և մթագոյն է յոյժ քան զարեգակն՝ մեծ կոչեաց զնա առ համեմատ առաջնոյն, որչափ եւս առաւել նուաղ լինէր քան զերկոսին, զի զկէս աւուրցն իւրն լոյսն պաշտեաց զերիս աւուրսն. և զի զկնի երից աւուրցն երևեցաւ արեգակն առակ օրինակի տեառն մերոյ. զի յետ երից աւուրց կենդանացաւ և յարեաւ 'ի դժոխոց։ Քանզի լուսինդ լի կատարեալ երևեցաւ յաւուրն՝ յորում հաստեցաւ. որպէս և Ադամ կատարեալ ստեղծաւ. զի յաւուրն չորրորդի եղեն լուսաւորք, և գտանին մետասան օր աւելի 'ի միջի։ Արդ մետասան աւուրքն առաջի, զի երեց էր լուսինն քան զարեգակն որ յաւելաւ լուսնի յամին առաջնում. սոքա են յամենայն ամի, զի յաւելուն նմա այնոքիկ որ շրջշրջին 'ի թիւ և 'ի համար լուսնի։

Յաւուրն հինգերորդի գազանք և թռչունք. «Բղխեսցէ, ասէ, ջուրք զեռուն կայտառ շնչոց կենդանի»։ Յետ կատարածի ստեղծեաց և զարդուն երկնից՝ լցան և ջուրքն շնչականօք և զարդարեցան, որպէս երկիր ծաղկօք և երկինք աստեղօք զարդարեցան։ Եւ զի թերի էր ջուրքն 'ի ծննդոց քան զերկինս և քան զերկիր, զի և նոքա 'ի միջոյ բնութեան իւրեանց իբրև 'ի տանէ գանձուց իւրեանց զարդարեցին, փութացոյց զնոսա պատուէր հրամանին, զի և ծով և գետք ամենեքեան իբրև յական թօթափել յղացան փութապէս՝ երագ երագ երկնեցին և ծնան թռչունս և գազանս պէսպէս. զի և ոչ խոնաւութիւն ջուրցն ամուլ ինչ եղեն յակնարկելոյ անտի հրամանին, յայնմիկ՝ զի և մժղուկ և ճանճիռն 'ի նմանէ ծնան. և այս այսր աւուրս, որ լինին քարոզ և վկայ առաջնոցն։ Փոյթ և տագնապ եղև 'ի ջուրս

և յիւրաքանչիւր 'ի ժողովս իւրեանց՝ թէ ո 'ի նոցանէ աւելի քան զընկեր իւր աճեցուցէ և բազմացուցէ զազգս և թռչունս առանց թուոց և առանց համարի։ Արդ թռչունք որ 'ի վերոյ են քան զջուրսն, և որ 'ի ներքոյ 'ի ջուրսն, թևք երագունք են նոցա. զի նոքօք 'ի վերայ օդոց փառաւորին. և նոքօք դարձեալ 'ի մէջ ջուրցն փափկանան։ Եւ զի մի արգելցի պատուէր հրամանի արարչին 'ի ներքոյ կարողութեանց, արար և զազգս բազումս 'ի ջուրս առանց թուոյ. զի և նոքա քարոզեսցեն զզօրութիւն արարչութեան նորա։ “Բղխեսցեն, ասէ, ջուրք զեռունս կայտառ շունչ կենդանի„։

Յաւուրն վեցերորդի Ադամ։ Եւ զի ասէ “Ըստ պատկերի կերպարանաց մերոց„, ըստ նմանութեան պատկերի կերպարանաց իշխանութեան ասէ. զի որպէս իշխանութիւն Աստուծոյ 'ի վերայ ամենայնի, սոյնպէս և տէրութիւն Ադամայ 'ի վերայ ամենայնի եղաւ։ Մեկնէ բանն որ զկնին ասաց. “Իշխեսցեն, ասէ, 'ի վերայ ձկանց ծովու, և զազանաց երկրի, և թռչնոց երկնից, և 'ի վերայ անասնոց, և 'ի վերայ ամենայն երկրի„։ Արդ արար զնա գլուխ և առաջնորդ խօսուն 'ի վերայ այնոցիկ՝ որ առանց բանից են. և զայն որ իմաստութեան գիտութիւն էր 'ի վերայ այնոցիկ՝ որ 'ի բնութիւն. զի նա վարիչ և առաջնորդ անձին իւրոյ լեալ էր, և իմաստութիւն անձնիշխանութեան իւրոյ եղև վարիչ այնոցիկ՝ որ յիւրեանց բնութիւն կացեալ են. յայսմիկ անուանեցաւ նա ըստ նմանութեան պատկերի կերպարանաց Աստուծոյ։ Եւ զի խստեղծուած ձեռաց Աստուծոյ կոչեցաւ, վասն պատուի փառաց մարդոյն ասաց. թէպէտ և 'ի պատմել գրոցն՝ ասաց թէ առ հող, և ստեղծ զնա։ Զի սովորութիւն է գրոց զկամելն Աստուծոյ՝ գործ ասել. որպէս այն զի ասէ, մարդ պատկեր Աստուծոյ է. ոչ զմնութիւն ասէ, այլ զիշխանութիւն ազատութեան նորա ասաց կերպարան. և որ զկնի ամենեցուն արար զնա, զի մի կարծիցէ մարդն թէ իւր իցէ արարչութիւնն։

Եւ զի 'ի վեց օր կատարեաց, զի յայտ արասցէ զառաջինն և զմիջինն և զվերջինն, և արասցէ կարգ

գործոց իւրոց, զի մի կարծիցի աշխարհս թէ չփութեալ է, և չիք ակնկալեալն և կատարած ։ Եւ զի ծանիցէ ոք թէ ո՛ր զինչ որո՛յ լինի․ և ո՛ր առաւել քան զընկեր իւր ։ Այլ կարող էր Աստուած 'ի մի ակնարկելն կատարել զամենայն․ զի որպէս արար վասն մեր, նոյնպէս հոգայ վասն մեր․ զի մի արկցէ զմեզ 'ի ծուփս խորհրդոց, արար կարգաւ ։ Եւ զի ասէ "Հանգեաւ յաւուրն եւթներորդի", վասն կատարմանն գործոյն ասէ հանգչել․ զի 'ի նմին իսկ յաւուրն շաբաթու կատարեցան գործքն, և հանգեաւ 'ի գործոց իւր, յայնմիկ զի ասէ "Ետես Աստուած զի բարի է յոյժ" ։ Եւ զի նկարեսցին դարձեալ 'ի նմա խորհուրդք ճըշմարիտ շաբաթուն՝ որ հանդերձեալ է լինել․ իբրու զայն զի ասէ, կայ և մնայ շաբաթն Աստուծոյ ։ Եւ զի մեծացուսցէ բանիւ զօրն շաբաթուն, զոր ոչ մեծացուցին զնա գործքն․ քանզի և եղեն իսկ ոչ 'ի նմա․ որպէս զի և վասն պատուոյ նորա լծիցի ընդ այլ աւուրսն՝ որ գործքն գործեցան․ և կատարեսցի թիւ շաբաթուն պաշտաման աշխարհիս ։

Արար զՄովսէս վկայ անձին իւրոյ Աստուած, և արար զարարածս ամենայն վկայ Մովսիսի․ զի յայլումն կարող էր ցուցանել զիշխանութիւն իւր որ 'ի վերայ նոցա 'ի հնազանդելն իւրում զնոսա այլում ։ Եւ զի վկայ լինելոց էր նա Աստուծոյ, ետ նմա զանուն Աստուծոյ և զիշխանութիւն Աստուծոյ․ զի վկայեսցէ Աստուած 'ի վերայ Աստուծոյ ։ Եւ քանզի ինքնին Աստուած կարող է վկայել 'ի վերայ անձին իւրոյ, զոր և ասէ "Բարի է յոյժ"․ իբրև զայն իսկ զբանս զայս մինչև 'ի Մովսէս ոք ոչ գիտէր, և ոչ զշաբաթն և ոչ զսրբութ̃ի նորին․ վասն այսորիկ վասն գեղոյ նոցա արարիչ նոցա վկայէ ։ Զի այն որ գիտէ դպրութ̃ի, ճանաչէ զինչ գրեալ է 'ի մէջ նորա․ նոյնպէս քանզի նա է արարիչ միայն, նա ինքնին գիտէ զինչ թաքեալ կայ յաշխարհի ։

Արդ բանիւ հաստեաց հաստիչն զարարածս․ վասն այսորիկ թագաւորեալ է բռնութ̃ի նորա 'ի վերայ ամենայն արարածոց, և հնազանդին տէրութեան նորա ամենայն ականջք 'ի լսել․ և ծառայեն գործոյն նորա ամենայն շրթունք 'ի պէսպէս բարբառս,

և ամենայն լեզուք պէսպէս ձայնիւք։ Զի եթէ զօրութ բանին արարածքն յոչընչէ հաստատեցին, որչափ ևս առաւել արդ զի հաստատեցան՝ ոչ առաւել ևս ունկնդիր լինիցին նմա. ածէ զնոսա յինչ յոր կամի, զայն՝ որ ած զնոսա յոչընչէ ըստ կամաց իւրոց։ Արդ զի տացէ իշխանութի բանին, ած զնա 'ի պէտս իւր արարչին. այն զի և 'ի լռութի նորա թաղեալ է զօրութի նորա, որպէս և 'ի ձայնի նորա. և հնազանդին արարածք լռութե նորա, որպէս և բանի նորա. և ակնարկելոյ նորա, որպէս և ձայնի նորա։ Արդ հաստատեաց զնոսա բանիւն, և ետ զնոսա 'ի ձեռն բանի. վասն այնորիկ իշխանութի ունի բանն համարձակութբ ելանել առ նոսա։ Այս ծնունդք են երկնի և երկրի։

Եւ զի ասեն եթէ յաւուրն եւթներորդի հաստատեցաւ Ադամ, յանդիմանեալ կշտամբին յայնմիկ զի ասէ, յաւուրն վեցերորդի կատարեցան երկինք և երկիր և ամենայն զօրութիւնք նորա. "Եւ կատարեաց Աստուած յաւուրն վեցերորդի զամենայն զգործըս իւր"։ Եւ զի յայտնապէս 'ի միտ առցես, հայեաց դու որպէս ասէ "Այս են ծնունդք երկնի և երկրի յաւուրն յորում հաստատեցան"։ Այս ինքն սկիզբն արարչութե իւրոյ պատմեաց. "Յաւուրն, ասէ, յորում արար Աստուած զերկինս և զերկիր"։ Ո՞ր օր. այլ այն առաջինն. յայսմ, ասէ, աւուրս ամենայն ծառք դաշտի չև ևս էին, քանզի յաւուրն երրորդի եղեն։ Եւ եթէ ոք ասիցէ թէ չև ևս էր բղխեալ երկիր 'ի ժամանակի իբրև ասացաւ նմա բղխել, ոչ ինչ է այս նման. քանզի յորժամ հրամայեցաւ նմա բղխել, գրեալ է, ասէ, բղխեաց։ Եւ Ադամ, ասէ, չև էր ձեռն 'ի գործ արկեալ յերկիր, այս ինքն յաւուրն առաջնում. այն զի 'ի նմա արար զերկինս և զերկիր. այն իսկ է զոր վերագոյն ասաց։ Եւ զի երկրորդեաց անդ և ասէ. "Ստեղծ Աստուած զԱդամ", յետ առաջնոյն այնորիկ զի ասաց վասն նորա՝ զի և սոքա ոչ էին 'ի նմա, զպատմութիւն երկրորդեաց երագ երագ 'ի վերայ վեցօրեայ ժամանակին։ Դարձեալ յաւելու յասելն. "Տնկեաց տէր Աստուած զդրախտն յԱդէն". մինչ կանխաւ՝ այս ինքն

յաւուրն երրորդի ընդ այլ ծառոցն, այն զի ասէ „Բղխեսցէ երկիր զամենայն ծառ պտղաբեր", յայնմ աւուր տնկեաց զԱդէն դրախտն:

Փիսոն յերկրէն Եւիլատայ: Թերեւս Եւիլաթն 'ի սահմանս Սեմայ է. բայց յոսկւոյ անտի եւ յականցն սուտակին եւ դահանակին Թերեւս մեկնեցի: Այլ հեբրայեցի ասէ „Անդ մարգարիտ եւ ականք պատուականք": Եւ փոխանակ այնր զի ասէ „Դկլաթ երթայ դէմ յանդիման Ասորեստանի", հեբրայեցի „յարեւելից կողմանէ, ասէ, Ասորեստանի":

„Ոչ է, ասէ, բարւոք զի եղիցի Ադամ միայն": Եւ ո՞ւր է այն զի ասէ „Ետես տէր Աստուած զամենայն զոր արար, եւ ահա բարի է յոյժ". եւ ընդէ՞ր ոչ է բարի, զի մինչ կանխաւ յառաջագոյն հաստեցաւն արու եւ էգ: Եւ զի ասէ „Արասցուք նմա օգնական ըստ նմանութեան պատկերի իւրոյ", ո՞չ արդեօք գիտէր եթէ կործանիչ լինի նմա փոխանակ օգնականի. թէ արդ այդպէս իցէ, բարւոք էր լինել նմա միայն. եւ զի՞արդ ասաց՝ ոչ բարւոք է. բայց թերեւս արդեւք 'ի դրախտի անդ եւս էր նա. զի նա եղեւ նմա պատճառք: Եւ ո՞ւր է այն զի ասէ՝ օգնական. այլ այս օգնականս զոր ասէ, վասն կանգնելոյ աշխարհիս արար զնա նմա: „Ոչ է բարւոք զի միայն եղիցի", վասն կարգաց ծննդեան ասաց, եւ վասն ազգացն որ զկնի նորա:

„Ադամայ, ասէ, ոչ գտաւ օգնական նման նմա": Ուստի՞ արդեւք խնդրեցաւ եւ ոչ գտաւ. եթէ ասեմք յԱստուծոյ, ոչ լաւ. այլ զի կոչեաց նա անուանս կենդանեաց. եւ ոչ եթէ վայրապար ինչ կամ դուզնաքար, այլ ըստ բնութեան եւ ըստ հաղորդութեանն եւ ըստ պիտոյից գործոց նոցա: Արդ իբրեւ անուանէր նա, ետես արու եւ էգ՝ իբրու զուգեալ էր միաբանութք. եւ նա միայն յատուկ էր. խնդրեաց նա իւր օգնական, եւ ոչ գտաւ: Արդ թէպէտ եւ օգնականք նորա էին եւ գազանք՝ զի նոքօք եգիտ նա զկանգնումն իւրոց բազմաց, այլ միւս եւս իբրեւ զի շնորհեցաւ գտանել իւր հաղորդակից արար զնա Աստուած արարչութեան, յայնմիկ՝ զի իշխան արար զնա դնել զանուանս, որպէս եւ ինքն հաստեաց զամենայնս. զի յոր-

ժամ կամեցի նա աստուածանալ՝ գողութիւն իւրով յանդիմանեալ կշտամբեցի և ամաչիցէ ։ Եւ լեալ իսկ էր ընկեր. եդ Աստուած անուանս ամենայն արարածոց, և զգազանսն Ադամայ պահեաց. զի 'ի գիտութենէ իմաստութ̅ե նորա ստասցին զյորջորջումն անուանց իբր զկենդանիս ։ Զի ահաւասիկ առանց անուանց իբր մեռեալք են տղայք և մանկունք. անուամբք կենդանանայ այնոցիկ որ կարդանն ։

"Եւ արկ, ասէ, նիրհ 'ի վերայ Ադամայ „. Եբրայեցի՝ քուն ասէ ։ Եւ զի ասէ " Առ ոսկր մի 'ի կողից նորա և շինեաց զայն 'ի պատկեր կնոջ „, զի սկիզբըն եղիցի աշխարհի. և զի 'ի նմանէ առ զնա, զի կատարեցի բանն զի ասէ. "Արու և էգ հաստատեաց զնոսա „. և զի մի ոք կարծեսցէ թէ այլ արարիչ է կնոջ ։ Եւ զի ոչ փչեաց նա շունչ յԵւայ, զի իբրև շինեաց զկողն՝ հանդերձ շնչով կազմեաց զնա. զի ոչ եթէ շունչ 'ի շնչոյ ծնանի՝ որպէս մարմինն 'ի մարմնոյ. "Ոսկր, ասէ, յոսկերաց իւրմէ „ ։ "Եւ եղիցին, ասէ, երկոքեան 'ի մարմին մի „ և ոչ շունչ ։ Այլ զայս ասասցուք. զի 'ի ժամանակին իբրև շինեաց յօդեաց զկողն, ամենայն պիտոյիւք կազմեաց զնա ։ Այլ դարձեալ ասասցուք. զի եթէ 'ի հողոյ ստեղծեալ էր զնա որպէս զԱդամն, զձոխութ̅ի նախապետութ̅ե թերևս իւր յափշտակէր նա ։ Եւ ոչ 'ի գլխոյ նորա առ զնա, զի գուցէ համարձակութ̅ի ինչ լինիցի նմա ։ Զոր օրինակ ամենայն բան գլխոյ է, նոյնպէս և ամենայն լռութ̅ի կողի. վասն այսորիկ պատուիրէ Առաքեալ և ասէ. "Զի մի խօսիցի յեկեղեցւոջ որպէս խօսեցաւն 'ի դրախտի անդ „ ։ Այլ թերևս տրտմեցան կանայք, զի լսեն զհնազանդութիւն իւրեանց. այլ ուրախ լիցին, զի աւելագոյն է նոցա քան զԱդամայ ։ Զի Ադամ յանխլիրտ հողոյ ստեղծաւ և կազմեցաւ. բայց նոքա 'ի խօսուն կենդանւոյ առեալ են. և մեծացի անձն նոցա ։ Զի որչափ շփոթեաց Եւայ մայր նոցա զկեանս մարդկութ̅ե, նոյնպէս ուղղեաց և կանգնեաց զկեանս աշխարհի Մարիամ կոյս, որ ծնաւ զՔրիստոս ։

Եւ զոր օրինակ ոչ էր բաժանեալ կողն 'ի մարմ-

նոյ անտի մինչդեռ չև էր Եւայ, սոյնպէս ոչ որոշե-
ցաւ 'ի նմանէ իբր ամուսնացաւ յետոյ. և իբրու թէ
'ի տեղւոջ իւրում բևեռեցաւ անկեցաւ վերստին.
«Եղիցին, ասէ, երկոքին 'ի մի մարմին»: Եւ զի ասէ
«Ոսկր յոսկերաց իմոց է». այս ինքն զի ոչ եթէ մար-
մին այլոյ մարդոյ. և իբրև յերազի իմացաւ նա՝ զի
առեալ եղև 'ի նմանէ կողն, զի 'ի քուն էր: Կամ
վասն այնր՝ զի յորժամ իմասցի՝ վասն նորա զի ած
կացոյց զնա առաջի Ադամայ, զի ինքն կինն եկեսցէ
առ այրն: Փոխանակ այնր զի ասէ «Այս այժմիկ
ոսկր յոսկերաց իմոց», հեբրայեցին՝ «Այս ամուսին
իմ, ասէ, ոսկր յոսկերաց իմոց»: Ի ժամանակի իբ-
րև հաստեցաւ՝ մի հաստեցաւ. և յորժամ օրհնե-
ցաւ՝ եղեն նոքա բազումք: Եւ որպէս մինչ 'ի նմայն
էր Եւայ՝ ընդ նմա ընկալաւ զօրհնութիւն, զի ասէ.
«Աճեցէք և բազմացարուք». սոյնպէս մինչ 'ի նը-
մայն էր՝ ընդ նմա ընկալաւ զպատուէր հրամանին:

## ԳԼՈՒԽ Բ

«Եւ ասաց, ասէ, օձն ցկինն. զի՞նչ է այս զի ա-
սաց տէր Աստուած՝ թէ յամենայն ծառոց որ իցեն
'ի ներքս 'ի դրախտի այդր մի՛ ուտիցէք»: Զի ետես
նա զնոսա զի ոչ հպեցին նոքա բնաւ ընդ կողմն ծառոյն
զոր պատուիրեաց նոցա թէ մի՛ ուտիցէք 'ի նմանէ.
այլ թէ 'ի քանի ծառոյ պատուիրեալ էր նոցա թէ
մի՛ ուտիցէք, ոչ գիտէր նա. և եթէ զկարգ և որչափ
ծառոյ համարձակութիւն տուեալ էր նոցա, բանսար-
կուն ոչ էր գիտակ. վասն այսորիկ եհարց ցնա: Այլ
Եւայ՝ անմեղ ետ զպատասխանին. ասէ. վասն միոյ
առաք մեք պատուէր հրամանի զի մի՛ կերիցուք և մի՛
մեռցուք: Այլ նա իբրև հոգաբարձ մի և վերակա-
ցու, ասէ. զի թէպէտ Աստուած ըստ բարերա-
րութեանն իւրում հրամայեաց յամենայն ծառոց դը-
րախտիդ ուտել, սակայն ահաւասիկ վասն նախանձու
իւրոյ արգել զձեզ 'ի միոջէ անտի՝ զի մի՛ ուտիցէք, և
լինիցիք իբրև զնա:

«Եւ ետես, ասէ, կինն զի բարի է ծառն 'ի կե-

բակուր »։ Յայտ արար բանն, զի նոյն ժամայն իբրև լուաւ Նոյ՝ վառեցաւ բորբոքեցաւ, և այրեցին զնա կարծիք նենգաւոր Թշնամւոյն։ Եւ այն որ հեռացեալ էր երբեմն 'ի ծառոյն զի մի մերձեսցի առ նա, ժպրհեցաւ համարձակեցաւ և անց զսահմանաւն. "Ետես, ասէ, կինն զի բարի է ծառոյն կերակուր »։ Այս յայտ առնէ՝ Թէ մինչ չև մերձեցեալ էր առ ծառն, ցանկութբ իւրով եկեր զնա։ Եւ զի ասէ "Հաճոյ աչաց հայելոյ ». զի իբրև լուաւ՝ անդէն ցանկացաւ 'ի միտս իւրում. վասն յաւելլոյն՝ որ եղև ըստ խրատու օձին, անուանեաց ցանկութն։ Եւ այն զի ասէ. "Գեղեցիկ էր 'ի տեսանել », յայտ արար զի ոչ նոյն ժամայն վաղվաղակի մերձեցաւ առ ծառն, այլ յետ բազում խորհրդոց անցեալ կայր և հայէր ընդ նա։ Եւ քանզի փութացեալ ձեպեալ էր մեծանալ ըստ լսելոյ խրատու օձին, ոչ արար պատիւ Ադամայ և նախ նմա ետ. այլ ինքն եկեր, և ապա ետ Ադամայ։ Եթէ մերձենայք, ասէ, առ նա՝ ոչ մեռանիք. զի ասաց՝ Թէ աստուածք լինիք։ Առ Ադամ՝ զի լուսով ստեղծեալ էր, ոչ իշխեաց մերձենալ. այլ առ Եւայ, զի 'ի քնոյ առեալ էր զնա ընկեր և դրացի և դուրք մահու. զի գիտասցէ Եւայ և ծանիցէ զի մահ եմոյծ խրատու իւրով. որպէս և քուն յորոշելն իւրում յԱդամայ։

Արդ քանզի կերպարանս բանի զգեցաւ օձն, այն որ ոչ էր բնութբ բանաւոր, յայսմիկ առաւել զայթագղեաց յանձն իւր Եւայ 'ի զարմանալեաց անտի. զի ետես զանխօս օձն խօսուն եղեալ. զի իբրև նոր իմն լուաւ զբանն 'ի նմանէ և զարմանալի, և վասն այնորիկ զխրատն նորա փութապէս ընկալաւ։ Նախանձեցաւ ընդ նա սատանայ տկարացուցանել և խոնարհեցուցուցանել զնոսա, և արար իւր կերակուր զնոսա, որպէս զի Աստուած բարկասցի 'ի վերայ նոցա։ Գրեալ է 'ի գիրս՝ ասէ. քանզի իշխանն անօրէն իբրև կամեցաւ աստուածանալ՝ ձեռն արկանէր 'ի նոսա, և զամենայն մարդիկ մեղօք կապէր։ Նա և անուն իւր իսկ վկայէ վասն խոտորելոյ յանցուածոց իւրոց։ Այլ բարերարն իբրև ետես զնա Թէ անց ըստ չափ բնութն իւրոյ, ած եմոյծ

զստեղծումն հաստելոյ Ադամայ 'ի մէջ աշխարհի. եդ 'ի վերայ նորա զանուն նմանութեան պատկերի կերպարանաց իւրոց վասն յանդիմանութեան սատանայի. զի յայտ արասցէ թէ որպէս պատկերի նորա հնարեաց նա փնասել 'ի մէջ երկրի, սոյնպէս 'ի վերայ նորա կամեցաւ նա բարձրանալ երբեմն, իբրեւ աստուածանալ, ասէ, կամեցաւ. և այլ ևս: Արդ լուաւ նա զի ասացաւ Ադամայ, թէ ուտիցէք՝ մեռանիցիք. և խորհեցաւ նա վասն մահու նոցա, որպէս զի արգելցէ և կարճեսցի աշխարհս, և մի սերասցի և բազմասցի. և վասն այնորիկ ետ նոցա խրատ ուտել 'ի ծառոյ անտի:

Օ օձն, ասեն, խորամանկ և զծառն ցանկալի և զկինն ամուսին նորա՝ բոլս արար փոսա Աստուած վասն քննութեան ազատութեան Ադամայ. զի եթէ յարիցի 'ի նա պատուէրն, և ընդելանիցի ընդ նմա: Այլ ասեն. զոր օրինակ խնդրեաց սատանայ զստացուածսըն Յոբայ և տուաւ նմա՝ զի եղիցի նա վասն քըննութեան Յովբայ, նոյնպէս խնդրեաց սատանայ՝ զի տացի խօսք բանի օձին, զի 'ի ձեռն այսր՝ որ խորամանկս է քան զամենայն գազանս, եկեսցէ արասցէ ընդ նմա մարտ պատերազմի, ընդ այնմիկ՝ որ առ զիշխանութիւն 'ի վերայ գազանաց և սողնոց: Եւ զոր օրինակ առ Յոբ բարի արար տէր իւր զի առաքինացի նովաւ, և Ադամայ առաւելութիւն տանէր՝ եթէ ոչ փութացեալ էր, և 'ի պատճառս ագահութեան իւրոյ սուտ արարեալ զարարիչն իւր:

Արդ բան նոր տուաւ օձին որպէս և գրաստուն ժամանակեան միոյ. և ոչ է գրեալ՝ ոչ զի բարձ 'ի գըրաստուէ անտի, և ոչ զի ետ օձին, և ոչ զի ետ Ադամայ: Եթէ այդ այդպէս է, իսկ զի՞ մեղաւ օձն. զի ահաւանիկ բան առ և առաքեցաւ: Արդ որ ինչ 'ի վերայ սատանայի ասի, և 'ի վերայ նորա նոյն իսկ է: Բայց ընկալաւ նա զպատիժսն պատուհասից, փոխանակ զի նա եղև պատճառք մահու նոցա. և զի անկցի ահ և երկիւղ 'ի վերայ այնոցիկ որ ունկնդիր եղեն և հնազանդեցան նմա. իբրեւ զայն զի ասէ. "Անիծեալ եղիցի երկիր 'ի գործս քո". և "Զարն դալոց է, բայց վայ իցէ այնմ՝ յորոյ ձեռն չարն գայ-

ցէ » ։ Այլ ընկալաւ զպատիժս օձն՝ կապեալ բընութիւն, զի գիտասցէ և ծանիցէ թէ որչափ մեծ են յանցանք տիրացեալ ազատութեն ։ Զի զոր օրինակ պատուէր հրամանի ետ քարկոծ լինել անասնոցն յորում մարդն մտաբերիկ լինէր, ոչ եթէ զի անասունն կամեցաւ ընդ պղծութին՝ այլ զի եղև նա պատճառք մահու այնորիկ՝ որ ընդ նմա պղծեցաւ, սոյնպէս և օձն՝ ոչ եթէ զի գիտակ էր նա զօրութե նենգաւորին արժանի եղև անիծից, այլ փոխանակ զի եղև նա անօթ սպասու պաշտաման թշնամւոյն՝ ընկալաւ և նա զպատիժս պատուհասից ։

Եթէ Աստուած, ասէ, ետ նմա բան, և եթէ սատանայ խօսեցաւ նովաւ, վասն էր բարձ 'ի նմանէ զոտս նորա՝ եթէ այլ արշաւեսցի նա. կամ ընդէ՞ր ետ նմա հող կերակուր. զի ոչ եթէ նա դարձոյց զԱդամ 'ի հող ։ Եւ արդ դու եկեալ զվրէժ օձին պահանջես՝ եթէ ընդէր ընկալաւ զպատիժս. ասա մեզ ընդէ՞ր քարկոծ լինէր անասունն որ պղծեցաւ 'ի մտաբերել այնորիկ՝ որ եղև նմա պատճառք ։ Եւ ընդէ՞ր սատակեցան գազանք և թռչունք 'ի ջրհեղեղէ անտի ։ Եւ զի՞ մեղան ոչխարք և եզինք և թռչունք, զի տուեալ են հանապազօր 'ի զենումն ։ Զի՞ մեղան հօտքն Յովբայ, զի տուան 'ի կիզումն հրոյ. և հազարքն խոզից, զի շնորհեցան լեգէոնի ։ Եւ եթէ վասն սրբոցն ոչ դատին, և մի՛ վասն անիծեալ օձին դատիցին ։ Իսկ վասն էր մեռանէր զուարակն սուրբ փոխանակ յանցաւոր քահանային. և զի՞ մեղան աղաւնիքն և տատրակքն, որ մատչէին փոխանակ տղայոցն. և կամ զի՞ մեղաւ գառնն որ զենեալ լինէր փոխանակ փրկութե ժողովրդեանն. կամ քօշն, որ պատարագեալ լինէր վասն յանցանաց ժողովրդեանն ։ Զոր օրինակ եղեն անասունքն փոխանակ փրկութե ժողովրդեանն և վասն քաւութե նորին, և 'ի նոցանէ սպաս պաշտաման և 'ի կերակուր ազգաց, սոյնպէս եղև օձն վասն փորձութե և քննութե Ադամայ. և ընկալաւ նա զպատիժս պատուհասից վասն պատուոյ փառացն Ադամայ ։ Նա և 'ի վերայ ստուգաց արդարոցն և մարգարէիցն, զի համբերին զթշնամանս անարգանաց, վասն մարդասիրութե

ասի ։ Դարձեալ զինչ մեղաւ Մովսէս, զի անարգեցաւ 'ի ժողովրդենէ անտի. և Եղիա, զի հալածեցաւ յԵզաբելայ. և Երեմիայ, զի ընկղմեցաւ 'ի գուբ տղմոյն. և Եզեկիէլ, զի կապեցաւ շղթայիւք. զոր և ասէ իսկ Աստուած. “Ջնջեցի ես զմարգարէս և սատակեցի զնոսա 'ի բանս բերանոյ իմոյ„ ։ Եւ եթէ մարգարէքն թշնամանեցան անարգեցան վասն ժողովրդեանն, և տէր մեր եկն եւ 'ի խաչ վասն կենաց մերոց, իսկ արդ ո՞վ իցէ որ տրտնջիցէ և ցասնուցու վասն փոքր մի պատժի զոր ընկալաւ օձն ։ Կամ թէ կամէիր դու զի Ադամ ընկալցի զանէծս, և օձն ազատեսցի՞ 'ի պատուհասից. և զի Ադամ կորուսցէ զփառս իւր, և օձն և ոչ զո՞տս իւր ։ Եւ քան զնոյն պատիժսն պատուհասից դառն էր այսնոցա, զի զնենգաւոր թշնամին իւրեանց առանց պատժոց տեսանէին ։

Իսկ եթէ ասիցես թէ ո՞յլ է որ եղև նմա պատճառք, անցանէր ստուգութի և առ նա պատժօքն պատուհասիւք այնորիկ՝ որ եղև նմա պատճառք ։ Այլ զոր օրինակ կորստեամբ խոզիցն գիտացաք զչարչարանս լեգէոնին, սոյնպէս տկարութին զվատթարութի օձին 'իմացաք և ծանեաք զչարչարանս այնորիկ՝ որ պաշտեաց և կատարեաց 'ի նմա զկամս իւր ։ Զարչարեցաւ տանջեցաւ սատանայ 'ի ծածուկ 'ի ձեռն պատժոցն՝ որ եկին հասին 'ի վերայ օձին. բեկաւ խորտակեցաւ փշրեցաւ թշնամին՝ յորժամ ետես զանօթն իւր՝ զի 'ի պորտ և յորովայն իւր սողէր ։

Իսկ զի ասէ “Բացան աչք նոցա„. փոխանակ զի մերկացան զհանդերձն փառաց իւրեանց, և մնացին մերկ՝ ամօթալից խայտառակեալ. իբրև զայն զի ասէ, առագաստեալ էին սիրտք նոցա և ոչ իմանային ։ Սոյնպէս և յայսմ վայրի մերկք էին և ոչ գիտէին, զի ծածկեալ էր 'ի նոցանէն որչափ 'ի ներքոյ պահպանութե պատուիրանին էին ։ Եւ իբրև անցին զպատուիրանաւն՝ բարձաւ անց 'ի նոցանէ հանդերձն փառաց, զի լեալ էր նա իբրև զվարագոյր մի մերկութե նոցա. գիտացին և 'ի միտ առին թէ ուստի անկան ։ Արդ տեսէք զձախողանսն. ոչ եթէ աս-

տուածք են որպէս և ասաց օձն, այլ մերկք են. որպէս և երկիր փշաբեր փշալից փոխանակ դրախտին փափկութեան: Վասն ուրախութեան ցնծութեան ասաց նոցա՝ թէ "Բանայցեն աչք ձեր". և բացան աչք նոցա յամօթ անարգանաց: Այլ յառաջ քան զվճիռն հրամանին ցոյց ինքն ծառն զսուրն մերկութեան նոցա. զի գիտութիւն որ 'ի նմա՝ այս էր, զի արու և էգ առանց կերակրոյ նորա ոչ գիտէին ամաչել 'ի միմեանց: Այլ ծառն գիտութեան բարւոյ և չարի՝ ոչ եթէ բնութեամբ իւրով բարի էր կամ չար. զպահել պատուիրանին և զանցանել զպատուիրանաւն կոչեաց բարի և չար. զի ոչ եթէ կերակուրն պտղոյն խիստ էր, այլ ինքն դնել միտացն վասն կերակրոյն: Զի եթէ մոլորեալ խաբեալ էր նորա, կամ ժպրհեալ կերեալ էր առանց այսր խորհրդոյ աստուածանալոյ, թերևս գտեալ լինէր նորա զողորմութիւն գթութեան: Արդ անցանելն զպատուիրանաւն սպան զնա, և ոչ եթէ ծառն. զոր օրինակ պատուէր հրամանին նեխեաց զմանանայն առանց բնութեան իւրոյ. և վկայէ այն որ եղև երկոցունն աւուրց՝ այնու հանգերձ՝ որ պահեցաւ 'ի սափորն յազգս ազգաց:

Այլ ծառն կենաց ընդէ՞ր տնկեցաւ. զի 'ի կատարածին է պիտոյ նա այնոցիկ որ կենդանանանն: Այլ նման է այս՝ զի 'ի ծառոյն յայնմանէ տուեալ լինէր նմա ուտել, թէ համբերեալ ալեացն ժամանակեան միոյ և անարգեալ էր զխրատ օձին: Ոչ եթէ զի ստեաց նմա, նա և այս իսկ յոյժ չար է՝ եթէ քանզի չլինին իրքն, ոչ առնէ զնոսա ոք. այլ արժան է՝ թէպէտ և ճշմարիտ ասաց օձն, կալ և մնալ Ադամայ առ պատուէրն տեառն իւրոյ. Վասն այսորիկ վաղվաղակի փութապէս տագնապաւ հանէ ընդ նա առ 'ի ծառոյն օրհնելոյ, որ պսակէ զարդարս պըտղով իւրով. զի եկեսցէ առ երկիրն անիծեալ, որ յամօթ առնէ զյանցաւորսն փշովք իւրովք. այս ինքն փոխանակ պատուիրանին պատիժք պատուհասից: Եւ եթէ էր պահեալ նորա, կատարեալն լինէր գիտութեան բարւոյ և չարի. ապա գիտացեալ էր այնուհետև թէ բարի է պահել զպատուիրանն, և չար է անցանել զպատուիրանաւն:

Այլ երբեւ ետես Ադամ զծառն կենաց, ցանկացաւ նմա եւ յղացաւ զգեղ նորա 'ի ծածուկ տեսլեամբ, որպէս եւ որոջքն զգեղ գաւազանացն։ Եւ թուեաւ խմորն կենաց 'ի ծածուկ յազգս նորա, մինչեւ ընկալան զսպասելն կատարածին իւրեանց 'ի գալստեանն անդրանկանն. իբրեւ զայն՝ զի ասէ. Թագաւորք եւ արդարք ցանկացան զծառն կենաց։ Ծառն կենաց կոչեաց յայտնապէս։ Թէ այդ այդպէս իցէ, արժան էր եւ զսա ծառ մահու կոչել. ապա թէ ծառ մահու էր, գիտութեն զիա՞րդ տայր նա. զի ահաւասիկ մահ'ի գիտութէ զրկէ, եւ հարկանէ տանի զմարդ։ Եւ եթէ ծառ մահու էր, ոչ եթէ պատուէր'ի մէջ մեղաց եւ արդարութեն տայր Ադամայ, այլ զգուշութի սպանող արմատոյ. զի այլ է պատուէր սպանող, եւ այլ է արմատ սպանող։ Եւ եթէ ծառ կենաց վայել էր այնմ դրախտի, իսկ ծառ մահու ընդէ՞ր։ Եւ ծառ կենաց՝ զի յանդիմանեալ խայտառակեսցին աղանդք հերձուածողաց. զի ասեն՝ թէ մարմին բնութի մահկանացու է, եւ ոչ կարէ կեալ. զի այն որ հաստատեաց զարմատս՝ զի ճշմարիտ սպանանեն զմարմինս, հաստատեաց եւ ծառ՝ որ կարող է կեցուցանել զնա։

Յառաջ մինչ չեւ մեղուցեալ էր Ադամայ՝ մարմին նորա մարմին էր, զի ոչ կարէր մահ լուծանել առանց մեղաց զնա. որպէս երկաթ՝ զի ոչ կարէ ճարտար լուծանել զնա առանց հրոյ։ Այլ կարող է երկաթ 'ի ձեռն հրոյ ընդունել զչարչարանս դարբնաց. սոյնպէս եւ մարմինն 'ի ձեռն մեղաց ընդունի զչարչարանս պատժոց պատուհասից։ Զոր օրինակ զի մի էր տեսիլն Թամարայ յառաջ քան զմեղսն, եւ զկնի մեղացն սիրեաց զնա Ամնոն վասն գեղոյ նորա, եւ դարձեալ ատեաց զնա, իբր ոչ եթէ փոփոխումն ինչ եղեւ գեղոյ նորա։ Սոյնպէս եւ ծառն՝ մի էր գեղ նորա յառաջ քան զուտելն եւ զկնի ուտելոյն 'ի նմանէ։ Սիրեցին զնա որպէս եւ Ամնոն՝ յառաջ քան զանցանելն զպատուիրանաւն. եւ դարձեալ ատեցին զնա որպէս եւ Ամնոն զկնի մեղացն պաշտելոյ։

Նա եւ ինքն իսկ բարերարն ոչ յայտնեցաւ յանկարծակի, զի մի՛ զարհուրեսցին նոքա. եւ ոչ ծագեաց որպէս եւ փայլակն, զի մի՛ խռովեսցէ զնոսա. այլ

արար ձայն ոտից իւրոց և առաքեաց առաջի իւր, զի
ուսուսցէ ապաշխարութիւն անզեղջ և անապաշաւ-
սրտին : Եւ յիջանել նորա 'ի դրախտ անդր՝ նկարե-
ցաւ գալուստ նորա յաշխարհս . և 'ի ձայն նորա ; զի
եկն առաջի նորա , դրոշմեաց զՅովհաննէս . զի ա-
ռաքելոց էր նա առաջի երեսաց նորա : Եւ փոխանակ
այնր զի ասէ "Լուան զձայն գնալոյ տեառն Աստու-
ծոյ ,, , զի իջեալ գնայր 'ի ներքս 'ի դրախտի անդ ընդ
դառնալ աւուրն , հեբրայեցի՝ " 'ի ձգել աւուրն ,, .
այսինքն 'ի միոյ դարձից աւուրն յերեկս կոյս : Ադա-
մայ ասէ " Ո՞ւր ես ,, . զի ինքն եղիցի յանդիմանիչ անձ-
ին իւրոյ : "Զձայն քո , ասէ , լուայ ,, : Թէ ձայնի իմոյ
լուեալ էիր , ոչ մերկացեալ խայտառակեալ լինէիր
դու : "Ո՞վ , ասէ , եցոյց քեզ թէ մերկ իցես դու .
բայց եթէ 'ի ծառոյ անտի զոր պատուիրեցի քեզ՝
կերա՞ր դու ,, : Եկն եհաս 'ի վերայ նոցա անդ ամօթ .
զի յայտ արասցէ՝ թէ ինքն գործն արարչին պատե-
րազմեցաւ ընդ նմա , այն՝ որ կամեցաւ բարձրանալ
'ի վերայ արարչին : Եւ զի յայտ արասցէ նմա թէ
անդ էր Աստուած յայն ժամու՝ զոր կարծեացն թէ
հեռի իցէ անտի :

"Կինս , ասէ , զոր ետուր ինձ , սա յանցոյց զիս ,, .
և կինն ասէ . "Օձն խաբեաց զիս ,, : Վասն այնորիկ
արար զնա առանց ոտից , փոխանակ զի ընթացաւ նա
'ի չարիս : "Ի պորտ և յորովայն քո , ասէ , գնասցես
դու ,, . զի ոտիւք իւրովք չոգաւ նա : "Եւ հող կերիցես
զամենայն աւուրս կենաց քոց ,, . փոխանակ զի արա-
րեր դու զնոսա հող : "Եւ թշնամութիւն եդից 'ի մէջ
քո և 'ի մէջ նոցա ,, . փոխանակ զի արարեր դու զնո-
սա թշնամիս Աստուծոյ : "Նա սպասեսցէ քում գլը-
խոյ ,, . այն զի բղխեաց և խօսեցաւ զանօրէնութիւն :
"Եւ դու սպասեսցես նորա գարշապարի ,, . փոխանակ
զի ընթացաւ նա յառ ծառն : Այլ ոչ կալաւ զոյժ ո-
ղորմութեան յորժամ ետես թէ 'ի ձեռս եւս առաւ-
գուին զթոյլ գարշապարին ահաւոր թունաց . վասն
այսորիկ կանխեաց խառնեաց անդ՝ զի "Եւ նա , ասէ ,
սպասեսցէ քում գլխոյ ,, : Զոր թէպէտ և չարն վասն
չարութեան իւրոյ անխայութի առնել ոչ գիտէ , սա-
կայն գանէ վասն ապականութեան և չարչարանաց իւ-

րոց արգելցի և կարճեսցի փոքր մի, զի մի՛ կատարեալ մերձաւոր լինիցին Թոյնքն նորա առ գարշապարս մարդկութեան ։

“Եւ ցկինն ասէ. բազմացուցանելով բազմացուցից զտրտմութիւնս և զհեծութիւնս, զցաւս և զյղութիւնս քո„ ։ Փոխանակ զի կարծեաց նա՝ թէ որդիս Աստուծոյ ծնանի, և որդիք նորա աստուածապէս ծնանին, վասն այսորիկ “Ցաւովք և տրտմութեամբ որդիս ծնցես„ ։ Եւ զի հաստատեաց և հաւատաց օձին և եկեր ինքն նախ, և կարծեաց թէ մեծացաւ ճոխացաւ քան զայր իւր, վասն այսորիկ “Դարձ քո առ այր քո եղիցի, և նա տիրեսցէ քեզ„. որպէս և իշխան եդ նմա անուն, և կոչեաց զանուն կնոջն Եւայ ։

“Եւ ցԱդամ ասէ. փոխանակ զի լուար ձայնի կնոջդ, անիծեալ եղիցի երկիր վասն քո„ ։ Զի պատկերին իւրոյ պատիւ արասցէ, անէծ զերկիր փոխանակ Ադամայ ։ “Անիծեալ եղիցի երկիր վասն քո„. այն զի վասն քո օրհնեցաւ նա ։ “Ցաւովք և տրտմութեամբ կերիցես զդա„. փոխանակ զի կարծեցեր դու թէ իբրև զԱստուած բնակեսցես դու ՚ի վերայ դորա ։ “Ցաւովք և հեծութեամբ կերիցես զդա„. փոխանակ զի կարծեցեր դու հանգչել ՚ի դմա ։ “Փուշ և տատասկ բուսուսցէ քեզ„ փոխանակ ծառոյն կենաց ։ “Կերիցես բանջար վայրի„ փոխանակ պտղոյ դրախտին ։ “Եւ ՚ի քրտան երեսաց քոց կերիցես զհաց քո„. փոխանակ զի կարծեցեր դու հանգստեամբ ուտել զնա ։ “Մինչև եղիցի քեզ դարձ յերկիր՝ ուստի առեղծար դու. զի հող ես դու„ այսինքն հող ես դու ըստ բնութեան քում, և ոչ ես Աստուած՝ որպէս և ՚ի մտի քում եդիր ։ Ի ժամանակի իբրև հատէր նա զհողն՝ պատկեր Աստուծոյ կոչեաց զնա և ոչ հող. և յորժամ կամեցաւ հողն լինել իբրև զարարիչն իւր, ՚ի բաց արար ՚ի նմանէ և զայն՝ զի ասէ պատկեր Աստուծոյ. ասէ. “Հող ես դու և ՚ի հող դարձջիր„ ։

Արդ եթէ էր հաստեալ կապեալ մտացն Ադամայ ՚ի պատուէրն արարչին իւրոյ, ոչ լինէր լուծեալ մարմին նորա յօդելոյ անտի. և եթէ էր կացեալ մնացեալ նորա հաւատովք, ոչ լինէր նա մերժեալ ՚ի

ծառոյ անպտղի կենաց ։ Եդ թշնամութիւն 'ի մէջ նորա և 'ի մէջ ծառոյն կենաց , փոխանակ զի արար նա զբարեկամութիւն 'ի մէջ իւր և 'ի մէջ թշնամւոյն ։ Եւ փոխանակ զի միաբանեաց նա ընդ վնասակարին իւրոյ , երկմտեաց 'ի նմանէ օգնական նորա ։ Եւ զի ոչ կալեաց նա 'ի փառս իւրում զպատուէրն , ոչ ետ նմա թոյլ լինել 'ի դրախտի անդ ։ Չէր ինչ մարթ , իբրև եղև նա թշնամի արարչին , եթէ եղիցի նմա բարեկամ գործն արարչին . կամ յորժամ ապստամբեաց նա յարարչէ անտի , եթէ հնազանդեսցի նմա արարածք արարչին ։ Թող նա զպահել պատուիրանին, զի նովաւ թագաւորէր նա . թող զնա շունչն կենդանի , զի նովաւ հաստատեալ կայր նա ։ Հաւատարիմ եղև նմա բան սրտին . նա և ոչ վճիռն հրամանի դատաւորին սուտ ինչ եղև առ նմա . յայնմիկ զի հաւատաց նա սրտին , ասէր թէ որչափ հաւատարիմ է բան ճըշմարտին ։

Այլ եդ նա ընդ սպասողին իւրոյ ուխտ սիրոյ , և առ բարերարն իւր ունել խորհուրդ չարութեան . զի 'ի գալն իւրում առ ծառն՝ զհաստատութիւն խրատուածին ցուցանէր . և յուտել իւրում 'ի ծառոյ անտի՝ զմահ սուտ առնէր , իբրու զի թէ նախանձու արգել զնա 'ի նմանէ ։ Այլ իբրև ամաչեաց և մերձեցեալ յանդիմանեցաւ , և մերկացեալ խայտառակեցաւ , ապա ետես նա զնախանձն առ նենգաւոր թշնամին իւր , և զսէրն առ արարիչն ։ Այլ իբրև փորձանք վարդապետ եղեն նմա , յայնժամ գնելի մնացն 'ի միջոյ բարձաւ , և եկն եհաս վճիռ հրամանին, որ 'ի մէջ այ և 'ի մէջ մարդոյն՝ զուարթ երեսօք . և փոխեաւ ուխտն՝ որ 'ի մէջ օձին էր և 'ի մէջ մարդոյն՝ ամաչեցեալ երեսօք . զի դատաւորն [1] գալ փութայր , և նենգաւորն փախչել և մարդոյն թաքչել , վաղվաղակի խաղաց ելանել նենգութիւն . խեթեաց յանձն իւր թշնամութիւն . եդ զերեսս իւր 'ի փախչել ։

Ազատութիւնն դատաւորին 'ի վերայ միոյ ընկեց զհարցանելն իւր . այլ յանցաւորք 'ի վերայ միմեանց ընկենուլին զյանցանսն իւրեանց ։ Զկոտեցայց տարա-

1 Ցօրէնակին դատաւորն։

ծեաց դատաւորն զհարցանելն իւր 'ի վերայ ամենե-
ցուն, որ զի որոշեսցի 'ի նոսա զյանցուածս ամենե-
ցուն։ Որպէս ցուցաւ զյանցանսն նախ յԱդամ, տես՝ թէ
Եւայ է, և զինչ. և ապա առ Ադամ, որպէս զնա
դարձեալ յԵւայ. և գտաւ զի յօձէ անտի. եւ զը-
նաց և եկն առ Եւայ։ Իբր ետես Ած թէ օձն եղև
սկիզբ յանցանաց, արար զնա առանց առից. վասն որոյ
եղև սկիզբ ամենայն յանցանաց։ Բերանոյն Ադամայ
զտաւ տալ պատասխանի. ասէ “Կինդ ետ ինձ„.
Եւայի՝ “Օձն, ասէ, խաբեաց զիս„։ Բերան օձին
զլացեալ զրկեցաւ 'ի պատասխանի տալոյ. և տուաւ
նմա հող, զի խցցի բերան նորա. զի եղիցի հողն յան-
դիմանիչ բերանոյ նորա, և հատանել ատից նորա՝ վկայ
չարութեան նորա. և զի ուսուցէ նովաւ՝ եթէ բերան
որ պաշտէ զմոլորութիւն խաբէութեան, այսպէս հատանէ
նմա հատուցումն. և ատք որ ընթանայ 'ի չարիս,
այսպէս վաղվաղակի ստէպ ստէպ հատանէ նոցա կոր-
ծանումն։ Արժան էր Ադամայ իմանալ որոշել 'ի
միտս իւր՝ եթէ որ տկարագոյն էր քան զնա, նա
նախանձի ընդ նմա. և այն որ զօրագոյն էր քան
զնա, նա լինի նմա օգնական։ Տկարն նախանձեցաւ
ընդ նմա՝ զի խոտագոյն էր քան զնա, զի մի հնազան-
դեսցէ զնա. և զօրագոյնն խոնարհի առ այն՝ որ տը-
կարն է քան զնա, զի մի անգոսնեսցէ զնա։

Արդ այն որ ետ ձրի զզարդուն երանութիւնս, արժա-
նի էր հաւատարիմ լինել և վասն այլոց պարգևաց.
և զի խոստացաւ զծածկեալս առանց առհաւատչէի
յայտնեաց՝ պարտ ինչ իցէ եթէ անգոսնեսցեն։ Յա-
ճախեաց ետ իբր ոչ պարտէր, զի 'ի տալն իւրեանց
փոխ՝ հաւատասցեն եթէ բազում հատուցումն առ-
նուն. իսկ այն որ ետ սիրով իւրով այնոցիկ որ ոչէին
ետուն փոխ՝ զրկել զլանալ զայն որ փոխն ետ, ոչ ետ
թոյլ իմաստութեան նորա։ Ո՞վ ողորմութիւնք որ եդին
զմեզ 'ի մէջ ողորմութեան և ստուգութեան, զի մի նե-
ղիցի մեզ շտեմարան սերմանեաց. զի ասցուք 'ի նը-
մանէ և մեւս եւս երկիր սերմանեաց, զի հնձեսցուք
'ի նմանէ ընդ միոյ հարեւր. և այս զի ազատութիւն
բացցէ յայտնեսցէ զերեսս իւր, և եղիցի ինքն տէր
գործոց ձեռաց իւրոց։ Արդ եկն ողորմութիւն սե-

բամ իւրում, և յաճախեաց եւ առանց աշխատութեն. եկն և սատուգութիւն սիրոյն իւրում, զի մի եղիցուք մեք պապանձեալ ողորմութեն, այլ պահանջօղք սատուգութեն. զի որ առնուն՝ ողորմութիւն պարտի, և որ պահանջէ՝ շնորհս վարկանի: Այսպէս փոփոխեաց զնոսա մեզ այն քաղցրն և բարերարն. զի մեք փոխ տացուք իբրև շնորհապարտք, և նա հատուսցէ մեզ իբրև շնորհապարտ:

Եւ զի ոչ եղև բաւական Ադամ միայն առանձինն տալ հատուցանել զվրէժ յանցանաց իւրոց, ձկտեցան պատիժքն պատուհասից մեղացն նորա 'ի վերայ ծննդոցն նորա՝ իբր ոչ էին արգելեալ 'ի ներքոյ մեղաց, զի յանցանքն ըստ մեծութեն նորա պահանջեալ լինիցին. և ազատութիւն յիշխանութէն տէրութե իւրոյ մի բռնադատեալ մերժիցի: Իսկ սատուգութիւն որ եհարց զԱդամ և զԵւայ, զօձն ընդէ՞ր ոչ եհարց. և եթէ բնութի է նա կապեալ, ընդէ՞ր դատապարտեցաւ և նա ընդ այնոսիկ՝ որոց ազատութիւն էր. և եթէ ազատութի նորա է, ընդէ՞ր ոչ հարց զնա: Այլ ոչ հարց զնա վասն այսորիկ՝ զի գիտէր նա թէ ընդ ում խօսի. և այն որ լսէ՝ գիտէ զինչ լսէ: Եւ զի օձն նախ ընկալաւ զպատիժս պատուհասից, զի նոքա զղջացեալ ապաշաւեսցեն և խնդրեսցեն 'ի նմանէ: Եւ զի ոչ կամեցան դառնալ յապաշխարութի, եդ 'ի վերայ նոցա զվճիռ մահու, և եղիցին նոքա հող՝ կերակուր օձին: “Ի հողոյ ես դու, ասէ, և անդրէն 'ի հող դարձցիր”. և զնա ասէ. “Հող եղիցի կերակուր քո”:

Եւ զի ասէ “Արար տծ Ադամայ և կնոջ նորա հանդերձս մաշկեղէնս և զգեցոյց նոցա”, զի մի ելցեն մերկ 'ի դրախտէ անտի, զի եղիցի առաւել տեսիլն նոցա քան զգազանաց. կամ զի անկան նոքա յաստիճանէ անտի յորում կային, զգաստացոյց զնոսա՝ զի յայսմ հետէ յաստիճան ցանկութե մի իջցեն: Եւ յերկուց կողմանց օգտեցան տունն Ադամայ հանդերձիւն, որ եղև նոցա զէն ընդդէմ ցրտոյ, և ըզգեստ ընդդէմ ցանկութեց: Նայեաց դու 'ի դէմս յայտնիս, և տես որչափ ճշմարտակար է նա: Դաւիթ որ յաղթեաց սկայազանց 'ի պատերազմի, յաղթահա-

րեցաւ 'ի մերկ մարմնոյ ։ Յորժամ լինիցին նոցա տղայք արու և էգ, որպէս և 'ի ցանկութենէ անկցի 'ի վերայ նոցա ամօթ. զի անկցի 'ի վերայ նոցա քօղ առագաստի, զի մի՛ ճանաչիցին և մերկանայցեն մի-մեանց զգեղումն իւրեանց։ Կամ մորթօքն գազանացն զի զգեցոյց զնոսա, վասն մեռելոտի գործոցն յայտ արար։

Ի մէջ դրախտին բարկացուցին 'ի տեղւոջ, յորում արժան էր հաշտեցուցանել ։ "Հան զնոսա, ասէ, տէր Աստուած 'ի դրախտէն փափկութեան, և պատեաց ընդ արևելից կողմանէ զդրախտըն փափկութեան 'ի սուր տէգ նիզակին, և 'ի հրեղէն շրջանակաւ սուսերին". Հերքայեցի ասէ. "Բնակեցոյց ընդ արևելից կողմանէ դրախտին փափկութեան նորա" ։ Այս ինքն ճառագայթմն որպէս սուր սայր սուսերի. և զի շրջիցի և լինիցի ծառայն համեմատ տեառն իւրոյ յապստամբելն նորա 'ի նմանէ լինել իբրև զնա, վասն այսորիկ "Ահաւասիկ Ադամ եղև իբրև զմի 'ի մէնջ" ։ Կամ զի գործով գիտաց մեկնեաց որոշեաց զբարին և զչարն յուտել իւրում 'ի ծառոյ անտի, որպէս և ա̃ծ զի գիտակ է նոցա առանց փորձանաց՝ այլ նա փորձանօք, վասն այնորիկ ասէ "Եղև Ադամ իբրև զմի 'ի մէնջ" ։ Յայսմիկ ոչ ինչ էր նմա օգուտ, զի գործով գիտացէ և ճանիցէ զորոշումն գիտութեան բարւոյ և չարի. զոր օրինակ ոչ ինչ օգուտ է մեզ փորձել զթոյնս օձի և կարճի ։ "Ահաւասիկ, ասէ, Ադամ եղև իբրև զմի 'ի մէնջ". զազատութիւն նորա կշտամբեաց. բայց ոչ պատուհասեաց զնա թէ ընդէր կամեցար լինել իբրև զիս, զի տկարութիւն էր այս ։ "Ահաւասիկ Ադամ՝ եղև". փոխանակ զի ասիցէ՝ թէ կամեցաւ լինել. այլ եղև ըստ դնել միոյ իւրոյ չարաց ։ Եւ քանզի պատիժ պատուհասի դնէր 'ի վերայ, յայն ժամու ա̃ծ յայտ արար նախ զյանցանսն. զի եկեսցեն զկնի յանցանացն պատիժքն պատուհասից. կամ հեգնելով հեգնեաց զնա բանն ա̃յ. "Ահաւասիկ Ադամ եղև իբրև զմի 'ի մէնջ" ։ Իբր ոչ այլ 'ի կենաց անտի՝ որ 'ի ձեռն ծառոյն՝ մի՛ առցէ 'ի կեանս անձին իւրոյ, երթիցէ կեցցէ որպէս ա̃ծ. "Գուցէ, ասէ, ձգեսցէ զձեռն իւր". զի յայտ արասցէ վասն զօրութեան

ծառոյն կենաց ։ Քերոբէ դարձեալ և սուր տէգ նիզակի՝ վասն պատուոյ փառաց իւրոց ։

Իսկ ընդէ՞ր զմիոյն միայն զանուն եւեթ յիշեաց յամենայն 'ի ծառոց . զի տեսցեն զքերովբէսն և զսուր տէգ նիզակին, և գիտասցեն և ծանիցեն եթէ թշնամութ՟ի ցանգեաց առաջի երեսաց իւրոց Ա՟ծ, և ցանկացեալ փափագեսցեն այնմ զոր ինչ կորուսինն ։ “Գուցէ, ասէ, ձգեսցէ զձեռն իւր և առնուցու 'ի ծառոյ անտի կենաց, ուտիցէ և կեցցէ յաւիտեան „ . ոչ եթէ խեթեաց զնա, այլ զի ոչ եղև նա արժանի ողորմութ՟եց . և երկու՝ քանզի եղեալ էր 'ի վերայ նորա հրամանն ա՟յ յառաջ քան զայս, զի ասէ “Ի հող դարձջիր „ ։ Հան զնոսա առ 'ի ծառոյն կենաց, զի մի՛ եղիցի կերակուր ծառոյն կենաց հակառակ հրամանին մահուն . զի մին 'ի նոցանէ սուտ լինէր, կամ ծառն կենաց՝ թէ չէ ծառ կենաց, կամ վճիռ հրամանին մահու . կամ ողորմութ՟են իւրով ոչ ետ նմա մերձենալ 'ի ծառն կենաց ։ Քանզի վճիռն հրամանին եղեալ էր 'ի վերայ նորա ցաւովք և տրտմութ՟ք կեալ, անխայեաց 'ի նա՝ զի մի՛ կերիցէ 'ի ծառոյ անտի և կեցցէ . որպէս զի մի՛ ընդերկարասցի 'ի նմա այս կեանք տանջանաց ։ Եւ դարձեալ զի մի՛ ստուգեալ հաստատեսցի բանք օձին 'ի կեալն նորա, և սուտ լինիցի ա՟յ ։ Բայց դարձեալ զի ոչ ետ նմա մերձենալ առ ծառն կենաց, զի մի՛ եղիցի յոյս ապաստանի նորա 'ի պտուղն առանց աշխատութ՟եց և վաստակոց, այլ յապաշխարութ՟ի վաստակօք և ապաշխարութ՟ք ։

“Յաւուր, ասէ, յորում ուտիցես՝ մահու մեռջիր „ . և ահա ոչ մեռաւ ։ Այլ զոր օրինակ յորմէ հետէ ասացաւ Աբրահամու՝ թէ “Հնազանդեսցի զաւակ քո յերկրին եգիպտացւոց „, համարեալ թուեն չորեքհարիւր ամ, իբրու երկերիւր քսան և հինգ ամ եղեն անդ, սոյնպէս և Ադամ թէպէտ և եկեաց ամս բազումս յետ դատակնքի մահուն, սակայն յօրէ անտի յայնմանէ՝ յորում ընկալաւ նա զվճիռն և զդատակնիք, ընկալաւ նա զառհաւատչեայ մահու . յայնմիկ՝ զի ել նա 'ի դրախտէ անտի, և զի մերկացաւ նա 'ի փառաց անտի, և զի բարձաւ հա-

մարձակութիւն նորա. և մեռաւ նա ձայնիւն իւր 'ի ժա-
մէ անուր յայնմանէ: Եւ զի ետես դարձեալ զԵւայ
թէ ցաւովք ծնանի, և զի քրտնեցաւ ինքն 'ի վաս-
տակ աշխատութեան իւրոյ, հաստատեալ ստուգեցաւ
նմա վճիռն և դատակնիքն հրամանին: Եւ զի կան-
խագոյն յառաջագոյն էր օրհնութիւն, այն զի ասէ "Ա-
ճեցէք և բազմացարուք", քան զայն՝ զի "Ցաւուրն
յորում ուտիցես մահու մեռցիր", պարտ և պատ-
շաճ էր հաստատուն լինել բանին առաջնոյ՝ իւր, զի
բազմացին. և ապա գալ այնր մահուն: Եւ զի մի
դարձեալ կարծիցի, եթէ ոչ էր նորա մեռուցեալ
զնոսա՝ լինիցին աստուածք ըստ բանից օձին, եկեաց
Ադամ զինն հարիւր ամ վասն դարձուան չարախօսին,
և Աստուած ոչ եղև: Եւ զի ճաշակեաց դարձեալ
զողորմութիւն նորա, Ենովք որ ոչ մեռաւ, և յայս-
միկ ետես Ադամ զառակ օրինակի փրկչին մերոյ՝
թէ գալոց և կեցուցանելոց է զնա. որպէս և փո-
խեաց նա զԵնովք 'ի մահուանէ 'ի կեանս: Ճաշա-
կեաց Ադամ զերկոսին զհաբէլին և զԵնովքայն. զի
մինն մինչ ցոր վայր բարձրացաւ, և միւսոյն խոնար-
հութիւն մինչ յոր վայր էջ. զի գիտասցէ և ծանիցէ
թէ յորմէ բարձրութէ յորքան անարգութի անկաւ. և
նովին Ենովքաւ 'ի միտ ածցէ Ադամ, զի ոչ եթէ
մահկանացու հատանեցաւ նա:

Դարձեալ ասի. զի ոչ եթէ կենդանի անմահ ա-
րար զնա, և ոչ մահկանացու եթէ ոչ կարիցէ կեալ.
այլ եդ պատուէր 'ի միջի՝ ծառն կենաց իբրև պար-
գևս, և զմահ իբրև պատիժս: "Ետու, ասէ, առաջի
քո մահ և կեանս, ընտրեա քեզ զկեանս և մի զմահ":
Բայց դարձեալ ոչ եթէ նա մոլորեցաւ, այլ քանզի
յապականութէ շփոթմանացն չարեաց լինել օձին, յԵւայ
երևեցաւ. քանզի և նա իսկ սկիզբն արար ձգել ըզ-
ձեռն իւր 'ի ծառ անդ: Եւ իբրև ետես Ադամ՝ եթէ
կայ մնայ բանին իւր, և մահ 'ի վերայ նորա ոչ տի-
րեաց, հաստատեալ ստուգեալ էր նմա՝ զի թէպէտ
և առ ժամանակ մի կաց մնաց բանին իւր, սակայն կալ
մնալ ըն կատարեալ 'ի կիտէ անուր եդելոյ դատա-
կնիքի նորա՝ չէ ինչ մարթ. Եւ իբրև ձգեաց Եւայ
զձեռն իւր առ Ադամ տալ նմա, յուզեցաւ դութ

ողորմութիւն իւրոյ 'ի վերայ նորա . որպէս զի եղիցի
նմա օգնական Եւայի 'ի խոնարհել իւրում առ նա .
զի մի եղիցի նա յատուկ եթէ ինքն կեցցէ և նա մեռա-
ցի . կամ զի նա կացցէ մնացցէ 'ի ներքս 'ի դրախտի
անդ , և նա մերժեալ ընկեցեալ լինիցի յերկիր
նզովից : Զի զոր օրինակ այն որ հաղորդի ընդ կնոջ
իւրում , յետոյ իբրև անցանէ ըստ ճանապարհ առն
իւրում՝ պատանկելով պատանկի , և այրն իբրև կամեսցի
ծածկել զյանցանս նորա և զինքն 'ի ներքս խառ-
նել , ասէ ցայն որ զուգեացն զնոսա , եթէ ես ոչ մե-
ղայ , այլ կինս զոր ետուր ինձ՝ սա յանցոյց զիս : Սոյն-
պէս և Ադամ իբրու անխնայեայր 'ի վերայ նորա՝ կար-
կառ զաջ իւր ոչ յառնուլ 'ի ծառոյ անտի , այլ յառ-
նուլ 'ի ձեռաց օգնականին իւրոյ , յայնմ զի գիտաց
թէ ել դատաւորիքն մերկանել որոշել զօգնականն իւր
առ յինքենէ . և վկայ այսոցիկ Առաքեալն 'ի յա-
սել իւրում . “Ադամ ոչ մեղաւ , այլ Եւայ” : Եւ ար-
դարեւ ոչ մեղաւ :

Թէ այդ այդպէս է՝ խոնարհեցաւ նա առ նա , զի
եղիցի նմա օգնական . հաղորդ եղև յանցանաց նո-
րա՝ ոչ 'ի ցանկալ իւրում 'ի ծառոյն , այլ զի եդ նա
'ի միտի իւրում պահել զկատարումն մարգարէութեան
նորա , զի եղիցին երկոքին 'ի մի մարմին : Եւ վասն
այսորիկ և 'ի միւսումն ևս վայրի վկայէ ինքն Առա-
քեալ՝ իբրև նմանեցուցանէ զգործն 'ի Քրիստոս և
յեկեղեցի իւր , 'ի խորհուրդ հաղորդութեան առն և
կնոջ . զի 'ի ժամանակի իբրև մեղաւ եկեղեցի նորա
և հաղորդեցաւ ընդ անցանել պատուիրանին , և
խոնարհեցաւ ողորմութիւն գթութեան նորա առ նա՝
ոչ 'ի մեղանչել և առնուլ 'ի ծառոյ անտի , այլ
բուռն հարկանել զօրացուցանել զաղաւուկն՝ որ ճեղ-
քեցաւ վասն պտղոյն՝ որ կթեցաւ յանարժանս . և
հաղորդեցաւ հաւասարեցաւ մեռանել ընդ նմա ,
որպէս և Ադամ ընդ Եւայի . զի և ինքն եկեղեցի նո-
րա հաղորդեսցի դարձեալ 'ի կեանս ճշմարիտս , այն՝
որ վասն նորա հաղորդեցաւ հաւասարեաց ժառանգու-
թիւն համարձակութեան նորա . զի վասն այնորիկ
“կեցցէ , ասէ , վասն ծննդոց իւրոց՝ եթէ կայցեն մնայ-
ցեն 'ի հաւատս և 'ի ճշմարտութեան” այլովք հան-

դերձ։ Ոչ Եւայ բաւական եղեւ առնուլ պատուիրան յնմ, այլ Ադամ. եւ ոչ ժողովուրդն կարող էր՝ եթէ խօսեսցի ընդ նմա ա͞ծ առանց Մովսիսի. եւ ոչ եկեղեցի՝ թէ առցէ փրկութիւն, այլ 'ի ձեռն տեառն մերոյ։

Նոյն դարձեալ ասասցուք զայն զոր ասաց Առաքեալ "Ադամ ոչ մեղաւ այլ Եւայ"։ Քանզի մոլորութիւն յանցանաց յԵւայէ սկիզբն արար եւ առ Ադամ կատարեաց, բայց ըստ մոլորութեան յանցանացն Եւայի ոչ մեղաւ Ադամ։ Արդ լուր դու զինչ ասէ 'ի միում վայրի. "Որպէս վասն մարդոյ մահ եղեւ, եւ վասն միոյ մարդոյ ամենեքին մեռանիմք". այլ ըստ համեմատի մոլորութեան յանցանացն Եւայի, Ադամայ յանցանքն նմանն ինչ ոչ էին։ Զի են իրք յորժամ միայն առանձինն իցեն եւ ունիցին զտեղի իշխանութեան, այլ 'ի գալ ընկերացն իւրեանց որ առաւել իցեն քան զնոսա, նոքա թէպէտ եւ իցեն՝ սակայն իբրեւ զոչինչ երեւին։ Ճրագ՝ զի 'ի խաւարի լուսաւորէ, 'ի տուէ նուաղի լոյս իւր. եւ լուսինն 'ի գիշերի լուսատու լինի, բայց յարեւու անդ ընկղմի նա։ Նա եւ Առաքեալ ասաց վասն փառացն Մովսիսի որ խափանելոցն էր. եւ արար զնա իբրու թէ չիցէ բնաւ. ոչ եթէ զի ոչ էր նա, այլ առ այս զոր Քրիստոս աշակերտացն իւրոց ետ, նա իբրու թէ չիցէ. զի անդդիմօք, բայց աստ եւ հաւատացելովք։ Նա զի Իսրայէլ մեռուցանելով մեռոյց, զի ոչ եղեն արժանի նմա. բայց աստ եւ ստուերք նոցա անկանէին 'ի վերայ մեռելոց եւ կէին. արդ առաւել են այս փառք քան զՄովսիսին որ անցանելոցն էր։ Արդ ոչինչ առաւելութիւն էր Ադամայ քան զԵւայի. այլ փոխանակ զի եղեւ նա պատճառք գայթագղութեան, եդ զնա 'ի ներքոյ հնազանդութեան. զի 'ի տեղւոջ յորում լինիցի այր 'ի մոլորութիւն յանցանաց, եւ կինն 'ի ճշմարտութիւն զայրն հնազանդեցուցանէ եւ զկինն իշխան առնէ. "Եթէ իցէ, ասէ, այրն անհաւատ եւ կինն հաւատացեալ, մի՛ թողցէ զայր իւր։ Ուստի՞, ասէ, գիտես կին դու՝ եթէ զայր քո ապրեցուցանես"։

## ԳԼՈՒԽ Գ

«ԵՄՈՒՏ Ադամ առ Եւայ կին իւր, յղացաւ և ծնաւ զԿայէն. ստացայ ինձ ասէ այր յԱյ: Եւ յաւել ևս ծնանել զեղբայր նորա զՀաբէլ»: Եւ եղև Կայէն Ադամայ որդի ճաշակեցուցիչ չարչարանաց. զի գիտասցէ թէ որպէս դառնացոյց նա զՀայրն հասարակաց: Կայէն ծնաւ անիծիւք զոր զգեցեալ էին հարք նորա. եղև նա դարձեալ գործել զերկիրն անիծեալ. խորհուրդ է այս այնոցիկ՝ որոց ամենայն խորհուրդք նոցա աստէն յերկրի են: Իսկ Հաբէլ հովիւ էր խաշանց, զի յանիծից հեռագոյն էր. խորհուրդ և օրինակ տեառն խաշանցն:

Ասեն այսպէս, թէ ըստ խրատու Հաբէլի եղև զի մատուսցեն նոքա պատարագս: Եւ կաց մնաց Հաբէլ Կայէնի զերիս ամիսս. զի երիւք ամսովք յառաջագոյն կանխեալ լինէին ծննդականք խաշանց քան զվաղահասուկ արտոց. բայց Կայէն գողացաւ զժամանակն յեղզօրէ անտի իւրմէ՝ կարծել իւրում թէ յառաջագոյն քան զնա ընդունելի լինի և 'ի դրախտ անդր երթայ: Եւ կարծի թէ վասն այնորիկ անարգեցաւ նա, զի նենգեաց զնա, և Հաբէլին ընդունելի եղև, զի պարզ և յստակ մտօք մատոյց. կամ 'ի մնացորդաց որկորստուէ իւրոյ մատոյց Կայէն, վասն այնորիկ անարգեցաւ նա. այլ Հաբէլ յանդրանկաց խաշանց իւրոց զպատարագսն իւր ած: Ի միտ առ դու յընթերցուածոց անտի. ոչ ասաց ոչ թէ «Հաճեցաւ ած ընդ պատարագս Հաբէլի», այլ յառաջ ընդ Հաբէլ, և ապա ընդ պատարագս նորա. քններաց նախ զսիրտն, և ապա ընկալաւ զպատարագս նորա: Այլ Կայէն զինքն յառաջագոյն աղտեղացոյց զանձն իւր. վասն այնորիկ դարձոյց զերեսս իւր 'ի պատարագաց անտի նորա:

Բայց Թէոդիտոն փոխանակ այնր՝ զի ասէ «Հաճեցաւ տէր ած ընդ Աբէլ հրով», ասէ «Մեկնեաց որոշեաց զընտիրսն յանարգէ անտի». վասն այնորիկ չար թուեցաւ Կայէնի: Եւ Սիմաքոս, «Զուար-

թացաւ տէր ած Հաբէլի . եթէ հաճոյ լինիցիս՝ թողից, ապա թէ ոչ՝ առ դուրս մեղք ,, ։ Ակիղաս, "Դարձեալ, ասէ, խոնարհեցաւ տէր ած Հաբէլի և պատարագաց նորա ,, ։ Եւ զի ասէ հաճոյ լինիցիս՝ ընկալայց, և եթէ միաբանիցես՝ այս ինքն մատուցանել ընդ եղբօր քում, և կամ որպէս եղբայրն քո, և հաճոյ լինիցիս առաջի հօրն քոյ ։ Եթէ էր քո ստուգութբ մատուցեալ և ոչ էր բաժանեալ, առեալ էր իմ . կամ եթէ հաճոյ լինիցիս 'ի չար՝ խորհրդոց մտի, զի մի լինիցիս եղբայրասպան։ Կամ անդրանկութբն իւրով և զօրութբ իւրով հպարտացեալ բարձրացեալ ձեռն յանձին հարեալ էր, և վասն նոցա անարգեցաւ նա խորհրդովք իւրովք . ասէ՝ եթէ հաճոյ լինիցիս 'ի խորհրդոց մտի յայնմանէ ։ Եւ զի ասէ՝ առ դուրս մեղք մակաղեալ նստէին, այս ինքն՝ մինչ դեռ աստէն ես դու՝ լոյծ զնախանձ քո քինեալ ընդ եղբօրն քում . ապա թէ ոչ՝ գիտեմ ես յելանելն քո յերեսաց իմոց զեղբայրն քո առնուս տանիս 'ի դաշտ սպանանել զնա ։ Եւ զի ասէ "Առ քեզ լիցի դարձ նորա ,, . այս ինքն պատարագին քո . փոխանակ զի պատուեցեր դու զանձն քո քան զիս, և քեզ զլաւն պահեցեր և ինձ զանարգն մատուցեր . վասն այսորիկ առ քեզ լիցի դարձ նորա ։ Իբրև ոք զի ասիցէ . և այդ ևս տուեալ լիցի քեզ . և դու տիրեսցես 'ի վերայ անարգ պատարագաց քոց . զի կարծեցեր դու թէ կարօտ ինչ իցեմ ես նմա ։ "Ոչ, ասէ, ուտեմ ես զմիս զուարակաց ,, . և "Պատարագ այ հոգի խոնարհ ,, ։

Արդ եթէ վասն զի ոչ եղև ընդունելի պատարագ նորա՝ տրտմեցաւ նա, ահաւասիկ խոնարհեցաւ և խօսեցաւ ընդ նմա քաղցրութբ՝ որ ինչ ընդ Հաբէլի ոչ խօսեցաւ . եթէ հաճոյ լինիցիս ասէ, ընկալայց ։ Տեսե՞ր . ոչ եթէ զի ոչ եղև ընդունելի պատարագն նորա, այլ փոխանակ զի եղբօրն նորա եղև ընդունելի ։ Եթէ հաճոյ լինիցիս, ասէ, համարեաց թէ առեալ եմ . փոխանակ զի ուսցիս ապաշխարութի, ուսաւ նա սպանութիւն ։ "Ո՞ւր է Հաբէլ եղբայր քո ,, . ա՞յս է հաճոյ լինել զոր ասացի քեզ՝ եթէ հաճոյ լինիցիս ։ Եւ զի ոչ փակեաց Աստուած զդուռն

ապաշխարութե՟ նորա, վասն այնորիկ «Մեծ են յան-
ցանք իմ»։

«Յարեաւ, ասէ, Կայէն 'ի վերայ եղբօր իւրոյ և սպան զնա։ Հարց զնա տէր. ասէ ո՞ւր է Հաբէլ եղբայր քո»։ Այլ նա քանզի յայնժամ ևս արբեալ էր նախանձուն չարութե՟, պատասխանի տուութե՟ ցասմամբ ետ ա՟յ. այնմիկ Թերևս և նմա ևս տպանացեալ էր նա, զի ոչ ընկալաւ զպատարագն նորա. նենգեաց նա զեղբայրն և ընդդէմ դարձաւ ա՟յ և ասէ «Ոչ գիտեմ»։ Եւ արդարև ոչ գիտաց, զի ոչ իմացաւ նա թէ զդատաստանն սպանմանն նորա 'ի ձեռն արեանն նորա ա՟յ մատուցանէր։ «Միթէ պահապան իցեմ ես եղբօրն իմում», ասէ. և երանի թէ պահապան և ոչ սպանող նորա։ Ա՟ծ հարցանէ զնա քաղցրութ՟բ զի զղջասցի վասն գործոյն զոր գործեացն, և նա տայր պատասխանի ցասմամբ. ոչ եղև նմա այն շատ՝ զի ասաց բայ չգիտեմ, այլ յաւել. «Միթէ պահապան ինչ իցեմ նորա», ասէ։

Հաբէլի իսկ արժան էր նախ իջանել 'ի դժոխս. զոր օրինակ վասն Ղաւթայ՝ որ գերին վարեցաւ ընդտոհմացինն՝ ապրեցոյց Աբրահամ զՍոդոմ, կեցուցէ 'ի պատճառս Հաբէլի զԱդամ։ Ճաշակեաց Ադամ զմահ՝ որ տուաւ նմա 'ի Հաբէլ որդի իւր. վերացաւ Ենովք, և ճաշակեաց Ադամ զկեանս անմահս յԵնովք յորդի որդւոյ՝ որդւոյն նորա։ Բայց ոչ եթէ 'ի նմին իսկ յաւուրն յորում զպատարագն մատուցին՝ սպանեալ էր նորա զՀաբէլ. զի եթէ 'ի նմին իսկ յաւուր սպանեալ էր նորա զնա, և Ադամ և Եւայ գիտէին, և ոչ ա՟յ ասէր նա. այլ օր մի երբեմըն զի ոչ գիտէին հարք նոցա, ասէ Կայէն ցՀաբէլ եղբայր իւր. եկ երթամք շրջիմք 'ի դաշտ զբօսանալ։ Եւ ոչ դարձեալ 'ի նմին աւուր յորում սպան Կայէն՝ հարց զնա ա՟ծ, որպէս զի գողասցի զնա եթէ չգիտիցէ ա՟ծ։ Եցոյց Կայէն զմեղս իւր լի կատարեալ. զի ըսպան մարդ, և արհամարհեաց զա՟ծ. հատոյց նմա ա՟ծ կատարեալ պատիժս, զի անարգեցաւ նա ամենայն զաւակօք իւրովք հանդերձ։ Գիտակն ամենայնի հարցանէր իբրև զանգէտ. զի յայտնի լիցի այն որ ստեացն թէ ո՞ւմ ստեաց։ Ո՞չ գիտես դու.

գիտակն զգիտակն հարցանէր. իբրու գիտէր ած՟, հարց իբրև զայն թէ չգիտիցէ. իբրու գիտէր սպանօղն՝ ուրացաւ իբրու զայն թէ չգիտիցէ: Իբրև եցոյց ած՟ զգիտութի՟ իւր, յայնժամ սպանօղն խոստովան եղև զգիտութի՟ իւր. "Մեծ են, ասէ, յանցանք իմ". վասն այսորիկ պատրաստեաց որդւոց իւրոց սպանութի՟: "Գոչումն արեան եղբօր քո բողոք ունի առ իս յերկրէ". և ոչ եթէ արիւն ճչէ նորա, այլ արիւնն նորա. և այս վասն կենդանութե՟ յարութե՟ նորա յայտ առնէ. "Արիւն նորա, ասէ, գոչէ". ոչ եթէ բերանով, այլ տեսլեամբ. իբրև այն զի ասէ "Երկինք պատմեն զփառս այ՟:

Ասէ. "Անիծեալ լիջիր դու յերեսաց երկրէ". փոխանակ զի ուսուցեր արուեստ գիտութե՟ չարութե՟ 'ի վերայ երեսաց երկրի: Անիծեալ լիջիր դու յերեսաց ամենայն երկրի. փոխանակ զի չարչարեցեր վշտացուցեր դու զԱդամ և զԵւայ զհարս ամենայն երկրի: Անիծեալ լիջիր դու յերեսաց ամ՟ երկրէ. փոխանակ զի սպաներ դու զայն որ բարւոքն էր քան զամենայն երկիր: Անիծեալ լիջիր դու յերեսաց ամենայն երկրէ. փոխանակ զի բացեր դու զդուռն դժոխոց առաջի ամենայն երկրի: Անիծեալ լիջիր դու յերեսաց ամենայն երկրէ. փոխանակ զի կամեցար դու միայն առանձին լինել 'ի վերայ ամենայն երկրի: "Երերեալ և տատանեալ լիջիր դու 'ի նմա". փոխանակ զի գնացեր դու 'ի նմա բարձրութբ՟ և ամբարտաւանութբ՟ 'ի վերայ երեսաց երկրի: Երերեալ և տատանեալ լիջիր դու 'ի նմա. փոխանակ զի յուսացար դու 'ի բռնութի՟ քո և 'ի զօրութի՟ քո, և սպաներ զնա: Երերեալ և տատանեալ լիջիր դու 'ի նմա. այն զի երկնչէին բնակիչք նորա 'ի նմանէ, երկիւղ ամենայն անկցի 'ի վերայ նորա: Յորժամ գործիցես դու զերկիր, և նա մի յաւելցէ քեզ տալ զզօրութի՟ իւր. քանզի ոչ օգտեցար դու առաջին զօրութբն՟ զոր առեր 'ի նմանէ, մի յաւելցէ քեզ տալ զզօրութի՟ իւր: Փոխանակ զի կամեցար դու միայն առանձին ունել զզօրութի՟ նորա, մի յաւելցէ քեզ տալ զզօրութիւնս իւր: Փոխանակ զի թաղեցեր դու զնա 'ի հող անդաստանի քո, վասն այսորիկ գործեա-

ցես դու զերկիր՝ և նա մի՛ յաւելցէ քեզ տալ զզօ-
րութի իւր :

"Ու ասէ Կայէն ցտէր . մեծ են յանցանք իմ" :
Եւ զի ասէ "Ահաւասիկ հանես զիս այսօր յերե-
սաց յերկրէ . և յերեսաց քոց մեկնեալ թաքուցեալ
իցեմ", զզօրութի այնոցիկ զոր ած ասացն՝ երկրա-
դեաց Կայէն : "Հանես զիս այսօր, ասէ, յերեսաց
երկրէ". զի անէծ զնա 'ի մէջ նորա . զի ոչ գոյր
նմա հանգիստ 'ի մէջ նորա : Եւ զի ասէ "Յերեսաց
քոց մեկնեալ թաքուցեալ իցեմ". զի ոչ ևս յաւե-
լու տեսանել զերեսս նորա որպէս և զառաջինն՝ այս
ինքն պատարագաւ . իբրու այն զի ասէ, հանից զնոսա
յերեսաց իմոց և ելցեն . զի ապականեաց նա զպատ-
կերայ, արժանի էր նմա ընկեցեալ մերժեալ լինել
յերեսացն այ : Եւ վասն այնորիկ ասաց՝ արիւն նորա
հեղցի . զի ըստ նմանութե պատկերի կերպարանաց այ
արարեալ է Ադամ : "Ամենայն որ գտանիցէ զիս,
ասէ, սպանցէ զիս" գազան կամ ապականիչ ինչ .
այս ինքն երերեալ տատանեալ դողայր նա, փախչէր
տեղւոջէ 'ի տեղի : Ոչ, ասէ, սպանցես՝ զի այդպէս ա-
մենայն սպանող . այլ 'ի Կայենէ եւթն պատժոց հա-
տուցումն խնդրեցի . այն իսկ է զի զեւթն դար նորա
տեսանէին զերերել զտատանել նորա . կամ զի եւ-
թանքն անարգէին ընդ նմա . քանզի ասաց նա՝ բայց
"Ամենայն որ գտանիցէ սպանցէ զիս", ասէ ցնա՝ ոչ :

Ու իբրև եդ 'ի նմա նշան, զի ամենայն որ տեսա-
նիցէ զնա մի՛ իշխեսցէ սպանանել զնա, զի 'ի կեանս
իւր հատուսցի նմա . իբրև զայն զի ասէ Դաւիթ .
"Մի՛ սպանաներ զնոսա, զի մի՛ մոռասցին զժողովուրդ
իմ". որպէս զի մի՛ մոռասցին բազումք առանց պատժոց
պատուհասից . սոյնպէս և նոքա : Այլ զի՞նչ ասէ .
"Խռովեա զնոսա զօրութ քով, և կործանեա զնոսա"
այլովքն հանդերձ : Զի յայտնի լիցի վրէժխնդրու-
թիւն, երերեալ տատանեալ շրջէր 'ի վերայ երկրի :
"Ամենայն որ գտանէ զիս՝ սպանցէ զիս". աղօթք են .
փոխանակ սպանման նորա խնդրեաց նա՝ զի սպա-
նեալ եղիցի : Եւ յայսմ վայրի սաստկութի խորհե-
ցաւ նա . թէպէտ և յեւթն պատժոց անտի կամե-
ցաւ խորամանկութե փախչել : Ասէ ցնա ած՝ ոչ,

այլ ամենայն սպանող որ 'ի քէն և անդր լինի, անձն ընդ անձին տացէ . բայց դու ընդ միոյ եւթն տայցես ։ Եւ զի ոչ համբերէր բնութիւն նորա եւթն պատիժս տալ փոխանակ ընդ միոյ , զօրութիւն հրամանին այն՝ որ ասաց թէ եւթն ընդ միոյ տացէ՝ կապեաց զշունչ նորա 'ի մարմնի նորա . զի զտանջանս մահու 'ի կեանս իւր տեսցէ ընդ միոյ եւթն ։ Վասն էր . զի ստեղծ և անդ ազատութիւն նորա գործ մի՝ որ ոչ էր անուանեալ . եւ ստուգութիւնն անչափ բարկութեան , փոխանակ ընդ միոյ պատժի զոր պարտէր նա, եւթն պատիժըս եդ 'ի վերայ նորա ։ Զի աստի եդ ա̃ծ զայս , զի ամենայն յորժամ գտցէ ժպրհութիւն համարձակութեան յաշխարհի մեղք՝ որ ոչ անուանեալ յառաջ քան զնա , անչափ պատիժս ընկալցի ։

Եւ ո՞ւր է այն՝ զի ասէ “Ապականեաց ամենայն մարմին զճանապարհս իւր , և ընջեաց զնոսա ջուրքն հեղեղզք „ ։ Եւ սոդոմայեցիքն , և որ զաշտարակն շինէին , և տունն Կորխայ . և յետ ժամանակի նոյն իսկ պաշտեցաւ 'ի մէջ մարդկան ։ Եւ զայն նոր հատուցմունս վրիժուց, զոր ընկալան այնոքիկ որ գտին ըզմեղս , ոչ ա̃ծ ստոյգն 'ի վերայ առնելեաց խարդախութեանցն ։ Նոյնպէս և արդարութիւն, որ 'ի մի մի ստուգաց անտի որ եգիտ անձին իւրում արդարութիւն՝ որ յառաջ քան զնա չէր երևեալ , ընկալաւ զհատուցումն որ յառաջ քան զնա ոչ էր անուանեալ . Ենովք , Նոյ , Մելքիսեդեկ , Աբրահամ , Մովսէս , Եղիա և տունն Դանիէլի , այլովքն հանդերձ ։ Բայց Յոյնն՝ “Ամենայն սպանող Կայէն ընդ միոյ եւթն կացուսցէ„ այս ինքն հատուսցէ . կամ զեւթն պատիժսն լուծցէ որ եկին 'ի վերայ նորա եւթն յանցանաց . այս ինքն , այս առաջին նախանձն , զի ոչ եղև ընդունելի պատարագն որպէս եղբօրն իւրոյ . երկրորդ՝ նենգութիւն , յայնմիկ զի ասէ “Եկ երթամք 'ի դաշտ „ . երրորդ՝ սպանութիւն . և չորրորդ՝ զի զեղբայրն իւր եսպան . հինգերորդ՝ զի նա եղև սպանող առաջին . վեցերորդ՝ սուգ և տրտմութիւն հարցն նորա . եւթներորդ՝ զի ստեաց ա̃յ . և ընդդէմ այսորիկ եկին հասին 'ի վերայ նորա եւթն պատիժք ։ Առաջինն՝ անիծեալ լիջիր դու յերկրէ . երկրորդն՝ մի̃ յաւելցէ քեզ տալ

զզօրութիւն․ երրորդ՝ երերումն հանապազորդ․ չորրորդ՝ տատանումն մարմնոյ․ հինգերորդ՝ զի օտարացաւ նա յընտանութենէ ա̃յ։ “Ցերեսաց քոց, ասէ, թագուցեալ իցեմ„․ վեցերորդ՝ նշանն զոր եդ 'ի վերայ նորա․ եւթներորդ՝ սահմանն որ եղեւ 'ի մէջ նորա և 'ի մէջ հարց նորա, զի օտարացաւ նա յընտանութենէ առաջին համարձակութե̃ն։

Բայց դարձեալ զի Կայէն յեւթն դար հատուսցէ՝ ողորմութի̃ տուան նմա այս, զի մի՛ անցցէ խրատ նորա այլ ևս քան զեւթն դար․ իբրև զայն զի ասէ “Մինչև յերիս և 'ի չորս դարս հատուցանէ ատելեաց իւրոց„․ ողորմութեանց է։ Թէ այդ այդպէս է, և այս Կայէնիս՝ զի յեւթն դարսն հատուսցէ։ Եւ զի բարուոք լուաւ զնա Ղամէք․ զի և 'ի նմա յետ եւթն եւթանասնեկին ողորմութիւնք լինին 'ի վերայ նորա։ Եւ այն զի խոստովան եղև յասելն իւրում “Մեծ են յանցանք իմ քան զներել թողութեան„․ այս նշան զի մեծացոյց նա զյանցանս իւր քան զողորմութի̃ն ա̃յ, յայտ արար՝ զի թէպէտ և ճշմարտիւ մեծ են յանցանք նորա, սակայն քան զողորմութի̃ն ա̃յ փոքր են։ Եւ ի̃ւ մեծ են․ այլ այնուիկ՝ զի ընդ միոյ եւթն խնդրեաց։ Ահա լքեալ թողեալ ես դու իբրև զհայրն քո, զի բարձրացաւ 'ի վերայ իմ․ և զի առ օրէն հրամայեցի ես մեռանել նմա, և ահա կեայ։ Եւ հայեցաւ Կայէն, ետես թէ քան զհօրն իմոյ մեծացան յանցանք իմ, իբրու քան զայն ոչ էին մեծ․ ապա եթէ ոչ ընդէ՞ր ասէ՝ ոչ ողորմի ինձ։ Արդ Ադամ բարձրացաւ 'ի վերայ ա̃յ, և Կայէն որդի նորա 'ի վերայ ծառայից ա̃յ․ իսկ Սէթ եղև հիմն ազգին արդարոց։

Եւ եդ 'ի Կայէն նշան՝ զի մի՛ ոք իշխեսցէ սպանանել զնա, այնպիսի որ գիտէին զնա՝ բայց երկիրն Նայիդ․ այն իսկ է զի երերէրն և տատանէրն․ և նշանն զոր եդ 'ի նմա օտար է եւթն պատժոցն։ Եթէ մեռեալ էր Կայէնի՝ զոր խնդրեաց նա, զո՞ր մարդիկ երկեցուցանէր նովաւ․ այլ զայս ասասցուք, զի եթէ 'ի վերայ եւթն դարու Կայէնի ձգեցան յանցանք նորա, ընդէ՞ր ոչ արար յայտ․ զի այն որ ասաց ցԱդամ “Անիծեալ լիցի երկիրն վասն քո„, կարօղ էր ասել ցԿայէն, անիծեալ լիցին ծնունդք քո վասն քո․ և

այն որ եղծող զՔամ և անէծ զՔանան, կարող էր անխծանել զազգն Կայենի՝ Կայենիւ համդերձ: Նա և կարեմք իսկ ոչ մեք ցուցանել՝ եթէ եւթն դարք նորա ընկալան զպատիժս նորա, զի ոչ է գրեալ թէ հատուսցի նմա եւթն դարովք իւրովք համդերձ. այլ «Կայէն, ասէ, ընդ միոյ եւթն պատժեսցի»: Նա և ինքն իսկ անխծաւ, և նա ինքնին եղև երերեալ, և 'ի նմանէ եղաւ նմա նշան, և ոչ 'ի զաւակի նորա. վասն այսորիկ 'ի վերայ նորա ասացեալ էր ընդ միոյ եւթն: Զի ահաւանիկ որդիքն Յոբէլայ և Յոբաղայ թէպէտ և եւթներորդք էին 'ի Կայենէ, սակայն քանզի և նոքա ծնան՝ եղեն որդիք նոցա ութերորդք: Բայց արդ Ադամաւ և Կայենիւ համդերձ տասներորդք էին. զի են դարքն այսպէս. Ադամ, Կայէն, Ենովք, Գեդադ, Միէլ, Մաթուսաղայ, Ղամէք, Յոբէլ և Յոբաղ, որդիք նոցա ութերորդք. բայց որդիք նոցա բնակիչք վրանաց իններորդք. և սկայազունքն տասներորդք:

Խափանեցաւ այն՝ զի ասէ եւթն. զի ասացաւ Կայենի ընդ միոյ եւթն, ինքն ած զայս 'ի վերայ իւր. զի եթէ լուեալ դադարեալ էր նորա յետ առաջին պատժոցն, 'ի նշանէ անտի և յայնմանէ զի ասէր ընդ միոյ եւթն տուժեսցի՝ ապրէր նա: Այլ զի խնդրեաց նա իւր մահ զի ապրեսցի 'ի պատժոց անտի սաստկութենէ, ասէ ցնա ընդ միոյ եւթն. իբրև յաւելաւ նմա նշանն ևս, փոխանակ զի խնդրեցեր դու մահ, եւթն դար եկեսցեն և տեսցեն զվատթարութիւն անարգանաց քոց: Բայց հեբրայեցի՝ «Եւ եդ տէր նըշան 'ի Կայէն». այս ինքն զի պատուիրեաց նա զի մի ոք իշխեսցէ սպանանել զնա յառաջ քան զայն եւթն դարսն: Արդ ոչ եթէ 'ի նմա եդ զնշանն, այլ զնա եդ նշան պատժովք իւրովք յայն՝ զի մի ոք սպանցէ զնա. «Ամենայն որ գտցէ զիս՝ սպանցէ զիս»: Ոչ. ասէ ամենայն սպանօղ մեռցի. բայց Կայէն ընդ միոյ եւթն տուժեսցի: Բայց Սիմաքոս ասէ. «Կայէն եւթն դար տացէ զդատաստանս». և Թէոդիտոն՝ «Կայէն եւթն դար հատուսցէ»:

Բայց դարձեալ ասասցուք. զի եթէ չէր խառնեալ ազգաց նոցա, 'ի վերայ եւթն դարու նորա

ձգեալ լինէին պատիժք նորա և կիրք. զի համարեցան մինչև ցեւթն և լռեցին. զի յայտ արասցեն եթէ այս դարք տան նշան Կայենի՝ զի կեցին յետոյ վասն անօրէնութ̃ որդւոցն Սեթայ մնացին. և վասն այնորիկ եղև երկայնմտութ̃ վասն սոցա և 'ի վերայ այնոցիկ. զի եթէ ըստ հրամանի դատակնքին լինեալ էր, եւթներորդ դարու անդ լինեալ էր նոցա սատակումն որդւոյն Կայենի: Եւ զի փոքր էր նա և չէր բաւական եթէ միայն ընկալցի նա զպատիժս յանցանաց իւրոց, ձգեցան 'ի վերայ եւթն դարուն. զոր օրինակ ձգեցան պատիժքն Ադամայ 'ի վերայ ծնընդոց նորա: Եւ զոր օրինակ ընկալաւ զպատիժս Նաքովրայ կին իւր և որդիք և ստացուածք իւր, և զԱքայաբու եւթանասուն որդիք նորա, և զՍաւուղայ եւթն որդի նորա, սոյնպէս և զԿայենին: Թէպէտ և այսպէս ասացաւ, սակայն ոչ եղև. զի ոչ եկն 'ի դարու անդ եւթներորդի հատուցումն յանցանաց նորա. և 'ի տասներորդի անդ զի եկն, Կայէն ոչ էր կենդանի: Իսկ զիա՞րդ ապրեցաւ 'ի պատժոց անտի գործիչն սպանման, և եկն հատուցումն նորա 'ի վերայ այնոցիկ՝ որ ոչն գիտէին. և ու՞ր է այն զի ասէ, Կայէն ընդ միոյ եւթն տուժեսցի. զի ըստ գրոց ընդ նոսին իսկ ընդ դարս իւր տուժելոց էր: Արդ զիա՞րդ ապրեցաւ Կայէն 'ի Ջրհեղեղէ անտի. այն զի վասն նորա իսկ եղև, և մաշեցան նովաւ որդիք Սէթայ, այնոքիկ՝ որք ոչ գիտէին զնա: Ապա եթէ 'ի տասներորդ դարու անդ եղև Ջրհեղեղն, և Կայէն ոչ էր կենդանի, յայտ է թէ վասն անօրէնութեան որդւոյն Սեթայ մնացին երեք դարքն Կայենի:

Խորամանգեցաւ Ղամէք խրատուն իւրով՝ որ առկանայս իւր՝ խառնել զազգն, որ որոշ էին յաւուրց անտի Կայենի և Սեթայ: Ետես նա թէ Կայէն կենդանի է, և որդիքն Սեթայ խառնել ընդ նոսա ոչ կամէին, զի այսպէս կատականաց լեալ էին ազգն նոցա վասն Կայենի: Եւ զի բարձցէ 'ի նոցանէ զնախատինսըն, ըստ նմին հօրն որդին դողդոջէր. այն էր "Երկտասարդ 'ի ցաւս": Սպան Ղամէք զԿայէն և զորդի նորա կրտսեր, զոր ծնեալ էր նորա ըստ նմանութե պատկերի կերպարանաց իւրոց. զի մի յիշեսցեն զԿայ-

էին 'ի պատճառս նորա․ զի այնու գործովլ հաճոյ լինիցի նա որդւոցն Սեթայ․ ահաւասիկ, ասէ, խնդրեցաւ վրէժն 'ի Կայենէ ։ Եւ ապա ետ խրատ կանանց իւրոց զարդարել զդստերս իւրեանց․ յայնմ հետէ ասէ զի Կայէն մեռաւ՝ յորժամ տեսանիցեն որդիքն Սեթայ զդստերս ձեր, հաւանեսցին խառնել ընդ նոսա․ եւ 'ի պատճառս նոցա ապրիմք մեք 'ի բարկութենէ անտի, որ գալոց են 'ի վերայ մեր 'ի պատճառս Կայենի ։ Յորժամ ասէ "Ադա եւ Սեղա լուարուք ձայնի իմում„, ո՞չ ահա յայտ է՝ զոր օրինակ ոք զի հաւանեցուցանէ եւ խրատէ 'ի գործել ինչ մի․ այսպէս յայտ առնէ բան նորա՝ զի ասէ "Լուարուք ինձ եւ անսացէք ինձ„․ այս ինքն զի պաճուճեսցեն եւ զարդարեսցեն զդստերս իւրեանց, եւ ուսուսցեն նոցա երգս եւ մոլորութիս պղծութեան ։ Զի Յոբէլ արար վրանս․ "Նա է, ասէ, հայր այնոցիկ՝ որ բնակեալ են 'ի վրանս խաշնարածաց„ ։ Եւ Յոբաղ ուսոյց զերգս արուեստականաց․ "Նա եղեւ, ասէ, հայր այնոցիկ՝ որ ցուցին զերգս եւ զքնարս„ ։ Եւ Թոբէլայ կին կազմեաց զփողս․ "Նա եղեւ, ասէ, ճարտարապետ ամենայն գործոց պղնձոյ եւ երկաթոյ„ ։ Եւ Նաեմաս ուսոյց զարդ եւ հիւսս դստերաց նոցա․ եւ կացուցին զնոսա ըստ խրատուն Ղամեքայ, որպէս եւ զմադիանացիսն, եւ գերեցան ։

Եւ քանզի որդիքն Սեթայ կոչեցեալ էին որդիք ա̃յ, սկսան, ասէ, կարդալ զանուն տեառն ա̃յ․ իբրեւ զայն զի ասէ "Ասացի թէ ա̃ծք իցէք„ ։ Եւ որդիքն Կայենի կոչեցան մարդիկ․ սակայն ա̃ծ յազգ արդարոց է ։ Եւ իբրեւ խորամանկեցին հնարեցին տունն Կայենի եւ գրգռեցին յօժարեցուցին զորդիսն Սեթայ, եւ առին իւրեանց կանայս յամենայնէ զոր ընտրեցին, վասն այնորիկ ընկղմեցան նոքա վերին եւ ներքին ջրովքն․ իբրեւ զայն զի ասէ "Խորք խորոց կարդացին առ քեզ„ ։ Եւ փոխանակ զի արբին նոքա յօտար աղբերէ, ընկալան նոքա զհատուցումն ջրովքըն օտարոտեօք ։ Վասն այսորիկ "Արբցես ջուր 'ի քոց աղբերաց, եւ 'ի քոց վտակաց զեղցին քեզ ջուրք քո„․ եւ Դաւիթ ասէ․ "Փորձեցին զնա 'ի վերայ ջուրցն հակառակութեանցն„․ այս ինքն զՅովսէփ

'ի ձեռն տիկնոջ իւրոյ ։ կամ զԿայէն միայն եսպան , զԿայէն 'ի վէրս և յապտակս ․ որպէս և ինքն Ղամէք պատմեաց առաջի նոցա 'ի զղջանալ անձին իւրոյ ։ Եւ իբրև մեղ դնէին նմա կանայք իւր , ասէ ցնոսա ․ թէ նա զարդար եսպան՝ եւթն դար տուժեցաւ , ես զի սպանող սպանի՝ եւթանասնեկին եւթն տուժելոց իցեմ ։ Դարձեալ ասէ ․ զի ոչ եթէ սպանանելով եսպան , այլ զի գիտաց և իմացաւ զգալ Ջրհեղեղին ․ ինքն Ղամէք զի ասացեալ էր յայնմանէ զի ասէ , յեւթն հատուցումն վրիժուց տուժեսցի ․ և յայնմանէ որ քարոզեցաւն 'ի ձեռն Նոյի ։ Եւ ծնունդ Կայէնի սակաւ էր , և նորա ծնունդք բազում էին , զի մի մի ծնանէին ․ և նա ծնաւ իւր չորս ․ իբրև ոք զի տրտնջէ , ասէ ․ այր սպանի 'ի վէրս ինձ , զի Կայէն ընդ միոյ եւթն հատուցանելոց է , և Ղամէք իւթանասուն և եւթն վասն Ջուրցն հեղեղին , զի եկն և ջնջեաց զզաւակ նորա ։

Դարձեալ լսի թէ արդարեւ սպան , որպէս ինքն վկայեաց ․ և առ նա մխիթարել զկանայս իւր՝ թէ զայն ինչ զոր արարի ես , ոչ վասն վիրաց իմոց և ոչ վասն հարուածոց իմոց ․ զի եթէ Կայէն՝ զի նա եղև առաջին սպանող և զեղբայր իւր զարդար եսպան՝ եւթն դարս պատժեցաւ , զվրէժ իւր հարկ է և Ղամեքայ հատուցանել եւթանասնեկին եւթն ։ Իբրև այն զի ասէ "Եղիցի խաղաղութի և ճշմարտութի յաւուրս իմ ,, ․ եբրայեցի ասէ ․ " Զի ընդ միոյ եւթն հատուցումն հատուցաւ այս Կայէնի ,, ։ Ինքն Թոբէլայ կինն ասէ որդւոյ Ղամեքայ՝ սպան զԿային ․ զի Թոբէլայ կինն սատակիչ Կայէնի Թարգմանի 'ի հեբրայեցւոց բարբառոյ անտի ։ Բայց դարձեալ թէ նա ըսպան զԿային , և ոչ զի յեւթն դար ջնջեցաւ նա ․ այլ թէ արդարեւ ճշմարիտ սպան Ղամէք այր և երիտասարդ , որպէս և յայսմ երեսս վկայեաց , բայց ոչ էր վայելուչ զի 'ի Ջրհեղեղէ անտի լուասցին մեղք նորա եւթն դարուն ժամանակի ․ քանզի 'ի ձեռն տեառն մերոյ ջնջեցան մեղքն նորա ։ Եւ գտանեմք մեք զայս յերկրորդել ազգացն Ղուկայ աւետարանագրի , զի յեւթանասուն և եւթն դարու ծնաւ տէր մեր քաւիչ ծննդոց Ադամայ ։

Ադամ զի ծնաւ ըստ պատկերի կերպարանաց իւրոյ, զի եղիցի պատկեր Ադամայ երկրորդի՝ սկիզբն առաջնոյ. և փոխեցաւ պատկերն Ադամայ առաջնոյ ՚ի ծնունդս երկրորդ Սեթայ։ Ենովք սուրբութե՟ իւրով գաղանացաւ ՚ի վերայ մահու և յաղթեաց նմա, և սատակեցաւ ՚ի վերայ նորա և կոխեաց, զի հայեցաւ նա ՚ի միտս իւր և ասէ. թէ արդարև ճշմարիտ տուեալ էր Ադամայ անմահութի, հաճոյ եղէց ես. և յայսմ հետէ և անդր տեսից թէ արդարև յաղթահարելոց իցէ մահ, և ես մտանելոց իցեմ ՚ի դրախտն փափկութե։ Արդ զոր օրինակ յափշտակեցաւ Եղիա ել՝ ետես Եղիշէ. նոյնպէս յափշտակեցաւ Ենովք և ետես Ադամ. զի մի կարծիցի թէ որպէս Հաբէլն սպանեալ է, և ոչ է ՚ի միջի։ Իբրև ոչ գտաւ Հաբէլ ՚ի միջի, կարծեցին տունն Ադամայ թէ ՚ի դրախտ անդր յափշտակեցաւ. որպէս խաբեաց զնա Կայէն յասել անդ իւրում. ընդունելի եղև պատարագն նորա և յափշտակեցաւ։ Եւ եղեն վկայք Ադամ Ենովքայ վասն Կայենի սպանողի, և Եղիշէ Եղիայի վասն Յեզաբելի սպանողի։ Արդ Ենովք և Եղիշա ՚ի դրախտ անդ մտին. և զի ելին երկուք՝ որ յանցեան, մտին որ առաքինացան. զի յամօթ լիցի Ադամ. զի զինուն որով պարտաւորեցաւ Ադամ, նովին յաղթեցին նոքա։ Եւ զի մտին յառաջ քան զտէր մեր ՚ի դրախտ անդր, զի զմեզ յանդիմանեսցեն. զի ոչ եթէ բռնութիւն տէրութեան տեառն մերոյ միայն եբաց զնա իբրև զմ͞ծ, այլ տոհմակիցք մեր, զայն տեղի՝ որոյ դուռն սայր սուսերի էր։

## ԳԼՈՒԽ Դ

Ու զի եղև Նոյ հինգհարիւրամենի և ոչ ամուսնացաւ, երկեաւ զի մի ծնցի որդիս և պղծեսցին նոքա ընդ դստերսն Կայենի, զհինգհարիւր ամ պահեաց նա զկուսութի. քանզի որդիքն ա͞յ կոչեցան. զի ամփոփ էին կեանք նոցա, որ մինչև ցհինգհարիւր ամ յանուն հոգւոյն անուանեցան։ Վասն այսորիկ ՚ի ժամանակի իբրև ամփոփեաց առ ինքն զկեանսն, զի

եղիցի յիննհարիւրամեան Նոյի 'ի հարիւր և 'ի քսան . ասէ "Մի՛ բնակեսցէ հոգի իմ 'ի մարդիկ մինչև յաւիտեան ,, : Եւ զի ցուցցէ զսէր իւր առ Նոյ , միում յորդւոց անտի նորա աւելի քան զհարիւր և զքսան ամ ետ նմա կեալ ստուգութեամբ : Հրամայեաց , և ողորմութեամբ լոյծ զնոյն . այլ ոչ մինչև յիննհարիւր ամ , և ոչ դարձեալ 'ի հարիւր և 'ի քսան միայն . յայնմիկ զի անցուցանէ նա քան զհարիւր և զքսան ամ անդր՝ յայտ առնէ զողորմութիւն գթութեան իւրոյ . և յայնմիկ զի ոչ հասուցանէ զնա յիննհարիւր ամ՝ քարոզէ զստուգութիւն արդարութեան իւրոյ :

Մ՚իտ դիր դու 'ի նմին կարգի ընթերցուածոյ . "Եւ ասէ մի՛ մնասցէ հոգի իմ 'ի նոսա յաւիտեան ,, : Քանզի այս ուխտ լեալ էր՝ թէ յաւիտեան բնակեսցէ . փոխանակ այնր զի ոչ կամեցան նոքա , և ասէ "Մի՛ բնակեսցէ հոգի իմ 'ի նոսա յաւիտեան ,, . մի՛ կեցցեն և նոքա մինչև յաւիտեան , այս ինքն զամենայն զկեանսն իւրեանց . այլ եղիցին աւուրք կենաց նոցա հարիւր և քսան ամ : Արդ զի ասէ "Մի՛ բնակեսցէ հոգի իմ 'ի նոսա յաւիտեան ,, , այս է . զի մի՛ ընդերկայնեսցին աւուրք կենաց նոցա յաշխարհ . զի հալածեցին զհոգին զի մի՛ բնակեսցէ 'ի նոսա յաւիտեան , հալածեցաւ 'ի նոցանէն կենդանութիւն իւրեանց , զի մի՛ բնակեսցէ 'ի նոսա յաւիտեան : Զինի յանցանացն եկն եհաս վրէժխնդրութիւն իբրու զուգեալ էր ընդ նմա թիւրութիւն . ոչ բնակեաց հոգի իմ 'ի ձեզ յաւիտեան , մի՛ բնակեսցէ 'ի ձեզ կենդանութիւն ձեր յաւիտեան :

Արդ "Եղիցին աւուրք կենաց ձերոց հարիւր և քսան ամ ,, . զայս քարոզէր Նոյ , զի գործ տապանին տուաւ նմա : Պաստակեցին աշխատեցան 'ի գործ տապանին , և այպն կատականաց առնէին զփրկութիւն նորա : "Զղջացաւ , ասէ , տէր ա̃ծ՝ զի արար զԱդամ 'ի վերայ երկրի ,, , զի մեք 'ի միտս մեր զղջասցուք և աշխատեսցուք . զի եթէ ա̃ծ վասն մեր զղջացաւ , որչափ ևս առաւել մեք վասն անձանց մերոց : Զի թէ արդարեւ զի արար զԱդամ՝ զղջացաւ նա , ոչ պահէր 'ի տապանի անդ մնացորդս 'ի զաւակէ

նորա ։ Յայնմիկ՝ զի ապրեցոյց զՆոյ, յայտ արար զի զմեղաւորսն կամեցաւ զղջացուցանել ․ և այն զի ասէ՝ քանզի են նոքա մարմին, փոխանակ զի եղեն նոքա 'ի միտս մարմնոյ ․ «Խորհուրդ մարմնոյ, ասէ, թշնամութիւն է առ յած» ․ և «Մարմին և արիւն զարքայութիւն այ ոչ ժառանգեն»։ Եւ զի երկայնամիտ եղև և ներեաց նոցա, մի՝ զի ապաշխարեսցեն, և երկրորդ՝ զի մնայցեն արդարքն 'ի միջի նոցա ․ զի նոքօք դատապարտեալ լինիցին, և յագեալ լիցին արդարքն կենօք իւրեանց ։ Եւ զի մի ասասցեն մեղաւորքն, և սոքա զի ոչ խառնակեցան, թէ այդ այդպէս է ընդէ՞ր ոչ եթող զնոսա, և սուտ լինիցի յաչս նոցա դատակնիքն ։

Տես դու որչափ կողմանք են հարիւր և քսան ամին ․ հայեաց դու 'ի Նոյ զի հինգ հարեւր ամ համբեր յամուսնութէ ։ Յամօթ եղիցի Մարկիոն, զի ասէ՝ 'ի տեառնէ և այսր եղև այս ամենայն սրբութիւն, և ոչ եւս այլ աւելի ։ Սոյնպէս և Ենովք ։ Եւ այն զի ասէ «Զղջացաւ տէր ած», զի ցուցցէ մեզ զի ոչ եթէ յայս իրս հեղձման հաստատեաց զնոսա, այլ յայն գրգութի փափկութ ․ բայց մխիթարեցաւ նա և ողորմեցաւ յայնմիկ՝ զի ասէ «Կնճիռն, ասէ, ամենայն մարդկան 'ի խնամս չարի հաստատեալ է 'ի մանկութէ իւրմէ» ․ այս լինքն խորհուրդք նորա ։

Օ գործս բարւոքս Նոյի ըստ ծննդոց նորա կարգեցին գիրք ․ «Եւ էր Նոյ, ասէ, այր արդար և կատարեալ յազգի անդ իւրում ․ և հաճոյ էր Նոյ այ»։ Իբրև զայն զի ասէ «Ծնաւ Նոյ զՍեմ զՔամ և զԱբեթ», թուեաց նախ զծնունդս հոգւոյ, և ապա համարեցաւ զծնունդս մարմնոյ ։ Տես որչափ մեծ է Նոյ, զի՛ արգել և եհատ զանձն իւր 'ի ցանկութեց անտի դարուն այնորիկ զհինգհարիւր ամ ․ և որդիք դարուն իւրոյ զի ոչ ետուն տեղի և բնակութ զգաստութե 'ի մարմինս իւրեանց, ոչ տուաւ նոցա յարկի տեղի 'ի տապանի անդ՝ որ լի է զգաստիւք ։ Գտաւ տեղի յարկի Նոյի 'ի տապանի անդ, զի արար նա տեղի զգաստութե 'ի մարմինս իւր ։ Բնակեցոյց զնա ած յարկս տապանին, փոխանակ զի բնակեցոյց նա զգաստութի յանդամն իւր ․ զգաստութի որ հեղձաւ յամենայն մարմինս, 'ի մարմին Նոյի հանգեաւ ․ հան-

գեաւ նա 'ի ծոց տապանին ։ Եւ փոխանակ զի ոչ յաղթահարեցաւ յանդամս մարմնոյ, յաղթեաց նա յարկս փայտեղէնս. մինչ չեւ արարեալ էր զտապանն 'ի պահպանութ՟ի մարմնոյ իւրոյ, արար զզգուշութ՟ի պահպանութ՟ե մտաց իւրոց ։ Ստուգութ՟բ եւ արդարութեամբ պահեաց զնա ա՟ծ, զայն որ յառաջ քան զպահելն ա՟յ ինքն եղեւ պահապան անձին իւրոյ. զի պահեաց նա զմիտս իւր, զի մի հեղձեալ լիցի նա 'ի ցանկութ՟է. պահեաց զմարմին նորա, զի մի հեղձեալ լիցի նա 'ի ջուրց անտի հեղեղէ ։

Սատակեաց կորոյս ա՟ծ զամենայն մարմինս զայնոսիկ՝ որք յառաջագոյն կորուսին զանձինս իւրեանց ։ Ոչ եղեւ անխնայութ՟ի յա՟յ 'ի վերայ այնոցիկ, որք ոչն արարին անխնայութ՟ի 'ի վերայ անձանց իւրեանց. բայց խնայեաց եւ կարճեաց զկեանս նոցա, զի որպէս զպարանս երկայնս երկայնէին զմեղս իւրեանց ։ Եբաց զհոսանս 'ի ներքուստ եւ 'ի վերուստ, զի շիջուսցէ զհուրն՝ որ 'ի միջոյ նոցա վառեցաւ բորբոքեցաւ 'ի նոսա ։ Բազմացան ջուրքն, զի բազմացաւ ցանկութ՟ի ըստ հրոյ, շիջուցիչք նորա. ծածկեցան լերինք ջուրբք, զի ծածկեաց ցանկութիւն զամենայն մարմին ։ Ծածկեցան լերինք՝ զի մի ոք գտցէ իւր դադար 'ի վերայ երկրի, փոխանակ զի ոչ գտաւ սրբութ՟ե 'ի նոսա տեղի բնակութ՟ե ։ Տկարացոյց 'ի ներքոյ իւր տապանն նոյի զալիսն, փոխանակ զի տկարացոյց համբերութ՟ի նոյի զալիս պէսպէս ցանկութ՟եց ։ Վերացաւ բարձրացաւ տապանն նոյի 'ի վերոյ քան զամենայն իրս վնասակարս, զի ոչ հնազանդեցան խորհուրդք նորա լինել ներքոյ քան զխոտրղտումն մարմնոյ ։ Բնակեցոյց ա՟ծ զնոյ 'ի փայտեղէն ապարանսն, փոխանակ զի բնակեցոյց նա զԱստուած 'ի տաճար մարմնոյ իւրոյ ։

Պաշտեաց նա զա՟ծ որպէս քահանայ, որպէս բնակեալ էր 'ի նմա ա՟ծ ։ Պաշտեաց զնա բերան աղաւնւոյն 'ի պտուղ ձիթենոյն՝ խորհուրդ քահանայութ՟ե. այս ինքն է զի ոչ մեղանն նմա գազանքն որ բնակեալ էին ընդ նմա յարկս փայտեղէնս, փոխանակ զի ոչ վնասեցին նմա ցանկութիւնք որ բնակեալ էին ընդ նմա յանդամս մարմնոյ նորա ։ Մի՛ զարմանար դու ընդ առեւծս որ

բնակեալ էին ընդ նմա և ոչ ապականէին զնա , այլ յոյժ զարմացիր դու ընդ խոնարհութեամբ որ բնակեալ էր յանդամս նորա և ոչ վնասեցաւ նա : Եւ մի՛ զարմանար դու զի մերձեցաւ մատակ առեւծ 'ի մարմինս նորա և ոչ ապականեաց զնա , այլ զարմասջիր դու ընդ ցանկութիւն մարմնոյ նորա՝ զի 'ի մարմին նորա ոչ մերձեցաւ : Մի՛ զարմանար դու զի ոչ մերձան նմա գազանք ապականիչք՝ որ յամենայն կողմանց շուրջ պատեալ էին զնովաւ . այլ ընդ այն զարմասջիր , զի ոչ գայթագղեցուցին զնա կանայք պղծալիցք գայթագղեցուցիչք՝ որ յամենայն կողմանց շուրջ պատեալ էին զնովաւ :

Սրբութիւն հնազանդեաց զգազանս , և ազատութիւն զցանկութիւնս . արար մեծ զայն որ մեծն էր , և արար մարդն զայն որ մարդոյն էր . հնազանդ արար նմա զգազանսն զայնոսիկ՝ զոր ինքն հնազանդել ոչ կարէր . և հնազանդեցոյց ինքն զցանկութիւնս զի կարող էր հնազանդել զնոսա : Սոյնպէս և տունն Անանիանց առ հուրն . և զի ասէ "Հանդերձք նոցա ոչ այրեցան " , զի ոչ եթէ վասն ցանկութեան զարդարէին նոքա . և զի ոչ քաղցրացաւ նոցա հոտ խորտկաց թագաւորին , հոտ հրոյն ոչ մերձեցաւ 'ի հանդերձս նոցա . ոչ տիրեաց 'ի վերայ նոցա կռապաշտութիւն պատկերին , վասն այնորիկ և ոչ հուր հնոցին : Եւ ոչ նոյն մեղան ազգերք որ բղխեցին , փոխանակ զի եխից նա զաղբեւր ցանկութեան . և ոչ զԴանիէլ ապականեցին առեւծքն 'ի գբի անդ , զի պահեցին զնա աղօթք իւր որ 'ի պաշտգամի անդ : Զի եթէ կանայք բռնութեամբ բռնադատեալ լինէին , իսկ կանայք տան Նոյի զիա՞րդ ապրեցան : Եւ եթէ հրեշտակք ցանկացան դստերաց մարդկան , զի՞նչ առնէին կանայք տկարք . զի բռնութիւն խիստ բռնադատեաց զնոսա : Այլ ահա ասէ գրեալ է . "Ամենայն որ մտաբերիկ լինի յանաստուած մեռցի . և ինքն անաստուածն քարկոծ լիցի " . զի՞նչ մեղաւ անաստուածն . այլ զի մի՛ յիշեսցի 'ի միջի նոցա իրքն այն : Բայց անդ զի յայտ արասցէ թէ մարդիկ են նոքա , ասէ . "Ապականեաց ամենայն մարմին զճանապարհ իւր " : Ապա թէ յայնժամ դոյր 'ի նոսա ցանկալ և այսօր ո՞չ . թէ այդ այդպէս

է, Թերի ուրեմն էին և արդ եղեն կատարեալք ։ Ո՞ր պատճառք արար զնոսա կատարեալ, զի այլ մի ևս ցանկացին կանանց ։ Եւ եթէ մեք, որ արժանի լինիմն, նոցա նմանեմք 'ի յարութեան անդ մեռելոց, ո՞րչափ ևս առաւել նոքա ։ Եւ եթէ յայնմանէ զի ծընան սկայքն, ահաւասիկ յետ ջրհեղեղին գտան սկայք բազումք. մի՝ զոր Մովսէսն ասաց, ասէ «Ինն կանգուն էին մահիճք նորա երկաթիք ըստ կանգնոյ հրակայից՝ Ովգ». և երեքք այլ ևս զորս Յեսու որդի Նաւեայ եսպան. և երկու այլ ևս, զոր սպան Դաւիթ զԳողիադ և զայն՝ որոյ վեց վեց մատն էր ։

Իբրև, լուաւ Նոյ զի ասէ «Ահաւասիկ, ասէ, ածեմ ես ջուր ջրհեղեղի», դողացաւ և խռովեցաւ սիրտ նորա ։ Ասէ ցնա. «Այլ հաստատեցից կացուցից զուխտ իմ ընդ քեզ» ։ Ոչ եթէ նա մեկնեաց նմա զսուրբն 'ի պղծոյ անտի, այլ զայնոսիկ որ ըստ սովորութեան ոչ ընուլին զպէտս իւրեանց 'ի նոցանէ՝ զազրանային և գարշէին 'ի նոցանէ, զնոսա կարդաց պիղծս. և որք ընդունելի էին մտաց նոցա, զնոյէ ասեմ և որ իբրև զնայն էին, զնոսա անուանեաց սուրբս ։ «Եւթն եւթն, ասէ, որ 'ի սրբոցն են». յայնցանէ որք ոչ ուտիցեն զմարմինս ընկերաց իւրեանց, իբրև սուրբս անուանեաց զնոսա. և զապականիչս՝ իբրև պիղծս ։ Որպէս և մեք կարդամք զգազանս չարս, վասն վնասուց նոցա կարդամք զնոսա չարս. բայց զխոյս գառինս ոչ կարդամք չարս ։ Եւ հարկանողք են նա և ցուլք, և ուղտք և ձիք վնասեն. Թէ կարդամք զնոսա հարկանող կամ ուղտ մարդառու, միումն կարդամք և ոչ եթէ ազգին ամենայն ուղտուց. զի և այն մին յորժամ ապականէ իբրև զպիղծս զայսոսիկ՝ այս ինքն ապականիչս, ապա անուանի յայս անուն ։

Եւ եթէ ասիցես զի՞նչ անուն նմա է պիղծս առ ապականիչսն. զի անուն պղծոյ առ այնոսիկ որ ոչն ուտէին՝ զի՞նչ նման է. արժան էր ասեն՝ չեն պիտանացու, կամ չեն ընդունելի. զի պղծութի 'ի մարդկանէ ծնանի ։ Եւ եթէ յանուն պղծոյ անուանեցան՝ գիտասջիր դու զինչ են պիղծք, եթէ ոչ ապանիչք այսոքիկ. զի և նոքա յանուն գազանաց ա-

նուանեալ էին. և զոր օրինակ անուանեցան նոքա յանուանս գազանաց, սոյնպէս և գազանք անուանեցան յանուանս նոցա. սոյնպէս և սուրբքն յանուանս գառանց [1], սոյնպէս և աղաւնիքն և գառինքըն յանուանս սրբոցն: Իսկ ընդէ՞ր այսպէս. այլ 'ի սկզբանէ սուրբս զայնոսիկ պատրաստեաց զնոսա ա՛ծ. սոյնպէս և յաւուրս Նոյի: Եւ եթէ ոչ հաւատաս՝ տես ո՞ր ազգ բազում են, այնոցիկ որ ուտին, թէ այնոցիկ որ ոչն ուտին. հաւանեա դու 'ի տեսանելդ անտի և ոչ 'ի բանէ:

Նաև այնոցիկ որոց միսն էր կերակուր նոցա, որպէս գազանաց անապատի, զիա՞րդ կերակրէին նոքա. այլ որ արար խաղաղութի 'ի բնութի նոցա 'ի ժամանակի իբրև մտանէին 'ի տապան անդ, նա եւ սահմանս որկորստութե նոցա: Եւ է դարձեալ հաւանել. զի 'ի ժամանակի իբրև ելին 'ի տապանէ անտի զիա՞րդ կարացին կեալ. զի երկու երկու զոյգ մտանէին պիղծքն, այս զի մի՛ բազմասցին ապականիչքն. և սուրբքն եօթն եօթն, զի բազմասցին 'ի պէտս նոցա յորժամ ելանիցեն. զի 'ի նոցանէն մատուցանէի՞ր պատարագ ա՛յ: Եւ արդ հարկ է ասել՝ թէ առաջնորդութի ա՛յ լցոյց յագեցոյց զնոսա մինչև բազմացան. և եթէ 'ի ցամաքի ելին բազմացան լցան 'ի տապանէ անտի, զիա՞րդ 'ի մէջ ծովուց 'ի կղզիս գըտանին. այլ զի յայտ արասցէ այնոցիկ որ տեսանեն զնոսա, զի և 'ի կղզիսդ գտեալ է արարչութի արարչին հոգեբարձութբ նորա հանդերձ. իբրու այն զի ասէ "Բանաս զձեռս քո, լցուցանես զամենայն կենդանիս կամօք քովք,,:

Արդ մոլին գաղանքն ամենայն, զի բազմութիւք արարածոց պահեսցին մարմնով, և խորհուրդ եկեղեցւոյ յայտնեսցի հոգւով: Եւ զոր օրինակ 'ի ձեռն Նոյի աշխարհ ամենայն ջուրբք մեռան, սոյնպէս 'ի ձեռն տեառն մերոյ ամենայն հոգիք ջուրբք կենդանացան. եղև առաջինն օրինակաւ, և վերջինն ճըշմարտութբ: Զոր օրինակ առաջինքն ջուրբք մեռան, սոյնպէս և վերջինքս ջուրբք կենդանացան. և զոր

1 Յօրինակին գառանց:

օրինակ նոքա փայտիւն ապրեցան, սոյնպէս և նոքա խաչիւն ազատեցան։ Եւ եթէ վասն զի ոչ կարէր արդարացուցանել զնոսա՝ հեղձոյց զնոսա, ահա մո-խուեմն գազանացն բնութե՛ դարձոյց զնոսա. և զի զքառասուն օր էջ անձրևն 'ի վերայ նոցա և ապա հեղձան, զի կոչեսցէ զնոսա յապաշխարութի՛ իբր զայն նինուէացւոցն. զի կարող էր 'ի միում ժամու ջնջել սատակել զնոսա։ Այլ զի ասէ ցնա "Արա դու քեզ տապան„. իբրու կարող էր նա պահել ապրեցուցանել զնա և առանց տապանին. զի այն որ պահեաց զՅովնան 'ի փոր ձկանն՝ գերեզման 'ի մէջ գերեզմանի, կարող էր նա զՆոյ և որ ընդ նմա էին առանց տապանի ապրեցուցանել։

Որդ բացան զքառասուն օր արարածք ամենայն 'ի վերայ որդւոց մարդկան 'ի գալ հանապազորդ ջրհեղեղին, և սրբեցաւ յետ քառասուն աւուրն 'ի պղծութէ անտի մեղաւորացն։ Ապականեաց զնոսա 'ի քառասուն աւուր ստուգութե՛ և արդարութե՛ զայն՝ որ եղծին ապականեցին գործովք իւրեանց չարեօք. զկերպարանսն զոր նկարեաց 'ի քառասուն օր ողորմութեին բարերարին, յամուսնութի արդարութեան նկարեաց զնոսա. և վասն հաղորդութե՛ պղծութե՛ եղծ և ապականեաց զնոսա։ Ի քառասուն օր կատարեցան յորովայնի. 'ի քառասուն օր սատակեցան ջնջեցան յարարածոց անտի։ Եւ զի տեսին 'ի հարիւր ամ զգործ տապանին և ոչ դարձան յապաշխարութի՛, տեսին զտանջանս իւրեանց զքառասուն օր և ոչ ապրեցան։

Իսկ ո՞ւր է այն զի ասէ. 'ի տեղւոջ ուր ոչ են օրէնք, և ոչ այն որ անցանէ զնովաւ. զի ահաւասիկ աստ փութացաւ հատուցումն վրիժուցն, լուաց զաշխարհս 'ի յորդւոց 'ի մարդկանէ։ Այլ զի ուխտ եդեալ էր տանն Սեթայ զի մի խառնակիցին ընդ տունն Կայենի, իբրև զայն՝ զԱբրահամուն, "Գիտեմ ես, ասէ, զի պատուիրելով պատուիրէ նա որդւոց իւրոց պահել զճանապարհս տեառն„, սոյնպէս և նք. քանզի հաստատեալ կապեալ էին նոքա 'ի սովորութին, և եղև սովորութին իւրեանց նոցա իբրև օրէնք։ Եւ իբրև խոտորեցան 'ի նմանէ, խնդրեաց 'ի նոցանէն զվրէժն

իբրև զանցաւորս օրինաց հարց իւրեանց. զի “Ապա-
կանեաց, ասէ, ամենայն մարմին զճանապարհս իւր». 
այս ինքն զճանապարհս ամուսնութեան: Նախ 'ի սերտ
սկսաւ ցանկութիւն ապականել. ապա ապականեցաւ
մարմինն: Փոխանակ զի հեղեղեցան անձինք նոցա
ցանկութեամբ, հեղեղեցան մարմինք նոցա հեղձմամբ:
Փոխանակ զի արարին նոքա հեղեղ մեղաց, արար
ա̃ծ զջրհեղեղ: Եւ զի ելին 'ի վերայ նոցա պատիժք
սաստուեն, ընթացաւ ողորմութիւն, փոփոխեաց զգործ.
և արար հեղեղ ջուրց 'ի մկրտութեան աւազանին, և
հեղեղեցան և հեղձան մեղքն քաւութեամբ թողութեան.
զի փոյթ յոյժ եղև ողորմութեանն վասն մարդկութեանն.
և եկն նա վասն կենաց նոցա, և ընթացաւ զկնի զաւ-
շապարացն մեղաց, զի սպառեսցէ զնոսա. զի երթի-
ցէ հասցէ մարդկան, զի ունէր զնոսա 'ի ձեռն մա-
հու և մեղաց: Եմուտ ընդ ունկն, լուծաւ յարգան-
դի, և ել յորովայնէ, և շրջեցաւ յաշխարհի. եկն
եհաս 'ի խաչ, եմուտ առ մահ, թողոյց զմարմինս
մարդկան ընդ երկինս:

Իբրև ետես եթէ հեղեղեցան մարդիկ ջուրբք և
հեղձան, եբաց զմկրտութեան աւազանի 'ի կեանս, և
և եղև քաւութիւն նոցա: Եւ ետես եթէ այրեաց հուրն
յերկնից զսոդոմայեցիսն, առաքեաց զհուր իւր 'ի վե-
րայ առաքելոցն, և բնակեցոյց 'ի նոսա զցօղն հոգե-
ւոր. և ելին 'ի մէջ հեթանոսաց, շիջուցին զհուրն կռա-
պաշտութեանց՝ որ բնակեալ էր յարարածս: Եւ ետես
զի թլփատէին զմարմինս իւրեանց ցաւօք, ուսոյց նո-
ցա զի թլփատեսցեն զմարմինս առանց չարչարանաց:
Ետես զի զոհէին զանասունս որ ոչն մեղան փոխա-
նակ յանցաւոր մարդկան, արար զնոսա զի եղիցին
առանց ապականութեան պատարագել իմաստութեամբ ըզ-
կեանս իւրեանց՝ պատարագ կենդանի սուրբ ընդու-
նելի հաճոյ ա̃յ և կենդանի պաշտօն: Պատարագ զոր
մատոյց Հաբէլ, արգելեալ էր բարկութեամբ վասն Կայ-
ենի մինչև ցՆոյ. մարգարէացաւ վասն այնորիկ
հայրն նորա և ասէ. “Սա մխիթարեսցէ զմեզ պա-
տարագօք իւրովք», որ հաշտեցուցանէ զա̃ծ ընդ ա-
րարածս իւր. զի բարկացեալ էր 'ի վերայ նորա: Զի
'ի մեղս Ադամայ անէծ զօրհնեալսն, և դարձեալ

օրհնեաց զնոսա 'ի ձեռն Նոյի երկրորդում, և մե-ւոյց զաշխարհս ամենայն 'ի միում աւուր որպէս զԱ-դամ. զի ամենայն պատճառք որ լինէին՝ գործ ինչ գործէին ։ Արդեւլան պատարագք, զի մի եւս եղիցի ապանութիւք մինչև 'ի մի անդր՝ զի մնաց, և ոչ ոք եղե-նմա հակառակորդ. և ապա մատոյց ։

«Նոյ հոտոտեցաւ, ասէ, տէր ա̃ծ 'ի հոտ անու-շից »։ և յիշեաց զՀաբէլ և երդուաւ ։ Այս ինքն՝ զի ցուցցէ և յայտ արասցէ, եթէ որչափ բաւական է Նոյ միայն; քանի՞ եւս արդարքն առաւել բազումք բաւական էին արգելուլ զջրհեղեղն ։ Արդ հոտոտե-ցաւն՝ ոչ 'ի պատարագսն, այլ 'ի խորհուրդսն բար-ւոք Նոյի. իբրև զայն զի ասէ. հաճոյ լինիցիս, ա՛ռի ընկալայ ։

Նորին ուխտս հաստատէր ընդ Նոյի. մի՝ զի մի կերի-ցեն միս միայն արեամբ շնչոց հեղձուցիկ. և միւս եւս կենդանութեան. զի խնդրեսցէ զարիւն նոցա յամենայն գազանաց. և միւս եւս՝ որ սպանանէն սպանցի. զի «Որ հեղցէ, ասէ, արիւն, փոխանակ արեան նորա հեղցի արիւն նորա ». զի ըստ պատկերի կերպարանաց ա̃յ արարեալ է զԱդամ, այս ինքն 'ի նմանութիւն ար-դար դատաւորին արարեալ է, զի խնդրեսցէ զայն ։ «Զարիւն, ասէ, անձանց ձերոց խնդրեցից »։ Կա-պեաց երկու 'ի մի անդր. 'ի մարդկանէ, ասէ, և 'ի գազանաց 'ի վախճանի. և զի երկեցուսցէ զսպանօղ-սըն ։ Զի եթէ 'ի գազանաց վրէժ խնդրեսցի, ո՞րչափ եւս առաւել 'ի նոցանէն խնդրեսցի արիւն գազա-նաց, եթէ ոչ հեղուցու զնա փոխանակ այնր իւրոյն. մի՛ արիւն անասնոցն, և մի՛ մարդկութեան ։ Զմինն թէ հեղումք մեք, դատապարտիմք մեք. և զմիւսն եւս թէ հեղումք, արդարանամք ։ Փոխանակ այնր՝ զի ասէ «Զարիւն ձեր յամենայն գազանաց խնդրեցից », հեբ-րայեցի ասէ «'ի ձեռաց ամենայն կենդանեաց »։ Եւ զի ասէ «Խնդրեցից զվրէժ արեան անձանց յամենայն ձեռաց մարդկան. և 'ի գազանաց խնդրեցից » ասէ. Նա եթէ զծառայն հարկանիցէ ցուլն՝ երեսուն սա-տերս տացէ տեառն նորա; և ցուլն քարկոծ լիցի, խորհուրդ տեառն մերոյ և Յուդայի ։

Նա ասէ տէր ա̃ծ ցՆոյ. «Այս է նշան ուխտին՝

զոր եդի ես ընդ իս և ընդ ձեզ ”։ Զի ՚ի պատճառս արդարոյն տուաւ աղեղն մեղաւորաց, զի ՚ի նետաձիգ աղեղանն անտի՝ նոցա մխիթարութիւն և քաջալերութիւն։ Եւ այն որ լինէր բարկութեան, եղիցի նոցա ՚ի նըշան շինութեան։ Եւ զոր օրինակ ոչ գոյին փուշք, և վասն անիծիցն մտին, նոյնպէս ոչ գոյր աղեղն, և վասն նշանի եմուտ։

“Եւ զարթեաւ սթափեցաւ ՚ի գինւոյ անտի Նոյ. և գիտաց զինչ արար ընդ նա որդի իւր կրտսեր ”։ Եւ յայտնի յայտ արար՝ զի եթէ Քամ է. զի Քամ միջին և ոչ եթէ կրտսեր, այլ վասն Քանանու որդւոյ Քամայ ասաց կրտսերոյ։ Այլ ասեն. տեսանելով եւտես Քամ զՔանան որդի իւր, զի այսպէս կատականաց առնէր զմերկութիւն հօր իւրոյ ծերոյ, և ծիծաղեցաւ. և ել Քամ և պատմեաց եղբարց իւրոց արտաքոյ. այլ ոչ եթէ աւետիս ամօթոյ չոգաւ թէ տարցէ նոցա։ Այլ նոքա իբրև լուան՝ տրտմեցան. զի գիտէին եթէ տեսիլք և յայտնութիւնք ածուէն յայտնի լինէին հօրն իւրեանց, և հրեշտակ վերակացու լինէր նմա, ծածկեցին զնա, զի մի խայտառակեսցի նա առաջի զուարթնոց. ապա թէ ոչ զի՞նչ համարէր նմա յայնմիկ ելանել պատմել եղբարց իւրոց, թէ ոչ վասն անմեղութեան ազատութեան տղայոյն ել պատմեաց. և ՚ի ծիծաղել իւրում եղև խեղկատակութիւն։

Եւ այն զի ասէ “Գիտաց Նոյ զինչ արար ընդ նմա որդին իւր կրտսեր ”, այս ինքն որդին Քամայ կըրտսեր։ Բայց անէծքն Քամայ այն իսկ է, զի ոչ օրհնեաց զնա։ Վասն այնորիկ թէպէտ և կարծիցէ՝ զի ոչ եթէ ստուգութեամբ անիծաւ, զի յանմեղութեան ազատութեան արար, սակայն ստուգութեամբ արդարութեամբ անիծաւ. զի ոչ եթէ փոխանակ այլոյ ուրուք անիծաւ նա, եթէ ոչ զի արժանի էր նա անիծիցն։ Ծերութիւն նորա ՚ի գործ պատժոց ոչ մերձեցուցանէր զանմեղութիւն նորա։ Եւ զի կարգաց զնա որդի կըրտսեր; իբրև զայն զի ասէ. եղբայր Աբէթի երիցու, և հայր ամենայն որդւոց Եբերեայ։ Թէ այդ այդպէս է, և Մարիամ՝ Ահարոնի միայն է քոյր և ոչ իցէ Մովսիսի։ “Եւ առ, ասէ, Մարիամ քոյր Ահարոնի մարգարէ ”։ Նոյնպէս դարձեալ եթող զեղամ և

զԱսուր, և ասաց զԱրփաքսադ. և դարձեալ եթող զԱրփաքսադ, և ասաց Հայր ամենայն որդւոցն Եբերայ: "Անիծեալ լիցի, ասէ, Քանան մանուկ և կացցէ 'ի ծառայութիւն եղբարց իւրոց" երբեմն և յաւիտեանս յաւիտենից. որք են ծառայք Հեթանոսաց: "Եւ ընդարձակեսցէ տէր ա՟ծ Յաբէթի". որպէս ընդարձակեաց լայնեաց զսահմանս 'ի վերայ ասաց իւրոց: "Եւ բնակեսցէ 'ի յարկս Սեմայ". զոր օրինակ բնակեաց 'ի նմա ահ և երկիւղ ծածկել զամօթ խայտառակմանաց հօր իւրոյ: "Եւ բնակեսցէ, ասէ, յարկս Սեմայ". այս ինքն յազգս Սեմայ:

Դարձեալ ասի. զի ոչ եթէ Քանան յանցեաւ հօրն ծերունւոյ, այլ ինքն Քամ յանցեաւ հօր իւրում. այլ ոչ կարաց անիծանել զնա, զի միանգամ առեալ էր նորա օրհնութիւն յա՟յ ընդ այնոսիկ՝ որ ելեալ էին 'ի տապանէն: Բայց ոչ եթող զնա առանց դատապարտութեան, փոխանակ զի ծիծաղեցաւ նա ընդ մերկութիւն հօր իւրոյ, և այսպէս կատակմանաց արար զայն որ ծնաւ զնա. զի ընկալաւ նա զչարչարանս յորդի իւր որ անիծաւ: Բայց դարձեալ քանզի գիտէր ա՟ծ՝ թէ Քանան եղև նմանօղ չարութեան Քամայ հօր իւրոյ, և Քուշ և Մեստրայիմ և Փուդ ոչ եղեն նմանօղ Քամայ, կանխեաց յառաջագոյն՝ քարոզեաց մարգարէութեամբ զյանցանս Քանանու, զի յամօթ եղիցի Քամ 'ի ծնունդս իւր: Զի եթէ զՔամ անիծեալ էր նորա, անիծեալ լինէին ընդ նմա և երեք ևս այլ որդիքն նորա Քուշ և Մեստրայիմ և Փուդ: Այլ ըստ չափոյ յանցանաց նորա անէծ զորդի նորա կրտսեր, զի նմանօղ եղև նա հօր իւրոյ. զի յայտ լիցի՝ թէ վասն այլոց արդարոցն ոչ անիծաւ հայր նորա: Տես դու զի ոչ եթէ այլ զաւակ նորա անիծաւ, այլ Քանան. և եղբարք նորա քաւեալ ապրեցան 'ի պատժոց անտի: Այն զի և զերկիրն Քանանու զաւակ Աբրահամու ժառանգեաց զնա, այս ինքն են որդիք Սեմայ:

"Եւ ետես, ասէ, Քամ զմերկութիւն հօր իւրոյ և ծիծաղեցաւ": Արդ փոխանակ զի ծիծաղեցաւ նա զհարբ իւրով, ընկալաւ նա 'ի զաւակ իւր զանէծս և զծաղր: Եւ որդիքն Սեթայ զի արբին յօտար ազ-

բերէ, ընկալան հատուցումն ջուրբքն հեղեղին: Եւ Ռուբէն զի արբ յօտար աղբեւրէ ջուր, առէ ցնա հայր իւր. «Մոլորեցար, իբրեւ զջուր մի եռացիր 'ի վեր»: Եւ Եսաւ փոխանակ զի պահեաց զթշնամութիւն, եղեւ ոխակալ եղբօր իւրոյ. պահեցաւ նմա թըշնամութիւն յաւիտենից, և դարձան եղեն լերինք նորա յաւեր յապականութիւն: Եւ Փարաւոն զի խորհեցաւ հինգ չարիս 'ի վերայ ժողովրդեան, եկն եհաս 'ի վերայ նորա տասնհարուածեան հատուցումն: Եւ Ռոբովամ զի առ յանձն զխրատ տղայոցն, եղեւ նա ծառայ և այպն կատականաց ծերոց: Եւ Յորոբոամ զի արար իւր որթս պատկերս, եղեւ նա կերակուր շանց: Եւ այն ասորեստանեայն զի հայհոյեաց շրթամբք իւրովք, և քթովք իւրովք 'ունչս արար, անցոյց շրջանակ ընդ քիթս նորա, և եդ վարապան 'ի ցռուկ նորա: Եւ ժողովուրդն զի անարգեցին զջուրն Սեղովայ՝ որ գնայր խաղաղ, ած 'ի վերայ նոցա զջուր գետոյն զհզօրն և զյորդն, զանհուն զանհնարին: Եւ Նաբուքոդոնոսոր զի արար իւր պատկերս ոսկիս՝ զի կացցի զօրս հողմն, շնչեցին ընդ երեսս նորա չորք հողմք երկնից, և թաղեցին զնա ցօղով եւթն ժամանակ. և զի կարծեաց նա յանձն իւր թէ ած իցէ, և մարդկութիւն ևս բարձաւ 'ի նմանէն, և սիրտ գազանի տուաւ նմա: Համանն՝ զի ակն ունէր ջնջել սատակել զորդիսն Յակովբու, դուստրն Յակովբու ջնջեաց սատակեաց զյիշատակ նորա որդւովք տասնեքումբք հանդերձ: Եւ Հերովդէս երդուաւ և ստեաց հեղուլ զարիւն արդար, որդն եռաց և ել 'ի բերան նորա: Եւ դուստրն Հերովդիադայ զի խնդրեաց զգլուխն Յովհաննու 'ի մէջ սկտեղն[1], եդաւ գլուխ նորա սառնամանի սկտեղն: Գամեր գաղատացի, և ահա մակաբայեցիք վկայեն, զի արարին ընդ նմ մարտ պատերազմի:

Յորդւոց անտի Յաբեթի սկիզբն արար և յորդւոցն Քամայ, և յորդւոցն Քանանու և յորդւոցն Սեմայ մինչև յորդիսն Յեկտանու եղբօր Փաղեկի: Եւթանասուն և երկու որդիս թուեաց, որ լինին եւթանասուն և երկու ազգ. և որդիք Սեմայ Եղամ և

1 Յօրինակին սկեղբ:

Ասուր և ապա Արփաքսադ . յերկրորդ ամի անդ ասէ՝ Եղամ և Ասուր և ապա Արփաքսադ ։ Իսկ արդ ուր են ծնունդք Եղամու և Ասուրայ . զի ահաւասիկ եւթանասուն և երկու են գլխաւորք ազգացն լեզուաց ։ Եթէ անդրանիկն նորա Եղամ էր, զիա՞րդ ասաց, ասէ, «Սեմ որդի հարիւրեմեան իբրև ծնաւ նա զԱրփաքսադ յերկրորդ ամի անդ յետ ջրհեղեղին»։ Այլ հարկ էր զկնի գալ պատմելոյն Աբրահամու . զի 'ի Փարիսայէ որդւոյ Եբերեայ, որդւոյ Սաղայ, որդւոյն Արփաքսադայ ։ Եւ երբայեցի զի կոչեցաւ Աբրահամ, զի յանցից անտի գետոյն էր նա . կամ յԵբերայ էր նա ։ Կամ զի ասէ «Սեմ որդի հարիւրամեան». այս լինքն մինչև երևեցաւ ա̃ծ Նոյի յետ հինգ հարիւր ամի, և ապա ամուսնացաւ ։ Վասն այսորիկ իբրև անցին երկու ամք, ցայնժամ Սեմ հարիւրամեան կոչէր զայն զերկուս ամսն՝ որ յետ յայտնութեն . բայց Նոյի՝ յետ վեց հարիւր ամի ։

Իսկ Նամրաւդ յորդոյն անտի իւրոյ մատուցանէր պատարագ Աստուծոյ զգլխաւորն . և նովաւ օրհնէին մարդիկ զիմեանս ։ Վասն այնորիկ ասեն 'ի բանից կարգի . «Իբրև զՆամրաւդ հսկայ որսորդ առաջի տեառն»։ Փոխանակ այնր զի ասէ «Յերկրէն յայնմանէ ել ասորեստանեայն». «Ել, ասէ, Ասուր և շինեաց զՆինուէ» ըստ գրոց եբրայեցւոց ։ Որէք՝ ասի Ռուոխա, Արափաթ՝ Նծբին, և Քաղանէ՝ Տիզբոն . և յերկրէն յայնմանէ ել և շինեաց զՌոբոթ, զխաղաք և զՔաղախ, զՔարկ և զԴասեմ, «Այն է, ասէ, քաղաք մեծ»։ «Եւ եղեն, ասէ, սահմանք քանանացւոցն 'ի ծուրայ 'ի ծայդանէ, որ 'ի մուտս գերերացւոց մինչև 'ի գազացիս, որ է 'ի մուտս Սոդոմայ և Գոմորայ, յԱդամայ և 'ի Սոբոյիմ մինչև 'ի սասացիս»։ Այս են որդիք Քանանու ։ Եւ զիա՞րդ գտաւ յանիծեալ սահմանս Մելքիսեդեկ օրհնեալ . և ո՞ւր է զի եղեն նոքա ծառայք . զի ահաւանիկ Աբրահամ որդի Սեմայ խոնարհեցոյց զգլուխ իւր առաջի Մելքիսեդեկի քանանացւոյ ։ Եւ ոչ այսչափ միայն, այլ և առաջի որդւոցն Քեբրոնայ . զի գաբաւոնացիքն յորժամ եղեն ծառայք ժողովրդեանն տեառն, եղեն նոքա փայտաքաղք և ջրբերք այլովքն հանդերձ՝

բերէ, ընկալան հատուցումն ջուրբքն հեղեղին: Եւ Հռուբէն զի արբ յօտար աղբեւրէ ջուր, ասէ ցնա հայր իւր. «Մոլորեցար, իբրեւ զջուր մի եռացցիս 'ի վեր»: Եւ Եսաւ փոխանակ զի պահեաց զթշնամութիւն, եղեւ ոխակալ եղբօր իւրոյ. պահեցաւ նմա թըշնամութիւն յաւիտենից, և դարձան եղեն լերինք նորա յաւերյապականութիւն: Եւ Փարաւոն զի խորհեցաւ հինգ չարիս 'ի վերայ ժողովրդեան, եկն եհաս 'ի վերայ նորա տասնհարուածեան հատուցումն: Եւ Հռուբովամ զի առ յանձն զխրատ տղայոցն, եղեւ նա ծաղր և այպն կատականաց ծերոց: Եւ Յորոբոամ զի արար իւր որթս պատկերս, եղեւ նա կերակուր շանց: Եւ այն ասորեստանեայն զի հայհոյեաց շրթամբք իւրովք, և քթովք իւրովք 'ունչս արար, անցոյց շրջշակ ընդ քիթս նորա, և եդ վարապան 'ի ցռուկ նորա: Եւ ժողովուրդն զի անարգեցին զջուրն Սեղովայ՝ որ գնայր խաղաղ, ած 'ի վերայ նոցա զջուր գետոյն զհզօրն և զյորդն, զանհուն զանհնարին: Եւ Նաբուքոդոնոսոր զի արար իւր պատկերս ոսկիս՝ զի կացցի զօրս հողմս, շնչեցին ընդ երեսս նորա չորք հողմք երկնից, և թաղեցին զնա ցօղով եւթն ժամանակ. և զի կարծեաց նա յանձն իւր թէ ած իցէ, և մարդկութիւն ևս բարձաւ 'ի նմանէն, և սիրտ գազանի տուաւ նմա: Համան՝ զի ակն ունէր ջնջել սատակել զորդիսն Յակովբու, դուստրն Յակովբու ջնջեաց սատակեաց զյիշատակ նորա որդւովք տասնեքումբք հանդերձ: Եւ Հերովդէս երդուաւ և ստեաց հեղուլ զարիւն արդար, որդն եռաց և ել 'ի բերան նորա: Եւ դուստրն Հերովդիադայ զի խնդրեաց զգլուխն Յովհաննու 'ի մի սկտեղ[1], եդաւ գլուխ նորա սառնամանի սկտեղ: Գամեր գաղատացի, և ահա մանկաբայեցիք վկայեն, զի արարին ընդ նմ մարտ պատերազմի:

Յորդւոց անտի Յաբէթի սկիզբն արար և յորդւոցն Քամայ, և յորդւոցն Քանանու և յորդւոցն Սեմայ մինչև յորդիսն Յեկտանու եղբօր Փարէսի: Եւթանասուն և երկու որդիս թուեաց, որ լինին եւթանասուն և երկու ազգ. և որդիք Սեմայ Եղամ և

1 Յօրինակին սկեղբ:

Ասուր և ապա Արփաքսադ. յերկրորդ ամի անդ ասէ՝ Եղամ և Ասուր և ապա Արփաքսադ: Իսկ արդ ուր են ծնունդք Եղամու և Ասուրայ. զի ահաւասիկ եւթանասուն և երկու են գլխաւորք ազգացն լեզուաց: Եթէ անդրանիկն նորա Եղամ էր, զիարդ ասաց, ասէ, «Սեմ որդի հարիւրեմեան իբրև ծնաւ նա զԱրփաքսադ յերկրորդ ամի անդ յետ ջրհեղեղին»: Այլ հարկ էր զկնի գալ պատմելոյն Աբրահամու. զի 'ի Փարխայէ որդւոյ Եբերայ, որդւոյ Սաղայ, որդւոյն Արփաքսադայ: Եւ եբրայեցի զի կոչեցաւ Աբրահամ, զի յանցից անտի գետոյն էր նա. կամ յԵբերայ էր նա: Կամ զի ասէ «Սեմ որդի հարիւրամեան». այս ինքն մինչև երևեցաւ ա̃ծ Նոյի յետ հինգ հարիւր ամի, և ապա ամուսնացաւ: Վասն այսորիկ իբրև անցին երկու ամք, ցայնժամ Սեմ հարիւրամեան կոչէր զայն զերկուս ամսն՝ որ յետ յայտնութեն. բայց Նոյի՝ յետ վեց հարիւր ամի:

Եւ Նամրաւդ յորսոյն անտի իւրոյ մատուցանէր պատարագ Աստուծոյ զգլխաւորն. և նովաւ օրհնէին մարդիկ զմիմեանս: Վասն այնորիկ ասէն 'ի բանից կարգի. «Իբրև զՆամրաւդ հսկայ որսորդ առաջի տեառն»: Փոխանակ այնր զի ասէ «Յերկրէն յայնմանէ ել ասորեստանեայն». «Ել, ասէ, Ասուր և շինեաց զՆինուէ» ըստ գրոց եբրայեցւոց: Որէք՝ ասէ Ուռխա, Արափաթ՝ Նծբին, և Քաղանէ՝ Տիզբոն. և յերկրէն յայնմանէ ել և շինեաց զՌոոբոթ, զխաղաք և զՔաղախ, զՔարկ և զԴասեմ, «Այն է, ասէ, քաղաք մեծ»: «Եւ եղեն, ասէ, սահմանք քանանացւոցն 'ի ծուրայ 'ի ծայդանէ, որ 'ի մօտոյ գերերացւոց մինչև 'ի գազացիս, որ է 'ի մօտոյ Սոդոմայ և Գոմորայ, յԱդամայ և 'ի Սոբոյիմ մինչև 'ի սատացիս»: Այս են որդիք Քանանու: Եւ զիարդ զտայանիծեալ սահմանս Մելքիսեդեկ օրհնեաց. և ո՞ւր է զի եղեն նոքա ծառայք. զի ահաւանիկ Աբրահամ որդի Սեմայ խոնարհեցոյց զգլուխ իւր առաջի Մելքիսեդեկի քանանացւոյ: Եւ ոչ այսչափ միայն, այլ և առաջի որդւոցն Քեբրոնայ. զի գաբաւոնացիքն յորժամ եղեն ծառայք ժողովրդեանն տեառն, եղեն նոքա փայտաքաղք և ջրաբերք այլովքն հանդերձ՝

'ի ժամանակի իբրև շինէին զտաճարն յաւուրս Սողոմոնի ։

Աբրահամ ասէ. «Նժդեհ եմ ես և պանդուխտ 'ի միջի ձերում»։ Եւ Յակոբ ցՓարաւոն ասէ. «Աւուրք կենաց պանդխտութեան իմոյ հարիւր և երեսուն ամ է»։ «Եւ եդ, ասէ, Մովսէս անուն որդւոյ իւրոյ Գերսամ. զի պանդուխտ եմ ես, ասէ, յերկիր օտար»։ Եւ կնքէ Դաւիթ յայտնելի՝ զի ասէ. «Յորժամ էին նոքա 'ի թիւ սակաւ նուազք և պանդուխտք 'ի նմա»։ Եւ ո՞ւր է այն զի ասէ «Եղիցի Քանան ծառայ նորա»։ Այն իսկ է, զի ետ նոցա զերկիրն քանանացւոց 'ի ժառանգութիւն, որպէս կարծիք ցուցանեն։ Եւ 'ի ժամանակի իբրև շինեաց Սողոմոն զտաճարն, կացոյց, ասէ, հարիւր հազար նժդեհ պանդուխտ 'ի մէջ Իսրայէլի 'ի վերայ անտառին փայտահարս և 'ի վերայ այլոց գործոց արքունի։ Եւ իբրև չոգաւ Աբրահամ թափեաց զսոդոմայեցիսն զորգերին քանանու, և կոչեցան նոքա գերիս Աբրահամու. և եղև քանան ծառայ յայնմ հետէ։ Փոխանակ այնր զի ասէ «Եւ Սեմ հայր ամենայն որդւոցն Եբերայ». Հեբրայեցի, «Ամենայն որդւոցն Հեբրայեցւոց»։ Փոխանակ այնր զի ասէ «Եղբօրն Յաբեթի երիցու». Հեբրայեցի ասէ «Եղբօրն Յաբեթի, որ մեծն է քան զնա»։

«Շինեսցուք մեզ, ասեն, աշտարակ, զի լիցէ գլուխ նորա 'ի վեր մինչև յերկինս». զի ազատութ̄ի ա̄ծ է։ Երկրորդ իբրև ա̄ծ հակառակ ա̄յ. և վասն այսորիկ վաղվաղակի փութապէս եկն եհաս նոցա պատիժ պատուհասի։ «Եկայք, ասէ, իջցուք և խառնեսցուք զլեզուս նոցա». փոխանակ զի խորհեցան զի մի՛ շինեսցեն և բնակեցուսցեն զերկիր։ Զի ասէ այսպէս. ոչ եթէ 'ի տարապարտուց ինչ հատուածեաց զնա, այլ զի բնակեսցեն 'ի նմա արարածք իւր։ «Եւ աճեցէք, ասէ, բազմացարուք լցէք զերկիր»։ Եւ զի ասէ «Այժմ ոչ ինչ լինի պակաս կամաց նոցա զայն ինչ զոր խորհեցան նոքա» զի մի՛ ցրուեսցին, վասն այնորիկ ցրուեմն հասցէ նոցա։ «Ոչինչ, ասէ, լինի պակաս կամաց նոցա». այս ինքն զի մի՛ ապրեսցին ա-

ւանց պատժոց . կամ յայսմ հետէ պակասիցէ 'ի նոցանէ, զի մի կատարեսցին խորհուրդք նոցա :

Խաղեաց Թարա զՆաքովր 'ի քսանամենից, և ծընաւ զԱբրահամ յիսնամենից : Յեսքա կինն իսկ Սառայ է, և վասն գեղոյ նորա այսպէս կոչեցին զնա . հայրն ասէ Մեղքայ, և հայրն Յեսքայ : Եւ յայսմիկ յայտ առնէ թէ քոյրք են հարազատք դստերք Հառանայ . և եղեն նոքա կանայք հօրեղբարց իւրեանց : Եւ քանզի եղբօրորդի էր Աբրահամու կինն Սառա, վասն այսորիկ ասաց “Քոյր իմ է առ 'ի հօրէ” . որպէս կարդաց զՂովտ եղբօրորդին . ասէ “Արք եղբարք եմք” . և որպէս ասաց ծառայն Աբրահամու “Առաջնորդեա ինձ տէր առնուլ զդուստր եղբօր տեառն իմոյ որդւոյ իւրոյ” . քերու թոռն էր նա Նաքովրայ եղբօր Աբրահամու : Եւ հեբրայեցի այսպէս գրէ . “Արդարեւ քոյրաթիւ է իմ առ 'ի հօրէ և ոչ առ 'ի մօրէ :

ԳԼՈՒԽ Ե

“Ապա ասէ տէր ցԱբրահամ . Ել դու յերկրէ քումմէ և յազգէ քումմէ՝ 'ի տանէ հօր քո : Եւ ել գնաց Աբրահամ որպէս և ասաց տէր ած . և առ ընդ իւր զՂովտ” . զի հաւատաց յայտնութեան նորա : Եւ շինեաց սեղան յերկրին Քանանու, զի ուսուսցէ երկրպագութիւն սրբութեան յերկրի նոցա, և զի տացէ առհաւատչեայ ած զերկիրն ժառանգութեան իւրոյ : “Եւ անդ, ասէ, կոչեաց զանուն տեառն այ” . քանզի նոքա կարդային զանուն դիցն իւրեանց .

Եւ եղև սով մեծ յերկրի . վարեաց էջ Աբրահամ յերկիրն եգիպտացւոց ինքն և Սառա կին իւր : Պատուիրեաց նմա և ասէ . ասասջիր գոգջիր քոյր նորա եմ . և նա ասաց որպէս պատուիրեցաւն : Իսկ վասն էր հարաւ հարուածովք Փարաւոն՝ զի առ զնա կին . զի ահա ոչ լուաւ թէ առնականն է : Այլ վասն բարկութեան մոլեգնութեան նորա հարկ եղև ստել Աբրահամու . Թող և 'ի ձեռանէ ած, զի քննեալ փորձեսցի Սառա, որպէս փորձեցաւ Աբրահամ զրկանօքն զոր զրկեցաւն վասն Ջրհորոցն՝ զոր փորեաց յեր-

կրկին խոստացեալ նմա . և ոչ տրտնջեաց , թէպէտ և ներեալ էր ։ Եւ զՍառա յայսմիկ եթող , զի նորա էր քննութի . այլ կամեցաւ զի քննեալ փորձեսցի 'ի գործ կանանց , որպէս Աբրահամ 'ի գործ արանց ։ Եւ իբրև քննեալ փորձեցաւ և նա , և ոչ տրտնջեաց զԱստուծոյ , զի վասն այսորիկ մատնեաց զնա , յայն ժամ եհար զնա հարուածօք ստուգութեամբ զայն՝ որ չոգաւ զկնի ցանկութե իւրոյ չարախօսութե . զի եղիցի նեղութի նորա նշան այնմիկ՝ որ ինչ անցք անցանելոց էին ընդ զաւակ նորա . և եղիցին հարուածքն Եգիպտոսի փրկութի Սառայի . նշան՝ վասն հարուածացն , և փրկութի որ լինելոց էին 'ի ձեռն Մովսիսի ։

Արդ Սառա զի թշնամանեցաւ յԵգիպտոս , ըղ-խորհուրդ որդւոց իւրոց ասաւ հարքն նոցա համբերեն . և զի եղին անտի բազում ստացուածովք , դարձեալ զխորհուրդ փրկութե որդւոցն ճաշակեցին հարքն . արժան իսկ էր երկոցունց փորձել ։ Ըղ-վարձս անարգանաց թշնամանաց դարձոյց Փարաւոն մօր նոցա . և վարձս վաստակոց իւրեանց առին որդիք նորա 'ի նմանութի նորա ։ Ոչ քաղցրացաւ մօրն նոցա անկողինքն Փարաւոնի և ցանկութիքն եգիպտացւոց . զի այսպէս ուսցին որդիքն նորա նմանել նմա ։ Դարձեալ ասէն . Սառա խորհուրդ եկեղեցւոյ է , զի պղծեցաւ ընդ ամենայն ազգս , և յետոյ առ այր իւր ճշմարիտ դարձաւ ։ Բայց զժողովուրդն յամենայն ազգաց ժողովեաց նա առ ինքն . և նա առ պոռնկութիւնս իւր առաջինս դարձաւ ։ Մին առ թուղթ ապահարզանի և մեկնեցաւ . և մեւսն ևս դրեցաւ 'ի վերայ խորտակեալ տախտակացն 'ի նմանութի նորա , և զսա 'ի վերայ ձեռաց սրտի նորա ։

Արդ թշնամանեցաւ Սառա , զի առաքինասցի որպէս զԱբրահամն յայնմիկ՝ զի ոչ տրտնջեաց Սառա . բայց այլ կանայք իբրև պղծին 'ի կամս իւրեանց տրտնջեն ։ Առ վարեաց զնաց Աբրահամ զորդի Սառայի , և ուրախ եղև Սառա . առնու վարէ զնայ ած զորդիս նոցա , և ճչեն անմիտ կանայք ։ Սառա ընդ թագաւորին ոչ փոխանակեաց զգաղթական այրն իւր . բայց նոքա ընդ յիմարի միոջ փոխանակեն

զՔրիստոս ։ Իսկ այն, որ դարովեալն է յերկրորդն, ՚ի Սառա դատապարտեալ լինի՝ որ յաղթեաց ամենայնի ։ Բայց դարձեալ, կարծելով, ասեն, կարծէր Սառա՝ թէ Աբրահամ է ամուլ, և ոչ նա. վասն այնորիկ թոյլ ետ նմա առ Փարաւոն, զի հաւանեցուցէ զանձն իւր ։

Նաև յետոյ ասաց Սառա. «Աղաչեմ գիտացիր զի արգել զիս տէր ած, զի մի ծնայց քեզ որդի. մուտ դու առ նաժիշտ իմ, և թող մխիթարեցայց ես ՚ի նմանէ» ։ Այլք նախանձայոյզք քննախնդիրք պահեն զկանայս իւրեանց. բայց Աբրահամ եթող ետ կնոջ իւրոյ, զի գիտէր զճշմարտութիւն նորա առ նա ։ Հաւանեցուցէ քեզ պահելն Սառայի զխորհուրդ նորա ՚ի տան Փարաւոնի. ոչ եթէ Աբրահամ պահեաց զնա, այլ նա պահեաց զնա ։ Ոչ պղծեցաւ Սառա ՚ի տան Փարաւոնի. զոր օրինակ և ոչ մարգարէն ՚ի պատնեշէ անտի զոր ա՛ռ ։ Զի զոր օրինակ իբրև համարձակեաց նմա Սառա, և եմուտ նա առ Հագար ոչ կամօք իւրովք, այլ զի Սառայի եղիցի մխիթարութիւն. «Մուտ դու, ասէ, առ նաժիշտ իմ, թերևս եղիցի ինձ մխիթարութիւն ՚ի նմանէն» ։ Իբրև յղացաւ՝ արհամարհեաց զտիկինն իւր. ասէ Աբրահամ «Աւասիկ կայ աղախինն քո տուեալ ՚ի ձեռս քո» ։ Սոյնպէս յուսացեալ էր ՚ի նա Աբրահամ ՚ի ժամանակի իբրև վարեցաւ նա ՚ի տուն Փարաւոնի ։ Թող ՚ի ձեռանէ ած զի վարեսցի նա, զի յայտ արասցէ զսէրն Աբրահամու զոր ունէր առ նա. իբրու այն զի ասէ «Առ դու զորդիդ քո սիրելի միամօր զԻսահակ». և թոյլ ետ նմա մինչև եհան զվաղակաւորն և կամեցաւ զենուլ զնա ։ Այլ առ Սառա և գործն իսկ պաշտեցաւ, և ոչ փրկեաց զնա. զի յորժամ եկեսցէ հասցէ օրն մեծ փորձութեան նորա վասն Իսահակայ, մի ասասցեն՝ թէ զի յուսացեալ էր նա զի փրկեսցէ զնա, վասն այնորիկ պատրաստեցաւ երթալ մատուցանել զնա պատարագ ։

Այս կարգ հովուացն և մարտ պատճառք եղև Ղաւթայ երթալ ՚ի Սոդոմ, զի դատապարտեսցին նովաւ. և Աբրահամ յերկիրն քանանացւոց, զի նախատեսցին նովաւ ։ Ած զնա ած նախ ՚ի Խառան իբրև

զազրեւր ջուրց 'ի մէջ ծարաւեաց. ա՟ծ վ՟ա դադա-ձեալ յերկիրն քանանացւոց, որ բնակեալ նստէր 'ի խաւարի: Ծագեաց 'ի վերայ նոցա որպէս լոյս խաւարելոց կուրաց. և 'ի մէջ եգիպտացւոց որպէս բըժիշկ ցաւագինս խարելոց [1]: Կոչեցաւ Աբրահամ ելանել գնալ. գնաց ընդ նմա և Ղովտ: Եւ ոչ համարեցաւ Աբրահամ զանձն իւր գլուխ և ճոխ առ բարիսն որ պատահեցին նմա, այլ իբրև զեղբայր իբրև զընկեր: Յոր իրս փորձանք գային Աբրահամու՝ Ղաւթ 'ի խաղաղութեան կայր. իսկ որ ինչ փորձանք հասանէին Ղաւթայ, Աբրահամ 'ի տառապանս կայր: Փորձեցաւ Աբրահամ 'ի բազում տեղիս. Ղովտայ ճառք ուրեք չիք: Այլ իբրև վարեցաւ գերի Ղաւթ, Աբրահամ մարտնչէր փոխանակ ընդ նորա: Մատացաւ Աբրահամ ինչս բազումս. և Ղաւթ իբրև զնա: Հովիւք եւս Աբրահամու. և Ղովտայ իբրև զնորա: Տեսին հովիւքն Ղովտայ զի խոնարհէր Աբրահամ Ղաւթայ. բարձրացան ամբարտաւանեցին 'ի վերայ հովուացն Աբրահամու: Իբրև ետես Աբրահամ թէ և 'ի խոնարհութիւն նորա հնարս խնդրեաց թշնամին արկանել 'ի մէջ նոցա զգրգռութիւն հակառակութ՟ն, կանխեաց Աբրահամ յառաջագոյն՝ հատ զպատճառանս 'ի միջոյ անտի: Կոչեաց զՂովտ սիրով, և արար զնա իբրև զինքն ժառանգաւոր. իբրու ա՟ծ ասաց նմա՝ թէ "Քեզ և զաւակի քում տաց զերկիրս զայս„. և ոչ ասաց թէ զՂաւթ ընդ քեզ առ. այլ նա ասէ ցՂովտ. "Արք եղբարք եմք մեք. ահաւասիկ երկիրս առաջի քո, ընտրեա քեզ և բնակեա„: Ընտրեաց Ղովտ զերկիրն բարւոք. այն զի արժան էր զԱբրահամ պատուել, և տալ նմա ընտրել: Այլ խոնարհութի՟ն հեզութի՟ն Աբրահամու զրկէր և զանցանէր, զի զմեզ ուսուսցէ՟ն՝ թէ վասն անցաւոր ստացուածոց մի ազահեսցուք: Փոխանակ այնր՝ զի ասէ "Ձու արար Ղաւթ յարևելից„, հեբրայեցի՝ "Ձու արար Ղովտ յառաջագոյն, և բնակեցաւ 'ի քաղաքս դաշտին փոխանակ Աքարայ„:

1 Յօրինակին 'ի լուսանցան հարելոց:

Ոչ առ Աբրահամ զինչս և զստացուածս ; որպէս ասաց նմա արքային սոդոմայեցւոց . քանզի ինչք և ստացուածք սոդոմայեցւոց խառն էին , այլ զի էին նոքա 'ի զաւակէ անիծի Քանանու ։ Եւ զի յայտ արասցէ թէ ոչ 'ի վերայ ընչիցն ագահեաց , և ոչ վարձուց թափեաց զնոսա , "Համբարձեալ զձեռն իմ առ ած , որ արար զերկինս և զերկիր ”։ Յայտնիկ յայտ արար՝ թէ ուխտ եդ ընդ այ , զի ոչ առ նա 'ի շաղամանթէ միոջէ մինչև 'ի խրացս մի կօշկացն , եթէ յաղթութն տացի նմա ։ Եւ պատճառք երթալոյ նորա , որպէս գիրքս յայտ առնեն , վասն Ղովտայ եղբօրորդւոյն իւրոյ եղև , որպէս և գրեալ է ։ Այլ յամենայնէ՝ զոր դարձոյց, տասանորդեաց այ 'ի ձեռն Մելքիսեդեկի ։ Եւ զի ասէ՝ բայց յամենայնէ եղիցի այն արգելեալն եղբօրորդւոյ նորա , յայնմիկ զի ասէ՝ յամենայնէ ։ Այլ նա ցարքայն սոդոմայեցւոց . "Զի մի ասիցես , ասէ , վաղիւ թէ ես մեծացուցի զԱբրահամ ”։ Եւ զի մի եղիցի նա զրկող և զլացող երիցն դաշնաւորաց իւրոց , ասէ "Զբաժինս իւրեանց առցեն ”։ "Համբարձեալ զձեռս իմ առ ած , որ արար զերկինս և զերկիր ” . քանզի վարդապետութիւն եցոյց նոցա յայտնի . սոյնպէս Մելքիսեդեկ ։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Բարա արքային սոդոմայեցւոց ”, "Վաղա ” . և փոխանակ զի ասէ "Արքայ Գերղա ”, "Արքայ հեթանոսաց ”։

"Յապա յետ բանիցս այսոցիկ եղեն պատգամք տեառն առ Աբրահամ 'ի տեսլեան գիշերոյ և ասէ . մի երկնչիր Աբրահամ զի ես վերակացու եմ քո , և վարձք քո բազում են յոյժ ։ Եւ ասէ Աբրահամ ցտէր ած . զի՞նչ այն ինչ իցէ զոր տացես դու ինձ , զի ես աւասիկ կորուսեալ եմ անորդի , և Եղիազար դամասկացի ժառանգէ զիս . Այլ ցնա տէր ած . ոչ ժառանգէ զքեզ դա . այլ որ ելանէ յերանաց քոց , նա ժառանգեսցէ զքեզ ։ Եւ հաւատաց Աբրահամ յած , և համարեցաւ նմա յարդարութիւն ”։ Եւ իբրև ասաց նմա՝ բայց "Զաւակի քում տաց զերկիրս զայս ”; սակն երկմտեաց նա յայսմիկ , զի ասաց ցնա "Խակ իւ գիտասցից ”։ Եւ զիա՞րդ մարթի լսել . զի այն որ հաւատաց այ , որ դժուարինն էր , վասն դիւրինն իբրաց

զիա՛րդ երկմտէր նա ։ Զի եթէ վերջինն անկար՝ առաջինն ոչ կարէր կանգնել, ո՛ւր բազմանայր զաւակն. ո՛չ ահա անդէն ՚ի յերկրին. զի ՚ի նոյն ընթերցուածի կարօղ ես դու ՚ի միտ առնուլ՝ թէ ոչ երկմտեաց նա ։ "Ասէ ցնա. աղէ հայեաց դու ընդ աստեղս երկնից, և սկսիր դու թուել՝ եթէ կարասցես դու զնոսա թուել. այսպէս, ասէ, զօրասցի զաւակ քո բազմութ̃բ առանց թուոյ ,,։ Եւ գրեալ է, ասէ, "Հաւատաց Աբրաամ յա̃ծ, և համարեցաւ յարդարութ̃ի նմա ,,. զի հաւատաց՝ համարեցաւ, և ոչ եթէ զաւակի նորա ։ Եւ դարձեալ ասէ. "Ես եմ տէր ա̃ծ քո, որ հանի զքեզ յերկրէն քաղդէացւոց տալ քեզ զերկիրս զայս ՚ի ժառանգութ̃ի ,,։ Աբրահամ լուաւ երկուս պատգամս միանգամայն. մի՝ զի բազմանայ զաւակ նորա. և միւսն՝ զի ժառանգեսցէ զերկիրն, յայնմիկ՝ զի դժուարին էր յամուլ պառաւէ անտի ծերոյ անցելոյ ըստ չափ ժամանակի՝ աճել բազմանալ իբրև զաստեղս երկնից, յայնմիկ ոչ երկմտեաց ։ Եւ զի ետես նա՝ թէ ճշմարիտ հաւատաց, գրեաց զարդարութ̃ի նորա, զի յայտ արասցէ թէ ոչ երկմտեաց ։

Իբրև ասաց նմա՝ թէ "Զաւակի քում տաց զերկիրս զայս ,,, ցնծաց և ուրախ եղև սիրտ նորա, իբրև փափագէին միտք նորա գիտել ճանաչել թէ որպէս կամ զիա՛րդ հանդերձեալ լինի այս ։ Զի ետես նա զերկիրս՝ զի էր մարդալից բնակչօք իւրովք, թագաւորօք և իշխանօք, գլխաւոր գեղօք պարըսպեալք և քաղաքօք, յուսացեալ բերդիւք և անկախ ամրոցօք ։ Եւ իբրև ընդ այն ամենայն նայեցաւ, խորհեցաւ ՚ի միտս իւր և ասէ. իսկ զիա՛րդ արդեօք դառնայ և լինի ժառանգութ̃ի մեր երկիր մի, որ ծագէ ՚ի ծագ լի է բնակչօք իւրովք ։ Բազմանալով արդեւք բազմանայցէ՞ զաւակ իմ, և ծածկեսցէ զբնակիչս երկրիս այսորիկ. կամ եթէ մարդամա՞հ արդեօք անկանիցի ՚ի նոսա և սատակեսցին. և կամ երկիր արդեւք բանայցէ զբերան իւր և կլանիցէ զնոսա. թշնամի՞ք ելանիցեն ՚ի վերայ և փարեալ իջուցանիցեն զնոսա ՚ի գերութ̃ի. նոյն ինքն դրդուեսցեն և ելցեն ՚ի պատերազմ և սատակեսցեն զմիմեանս ։ Եթէ

հնազանդելո՛վ հնազանդեցին մեզ, եթէ փեսայանալո՛վ փեսայացին մեզ . ա՛յլ ուրեք ասէ և բազմանայ Աբրահամ, և ապա գայ մտանէ զաւակ իմ, հարկանէ սատակէ զնոսա և ժառանգէ զերկիր նոցա ։ Գտանելով գտանէ զաւակ իմ ողորմութի՛ւն յաչս նոցա, և նոքա մեծացուցանեն զնա, և լինիցին 'ի նմանէ իշխանք պետք և առաջնորդք . դառնալով արդեւք դառնայցեն . զի՞արդ արդեւք լինելոց է, ոչ եթէ զի՞արդ մարթի լինել ։ Արդ զայս ամենայն զի ոչ եղև բաւական գիտել Ճանաչել 'ի յանձնէ իւրմէ, զայս կամեցաւ նա ուսանել 'ի տեառնէ անտի իւրմէ ։ Զի թէպէտ և կարծիցէ՝ թէ վասն անձին իւրոյ խնդրեաց նա գիտել Ճանաչել, այլ առաւել եւս զաւակին իւրոյ դնել օրինակ իմաստնացուցիչ և ուսուցիչ խորհեցաւ նա ։

Եւ ասաց ասեն . "Տէր Ած, իսկ ես իւ գիտացից" ։ Եւ տէր իւր իբրև ետես զի ոչ եթէ բաժանեցաւ նա, այլ զնոյն իսկ զվախՃանն կամեցաւ նա գիտել Ճանաչել, ասէ ցնա տէր . "Առ դու քեզ երինջ մի երեամեան և այծ մի երեմեան և խոյ մի երեմեան և տատրակ մի և աղաւնի մի" ։ Ցայնմիկ՝ զի ասէ երեմեան, յայտ առնէ՝ եթէ յետ երից դարուց մտանելոց են . և զի խեղամուտ արարեալ զնա՝ թէ մարգարէք և թագաւորք և քահանայք հանդերձեալ են լինել նոցա ։ Եւ զի յօշեաց զնոսա երկոտասան անդամ, ծանոյց նմա թէ երկոտասան ազգ լինելոց են ։ Եւ զի թռաչունք երկնից տարմ տարմ երամ երամ խոյանային 'ի վերայ շաղղոյն անդամաթուին, և նստէր Աբրահամ և քշէր, ցոյց նմա թէ մարտ պատերազմի առնելոց են ընդ նոսա, և վասն արդարոցն՝ որ լինին 'ի մէջի նոցա՝ փրկին ։ Եւ բոցք հատանէին, իբրև հնոցք հրոյ վառէր, և Ճառագայթք նորա ընթանային 'ի վերուստ . յայտ արար նմա, զի թէպէտ և սպառեցին արդարքն, սակայն վասն քո փրկութե Ածոյ օգնական լիցի նոցա ։ Եւ զի ասէ "Ահ և երկիւղ և խաւար", զի եղիցի ահագին ահաւոր տեսիլն ։

Եւ զի ցուցցէ նմա թէ ուր հանդերձեալ է բնակել զաւակ նորա, ասէ ցնա . "Գիտելով գիտասջիր, զի պանդուխտ լինիցի զաւակ քո յերկիր օտար" ։

Ոչ եթէ յայս երկիր, այլ յօտար. ոչ եթէ բանտու-
թիւն կամ գերութիւն կամ պատժովք պատուհասից,
այլ նժդեհութիւն, այս ինքն պանդխտութիւն: Եւ ըն-
դէր. զի չեւ ևս էր լցեալ չափ մեղաց ամովրհացւոց.
ապա թէ ոչ յօրէ յայնմանէ լինէր: Եւ զի ուրանե-
ցաւ զի ասաց՝ բայ հնազանդեսցի զաւակ քո. հարկ
է հնազանդել. ոչ եթէ այսպէս կամիմ ես, զի կա-
րող եմ ես արգելուլ զեգիպտացիսն, զի մի մեղիցեն
նոցա. այլ ոչ կամէին ելանել անտի՝ թէ ոչ նեղէին
նոքա: Այլ թէ զեգիպտացիսն ոչ նեղեցից ես, և
որդիքն քո ելցեն հնազանդել զնոսա. և մի տըրտ-
մեսցիս դու վասն հնազանդութեան՝ որ լինի նոցա:
Եւ զազգն զայն որ զնոսա չարչարելոց են, դատեցայց
ես. և որդիքն քո ելցեն մեծաւ ստացուածովք, որ-
պէս զի մեծասցի յաչս նոցա իրք փրկչին՝ որ հանէ
զնոսա. և կալցին շնորհս: Եւ զայս զի յառաջագոյն
կանխեաց ասաց նմա, զի մի յորժամ հնազանդեսցին
նոքա, ակարացեալ հիւանդանայցեն միտք նոցա, և
կարծիցեն թէ այլ զօրութիւն հնազանդեցոյց զնոսա:
Եւ զի ոչ եթէ պատիժք պատուհասից էին այս, այլ
յայտնութիւն էր պատրաստելոց ժամանակաց, և դու-
շակութիւն ծածկելոց յառաւել 'ի լուսաւոր իմաստու-
թէ անտի Աբրահամու: Յայտնի լիցի քեզ, զի ոչ
եթէ վասն այնորիկ մատոյց նա պատարագ. զի ա-
հաւասիկ պատարագ նորա որ յայնմ ժամու՝ խընդ-
րուածոց էր՝ վասն յայտնութեանց, և ոչ եթէ պա-
տարագէր նա վասն մեղաց:

Նոյն ոչ եթէ բաժանելով բաժանեցաւ Աբրա-
համ, թէ վասն այսորիկ ընկալաւ զաւակ նորա պա-
տիժս պատուհասից: Զի թէ այնր ժամու հաւա-
տաց նա՝ համարեցաւ նմա յարդարութիւն. սոյնպէս
թէ երկմտեալ էր նորա, ինքն իսկ ընդունէր զպա-
տիժս պատուհասից, և ոչ եթէ 'ի վերայ Յակովբու
և Յովսեփու և Մովսիսի գայր հասանէր պատիժքն
պատուհասից: Զի եղբարքն իւր վաճառեցին զՅով-
սէփ յԵգիպտոս 'ի մահ, և ոչ եթէ վասն Յակով-
բու առաքեցաւ նա անդր. և սէրն Յովսեփու իջոյց
զՅակովբ անդր; և ոչ եթէ երկմտութեան Աբրահա-
մու: Զի զօրօրինակ ոչ առ ակն յանցանացն Մովսիսի

որ եղեն 'ի վերայ վիմին, այլ կշտամբեաց յանդիմանեաց զնա. «Փոխանակ, ասէ, զի ոչ փառաւորեցէք դուք զիս, մի մտանիցէք դուք յայն երկիր պարգևաց»։ Եւ զոր օրինակ ոչ արար նա անփոյթ վասն մեղացն Դաւթի, այլ խայտառակեաց զյանցանս նոքա, և ընկալաւ զապաշխարութիւն նորա. և Եզեկիայ զի նշան ետ նմա՝ վասն զի ոչ հաւատայ՝ 'ի ստուեր արևուն ետ նմա, զի գիտասցէ և իմաստնասցի։ Եւ Զաքարիայ՝ իբրև երկմտեաց վասն բանից հրեշտակին, նշան իմաստնացուցիչ 'ի նմին ժամու ետ նմա, զի 'ի նմանէն ուսցի զճշմարտութիւն բանից նորա։ Զի յորժամ թերահաւատութիւն կամ երկմտութիւն գտեալ լինէր յարդար, նոյնժամայն տայր նշան յանդիմանութեան նորա։ Սոյնպէս և Աբրահամու՝ թէ երկմտեալ էր իբրև զԶաքարիա կամ զԵզեկիա, զկնի բանիցն ընդունէր զպատիժս։ Զոր օրինակ իբրև հաւատացն՝ մօտ այնր զկնի զի ասէ «Համարեցաւ նմա յարդարութիւն», սոյնպէս մտանէին եպերանքն զկնի երկմտութեան։ Եւ զի յայտ արասցէ թէ 'ի բաց է 'ի պատուհասից, փոխանակ պատժոցն օրհնելով օրհնեաց զնա անդ յասել իւրում. «Դու, ասէ, հանգիցես առ հարս քո յագեալ աւուրբք, թաղիցիս 'ի ծերութեան պարարտութեան»։ Եւ այս յայտ է՝ զի ոչ եթէ պատիժք են։

Բայց Աբրահամ պատուիրեաց որդւոց իւրոց որ ինչ հանդերձեալ պատահելոց էր նոցա. զի յորժամ սկսանիցեն նոքա հնազանդել, ուրախ լիցին վասն փրկութեան՝ որ հանդերձեալ էր գալ նոցա յետ հնազանդութեան իւրեանց։ Յովսէփ հաւատաց որ ինչ լուաւ 'ի հարց անտի իւրոց. ասէ «Գիտեմ ես՝ զի յիշելով յիշէ զձեզ Աստուած. հանէք, ասէ, զոսկերս իմ ընդ ձեզ»։ Եւ Մովսէս 'ի թուոյ անտի ամացն գիտէր զամենայն՝ թէ մերձ է ժամանակն. որպէս Դանիէլն զի յեւթանասուն ամէ անտի զոր ասացն. և Երեմիա գիտաց զժամանակն դարձի։ Արդ եթէ երկմտելով երկմտեցաւ նա յայնմիկ՝ զի ասէ «Ի՞ւ գիտացից», զի՞նչ ևս պիտոյ էր ասել զկնի նորա «Արդ դու քեզ այծ մի և երինջ մի», այլոցն հանդերձ։ Ապա ասէ ցնա յետոյ. «Պանդուխտ և նժդեհ եղի-

ցի զաւակ քո„ ․ ՚ի բաց արար զերկմտութիւն նորա, և ապա առաց ։ Եւ զի՞նչ համարեաց այնմիկ զի ոչ գիտէ, և ոչ վասն որոց պատճառանաց եկն ՚ի վերայ զաւակի նորա այս խրատ ։ Զի եթէ յայսմ վայրի ասացեալ էր նմա՝ թէ ժառանգես դու զերկիր, և նորա ասացեալ էր՝ և իւ գիտացից, և ոչ այսպէս արժան էր կարծել ՚ի վերայ Աբրահամու՝ թէ երկմըտեաց ։ Զի թէ յառաջ քան զայս ասացեալ էր նմա՝ թէ զաւակի քում տաց զերկիրս զայս, և շինեաց անդ սեղան տեառն այ՝ որ երևեցաւ նմա․ և դարձեալ ասէ․ ամբարձ զաչս քո ՚ի վեր և տես դու քեզէն ՚ի տեղւոջէդ յայդմանէ ուր կաս դու այժմիկ ընդ կողմն հիւսիսոյ և ընդ կողմն արևմտից և ուղեղ ընդ արևելս և այսր ընդ ծով, զի զամենայն երկիրդ զոր տեսեր դու՝ քեզ տաց և զաւակի քում մինչև յաւիտեանս ժամանակաց․ դարձեալ ասէ ցնա․ արի և շրջեաց դու ընդ երկիրդ յերկայնութիւն և լայնութիւն նորա, քանզի քեզ տաց զդա․ և եթէ երիցս անգամ ասացաւ նմա այս, ոչ յերկուացաւ նմա․ եթէ այդ այդպէս է, և ոչ յայսմ վայրի երկմըտեալ բաժանեցաւ նա ։ Եւ եթէ յայսմ աւուր գրեալ է, ասէ, ուխտ հաստատեաց ընդ նմա տր, թէ այդ այդպէս է[1]․ հաւատալով հաւատաց նա և ոչ երկմտեալ բաժանեցաւ նա ։ Եւ զի հնազանդեցան նոքա, զի մի մնասցեն անդրէն յերկրին եգիպտացւոց, և խափանեսցին աւետիքն․ և եգիպտացիքն զի խրատեսցին, փոխանակ զի առաւել մեծարանեցան նոքա ՚ի վերայ նոցա․ իբրև զայն զի ասէ․ ես բարկացայ սակաւիկ մի, և նոքա օգնական եղեն չարեաց ։

Յետ չորեքհարիւր և երեսուն ամ՝ յօրէ անտի յայնմանէ յորմէ հետէ ասացաւ բանն․ զի թէպէտ երկերիւր քսան և հինգ ամ բնակեցան անդ, սակայն ոչ եթէ զամենայն ամսն նեղեցան նոքա ։ Զի որչափ և եկեաց Յովսէփ, պատուով բնակեցան նոքա անդ․ և իբրև մեռաւ Յովսէփ, ապա նեղեցան նոքա ՚ի թագաւորէ անտի, որ բնաւ ոչ ճանաչէր զՅով-

1 Յօրինակին եղծեալ էին բառքդ այդպէս է ։

սէփ ։ Ցամի անդ՝ յորում ծնաւ զՄովսէս, յաճախեցան նեղութիւնք չարչարանաց նոցա. զի ահաւանիկ Ահարոն երիւք ամօք երէց էր քան զՄովսէս, և ոչ նեղեցաւ մայր նորա ծածկել թաքուցանել զԱհարոն որպէս զՄովսէս. և յամին ութսներորդի նորին Մովսիսի եղև նոցա փրկութիւն ։ Արդ եթէ երկերիւր քառասուն և հինգ ամ բնակեցան նոքա անդ, բայց նեղելով նեղեցան նոքա ութսուն ամ ։ Իսկ արդ ո՞ւր խնդրեսցես դու զայն որ ասացաւ չորեքհարիւր ամ հնազանդեն նոքա յերկիր օտար ։ Արդ տես դու զի այս չորեքհարիւր ամ, որ յաւելան 'ի վերայ նոցա երեսուն ևս, զի ոչ եթէ 'ի վերայ զաւակի նորա եդաւ միայն ամքս այս, այլ 'ի վերայ նորա ։

Արդ հինգետասան ամք Աբրահամու, և վաթսուն ամ Սահակայ, հարիւր և երեսուն Յակոբայ յերկիր օտար համարեալ լինի նոցա՝ իբրև յերկիր ժառանգութեան բնակեալ էին նոքա ։ Բայց դար չորրորդ՝ յարէ անտի յայնմանէ, յորմէ հետէ մտին նոքա յերկիրն եգիպտացւոց, համարեալ լինի ։ Կաղէբ և Յեսու չորրորդ են. բայց տղայք որ ելին յերկրէն եգիպտացւոց հինգերորդ են. մանկունք՝ որ իննուտասանամեայ էին 'ի ժամանակին իբրև ելին յերկրէն եգիպտացւոց, մտին յերկիր պարգևաց ։ Եւ քանզի ասէ "Զի և այժմ չև ևս լցեալ չափ մեղացն ամուրհացւոցն," զայս յայտ առնէ. զի ոչ եդեալ էր 'ի մտի իւրեանց ամենևին կործանել 'ի մեղաց անտի, այլ մեղս 'ի վերայ մեղաց յաճախել ։ Զի ահաւանիկ հինգ դար երկայնամիտ եղև առ նոսա. իբրու յառաջ քան զայն հինգ դար մեղաւորք էին ։ Բայց դարձեալ ըստ երկայնմտութեան ա՜յ ասացաւ, ասէ "Զի այժմիկ չև է լցեալ չափ մեղացն ամուրհացւոց". սակայն նոյն ինքն երկայնմտութիւն նորա յայտ է՝ ուստի առնու սկիզբն ժամանակն ։ Զոր օրինակ յայտ է՝ ուստի առնու զկատարած դատակնիքն ։

Եւ Աբրահամ որպէս աստղ մի յարևելից, և առակեցաւ զաւակ նորա յաստեղս երկնից ։ Եւ Սահակ զի պատարագեցաւ իբրև զգառն մի, պատարագեցաւ գառն պատարագաց նորա ։ Յակովբ զի ստեաց հօր իւրում մորթեօք այծենեօք, ստեցին նմա որդիք

իւր մարթոյք ուղենեաք։ ԶՄովսէս զի կամեցան հեղձուցանել զտղայուն նորա ջուրքն, 'ի մէջ ջուրց հեղձոյց զհեղձուցիչսն իւր։

“Նաեւ ասէ Սառա ցԱբրահամ. որովհետեւ արգել զիս ած զի մի ծնայց քեզ որդի, տուեալ քեզ զՀագար նաժիշտ իմ. 'ի նմանէ եղիցի քեզ որդի, թերեւս մխիթարեսցայց 'ի նմանէ։ Եւ եմուտ Աբրահամ առ Հագար եւ յղացաւ. եւ իբրեւ ետես թէ յղացաւ՝ հպարտացաւ, սկսաւ արհամարհել զտիկինն իւր„։ Արդ եթէ յղացար դու, ով Հագար, նա եւ տիկինն քո վասն զաւակի որդւոյ ետ զքեզ առն իւրում. արդ յուրախութենէ նորա կամեցար տրտմեցուցանել դու զնա։ Վասն այնորիկ յուրախութենէ նորա տրտմեցոյց սուգութին եւ զնա. զի 'ի տեղւոջ յորում արժան էր Սառայի նախանձել, յաղթեաց նա նախանձու. յորում վայրի աւետիքն յաղթահարեցան յորդեսէր սիրոյ անտի։ Հագար յանարգանս թշնամանեաց Սառայի տուաւ, զիարդ ժառանգէր զաւակ նորա զերկիրն պարգեւաց։ Եւ զի կարծեաց Հագար՝ թէ Աբրահամու ժառանգ որդի նորա է, սկսաւ յաղանալ հպարտանալ եւ արհամարհել զտիկինն իւր։ “Երեւեցաւ նմա հրեշտակ տեառն այ եւ ասէ. Հագար աղախին սառայի, զի՞ խնդրես աստ։ Ասէ յերեսաց Սառայի տիկնոջ իմոյ փախուցեալ եմ։ Ասէ ցնա հրեշտակն. դարձիր առ տիկին քո եւ հնազանդ լեր 'ի ներքոյ ոտից նորա։ Եւ ասէ ցնա հրեշտակն. բազմացուցից զզաւակ քո, եւ եղիցի անթիւ 'ի բազմութենէն, եւ դէմ յանդիման սահմանի եղբարց իւրոց բնակութին նորա„։ Գիտաց Հագար՝ թէ այլ որդիք լինելոց են Աբրահամու. եւ զի բաժանեալ առեալ էր զժառանգութին որդւոցն Սեմայ, եղեւ նա ցիր վայրագ. բայց եղբարք նորա որդիքն Քետուրայ. եւ վասն ճշմարտութենէ նոցա՝ որոց ասաց նմա, ցոյց զփառս իւր առաջի նոցա. զի ասէ. “Դու ես ած՝ որ հայեցար յիս. զի ասաց՝ առաջի աչաց իմոց երեւեցաւ ինձ„։ Եւ զի ասէ “Արարից զքեզ յազգ մեծ, եւ թագաւորք 'ի միջոյ քո ելցեն„. տունն Իսմայէլի յազգս իւրեանց, եւ տունն Քետուրայ, եւ տունն Սահակայ։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ “Ե-

դիտ զնա հրեշտակն 'ի վերայ Ճանապարհին որ հանէր 'ի Գեդար կողմն 'ի Ճանապարհին Աթարայ». ասէ հեբրայեցի՝ «Այս ինքն Ասորեստանի»։

Ուխտ Թլփատութեան։

«Այս է, ասէ, ուխտ իմ զոր պահեսցես դու. զի թլփատեսջիք զմարմին անթլփատութեան ձերոյ. և ամենայն որ ոչ թլփատեսցի, սատակելով սատակեսցի անձն այն»։ Եւ ահաւասիկ օրէնք Ճշմարիտք տընկեալ են 'ի սիրտ մարդկան, և նոքօք հաճոյ եղեն առաջինքն. և յաւելուածք՝ զի եղեն վասն պատճառանաց ընչի, և խափանեցան։ Արդ թլփատութիւն յԱբրահամէ. և սէր նորա ընդ ա̄յ յառաջագոյն կանխագոյն է քան զթլփատութիւն ընդ արդարումն՝ որ յառաջ քան զնա. Ենովք որ վերացաւն, և Նոյ որ ապրեցաւն, և Սէթ որ օրհնեցաւ, և Մելքիսեդեկ որ քահանայացաւ։ Եւ եթէ ասիցեն՝ թէ սոքա յառաջ քան զօրէնսն եղեն. և զի՞րդ՝ թէ այդ այդպէս է, վասն չնութեանց, սպանութեանց, կռապաշտութեանց յառաջ քան զօրէնսն գիտացին և ծանեան զնոսա. և իբրև 'ի չարեաց հեռացան խորշեցան մերկնեցան. ո՞չ ահա զի բնութիւն որոշեցին զբարին 'ի չարէ անտի։ Եւ եթէ զա̄ծպաշտութիւն ոչ մոռացան արդարքն, սակայն մոռացան և զթլփատութիւն և զշաբաթ։ Շատ իցէ այս վասն դարովութ̄ ժողովրդեանն։ Ցիշեաց Յովսէփ զհեզութիւն զգաստութիւն առաւել քան զթլփատութիւն, զի ոչ թլփատեաց զորդիս իւր. և երկոքին 'ի մի անգամ պաշտէին փոխանակ անթլփատութեան, զի յինքենէ էր. հատ ընկեց զչնութիւն, զի ոչ յինքենէ։ Թէ այդ այդպէս է, մոլորեցաւ խաբեցաւ Յակոբ և առ զքոյրսն զերկոսեան. և զհետ կռոցն Ղաբանու ոչ մոլորեցաւ։ Եւ Իսրայէլ յիշեաց զթլփատութիւնն և մոռացաւ զԱստուած։ Առաքեաց Աստուած զՅովսէփ, և արարին զնա եգիպտացիքն ա̄ծ և երկիր պագին նմա. և առաքեաց ա̄ծ զորդի իւր առ հեբրայեցիս, և կախեցին զփայտէ։ Հեթանոսք երկիր պագանեն արդարոց նորա որպէս և Աստուծոյ. և հեբրայեցիք սպանանեն

զմարգարէս նորա որպէս զմոլեգինս ապականիչս ։

Մարդ ոչ եթէ զի օգնեսցէ տուաւ Թլփատութիւն, այլ զի մեկնեսցէ որոշեսցէ․ զի ոչ արգել զզաւակն Աբրահամու 'ի հնազանդութենէ, և ոչ Իսմայելի ժառանգութիւն ետ, և ոչ Եսաւայ օրհնութիւն ետ․ և ամենեքումբք հանդերձ որ անարգեցան ։ Եւ դարձեալ զի ոչ եթէ իմաստունք կատարէին զնա, այլ տգայք անգէտք․ զի և ոչ՝ Թէպէտ և արդարուն էր, ժառանգէին ընդունելիք նորա․ զի ոչ գիտութիւն նոցա կատարեալ լինէր նա 'ի նոսա ։ Եւ Մովսէս զքառասուն ամ խափանեաց զնա յանապատի անդ և ոչ պատժեցաւ ։ Եւ զի ասացաւ Եսովայ երկրորդում, զի չիցէ օտարութիւն, այն նոյն իսկ է ։ Զի Թէպէտ և յորժամ հայեսցի 'ի մարմին իւր, յիշեսցէ զուխտ ա̃յ իւրոյ․ և ապա շաբաթն՝ հանդերձ հանդերձիւք իւրեանց և կերակրօք և անասնօք իւրեանց՝ այլօքն հանդերձ ։

Ստեղծ տէր ա̃ծ զմարդն առանց Թլփատութեան․ և իբր անց զպատուիրանաւն, ոչ ցուցանէր ուրեք Թէ վասն Թլփատութեան արգելաւ 'ի դրախտէ անտի ։ Եւ ոչ վասն շաբաթու այսուհետև մեկնեալ մերժեալ է հրեայ 'ի դրախտէ անտի․ զի ոչ օրէնք եդան և ոչ շաբաթ հանգստեան և ոչ տօնք տարեկանաց․ զի գլուխ տօնից տարեկանաց ինքն է դրախտն ։ Արդ յայտ է Թէ գնացք եկեղեցւոյ՝ որ արտաքոյ քան զօրէնսն 'ի կեանս դրախտին հրաւիրեն, եթէ զառաջինն արժան է պահել՝ օրէնք նոր դրախտի անդ․ ևս արժանաւոր է պահել ։ Քանզի գիտէր ա̃ծ, Թէ զկնի կռապաշտութեան եգիպտացւոցն երթան նոքա․ և չէր ինչ հնար՝ եթէ 'ի հաւատոց անտի Աբրահամու յայտնեսցին և երևեսցին այնոքիկ՝ որ գնացից նոցա ոչ հաւասարեցին․ եդ մարմնոց նոցա կնիք վասն քննութեանց նոցա, զի պատրաստեալ էր լինել վասն ամօթոյ նոցա․ զի հեթանոսք մոլորեալք՝ մերձաւորք եղեն․ և Իսրայէլ որ ընտրեալն էր՝ հեռացաւ ։ Նա և Աբրահամու իսկ այսպէս ասացաւ․ "Այս է նշան ուխտի ընդ իս և ընդ քեզ" ։ Եւ եթէ ա̃ծ նշան անուանէ զնա, զի՞արդ ասեն Թէ պատիւ փառաց տուաւ նոցա․ զի յանապատի անդ 'ի վերակացութեան օրէնադրչին և մարգարէիցն և քահանայիցն և ոչ մի ոչ Թլփա-

տեցան, զի ոչ էին մերձ 'ի հեթանոսս. և նշանք Նո էին 'ի մէջ նոցա մինչ չև թլփատէին: Եւ մեծ ևս, զի ամենայն թլփատեալքն յանապատի անդ պատակեցան. և որք մնան յանթլփատութե՟, նոքա մտին յերկիր պարգևաց: Եւ անթլփատքն դարձեալ յանապատի անդ կերակրեցան մանանայիւ. և իբրև թլփատեաց զնոսա Յեսու՝ թէ ահա մոցէն, բարձաւ 'ի նոցանէ մանանայն. և ահա օգտութի՟ և շաբաթ թլփատութե՟: Նա և սուրն իսկ թլփատութե՟ յանդիմանէ զնոսա՝ եթէ թշնամի է նա մարդկան. զի ահաւանիկ Սիւքեմ թլփատեալք՝ զթլփատեալսն կոտորեցին. և մարգարէն ասէ. “Ամենայն հեթանոսք անթլփատ են մարմնով. և տունն Իսրայէլի անթլփատ են սրտիւք”:

Արդ եթէ թլփատութիւն մարմնոյ պիտոյ էր, ընդէ՞ր բամբասէր զանթլփատ սրտիւք. այլ եկեղեցի զի ստացեալ ունի յանձին զթլփատութիւն սրտի, ոչ ինչ պիտոյ է նմա թլփատութիւն մարմնոյ: “Ուխտօրեայ, ասէ, թլփատեսցի”. և ահաւասիկ սոքա որ թլփատեալքս են, դարձեալ միւսանգամ անթլփատս ծնանին: Եւ եթէ էր թլփատութի՟ն յոյժ, պարտ էր թլփատելոցն թլփատեալս ծնանել, որպէս մարդ 'ի մարդոյ. այլ զոր ինչ նոքա նշանօք գործեն, արարածք ծննդօք փոփոխեն զնոսա: Եւ զոր օրինակ բնութի՟ լուծանէ զթլփատութի՟, նոյնպէս լուծանէ զշաբաթս. զի ամենայն ինչ գործելով գործէ և գործելով գործի, և ինքն իսկ օր՝ յօրէ ոչ որոշի: Նա և օրէնքն լուծանեն զթլփատութի՟ք 'ի փախչանել տղայոցն յառաջ քան զութօրեայ ժամանակն, և լուծանէ զշաբաթս թլփատութե՟ն՝ զի ծնանին: Եւ զի ոչ եթէ սոքա են որ սրբեն, վկայէ Երեմիա յասել իւրում. “Մինչ չև նկարեալ էր իմ յորովայնի, ծանեայ զքեզ. և մինչ չև ելեալ էիր՝ յարգանդի սուրբ արարի զքեզ”: Եւ եթէ յարգանդի այսպէս նկարեաց իմաստութի՟ նորա, յաղթեն բնութե՟ն: Եւ եթէ յարգանդի սրբի շունչ, ո՞ւր է թլփատութի՟ մարմնոյ. և եթէ մինչ չև ծնեալ էր սրբեցաւ, ո՞ւր է ուխտն որ ասաց՝ ամենայն զի թլփատէին, զի յայտնի լիցի ժողովուրդն զոր ընտրեաց ա՟ծ: Ահաւասիկ Իսմայէլ խոտեցաւ անարգեցաւ, իբրու ինքն և զաւակ իւր

թլփատեալք էին. և Սահակ օրհնեցաւ մինչ չև ծնեալ էր, և ընդունելի եղև անուն նորա մինչ չև յղացեալ էր։ Եւ 'ի Սէթայ կարգէն արդար ոչ հատաւ մինչև յԱբրաամ, և թլփատումն ուրեք ոչ եղև պիտոյ։ Եւ ընդ Աբրահամու չորիցս անգամ խօսեցաւ Ած, և պայս 'ի չորրորդում նուագի անդ ստեղծ ընկալաւ զթլփատութի։ Արդ զոր օրինակ ոչ յայտնեաց անթլփատիցն Ենովքայ և Նոյի՝ և եթէ հանդերձեալ է պիղծ համարել զանթլփատութի, և ոչ Սէթայ և Ենովսայ՝ և եթէ սուրբ առնէ զշաբաթս, նոյնպէս և ոչ յայտնեաց՝ եթէ հանդերձեալ է լուծանել զշաբաթս և զթլփատութի։

Արդ անփոյթ արար, ասէ, զառաջինս, և կապեաց զմիջինսն, և թոյլ ետ վերջնոցս։ Եւ զի յայտ արասցէ զիշխանութն տէրութե իւրոյ օրէնսդրին, ոչ յայտնեաց մինչև օրէնք նորա երևեցան։ Ամենայն օրէնք 'ի ժամանակի իւրում եթէ էր յայտնեալ յառաջ քան զժամանակն՝ թէ անցանելոց են, անգոսնեալ անարգեալ լինէին 'ի ժամանակս իւրեանց. և փութացեալ ընթանային առաջինքն թլփատել 'ի ժամանակի անդ՝ յորում չէր արժան. կամ լուծանէին միջինքն զթլփատութի 'ի ժամանակի անդ՝ յորում չէր օրէն՝ եթէ էր յայտնեալ եթէ խափանելոց էր զնա. և զի ետ զնա նոցա՝ պիտոյ իսկ էր։ Սոյնպէս և զշաբաթն և զամենայն օրէնս ժամանակեանս. այլ կուրացոյց զնոսա յայնմիկ, զի անցանէին զնոքօք և ոչ լինէին պատժեալք։ Արդ լուծանել որ ըստ օրէ կամ ժամ 'ի ժամէ՝ յայտ առնէ զի ոչ եթէ յաւիտենից են, յայնմիկ՝ զի սեղանաւն կապեալ էին, և ընդ լուծանելն նորա՝ լուծանէին և նոքա։ Ասէ այսպէս. ոչ ունիս իշխանութի դու յամենայն տեղիս անխտիր մատուցանել զպատարագս քո. այլ օրէնք ճշմարիտ առանց զոհից պատարագաց և առանց սեղանոյ յամենայն տեղիս՝ տեղի նոցա է, և յամենայն ժամ՝ ժամ նոցա։ Արդ ոչ եթէ վասն թլփատուե կոչեցան որդիք Աբրահամու, և ոչ վասն շաբաթուց մտին յերկիրն օրհնեալ, և ոչ ընտրութիւք կերակրոց սրբեցին զնոսա։ Այլ ամենեքեան՝ որ ելին յերկրէն եգիպտացւոց և անցին ընդ ծովն և գնացին յա

նապատի անդ, մի՛ի պահոց անտի ոչ կարաց օգնել նոցա. այլ մինչ Թլփատեալն էին, պաշտեցին ըզ-կուռս. և 'ի պահելն իւրեանց զշաբաթ, տարաքին կուռս որթ պատկեր. և մինչ ընտրութիւնք կերակրոց 'ի մէջ կային, պոռնկեցան ընդ դստերսն Մադիամու այլօքն հանդերձ:

## ԳԼՈՒԽ Զ

ԱԲՐԱՀԱՄ ոչ եթէ զի ծերացեալ էր՝ ասաց "ծերացայ անցի զժամանակօք ծննդեան", այլ վասն մեծուն գործոյն՝ որ 'ի մէջ նորա և ձոյ և զաւակի նորա և այլոց որ 'ի միջի. զի որդիք թագաւորք յետոյ Սահակայ 'ի Քետուրայ եղեն Աբրահամու: Սոյն-պէս և Դաւիթ վաթսնամեայ էր, ածին նմա կոյս մի զի ջեռուսցէ զնա. այս ինքն ոչ եթէ զի ոչ կարէր հաղորդել ընդ կուսին, և անցեալ էր նա ըստ ժա-մանակս բնութեան իւրոյ, այլ զի խրատեցաւ նա յա-ռաջինն՝ ցոյց նա սահման կամաց իւրոց. փորձեցաւ 'ի Բերսաբէէ՝ զի մի ևս բարձրասցի, որպէս և այլքն ասեն. վասն այսորիկ "Փորձեաց զիս տէր և քննեաց զիս".. կամ փոխանակ զի ասաց "Փորձեա զիս տէր, և քննեա զիս տէր":

Իսկ զի ասէ "Ահա Սառռա ծիծաղեցաւ", նա և Աբրահամ ծիծաղեցաւ. այլ Սառռա իբրև այսպէս կատականաց առնէր զբանիւն, այլ Աբրահամ յու-րախութէ սրտի իւրոյ համբերէին շրթունք նորա. վասն այսորիկ Սառա միայն պատժեցաւ: Եւ իբրև հաստատեցաւ Աբրահամայ հարիւրամենի ծնանել, և Սառայի իննսունամենի որդի լինել, ոչ կարաց համբերել զցնծութին մտաց իւրոց: Եւ ասէ Աբրա-համ. "Ինձ Իսմայել ևեթ կեցցէ առաջի քո". զի յայտ արասցէ երկուս իրս. մի՝ զի զորդի աղախնոյն իբրև զորդի ազատին սիրէր. և 'ի հանել իւրում զնա, յայտնի լինիցի. զոր օրինակ ճգնեալ նեղեալ էր վասն Իսահակայ յերթալ պատարագել զնա, նոյնպէս վասն Իսմայելի: Եւ երկրորդ զի յայտ արասցէ՝ թէ վասն որդւոյ հաղորդեցաւ ընդ Հագարայ, և ոչ

վասն ցանկութեան ։ «Ինձ, ասէ, Իսմայէլ կեցցէ առաջի քո». զմեծութիւն պարգևաց տուչին յայտ արար, և ոչ եթէ երկմտեաց ինչ. և յայնմանէ՝ որ աւետիսն ետ նմա պարգևաց՝ խնդրէր նա. վասն այսորիկ 'ի վերայ մասին պարգևաց զարմացեալ էր, և վասն յաւելլոյն շնորհաց ։ Արդ յայտ արար զփափագելն իւր առ պարգևսն, և զգութն իւր որ առ Իսմայէլ ։ Կամ ըստ համարձակութեան ժպրհութեն Հագարայ հայէր. յաղագս այսորիկ վասն կենաց որդւոյ իւրոյ երկմտէր նա յասել իւրում. «Ինձ Իսմայէլ եւեթ կեցցէ առաջի քո»։ Կամ զի ոչ հրամանաւ ա̃յ առ նա զԱգար, այլ ըստ խրատու Սառայի, խորհեցաւ նա ընդ միտս իւր և ասէ. զի եթէ 'ի Սառայէ տուեալ լինի ինձ որդի, ապա խնդրուածս կենաց արժան է մատուցանել 'ի վերայ Իսմայելի ։ Այն զի որպէս զԻսահակ՝ նոյնպէս սիրէր զնա, յայնմանէ՝ զի իբրև յանցեաւ Սահակայ ինքն Իսմայէլ, որոշել մեկնել զնա ըստ բանին Սառայի ոչ կամեցաւ ։ Եւ եթէ տուչին Սահակայ վկայութե̃ իւրով զբանն Սառայի ոչ հաստատեալ էր, զԻսմայէլ 'ի ժառանգութէ իւրմէ նա ոչ մերժէր ։

Ոչ ետուն աւետիս հրեշտակք Աբրահամու մինչ կանխաւ յառաջագոյն. զի մի կարծիցի զնմանէն՝ թէ վասն այնորիկ ընկալաւ զնոսա. նա և յետոյ իսկ ծանեաւ զնոսա՝ թէ հրեշտակք իցեն նոքա ։ Զի մինչ չև հրեշտակացն եկեալ էր առ նա, գրեալ է, ասէ, «Երևեցաւ տէր ա̃ծ Աբրահամու առ կաղնեաւն Մամբրէի». և ապա ետես զերիս արսն ։ Եւ իբրև ընթացաւ ընդ առաջ նոցա, իբրև ընդ առաջ օտարաց ընթացաւ. ծանեաւ զա̃ծ՝ այն որ յառաջ երևեալ էր նմա ։ Այլ իբրև չոգաւ եհաս առ նոսա, այն ա̃ծ՝ որ երևեցաւ նմա յառաջագոյն, եկն լուծաւ 'ի վերայ միոյ 'ի նոցանէն. ետես նա զայն նշան 'ի մի ոք 'ի նոցանէն, և 'ի նմանէ խնդրէր. և նա ինքն է՝ որ ետ նմա աւետիս վասն Իսահակայ որդւոյ նորա ։ Եւ իբրև մեկնեցան երկուքն երթալ 'ի Սոդոմ, մնաց այն՝ որ խօսէրն նովաւ ա̃ծ ։ Եւ առաջի հրեշտակացն այնոցիկ ասէ ա̃ծ. «Մի եթէ թաքուստ ինչ իցէ յԱբրահամէ ծառայէ իմմէ».

զի երիւք վկայիւք. օրհնեսցէ զնա և բազմացուսցէ զնա զի ընկալաւ զնոսա. և նորօք կործանեաց զՍոդոմ, զի ոչ ընկալան զնոսա 'ի մէջ նորա: Նա և Ղովտայ մի յերկուց անտի երևեցաւ Աստուած յետոյ ըստ բանին Աբրահամու. խօսեցաւ և նա ամի: Եւ քանզի պատուական և փառաւորք էին հրեշտակքն մի քան զմի, եւտես զփառս մեծութեան որ էր առ մի'ի նոցանէ աւելի քան զընկերաց իւրոց, և տեսլեամբ ևս. և զի լուռ ևս կային առաջի նորա՝ որ փոքունքն էին քան զնա: Եւ յառաջ մինչև երթեալ էր Աբրահամու ընդ առաջ նոցա, և զնոսա ևս երիս տեարս կարդաց. որպէս վասն Ղովտայ գրեալ է, ասէ. եւտես երկուս արս՝ թէ զի նման իցեն նոքա օտարաց, ահաւանիկ յետ ճաշոյն ուտելոյ գիտաց Աբրահամ թէ հրեշտակք են: Գրեալ է եթէ յոտն կացին անտի արքն և գնացին. և զճշմարտութին նոցա եւտես Գեդէոն, հրեշտակ և տէր. սոյնպէս և Մովսէս. բայց մեկնապէս Հագար ասաց. ասէ, տեսիլ այ երևեցաւ ինձ, յետ տեսանելոյ զիս հրեշտակին. և նոյնին հրեշտակաւ եւտես զնա. իբրև զայն զի ասէ. անուն իմ'ի վերայ նոցա, այս ինքն նիշ նշանակի իմն.'ի վերայ նորա:

Եւ որպէս ետ նա զնշան իւր'ի վերայ Մովսիսի'ի ժամանակի իբրև իջին նստան փառք նորա 'ի վերայ երեսաց նորա, սոյնպէս փառաւոր լինէր հրեշտակն՝ յորում երևէր նմա փառք մեծութեան որպէս և մարգարէանային իւթանասունքն. և հոգին 'ի մի անդ երևէր թէ հանգուցեալ էր: Զի և երկոտասանքն զփականումն ունէին, սակայն Շմաւոնի տուեալ լինէին. և զի նա իսկ էր գլուխ,'ի վերայ քարոզութեան նորա ասաց շինել զեկեղեցի իւր: Զոր օրինակ արասցեն զօր թագաւորի պատերազմ, և զօրագլուխն որ ընդ նոսա իցէ՝ յանուն նորա անուանին ամենայն զօրքն: "Կոտորեաց զնոսա, ասէ, Յովաբ որդի Շարուհեայ": Մեծութին որ բնակեալ է 'ի բարձունս, զգեցաւ զկերպարանս օտարաց և առ սիրելին օտարաց եկն, զի մտցեն որպէս օտարք քաղցեալք հացիւ, և տայցեն որդի քաղցելոցն ծննդեամբ: Եւ իբրև լցաւ որովայն հիւրոցն'ի սեղանոյ անտի, լցան ամուլ մէջքն ասպրն-

Ջականացն 'ի պարգևաց անտի։ Ընթացաւ ընդ առաջ նոցա, զի տացէ այնոցիկ որ ծածկեցին զպարգևս իւրեանց 'ի ձեռն աղքատութեան, զի ցուցցեն զփոյթ յօժարութեան այնոցիկ՝ որ առնուն զնա։ "Եկայք, ասէ, 'ի տուն ծառայի ձերոյ"։ Եւ ապա յետ այսորիկ ասաց վասն նորա. "Մի՞ եթէ թաքուստ ինչ իցէ յԱբրահամէ ծառայէ իմմէ"։ Այս բան՝ որ վաղվաղակի կատարեցաւ 'ի տեղւոջ իւրում, փոխանակ զի ոչ գարշեցաւ նա լինել բարեկամ օտարաց, խոնարհեցաւ Տէր յայտնել նմա զխորհուրդս որպէս և բարեկամի։

"Աղաղակ, ասէ, սոդոմայեցւոց կանխեաց բազմացաւ. և մեղք նոցա մեծամեծք 'ի կշիռս դիզան, և եկին հասին մինչև առ իս։ Պատասխանի ետ նմա և ասէ. եթէ իցեն յիսուն արդար 'ի քաղաքի անդ, կորուսանիցես ապականմամբ դու զքաղաքն, և ո՞չ ներես դու վասն յիսուն արդարոյ թէ գտցի 'ի նմա. քաւ լիցի քեզ՝ որ դատիս զամենայն երկիր"։ Այս ինքն զի և ամենայն երկիր լի է մեղօք և անօրէնութեամբք. և քաղցր ես դու 'ի վերայ նոցա, և 'ի վերայ սոցա բարկանամս դու։ Եւ զի ասէ "Մի՞ արասցես դու զայդ դատաստան". ոչ եթէ 'ի վերայ արդարոց խնդրէր նա, այլ 'ի վերայ մեղաւորաց. քանզի գիտէր՝ թէ զարդարսն ոչ սատակէ. այլ արար ապաւէն զարդարսն, և խնդրեաց 'ի վերայ մեղաւորաց։ Ո՞վ յստակութիւն Աբրահամու. Եղիա ժխտեցաւ յասելն իւրում "Ես միայն մնացեալ եմ". և Աբրահամ 'ի կողմն մի երկրի ասաց "Եթէ իցեն յիսուն արդար 'ի քաղաքի անդ"։ Եղիա 'ի պաշտօնէից անտի Բահաղու և վասն մոլորութեան Եզաբելայ և Աքաբու զազրացեալ ձանձրացեալ էր յամենայն ժողովրդենէ անտի. այլ Աբրահամ 'ի նմանութենէ անտի Աբիմելէքայ և Մելքիսեդեկի հաւատաց և 'ի վերայ բազմաց։

Գնացին հրեշտակքն 'ի Սոդոմ. այլ առ սոդոմայեցիսն բարկութիւն, զի ողորմութիւն առաջնորդեաց նմա, այն՝ որ ներէրն, և ոչ դարձան. և առ Աբրահամ ողորմութիւն, զի առաջնորդէր նոցա ստուգութեան արդարութեան. առաքեաց առ նա հրեշտակս, և

յանձն արար նոցա աւետիս պարգեւաց. զի զարմասցին հրեշտակքն թէ որպիսի բարեկամ գոյ ա̄յ 'ի վերայ երկրի։ Եւ միւս եւս, զի ծանիցեն զպատիւն զոր առնէր նա օտարաց, եւ ապա տացեն նմա աւետիս պարգեւաց։ Ի նմին օրինակի առաքեաց զնոսա 'ի Սոդոմ, զի տեսցեն նախ զանարգանս օտարաց, եւ ապա արասցեն զնա հրձիգ։ Որպէս եւ անդ մինչ չեւ փորձեալ էր եւ գտեալ էր զճշմարտութի սիրոյ նորա, ոչ ետուն նմա զԻսահակ։ Այսպէս եւ աստ իբրեւ գիտացին եւ ծանեան զգործն, ապա իջուցին 'ի վերայ նորա հուր։

Զի՞նչ սէր որ ոչ հաւատայ, եւ ոչ հաւատք որ ոչ սիրեն. զի 'ի ժամանակի իբրեւ սիրեաց ա̄ծ զԱբրահամ՝ եւ օրհնեաց զնա. եւ իբրեւ սիրեաց Աբրահամ զա̄ծ՝ հաւատաց նմա։ Ահ եւ երկիւղ 'ի նեղութենէ է, այլ հաւատք 'ի կամաց են. երկիւղ 'ի սպառնութենէ ծնանի, եւ հաւատք 'ի սիրոյ։ Իսկ՝ զի՞նչ սէր էր առ ա̄ծ Աբրահամու, բայց 'ի հաւատոց. եւ զի՞նչ քննութի էր ա̄յ առ հաւատս, բայց աւետիքն պարգեւաց։ Զի՞նչ արժան էր Աբրահամու, այլ հաւատալ յա̄ծ՝ որպէս յա̄ծ. եւ զի՞նչ վայել էր ա̄յ, բայց աւետիս տալ որպէս եւ փորձիչ, եւ հատուսցէ որպէս եւ փոխառու. զի հաւատք նորա որ 'ի մէնջն են՝ փոխ են, եւ պարգեւքն որ 'ի նմանէ են՝ հատուցումն են։ Տես ո՞րչափ դիւրին է դուռն՝ որ բացեալ է քեզ, ո՞վ վատ, զի կամք քո հաստատունք մուրհակ պարտեաց նորա են առ քեզ. ո՞րչափ հաւատաս, նոյնպէս տաս փոխ. եւ ո՞րչափ փոխ տաս, ընդ միոյ հարիւր պահանջես։ Զծառայսն Ղաւթայ զբաներողս եւ զկազգացողս մերժեաց ստուգութին եւ ընկէց 'ի մէջ սոդոմայեցւոց, որ զբանեարմն սիրէին. զի եւ նոքա խրատեսցին ընդ նոսա. եւ Ղովտ՝ զի համբերէր ներքնոց եւ արտաքնոց, ապրեցի 'ի միջոյ նոցա։

Տես դու զգործսն Աբրահամու եւ զաղօթսն զոր արար ըստ անչափ բարկութե երկրին սոդոմայեցւոց. այսպէս անչափ իսկ չար էին խորհուրդք նոցա։ Պտուղ երկրի նոցա յոյժ քաղցր էր, այլ պտուղ գործոց նոցա յոյժ դառն էր. եւ երկիր նոցա ըստ բնութե պտուղ ցանկալի բղխէր, այլ ազատութի նոցա

արտաքոյ բնութեան պտուղ զազրութեան բղխէր ։ Ետ նոցա երկիր բարութեան, զի թերեւս հայեսցին չարքն ընդ երկրին բարութիւն եւ նմանեսցեն նմա, այլ ոչ նմանեցին նոքա բարութեան եւ վայելչութեան երկրին. այլ փոխանակ բարութեան զգործ խոտորման գործեցին ։ Եւ զի ոչ նմանեցին խոտորեալքն բարուէ երկրին, տատապալեաց կործանեաց զերկիրն, զի նմանիցէ նոցա ։ Փոխանակ զի խոտորնակ միտք գնացին նոքա 'ի վերայ նորա, ետ նոցա երկիր բարութեան՝ զի առանց պատասխանի տալոյ եղիցին նոքա ։

Արդ զգործս սոդոմայեցւոց յանուն աղաղակի առակեաց. զի գոչէին եւ աղաղակէին մեղք նոցա առաջի դատաւորին, որպէս արիւն Աբէլի առաջի վրէժխնդրին. ասէ ցԱբրահամ. "Աղաղակ սոդոմացւոց եւ գոմորացւոց եկին հասին մինչեւ առ իս" ։ Եւ փոխանակ զի ուրախ եղիցի Աբրահամ՝ զի սկսանէր կոտորել սատակել զքանանացիսն, զի ընկալցի նա զժառանգութիւն նոցա, որպէս տուաւ նմա աւետիքն, արդ անցեալ կայր՝ խնդրէր եւ աղաչէր փոխանակ նոցա. նա եւ որ գերեցան եւս, դարձոյց անդրէն ։ Եւ եթէ վասն Ղովտայ, կարող էր եւ զՂովտ միայն թափել իբրեւ զայն զՇամուշնէ բռնաւորեանց. այլ գնաց նա առնել մարտ պատերազմի ընդ այնոսիկ՝ որ եկին 'ի թափել ընդարձակեցուցանել նմա զերկիրն, զի ժառանգեսցէ զնա ։ "Եւ եթէ իցեն 'ի նմա, ասէ, յիսուն արդարք". եցոյց նա՝ զի այս կամք էին, զի ամենայն ինչ նովաւ եղեւ իբրեւ զայն [1] զԶաքարիայն ասէ. ասաց տէր ցսատանայ սաստեսցէ 'ի քեզ տէր ։

Այլ ոչ եթող ստուգութիւնն զՂովտ 'ի մէջ սոդոմայեցւոցն, փոխանակ զի ոչ եթող նա զստուգութիւն 'ի մէջ սոդոմայեցւոցն ։ Հաստատեցաւ նա 'ի նմա մինչ դեռ 'ի միջի նոցա բնակեալ էր, եւ մեկնեաց որոշեաց՝ զնա եւ հան զնա իբրեւ 'ի մէջ նոցա խառն էր նա ։ Մեկնեաց որոշեաց եւ եցոյց նմա զգործս ստուգութեան 'ի մէջ անիրաւաց, որոշեաց մեկնեաց եւ նա եւ յայտնի եցոյց զփրկութիւն Ղովտայ յանօրինաց անտի ։ Վայել էր իսկ ստուգութիւն 'ի թիկունս

1 Յօրինակին զայն ։

հասանել նորա 'ի ժամանակի նեղութեան, այնմիկ՝ որ ոչն մոռացաւ նա զստուգութիւն 'ի ժամանակի ընդարձակութեան : Այլ արժան էր իսկ, զի մի ընկղմիցի նա 'ի մէջ սոդոմայեցւոցն այր մի՝ որ կորզեաց եհան զանձն իւր 'ի գործոց անօրէն սոդոմայեցւոց : Զիարդ կորնչէր նա ընդ սոդոմայեցիսն այր մի՝ որ ոչ կորոյս զխորհուրդ իւր 'ի մէջ սոդոմայեցւոց. Թէպէտ և խորհուրդք սոդոմայեցւոց կորուսեալ և ապականեալ էին, սակայն նորա խորհուրդքն հաստատուն էին : Վասն այսորիկ 'ի ժամանակի իբրև կործանեցաւ երկիրն 'ի ներքոյ սոդոմայեցւոց, երկիրն որ 'ի ներքոյ ոտից նորա՝ հաստատուն կայր : Փոխանակ զի տապալեաց ցանկութիւն զխորհուրդս նոցա արտաքոյ քան զբնութիւն, տապալեաց ստուգութիւն զերկիր նոցա առանց բնութեան : Եւ զի եղեն նոքա կամօք իւրեանց 'ի ներքոյ մոռաց տապալելոց, եղեն նոքա իբրև ոչ կամէին՝ 'ի ներքոյ երկրի տապալելոյ : Տապալեալ շրջեցաւ ցանկութիւն նոցա 'ի վերայ երկնաւորացն, տապալեցաւ երկիր նոցա 'ի վերայ բնակչացն իւրեանց : Փութացաւ երկիրն, առ կուլ զնոսա և ծածկեաց 'ի ներքոյ իւր, զի մի տրտմեսցին երկինք 'ի տեսիլ այնոցիկ՝ որ անարգեցին զսիրելիսն նորա : Ոչ թողաւ նոցա բնակել 'ի վերայ երկրի այնոքիկ՝ որք անարգեցին զբնակիչս բարձանց :

“Յիշեաց, ասէ, Աստուած զԱբրահամ, և եհան արձակեաց զՂովտ„. զի մեծացուսցէ զԱբրահամ. և զի յայտ արասցէ եթէ ամենայն որ աշակերտէ և առնէ արդարս, հաղորդի նա մասին նոցա : Եւ զի ցուցցէ նա զստուգութիւն նորա, զի փոխանակ միոյն զի ոչ խնդրեաց նա, եղեն կամք նորա վասն բազմացն զի խնդրեաց 'ի վերայ նոցա : Եւ քանզի անբիծ և անարատ էր Աբրահամ, կապեաց զստուգութիւն 'ի սկիզբն բանից իւրոց, զի մի կորիցէ արդարն ընդ մեղաւորին : Ոչ եթէ 'ի վերայ արդարոցն գլխովին խնդրեաց նա՝ զի ապրեսցին 'ի վախճանի, այլ և 'ի վերայ երկրին՝ զի ապրեսցին վասն նոցա : Ղովտ աղաղակէր յախմ գիշերի, զի գործս չարս սոդոմայեցիքն գործէին. և Աբրահամ քարոզէր՝ թէ որպէս աղաչեաց նա և խնդրեաց, և վասն վկայութեան նոցա ասէ՝

նա և աւետիս պարգևաց ետուն ինձ ։ Այլ իբրև եղև ծնունդն 'ի ժամանակի իւրում, ետուն փառս որդիք մարդկան այնմիկ՝ որ ժամանակս բազումս երկայնամիտ եղև առ սոդոմայեցիսն ։ Փոխանակ զի կոչեաց զանուն նորա Սեգովր, հեբրայեցի ասէ՝ փոքրիկ . “Ահաւասիկ փոքրիկ է” ։

“Ահաւասիկ, ասեն, հայր մեր ծերացեալ է, և ոչ ոք գոյ յերկրի որ մտանէ առ մեզ . եկ արբուսցուցանեմք զհայր մեր գինեաւ, և ննջեմք ընդ նմա” ։ Հաւանեցան, ասեն, 'ի պատճառ գինւոյ գործել զցանկութիւն մարմնոյ . այլ ոչ եթէ ցանկութիւն գործել, այլ ընդդէմ ցանկութեան գործել ։ Զի ցանկութիւն աղբեւրս բանայ հասել զնոսա յերկիր, որ զպտուղս ոչ սնուցանէ . այլ ամուսնութիւն ուղղութեամբ աղբեւր իւրոյ զերկիր ջրուցանէ, որպէս զի պտուղ եղիցի նմա ընդ ժամանակաւորս ։ Արդ ամենայն որ վասն որդւոց զգուշացեալ է 'ի չնութենէ, զի նա է ապականիչ որդւոց, զի զցանկութիւն կամաց բարեաց երթայ կատարել . իսկ այն որ զպղութիւն յաբովայնի ոչ առնէ, և զծնունդ յարգանդի ոչ կատարէ, թշնամի է նորա, և սպանանէ զնա և ատէ զնա և ապականէ զնա ։

Արդ քանզի դստերքն Ղովտայ զաւակ կամեցան յարուցանել, ոչ եթէ ցանկութիւն չոգան գործել . այլ ամուսնութիւն արտաքոյ օրինաց, զի աշխարհս մի անզաւակեսցի ։ Թէպէտ իբրու արտաքոյ կարգաց արարին զայս, սակայն որպէս զի յարուսցեն ժառանգաւորս՝ վասն կարգաց աշխարհի խորհեցան ։ Թէպէտ ընդդէմ բնութեանց յայտնապէս պատերազմանէին, սակայն փոխանակ բնութեան 'ի ծածուկ մարտընչէին ։ Տեսին զերկիրն զի թափուր եղև 'ի ծննդոց իւրոց յարժանի, և համարձակեցան յանարժանս որդիս յարուցանել նմա . նոյնպէս և Թամար ։ Զի եթէ զպնդակազմ նահատակս կարող է գինի լուծանել և լքեցուցանել, զիա՞րդ կարէին զօրանալ տկարքն 'ի վերայ նորա ։ Վասն էր ոչ կարես դու՞ հակառակել և ընթանալ ընդ շունչ հողմոյ, կամ նեղել մտանել առ բաց հրոյ . Թերևս ասիցես, զի բնութիւն իւրեանց խստագոյն են քան զիմ ։ Եւ գինի ո՞չ ահա բնու-

թ՟ք իւրով ստացեալ ունի զզօրութ՟ն ։ Փախիցիս դու 'ի բորբոքեալ հրոյ, զի այրէ զքեզ մարմնապէս. արժան է փախչել յայնմանէ՝ որ յամօթ առնէ զքեզ յայտնապէս ։ Մինչ դեռ 'ի քեզ է խռովութիւն գինւոյ, աշխատիս ջանաս դու զգաստանալ. իսկ յորժամ հանիցես դու զնա 'ի քէն, ո՞չ ահա առաւել ես զգաստանաս դու. զի եթէ մինչդեռ խռովիչն պղտորիչն ընդ քեզ է՝ ծանր լինել փութաս դու, յորժամ մեկնիցիս որոշիցիս դու 'ի նմանէ ո՞րչափ ես առաւել փառաւոր լինիցիս դու ։ Զի եթէ խառնակութիւն արտաքին խարդախչացն պարաւանդք են ուղղոցն, ո՞րչափ ես առաւել այդ որ 'ի փորիդ քում արգելեալ կայ ։ Նա և խարդախն նովաւ խարդախիանան ։ Մի հակառակեսցուք վասն բնութ՟ց որ զօրագոյն իցեն քան զմեզ, զի խոտանման և թանձրանման ստամոքք 'ի բազում կերակրոց, և մնասին միտք յառաւելագոյն յանչափ գինւոյ ։

Յուսահատութ՟ք հայէին ընդ Սառա ընդ ամուլն ծերացեալ անցեալ ըստ չափ ժամանակի. արդ սա, ասեն, ծնանի՞ ։ Սոյնպէս հայէի ընդ դժոխս վիհս. արդ սա, ասեն, դարձուցանիցէ՞ ինչ ։ Արդ ընդ պարգևսն զաւակին որ ընկալաւ Սառա, զնորոգութիւն երիտասարդութեան և զողջութ՟ն ընկալաւ՝ որպէս զՆեեմանն և զգաւազանն Ահարոնի. ապա թէ ոչ՝ զի՞արդ եռացին ստինք ցամաքեալք. ապարահութ՟ի դաշտանին՝ զի դարձաւ նա վերստին, վկայէ վասն ողջութ՟ն դառնալոյ ։ Եւ զի ցանկացաւ նմա Աբիմելէք, 'ի վկայութ՟ի ողջութ՟ն նորա գրեցաւ այս ։ Զի որպէս նորոգին ողջանման օձք և արծուիք մարմնովք իւրեանց և ոչ ամօք, սոյնպէս և Սառա և Աբրահամ ։ Զի այն որ ասացն՝ բայ "Եթէ իցէ՞ ինչ մարթ 'ի հարիւրամենի որդի լինել", յաւել դարձեալ ամս քսան և մի, և առ զկին, զի ծնցի և թագաւորս հեթանոսաց որպէս և խոստացաւ նմա ։ Եւ զի եղիցին հարճորդիքն քարոզիչք, և բերիցեն պատարագս որդւոյն ազատի, ետ նոցա պարգևս և արձակեաց զնոսա առ 'ի Սահակայ. զի առցեն զպարգևսն և եկեսցեն առ այն՝ որ ծնանելոցն իցէ 'ի Սահակայ ։

“Ա՛ր ինչ, ասէ, ցայժմ ոչ եղև ; արդ լինիցի ինձ
երիտասարդութիւն ». վկայեաց զի երիտասարդութիւն
պիտոյ է յղութեան, և մարգարէացաւ. զի տղայութիւն
երիտասարդութեան որպէս և խմոր Թուեաւ ըստ ծե-
րութիւն նորա և նորոգեաց զնա : Զի զայն ինչ զոր
ընկալաւ նա՝ եղև նա նոցա խմոր նորոգութեան, և
նորոգեաց տղայացոյց զնոսա : Եւ օրհնութիւն այն
որպէս բնութիւնք յարգանդէ ծնաւ յետոյ. և իբրև
ոչ բնութիւնք առանց առն յղացաւ, այն որ կանխաւ
մինչև յառաջագոյն ծերացելոց անցելոց ըստ չափ
ժամանակի, իբրու բնութիւնք տուաւ նոցա նորոգումն
երիտասարդութեան և տղայութիւն առանց բնութեան :
Եւ զոր օրինակ արար զայս 'ի գալստեանն իւրում առ
Մարիամ, նոյնպէս և արար զայն 'ի գալստեան իւ-
րում առ Սառռա : Իսկ այն որ մեռաւ, զգործս կա-
նանց գործել ոչ կարէ, բայց կենդանի, նոյնպէս և
արգանդ մեռեալ. և այս որ եղեն, զի ոչ իբրու բնու-
թիւնք, զի իմասցին և գիտասցեն զտէրն բնութեանց՝ զի
եղև նա սիրով իւրով 'ի ներքոյ բնութեան. և զի գի-
տասցեն եթէ պարգև արտաքոյ քան զբնութիւն մտա-
նէ բաշխել որպէս առ Սառայի՝ զի յղացաւ զխոր-
հուրդ նորա, և որպէս Մարիամայն զի ծնաւ զճըշ-
մարտութիւն նորա : Այլ և 'ի ծնանելն Իսահակայ
խորհրդեան նորա արարածք կապեալք արձակեցան,
և անիծեալք օրհնեցան. արձակեցան արգանդք կա-
պեալք տանն Աբիմելեքայ, և օրհնեցան անզաւակ
որովայնք նոցա : Եւ եղև անդ ծնունդ մի նոր վայե-
լուչ գեղեցիկ քան զառաջինն, զի գոհասցեն վասն
խորհրդոյն այնմիկ՝ որ արար ծնունդ նոր 'ի մկրտու-
թիւն աւազանին, զի վայելուչ գեղեցիկ է քան ըզ-
ծնունդս որովայնի :

Եւ զի յայտ արասցէ զիշխանութիւն տէրութեան իւ-
րոյ, այն զի ամենայն ինչ դիւրին է նմա առնել, ար-
գել զյղութիւն 'ի կանանց նոցա բազում ժամանակս.
զի անզաւակութիւնք կանանց իւրեանց ուսցին գիտաս-
ցեն և ծանիցեն զանզաւակն զայն, զի յառնէ իւր-
մէ ընկալաւ զյղութիւն զայն Սառռա : Արդ ոչ եղև
անդ յղութիւն, զի ծննդականօքն որ եղեն յանկար-
ծակի ամուլք, և լուացան զսերմանիս արանց իւ-

րեանց, յայտ լիցի ամլութին՝ զի մնայց և աճեցոյց զսերմ միակի իւրոյ ։ Նա և ոչ յղութիւն անասնոց եղև ա՛նդ . զի ծանիցեն եթէ վասն զի բազմացուցին զհայհոյութիս իւրեանց 'ի վերայ արդար և ստոյգ ծննդեան, անցաւակեցան արգանդք նոցա յուղեղ ծննդենէն . զի անկանարկեալ լիցի ա՛նդ հատուցումն այնոցիկ՝ որ հայհոյեցին և հայհոյեսցեն 'ի վերայ ծննդեան տեառն մերոյ . զի նա ինքն է լրումն կատարման Սահակայ ստուերի, այս ինքն ճշմարտութի Սահակայ նշմարանի ։

Արդ իբրև աղօթիւքն Աբրահամու բացան արգանդք կապեալք, քարոզիչք 'ի վերայ արգանդին բացելոյ, ուսան նոքա՝ զի եթէ կանաց ընկերաց իւրոց ետ Աբրահամ ծնունդ աղօթիւք իւրովք, յայտ է թէ իւր կնոջն՝ յօրհնութենէ որ յերանս իւր էր՝ լցեալ էր ։ Եւ յայնժամ եկին ետուն զերանութին այնոքիկ՝ որ ոչն ծնանէին, այնմիկ՝ որ ծընաւն . զոր օրինակ երանէր նա յայն ժամանակի այնոցիկ՝ որ ծնանէին, և ինքն անզաւակեալ էր ։ Արդ շարժեաց խռովեցոյց ծնունդն Սահակայ զամենայն բնութիս 'ի ծնունդս . զի տունն Աբիմելէքայ ծանիցեն և գիտասցեն զանբծութի նորա . զի խորհուրդ է նա այնորիկ՝ որ ոչ եթէ 'ի ձեռն փոքր արգանդին երևեցան յայտնեցան սքանչելիք նորա, այլ առաքինի աստեղն քարոզեցաւ վկայութի նորա ։ Զի աստղն որ ծագեաց Յակոբայ, հրամանն ետ աստեղն բարձանց առաջնորդել որդւոցն Աբրահամու գալ երկիր պագանել որդւոյն Դաւթի ։ Արդ աստղն կացոյց զնոսա 'ի վերայ աստեղն, զայնոսիկ՝ որ խնդրէին զնա . և մարմինն որ 'ի մարմնոյ անտի նորա է՝ նա կացուցանէ զմեզ 'ի վերայ նորա, զի խնդրեսցուք զնա ։ Զի զոր օրինակ ինքն իսկ աստղն ստոյգ ճշմարիտ և հաւատարիմ էր առաջնորդութե իւրով առաջի այնոցիկ՝ որ զտէրն մեր խնդրէին, սոյնպէս ստոյգ ճըշմարիտ և հաւատարիմ է այս մարմին առաջնորդութե իւրով առաջի երեսաց մերոց . զի մի 'ի ժամանակեան յայլոն յայն մուծցէ զմեզ, այլ յառագաստ նորա՝ որ յաւիտեանս յաւիտենից ։ Եւ ոչ մեք մատուսցուք նմա զմեզն, այլ մեք 'ի նորայոյ անտի առցուք

զամենայն երանութիւն բարութեանց ։

Նաեւ զի անխայեցոյց զԱբիմելէք զի մի՛ մերձեսցի առ Սառայ. մի՛ զի ոչ էր նա չար իբրեւ զՓարաւոն .« Ցանմեղութեն սրտի իմոյ, ասէ, արարի զայս ». եւ վկայեաց 'ի վերայ նորա Ած . «Ջի եւ ես, ասէ, գիտեմ. եւ վասն այսորիկ արգելի զքեզ, զի մի՛ մեղիցես » ։ Եւ միւս եւս, զի մերձ էր Սառայ 'ի ծնանել, արգել զնա զի մի՛ մերձեսցի 'ի նա. զի մի՛ մայրն, որ զիսահակ ծնաւ, կարծիցէ թէ որդի իցէ Աբիմելէքայ եւ ոչ որդի Աբրահամու. զի յղի էր նա յայնմ ժամանակի ։ Եւ զի ասէ. կապեցեր ծածկեցեր զաչս ամենայն զօրաց իմոց, զի գողացար դու, ասէ, զսիրտ մեր ամենեցուն. եւ կարծեցաք թէ քոյր իցես դու նորա ։ Եւ զի ասէ յանդիմանութիւն կշտամբեցեր զիս, զի քաջալերեցաւ Սառա յորժամ ետես թէ Ած օգնական է նորա, յանդիմանութիւն կշտամբեաց զնա եւ ասէ. ընդէ՞ր որպէս յիմար մի անցանես դու ըստ Ճանապարհս կնոջ քո. վասն այնորիկ ետ նմա զվարձս յանդիմանութեն նորա, զի խրատեաց զնա հեզութիւն եւ զգաստութիւն իւրով ։ Եւ զի ասէ «Արգել եւ փակեաց Ած զամենայն արգանդ տանն Աբիմելէքայ ». զի հարկանէին ստիպէին երկունքն եւ ծնանել ոչ կարէին, զի սրքութեն սատակութեն էր գիշերոյ միոյ եւ տուընջեան ։ Այլ Ցոյնն ասէ. «Փակելով փակեաց տէր արտաքոյ ընդդէմ ամենայն արգանդի տանն Աբիմելէքայ » ։ Փոխանակ այնր՝ զի ասէ «ի ներքոյ եղեւնոյ միոյ ». հեբրայեցի ասէ «ի ներքոյ ծառոյ » ։

## ԳԼՈՒԽ Է

«Առ դու զորդիդ սիրելի զմիամօրդ քո, եւ գնա դու յերկիրն ամուրհացւոց ». հեբրայեցի յերկիրն մաւխացւոց ասէ ։ Եւ զի մի՛ ոք կարծիցէ՝ թէ ափշելով աշեցոյց Ած զԱբրահամ, ասէ ցնա. «Երթ գնա դու երեքօրեայ մի գնաց Ճանապարհի » ։ Արդ Աբրահամու մեռեալ էր Սահակ՝ յայնմ օրէ հետէ, զի ասաց նմա Ած. մատո դու զնա ինձ պատարագ. եւ մեռեալ բարձեալ տանէր զնա թաղել. այլ կեն-

*դանդանալով կենդանացաւ նա յաւուրն երրորդում 'ի տեղւոջ մահուան իւրոյ ։ Զի՞նչ պիտոյ էր զի կախիցի խոյն զծառոյն, եթէ ոչ առակ օրինակաց նըկարեալ մեզ ։ Եւ փոխանակ զի եա Աբրահամ զամենայն զսէր իւր որդւոյն իւրով ա̃յ, եա ա̃ծ զամենայն զսէր իւր անդրանկաւն իւրով ։ Եւ զի համբերեաց Աբրահամ վասն ա̃յ մինչ դեռ զորդին իւր զենայր, համբերէր ա̃ծ յանցանաց զաւակին Աբրահամու վասն նորա ։ Ա̃ծ՝ զի խնդրեաց զԻսահակ, զի յայտ արասցէ զսէր հօր նորա. և զի ոչ եա թոյլ նմա սպանանել զնա, զի արգելցէ զժողովուրդն զի մի զոհեսցեն զորդիս իւրեանց կռոց ։ Աբրահամ զկնու սիրոյ որդւոյն իւրոյ առ զյաղթութիւն 'ի վերայ ախոյանին իւրոյ. զի յայնմիկ՝ զի եա զորդին իւր ա̃յ իւրոյ, առ նա զյաղթութիւն յախոյանէ անտի իւրմէ ։*

*Արդ հայեցաւ Աբրահամ թէ ինչ զոր ա̃յ տայ՝ աւանդ յանձն առնէ նմա, զի պահեսցէ զնա նմա. և զոր ինչ յախոյանէ անտի իւրմէ առնու՝ կորզելով կորզէ զնա, զի մի կորուսցէ զնա յիւրմէ ։ Արդ փութայր նա տալ զմիամօրն իւր ա̃յ, զի առ ա̃ծ պահեալ լինիցի. և փութայր թափել կորզել զպսակն իւր յախոյանէ անտի իւրմէ, և զի մի ապականիցէ զնա ախոյեանն իւր ։ Նոյ յանասնոց մատոյց պատարագ, այլ Աբրահամ զմիամօրն իւր. թէպէտ և երկոքեան արդարք իցեն, սակայն զատեալ մեկնեալ են պատարագք նոցա ։ Ցայն յառաջինն 'ի Նոյին՝ ողորմութիւն եղև աշխարհի, և յայսմիկ յԱբրահամու՝ նկարեցաւ առակ օրինակի միածնին ։ Արդ Աբրահամ գնեաց արքամբ Իսահակայ զերկիրն քանանացւոց, զի 'ի նմա էին թագաւորք՝ զաւակք նոցին իբրև զաստեղս, և իբրև զաւազ ։ Զայս ամենայն երկնելոց էր Աբրահամ յերանս Իսահակայ, որպէս և ծնունդքն Ադամայ յերանս նորա ։ Զի կեանքն որ զկնի նորա եղեն ընդունելին պատարագաց՝ այն էր, զի զոր ինչ կամիցի արասցէ զպատարագն. իսկ մատուցչին այս էր, զի մատուցանելով մատուսցէ անեթ. իբրև երևեցաւ նմա թէ որչափ իշխան էր ձեռնն Աբրահամու 'ի վերայ պատանեկին, երևեցաւ թէ որչափ իշխան էր սէրն քաղձրելոյն 'ի վերայ*

Աբրահամու ։ Այլ ոչ յայտնեաց Սառայի, քանզի նմա ասաց ա՟ծ․ այլ մատոյց նա նախ զխոյն պատարագ, և ապա արձակեաց զԻսահակ 'ի կապանաց անտի, թէ գուցէ տեսիլ իցէ ։ Խնդրեաց ա՟ծ զսէրն Ճշմարիտ Աբրահամու, և ահա 'ի միամօր նորա էր․ վասն այսորիկ նովաւ փորձեաց զնա․ և զսէրն Յակովբու, և ահա 'ի Յովսէփ․ և զԴաւիթ, և ահա Սողովմոն․ և զՍահակ, և ահա յեսաւ ։ Վասն այսորիկ ծածկեաց յԻսահակայ առաքինչն պարգևաց, զի մի տացէ զնա տրտմութ՟ք կամ բռնութ՟ք․ քանզի ընդ բերան նորա անցանէին պարգևքն այն, զի ձայնիւ ընդունէր նա շնորհութիւն․ զիմրդ օրհնէր նա մինչ դեռ տրտմ․ամ էր նա ։ Սոյնպէս խնդրեաց ստուգութ՟ին զսէրն Քամայ, և ահա 'ի Քանան․ և նովաւ տանջեաց զնա, այս ինքն զերկոսեան միմեամբք ։ Եւ ասեն զի նա ետես յառաջագոյն և ծիծաղեցաւ, վասն այսորիկ ա՟ծ եդ 'ի վերայ նորա նշան զուխտի իւրոյ, զի պատուեցաւ և զգաստացաւ անդամն՝ զոր խայտառակեաց Ադամ․ և ետ զնա յայտն կատականաց, զի երևեսցի թէ գործք արարչին ա՟մ փառք են։

Տասն փորձանս փորձեցաւ Աբրահամ․ տասն հարուածս ած 'ի վերայ եգիպտացւոցն, զի հնազանդեսցի նա զաւակի նորա ։ Տասն պատուիրանս ետ որդւոց նորա, զի պահիցեն․ տասն ազգ որպէս զտասն պատուիրանս ետ նոցա ։ Այլ զկենացիս և զկենեզացիս, և զգեդմոնացիս որդիքն Մովաբու ժառանգեսցեն զնոսա․ զի մովաբացւոց, ասէ, ետու ես զնոսա ։ Եւ յայտ արար՝ թէ տալով ետ նոցա, իբրև զայն զի ասէ "Ետ նոցա զգաւառս հեթանոսաց"։ Այլ տասն փորձանքն Աբրահամու այս են․ Ել զնա դու յերկրէ քումմէ, և ել ։ Երկրորդ՝ և վարեցաւ Սառա 'ի տուն Փարաւոնի և ոչ տրտնջեաց ։ Երրորդ՝ և կագքն հովուացն Ղաւթայ 'ի ժամանակի իբրև ետ նա Ղաւթայ ընտրել զգաւառ ։ Չորրորդ՝ զի ոչ առ նա յընչից սոդոմայեցւոցն, զոր թափեալ էր նա 'ի կորուս իւր ։ Հինգերորդ՝ և զի ասէ "Եղիցի զաւակ քո որպէս և աստեղք երկնից"․ և հաւատաց նա, և համարեցաւ նմա յարդարութ՟ի ։ Վեցերորդ՝ և զի ետ 'ի ձեռս զՀագար Սառայի 'ի ժամանակի

իբրև յղացաւ արհամարհեաց զտիկինն իւր։ Եօթ-ներորդ՝ և զի ասէ "Ի բաց հան զաղախինդ"․ և հան զնա և ոչ եկաց հակառակ Սառայի։ Ութե-րորդ՝ և զի ետ նմա նշան թլփատութե͞ն 'ի ժամանա-կի իբրև փոխեաց զանուն նորա։ Իններորդ՝ և զի վարեցաւ դարձեալ Սառաա առ Աբիմելէք։ Տաս-ներորդ՝ և զի ասէ "Ա՛ռ դու զորդիդ քո զմիամօրդ զսիրելիդ, և մատո ինձ պատարագ"։

Իսկ այն զի ասաց Աբրահամ ցծառայ իւր ցերէց տանն իւրոյ, դիր զձեռն քո ընդ երանօվք իմովք, ոչ եթէ վասն զի 'ի ծննդոց իւրոց ծառայելոց էր Քրիս-տոս․ զի ահաւանիկ ծնեալ էր Իսահակ․ այլ զի ա-մենայն փոյթ Աբրահամու այս էր՝ թէ յազգէ և 'ի տոհմէ իւրմէ առցէ կին որդւոյ իւրոյ, եւ նմա եր-դուեա՛ւ 'ի տէր ա͞ծ երկնի և երկրի։ Եւ իբրև եդեալ էր զաջ ձեռն նորա ընդ երանօք իւրովք, զի 'ի մեր-ձաւորի մարմնոյ ածցէ կին որդւոյ նորա․ իբրև ոք զի ասէ․ 'ի տոհմէ աստի յայսմանէ և յազգէ աստի յայսմանէ․ իբրև զայն՝ զի ասէ "Ոսկր յոսկերաց ի-մոց, և մարմին 'ի մարմնոյ իմմէ"։ Իսկ ահաւանիկ և Յակոբ ետ երդումն Յովսեփու որդւոյ իւրոյ։ Նոյն-պէս և "Օրհնեցին, ասէ, ընտանիքն զՀռեբեկայ քոյր իւրեանց, և ասեն ցնա․ քոյր մեր լիցես դու 'ի հազարս և 'ի բիւրս․ և ժառանգեսցէ զաւակ քո զքա-ղաքս թշնամեաց քոց"։ Այս մարգարէութե͞ն նման է․ բայց պարզաբար մեկին ասացաւ որպէս մարդք, զի գնացին 'ի գաւառէ իւրեանց, և պանդխտեցան 'ի գաւառս հեռաւորս․ և առաքեն զդստերս իւ-րեանց 'ի գաւառն զոր ոչ գիտացեն։ Եւ լուան յե-ղիազարէ թէ ամենայն գաւառք պատուադիրք են նոցա, և օրհնեցին պարզ մտօք զդուստրն իւրեանց․ իբրև նմանէ օրհնութի͞ն նոցա մարգարէութե͞ն։ Փոխանակ այնր զի ասէ "Ել Սահակ շրջել ընդ դաշտակողմն ընդ երեկս աւուրն"․ հեբրայեցի՝ "Յաղօթս կալ" ասէ։

Իսկ զի առ Աբրաամ կին յետ մահուան Սառայի․ զի 'ի ձեռն որդւոց իւրոց, որ լինելին յազգս և յա-զինս, և 'ի տոհմս հեթանոսաց, սփռեցան տարածե-ցան հաւատք ճշմարտութե͞ն նորա յամենայն գաւառս։ Արձակեաց զնոսա առ յինքենէ, զի քարոզեսցեն

զհաւատս ճշմարտութեան հօր իւրեանց. զի "Գիտեմ ես, ասէ, թէ պատուիրելով պատուիրէ նա որդւոց իւրոց պահել զճանապարհս տեառն,,: Վասն այսորիկ պահեցան Սառա և Ռեբեկա յամլութեան իւրեանց, զի մի կարծիցեն թէ զաւակ նոցա որպէս և զայլոց է. այլ իմասցին զաւետիսն այ, և ծանիցեն զպարգևսն՝ որ տուեալ լինի նոցա: Կամ զի մի պարծիցին հարքն Րափակայի՝ թէ յօրհնութեան անտի բազմացան՝ ծնունդք նորա և ժառանգեցին զհեթանոսս. վասն այսորիկ կաց մնաց նա յամլութեան, զի ծանիցէ եթէ աղօթիւք Իսահակայ տուեալ լինի նմա զաւակ, որպէս և Հռաքէլայի. Թերևս և Սառռա այսպէս օրհնեցաւ: Փոխանակ այնր՝ զի ասէ "Ամենայն հերք նորա զանգուր էին,,. հեբրայեցի ասէ "Որպէս համդերձս մազեղէն,,:

Բայց զինչ ևս ասիցեմք վասն մանկանն որ յորովայնի մօր իւրոյ բուռն հարեալ ունէր զգարշապարէ եղբօր իւրոյ: Եւ զայն ինչ զոր ոչ կարաց նա զօրութեամբ իւրով առնուլ ՚ի նմանէ զանդրանկութիւն յայնմ ժամանակի, առ նա ՚ի նմանէ իմաստութեամբ յետ ժամանակի. և ոչ եթէ զանդրանկութիւնս, այլ և զօրհնութիւնս ևս: Թերևս վասն այսորիկ ծանրացան շլացան աչքն Իսահակայ. փոխանակ զի սիրեաց նա զԵսաւ վասն որսոյ նորա, և ոչ գիտաց թէ ընտրութիւն առ կրտսերն մնալոց իցէ. վասն այնորիկ ծանրացան շլացան աչք նորա, զի մի տրտմիցի նա, և խոժոռեալ մերժեսցի յօրհնութենէ անտի Յակովբու: Եւ ինքն դարձեալ Յակովբ, զի և նորա ծանրացան շլացան աչք, զի հատուսցէ զշնորհս որ շնորհեցան նմա. զի ետ նա Յովսեփու զանդրանկութիւնս Հռուբենայ:

"Այս եկ, ասէ, Աբիմելէք առ Սահակ, և Փիքող սպարապետ զօրաց նորա,,. այլ հեբրայեցի ասէ "Իշխանք զօրաց նորա,,. և ուխտ եդին և դաշինս կռեցին ընդ Սահակայ. և գնացին առ ՚ի նմանէ խաղաղութեամբ: Եւ գրեալ է՝ թէ "Եկին հասին ծառայքն Իսահակայ, պատմեցին նմա և ասեն. փորեցաք զջրհոր և ոչ գտաք ջուր,,. փոխանակ այնր զի ասէ՝ չգտաւ ջուր: Եւ ասէ Իսահակ. զի երդուայ ես փղշտացւոցն, զի մոռացայ ես թէ կատարելոց սատակելոց են

նոքա. արդ անէծ զնոսա ըստ վճռի հրամանին՝ որ 'ի վերայ նոցա. և ահաւասիկ և Աբրահամ երդուաւ նոցա: Փոխանակ այնր՝ զի ասէ, Ջուրս կենդանի. Ջուրս զի բղխեն. և ոչ, ասէ, գտին ջուր 'ի ջրհորին յայն. և կոչեաց զանուն նորա Երդումն ըստ անուան երդմանն, զոր երդուաւ Աբիմելէքայ: Քանզի ջուրք 'ի մարտ և 'ի պատերազմունս առակեալ են, զի ծածկեալ են 'ի մտաց՝ որ 'ի միջի նոցա:

Եսաւ Յակոբայ զանդրանկութիւն՝ զի անարգեալ անգոսնեալ էր առ Եսաւայ, խորամանկեցաւ և քարձ զնա 'ի նմանէն. Թողացո վաճառեա ինձ, ասէ, զանդրանկութիւն քո. յանձն առ վաճառել: Ո՞վ է սա, զիա՞րդ վաճառես որ ինչ ոչն վաճառի. կամ զիա՞րդ առնուս դու զնոյն, Յակոբ, բանիւք՝ որ ինչ բանիւք ոչ գնի. միթէ կարո՞ղ իցեն նոքա մնանել յարգանդ և ելանել: Անարգեաց Եսաւ զանդրանկութիւն իւր. օրհնեաց Սահակ զԵսաւ վասն որսոյ նորա, զի էր կերակուր բերանոյ նորա. զի ոչ էր յայտնի նմա այն՝ զի ասէ «Երէցն կրսերոյն հնազանդեսցի»: Քանզի ծածկեաց 'ի նմանէն Հռեբեկա, զոր օրինակ ծածկեաց Աբրահամ 'ի Սառայէ զԻսահակ: Վասն այսորիկ եմուտ Յակոբ իբրև զանդրանիկ, և ընկալաւ զօրհնութիւն նորա. Թերևս և ոչ տուեաց յաւել իւրում ցհայր իւր, թէ «Ես եմ անդրանիկ որդին քո Եսաւ». զի գնեալ էր նորա զանդրանկութիւն նորա: Փոխանակ այնր՝ զի ասէ «Կոչեաց զանուն նորա Եդոմ», կարմիր: «Տուր ինձ, ասէ, զճաշ քո»: Փոխանակ այնր՝ զի ասէ այր վայրագ, այր որսորդ: Փոխանակ այնր՝ զի ասէ առ դու զգործի քո, զսուսեր քո՝ զաղեղն քո՝ զկապարճ քո: Սիրեաց, ասէ, զնա, զի որս նորա կերակուր բերանոյ նորա էր. և 'ի բաց առեալ զայն՝ զի ասէ «Դառնացուցանէին կանայք նորա զոգի նորա և զՌեբեկայ». բայց համբերէր նա թշնամանաց անարգանաց կանանց նորա վասն անդրանկութեան նորա. և սիրէր զնա վասն հանգստեան իւրոյ: Արդ ոչ եթէ վասն այլոյ իրիք ինչ սիրէր զնա, բայց եթէ վասն որսոյ նորա. զի յայտ արասցէ՝ թէ չիք ինչ այլ պատճառք 'ի միջի՝ որ նեղէցին զնա սիրել զնա, բայց եթէ այս:

«Ո՜հա, ասէ, հոտ որդւոյ իմոյ իբրև զհոտ անդոյ լիոյ զոր օրհնեաց զնա տէր»։ Այդ, որ օրհնեցաւ և ոչ դարձաւ օրհնութիւն նորա յանէծս, դրախտն էր, յորում ծառն կենաց էր 'ի նմա. զի ոչ ետուն նմա Ադամայ զրկողի ճաշակել 'ի նմանէ, և կեալ յաւիտեանս։ Այն զի 'ի ժամանակէ անտի յայնմանէ, յորժամ հան զնոսա անտի, եւ 'ի նմանէ մշակն իւր Ադամ, արգելեալ փակեցաւ նա։ Իբրև եկն տէր եւ 'ի խաչափայտն, առ և կախեաց զփականս 'ի խաչափայտի անդ, և ետ զնա աւազակին, և եբաց և եմուտ 'ի դրախտ անդր։ Եւ իբրև բացաւ, յորդեալ բուրեաց հոտ ծառոյն կենաց, և եկն պատահեաց առաքելոցն. և 'ի սաստկութենէ հոտոյն իւրոյ բազմութեանց զերեաց զառաքեալսն, որպէս զի յաղթահարեցին. յասելն՝ բուրէր հոտ նորա որպէս զի սաստիկ իցէ հողմն ուժգին։ Արդ թուեաւ 'ի նոսա հոտ օրհնութեան նորա, բուրեցին և տարածեցին զնա ընդ երկիր՝ որ զանէծս նզովից ընկալաւ. մինչև սպառեցան մաշեցան անէծքն նզովից յերեսաց օրհնութեցն, որպէս խաւար յերեսաց լուսոյ։ «Հոտ որդւոյ իմոյ», ասէ. ո՞ր որդի նորա, բայց եթէ Յակոբ. այն որ 'ի նմանէն ծագեաց Քրիստոս։ Զի բուրեաց 'ի նմանէ հոտ կենաց փոխանակ Ադամայ, զի հարկանէր 'ի նմանէ հոտ մահու։ Անդ Մարիամ է օրհնեալն 'ի կանայս փոխանակ Եւայի անիծեալն 'ի ծնունդսն. զի նա զԿայէն մարդասպան ծնաւ, և սա զՔրիստոս ծնաւ, որ փոխանակ մարդկան մեռանի, և կեցուցանէ զմարդիկ։

Այսպէս Սահակ հոգւով իւրով թէ յերանեաց Յակոբայ ծագելոց է այն՝ որ հարկանէր զհոտ կենաց նորա դիւականց, և զարթուցեալ յառնէին. Ասէ ցնա. «Հոտ քո իբրև զհոտ պտղալի անդոյ զոր օրհնեաց զնա տէր»։ Ի ձայնէ անտի բարբառոյ [1] ոչ գիտաց Սահակ՝ այն որ 'ի մօրթոյ անտի կարօղ էր գիտել, մանաւանդ 'ի մօրոյ անտի ուլուցն. զի մեկնեալ զատեալ է մի նոցա 'ի վայրենի երէոց, 'ի կամն բարձրելոյն ոչ գիտաց։ Եւ զի՞նչ պիտոյ էին արդեւք հնարք

1 Յօրինակին բարբառոյ. եդաւ ըստ լուսանցիցն։

և պատճառք յայտնել զօրավորութեն Եսաւայ, և փութոյ յօժարութեն նոցա. զի ոչ եթէ նա ոչ կամեցաւ տալ զայս. նա փութացաւ յօժարացաւ յառնուլ, և Եսաւ կամեցաւ վաճառել: Այլ մուտ 'ի դէմս Եսաւայ, որպէս 'ի գարշապարէ նորա զգեցցի զանդրանկութիւն զոր զգեցեալն էր. զգեցաւ զհանդերձ նորա և զմորթն Եսաւայ: Սէր հարանց նորա 'ի միջի կայր. սէր հօրն ձգէր յԵսաւ, և մօրն 'ի Յակոբ. զի նմանօղ եղիցի նա եղբօր իւրում, և մտցէ առցէ նա զօրհնութիւն օրհնչին: Արդ զգեցաւ Յակոբ զանուանն Եսաւայ, որ մեռաւ անդրանկութեցն. որպէս մորթ նորա մեռեալ 'ի կենդանութէ:

Արդ տես դու որչափ խորամանկութիւք պիտոյ էին արդարոյն առ բարին. օրհնեաց Սահակ զՅակոբ, և եղեն պատճառք խնչ՝ զի ոխս պահեսցէ նմա եղբայրն իւր: “Այդ եղև, ասէ, Ռեբեկայ„: Թէպէտ և 'ի ձեռն խրատու նորա առաքեցաւ Յակոբ առ 'ի հօրէ իւրմէ, սակայն ըստ իմաստութեն իւրով 'ի ծածուկ գործէր: Զի եթէ էր Յակոբ մնացեալ 'ի տան հօր իւրոյ, և յաճախեալ բազմացեալ էր ընչիցն, ոչ լինէր յայտնի զօրութիւն անդրանկութեցն և օրհնութեցն. այլ յայտնապէս երևեցաւ 'ի ժամանակի, զի ցուպ 'ի ձեռն անց նա առ ազգ մի օտար, և երկու բանակօք դարձաւ: Տես դու թէ որչափ հաւատալ էին 'ի վերայ և գիտէին զզօրութի զօրհնութեցն. զի ահաւասիկ Ռեբեկա ապաստան յօրհնութեան առաքեաց զՅակոբ զի մի զրկեսցի: Նա և Յակոբ, զի գիտաց թէ ստոյգ և ճշմարիտ են օրհնութիւքն հօր իւրոյ և անէծքն նորա, 'ի մէջ խիթի ահիւ և երկեղիւ կայր նա յասելն իւրում. “Գուցէ, ասէ, ածից ես 'ի վերայ իմ զանէծս և ոչ զօրհնութիւս„: Նա և Եսաւ թէպէտ և ապստամբ էր, սակայն յայնժամ զի աղաղակեաց և ելաց դառնապէս, յայտ արար թէ որչափ վշտացաւ և չարչարեցաւ. և յայնժամ՝ զի գիտաց նա թէ յօրհնութէ առն արդարոյ զրկեցաւ: Գոյր նոցա օրինակ յառաջ քան զնոսա օրհնութիւք Նոյի և անէծք նորա:

Օրհնեաց նա զոր օրհնեաց, և անէծ զոր անէծ: “Ծառայեսցեն քեզ, ասէ, ազգք և ազինք, և երկիր

պագցեն քեզ ժողովուրդք և իշխանք. և եղիջիր դու տէր 'ի վերայ եղբարց քոց. և երկիր պագցեն քեզ որդիք հօր քո»։ Եւ այս 'ի վերայ Յակոբայ ոչ կատարի, և ոչ 'ի վերայ ծննդոց նորա։ Իսկ արդ ո՞ր ազգք և ազինք հնազանդեցան նմա. կամ իշխանք նոցա երկիր պագին նմա. կամ ե՞րբ եղև նա տէր 'ի վերայ եղբարց իւրոց, և երկիր պագին նմա որդիք հօր իւրոյ։ Նա և ոչ այլ որդիք եղեն Սահակայ արտաքոյ քան զՅակոբ, բայց Եսաւ. զի 'ի վերայ նորա կարծիցեն ոք՝ թէ լինելոց են։ Այլ 'ի տէր մեր կայ միայն զօրութիւն նորա. զի երկրպագութիւն նորա հնազանդեցան ամենայն ազգք երկրի, որպէս երկրորդեաց Առաքեալ 'ի վերայ Սահակայ։ «Ասացաւ, ասէ, Աբրահամու՝ քեզ և զաւակի քում. ոչ զաւակաց իբրև բազմաց, այլ իբրև 'ի վերայ միոյ». զի է զաւակ նորա նա ինքն Քրիստոս։

«Այլ ասէ Եսաւ ցհայր իւր. ինձ ո՞չ թողեր և ոչ մի օրհնութիւն»։ Ոչ եթէ քեզ ոչ թողի, այլ վասն քո ոչ թողի. ահա ւասիկ գլուխ և տէր կացուցի զնա 'ի վերայ քո, և զամենայն եղբարս նորա ետու նմա 'ի ծառայութիւն։ Իշխանաց որդւոց Եսաւայ ասաց, և թերևս 'ի վերայ Մովաբու և Ամոնայ եղբարց նորա ասաց։ Եւ զի ասէ «Ահա ւասիկ 'ի պարարտութե երկրի եղիցի բնակութիւն քո». որոշեալ մեկնեալ զատեալ յօրհնութենէ անտի Յակոբու. զի ասա երկիր քաջ; զի ըստ քաջութեան բնութեան իւրոյ միայն տայ զպտուղ իւր. բայց Յակոբու և արտաքոյ քան զբնութիւն իւր։ Եւ օրհնեցաւ Եսաւ. «Եւ 'ի սուր քո, ասէ, կեցցես, և եղբօր քում ծառայեսցես. և եթէ դարձցիս և ապաշխարեսցես»։ Զի եղիցի գիտել Եսաւայ՝ թէ 'ի մեղս իւր հնազանդեցաւ. վասն այսորիկ «Որ առնէ զմեղս, ծառայ է». և ծառայ Քրիստոսի՝ ազատ տեառն իւրոյ։

«Ասէ Եսաւ 'ի մտի իւրում. մերձեսցին աւուրք կատարածի հօր իմոյ, և սպանից զՅակոբ զեղբայր իմ»։ «Ազդ եղև, ասէ, Ռեբեկայի զոր ինչ և [1] Եսաւ 'ի սրտի իւրում ասաց»։ Զիա՞րդ եղև ազդ

1. Յօրինակին և Էէ Եսաւ։

Բափանկայի . խոնարհեցաւ թէ այսպէս կամեցաւ ասել . եդ 'ի մտի իւրում, փոխանակ այնր զի ասէ՝ ասաց 'ի սրտի իւրում : Եւ այն զի ասէ "Աջդ եղև Բափանկայի„ 'ի սաստկութիւն սրտմտութեան բարկութեան նորա . որ սպառնայր եղբօր իւրում . և 'ի խոթոտել ականն իւրոյ 'ի միտ առ իմաստութեամբ իւրով Ռեբեկա : Եւ զի ունկնդիր եղև Յակոբ հարց իւրոց, և ետես Ռեբեկա զհեզութիւն զգաստութիւն նորա . և վկայէ այն՝ զի ասէ "Զօրութիւն իմ և սկիզբն հաստատութեան իմոյ„ : Վասն այսորիկ ասաց նմա . քաղցրասցին որդիք քո 'ի կեանս քո, և կացցեն շուրջ զմահճօք քովք, որպէս և ամիք տարւոյ . և որդիք նոցա որպէս զաստեղս երկնից անթիւք . զի հանգեան որդիք մօր քո 'ի կեանս քո . և որդիք իմ և սրտիւք իմ զքեզ օրհնեն : Եւ զի պատուեաց Յովսէփ զՅակոբ, որպէս պատուեաց ինքն զհայր իւր, վասն այսորիկ յաւել նմա հայրն զօրհնութիւնս իւր՝ զօրհնութիւն ստենից և արգանդի :

ԳԼՈՒԽ Ը

Եւ ել Յակոբ և գնաց 'ի Խառան . և եկն եհաս 'ի տեղի մի : Անդ լուծաւ և ննջեաց, սկսաւ տեսիլ տեսանել տեսլեան գիշերոյ . և տեսանէր զի սանդուխտ կանգնեալ էր յերկիր, և գլուխ նորա հասանէր մինչև յերկինս . և հրեշտակք ելանէին և իջանէին ընդ նա : Նշան տեսլեան իւրոյ, զի 'ի ճանապարհին յայնմիկ՝ յորում իջանէր, որ նա ինքն է սանդուխտք իջից իւրոց յերկնից յերկիր . սոյնպէս իջանելն նորա յերկրէ անտի պարգևաց յերկիրն սուրբին : Եւ զի ընդ նա ելանէին որք իջանէինն, զի ընդ նոյն ճանապարհս հանդերձեալ էր ելանել նա : Եւ գալուստ նորա 'ի տուն Լաբանու, նշանակ եղև նմա, զի հանդերձեալ էր նմա իջանել յերկիրն եգիպտացւոց : Եւ 'ի դառնալ իւրում բազում ստացուածովք, էր նշան՝ զի հանդերձեալ էր զաւակ նորա ելանել յերկրէն եգիպտացւոց անթիւ բանակօք :

Արդ վասն մխիթարութեան նորա երևեցան սանդուղխքն . և յայնմանէ որ ինչ ասացաւ 'ի միտ առ

դու։ «Ջերկիրդ զայդ յորում դու ննջեցեր՝ քեզ տաց զդա և զաւակի քում»։ Եւ զեւղն զոր արկ 'ի վէմն, զի եղիցի յայտնի՝ զի ոչ գիտէր նա թէ քսան ամ լինելոց է անդ։ Եւ 'ի կալն իւրում յաղօթս, ասէ «Եթէ լիցի ած ընդ իս, և պահեսցէ զիս 'ի ճանապարհս յայս յոր ես երթամ, և տացէ ինձ հաց ուտելոյ և հանդերձ զգենլոյ»։ Եւ յետ փոքր մի ժամանակի ասէ. «Յամենայնէ զոր ինչ տացես ինձ, տասանորդս հանից քեզ յամենայնէ»։ Եւ այն որ վասն անարգ կերակրոյ յաղօթս կայր, վասն մեծութե տասանորդեալ գտաւ՝ զի խոստանայր. այլ գտան 'ի հացին և 'ի հանդերձի նորա տասանորդս խոստանալ, և 'ի հանդերձեալն մարգարէութիւն։ Փոխանակ այնր՝ զի ասէ «Ոչ եթէ մարթ ինչ իցէ քեզ կալ և ծառայել ինձ ձրի», հեբրայեցի ասէ. «Ծառայեցես ինձ ձրի ամն եօթն». այս ինքն շատ է ասէ այս՝ զոր պատուեցեր զիս։

Առ ձգեաց նախ ածութիւն զՅակովբ առ Ջրհորն, զի յայտ արասցէ անդ զողորմութիւն նորա և զզօրութիւն նորա առ վէմ անդր, և զողորմութիւն նորա արբուցանել անդր։ Եւ զի մի՛ շնորհս արկանիցէ նմա Ղաբան սակս աներանեալ Ղաբանայ վասն նորա. և եգիտ Ղաբան գանձ մի, զի ամենայն օրհնութիւնք 'ի նմա թաղեալ էին խահակայ։ Ցոյց զզօրութիւն իւր յիսկզբանն իւրում, զի յորդիեցէ նոցա ճաշակս ծածուկս զօրութեանն՝ որ էր 'ի նմա։ Եցոյց զխոնարհութիւն իւր 'ի հարցանել ողջունին իւրոյ, զի ծանիցեն և գիտասցեն թէ 'ի նմանէ ծագելոց է այն՝ որ տարածելոց է զողջոյն և զխաղաղութիւն ամենայն հեթանոսաց։ Փոյթ եղև նմա վասն Ջուր տալոյ և արօտի խաշանց, զի ցուցցէ թէ 'ի նմանէ ծագելոց է հովիւն՝ որ կերակրէ զխաշինս իւր մարմնով և արեամբ իւրով։ «Տուք ջուր, ասէ, և երթայք արածեցէք»։ «Ետես, ասէ, նա զվէմն՝ որ կափուցեալ էր 'ի վերայ բերանոյ Ջրհորոյն». և ուրախ եղև։ Եւ իբրև գիրկս արկ 'ի նմա, բազուկք նորա սիրով զանձն իւր թեթևացուցանէր. զի ետես նա զնշան այնորիկ՝ որ բառնալոցն էր զծանրութիւն 'ի թիկանց խորհրդոց հեթանոսաց։ Եւ իբրև եբարձ զվէմն, հայեցաւ ընդ

ջրհորն, և ցնծացան ընդ առաջ նորա ջուրք ջրհորին, և 'ի բազումս նորա խնդացին ելանել. զի գիտացին թէ 'ի նմանէ ծագելոց է օրհնիչն ջուրցն և փառաւորիչ նոցա: Իբրև մկրտեցաւ, ասէ, տէր մեր, լոյս բազում 'ի ջուրց անտի փայլէր: Խաշինն՝ որում տկար աղջիկն հովուէր նոցա, պատահեաց երիտասարդն հզօր տալ նմա ջուր. եւ առհաւատչեայ բարի ամուսնին իւրոյ և խաշին նորա. խաշինն՝ 'ի ջուրն տալն, և աղջկանն՝ համբուրելովն: Խաշինն՝ որ ընկալաւ զառհաւատչեայ ջուրն ըմպելոյ, յուսացաւ թէ նա է հովիւն իւր քաջ. և աղջիկն՝ որ ընկալաւ զառհաւատչեայն ողջունին, գիտաց թէ նա է այր իւր ճշմարիտ: Խաշինն արբոյց ջուր 'ի ջրհորոյ անտի, և աղջկանն արբոյց զողջոյնն 'ի շրթանց իւրոց: Խաշինն որ արբեցաւ ջուրբ տալոյ նորա, ըստ հրամանի նորա ծնունդս ծնանէր. և աղջիկն որ արբեցաւ սիրով նորա, որդիս ծնանել խնդրէր 'ի նմանէ: Ոչ հատան 'ի նմանէ ոչ կանայք նորա և ոչ որոջք նորա, քանզի 'ի սէր նորա ընդ նմա կապեալ էին:

“Վաստակեաց, ասէ, զհարսանիս նորա„. և “Տաց քեզ և զնա ևս„: Յայնմանէ զի 'ի նմանէ պարսաւ լինի Յակովբ, 'ի նմանէ փառաւորի. զի Ղաբան ստեաց նմա: Հաւանեցաւ հաղորդեցաւ ընդ Լիա և ոչ եթող զնա, զի եղեն նոքա մի մարմին. և Ռաքէլի զի ոչ ստեաց. զի այն որ յառաջն հաստեալն լինի մարդոյն՝ նա է կոչեցեալ կին նորա: Նեղեցին զնա հարճքն լինել ընդ նոսա, զի յառաջ քան զամուսնանալ հարճիցն կարող էր լինել նմա ընդ նոսա: Բնութ̃ք արք ընթանան զհետ կանանց, բայց անդ այրն հեզ և ցած էր քան զկանայսն:

Այլ քանզի ետես Ռաքէլ եթէ կամաց Յակովբու նկարեցան ծնունդք յորովայնի որոջացն, կարծեաց նա թէ և 'ի վերայ արգանդի կանանց իշխէ. ասէ ցնա “Տուր ինձ որդիս„: Եւ զի յոյժ տրտմեցի նա, “Ապա թէ ոչ, ասէ, մեռանիմ„: Իբրև ետես Յակոբ թէ փոխանակ ա̃յ եղեալ է 'ի մտի իւրում նորա զնմանէ, բարկացաւ Ռաքէլի և ասէ ցնա. “Միթէ ա̃ծ ինչ եմ ես, որ արգելի 'ի քէն զպտուղ որովայնի քո„. և յայտնի մեկնեաց նմա ով է տէր

արգամողի և նկարիչ մանկան։ Եւ իբրև ուսաւ, ընթացաւ առ բժիշկն ամլութեան. “Վասն այսորիկ յաւելցէ ինձ տէր միւս ևս որդիս„. տէր, և ոչ այր իմ։ “Տուր ինձ, ասէ, որդիս. ապա թէ ոչ մեռանիմ„. զի խիթացն նա՝ թէ գուցէ անարգիցի նա վասն ամլութեան իւրոյ 'ի Յակոբայ. բայց խրատեցաւ և ուսաւ՝ թէ չէ ինչ նորա մեղ։ Գիտակ է Յակովբ այնմիկ՝ զի ասէ “Ես եմ որ ծնուցանեմ, և ես եմ որ արգելեմ„։ Բայց դարձեալ զի լուեալ էր Հռաքէլ թէ Սառայի տուաւ որդի վասն Աբրահամու. և Սահակ եկաց յաղօթս 'ի վերայ Ռափակայի, և եղեն նորա որդիք, ասէ ցնա “Տուր ինձ որդիս„։ Այս ինքն զի աղօթիւք քուովք խնդրեսցէ, որպէս և հարք նորա, և ա̅ծ տացէ նմա զաւակ։ Եւ զի յայտնի լինիցի թէ այս այսպէս իցէ, “Կոչեաց, ասէ, զանուն նորա Յովսէփ„. այս ինքն յաւելութիւն. “Յաւելցէ ինձ, ասէ, տէր ա̅ծ որդիս միւս ևս„։

Բայց դարձեալ՝ խօսեցաւ իւր Յակովբ զՀռաքէլ զկրօնսն. և ետուն նմա զԼիա զերեցն, զի աշխատ լինէր զօհիւք և պատարագօք. զի գիջագոյն էին աչքն նորա, և ոչ տեսանէր զոր ինչ ընթեռնոյր։ “Առագաստեալ էին, ասէ, սիրտք նոցա„։ Առ դարձեալ զՀռաքէլ, որ բարեօքն տեսանէր. եկեղեցի սուրբ, այն որ ասացեալ է վասն նորա. յորժամ դառնայն առ տէր, բառնայ 'ի նմանէ քօղն։ Անդ ժողովուրդն՝ Լիա, որ աշխատ արար զայր իւր. “Աշխատ արարէք զտէր, ասէ, բանիւք ձերովք„. և “Զնջեցի զմարգարէսն և սատակեցի զնոսա բանիւ բերանով իմով„։ Բայց ասա Հռաքէլ, որ յափոյ զզօրութիւն նորա և նուաճեաց զնա առ Լիա։ Նեղեցաւ Հռաքէլ. և աղաչեաց զայր իւր, զի մտցէ նա առ նաժիշտ նորա. սոյնպէս և Լիա։ Բայց նեղութիւն անզաւակութեան դստերացն Ղաբանու՝ հաւասարութիւն միաբանութեան ա̅ծ զաղախնայսն ընդ ազատս։ Յայնմիկ զի սնանէին որդիք աղախնացն, յիստակութեն անտի ազատութեան խոնարհեցին ազատքն յազատութեան աղախնեացն. և որդւոց նոցա ներբեսցի սոյգն հաւասարել զամենայն զաւակն իւր 'ի նմին ժառանգութիւն օրհնութեան։ Օրինակ կատարեալ, զի 'ի ձեռն

տեառն մերոյ ոչ ծառայ և ոչ ազատ ։ զի ամենեքեան մեք 'ի միոջէ անտի հացէ առնումք ։

Լիա՝ աշխատեալ ասի, կամ ոչ վայելուչ ։ Ռուբէն՝ մեծ է ած ։ “Եսես, ասէ, տէր զտառապանս իմ, և այցելու եղև ինձ իմաստութ[ե]ամբ իւրով. զի ակն առցէ ինձ այր իմ և սիրեսցէ զիս” և մի՛ գարշեսցի յինէն վասն տգեղութեան իմոյ ։ Շմաւոն՝ յաւելցէ ինձ. գիտաց նա թէ պատճառս արար ած զի մի՛ ատեցեալ լինիցիմ ։ Ղևի՝ զի ոչ յարէր 'ի նա այր նորա, զի 'ի Հռաքէլ կոյս միտադոյն էր նա, վասն բազմութե որդւոց “Այսուհետև ընդ ինև է այր իմ”. կոչեաց զանուն նորա Ղևի ։ Յուդայ՝ երկրպագեալ. սիրեաց զնա այր նորա վասն բազմութե որդւոց նորա, զի ծածկեցին զտգեղութի նորա. վասն այսորիկ “Երկիր պագից տեառն Յուդայիւ հանգերձ” ։ Իսաքար՝ տուրք վարձուց. “Զի ետու ես զաղախին իմ առն իմում” ։ Զաբուղոն՝ բնակութի իմ. “Բնակեսցէ այր իմ առ իս” ։ Դինա՝ դատաստանք նորա ։ Հռաքէլ՝ գառն, այս ինքն որոջ ։ Յովսէփ՝ յաւելուած. զի զնա միայն ծնայ ես. միւս ևս խնդրուածք՝ “Յաւելցէ ինձ, ասէ, միւս ևս որդի” ։ Բենիամին՝ աջոյ որդի. հայր իւր կոչեաց այսպէս. իբրև աջ զի ասիցէ. ցուպ ծերութե իմոյ. մայրն կոչեաց զնա որդի վշտածին, որդի անարգանաց իմոց. այս ինքն որդի ցաւոց իմոց. զի 'ի ծնունդս նորա մեռաւ մայրն ։ Դան՝ իրաւունք, կամ 'ի վերայ իմ նախատանք իմ, կամ դատաստանք դատապարտութե իմոյ, կամ զի նմաւ եղէ ես դատեալ ։ Փոխանակ այնր՝ զի ասէ “Խնդրեցի ես 'ի տեառնէ, և աղաչեցի ես ընդ քեռ իմում”. Թիւրուն դատաստանի. այն զի ասէ “Դատեցայ թիւրեցայ ես ընդ քեռ իմում”. և կոչեաց ասէ զանուն նորա Նեփթաղիմ ։ Խնդրուածք են. ընդարձակեսցէ ինձ, կամ յաճախիցէ ինձ ժառանգութի և անուն ։ Գադ, քանզի կացեալ էր նա 'ի ծննդոց, իբրև եղև սա՝ անուանեաց յառաջին պադեան ոյ՝ բախտ. “Դարձաւ յիս բախտ իմ” ։ Ասեր՝ երանութի. “Զի նմաւ բազմացաւ երանութի իմ” ։

Փոխանակ այնր՝ զի ասէ “Ամենայն խայտախարիւ իմ են”. “Ամենայն՝ որ թխագոյն յոչխարս քո” ա-

սէ հեբրայեցւոցն ։ Գողացաւ Ռաքէլ զկուռս հօր իւրոյ ․ և գողացաւ Յակոբ զսիրտն Լաբանու ․ այս ինքն գողացաւ զանձն իւր ՚ի Լաբանայ , զի ճանապարհ զոր ոչ գիտացէ Լաբան՝ գնացէ նա ։ Այլ զայս ասասցուք ․ զի ըստ սրտին Լաբանու նոյնպէս տեսանէր զխաշինս նորա ․ յայտ արար՝ զի ամենայն զոր ծառայեաց նմա , միամտութբ ծառայեաց ․ ոչ գողացաւ զնա ընչիւ ․ բայց յայնմ գործովս գողացաւ զանձն իւր ՚ի սրտէ անտի Լաբանու ։ Եւ զհետ լինէր , ասէ , Լաբան Յակովբու ։ Մարդ եւ զկնի աստուածոցն՝ որ ՚ի կնաջէ գողացեալ եղև ․ զանարգանս աստուածոցն և զփառս նոցա ՚ի մի բան խառնէր ։ "Ընդէ՞ր , ասէ , գողացար զաստուածս իմ ,, ։ Ո՜վ Լաբան, ո՞րչափ պատուեցեր , զի կոչեցեր զնոսա աստուածս ․ և ո՞րչափ անարգեցեր , զի արարեր զնոսա գողացեալս ։ Բարձրացուցեր զնոսա մինչև առ ա̃ծութիւն ․ և խոնարհեցուցեր և իջուցեր զնոսա մինչև առ գողութի ։ Ոչ եթէ նոքին իսկ աստուածքն գողացան ․ և երանի թէ գողացեալ էր նոցա և ոչ լինէին գողացեալք ․ և լաւ էր եթէ գողք լինեալ էին նոքա և ոչ գողացեալք ։ Ասաց Լաբան ա̃յն Յակովբայ, զի զգուշացուցանէր և ասէր ․ ոչ ինչ կայ քո և Յակովբու ։ Եւ նա մեծաւ փութով խնդրէր զկուռսն , որ ոչ կարացին անձանց իւրեանց օգնել ։ Ճշմարիտ ասացաւ այն՝ զի ասէ ․ մի եթէ փոխանակէ՞ն հեթանոսք զդիս իւրեանց ։ Ընդէ՞ր արարեր զնոսա աստուածս զի պահեսցեն կամ պահիցին ։ Եթէ զի պահեսցին , անօրէնութբ կաս դու յաղօթս զի պահեսցին , զի գողացար դու զնոսա ․ եթէ զի պահեսցեն անխրատութեամբ , խնդրեաց դու զվրէժ նոցա ․ զի փորձեցեր դու զնոսա ։ Եկն Լաբան առանց ա̃յ , և գնաց առանց ա̃յ ․ խօսեցաւ ընդ նմա ա̃ծ կենդանի , զի տաց պատասխանի վասն մեռելոտի աստուածոցն նմա մի գուցէ ։

Եւ զի ետ տանել պատարագս Եսաւայ, զի ցածուսցէ զբարկութիւն նորա պատարագօքն ։ Զի առեալ էր նորա զփորձ նորա յեփեալ ոսպամբ ակնակաւն ․ զի որկորստութի ագահութե՛ն որ նեղեաց զնա վաճառել նմա զանդրանկութի իւր , նոյն ինքն հաւանեցոյց զնա զի մի յիշեսցէ զօխն օրհնութեանցն

վասն պատերազմացն ։ Եւ այն զի մարտեաւ ընդ հրեշտակին և եղև նա ընդդիմակալ զօրութեան նորա ։ Ոչ եթէ զգօտեաց կալաւ նա 'ի մարտի անդ և կռուեցաւ ընդ նմա , այլ մարտեաւ նա՝ զի օրհնեսցէ զնա , և ապա արձակեսցէ զնա ։ Եւ յայսմիկ յաղթեաց և ընդդիմակալ եղև զօրութեան նորա ։ Իսկ արդ ո՞վ է որ ոչ յիմարիցի և զարմասցի , զի 'ի հաւասար կշռոյ զօրութեան մարդոյ ընդ հրեշտակի եդեալ էր , և ոչ էր յայտնի , ոչ որ յաղթէր , և ոչ որ յաղթահարեալ լինէր՝ մինչև յառաւօտ . զի տեսիլ էր այլակերպ ։ Իբրև զայն՝ զի ասէ "Ի բազում նշանս և 'ի բազում արուեստս խօսեցաւ ած ընդ հարս մեր" . զի յօրհնելն նորա զՅակոբ , Իսրայէլ կոչեաց զնա . "Զի մարտեար դու ընդ հրեշտակին , և ընդդիմակաց եղեր զօրութեան նորա" ։ Այսու նմանութեամբ տեսանէին մարդք զած եղէնք , և փափագեալ ցանկացեալ կատարեալ էին տեսլեան նորա . վասն այսորիկ ասաց Յակոբ . "Տեսի ես , ասէ , հրեշտակ դէմ յանդիման , և ապրեցաւ անձն իմ" ։ Եւ երևեցաւ նմա ած 'ի ժամանակի զի իջանէր նա . և երևեցան նմա յելանել անդր ։ Յիջանել նորա մխիթարեաց զնա , զի մի տրտմիցի նա . և յելանել նորա քաջալերեաց զնա , զի մի երկիցէ յԵսաւայ ։ "Եւ մնաց , ասէ , անդէն միայն . և եկն այր մի , մարտեաւ ընդ նմա" ։ Եւ ո՞ւր է հրեշտակն . այլ նախ 'ի տեսիլ առն երևեցաւ նմա , և ապա յետոյ ծանեաւ ։ Արդ մարտեաւ ընդ նմա հրեշտակն և ոչ յաղթեաց նմա . այս ինքն յասելն իւրում ընդ նմա "Արձակեա զիս" , համարձակութի տայր Յակոբայ ասել՝ թէ չիք հնար , ոչ արձակեցից զքեզ , եթէ ոչ օրհնեսցես զիս ։ Իբրև զայն՝ զի ասէ "Թող տուր ինձ , 'ի բաց կաց . թող ընկեցից զժողովուրդդ" ։

Եւ իբրև հաւանեցաւ օրհնել զնա , "Եհարց , ասէ , զի՞նչ անուն է քո . ասէ՝ Յակոբ ։ Ոչ , ասէ , այսուհետև եղիցի անուն քո Յակոբ , այլ Իսրայէլ , զի կարացեր դու ընդդիմակալ լինել ընդ հրեշտակի և մարդոյ" . շատ իցէ քեզ օրհնութի , զի ընդ հրեշտակին մարտեար ։ Այս ևս մեծ է , զի Իսրայէլ անուանեցաւ . այն զի է նա այր , որ զած տեսես . ապա

եթէ բնութե̃ իւրով հրեշտակ էր այն՝ որ երևեցաւն, սուտ եղև բանն որ Խորայէն ասէ յայսմիկ, զի ոչ ետես նա զա̃ծ ։ Թէ այդ այդպէս է, ինքն հրեշտակն ա̃ծ էր, և մարդն ա̃ծ էր ․ այլ մարտնչելն առն, և գործն հրեշտակի, բայց գործիչն ա̃ծ ։ Հարց զնա ․ “Ասա ինձ, ասէ՛, զանուն քո ։ Եւ ասէ ցնա ․ զի՞ հարցանես զանուն իմ, զի սքանչելի է ․ և անդէն օրհնեաց զնա ։ Եւ կոչեաց զանուն տեղւոյն այնորիկ տեսիլ ա̃յ ․ զի տեսի, ասէ, զհրեշտակ դէմ յանդիման, և ապրեցաւ անձն իմ „ ։ Անտի առեալ է այն՝ զի ասէ “Տ̃ր տ̃ր մեր, զի՛ սքանչելի է անուն քո յամենայն երկրի „ ։

Եւ զի ընդարմացոյց զամոլաջիլն նորա, զի սքանչելի են բանքն զոր խօսեցաւ ընդ նմա, և ահաւոր էր տեսիլն որ երևեցաւ նմա ։ Զի մի կարծիցի նա՝ թէ առ աչօք ինչ եղև գործն, կամ գուցէ երազ համարիցի նա, ընդարմացոյց զամոլաջիլն նորա ․ զի գիտասցէ նա 'ի կաղալն իւրում՝ թէ ճշմարիտ խօսեցաւ ընդ նմա և երևեցաւ նմա և լուաւ ։ Կամ զի խոստացաւ տասանորդել ա̃յ, և առ նա նախ տասանորդեաց Եսաւայ ․ վասն այսորիկ մերձեցաւ առ ամոլաջիլ ազդեր նորա, զի զա̃յն մարդոյ մատոյց ։ Կամ զի երկնչէր նա յԵսաւայ, մխիթարեաց զնա 'ի յՂաբան, և ապա քաջալերեաց զնա հրեշտակն, զի անկն կալցի ։ Զի թէ այս ամենայն փոյթ եղև ա̃յ վասն իմ՝ զի կարող եղէց յաղթութե̃ դիմակալ լինել[1] հրեշտակին ․ զի եթէ ընդ հրեշտակի մարտեայ և ընդդիմակալ եղէ զօրութե̃ նորա, ո՞րչափ ևս առաւել օգնական լինի ինձ ա̃ծ եթէ դէպ ինչ լինիցի պատերազմի 'ի մէջ իմ և 'ի մէջ Եսաւայ եղբօր իմում ։ Կամ 'ի տեսիլս Եսաւայ երևեցաւ նմա հրեշտակն, զի քաջալերեսցի և մի երկիցէ ․ զի ասաց նա և Եսաւայ ․ “Տեսի ես, ասէ, զերեսս քո, որպէս ոք զի տեսանէ զերեսս հրեշտակի „ ։

Եւ դարձեալ, զի եդ 'ի նմա արատ խեղութե̃, զի եղբայր նորա կակղասցի 'ի սաստկութե̃ սրտմտութե̃ իւրոյ ։ Զի յորժամ տեսանիցէ աչօք իւրովք զցաւագին տեսիլ նորա՝ զղջասցի նա, և միտք նորա զխոր-

1 Յօրինակին լինէր ։

հուրդս ողորմութե̃. և գթացի նա 'ի վերայ նորա, և մխիթարեաց զնա փոխանակ այնր՝ զի եկն տրտմեցուցանել զնա ։ "Գոյ և իմ, ասէ, շատ. այդ ամենայն, եղբայր, քեզ բարի շայեսցէ"։ Մանաւանդ զի եւ ընդ առաջ նորա պատարագօք, զի բարձցէ 'ի մտաց նորա զնենգութի̃ն երկմտութե̃ ։ Եւ փորձեալ զի կաղացոյց զնա, զի մի՛ մխասեսցի նա յամբարտաւանելն իւրում. յիշէր նա՝ թէ ընդդիմակալ եղև նա զօրութեան հրեշտակին առանց արատոյ, և բարձրանայր 'ի միտս իւր իբրև զայն՝ զի ասէ "Տուաւ ինձ խայթ մարմնոյ, զի մի՛ բարձրացայց"։ Եւ զի նկարեսցի 'ի նմա դարձեալ խորհուրդ ժողովրդեանն. զի թէպէտ և արժանի եղև տեղւոյն հանգստեանն և պատարագացն և քաւութե̃, սակայն արատ գոյր 'ի նմա, այս ինքն թերի էր 'ի կատարմանէն ։

Կատարեցաւ 'ի նմա դարձեալ և օրինակ տեառն մերոյ. զի չարչարանօք իւրովք ապրեցոյց զխաշինս իւր, և զժողովուրդ իւր յԵսաւայ գայլոյ անտի. զի եւ նա չորեքհարիւր արամբք ընդ առաջ նորա, զի մի՛ տացէ նմա թոյլ կոխել զսահմանմն՝ զոր խոստացաւ նմա հայր իւր ։ Եւ զի բարձցէ նա զլուծն առանց ապաշխարութե̃, այն զոր եդ 'ի վերայ նորա հայր իւր՝ յասելն իւրում. թէ դարձցես և ապաշխարեսցես, բարձցի լուծ նորա 'ի պարանոցէ քումմէ. զի կամեցաւ նա սպանանել զնա ։ Այլ դարձան ողորմութիւնքն Եսաւայ 'ի վերայ Յակովբու. զի կարծեաց նա՝ թէ հնազանդութի̃ն զօրս եդ 'ի վերայ նորա հայր նորա, սուտ է ։ Եւ զոր օրինակ էջ Յակովբ առ 'ի հօրէ իւրմէ ցուպ 'ի ձեռն առնուլ իւր կին, սոյնպէս և որդի առ 'ի հօրէ իւրմէ առ արարածս իւր, և խաչիւ իւրով էջ 'ի դժոխս միայն, և ել բանակաւ՝ որպէս Յակոբ՝ առ հայր իւր ։ Յակովբ ցաւովք ազդերն իւրոյ առ զյաղթութի̃ 'ի վերայ հրեշտակին. և տէր մեր չարչարանօք խաչին իւրոյ թագաւորեաց 'ի վերայ մահու և փրկեաց զեկեղեցի իւր ։

Փոխանակ այնր՝ զի ասէ "Եգիտ աղբեւր ջուրց իբրև արածէր նա զջորիս հօր իւրոյ"։, հեբրայեցի ասէ. "Եգիտ հսկայս յանապատին, ջորիք ոչ են"։

Փոխանակ այնր՝ զի ասէ “Կոչեաց զանուն նորա Սաքովթ ,,, հեբրայեցի՝ տաղաւարս ։ Եւ առ գնոյ Յակոբ տեղի մի, հար զխորան իւր. զի յայտ արասցէ, զի և զբաժինն զոր առին գնոյ արդարքն ’ի Սիւքէմ յերկրին իւրեանց զխորհուրդ տեառն մերոյ յայտնեցին. զի իւրով զիւրն գնեաց ։ Եւ զի ասէ “Ի բաց արէք զաստուածս օտարոտիս ’ի միջոյ ձերմէ ,,, վասն կուոցն Ղաբանու ասէ, և վասն գնդացն՝ զոր եւ նոցա Ղաբան հեթանոսաբար մինչ դեռ տղայքն էին ։

“Եւ այս թագաւորք որ թագաւորեցին յերկրին եդոմայեցւոց մինչ չև էր երևեալ թագաւոր որդւոցն Իսրայէլի ,,։ Քանզի ասացեալ էր. “Ահաւասիկ տէր և գլուխ կացուցի զնա ’ի վերայ քո ,,, յայտ առնէր՝ զի յառաջ քան զայն նախապետութիւն թագաւորեցին նոքա ։ Բայց իբրև եկն նախապետութիւնն ’ի ձեռն Դաւթի, հար սատակեաց զԵդոմ իբրև զծառայ մի հնազանդ. և գնաց Դաւիթ արկանել զձեռն իւր ’ի գետն Եփրատ. այսինքն՝ զի տիրեցին ’ի գետոյ անտի մինչև յԵգիպտոս, որպէս և ասաց ա̃ծ ցԱբրահամ. և զի ել ընդ առաջ նորա Ադրայազար, և հար սատակեաց զնա անդէն Դաւիթ ։ Նա և ’ի վերայ Յովբայ ասէ այս. զի և նա մի յայնցանէ էր՝ որ յԵդոմն թագաւորեցին. և նա հինգերորդ է յԱբրահամէ ; և թուի այսպէս. Աբրահամ ծնաւ զԻսահակ, Իսահակ ծնաւ զԵսաւ և զՅակոբ. և Եսաւ ծնաւ ’ի Մաղաղթայ ’ի դստերէ անտի Իսմայելի զՀռուաքուէլ. Հռուաքէլ ծնաւ զԶարեհ ; Զարեհ ծնաւ զՅովբաբ, զի նա ինքն է Յովբ ։

Փոխանակ այնր՝ զի ասէ “Գիտաց Ովնան թէ նորա լինի զաւակ ,,. հեբրայեցի՝ “Եւ գիտաց Ովնան թէ ոչ յանուն իւր կոչի զաւակ իւր ,,։ Ընդ կամս բժշկի հայիս դու և գովես. կամ ընդ գործն նորա հայիս դու և արհամարհես. որպէս ընդ կամս Թամարայ, զի ահա այլում առն նա ոչ եղև ։ Սոյնպէս և դստերացն Ղովտայ. և բարեկամն Յուդայ ընդ նմա էր. և ոչ խնդրեաց և ոչ մատնել առ նա ։ Եւ իբրև եգիտ Յուդայ, թէ նոյն ժամայն ընկալաւ զյղութիւն, ասէ “Արդարացեալ է Թամար և որդիք իմ մեղաւորք ,,։ Բայց դարձեալ արդարացեալ է

քան զիս․ զի ես 'ի դէմս պոռնկութ̃ե մերձեցայ առ֊նա․ բայց նա զաւակի և որդւոյս իմոյ որոյ ցանկա֊ցաւ ։ Կամ զի զերկուս որդիս իմ ամփոփեաց, և զիս դարձեալ պարտաւորեաց ։ Բան միջին առաց․ “ Վասն այսորիկ ոչ ետու զնա Սելոմայ որդւոյ իմոյ ”․ այս ինքն զի յաղթահարեաց զորդիս իմ մահուամբ իւրեանց․ վասն այսորիկ ոչ ետու զնա նմա թէ գու֊ցէ և զնա ևս մեռուցանիցէ ։ Զի ահաւասիկ և ինձ յաղթեաց խորհրդովք իւրովք․ զի ակն ունէր թէ պարտաւոր իցէ նա արեան որդւոց իմոց․ Թերևս նա ինքն ոչ հաճեցաւ 'ի սերմն նորա, մանաւանդ իբրև լուայ ես թէ պոռնկեցաւ նա ։ Բայց իբրև եցոյց նա զվկայսն, յաղթեաց ինձ․ զի սոքա ետուն ընդ նորա պա֊տասխանի․ եթէ զզաւակ քո առեցի ես ասէ, զիարդ դարձեալ միւսանգամ զկնի նորա գնացի ։ Թէ այդ այդպէս է, բարւոք յաղթահարեցաւ նա, և ասաց “Արդարացեալ է քան զիս ” ։ Զի ոչ ետու ես զնա Սաղոմայ որդւոյ իմոյ, ծաղր արար նա զիս, զի մի՛ ծանեայց զնա․ զի իբրև 'ի խաւարի որսացաւ զիս, զի մի՛ առից զնա 'ի մեռ․ և ահա աղտեղութ̃ի համա֊րեալ և չնութ̃ի 'ի վերայ հարցն ։ Իբրև զայն զի ա֊սացին որդիքն Յակովբայ․ ասեն “Ոչ գործի այսպի֊սի 'ի միջի մերում ” ։ Եւ Համովրէի և ամուրհաց֊ւոյն ես, ասէ, յանցեայ 'ի նա․ բայց հեբրայեցի մեկ֊նէ․ “Եւ ոչ, ասէ, յաւել ևս գիտել զնա ինքն Յու֊դա ” ասէ ։ Չիք աստ, ասեն, բոզ․ ահա մի վկայու֊թ̃ի․ դարձեալ եկն բարեկամ նորա և ոչ եգիտ․ ահա ետու ես և լուաւ․ արդարացեալ, ասէ, քան զիս ։ Ես իբրև առ բոզ մի չոգայ կորուսանել զզա֊ւակս զայս, որ գտանելոց է փրկութեան հեթանոսաց․ և նա հաւատովք իւրովք իբրև զօրհնութ̃ի եկն առ֊նուլ զպարգևսն, որ սրբէ զայնոսիկ՝ որ առնուն զնա ։ Եւ սրբեցաւ Թամար 'ի պոռնկութ̃ե իւրում 'ի չնութ̃է․ զի հաւատք որպէս և կուսութ̃ի առաւել է ։ Զի են բազումք որ վասն ամօթոյ այլոց պահեն զկուսութ̃ի․ բայց սա իբրև պոռնկութ̃ի արտաքոյ օրինացն չարաչար 'ի դէմս չնութ̃ե առանց օրինաց յօժարեաց 'ի չնութ̃ի կա֊մօք իւրովք, զի զրկեցին զնա 'ի հաղորդութ̃է առանց կամաց իւրոց ։ Զի ոչ ետուն նմա 'ի ջաւրց անտի ան֊

ձին իւրոյ, խնդրուածք նորա արարին զիմաստութիւն ծարաւ նորա, զի գողացին նա զջուրս՝ որ թաղեալ էր 'ի միտս ըմպելի հեթանոսաց :

Զարմանալ է ընդ երկոսին. զի ոչ յառաջ քան զայս գործ, և ոչ զկնի սորուն գրէ ուրեք վասն նոցա իբրև զայս : Բայց 'ի վերայ Թամարայ քարոզէ սուրբն, զի մի խնդրուածս խնդրեաց նա, և երկուսուան նմա զկնի երկուց արանց իւրոց : Զարմանք են զարձեալ, զի ոչ երկեաւ եթէ գուցէ հայեցի ընդ երեսս նորա և ծանիցէ զնա. այլ հաւատքն Թամարայ ուսուցին և զՇղիշա՝ թէ կարող են աղօթք զայս առնել. և ոչ երկեաւ և զարհուրեցաւ 'ի ժամանակի իբրև խօսէր ընդ նմա, թէ գուցէ ծանիցէ զձայն բարբառոյ նորա : Զի ուսաւ նա 'ի հօրէ անտի Յուդայ, զի չարութիւն ունէր ձայնն Յակովբու. զի առաջի Իսահակայ յանդիմանեաց զնա 'ի ժամանակի իբրև եմուտ նա զօրհնութիւն Եսաւայ յափշտակել. զի զայն ինչ զոր յափշտակեաց Յակոբ յԵսաւայ 'ի ձեռն մորթոյն, զնոյն կորզեաց Թամար երևելի հանդերձիւն իւրով : Զի կարծեաց Յուդա թէ 'ի պատճառս Թամարայ սատակին որդիք նորա, եկին երկու որդիքն Թամարայ, որ 'ի միջի իւրում էին, զի հանգուսցեն զնա 'ի կարեաց անտի զոր համբերէր յերկուց արանցն իւրոց՝ որ արտաքոյ քան զնա : Առ իւր Թամար երիս վկայս յայտնիս, և ապա առ նա զաներևոյթ երրորդութիւն Աստուծոյ. Հան զերիսն վկայս զորս առ իւրն ունէր, զի մի կորիցէ ինքն երկու որդւովքն իւրովք հանդերձ : Եկին երրորդքն և ապրեցուցին զերիսն. զի մի հասցի կարգն երրորդին : Փարէզ՝ խրամատիչ ցանկոյ. Զարեհ՝ ծագումն :

## ԳԼՈՒԽ Թ

“ԵՒ Յովսէփ, ասէ, եւթնուտասնամի էր, զի արածէր եղբարքն հանդերձ զխաշինս հօր իւրոյ. և ինքն մնանէր ընդ որդիսն Բալլայ և ընդ որդիսն Զեղփայ կանանցն հօր իւրոյ,, : Եւ զի ընդ որդիսն աղախնացն մնանէր նա, զի ոչ էր նմա փոյթ վասն ազա-

տութեն բնութեան, որպէս ազատութեան մտաց. զի ոչ համբեր որդին մատաղ բնակել ընդ Հռուբէլի, որ պղծեաց զանկողինս հօր իւրոյ. և ոչ զի եղիցի նա ընդ Շմաւոնի և ընդ Ղևեայ, որք կործանեցին զպարիսպն բարկութբ իւրեանց, և կոտորեցին զարս սրտմտութեամբ իւրեանց. և ոչ դարձեալ թոյլ տային նմա խորհուրդք սրտի իւրոյ հաղորդել ընդ Յուդայ, զի պոռնկեցաւ նա ընդ նուոյ իւրում։ Հեռացաւ նա յամենեցունց, և ընդ սոսա միայն լինէր նա։ Բայց հեբրայեցի փոխանակ այնր՝ զի ասէ “Ինքն մնայնէր ընդ որդիսն Բաղայ և Զեղփայ„, “Ինքն, ասէ, կրտսեր էր քան զորդիսն Բաղղայ և Զեղփայ„։

“Նու եկն եբեր, ասէ, Յովսէփ զհամբաւ չար զեղբարցն իւրոց առ հայրն իւրեանց, և ամբաստան լինէր զնոցանէ„։ Իսկ զի՞նչ էր համբաւն չար. բայց եթէ գործք չար կորստեան խաշինն։ Քանզի նա տղայ էր, և իշխանութի հեռի էր 'ի նմանէ. տրտմէր և չար թուէր նմա վասն խաշանցն, զի չարաչար առաջնորդէին նոցա եղբարքն իւր։ Եւ զի ետես հայրն նորա զճշմարտութի նորա և զհեզութի զգաստութե նորա՝, արար նմա առ սէր շապիկս թեզանեօք։ Բայց հեբրայեցին՝ “Շապիկս նկարէնս ծաղկեայս„. այս ինքն պարեգօտս։ Զի սոյն իսկ այս թէպէտ և զՅովսէփ ուրախ առնէր, սակայն եղբարցն նախանձ արկանէր։ “Իբրև տեսին, ասէ, եղբարքն՝ եթէ զնա սիրէ հայրն առաւել քան զամենայն եղբարսն, յայնժամ բազմացաւ ոխութի սրտից նոցա, և ոչ կարացին խօսել ընդ նմա բանս խաղաղութեան„. զի եմուտ նախանձ 'ի միտս նոցա, և մերժեաց զհարազատութիւն 'ի միջոյ սրտէ որդւոցն հօր նորա։

“Երազ տեսանել սկսաւ, ասէ, Յովսէփ. և պատմեաց զայն եղբարցն իւրոց„։ Այս ինքն զի մերձեցուցանէր զնոսա բանիւք իւրովք. քանզի նշան էր նա, զի զշինութի և զխաղաղութի սիրէր նա։ “Լուարուք, ասէ, երազոյս զոր տեսի ես, պատմեցից ձեզ. թուէր ինձ, ասէ, թէ որայ կապէաք 'ի դաշտի միոջ„. այս սկիզբն միաբանութե է, և մերձենալն նոցա որ առ միմեանս։ “Եւ ահա, ասէ, յարեաւ որայն

իմ և կանգնեցաւ ,,. այս մեծութի փառաց է ։ "Եւ ահա , ասէ , գայցեն պատէին որայքն ձեր , և խոնարհ երկիր պագանէին որայոյն իմոյ ,,։ այս նշան հնազանդութե է . և վասն այսորիկ յաւելին ևս ասել զնա , զի եմուտ լուր կատարածի երազոյն և լոյծ զանէր սկզբան նորա ։

Ըմբոստացան եղբարքն և ասեն . "Արդ թագաւորելով թագաւորես կամիս դու 'ի վերայ մեր ,,։ Նոքա մեկնեցին 'ի վերայ անձանց իւրեանց . իբրև զայն՝ զի ասէ "Շինեսցուք մեզ աշտարակ , զի մի ցրուիցիմք ,,, և ցրուեցան . իբրև զայն՝ . զի ասեն "Հաներ զմեզ յանապատ զի մեռցուք ,,, և եղև . և զոր օրինակ հատին 'ի վերայ անձանց իւրեանց մշակք այգւոյն . ասեն "Զարաշար սատակեսցէ զնոսա ,,։ "Թագաւորելով՝, ասեն , թագաւորես կամիս դու 'ի վերայ մեր . կամ տիրելով տիրես դու 'ի վերայ մեր ,,։ Բարւոք է երազ քո , 'ի գործոյ այտի մեկնութիւն . կանգնեցաւ աջ քո , և եղև ժողովիչ երկրին եգիպտացւոց . ցորեան յշտեմարանս քո , և երկիր պագանեն քեզ որդիք հօր քո ։ Բայց նոքա լի եղեն սրտմտութե բարկութե ընդ իմաստութիւն մեկնութե ։ Յայնժամ տրտմեցաւ Յովսէփ , զի ոչ կացին մնացին 'ի կատարածն , որպէս և 'ի սկզբանն ։ Եւ ասէ Յովսէփ ցեղբարսն . ոչ տէրութի քարոզեցի ձեզ և ոչ թագաւորութի . ես զայն ինչ զոր տեսի՝ պատմեցի ձեզ , և դուք ըստ կամս ձեր արարէք պատասխանի մեկնութե ։ Ես երազ միայն ասացի , և դուք թագաւոր արարէք զիս . երազ միայն պատմեցի , և դուք ստացարուք զհնազանդութի ձեր . կամ մի մեկնէք զերազս իմ , կամ մի տրտմիք ընդ մարգարէութիւնդ ձեր . ըստ կամս ձեր որպէս կամեցարուք ասացէք . և որպէս զի ոչ կամեցայ ես , բարկացայք դուք ։

Սկսաւ դարձեալ այլ երազ տեսանել ։ Ոչ դադարէ ճշմարտութի 'ի պատմելոյ զկերպարանս իւր հանապազօր . և պատմեացն եղբարցն իւրոց և առաջի հօր իւրոյ ։ .Ո՞վ Յովսէփ , ո՞չ երկեար զարհուրեցար դու յերազոյ անտի յառաջնոյ , զի ոխացան ընդ քեզ ամենեքին ։ Վասն այսորիկ առաջի հօրն պատմեաց , զի թերևս , ասէ , շրջեսցէ հայր իմ զմեկնութիւն . այլ

ինչ տեսացէ և հաշտեցին եղբարքն իմ վասն առաջին ցասմանն։ Եւ սկսաւ դարձեալ միւսանգամ Յովսէփ, իբրև զահի հարեալ էր յոխակալ հայելոյ առտի եղբարցն իւրոց՝ որ էր առ նա, և ասէ ցնոսա. «Դարձեալ միւս ևս այլ երազ տեսանէի. Թուէր ինձ իբրև արեգակն և լուսինն և աստեղք մետասան գային և ինձ երկիր պագանէին„։ Այս մեկնութ՟ի 'ի պատմութ՟իս յաւելու. զի այն առաջինն որպիսի մատուցանէ զերկրպագութ՟ի. և այս վերջինս առ ինքն մերձեցուցանէ զհնազանդութիւն։ Եւ իբր ամենեքին սպասէին և ակն ունէին լսել զոր ինչ հայր նոցա առնէր պատասխանի, սկսաւ նախ հայրն նորա սաստիւ պատուհասել զնա. զի սաստել պատուհասելն նորա զնա՝ ցածուցէ նախ զդառնութիւն և զատելութիւն եղբարց նորա։ “Արդ դայցեմք, ասէ, ես և մայր քո և եղբարք քո առաջի քո, և քեզ խոնարհ երկիր պագանիցեմք„. և ահա մայրն նորա մեռեալ էր. այլ քանզի մի մարմին են նոքա, և մայր նորա պագ նմա երկիր 'ի պագանել երկիրն Յակովբայ։ Արդ սաստեաց պատուհասեաց զնա յանդիման նոցա, քանզի ետես նա՝ թէ ներկան նոքա նախանձու. ոչ եթէ զի չէր ստոյգ և հաւատարիմ Յակովբու մեկնութիւն երազոյն, այլ զի պատուհասիւն իւրով զցասումն նոցա 'ի բաց արասցէ։ Զի թէպէտ որպէս զհարդ գործըն և իրքն լինելոց էին՝ Յակովբ ոչ գիտէր, սակայն 'ի միտս իւր հանապազօր այն խորհուրդք բևեռեալ և տնկեալ էին. “Եւ հայր նորա, ասէ, պահէր զբանսն„։

Իսկ եղբարքն Յովսեփու անցին գնացին արածել զխաշինսն 'ի Սիւքէմ. և զնա ոչ առաքեաց ընդ նոսա հայր նոցա, եթէ գուցէ յիշեսցեն զերազս նորա և տրտմեցուցանիցեն զնա։ Իբրև անցին ժամանակք հարուստ մի, Յակովբու այսպէս թուեցաւ՝ թէ յայսմ հետէ մոռացեալ է ցասումն 'ի սրտէ եղբարց նորա։ “Եւ ասէ Յակոբ ցՅովսէփ. երթ տես զեղբարսն և զխաշինսն թէ ողջ կայցեն, և բեր ինձ զրոյց„։ Թէպէտ և տրտմեալ էր Յովսէփ և երկուցեալ յեղբարց անտի իւրոց, սակայն քանզի ոչ էր սովոր

արհամարհել անցանել զհրամանն հարքն իւրով, եւ զանձն իւր երթալ ։ Եւ մինչդեռ երթայր 'ի Ճանապարհի մոլորեցաւ նա ըստ արտուղի, զի բազմացան հոգք խորհրդոց նորա, և մոլորեցաւ նա 'ի Ճանապարհէ անտի ։ Իբրև տեսին եղբարքն իւր՝ սկսան կրճտել զատամունս իւրեանց և ասել. ահա երազատեսն՝ որ դիմեալ գայ առ մեզ ։ Փոխեցաւ բնութիւն եղբայրութեան 'ի փոփոխումն մտաց, և մոռացեալ եղև եղբայրն 'ի խորհրդոց նոցա. զի բանք դառնութեան էին քան զարտմտութիւն խստութեան 'ի նմանութիւն լարեալ աղեղան՝ իբրև զնետս սլաքեալս թունէին բարկութեամբ առ նա ։ Յայնժամ կալան զնա և ասեն. հը՛ հը՛, անկար 'ի ձեռս մեր՝ երազատես. այս է մեկնութիւն երազոց քոց. արդ ընդ կառափն քո հանցուք զամենայն, զոր և ասացեր դու. և երկիր պագցեն քեզ վէմք հարուածովք, և խաւարեսցի արեգակն 'ի սատակման քում, և լուսին և աստեղք 'ի վերայ քո մթասցին, զի կարծեցեր դու բարձրանալ թագաւորել 'ի վերայ մեր լուսով նոցա ։

Բայց Ռուբէլ աղաչէր հաւանեցուցանել զնոսա յասել իւրում. "Մի՛, ասէ, սպանցուք և ոգեպարտ եղիցուք, և մի արասցուք աշխատ զձեռս մեր 'ի նա, և մի հեղցուք զարիւն նորա յերկիր. ոչ, ասէ, բարւոք է սպանութիւն. այլ արկցուք զնա 'ի գուբ մի յանապատի աստ, և զձեռս ձեր դուք աշխատ 'ի նա մի առնէք"։ Ո՞վ Ռուբէլ, զի՞նչ գործեստ. և ո՞չ է լաւ մահ ժամանակեան միոյ քան զտանջանս գբոյ ։ Այլ Ռուբէլ ոչ եթէ զի մեռցի Յովսէփ 'ի ներքս 'ի գուբն կամէր, այլ զի խելօք թափիցէ 'ի նոցանէն և անդրէն միւսանգամ 'ի հայր իւր հասուցանել մարթասցէ. զի ցանկայր նա բժշկել զցաւս իւր դեղօք իւրովք որպէս բժիշկ իմաստուն՝ որ անձին իւրում յաճախէ զօգտութիւնս 'ի հալածել իւրում առ յինքենէ զցաւս վնասակարս ։ "Եւ մատեան, ասէ, ձգեցին հանին զՅովսէփ 'ի գբոյ անտի, և ետուն զնոյ իսմայէլացւոց"։ Ո՜վ ծառայք, որ վաճառէին ըզտեառնորդին իւրեանց ։ Դան և Նեփթաղիմ որդիք Բաղղայ միաբանեցին վաճառել զորդին Ռաքելայ, այն որ արար շնորհս ընդ Բաղա աղախին իւր, և ետ

զնա Յակովբու առն իւրոյ ։ Ո՞վ Յովսէփ , ո՞ւր են երազք քո՝ զոր ասէիր դու . արեգակն և լուսին և աստեղք երկիր պագանէին ինձ ։ Եւ փոխանակ զի երկրպագեցին նա , որպէս երևեցաւ նմա , երթեալ պաշտէր զծառայութիւն 'ի մէջ եգիպտացւոցն ։

Իբրև լուաւ Յակովբ թէ մեռաւ Յովսէփ , գրեալ է ասէ . "Ժողովեցան ուստերք և դստերք նորա և եկին մխիթարել զնա " ։ Եւ եթէ դստերք եղեն Յակովբու յետ [1] եղանելոյն , զիա՞րդ ոչ առնէ յայտ . և թէ հաճոյ եղեն Յակովբայ յետ նեղութեան մխիթարել , զիա՞րդ ոչ առնէ յայտ զդստերսն եթէ իջին յերկիրն եգիպտացւոց , և կամ թէ արանց եղեն նոքա յերկրին քանանացւոց ։ Քանզի 'ի նմին իսկ երկրէ և որդիք նոցա առին իւրեանց կանայս , և յիջանելն իւրեանց յերկիրն եգիպտացւոց ամենեքեան կանայս ունէին ։ Կամ զդստերս որդւոց նորա կարգաց դստերս նմա ։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Գազան ուրեմն եկեր զՅովսէփ որդեակ իմ " . հերքայեցի , "Գազան ուրեմն չար եկեր զնա " ասէ ։

Եւթնուտասնամի էր զի վաճառեցաւ Յովսէփ . եղև 'ի տան Պետափրեայ մետասան ամ . քսանևութ ամի էր 'ի ժամանակին իբրև յարեաւ 'ի վերայ նորա տիկին նորա . մատնեցաւ նա 'ի տուն բանտի զերկուս ամս , և երեսնամի էր զի կաց առաջի Փարաւոնի ։ Եւ յամին երեսներորդի իններորդի Յովսէփու մուտ Յակովբ յԵգիպտոս . զքսան և զերկուս ամս պահեաց Յակովբ սուգ վասն Յովսէփու որդւոյ իւրոյ , և ոչ եղև նմա յայտնի թէ կենդանի իցէ և չիցէ մեռեալ ։ Եւ զի՞ ոչ յայտնեաց ա̃ծ Յակովբայ , զի մի՛ խափանեսցին իսքանչելիքն որ գործեցան ։

"Եւ եղև , ասէ , յետ պատգամացս այսոցիկ արկ զմիտս իւր տիկին տեառն Յովսէփու , և ակն եդ նմա և ասէ ցնա . վաղ եկ արա զկամս իմ " ։ Իբրև ետես Յովսէփ թէ այնչափ շտապ տագնապի 'ի վերայ հասուցանէր , եթող զձորձս իւր 'ի նա , և ինքն փախուտեայ արտաքս ելանէր ։ Թշնամութիւն այն , որ անկաւ զկնի նորա յեղբարց անտի նորա և վաճառեաց

1 Յօրինակին պյէփ ։

զնա, նոյն դարձեալ միւսանգամ պատահեաց առաջի երեսաց իւրոց։ Այլ այն ա՟ծ՝ որ ապրեցոյց զնա 'ի նոցանէ, նա դարձեալ փրկեաց զնա 'ի տիկնոջէ անտի իւրմէ։ «Եւ առ պատեաց, ասէ, և եդ զձորձսն Յովսեփու առ ինքն»։ և 'ի դատ պահէր առն իւրում մինչև եկեսցէ տէր տանն։ Եւ իբրև եկն տէրն, պատմեաց նմա զչարչարանսն իւր սուտութ՟բ։ Այլ թէպէտ նա զրպարտեաց զնա՝ և այրն հաւատաց նմա, սակայն ա՟ծ՝ որ գիտէ զծածկեալս, ոչ եթող զնա 'ի ձեռանէ։ Այլ դու, ո՛վ տէր Յովսեփու, ո՞չ էր արժան առնուլ քեզ 'ի միտ եթէ ո՞յր ձորձք գտան առ ընկեր իւր. զի եթէ ձորձք կնոջ քո գտան առ Յովսեփու, բարւոք հաւատացեր դու կնոջն քո. ապա եթէ ձորձք Յովսեփու առ կնոջ քում գտան, ո՞չ ահա յայտնի է այս՝ եթէ նա եհար բուռն զնմանէ, զի կատարեսցէ զկամս նորա։

Առ զնա տէրն իւր և տարաւ արկ զնա 'ի տուն բանտին. և արգելեալ էին անդ ծառայք Փարաւոնի. և տեսին երկոքին երազ յաւուր միում, և տրտմեալ էին։ Հարց զնոսա Յովսէփ և յայտնեցին նմա։ «Երազ, ասէ, տեսաք. և ոչ ոք է որ մեկնէ մեզ զայն»։ Ասէ ցնոսա Յովսէփ. պատմեցէք ինձ»։ Ո՞վ Յովսէփ, և ահա երազքն զոր դու անձին քում տեսեր՝ առ քեզ ոչ հաստատեցան, զիա՞րդ խոստանաս դու այլոց մեկնութի՟ երազոց։ Այլ յայսմիկ զի յասացեալ համարձակութ՟բ հարց զնոսա և վաղվաղակի մեկնեաց նոցա, յայտ արար թէ հաւատացեալ էր 'ի միտս իւր՝ թէ հանդերձեալ են կատարել տեսիլք նորա։ Եւ մինչ դեռ 'ի տան բանտին էր, պատմեաց Յովսէփու նախ տակառապետն։ Այս ինքն ամենայնի յ՟յ լինէր, և արկանել զնոսա 'ի բանտ անդր, և զի տեսցեն երազս։ Զի թէ պատմեալ էր մատակարարին նախ, քանզի վճիռ մահու գնէր 'ի վերայ նորա 'ի մեկնել երազոյ նորա, երկնչէր տակառապետն և ոչ պատմէր նմա զիւրն. այլ նախ պատմեաց տակառապետն, զի վասն բարւոք մեկնութե՟ երազոյ նորա յուսասցի մատակարարն ասել և նա որ ինչ ետես։

Սկիզբն երազոյն Յովսէփու ընդդէմ Հռուբէնի լինէր յոյժ, զի նա էր գլուխ և անդրանիկ եղբարց իւ֊

րաց. արդ տես դու զի որպէս Յովնաթանն յաղթեաց նախանձու և ատելութե՛ տանն Կայենի: Ատելութի արանց և սէր կանանց արկին զՅովսէփ 'ի բանտ գու-բըն. ատեցին զնա արք, արկին 'ի գուբն յանապատի: Սիրեաց զնա կին, և արկ 'ի գուբ 'ի տան բանտին. և 'ի գբոյ անտի ատելութե՛, զի փոխարէն ատելութե՛ն հատուցանել ոչ կամեցաւ. և 'ի գբոյ անտի ցան-կութե՛, զի փոխարէն սիրոյն ոչ հատոյց: Ոչ հատոյց նա փոխարէն եղբարցն իւրոց. քանզի ոչ եթէ ըստ ատելութե՛ն, որպէս ատեցին զնա, ատեաց զնոսա. այլ զլացաւ լուացաւ զփոխարէն կնոջ տեառն իւ-րոյ, զի ոչ սիրեաց զնա որպէս և նայն սիրեաց զնա: Համբուրեաց զեղբարսն իւր զայնոսիկ՝ որ կրճտէին 'ի վերայ նորա զատամունս իւրեանց. բայց դարձոյց զե-րեսս իւր և փախեաւ յայնմանէ՝ որ փափաքեալ ցան-կայր պագանել զնա: Հատոյց ատելութե՛ն, և զլացաւ զցանկութի՛ն. այս է որ հատոյց և փառաւորեցաւ, զլացաւ և գովեցաւ. հատոյց սիրով իւրով ատելութե՛ն, և զլացաւ սիրով իւրով զցանկութի՛ն: Եւ նա կրկին պատմուճանս այնոցիկ՝ որ պատառեցին զպարեգօտս նորա. զոր օրինակ պատառիցեն գազանք: Եթող զձոր-ձըս իւր և փախեաւ 'ի գազանէ անտի, որ խնդրէր պատառել զմարմին նորա և զհեզութի՛ հանդարտու-ե՛ նորա: Ատեաց դարձեալ զսենեակ, քանզի յանդու-րութե՛ նորա հեզութի՛ նեղեալ էր. բայց սիրեաց զգուբն, զի 'ի մէջ նեղութե՛ նորա կուսութի՛ ցնծայր: Ատեաց զսենեակ, այն որ կանայքն 'ի մէջ նորա պա-տերազմ տանէին. բայց սիրեաց նա զտունն բանտին, զի անդ և աւազակք դադարեցին յամենայն պատե-րազմաց:

«Գազան, ասէ, ուրեմն չար եբեկ զնա». արդա-րեւ գազան չար: Իսկ արդ ո՞ր գազան չար քան զա-տելութի: Արդ երկիր դու յատելութենէ, զի մի երցէ ապականիցէ զբազումս, որպէս Կայենն զՀա-բէլ, և որպէս եղբարքն Յովսեփու զՅովսէփ: Վայե-լէր իսկ գեղ Յովսեփու և ոչ պտունկաց. և Շուշա-նայ և ոչ չնացող կանանց. և իմաստութի Դանիէլի և ոչ մոլարելոց. և մեծութիւն Յովբայ և ոչ ագա-հաց: Եթէ իբրև զՅովսէփ էին ամենայն երխա-

սարդք, այր ընդ կնոջ ընկերի իւրում ոչ շնայր. և եթէ իբրև զՇուշան էին ամենայն կանայք, կին ընդ այլոյ առն ոչ պղծէր. և եթէ իբրև զՅովբ էին ամենայն մեծատունք, ամենայն որբոց հարք էին, և ամենայն այրեաց արք: Սոյնպէս և ամենայն պտուղ արարածոց. առ դու զնոսա յերկուս կողմանս զչարացն և զբարեաց, և տես դու զի զամենայն ինչ զոր և հաստեաց, բարւոք հաստեաց. և ազատութիւն մեր ոչ կամի առաքինանալ նովաւ: Ցերիս աւուրս մոռացաւ տակառապետն զՅովսէփ. և յետ երկուց ամաց յիշեաց զնա. այլ ոչ նա՝ զի մոռացաւ զնա, այլ ա̃ծ՝ զի ոչ մոռացաւ զնա:

Փոխանակ այնր՝ զի ասէ "Ազազունք և խորշակահարք". ասէ "Ի սաստիկ հողմոյ արևելից": Մի՛թէ առանց ա̃յ գտանի՞ պատասխանի խաղաղութե̃ Փարաւոնի. գիտէ տեսանել, և գիտէ մեկնել. այն զի ասէ "Տեսցէ Փարաւոն այր", վասն անձին իւրոյ ասաց. զի ոչ ասաց նա արս, այլ այր: Պատմեաց Փարաւոն զերազն իւր առաջի իմաստնոց և կախարդաց եգիպտացւոց, և ոչ կարացին մեկնել: Եւ ահա յայտնի էր երինջքն, զի ուտէին զերինջս. և զի մեկնեսցէ զնա յայտնապէս, հասկքն զի ուտէին զհասկս. զի յորժամ եկեսցէ Յովսէփ և մեկնեսցէ զնա, ամաչիցեն կախարդքն այնուքիկ, որ կարծեցին կալ ընդդէմ Մովսիսի արուեստագիտութ̃բն իւրեանց:

"Եւ իջին, ասէ, եղբարքն Յովսէփու յերկիրն եգիպտացւոց գնել իւրեանց կերակուր": Ժողովեցան և եկին վաճառականքն, զի բերան նոցա կշտամբեալ յանդիմանեսցէ զնոսա. զի զտէրն իւրեանց վաճառեցին, երկիր պագին նմա իբրև դատաւորի. աղաղակեցին 'ի ձայն բարձր բարբառոյ և ասեն. "Ծառայք քո եմք": Բայց նա ասէ ցնոսա. "Ոչ այդպէս է, այլ լրտեսք էք դուք": Զիւրն ասէր նոցա Յովսէփ, զի քննելով քննէր զնոսա գիտել ճանաչել եթէ կայցէ Բենիամին եղբայր իւր: Քանզի ետես նա զնոսա, և զԲենիամին ընդ նոսա ոչ ետես, կարծեաց թէ և զնա սպանին և բարձին զյիշատակ Ռաքելայ վասն նախանձու Լիայ. վասն այսորիկ ասէ ցնոսա՝ լրտեսք էք: "Ասեն ցնա. ոչ տէր, այլ ծա-

ռայք քո եմք „ ։ Ո՞վ վաճառականք, ո՞վ է ծառայ, դո՞ւք՝ եթէ Յովսէփ ։ Այս են վաճառականք, որ եղեն ծառայք վաճառի իւրեանց ։ "Երկոտասան եմք մեք, ասեն, որդիք առն միոյ. և որ կրտսերն է, առ հայրն մեր մնացեալ է. և միւսն ևս չիք 'ի միջի „ ։ Յովսէփ իբրև լուաւ թէ կրտսերն առ հայր իւր է, և վասն նորին հարցուածոյն իւրոյ փոյթ եղև նմա, "Ոչ ելանէք դուք աստի, ասէ, եթէ ոչ զեղբայրն կրտսեր ձեր ածէք դուք առ իս ։ Արդ առաքեցէք դուք զմի ոք 'ի ձէնջ, և ածէք վաղվաղակի զեղբայրն ձեր „. զի կարծեաց նա թէ ուրեք վաճառեալ իցէ կամ գրաւեալ ։ Ես, ասէ, ոչ առաքեմ, այլ դուք առաքեցէք ուր գիտէք թէ իցէ եղբայրն ձեր. զի ես ինքնին, ասէ, յոյժ երկիւղած եմ ։

Ի բարբառ գթոյ ասէր Յովսէփ. փոխանակ բազմաց, ասէ, մի 'ի ձէնջ մնասցէ աստ 'ի բանտի ։ Նոքա իբրև տեսին, ասեն. "Այս այս. արդ յիշեցաք զի հասին մեզ այն մեղք կարեացն եղբօրն մերոյ, զի արհամարհեցաք մեք զնեղութիւն ոգւոյ նորա. զի անկանէր պատէր զմեօք վասն ոգւոյ իւրոյ, և մեք ոչ անսացաք նմա. վասն այսորիկ հասին այս ամենայն փորձութիւնք և նեղութիւնք 'ի վերայ մեր „ ։ Ո՞վ նախանձ չար և հակառակութիւն դառնութեան, զի իբրև նեղեցաւ տագնապեցաւ, դատեցաւ զանձն իւր ստուգութեամբ ։ Չիք 'ի միջի տանջանք և ոչ քերանք և ոչ կշտամբիչք, և եղեն ինքեանք դատաւորք և ինքեանք կշտամբիչք և ինքեանք յանդիմանիչք միմեանց ։ Յովսէփ լուաւ թէ լեզուն իւրեանց պարտաւորեաց զնոսա, և իբրև 'ի վերայ մեռելոյ խօսէին, և իբրև յոյժ զհատուցումն ընդունէին, և յուզեցաւ գութ ողորմութեան նորա վասն շնորհացն Հռուբէնի. և դարձաւ գնաց առ 'ի նոցանէ մեկուսագոյն և լաց ։ Եւ հրամայեաց ունել զՇմաւոն և կապել զնա, և թող զՀռուբէն. զի լուաւ նա, զի ասէր ցեղբարսն իւր. "Ո՞չ ասացի ձեզ այն օր՝ թէ մի մեղանչէք մանկանն և դուք ոչ լուէիք ինձ. արդ ահաւասիկ արիւն նորա, խնդրի 'ի ձեռաց ձերոց „ ։ "Եւ ինքեանք, ասէ, ոչ գիտէին՝ եթէ զայն ամենայն լսէ Յովսէփ, զի թարգման կայր 'ի մէջ նոցա „ ։

Հրաման ետ Յովսէփ լնուլ զամանս նոցա ցո-րենեաւ. և տալ պաշար 'ի ճանապարհ. և զիւրա-քանչիւր գինս դնել անդէն 'ի ցորեան անդ յիւրա-քանչիւր քրձի: Բարի առնէր նոցա և ոչ յայտնէր, զի մի գիտասցեն զշնորհսն և 'ի համարձակութենէ անտի երկմտիցեն: Խաբեաց զնոսա դարձեալ 'ի սկիհ անդր, զի ունէր և բախէր զնա. զի կարծիցեն թէ դիւթութիւք խօսեսցի ընդ նմա. "Եւ 'ի դմին, ասէ, հմայելով հմայէր զամենայն „. յայնմանէ ասեն, զի բազմեցան առաջի նորա երէցն ըստ երիցութե, և կրտսերն ըստ կրտսերոյն. և զարմացան, ասէ, այր ընդ եղբօր իւրում: Եւ զի ասէ "Ա՛ռ որում սկիհն իմ գտցի՝ նա եղիցի իմ ծառայ „, փորձելով փորձէր զնոսա՝ թէ արդարև տայցեն զԲենիամին 'ի ձեռս նո-րա. և զի եդ Յուդա զանձն իւր փոխանակ նորա, և յի-շեաց զսէր նորա որ էր առ հայրն իւր, յայտնեցաւ Յովսէփ եղբարցն իւրոց. պատուէր տայր նոցա Յով-սէփ և ասէր. մի ինչ կագիցէք և զայրանայցէք դուք ընդ միմեանս 'ի ճանապարհի փոխանակ այնր զի վա-ճառեցէք զիս. զի այն որ արարն զիս զի վաճառեցայց, նա եղև պատճառք բարեաց մերոց. կամ վասն չեղ-ջակուտացն զոր բարձին առաջի նորա:

Բայց Յովսէփ 'ի գբոյ անտի 'ի թագաւորութի արքայութե, և յանարգանաց 'ի փառս պատուոյ. և տէր մեր 'ի խաչէ անտի ընդ երկինս, և 'ի դժոխոց անտի յաթոռ փառաց: ԶՅովսէփ իբրև տեսին եղ-բարք նորա, ասեն. "Ահա աւանիկ երազատեսն որ գիմեալ գայ առ մեզ. եկայք սպանցուք զնա, և տես-ցուք թէ երազք նորա ընդ ինչ ելանիցեն „: Եւ զտէր մեր իբրև տեսին մշակքն, ասեն. "Սա է ժա-ռանգն այգւոյս. եկայք սպանցուք զսա, և եղիցի այնուհետև մեր ժառանգութիւն „: Յովսէփ անկաւ յերկուս գուբս, 'ի մի՝ վասն երազոց իւրոց, և 'ի միւսն ևս վասն յաղթութե իւրոյ 'ի վերայ ցանկու-թենն: Եւ տէր մեր արգելաւ յերկուս գուբս. 'ի մարմին անդ վասն ողորմութե իւրոյ, և 'ի դժոխս վասն յաղթութե իւրոյ 'ի վերայ մահու: Յովսէփ փոխանակ պոռնիկ տիկնոջ իւրոյ առ նա իւր կին զԱսանեթ. և տէր մեր փոխանակ սպանող առաջին

ժողովրդեանն ընտրեաց իւր զեկեղեցի սուրբ ։ Մինչ չև եկեալ էր Յովսէփու յերկիրն եգիպտացւոց, չքով և պատուով էր առ հօր իւրում. և տէր մեր մինչ չև եկեալ էր յաշխարհ այսր, փառօք և գոհութեամբ էր առ առաքիչն իւր ։ Երազն առաջին եղբարցն իւրոց, և ապա հարց իւրոց. քանզի և եղբարքն նորա պագին նմա երկիր յառաջագոյն, և ապա յերկրորդ գալստեանն հայրն իւր ։ Յովսէփ արգելեալ կայր 'ի բանտի անդ իբրև չարագործ՝ իբրու զգեցեալ էր զամենայն հեզութեն զգաստութեն. և տէր մեր եւ 'ի խաչ իբրև զմեղաւոր, իբրու նա յաղթեաց աշխարհի ։ Յովսէփ եմուտ յերկիրն եգիպտացւոց, և ցանկացաւ նմա տիկինն իւր. և տէր մեր եմուտ 'ի գերեզմանն, և ցանկացան նմա դժոխք ։ Տիկինն ընթացաւ ապականել զՅովսէփ. և դժոխք ընթացան ապականել զտէր մեր ։ Ոչ կինն կարաց յաղթել զօրութեն Յովսէփու, և ոչ դժոխք կարացին յաղթել զօրութեն տեառն մերոյ ։ Տիկինն Յովսէփու զձորձոց նորա բուռն եհար, և Յովսէփ ապրեցաւ. սոյնպէս և դժոխք զհանդերձէն տեառն մերոյ բուռն հարին, և մարմին նորա յարեաւ և կանգնեցաւ ։ Յովսէփ զկալանաւորսն կերակրէր. և տէր մեր 'ի դժոխս մեռելոցն լուսատու լինէր ։ Մուտ Յովսէփ 'ի բանտ անդր և մխիթարեաց զկալանաւորսն. մուտ տէր մեր 'ի դժոխս և մխիթարեաց զմեռեալս ։ Եւ զոր օրինակ մեկնեաց Յովսէփ ծառայիցն Փարաւոնի, զմինն դարձոյց կացոյց 'ի գործ տակառապետութեն իւրոյ և զմիւսն հան 'ի խաչ, սոյնպէս և տէր մեր զմինն մոյծ 'ի դրախտն փափկութե վասն հաւատոց իւրոց, և 'ի վերայ միւսոյն եդ վճիռ պատժոց վասն երկմտութե իւրոյ ։ Եւ զոր օրինակ դատեցաւ Յովսէփ զդատիչսն իւր և արկ 'ի բանտ զայնոսիկ՝ որք զնայն արգելլին 'ի գուբ անդր, սոյնպէս և տէր մեր լինի դատաւոր խաչահանուաց իւրոց ։ Եւ որպէս զենաւ ուլն և ապրեցաւ Յովսէփ, սոյնպէս եւ տէր մեր զմարմին իւր 'ի խաչ վասն փրկութե եկեղեցւոյ իւրոյ ։ Եւ զոր օրինակ պարեգօտքն Յովսէփու թաթաւեցաւ արեամբ, բայց մարմին նորա ինչ ոչ վնասեցաւ ; սոյնպէս և զմարմինն տեառն մերոյ կալան և ոչ զաստուածութի

նորա ։ Եւ զոր օրինակ երեսնամի էր Յովսէփ 'ի ժամանակի իբրեւ կայ առաջի Փարաւոնի, նա և Դաւիթ երեսնամի օծաւ, սոյնպէս և տէր մեր երեսնամի էր 'ի ժամանակի իբրեւ մկրտեցաւ 'ի Յորդանան գետ ։ Եւ զոր օրինակ յերկրորդում նուագի անդ ծանեան եղբարքն զՅովսէփ, սոյնպէս և ժողովուրդն յերկրորդում գալստեան տեառն մերոյ գիտեն ճանաչեն եթէ նա է Քրիստոս, որպէս և ասէ. "Հայեսցեն առ այն զոր խոցեցինն„. 'ի տէր մեր զոր խոցեցինն ։ Եւ Յովսէփ առ 'ի տիկնոջէ անտի իւրմէ առանց բաճկոնի, զոր օրինակ եւ նա առ յեղբարց անտի առանց պարեգօտից. առաջին պարեգօտիւքն հաւատարիմ եղև Յակովբու սուտ մահն Յովսէփու. և 'ի ձեռն բաճկոնին հաւատարիմ եղև տեառն իւրոյ զպարտութ՟ի սուտութ՟ե տիկնոջ նորա ։ Հայեցարուք դուք յողորմութ՟ի անդր որչափ հանապազորդէ ընդ արդարս ։ Անկաւ Յովսէփ 'ի գուբ, հան զնա անտի առանց արատոյ. վաճառեցաւ 'ի մէջ եգիպտացւոց, արար զնա տէր 'ի վերայ ընկերաց իւրոց ։ Արկին զնա 'ի տուն բանտի, պատրաստեաց նմա անդ զփառս և զպատիւ. մուտ նա առաջի Փարաւոնի, արար զնա կերակրիչ երկրին եգիպտացւոց ։ Ո՛վ արդար. զի փոփոխեաց նա տեղիս բազում, և ոչ փոփոխեաց նա ըզճշմարտութ՟ի իւր ։ Հասին պատեցան զնովաւ նեղութիք ձգնութ՟ե, և ոչ կարացին փոփոխել զբարութ՟ի նորա. բազմացան յաճախեցան փորձութիք նորա, և ոչ նուաղեաց և կարճեցաւ պարկեշտութ՟ի նորա ։ Բախեցին զնա ալիք, և ոչ լուծաւ քակտեցաւ նաւ նորա. անկան 'ի վերայ նորա աւազակք, և ոչ կարացին կապուտ կողոպուտ առնել զգանձս նորա ։ Անկաւ նա 'ի մէջ զբօսանաց, և ոչ ընկղմեցան վաճառք նորա. քննեաց զնոսա ստուգութ՟ի, և մեծացոյց զնա ողորմութ՟ի. փորձեաց զնա ծառայութ՟ի, և բարձրացոյց զնա ազատութ՟ի ։

ԳԼՈՒԽ Ժ

«Այն ասէ Ա̃ծ ցԻսրայէլ 'ի տեսլեան գիշերոյ. և ասէ. մի՛ երկնչիր դու իջանել յերկիրն եգիպտացւոց». իբրու իշխանութ̃ տէրութ̃ն Յովսէփու էր անդ։ Բայց զնոսա թէպէտ և բռնութ̃ն հնազանդեցուցանէր, սակայն ելանել անտի չկամէին։ Երկիւղ 'ի մնանել նոցա, և բռնութ̃ յելանելն նոցա։ Յակոբ երկեաւ, զի մի մնասցէ 'ի քաղաքն կախարդաց. և զաւակ նորա ոչ կամէր ելանել 'ի դիւթ երկրէ անտի եգիպտացւոց։ Արդ երկեաւ իջանել Յակոբ յերկիրն եգիպտացւոց, զի մի մեղիցէ որդւոցն նորա կախարդութ̃ն եգիպտացւոց. վասն այսորիկ երևեցաւ նմա Ա̃ծ և ասէ ցնա. «Մի՛ երկնչիր դու իջանել յերկիրն եգիպտացւոց»։ Եւ զի խղճէր նա՝ թէ գուցէ մնասցեն նոքա անդէն վասն սիրոյ երկրին եգիպտացւոց, և խափանեսցին այնուհետև աւետիք հարանցն, ասէ ցնա. «Ես իջանեմ ընդ քեզ յերկիրն եգիպտացւոց, և ես հանեմ զքեզ անտի»։ Զի երկուցեալ խռովեալ էր նա՝ եթէ գուցէ մեռանիցի և ոչ տեսանիցէ զՅովսէփ, մխիթարեաց զնա յասել իւրում. «Յովսէփ, ասէ, սպասեսցէ ձեռօք իւրովք աչաց քոց»։ «Ես. ասէ, իջանեմ ընդ քեզ յերկիրն եգիպտացւոց»։ Այցելու եղև նոցա և 'ի Բաբելոն կառօքն իւրովք։

Յովսէփ յամենայն լիութ̃ հնգերորդէր զերկիրն եգիպտացւոց. և իբրև առ գնոյ զամենայն երկիրն եգիպտացւոց 'ի ծառայութ̃ Փարաւոնի, ետ հրաման զի տասցեն 'ի հնգէ մի։ Ո՞րպէս. այլ զի լուաւ Փարաւոն՝ թէ սով հանդերձեալ է գալ, հրամայեաց նա զի բռնութ̃ պահանջիցեն. որպէս զի պահեսցի նոցա մնացորդ։ Բայց իբրև առ նա գնոյ զերկիրն նոցա, արար զնոսա հարկատուս արդիւնարարս։ Բայց հերքայեցի մեկնէ զնա. փոխանակ այնր՝ զի ասէ «Առցեն մի 'ի հնգէ», «Կարգեսցեն զերկիրն» ասէ։

«Ամենայն հոգիք, ասէ, որ եկին մտին ընդ Յակոբ

քու յերկիրն եգիպտացւոց, եւ Թամնասուն „. և ահա վաԹսուն և չորք են. Յովսէփ մտեալ էր, և Եփրեմ և Մանասէ անդ ծնեալ էին յԱսանեԹայ: Եւ փոխանակ այնու՝ զի ասէ "Երկիր եպագ Իսրայէլ 'ի ծայր գաւազանի իւրոյ „, "Ի գլուխ մահճացն իւրոց „. այս ինքն ա՞յ: Ուրախ եղեն տունն Փարաւոնի ընդ գալ եղբարցն Յովսէփու. այս ինքն է զի յայտնի եղև՝ Թէ ազնուական է 'ի մեծազգեաց տոհմէ. զի մի՛ ասիցեն՝ Թէ ծառայ մի գերի եւ Թագաւորեաց 'ի վերայ մեր: Եւ իբրև պատմեաց Յովսէփ զերազն իւր եգիպտացւոցն, յայտնի եղև Թէ երազքն Փարաւոնի վասն երազոցն Յովսէփու երևեցան: Առ զԵգիպտոս գնոյ, և տանջեաց զնոսա սովով. զի յամօԹ լիցի Եգիպտոս յորժամ կոչէ զկախարդսն կալ ընդդէմ Մովսիսի: Ժողովեցին ամփոփեցին եւտուն եգիպտացիք զարծաԹ երկրին. եւտուն վարձս վարձկանքն, և ապա գործեցին. և զգինս որդւոց իւրեանց եւտուն վարձս: Ի ցող ցորենոյ կերակրեաց և հաստատեաց Յովսէփ զերկիրն եգիպտացւոց. և նա եղև եղէգն ջաղջախ նեցուկ եղբարցն Յովսէփու:

"Ասէ Յակովբ ցՅովսէփ. ահաւասիկ տամ ես քեզ բաժին մի աւելի արտաքոյ եղբարցն բաժնի, զոր առի ես 'ի ձեռաց ամորհացւոց 'ի սուր սուսերի իմոյ և 'ի կորովս կապարճաց իմոց „: Եւ ո՞ւր է այն՝ զի ասէ "Ի խորհուրդս նոցա ոչ եմուտ անձն իմ „. և զի ասէ. "Անիծեալ է բարկուԹի և սրտմտուԹի նոցա „: Բայց զայն՝ 'ի սուր սուսերի իմոյ և 'ի կորովս կապարճից իմոց, զոր ինչ առին և Թափեցին 'ի Սիւքեմայ նոքա խիստ սրով իւրեանց, նա աղօԹիւք իւրովք կարաց ստանալ զնա երկրորդումն: Արդ զողորմուԹին որ եղև նմա օգնական՝ կոչեաց կորով կապարճից, զի կամեցան զօրաժողով լինել գալ 'ի վերայ նոցա, հարկանել կոտորել սատակել զնոսա. և արգել եղև նոցա յա՞յ, այս ինքն վասն Յակովբու: Զի եԹէ ըստ Հմաւոնի և ըստ Ղևեայ էր, ես մեռեալ էի: Կամ զժառանգուԹին զոր առ նա գնոյ, կարդաց սուր սուսերի և կորովս կապարճից. իբր ոք զի ասիցէ. առի ես գնոյ 'ի զօրուԹի բազկաց իմոց, և ոռոջացն զոր Թափեցի ես 'ի Ղաբանայ իբրև

'ի պատերազմի։ Իբրև աւերեցաւ Սիւքեմ, կալան յետ ամաց զամենայն Սիւքեմ՝ այնու ժառանգութք հանդերձ։

Այլ իբրև ասաց Յակովբ վասն ժառանգութեանն զոր ետ գնոյ, խօսեցաւ նա վասն ամենայն Սիւքեմայ. քանզի Յակովբու անիծիւք անիծեալ էր զաւերիչսն Սիւքեմայ. հայեցաւ Յակովբ և ետես՝ զի տեղին այն որ վասն ցանկութեանն աւերեցաւ, խորհեցաւ 'ի միտս իւր և ասէ. եթէ այժմ արժան է տալ զայս ժառանգութի, որ ցանկութեանն յաղթեաց. զի մի՛ եկեսցէ զկնի ժառանգաւորացն նորա վրէժխնդրութի սպանելոց նորա։ Զի արժան իսկ էր եթէ տեղին՝ ուր ցանկութիւնն յաղթեաց, իբրև պատիւ տացի այնմիկ՝ որում ցանկութին յաղթահարեցաւ 'ի նմանէ։

Օրհնեաց Սահակ զՅակովբ, և արար զնա անդրանիկ։ Օրհնեաց Յակոբ զՅովսէփ, և արար զնա անդրանիկ, յայնմիկ զի ասէ. «Ի գլուխ Յովսէփու և 'ի վերայ գլխոյ պսակի եղբարց իւրոց»։ Եւ ինքն Յովսէփ, զի ետ զաջն միաբանութե հաւասարութեան 'ի վերայ գլխոյն Եփրեմի, աջն այն արքունիչ անդրանկաց էր։ Տես դու, զի թէ ոչ աջոյն լինէին անդրանիկ, զի՞նչ հարկ էր Յակովբու փոփոխել արկանել զմիմեամբք զձեռս իւր. կամ Յովսէփ ընդէ՞ր օգնէր ձեռին հօր իւրոյ հանել զձեռնն 'ի գլխոյ Եփրեմի և արկանել զգլխովն Մանասէի։ Այլ մինչ դեռ կամէր Յովսէփ ցուցանել թէ ո՛ր զօրութի էր յաջու անդ հօր իւրոյ, փութացաւ հայր նորա եցոյց զզօրութի՝ որ էր յաջ նորա։ Զի կնքեաց աջն այնորիկ՝ որ առ զանդրանկութին. Եսաւայ, 'ի վերայ աջոյն այնորիկ՝ որ առ զանդրանկութին Հռուբէլի. և յաջոյ անտի յերկուց անդրանկացն յորդեալ հոսեցաւ անդրանկութին 'ի վերայ գլխոյն այնորիկ՝ որ առ զանդրանկութիս Մանասէի։ «Ոչ այդ այդպէս է հայր, այլ սա է, ասէ, անդրանիկ»։ Յովսէփ՝ որ եկն ուսուցանել, ուսուցին զնա այլք։ «Գիտեմ և ես, ասէ, որդեակ, գիտեմ. այլ եղբայրն, ասէ, կրտսեր՝ մեծ լիցի քան զնա»։

Ետ Յակովբ զանդրանկութիս 'ի Հռուբէլայ և ետ Յովսէփու յասել իւրում. «Ահաւադիկ ետու ես քեզ

բաժին մի աւելի արտաքոյ եղբարցն բաժնի „ . զի անդրանիկն, ասէ, երկուս բաժինս ժառանգեսցէ, զի նա է սկիզբն ծննդեան նորա, և նմա է արժան անդրանկութիւն ։ Եւ զոր օրինակ վասն զի պղծեաց Հռուբէլ զանկողինս հօր իւրոյ՝ բարձաւ 'ի նմանէ անդրանկութի, սոյնպէս և Յովսէփու վասն հեզութեան զգաստութեն իւրոյ տուաւ . և վկայէ այն՝ զի ասէ "Եփրեմդ, ասէ, և Մանասէդ իբրև զՀռուբէլ և զՇմաւոն եղիցին ինձ „ . այս ինքն փոխանակ ողորմութեան զոր արարեր դու եղբարցն քոց, եղիցին որդիքդ եղբարք որդւոց հօր քո ։ "Իբրև զՀռուբէլ, ասէ, և զՇմաւոն եղիցին ինձ . բայց այլ ծնունդք որ լինիցին 'ի քէն՝ քեզ լիցին „ . զի մի երկու միայն Յովսէփ և Բենիամին եղիցին հաւաքելայ 'ի թիւս ազգաց, այլ չորք ։ "Եւ փոփոխեաց, ասէ, և արկ զմիմեամբք զձեռս իւր . և եդ զաջ իւր 'ի վերայ գլխոյն Եփրեմի „ . ոչ վասն արդարութեան Եփրեմի, և ոչ վասն յանցանաց Մանասէի . պարգևք են իշխանութեան նորա ։ Սոյնպէս և հեթանոսաց տուաւ անդրանկութի, և բամբասել ժողովրդոց ոչ կարէ . և եթէ բամբասիցէ վասն Մանասէին՝ զի ոչ յանցեաւ, բայց 'ի նոցանէ արդարութե բարձաւ անդրանկութիւն . փոխանակ զի 'ի խաչ հանին զտէրն անդրանկութե ։

Օրհնութիք Յակոբու ։

Օրհնեցին արդարք, և եղեն օրհնութիք նոցա ընդունելեացն յաւուրս իւրեանց . զի գիտացեն՝ զի և որդիք նոցա յորժամ օրհնեն, այսպէս լինին ։ Եւ յայսմիկ ետուն փառս և մեծվայելչութի այ, զի կատարեաց զբանս նոցա արդեամբք առ ազգս նոցա ։ "Բնակիցէ, ասէ, յարկս Շեմայ „ ։ Ետես Շեմ իբրև մինն հրեշտակքն առ Աբրահամ որդի իւր . և ետես դարձեալ զի չոգաւ թափեաց զսոդոմայեցիսն զորդիսն Քանանու, և կոչեցին նոքա գերիք Աբրահամու, և եղև Քանան ծառայ ։ Օրհնեաց Սահակ 'ի միտս խորագիտութե զԵսաւ, փոխանակ զի խորամանկեցաւ առաւել քան զնոսա Յակոբք ։

Հռուբէլ . եթէ հանդերձեալ էին անէծքն Յա-

կավլաւ՝ զի մի եկեսցեն 'ի վերայ Հռուբէլի, զիա՞րդ-տաէր Յակովբ "Եկայք ժողովեցարուք, և պատմեցից ձեզ՝ որ ինչ պատահելոց է ձեզ յաւուրս յետինս ժամանակաց „ . և ոչ եթէ 'ի վախճան, այլ յետ ժամանակի ։ Բայց արդարութ՟ անէծ զնա, փոխանակ զի պղծեաց զանկողինս նորա . և քանզի վասն չնութե՟ պատուհասէր զնա, յայտ արար վասն անձին իւրոյ՝ զի յայս գործ արտաքոյ քան զամուսնութիւն կանանցըն իւրոց ոչ պղծեցաւ, յասել իւրում . "Հռուբէլ անդրանիկ իմ ես դու, զօրութի՟ իմ և սկիզբն հարըստութե՟ իմոյ „ . այս ինքն դու ես սկիզբն զօրութեան իմոյ . զի յառաջ քան զմայր քո 'ի պէտս կանանց ես ոչ անկայ ։ Եւ դու զիա՞րդ յետ հանգչելոյն քո 'ի վերայ ամուսնութե՟ կնոջ քո, պղծեցեր զանկողինս իմ ։ "Արդ մոլորեցար դու իբրև զջուր „ . զի արձակեալ թողեալ են, և ոռոգանեն զերկիր օտար ։ Եւ փոխանակ զի արբ նա 'ի ջուրց օտարոտեաց, ասէ ցնա հայր իւր . "Մոլորեցար իբրև զջուր մի մնասջիր, այլ առաւելութե՟ և զօրութե՟ց „ . այս ինքն աւելի մասն էիր դու, և աւելի զօրութի՟, վասն անդրանկութե՟ նորա . կամ դու զի ես սկիզբն զօրութե՟ իմոյ, և այլ, ասէ, առաւելութե՟ և զօրութե՟ . այս ինքն այլքն ես եղբարք նորա զկնի ։ Բայց հեբրայեցի փոխանակ այնր՝ զի ասէ "Առաւելութեան և զօրութեան „, "Այլ առաւելութի՟ զօրութե՟ իմոյ և սկիզբն սաստկութե՟ իմոյ „ ։ .

Արդ անիծաւ Հռուբէլ . եթէ անէծք են, արդարեւ տեսցուք զգործս նոցա որպէս զգործն օրհնութե՟ց, զի յայտնապէս եղեն ։ "Մոլորեցար դու, իբրև զջուր մի մնասջիր „ . բայց հեբրայեցի՝ "Խրամատեցար դու իբրև զջուրս և ոչ մնացեր „ ։ Եւ զոր օրինակ ջուրք զի ոչ մնան և դադարեն յերկիր, մի մնասջիր դու 'ի մէջ ժառանգութե՟ քո, այս ինքն 'ի թիւ ազգացն . վասն այսորիկ ասաց Մովսէս՝ եղիցի 'ի համար թուոյ, զի 'ի մէջ ժառանգութե՟ իւրեանց ընկալան զօրհնութիւս իւրեանց ։ Բայց փութացաւ վաղվաղակի ապաշխարութիւն Հռուբէլի . և արար իւր թիկունս զլեզուն Մովսիսի . ելոյծ զանէծսն զոր կապեաց ստուգութիւն Յակովբու ։ Եւ ահա ետես

իսկ Յակոբայ զապաշխարութիւն Ռուբէլի, ընդէ՞ր անէծ զնա։ Զի 'ի ժամանակի իբրև բաժանեցաւ Կորխ, բաժանեցան ընդ նմա և Դաթան և Աբիրոն որդիքն Փաղէթայ յազգէ անտի Ռուբէլի, և ընկղմեցան ընդ նմա իբրև զջուր 'ի մէջ երկրի. գործ անիծիցն հօր նորա։ Բայց եկն եհաս նմա ողորմութիւն, և յիշեաց նմա և զբարիսն զոր արար նա առ Յովսէփ։ Եւ զոր օրինակ անիծաւ նա վասն մեղացն, սոյնպէս և օրհնեցաւ նա վասն արդարութեան։ Անէծ զնա Հոգին սուրբ 'ի բերանոյ Յակոբու, իբրու պահէր զնա օրհնութիւն Մովսիսի։ Զի այն՝ որ ընթեռնու զպատիժս պատուհասից, երկիցէ յանցուածոց. և այն՝ որ թեւակոխի 'ի քաւութիւն թողութեան, մի անկցի առ յուսահատութիւն. զի ոչ յանցանս ապստամբեցին, և ոչ ողորմութիւն զրկեցաւ։ Արդ սկսաւ լինել սատակումն որդւոցն Ռուբէլի յանապատի անդ յընկղմել նոցա 'ի մէջ երկրի իբրև զջուր, եթէ ոչ էր փութացեալ վաղվաղեալ այնորիկ, զի ասէ "Կեցցէ Ռուբէլ և մի մեռցի"։ Առ սակաւ սակաւ մաշեալ և սպառեալ լինէին։ Եւ եթէ ասիցես. իսկ ընդէ՞ր բազմացան նոքա, զի քան զայն՝ զի բազմացան որպէս ջուրք, արժան էր ըմպել զնոսա երկրին որպէս ջուրք. վասն ծածուկ մահուն ասաց Յակոբայ. զի մահ Ռուբէլի իբրև զմահ ամենայն եղբարց իւրոց եղև։ Եւ դարձեալ ասաց ցՅովսէփ. "Որդիք քո իբրև զՌուբէլ և զՇմաւոն եղիցին ինձ". ըստ բազմութեան Ռուբէլի, և ըստ շինութեան՝ որ 'ի յայս աշխարհ։

Շմաւոնի և Ղևեայ, եթէ էր տուեալ զդստերսն իւրեանց նոցա կանայս, և առեալ էր 'ի դստերաց նոցա իւրեանց կանայս՝ խափանեալ լինէին աւետիքն այն, զի սատակելոց էին քանանացիքն։ Բայց հատ Յակոբ, և անէծ զնոսա, զի ոչ համբերեցին որպէս և հարքն նոցա. զի վարեցան 'ի նոցանէ կանայքն նոցա և համբերէին, և եղեն նոցա դատաստանք վրէժխնդրութեան։ Զի փորձեաց նա 'ի Ղաբան աներ իւր, և յԵսաւ եղբայր իւր՝ թէ պահապան զոյ նորա։ Եւ անէծ զնոսա, զի ած ոչ կատարեաց զնոսա. "Զև ես են, ասէ, կատարեալ մեղքն ամուրհացւոց". և

կանխեցին նոքա յառաջագոյն ցուցին սուր՝ որ ոչ էր յայն : Եւ զի յայտ արասցէ, զի ոչ գիտէր զգործն նոցա, ասէ. «Ի խորհուրդս նոցա ոչ եմուտ անձն իմ», զի ոչ կարացին զօրութեամբ նորա դիմակալ լինել բնակիչք երկրին :

Ասէ. «Ոչ իջի ես 'ի պատուէ փառաց իմոց». բայց հեբրայեցի՝ «Ի ժողովս նոցա ոչ հաղորդեցաւ պատիւ փառաց իմոց». զի ողորմութի, ասէ, անխայեցայ ես յանարգանաց և 'ի թշնամանաց, թէպէտ առ 'ի նոցանէ ես 'ի սուր հրաւիրեալ էի : «Վասն այսորիկ բաժանեցից զնոսա». այլ գոն բաժինք մարմնոց, և են բաժինք մտաց. արդ բաժանեաց զ'ի միտս նոցա, զի մի՛ ևս միաբանիցեն և հաւասարիցեն երկոքեան գործել ինչ մի. զի Զամբրի և Փենեհէզ՝ որդիք Շմաւոնի և Ղևեայ՝ ընդդէմ միմեանց գործեցին 'ի ժամանակի, իբրև բաժանեցան 'ի վերայ միմեանց վասն այնր անիծից. զի միաբանք և հաւասարք էին երկոքին յամենայն ինչ. զոր օրինակ և ոչ չորից եղբարց իւրեանց այլոց յայտնեցին 'ի ժամանակի իբրև մտին նոքա 'ի Սիւքէմ : Տես դու զի ընդդէմ միաբանութեն նոցա ած զբաժանելն նոցա. իբրև զայն՝ զի ասէ «Թշնամութի եդից 'ի մէջ քո և 'ի մէջ կնոջդ; և 'ի մէջ զաւակի քո և 'ի մէջ զաւակի նորա» : Զի ոչ ինչ օգտութի եղև նոցա առաջին միաբանութեն, բեր եդ փոխանակ միաբանութեան բաժինս երկմտութե օգտակար : Իբրև զայն՝ զի ասէ «Եթէ փեսայեսջիք դուք ընդ նոսա, եղիցին նոքա իբրև փուշ յաչս ձեր» : Իբրև զայն զի ասէ. «Մի՛ լուիցէ այր լեզուի ընկերին իւրոյ» : «Եղիցին, ասէ, հինգ 'ի միում տան, և բաժանեսցին» : Բաժանեաց զնոսա դարձեալ 'ի ժառանգութենէ իւրեանց : Ղևեայ ոչ տուաւ ժառանգութի, քանզի մասունս ետուն նմա այր յազգէ իւրմէ. և Շմաւոնի՝ զի սակաւ էր ժառանգութի իւր, ետուն նմա վերադիր 'ի վերայ ժառանգութե եղբարց իւրոց :

Արդ քանզի անցայց 'ի Հռուբէլայ զօրհնութիւն, զի ոչ իսկ էր արժանի նմա՝ թէ իբրև զանդրանիկ օրհնեսցի. բարձ 'ի նմանէ և զթագաւորութի, զի նմա ոչ վայել էր. զի նա՝ որ զանձն իւր ոչ կամեցաւ 'ի

կարգի ունել արդարութիւն, անցոյց 'ի նմանէ զառաջնորդութիւն ժողովրդեան 'ի ժամ օրհնութեանցն ։ Իբրև անց 'ի Հռուբէնէ և եկն եհաս առ Շմաւոն, հաւատարեցոյց ընդ նմա և զՂևի ևս. զի հայեցաւ ստուգութիւն և 'ի նոսա. զի եթէ մինչ դեռ խոնարհագոյնք և նուաստունք էին, վասն փոքր մի յանցանաց զայս ամենայն համարձակութիւն գործեցին, զի զքաղաք մի լրիւ իւրով սատակեցին. եթէ մեծասցին և տիրիցեն ո՞րչափ ևս չարիս գործիցեն ։ Զի ոչ էին արժանի թագաւորութեան, և 'ի նոցանէ անցոյց զնա. զի՞արդ կարէին նոքա՝ որք եղեն անօթք բարկութեան, լինել անօթք շինարար թագաւորութեան ։

Նա իբրև եկին հասին առ Յուդայ, հայեցաւ Յակովբ՝ թէ արդարութիւն նմա արժան է թագաւորութիւն. զի թէպէտ և Յովսէփ արդար էր և իմաստուն, սակայն անցանել առ Յուդայէ առանց յանցանաց՝ չէր արդարութիւն. իբրու առ Յովսէփ պաշտեցաւ ։ Իբրև սկսաւ օրհնութիւն ծագել 'ի վերայ Յուդայի, ուրախ եղեն 'ի նա եղբարքն իւր և մխիթարեցան. զի 'ի նմա սահմանեցան անէծքն, և եղև դարձեալ սկիզբն օրհնութեանցն ։ "Զքեն, ասէ, գոհասցին եղբարք քո". զի անխայեցեր դու զնոսա 'ի սպանութենէ անտի Յովսէփու ։ Զի եթէ ոչ տուեալ էր նորա խրատ և կեցուցեալ էր զնա, 'ի սովոյ սատակէին ։ Արդ փոխանակ զի անխայեցեր դու զնոսա 'ի մեղաց սպանութենէ և 'ի մահուանէ սովոյ, "Զքեզ օրհնեսցեն եղբարք քո" ։ Նա և Յովսէփայ իսկ գոհութիւն պարտ էր մատուցանել Յուդայ վասն կենաց իւրոց ։ Հերքայեցի զՅուդա՝ երկրպագեալ մեկնէ. և փոխանակ այնր՝ զի ասէ "Զքեն գոհասցին եղբարք քո", "Քեզ երկիր պագցեն" ասէ ։

"Նաւ ձեռն քո 'ի վերայ թիկանց թշնամեաց քոց". զի հնազանդելոց է թագաւորութիւն նորա զթշնամիս ։ "Ի սպանուէ, որդեակ իմ, ելեր". 'ի դատաստանէ անտի՝ զոր հրամայեցեր 'ի վերայ Թամարայ և երկուց որդւոց նորա ։ Կամ զի ոչ հաղորդեցաւ ընդ սպանութեան Յովսէփայ, վասն այսորիկ ընկալաւ զթագաւորութիւն, և հնազանդեաց զթշնամիս իւր. այս ինքն Դաւիթ, զի հար սատակեաց զփղշտացիսն այ֊

լովք ազգովք հանդերձ ։ “Ձեռն քո, ասէ, ’ի վերայ թիկանց թշնամեաց քոց„ ։ Եւ զի ասէ “ի սպանութենէ, որդեակ իմ, ելեր„ ․ յինքն Դաւիթ ’ի ժամանակի իբրև ապրեցաւ նա ’ի ձեռաց Շաւուղայ ․ կամ զի խնայեաց նա ’ի վերայ Շաւուղայ, և ոչ սպան զնա ’ի ժամանակի՝ իբրև մատնեցաւ նա ’ի ձեռս նորա ․ այնու համդերձ Շեմայն, Նաբաղայն, Աբեններայն և Յովաբուն ։ Բայց եբրայեցի, “Ի կերոյ, որդեակ իմ, ելեր ․ նիստ և բազմեաց իբրև զառեւծ, իբրև զկորիւն առեւծու„, վասն զօրութեան նորա ։

Եւ զի ասէ “Արդ ով իցէ որ յարուցանիցէ զնա„ ․ զի ոչ ոք շարժեաց և յարոյց զնա ’ի թագաւորութենէ իւրմէ յազգաց անտի հեթանոսաց՝ զորս հնազանդեցոյց ․ այն իսկ է ասէ, “Ձեռն քո ’ի վերայ թիկանց թշնամեաց քոց„ ։ “Մի պակասեսցէ արքայ յիշխանութենէ, զի նա է հովիւ և առաջնորդ„ ։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ “Եւ մի մարգարէ յերանաց նորա„ ․ բայց հեբրայեցի՝ դատաւոր ասէ ․ “Մինչև եկեսցէ որոյ իւր է թագաւորութիւն„ ։ Ո՛վ ․ Դաւիթ ։ Եւ զի ասէ “Նմա ապասեսցեն հեթանոսք„ ․ յօրէ անտի յայնմանէ յորմէ հետէ սպան նա զԳողիադ, ամեն ունէին և սպասէին նմա ժողովուրդքն այնոքիկ՝ որ հնազանդեալ էին Իսրայէլի ․ մանաւանդ զի չարչարեալ եւ էր Շաւուղ յայսոյ անտի պղծոյ ։ Կամ զազգն Իսրայելի կարգայ ժողովուրդս ․ իբրև զայն՝ զի ասէ “Այլ մի ևս լինիցին նոքա երկու ժողովուրդք, և երկու թագաւորութիւնք„ ․ և իբրև զայն՝ զի ասէ “Փոխանակ զի ասաց ’ի վերայ ձեր թշնամին՝ երկու ժողովուրդք և երկու քաղաքդ այդ իմ են, և ես ժառանգեցից զնոսա„ ։

“Սպանեսցէ զգրաստ իւր զորթոյ„ ․ ’ի ժողովուրդն զթագաւորութիւն իւր ․ կամ յԻսրայէլ զզաւակ իւր՝ վասն կարգին իւրոյ, զի ոչ հատանի իշխանութիւն նորա յորդւոց իւրոց ․ որպէս մի մի յազգաց անտի ’ի ժամանակի իբրև եղեն ’ի նոցանէ դատաւորք ոչ տիրեցին որդիք նորա զկնի նոցա, որպէս և տունն Դաւթի զի տիրեցին ։ “Լուասցէ զպատմուճան իւր ’ի գինի և զհանդերձն իւր յարիւն խաղողոյ„ ․ վասն հարկաց՝ որ ելանէին նմա ’ի ժողովրդենէ անտի ’ի վե-

րայ սեղանոյ նորա . զի գինի և արիւն խաղողոյ պը-տուղ են այգւոյ ։ Եւ զի ասէ "Զուարթագին են աչք իւր , և սպիտակ են ատամունք իւր ". վասն գրգու-թեց փափկութեց , որ են 'ի նմին հարկաց ։

"Յուդայ , զքեզ գոհասցին եղբարք քո ". 'ի վե-րայ տեառն մերոյ , զի 'ի նմանէն ծագեաց . և խոստո-վան լինին և գոհանան զնմանէն հեթանոսք և ժողո-վուրդն , այն իսկ է՝ զի ասէ "Խոստովան եղիցին քեզ ժողովուրդք ած ". Եւ յեբրայեցւոյն դարձեալ 'ի վերայ նորա առաւել եւս կատարի . "Երկրպագեալ , ասէ , քեզ երկրպագեսցեն եղբարք քո . և ձեռք քո 'ի վերայ թիկանց թշնամեաց քոց ". իբրև զայն՝ զի ասէ "Եդից զթշնամիս քո 'ի ներքոյ ոտից քոց "։ "Ամենայն ծունր , ասէ , կրկնեսցի , և ամենայն լեզու խոստովան եղիցի՝ թէ տէր է Յիսուս . զի զամենայն ինչ հնազանդ արար 'ի ներքոյ ոտից նորա "։ Այն իսկ է՝ զի ասէ "Երկիր պագցեն քեզ որդիք հօր քո ". եղբարք տեառն մերոյ՝ որդիքն Յովսէփու , և առա-քեալքն և այլ հեթանոսք ։ "Կորիւն առեւծու Յու-դայ ". զի 'ի նմանէ ծագեաց ։ "Ի սպանութէ , որ-դեակ իմ , ելեր ". այս ինքն խաչին ։ Ասէ "Ոչ թողեր զանձն իմ 'ի դժոխս , և ոչ սրբոյ քում ետուր տեսանել զապականութի "։ "Ի սպանութէ , որդեակ իմ , ելեր ". զի սպան նա զմեղս խաչիւն իւրով , և սպան զմահ յիշ-խանութէ իւրմէ ։ Բարձրասցի , ասէ , աջ քո 'ի վե-րայ թշնամեաց քոց , և ամենայն ատելիք քո սատա-կեսցին . նիստ և բազմեաց 'ի վերայ մահու և սատա-կեսցի . իբրև առեւծ 'ի վերայ կերոյ իւրոյ ։ Եւ զի ասէ "Արդ ո՞վ իցէ որ յարուցանիցէ զնա 'ի նոցանէ ", զի ոչ գոյ պատան բեկման նորա . և "Ո՞վ իցէ , դար-ձեալ , որ յարուցանիցէ զնա " յաթոռոյ արքայու-թե իւրոյ . զի այն՝ որ փոխէ զնա և անցուցանէ , ոչ գոյ . որպէս և Դանիէլ վկայէ . "Տէրութի նորա , ասէ , տէրութի յաւիտենից , և արքայութի նորա ոչ եղծանի "։ Եւ կնքէ Գաբրիէլ . "Տացէ նմա , ասէ , տէր ած զաթոռն Դաւթի , և եղիցի նա թագաւոր 'ի վերայ տանն Յակովբու յաւիտեանս ժամանակաց , և արքայութե նորա վախճան մի լիցի "։

Եւ զի ասէ "Մի պակասեսցէ ազգ թագաւոր ".

իբրեւ զայն՝ զի ասէ “Բղխեսցէ, ասէ, գաւազան յարմատեաց անտի Յեսսեայ”. և մարգարէ դատաւոր, ասէ հեբրայեցի ։ “Մինչեւ եկեսցէ որոյ իւրն է”։ Զի թէպէտ և խափանեցաւ թագաւորութիւն նոցա յաւուրս Ծեդեկիայ, զի ասէ այսպէս. “Գրեցէք զայրս զայս տարագիր անժառանգ անորդի”, սակայն զնա ասաց, այս ինքն զգաւազանն՝ որ յարոյց կանգնեաց զխորանն Դաւթի զանկեալն՝ 'ի ձեռն Զօրաբաբէլի յովնաքեանց, զոր գերեաց Նաբուքոդոնոսոր արքայ. և կոչեցաւ նա իշխան. իբրեւ այն Եզեկիէլին. “Իշխանն, ասէ, որ 'ի միջի ձերում իցէ, բարձցէ բեռն 'ի թիկունս իւր”։ Արդ ոչ պակասեաց նահապետութիւն նոցա 'ի ժամանակին գերութեան նոցա. այլ 'ի ժամանակի իբրեւ իջին նոքա 'ի Բաբելոն, զի խրատեսցին անդ, Յոքոնիա որդւովք իւրովք հանդերձ անդ էր. և Զօրաբաբէլ՝ որ հան զնոսա, և թագաւորեաց 'ի վերայ նոցա ։ Եւ եթէ նեղեցին զնոսա Յոյնք, փոքր մի ժամանակս խափանեցին զնոսա, իբրեւ զաւակն Դաւթի կայր ։ “Արարից ես, ասէ, զիշխանսն Յուդայ իբրեւ ջահս վառեալս ընդ եղէգն. և եղիցի՝ որ տկարն իցէ 'ի նոսա՝ իբրեւ ըզԴաւիթ, և տունն Դաւթի իբրեւ զա̃ծ”։

Բայց դարձեալ. “Մի պակասեսցէ իշխան Յուդայ”. ոչ եթէ վասն թագաւորութեան միայն. յայտնի՝ զի և ոչ մարգարէ. և այլ ևս, զի ահա թագաւորութիւն խափանեալ էր յաւուրց անտի Յակովբու մինչեւ 'ի Դաւիթ. և 'ի Բաբելոն դարձեալ խափանեալ էր. և 'ի Զօրաբաբէլէ մինչեւ 'ի ծնունդն Քրիստոսի այլ բարձ նա զթագաւորութիւն, և ցուցանէ՝ թէ թագաւորութիւն առանց քահանայութեան ոչ օծանի ։ Թէպէտ և յայտնի է՝ թէ ծր ազգ է, սակայն մարգարէ պիտոյ է յասել՝ թէ այս պիտոյ է արքայութեան. քաղաք թագաւորութեան պիտոյ է. 'ի նըմա և տաճար 'ի սպաս պաշտաման, և հանդերձ քահանայութեան ։ Արդ թէպէտ և խափանեցաւ թագաւորութիւն մինչ կանխաւ որպէս և այս օրս, սակայն ոչ կատարեալ որպէս և այս օրս՝ ոչ երբէք ։ Զի յորժամ թագաւորութիւն խափանեալ լինէր, մարգարէութիւն գտեալ լինէր. և յորժամ երկոքին խափա-

նեալ լինէին, քահանայութիւն հաստատուն կայր և տաճարն հանդերձ քաղաքաւն թագաւորութեան. և յորժամ քաղաքն և այլ խափանեալք լինէին, մարգարէութիւն հաստատուն կայր:

Արդ Յակովբ զամենեսին կարգաց թագաւորութի. այս ինքն մի յայսցանէ մի պակասեսցէ մինչև եկեսցէ՝ որոյ իւրն է: Եւ իբրև եկն, թէպէտ և թագաւորութիւն տանն Դաւթի ոչ կայր, քանզի Հերովդէս թելակալ պահապան էր տեղւոյն, սակայն քահանայութիւնն Շմաւոնի հաստատուն կայր, և մարգարէութիւն Յովհաննու, և քաղաքն թագաւորութեան: "Մի, ասէ, այսուհետև պակասեսցէ մինչև եկեսցէ որոյ իւրն է": Իսկ զի նա ինքն է տէր մեր. և զի ասէ "Նա է յոյս հեթանոսաց", այն իսկ է՝ զի ասէ. "Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ամ": Եւ զի ասէ "Կապեսցէ զգրաստ իւր զորթոյ", ըստ բանիցն Զաքարիայ. "Ահաւասիկ, ասէ, թագաւոր քո գայ քեզ հեզ և խոնարհ և հանդարտ է, և հեծեալ է 'ի վերայ գրաստու": Եւ զի յաւել ևս յասել. "Ի վերայ յովանակի իշոյ". զի ցուցցէ՝ եթէ ոչ 'ի ջորի հեծանի յորժամ թագաւորէ, որպէս Սաղովմոնն և այլ թագաւորք: Արդ "Կապեսցէ զգրաստ իւր զորթոյ". այս ինքն 'ի Մարիամ զմարմին իւր, կամ 'ի խաչն զմարմին իւր, կամ 'ի ժողովուրդըն զփրկչականութիւն իւր: "Եւ զյովանակ իշոյն զորթոյն գնդակէ". յաղագս Յուդայ զթագաւորութիւնն իւր:

Այլ "Սպիտակացուսցէ զպատմուճան իւր 'ի գինի. և յարիւն խաղողոյ զհանդերձ իւր". զի և զժուարինք դիւրին են նմա. իբրև զայն՝ զի կաւովն եբաց զաչս կուրին: Արդ "Սպիտակացուսցէ զպատմուճան իւր գինի". այս ինքն զմարմինն իւր, վարագոյրն նորա ասէ, զի նա ինքն է մարմինն իւր: Սպիտակացոյց դարձեալ 'ի գինի խորհրդեան իւրոյ զեկեղեցի իւր, զի նա ինքն է մարմին իւր. քանզի մեք անդամք եմք յանդամոց նորա: Զի եթէ վասն ճըշմարիտ մարմնոյ իւրոյ ասաց, ո՞ւր է այն՝ զի ասէ "Ո՞վ 'ի ձէնջ յանդիմանէ զիս վասն մեղաց". և զի ասէ "Ես յաղթեցի աշխարհի": "Զուարթագին են

աչք իւր իբրև 'ի գինւոյ „ . զի սուրբ իսկ են . "Եւ սպիտակ են ատամունք իւր քան զկաթն„ . Այս առաւօտքն՝ որ ելանեն 'ի միջոյ շրթանց նորա ։ Քանզի Դաւթի սուտ եղև ակն նորա 'ի հայել տեսանելն , և անօրինեցաւ բերան նորա 'ի հրաման տալ հրովարտակին . վասն այսորիկ 'ի վերայ տեառն մերոյ կատարի այս ։ "Սպիտակացուսցէ, ասէ, զպատմուճան իւր 'ի գինի, և զհանդերձ իւր յարիւն խաղողոյ „ . զի 'ի ձեռն Մովսէսի դարձան շրջեցան ջուրքն յարիւն, և բանիւ տեառն մերոյ եղև գինի ։ Վասն այսորիկ երկրորդէ զնա Յակոբ 'ի վերայ Յուդայ . "Լուասցէ, ասէ, զպատմուճան իւր յարիւն, և յարիւն խաղողոյ զհանդերձ իւր „ ։ Եւ որոշեալ մեկնեաց 'ի մէջ արեանն և արեան խաղողոյն . և նորին իսկ տեառն մերոյ են երկոքին , և 'ի վերայ նորա կատարին . զի մարմին նորա լուացաւ արեամբ , և հոգին նորա խառնեաց առաքելոցն նորա յարիւն բաժակին նորոց կտակարանացն , զոր ետ աշակերտացն նորա ։

"Զաբուղոն ծովեզերբ բնակութիւն քեզ , և սահմանք նորա մինչև 'ի Ծայդան „ ։ Բայց հեբրայեցին՝ "Վիճակակիցք նաւաց , և ձկտեսցի մինչև 'ի Ծայդան „ . քանզի 'ի նաւաց անուռ էր կերակուր նոցա ։

"Իսաքար այր հզօր „ ։ Գեդէոն զի արձակ հրեշտակս հրովարտակօք հանդերձ , զի եկեսցեն հասցեն 'ի վերայ մադիանացւոցն ։ Եւ զի ասէ "Ետես զհանգիստ իւր զի գեղեցիկ է , և զերկիր իւր զի պարարտ է „ . զի ետես նա զերկիրն որ հասեալ էր նմա , զի բղխէր զկաթն և զմեղր ։ Ոչ եթէ զի պարարտ էր քան զընկերաց իւրոց , այլ զի ոչ տրտնջեաց նա և ասաց որպէս և այլքն՝ թէ "Երկիր մարդակեր է բնակչաց իւրոց „ . այլ օրհնեաց նա զայն՝ որ ասացն "Զիթենիս , ասէ , զոր ոչ լիցէ տնկեալ քո , և ապարանս զոր ոչ լիցէ քո շինեալ , տաց քեզ „ ։ Եւ ոչ բարձրացաւ նա և մոլորեցաւ , որպէս և նոքայն . այլ հնազանդ եղև նա որպէս և մշակ մի և պանդուխտ տեառն երկրին . "Երկիր , ասէ , ճշմարտութեամբ մի վաճառեսցի , քանզի իմ իսկ է ամենայն „ . որ և հնազանդեցի նմա որպէս տեառն երկրի ։ Բայց հեբրայեցին՝ "Իսաքար իբրև էշ մի , զի լայնեալ հանգուցեալ նստցի 'ի մէջ

տղաւաց . և եսես զՀանգիստ իւր զի գեղեցիկ է, և զերկիր իւր զի պարարտ է, եդ զուս իւր 'ի գործել„, այլովք Համադերձ . այս ինքն զի լաւ Թուեցաւ նմա գործել զերկիր, և ոչ ելանել 'ի մարտ պատերազմի :

“Դան դատեսցէ զժողովուրդ իւր„ . 'ի վերայ Սամփսոնի„ : “Զի ինքն է օձ դարանակալ 'ի վերայ ճանապարհի„ . զի եկն նա և չարչարեաց զփղշտացիսն : Եւ զի ասէ “Ի փախճան փրկութեան մնայ տեառն„ . վասն նորին Սամփսոնի : զի խնդրեաց Ջուր, և ետ նմա Աստուած .

“Գադ ընդ աւազակս եւցէ„ . այնոքիկ՝ որ քառասուն Հազարաւ սպառազէն վառելովք . զի նոքա առաջնորդէր գնացին նոցա Համդերձ Յեշու Նաւեանց : Եւ զի ասէ “Նա եղիցի վերջապահ„ . զի նա ինքն էր առաջնապահ և վերջնապահ . քանզի յառաջագոյն ժառանգեաց նա զերկիրն, և Հարստութիւն դարձեալ առաջնոյն 'ի զօրութՆ վերջնոյն գտեալ լինէր . և 'ի վերայ նորա նախ եկին Հասին պաղեստինացիքն, և Հար սատակեաց զնոսա : Բայց Հեբրայեցի, “Գադ՝ աւազակք աւազակեսցեն զնա„ . 'ի վերայ Նափթեայ . զի եղև Հալածական յեղբարց իւրոց, և արարին զնա Հինահար : Եւ զի ասէ “Ինքն 'ի Հինի եւցէ„ . յետոյ զի կարօտացան նովաւ զօրքն և ածին զնա, և եղև նա դատաւոր . և կործեաց Թափեաց նա զժառանգութիւն իւր յեղբարց անտի իւրոց :

“Ասեր, 'ի պարարտութՆ երկրի իւրոյ . և նա եղիցի Համբարակ Թագաւորաց„ . երկիրն ապամացուոց : “Զի Թացցէ, ասէ, զոտս իւր իւղով„, ասաց Մովսէս : Բայց Հեբրայեցի ասէ . “Աշեր՝ ինքն 'ի պարարտութիւն Հացի, և Համբարակեալ իցէ Թագաւորաց„ :

“Նեփթաղիմ երագ Հրեշտակ„ . բայց Հեբրայեցի՝ եղջերու երագ, բարակ . զի ետ տանել աւետիս բարեաց ամենայն փախստէիցն, և նա դարձեալ կերակրեաց զԻսրայէլ 'ի ժամանակի իբրև եկին նոքա Թագաւորեցուցանել զԴաւիթ : Կամ վասն տկարութՆ նորա, զի էր տկար և վատթար քան զէրէ, կարդաց զնա եղջերու . զի ոչ կամեցաւ նա երթալ

'ի մարտ պատերազմի, մինչև զի չոգաւ Դեբովրա։ Եւ զի ասէ "Որոտայ զխօսս բարուոքս և գեղեցիկս"․ վասն օրհնութեանն զոր օրհնեաց ընդ Դեբովրայիւ հանդերձ։

"Յովսէփ, եղ դու իբրև զանկն շինուածոյ հաստատուն"․ զի օրհնելոց էր նա երկու որդւովքն իւրովք հանդերձ, զի հաստատեալ լինէր նա յաջ և յահեակ։ Զի "Վասն քո, ասէ, խորհուրդ խորհեցան նենգութեան, և ոխացան ընդ քեզ արք աղեղանց"․ կամ վասն բազմութեան նոցա, կամ վասն բանից նոցա, զի սաստկագոյնք էին, սակայն դարձաւ աղեղն նոցա։ Իսկ Յովսէփու զօրութիւն, զի տիրեաց 'ի վերայ նոցա․ այլ լուծան ջիլք բազկաց նորա, զի ոչ սպան զնոսա։ "Քաւ եղիցի ինձ, ասէ, զի ես 'ի ներքոյ երկիւղի Աստուծոյ եմ"․ վասն անուան զօրութեան Յակովբայ։ "Վասն այսորիկ, որդեակ իմ, ինքնին Աստուած հօր քո օգնեսցէ քեզ, զի արարեր դու զողորմութիւն գթութեան 'ի վերայ եղբարց քոց վասն անուան նորա"։ Իսկ այն՝ զի ասէ "Վասն անուան զօրութեանն Յակովբայ", այս ինքն՝ զի անուն հզօրին Յակովբայ կոչեցաւ 'ի վերայ նոցա, և անուն հովուին վիմին Իսրայելի․ զի վէմն այն որ հովուեաց նոցա յանապատի անդ յօթեվանաց յօթեվանս՝ որ տուաւ ազգացն այնոցիկ․ վասն այնորիկ ոչ սպաներ դու զնոսա․ վասն այսորիկ ընկալ դու զամենայն օրհնութիւնս օրինաց՝ որ տուեալ լինին ազգացս այսոցիկ զորս կեցուցեր դու․ և փոխանակ զի կեցուցեր դու զնոսա, եղիցին նոքա քեզ պսակ փառաց։ Եւ յայտ արար՝ թէ թագաւորելոց է նա 'ի վերայ նոցա՝ սպանանել և կեցուցանել․ զի վայելէր իսկ նմա։ Զի զոր օրինակ տիրեաց նա 'ի վերայ նոցա յերկրին եգիպտացւոց իբրու յանցաւորք և վնասակարք էին, և ոչ սպան զնոսա, նոյնպէս կեցուցէ զնոսա յերկրին իւրեանց։

Բայց դարձեալ՝ շինուած հաստատուն, զի հաստատեցաւ նա անդրանկութեամբն և թագաւորութեամբն․ և զոսա կարդաց պարիսպ։ Նա և յերկրին եգիպտացւոց թագաւորեաց 'ի վերայ նոցա․ և վասն այսորիկ հակառակեցին և ոխացան ընդ նմա, և լուծան տկարացան ջիլք բազկաց նորա, զի վաճառեցին զնա՝

փոխանակ Թագաւորելոյ իբրև զծառայ մի. սակայն դարձաւ աղեղն նորա զօրութեամբ : Բան ասաց յետ յառաջ. այլ 'ի ձեռանէ հզօրին Յակովբու դարձաւ. և յանուանէ հովուին վիմի՝ 'ի վերայ Թագաւորութեան ակնարկէ. քանզի հանդերձեալ էր նա Թագաւորել, դարձոյց զաղեղն նորա զի տիրելոց էր : "Օրհնութիւնք հօր քո զօրացան 'ի վերայ օրհնութեանց ծնանելեաց քոց „. կամ զի յաւելան օրհնութիւնքն իմ 'ի վերայ օրհնութեան նոցա. այս ինքն զի առաւել են օրհնութիւնքն զոր օրհնեցի ես զքեզ՝ քան զայն օրհնութիւնս զոր ես օրհնեցայ : Կամ մինչև յոյս բարձանց յաւիտենից : Զլեառնն ամուրհացւոց ած 'ի մէջ յայսմ վայրի, ուր Սահակն պատարագեցաւ. և բարձր է, ասէ, քան զբարձունս որ էին անդ. և բարձունք, ասէ, որ յաւիտենից իմ են, կամ բարձունք յաւիտենից մինչև 'ի դրախտն. իբրև զայն զի ասաց Մովսէս՝ 'ի գլխաւոր լերանէ արևելից : Բայց հեբրայեցի, "Որդի պտղալից այգւոյ, որ արձակեալ է 'ի վերայ ջուրց գնացից, և մածեալ տարածեցաւ 'ի վերայ շինուածոյ. և անց նա ընդ պարիսպ, և ոխացան ընդ նմա արք աղեղանց „. և այլ ևս : Եւ փոխանակ այնր՝ զի ասէ "Մինչև յոյս բարձանց յաւիտենից „, ասէ "Օրհնութիւնք հօր քո զօրացան 'ի վերայ օրհնութեանց ծնանելեաց իմոց „. զի այսմիկ իսկ ցանկացան իշխանքն որ յաւիտենից. այս ինքն 'ի վերայ Եսաւայ ակնարկէ : Եւ զի ասէ "Ի վերայ գլխոյ պսակի եղբարց իւրոց „. ասէ "Ի վերայ գլխոյ ուխտի եղբարց իւրոց „:

"Բենիամին գայլ յափշտակօղ. այգուն կերակուր կերիցէ, և առ երեկս համբար մթերեսցէ, և բաշխեսցէ կերակուր „: Ի ժամանակի իբրև արարին նոքա ժողովուրդ 'ի մէջ Իսրայէլի յետ կոտորածոյ բենիամինեան գնդին, և մնացեալ էին նոքա չորեքհարիւր այր միայն. և յանձն առին նոցա իսրայէլեանքն յօժարել յափշտակել իւրեանց 'ի ժողովրդենէ անտի կուսանս, զի մի կորիցէ ազգն ամենայն : Բայց դարձեալ՝ գայլ յափշտակօղ, վասն ժպրհութեան համարձակութեան նորա՝ որ եղև առ կինն Ղևեայ, և վասն պատերազմին զոր արար ընդ եղբարսն իւր, ասաց ընդ առաւօտս կերիցէ զկերակուր՝ այլովք հան-

դերձ։ Դարձեալ Բենիամին յորժամ լինի առաւօտ, այս ինքն փրկութիւն, որպէս յաւուրսն Սենեքերիմ արքայի, քանզի 'ի տանէ անտի սրբութեն ելանէր փրկութիւն. ելանէր աւար հարկանէր, և առ երեկ՝ այս ինքն հանգստիւ՝ որպէս և ընդ երեկս բաշխէր նա որ զինչ առնոյր աւար։ Կամ փոխանակ զի չոգաւ նա կոտորեաց զամաղեկացիսն, և բաշխեաց զաւար նոցա։ Կամ զի ոչ պահեաց նա զպատուէր հրամանի Մովսիսի կամ Շմուէլի՝ զոր պատուիրեաց վասն ամաղեկացւոցն, կարգաց նա զայլ յափշտակող։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Ի ներքոյ ա̃յ եմ ես", "Քանզի երկիւղած եմ ես յա̃յ"։

"Հանջիք դուք, ասէ, և զիմ ոսկերս ընդ ձեզ". զի որչափ զանձն սուրբ եղեալ էր յայն երկիր 'ի պիղծ, առնէ 'ի վերայ նոցա մ̃ծ խնայութիւն. վասն այսորիկ դարձան նոքա 'ի Բաբելոնէ։ Բայց 'ի ժամանակի իբրև կախեցին նոքա 'ի վերայ խաչափայտին զմարմինն զայն, զի 'ի նմա էր զանձն կենաց հեթանոսաց, գթացաւ նա 'ի վերայ երկրին հեթանոսաց. զի ընկալաւ նա զգանձս զայս։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ "Եդին զնա 'ի Դոմնա 'ի տապանի", այս ինքն 'ի յարկեղ։

ԿԱՏԱՐԵՑԱՒ ԱՐԱՐԱԾՈՑ ԳԻՐՔՍ

ՏԵԱՌՆ

# ԵՓՐԵՄԻ

## ԽՈՐԻՆ ԱՍՈՐԻՈՑ

## ԵԼՔ

### ԳԼՈՒԽ Ա

Փոխանակ այնր՝ զի ասէ "Ամենայն ոգիք, որ ելին յերանաց Յակովբու, եւթանասուն մարդ. եւ Յովսէփ անդէն էր յերկրին Եգիպտացւոց". բայց Հեբրայեցի, "Յովսէփաւ հանդերձ, որ էր յերկրին Եգիպտացւոց": Եւ այն՝ զի ասաց Փարաւոն. թէ "Խորհեսցուք վասն նոցա". այս ինքն հնարեսցուք վասն նոցա: Մանկաբարձքն ապրեցուցին կեցուցին զտղայսն. նա ինքն տոհմ յաւիտենից. "Արարին իւրեանց, ասէ, տունս": "Եղիցի, ասէ, տուն ծառայի քո". այս ինքն զաւակ նորա. եւ "Դատիմ ես, ասէ, զտունն Հեղեայ". այս ինքն զզաւակ նորա: Կամ Իսրայէլացիքն արարին նոցա տունս 'ի ժամանակի իբրեւ երկեան մանկաբարձքն 'ի տեառնէ. քանզի աւերեաց Փարաւոն զտունս նոցա 'ի ժամանակին իբրեւ բարկացաւ 'ի վերայ նոցա: Կամ զի երկեան նոքա 'ի տեառնէ, յայտ արար նոցա տունս. զի նոքա եղիցին երթալ ծնուցանել զեբրայեցիս, որպէս զի կեցուսցեն զամենայն արու մանուկ. եւ ոչ առնէին նոքա յայտ զանձինս իւրեանց թէ երթան: Կամ զի առնուին նոքա յանձն մեռանել, եւ ոչ հեղձուցանել զտղայս, բարի արար նոցա տէր. եւ 'ի ձեռն արու տղայոցն շինեցին նոքա զազգսն իւրեանց զտունն, եւ ոչ

կործանեցին ։ Իբրև զայն՝ զի ասէ Դաւիթ . "Դու ասացեր շինել քեզ տուն „ ։

Փոխանակ այնր՝ զի ասէ "Տեսին զմանուկն զի գեղեցիկ էր, և Թաքուցին զնա „ . երբայեցի ասէ . "Իբրև տեսին զմանուկն շոյտ „ ։ Բայց շոյտ՝ կամ անուն է, կամ բարերար՝ իբրև զփրկիչ . քանզի ակն իսկ ունէին թէ փրկիչ ծնանելոց է նոցա . և յայտնեցաւ, ասէ, մօր նորա թէ սա է ։ Արդ տես դու որչափ քննեցին նոքա . զի ոչ ևս կարացին Թաքուցանել զՄովսէս ։ Արդ տես դու որչափ պահեաց զնոսա ողորմութիւն շնորհաց, զի վեց հարիւր հազար ելին նոքա յերկրէն եգիպտացւոց . "Որչափ նոքա, ասէ, ձնշէին զնոսա, առաւել ևս աճէին բազմանային և զօրանային որդիքն Իսրայէլի „ ։ Հնարս խնդրեաց Փարաւոն, զի որք կենդանիքն իցեն, աշխատութեամբ մաշեսցէ . և որ ծնանելոցն իցեն, սպանցէ հրամանաւ . և ա՛ծ արկ զահ և զերկիւղ իւր 'ի սիրտս մանկաբարձացն, զի մի՛ սպանցեն . և պատրաստեաց բանս 'ի բերան նոցա, զի մարթասցեն պատասխանի տալ թագաւորին ։

"Իսկ զքեզ, ասէ, ո՞վ կացոյց իշխան և դատաւոր 'ի միջի մերում „ ։ Զարհուրեցաւ Մովսէս . և յայտնիկ յայտ արար, զի որում ոչ ակն ունէր թէ գիտիցէ՝ լուաւ նա զբանն . զի այն առաջին որ փրկեցաւն՝ արժանի իսկ էր, զի ոչ եթէ անիրաւութեամբ փրկեաց զնա Մովսէս . բայց նա յայտնեաց լմկերի իւրում սիրով, և նա կշտամբեաց զնա չարութեամբ ։ Իբրև փախեաւ նա դարձեալ 'ի Մադիամ, և ոչ լռեաց դադարեաց նա 'ի ստուգութենէ . խնդրեաց նա զվրէժ զրկեալ աղջկանցն 'ի վերայ ջրհորոյն հովուաց ։

"Նա գնաց, ասէ, Մովսէս զխաշինսն Յաթորնայ . և եկն եւ նա 'ի լեառն ած 'ի Քորէբ ։ Անդ երևեցաւ նմա հրեշտակ տեառն 'ի բոց հրոյ 'ի մէջ մորենւոյ „ ։ Մորենին այն զի ոչ էր պիտանացու՝ լինել 'ի նմանէ պատկեր մեռելոտի աստուածոց, դատ՝ զի նկարեսցէ 'ի նմանէ խորհուրդ ած կենդանւոյ ։ Եւ առաւել ևս . զի տացէ նա մեզ օրինակ, զի խոնարհութեամբ նորա նմանօղք եղիցուք մեք նմա, զի յանարգ մորենւոյ անտի երևեցաւ նա ։ "Եւ յո՞, ասէ, հայեցայց

և բնակեցայց, այլ 'ի հեզս և 'ի խոնարհս »։ Զոր օրինակ. և 'ի Մովսէս՝ զի բնակեցոյց զփառս իւր, վկայեաց նա վասն նորա՝ թէ խոնարհ էր քան զամենայն մարդիկ հանդերձ այլովք արդարովք։ Սոյնպէս և միածին նորա 'ի կուսէ 'ի դստերէ անտի աղքատաց։

Որդ խոստովեցաւ Մովսէս տեսանել զայն տեսիլ սքանչելի. և իբրև բազում խորհուրդս. խորհէր նա երկուցեալ զարհուրեալ, ձայն բարբառոյ եղև նմա 'ի միջոյ հրոյն և ասէ. Մատիր մերձեաց, ասէ; Մովսէս՝ հանեալ 'ի ջուրց, զի ջուրք 'ի հրոյ ոչ երբէք երկնչին։ Զի եթէ մարմնին ոչ այրեցաւ 'ի հրոյ անտի՝ որ լուծեալ էր 'ի նմա, որչափ ևս առաւել քաջալերեալ լինէր որդին ջուրց, և մերձենայր առ նա։ "Կոչեաց, ասէ, զանուն նորա Մովսէս. քանզի 'ի ջրոյ անտի հանի զնա »։ Ահաւասիկ 'ի մանկութենէ քումմէ 'ի խորհուրդ մկրտութեան աւազանին դրոշմեալ ես դու, 'ի հրոյ զխորհուրդ երկնչիս դու։ Այլ ոչ եթէ 'ի հրոյ երկեաւ նա, քանզի և 'ի հուր անդ խորհուրդ Որդւոյ դրոշմեալ էր. "Նա, ասէ, մկրտեսցէ զձեզ 'ի հուր և 'ի Հոգի սուրբ »։ Ի մորենւոյն դարձեալ չարութիւն Իսրայելի նկարեցաւ. զի յայտ արասցէ մեզ թէ որպիսի ժողովուրդ է հերքայեցուց։ Եւ զի ասէ "Ես եմ ած Աբրահամու, ած Սահակայ, ած Յակովբու ». և ոչ ասաց՝ ած Աբրահամու, Սահակայ և Յակովբու. զի նկարեսցէ զխորհուրդն երրորդութեան, և զկատարութիւն անուանն, զի ընթանայ զկնի անձանց։

Իսկ զի ասէ "Լոյծ զկօշիկս քո յոտից քոց ». զի յայտ արասցէ նմա՝ թէ ո՛ր առաջի կայ. և անդ զի գիտասցէ և ծանիցէ Յիսուս որդի Նաւեայ թէ զի՞նչ է պատիւ փառաց այնորիկ՝ որ եկն 'ի թիկունս նորա օգնական լինել նմա։ Բայց դարձեալ՝ լոյծ զկօշիկս քո՝ իբրև զայն է, զոր ետես մարգարէն 'ի ժամանակի իբրև դիմեալ գայր յԵդովմայ. զի խնդրեաց նա 'ի նոցանէ զվրէժ հատուցման որդւոցն Իսրայելի, զի ասէ. "Ի վերայ Եդովմայ լուծից զկօշիկս իմ, և 'ի վերայ փղշտացւոց զաղաղակ բարձից »։ "Հնձան, ասէ, հարկի ես միայն, ձմլեցի ես զնոսա բարկութեամբ իմով,

և կոխեցի ես զնոսա սրտմտութ՟բ իմով »: Եւ նոյն-
պէս և Մովսէսի ասացաւ՝ լոյծ զկօշիկս քո. զի հրե-
ղան հանդերձեալ էր նա հարկանել 'ի մէջ երկրին
եգիպտացւոց, այս ինքն վասն զօրութեանն՝ զոր արար
նա անդ: Քեզ իսկ, ով Մովսէս, այս եղիցի քեզ
նշան՝ զի տեսեր դու զա̃ծ, զի բնակեալ էր 'ի մէջ
հրոյն. այսպէս իցէ ձեզ պաշտել 'ի ձեռն հրոյ զա̃ծ՝
որ բնակեալ է 'ի մէջ հրոյ: «Ես եմ, ասէ, ա̃ծ Աբ-
րահամու, Սահակայ և Յակովբու ». զի լուիցեն որ-
դիքն Աբրահամու՝ որ էին յերկրին եգիպտացւոց.
զի եթէ հարքն նոցա իբրու մեռեալ էին՝ կենդանի
են ինձ, որչափ ես առաւել կենդանի են ինձ այնո-
քիկ՝ որ 'ի նեղութիս իցեն: Եւ եթէ մեռեալքն նո-
ցա իբրև կենդանիք համարեալ են ինձ, զի կենդա-
նութի յարութե̃ նոցա 'ի դժոխոց դիւրին է ինձ,
որչափ ես առաւել դիւրին է ինձ փրկութ̃ նոցա՝ որ
յերկրին Եգիպտացւոց: Յորժամ ելանիցեն նոքա
անտի փրկութ̃բն իմով և կենդանութ̃բ, ամաչեսցեն
մահըն սպանօղ, և Փարաւոն նեղիչ: Վասն այսորիկ
անարգեաց անգոսնեաց Մովսէս զգանձսն եգիպտա-
ցւոց, և փութացեալ ընթացաւ նա առ ոսկերսն
Յովսէփու. զի 'ի նոսա ծածկեալ կայր գանձն կեն-
դանութե̃, որպէս զոսկերսն Եղիշայի:

«Նա, ասէ, ոչ հաւատան ինձ, քանզի ասեն ոչ
երևեցաւ քեզ տէր »: Եւ զի ետես տէր եթէ նշան
խնդրէ, ետ նմա նշան 'ի գաւազանն՝ որ եղև վիշապ.
զի ուսուսցէ զնա թէ չէ խիստ Փարաւոն քան զայս
վիշապ: Եւ ահա արիւն ձեր ոչ է ծածկեալ յայնմա-
նէ որ արար զջուրսն արիւն, և ոչ ժողովուրդ ձեր 'ի
բորոտեալ ձեռանէ անտի. ձեռն քո, ասէ, որ բո-
րոտեցաւ՝ սրբեցաւ 'ի ծոցդ քում: Դա գրէ օրէնս՝
որ սրբեն և պղծեն, ծոց նորա էր պղծիչ և տեղի
սրբութե̃. «Դարձո անդրէն, ասէ, զձեռն քո 'ի ծոց
քո »: Ի միում յանդամի նորա ետ նմա նշան փըր-
կութ̃. քանզի առ մի ժողովուրդ առաքեաց զնա հա-
նել զնոսա յերկրէն եգիպտացւոց: Եւ զի ցուցցէ նմա՝
թէ զոր օրինակ բորոտեցաւ ձեռն նորա և պղծեցաւ,
նոյնպէս և նոքա պղծեցան 'ի կուռսն եգիպտացւոց.
և զոր օրինակ սրբեցաւ ձեռնն նորա յետ պղծելոյն,

սոյնպէս և նոքա սրբեցան յամման և 'ի ծովն ։ Բայց տէր մեր զի փրկիչ էր աշխարհաց ժողովրդեանն և հեթանոսաց, յամենայն մարմին նորա՝ զի մեռաւ վասն մեր՝ տուաւ մեզ նշան փրկութեան. և ոչ եթէ որպէս Մովսէսն զի մի անգամ իւր եղև նա նշան որդւոց ազգի ժողովրդեան իւրոյ, զի յայտ արասցէ՝ եթէ վասն ժողովրդեանն ցոյց նմա զայսպիսի սքանչելիս ։ Ասէ. «Եթէ ոչ հաւատասցեն քեզ առաջին նշանին, հաւատասցեն միւսումն ևս. ապա թէ ոչ հաւատայցեն այդ երկուց նշանաց, առ դու ջուր 'ի գետոյ այտի և հեղ 'ի ցամաքի. և զջուրսն զոր հեղուցուս դու 'ի ցամաքի անդ, եղիցի նա արիւն »։ Եւ այս զի ուսցի նա թէ առաջի աչաց նորա է արիւն տղայոց նոցա՝ զոր հեղձուցին 'ի մէջ ջուրցն. և հաւատասցեն 'ի միտս իւրեանց, զի եթէ 'ի վերայ մեռելոց նոցա փոյթ է նմա, ո՞րչափ ևս առաւել 'ի վերայ նոցա, զի կենդանի են ։

Իսկ իբրև ցարդ չև ևս առեալ էր Մովսիսի յանձն երթալ, ասէ ցնա տէր. «Կապուտ կողոպուտ արասջիր զեգիպտացիսն »։ Դու, ասէ, զայս բարբառ սերմանեսջիր յականջս ժողովրդեանն՝ որ ծառայ են մամոնայի. և տես դու՝ զի հաւատան քեզ ։ Այլ ոչ երկեաւ Մովսէս 'ի Փարաւոնէ, այլ յԻսրայէլէ. «Ահա, ասէ, ոչ լուեն ինձ »։ Մինչև յո՞ր վայր հրաժարեաց նա 'ի նոցանէ, մինչև զի կացցէ հակառակ ընդդէմ ա̃յ. սակայն դիւրին էր հակառակել նմա ընդ ա̃յ, քան հակառակել ընդ Իսրայէլի. լաւ իցէ գլել վէմս. և «Լաւ իցեն, ասէ, հարուածք բարեկամի »։ Թերևս յայսմ վայրի չարախօս եղև Մովսէս զնոցանէ բազում իրօք. զի ոչ ասաց նմա Մովսէս՝ թէ ոչ լուեմ ես քեզ, այլ ասէ. ոչ լուեն ինձ, կակազոտ եմ ես, ասէ ։ Ցայսմիկ, ասէ, փոքր ես դու ։ այլ ահա նովաւ մեծանաս դու. զի եղիցի քեզ մարգարէ խօսօղ, որպէս և ա̃յ ։

Բայց դարձեալ զի հրաժարեաց, քանզի յիշեաց նա զնախանձն Կայենի և զԵսաւայ՝ երկեաւ և նա. վասն այնորիկ ասէ ցնա. «Ահաւասիկ եղբայր քո ելցէ ընդ առաջ քո, տեսցէ զքեզ և ուրախ եղիցի »։ Ոչ եմ ես այր խօսող. կամ բանս միջին ասաց.

«Զի այր մինդրաձայն ծանրախօս եմ ես»․ ոչ կա-
րեմ ես խօսել առաջի խօսող ժողովրդեանն ։ Կամ
զի լուծցի կապանք լեզուի իւրոյ՝ խնդրեաց նա ։
«Եթէ առաքես դու զիս, ոչ եմ ես, ասէ, այր խօ-
սող յերեկուստ և յեռանդուստ»։ Կամ երկեա-
նա ՚ի հեբրայեցւոց անտի, զի սպանեալ էր նորա զձա-
չակս չարչարանաց նոցա յանդիմանին՝ զի ասէ «Միթէ և
զիս սպանանե՞լ կամիցիս դու որպէս և զեգիպտա-
ցին»։ Կամ ՚ի սանէ անտի Փարաւոնի զգուշացեալ
էր նա, զի տեղեկացեալ էր նա և գիտէր զկնճիռն
դառնութեան նոցա ։ Այլ զայս ուսանցուք․ քանզի
նշանք բազումք եղեն աւանդ առ նմա առնել, ծան-
րախօսութի՟ նորա և կապանք լեզուի նորա ոչ արձա-
կեցան․ զի տեղեակ գիտէին զնա եգիպտացիքն․ վասն
այսորիկ «Առաքեա դու, ասէ, յոր ձեռն առաքե-
լոցն ես դու՝ որ կարողն իցէ խօսել», ոչ եմ ես այր
խօսող, այս ինքն համեմատ եգիպտացւոցն։ Վասն այ-
սորիկ «Ահաւասիկ կայ Ահարոն մարգարէ քո»։
«Առաքեա դու, ասէ, ՚ի ձեռն այնորիկ՝ որ առա-
քելոցն ես», այս ինքն զոր հանդերձեալն ես դու ա-
ռաքել․ որ նա ինքն է տէր մեր Յիսուս Քրիստոս ։
Վասն այսորիկ բարկացաւ ՚ի վերայ նորա սրտմտութ՟
տէր, փոխանակ զի խնդրեաց նա զնա տարաժամ ։
Ես, ասէ տէր, ժամուն իւրում պահեցից զնա ։

Այլ զի մի օտարացուսցէ նա զՄովսէս, ոչ փոխե-
ցաւ անուն նորա, և ոչ լուծաւ կապանք լեզուի նո-
րա ։ Յայսմիկ մեծացաւ Մովսէս քան զբազումս,
իբրու մեծ էր նա խրատուն և իմաստութ՟ եգիպ-
տացւոցն, անգոսնեաց և խոնարհեցոյց զիմաստութի՟
գիտութ՟ե իւրոյ վասն սիրոյն ա՟յ իւրոյ․ վասն այնո-
րիկ անուն ա՟յ և դէմ յանդիման․ և վկայ այն, զի
իջին փառքն ա՟յ և նստան ՚ի վերայ երեսաց նորա ։ Եւ
զոր օրինակ ՚ի ժամանակի, իբրև ստեղծաւ Ադամ՝
հնազանդեցան նմա ամենայն գազանք, քանզի ՚ի
նմանութի՟ պատկերի կերպարանաց արարչին իւրոյ
էր, սոյնպէս ՚ի ժամանակի իբրև առաքեաց զՄով-
սէս փրկիչ նոցա, քանզի գիտէր նա թէ աղօթս և
պաղատանս առաջի տեառն իւրոյ փոխանակ ընդ ժո-
ղովրդեան ազգին իւրոյ հանդերձեալ մատուցա-

նել՝ զի ինքն կորիցէ և մի ժողովուրդն ջնջեսցի , վասն այսորիկ և ինքն բարերարն իբրև ետես զխոնարհութիւն հեզութեան նորա , զանուն իւր առանց նախանձու եդ 'ի վերայ նորա : Վասն այսորիկ պաշտեցին զնա արարածք իբրև աղախնայք . զի ծովն առաջի երեսաց նորա իբրև զծառայ մի 'ի սպաս պաշտաման նորա պատրաստեալ էր : Եւ այս են զարմանք , զի բնութիւն որ ոչ ունէր իմաստութիւն , ընկալաւ 'ի ձեռն հրամանի նորա զչարչարանս գիտութեան . և երկինք հնազանդեցան բանի նորա , զի յառաւօտէ մինչև յերեկոյ վեց հարիւր հազարին հաց պատրաստիցէ :

Իսկ զի ասէ "Պատահեաց նմա տէր , և խնդրէր սպանանել զՄովսէս „ , ոչ եթէ վասն թլփատութեան , այլ զի առ նա ընդ իւր զկին իւր և զորդիս իւր , և էջ առնել զնշանս և զարուեստս . զի անտի դարձաւ և մնաց կին նորա որդւովք իւրովք հանդերձ : Արդ դու , ասէ , որ մտանես հանել զորդիս ժողովրդեան քո յերկրէն եգիպտացւոց , առեալ վարեալ զկին քո և զորդիս և մտանե՞ս անդր : Եւ միւս ևս , զի զօրացի նա 'ի սաստէ անտի հրեշտակին . զի յապրելն իւրում 'ի սպառնութենէ անտի հրեշտակին , թեթևացի յաչս իւր այն՝ զի խիթայր նա երթալ առ Փարաւոն , իբրև զայն զՅակովբուն առ Եսաւ : Կամ զի մուծանէր նա զորդիսն իւր՝ անթլփատութիւն՝ 'ի վերայ թլփատութեան , երկմտութիւն անիմաստ ժողովրդեանն . վասն այնորիկ երկեցոյց զնա զի թլփատեսցէ : Զի մատեաւ Ծիփորա , բուռն հար զոտից հրեշտակին , և աղաչեաց զնա և խնդրեաց 'ի նմանէ վասն Մովսիսի , զի ոչ էր թլփատեալ նորա զմանուկն . և իբրև թլփատեաց զմանուկն Ծիփորա , ընկալաւ 'ի նմանէ հրեշտակն զաղօթս նորա , և ետ նմա զՄովսէս պարգև : Փոխանակ արեանն , ասէ , զոր հեղի ես առաջի նորա , ետ զքեզ ինձ փեսայ արեան , ուխտ արեան . զի առ Աբրահամ յորժամ թլփատեաց , ուրախութիւն և ցնծութիւն . և առ մեզ սուգ և տրտմութիւն :

Բայց դարձեալ , զի խնդրեաց հրեշտակն սպանանել զՄովսէս , ետես զնա ստուգութիւն՝ զի յերկրին

եգիպտացւոց նախանձայոյզ եղև Մովսէս, և հար սատակեաց զեգիպտացին. և առ կնին իւր ոչ եղև նախանձախնդիր, զի խափանեաց զուխտն ա՜յ նորա: Արդ եկն սպանանել զնա հրեշտակն քինայոյզ նախանձախնդիր, զի ցուցցէ նմա ո՞վ բարուն և սաստիկ իցէ՝ ընդ հրեշտակն և ընդ այն՝ որ զքեզն արգել. և երկու՝ զի օտար էր նա՝ ոչ. պահեաց նմա ոխս վասն ողորմութեան գթութեան իւրոյ: Եւ զի չորեհարիւր ամ հաւատացին թլփատութեան, սակայն զայս ասասցուք. զի ուսոյց նմա յասել իւրում. ասէ "Ապաշխիր դողջիր. ա՜ծ հարցն մերոց առաքեաց զիս առ ձեզ»: Աստուած, ասէ, Աբրահամու 'ի բերան քո, և հակառակութեան սրբութեան վասն զաւակի քո: Եւ զի ոչ առնոյր յանձն նմա կնին իւր, ցոյց նմա զահ և զերկիւղ, զի ինքն ձեռօք իւրովք թլփատեսցէ զնա, և զի յամենայն ինչ երկիւցէ նա 'ի Մովսիսէ: Եւ դարձեալ քանզի օրէնսդիր նա երթայր լինել, ցոյց նմա՝ թէ որպիսի ահ և երկիւղ մերձ է առ նա, զի զգուշասցի. և զի զգուշասցին դարձեալ 'ի տեսիլն նորա որդիքն Իսրայէլի:

Իսկ զի յայս արասցէ դարձեալ միւսանգամ, զի 'ի ժամէ անտի յայնմանէ՝ յորմէ հետէ խօսեցաւ ընդ նմա ա՜ծ, ոչ մերձեցաւ առ կնին իւր. բայց ինքն կինն ոչ հաւատայր նմա, և դատաստանք էին նոցա վասն այսր: Զի 'ի տան հօր նորա ոչ կարաց Մովսէս ասել ընդ նմա բան ինչ. այլ յօթեվանս ճանապարհին առ ուրն այնորիկ՝ իբրև ոչ կամեցաւ երթալ առ նա յանկողինս նորա, բայց խածնեաց, և վասն անթլփատութեան որդւոյ նորա ասէ այսպէս. Հրամայեաց ա՜ծ՝ թէ կորիցէ անձն անթլփատ յազգէ տոհմէ իւրմէ, և ահաւասիկ յամենայն իմիք եղեր դու ինձ սատանայ: Եւ իբրև ննջեցին նոքա այսու խօսիւք, եկն հրեշտակն տեառն 'ի տեսիլ ահագին, իբրև խնդրէր զվրէժ թլփատութեան. և խնդրէր սպանանել զՄովսէս զորդին Աբրահամու՝ որ գիտէր զուխտն Աբրահամու: Ծիփորա իբրև ետես զայն ամենայն ահ և երկիւղ, արար զերկոսին միանգամայն. թլփատեաց զորդին իւր, և սրբեցաւ արեամբըն իւրով հանդերձ. քանզի դողաց և զարհուրե-

ցաւ նա 'ի շքեղ տեսլենէ հրեշտակին ։ Ասէ Մովսէս ցկին իւր․ դու 'ի հրեշտակէ անտի այդչափ զարհուրեցար տագնապեցար, և արարեր նմա պատիւ․ ես՝ զի տէր հրեշտակաց յայտնեցաւ ինձ 'ի բոց հրոյ, և դարձեալ հանդերձեալ է յայսմ հետէ և անդր յայտնել ինձ, որչափ ես առաւել արժան է ինձ առնել նմա պատիւ և սրբել նմա զանձն իմ ։ Ծիփորա իբրև ետես թէ հրեշտակք և տէր հրեշտակաց յայտնի նոցա և այցելու լինի նոցա, մեծացաւ յաչս Ծիփորայ տեսիլ հրեշտակին առաւել քան զամուսնութի՟ բնութե՟․ և ստուգեցան հաւատարիմ եղեն նմա ամենայն բանքն՝ զոր խօսէր ընդ նմա Մովսէս՝ թէ արդարեւ յայտնեցաւ նմա ա՟ծ ։

Իսկ քանզի 'ի պատճառս թլփատութե՟ եկն հրեշտակն, այսպէս արժան եղև՝ զի 'ի պատճառս թլփատութեան եկեսցէ, թէպէտ և վասն երկոցուն եկն․ և քանզի ետես Ծիփորա զահն և զերկիւղն մեծ, սրբեաց նա և սրբանալ ։ Բայց Դանիէլ խռովեցաւ իբրև ետես զհրեշտակն․ վասն այսորիկ անուանեաց զիրան յանուն թլփատութեան․ փեսայ, ասէ, արեան է ինձ․ իբրև զայն՝ զի ասէ, վէմ օգնութեան՝ և ձոր ողկուզայ ։ Եւ արդ այն փեսայութի՟ որ եղև մեզ յառագաստի անդ՝ այսօր յուխտն թլփատութե՟ հարցն քոց ամուսնանամ ես ընդ քեզ․ և մի՛, ասէ, այսուհետև կոչեսջիր դու ինձ այր անկողնաց, այլ փեսայ սուրբ ուխտին հարց քոց ։ Դարձեալ փեսայ արեան՝ փեսայութի՟ ուրախութե՟․ ուրախութիւն է ինձ, ասէ, զի գնեցի ես արեամբ որդւոյ իմոյ․ քանզի ասաց նմա․ ասէ, ուրախութիւն եղև 'ի տանն Աբրահամու յորժամ թլփատեաց զորդին իւր․ յայսմ, ասէ, խորհրդի հաղորդի մարդ ընդ տոհմ մեր ։ Փեսայութի՟ դարձեալ ամուսնութի՟ է․ յայսմ հետէ, ասէ, գոյ ինձ հաղորդութի՟ ընդ քեզ յայս նշան ուխտի․ խոստովանութի՟ խոստովան եղև նա Մովսէսի․ ՛քանզի յառաջագոյն ոչ հնազանդեցաւ նմա, հաւատարեցից, ասէ, յայսմ ուխտի փոխանակ ամուսնութեան հարսանեաց ։

## ԳԼՈՒԽ Բ

ԱՅԼ զիա՞րդ հաւատացին 'ի Մովսէս յերկրին եգիպտացւոց վասն նշանաց իւրոց ։ Կամ թէ մարգարէք յայտ արարին զնմանէ՝ թէ ահա գալոց է ․ այլ զի սպասէին և ակն ունէին բանին այնմիկ՝ զի ասէ ․ զչորեքհարիւր ամ միայն կայցեն 'ի հնազանդութեան ։ Նախ յառաջագոյն զժողովուրդն հաճեաց և հաւանեցոյց Մովսէս 'ի վիշապ անդր ։ Ոչ , ասէ , խիստ և բուռն իցէ Փարաւոն քան զայս վիշապ ․ և ահաւանիկ արիւնն ձեր ոչ է ծածկեալ յայնմանէ՝ որ արար զջուրսն արիւն , և ոչ ժողովուրդդ ձեր 'ի բորոտեալ ձեռանէ անտի վասն ծերակոյտ ժողովրդեանն ։ Եւ զի լուաւ վասն նշանացն զոր արար Մովսէս առաջի ծերակոյտ ժողովրդեանն , ոչ եւլ ընդ առաջ նորա խստութ̃ ։ “Ընդէ՞ր , ասէ , Մովսէս և Ահարոն , խափանէք դուք զժողովուրդս զայս 'ի գործոյ իւրեանց ” ։

“Ա՛ռ դու , ասէ , զգաւազանդ քո , և ընկեա առաջի Փարաւոնի , և եղիցի վիշապ ” ։ Ջի օձն այն՝ որ եբաց զբերան իւր մինչ կանխաւ , և սփռեաց տարածեաց զչարութիւն իւր 'ի վերայ ամենայն մարդկան , նա եբաց զբերան իւր , և առ կուլ զամենայն չարութիւն կախարդաց ։ Եւ քանզի երկեաւ Մովսէս 'ի Փարաւոնէ , եդ ա̃ծ առաջի նորա երկիւղ մեծաւոր քան զՓարաւոնին ․ զի զգէն նորա արար , զի եղիցի նմա հակառակորդ ․ և դարձաւ եւ նմա իշխանութի 'ի վերայ նորա , որպէս և 'ի վերայ Փարաւոնի ։ Եւ փոխանակ զի խնդրեաց Փարաւոն նշան 'ի Մովսէսէ , և ապա արձակեաց զժողովուրդն , և ասէ “Ո՞վ է տէր , զի լուայց ձայնի նորա ” ։ Արդ նա ինքն կոչեաց զհարուածսն բանիւ խստութ̃ , յասելն իւրում՝ ո՞վ է տէր ․ և զի ասաց՝ թէ “Ոչ գիտեմ զտէր ” , հարկ եղև արարածոցն ցուցանել ընկերին իւրեանց թէ ո՞վ իցէ տէրն հասարակաց ։ Եթէ ոչ գիտես դու՝ թէ ո՞վ է Աստուած , 'ի կախարդաց անտի՝ զոր գիտեմն դու , գիտասջիր դու զայն՝ զոր ոչն գիտես

դու ; "Ձեռն , ասեն , Աստուծոյ է այս ", ։

Նախ յառաջ քան զամենայն հարուածսն ; այն մեծ էր քան զամենայն հարուածսն , ասէ Աստուած ցՓարաւոն 'ի ձայն բարբառոյ . այն զի ասէ . "Զորդի քո անդրանիկ հարկանեմ ", ։ Բայց գործով զվիշապն որ փոքր էր քան զամենայն հարուածս , ցոյց նմա ։ Առ կուլ գաւազանն զգաւազանսն , փոխանակ զի կլցէ մահ զանդրանիկս նոցա . մինն եղև յահ յերկիւղ , և միւսն ևս 'ի պահպանութիւն ։ Արժան իսկ էր նմա 'ի գաւազանաց անտի որ կլան՝ ուսանել վասն անդրանկացն զի մի ընկլցին ։ Նա և երկրորդ հարուածքն ահի երկիւղի էին , զի մեռան դարձեալ ձկունքն փոխանակ անդրանկացն . և զի ոչ հաւանեցան նմա մահուամբ ձկանցն , հաւանեցան մահուամբ անդրանկացն . և փոխանակ այնր՝ զի ոչ ած նա զմր-տաւ , փութապէս վաղվաղակի տագնապաւ վարեաց հան զնոսա յաշխարհէ իւրմէ ։ Սատակեցաւ մի ծնունդ ձկանց , և բղխեաց միւս ևս ծնունդ գորտոց ։ Եւ զի ոչ հաւանեցաւ նա մեռելովքն , ուսաւ կենդանեօքն . "Որդի իմ , ասէ , անդրանիկ Իսրայէլ ", . զի յայտ արասցէ թէ և այլ եղբարք են նորա , այս ինքն հեթանոսք ։ Եւ զի կոչեցաւ ամենայն Իսրայէլ որդի անդրանիկ , խնդրեաց զվրէժ զամենեցունց յանդրանկաց անտի եգիպտացւոց ։

Եւ փոխանակ այնր՝ զի ասէ . Եղիցի արիւն յեգիպտոս 'ի փայտ և 'ի քար . եղիցին ամենայն ջուրք նոցա արիւն , և ջուրք ևս որ կայր յանօթս փայտեղէնս , և յանօթս քարեղէնս . "Հար , ասէ , գաւազանաւդ քո զջուրսդ , և եղիցին արիւն ", ։ Եւ այս են զարմանք , զի 'ի միում վայրի հարկանէր , և ամենայն ջուրքն յարիւն դառնային , և ձկունք ամենայն գետոյն առ հասարակ սատակէին ։ Խորհուրդ մեծ , զի 'ի ձեռն տեառն մերոյ . զի 'ի միում տեղւոջ տնկեաց նա զխաչափայտն իւր , և աշխարհս ամենայն լցաւ 'ի նմանէ , և ամենայն պաշտամունք կռոց խափանեցան յերեսաց ծագելոյ նորա ։ Այլ դարձեալ , զի 'ի սահմանս եգիպտացւոց միայն եղեն ջուրքն արիւն , և այլքն ևս յստակ էին որպէս յաղբերականց իւրեանց ։ Այլ առ օրինակի մեծ է անդ . զի գետն

սրբութ̃ի իւրով՝ ժողովուրդն Իսրայէլի է, և Եգիպտոս օրինակ մեղաց է։ Զոր օրինակ գետն եգիպտացւոց յաղախտականաց իւրոց սուրբ էր, սոյնպէս և Իսրայէլ յԱբրահամէ 'ի հօրէն իւրեանց յստակք և սուրբք էին. և իբրև 'ի բնակութիւն մեղաց եգիպտացւոց մտին նոքա, յարիւն զոհիցն պղծեցան նոքա. որպէս գետն եգիպտացւոց, որ դարձաւ յարիւն։ Որպէս որ և Եսայի յայտնապէս ասաց վասն նոցա. "Զի եթէ եղիցին, ասէ, մեղք ձեր", և այլ ևս։ Եւ որ 'ի դոյն տգեղութեան արեան զազրութեան ներկեալ էին, հարկ եղև որ սրբեսցին 'ի մկրտութեան ջուրցն, և ապա ընկալցին զկերակուրն հոգևոր։ "Ամենեքին, ասէ, 'ի ջուրսն մկրտեցան, և ամենեքեան զկերակուրն հոգևոր կերան, և զըմպելի զհոգևոր արբին"։

Իսկ զի ետես Մովսէս զՓարաւոն՝ թէ խստացաւ սիրտ նորա, զի ետես զգաւազանսն եգիպտացւոց՝ զի եղեն վիշապք, որպէս և գաւազանն նորին Մովսիսի. և զի դարձոյց զջուրսն յարիւն. և իբրև ած 'ի վերայ նոցա զգորտն, ասէ ցնա Փարաւոն. "Աղօթս արարէք վասն իմ, զի 'ի բաց արասցէ յինէն զգորտս։ Ասէ ցնա Մովսէս. Ժամ դիր առ երբ խնդրեսցուք, զի թափիցի գորտդ 'ի քէն և 'ի զօրաց քոց"։ Եւ այս, զի մի կարծիցէ նա՝ թէ իբրու դէպ ինչ կամ պատահար կամ արուեստագիտութեամբն կախարդաց եղև նմա հանդիստ, եդ նմա սահման, զի ցուցցէ նմա թէ հարուածք և բժշկութիւն 'ի ձեռս նորա եկին. սոյնպէս և այլ հարուածքն՝ որ եկին 'ի վերայ նորա, գնէր նա ժամ յասել իւրում. "Առվաղիւ եղիցի նշանս այս"։ Իբր ոք զի ասէ՝ թէ կարող իցես դու օգնել անձին քում, 'ի ձեռն կախարդացն երթայք հնարեցէք և արգելէք՝ զի մի եկեսցէ. կամ խափանեցէք յորժամ եկեսցեն հարուածքն, զոր ածէ Մովսէս 'ի վերայ ձեր։ Թոյլ ետ նոցա կենդանի գործովք, արգել և յամօթ արար մեռեալ մարմնով զկենդանի կախարդսն. տանջեցան կեղովք, և դարձան պատերազմ արարին անդ։

Յետ երից տանջանաց խոստովան եղեն և սուտ։ Յետ երից տանջանաց և մատնացոյց արարին. անդ կարասեաւ իւրեանց, և սուտ անձամբք իւրեանց։

Այլ որպէս և նկարիչք՝ զկերպարանս և զնշմարանս իրացն ցուցանէին կախարդքն . այլ տանջեցան նոքա կեղծիւն, զի կերպարանօք և նշմարանօք 'ի ճըշմարտութենէ զայլս մի մոլորեցուսցեն : Եւ յորժամ խոստովան լինիցին և պարտաւորեսցին, երևեսցի յաղթութիւն ճշմարտութեան՝ իբրև առաքինանայր 'ի մէջ բանից նոցա : Եւ եթէ արասցեն դառնալ և զայս ևս ըստ սովորութեան իւրեանց ընդդէմ Մովսիսի, ահա այնուհետև նկարեցին զյաղթութիւն ճշմարտութեան 'ի մարմինս իւրեանց : Զի եթէ Մովսիսի նմանէին նոքա, ահաւանիկ ինքն Մովսէս հարկանէր զնոսա 'ի խաղաւարտս կեղոյ . և յորժամ խնդրէին նոքա առնել ընդդէմ Մովսիսի, նկարէին դառնալ զգործն նորա 'ի մարմինս իւրեանց . զի գործովն Մովսիսի տանջեցին, և իւրեանց գործով յանդիմանեալ կշտամբեցին : Զի եթէ ընդ Մովսիսի առնէին նոքա, զոր օրինակ հար և չարչարեաց զնոսա Մովսէս, նոյնպէս և նոքա չարչարէին զՄովսէս կեղծիւն : Այլ քանզի ոչ ուսան նոքա յառաջինն զոր արարին, եթէ ընդդէմ անձանց արարին զայն, արար զայս զմի զկեղծս՝ զի ուսցին միանգամայն զերկոսին : Զի եթէ առնիցեն իբրև զնա զկեղծն 'ի մարմինս իւրեանց, տանջեն զանձինս իւրեանց ձեռօք իւրեանց առաջի ամենայն եգիպտացւոցն : Եւ եթէ ուսցին՝ թէ չէր արժան առնել զայս՝ որպէս և նայն, ուսցին եթէ չարաչար գործեցին զոր գործեցինն ընդդէմ առաջնոյն . զի զոր օրինակ այս հարուածք էին մարմնոց նոցա, սոյնպէս և առաջինքն հարուածք էին եղբարցն իւրեանց : Եւ զի ոչ խնայեցին նոքա 'ի վերայ անդամոց իւրեանց՝ չարչարեաց զնոսա 'ի մարմինս իւրեանց, զի գիտասցեն եթէ ցաւս 'ի վերայ ցաւոց յաւելուին բժշկութեան իւրեանց որդւոց ազգին իւրեանց :

Արդ չարչարեաց զչարչարիչսն, զի մի խոստացուցեն զխրատն երկրին եգիպտացւոց, զի մի՛ դառնալ տանջեսցին . "Արարին, ասէ, նոքա որպէս և Մովսէսն„ . և ոչ եթէ ընդդէմ Մովսիսի . վասն այնորիկ ոչ սատակեաց զնոսա այն՝ որ խաւսեաց զնոսա 'ի ձեռն կեղոյն : Արդ ընդ նմին իսկ ընդ Մովսիսի հար-

կամնէին և նոքա ևս զերկիրն եգիպտացւոց. զի կողմն է նա նենգաւոր յայլ բաժանեալ, և ընդ անձն իւր չէ միաբան։ Եւ զի դարձուցանէին զջուրն յարիւն և չարչարէին զերկիրն եգիպտացւոց, զնոյն արիւն ընդդէր ոչ դարձուցանէին ՚ի ջուր և տրտմեցուցանէին զՄովսէս։

Սակայն Փարաւոն իբրև ետես՝ եթէ ոչ են կարող կախարդքն լուծանել արձակել զոր ինչ Մովսէսն կապէր, ՚ի Մովսէս ապաստան լինէր ՚ի նեղութեան իւրում. քանզի տեղեակ էր և գիտէր՝ թէ այն որ հարկանէ, նոյն և բժշկէ։ Բայց նոքա ոչ եթէ արդարև ճշմարիտ փոփոխէին զարարածսն նման Մովսիսի, այլ առ աչօք առնէին և մոլորեցուցանէին զտեսօղս. վասն այսորիկ պատուիրեաց Մովսէս յասել իւրում. ասէ «Մի՛ եղիցի ՚ի միջի քում կախարդ». և այն՝ որ առ աչօք առնիցէ։ Զի եթէ զյայտնին և զդիւրինն երազն Փարաւոնի նոքա ոչ ծանեան, զիա՞րդ կարէին նոքա փոփոխել զարարածս։

Արդ այն զի խոստացաւ Փարաւոն ՚ի սկիզբն հարուածոցն, իբրև զայն իսկ է՝ որ եղև ՚ի կատարած հարուածոց։ Քանզի ոչ չարչարեցին զնա հարուածք գետոյն՝ խոստացաւ նա, զի եթէ էր հաւանեցուցեալ զնա առաջնոյն, խափանեալ լինէին ևս այն՝ որ վասն մերժուց խնդրելոյ ապստամբութեան նորա և զօրացն իւրոց պատրաստեալ էին։ Եւ դարձեալ, զի ՚ի խրատելն նոցա, Իսրայէլ իմաստնասցի. իբրև զայն զի ասէ. անզգամ տանջի և իմաստուն խրատի։ «Ես, ասէ, խոստացուցի զնա հակառակութք, զի ՚ի նմա ցուցից զզօրութիւն իմ»։ Բայց զի ոչ կաղացոյց զազատութիւն նորա, յայտ արար յայնմիկ՝ զի յորժամ ստիպէին ՚ի վերայ նորա հարուածքն, խոստանայր արձակել. իբրև անցանէին հարուածքն, ապստամբ լինէր և դառնայր անդրէն ՚ի նոյն յառաջին յամառութիւն։ Զի այն՝ որ իշխան է փոփոխել զբնութիւնս, զազատութիւն փոփոխել ոչ կամեցաւ վասն ողորմութեան իւրոյ։ Բայց թէպէտ և թոյլ տայ վասն ողորմութեան իւրոյ, սակայն ցուցանէ ընդ ժամանակս ժամանակս զստուգութիւն իւր. զի ՚ի զեղուլ չափոյն մեղաց տանն Նոյի, ջուրքն որ ՚ի բարձանց և ՚ի խորոց՝ որ-

պէս 'ի մէջ երկուց ձեռաց հեղձոյց զնոսա . և 'ի վե-
րայ սոդոմացւոցն հուր տեղեաց . և ամենայն դար 'ի
կարգի իւրում . և վասն խրատու Նաբուքոդոնոսոր
արքայի սիրտ գազանի տուաւ նմա :

Արդ ո՞չ է եպերեալ ստուգութ̃ն նորա . զի եթէ
նա խստացոյց զնա , ընդէ՞ր դատի զնա . “Ես , ասէ ,
խստացուցից զՓարաւոն„ : Յետ եւթն հարուածոց
ասացաւ այս . զի եթէ էր յառաջագոյն ասացեալ
նախ քան զհարուածսն՝ և ապա էր խստացեալ , յայտ
էր թէ նա խստացուցանէր զազատութ̃ն նորա հայ-
հոյել ընդդէմ նորա : Զի եթէ անցին եւթն հա-
րուածքն , և ապա ասաց “Ես խստացուցի զնա„ ,
յայտ եղև՝ զի 'ի պատճառս անփոյթ առնելոյն որ 'ի
նմանէ՝ խստացաւ սիրտ նորա : Զի եթէ յօրէ յա-
ռաջնմէ իբրև խստացաւն , և խնդրեալ էր զվրէժն 'ի
նմանէ , ոչ ևս յաւելոյր նա և այլ ևս հայհոյել :
“Ես , ասէ , խստացուցի զնա„ . այս ինքն զի թոյլ
ետ նմա . յայնմիկ՝ զի լսէր նա աղօթիցն Մովսիսի ,
և անցուցանէր զպարկութ̃ն յերկրէ նորա :

Բայց որ զկնին է այսր՝ նա յայտ առնէ զառա-
ջինն : “Թոյլ ետու ես նմա , ասէ , զի ցուցից 'ի նմա
զզօրութ̃ն իմ և զփառս իմ„ . բայց զօրութ̃ն նորա
վասն սքանչելեաց նորա , և փառք նորա վասն համ-
բերութեան նորա . կամ ես խստացուցի զնա կալ և
հակառակել : Ոչ եթէ նա խստացոյց զնա , զի մի՛
հաւանիցի և առցէ յանձն . այլ զի յայտ արասցէ՝
զի ոչ եթէ հակառակութ̃ք կամ զօրութ̃ք կարօղ եղև
հանդարտել դիմակալ լինել նմա Փարաւոն՝ զի մի՛
արձակեսցէ զժողովուրդն , այլ ոչ կամեցաւ՝ զի վա-
րեսցէ բռնութ̃ք զազատութիւն նորա և զյամառութ
կամս նորա : Զի եթէ ոչ էր ասացեալ գրոց՝ ես խըս-
տացուցի զնա , կարծիք իմն էին՝ թէ իբրև այլով իմն
զօրութ̃ք հակառակեաց և եկաց ընդդէմ ա̃յ . և զի
գիտաց թէ ոչ էր արժանի՝ թէ եղիցի 'ի վերայ նո-
րա ողորմութիւն , արդ “Ես խստացուցի զնա , ասէ ,
զի 'ի նմա ցուցից զզօրութ̃ն իմ և զփառս իմ„ :

Բայց յայտ առնէ , զի այս որ եղեն՝ զի սքանչելիքն
յաճախեսցին , և հեթանոսք լուիցեն և փութա-
ցեալ տագնապեսցին , և ժողովուրդն մխիթարեալ

քաջալերեսցի. զի «Քարոզեսցի, ասէ, անուն իմ ընդ ամենայն երկիր». բայց քարոզեսցի, որպէս զի հաւատալի եղիցի։ Արդ յայտ արար՝ թէ վասն այսորիկ անփոյթ արար և թոյլ ետ նա Փարաւոնի, որպէս զի եղիցին և կախարդքն ևս քարոզք անուան նորա յաղաղակել յասել իւրեանց. «Ձեռն ա՟յ է այս». զի 'ի լսելն հեթանոսաց՝ եթէ ձեռն ա՟յ՝ որ ընդ ժողովրդեանն էր, սատակեաց զկախարդսն. «Լուաք մեք, ասէ, զհամբաւ և զլուր ձեր, և խռովեալ դողացին սիրտք մեր»։

Փոխանակ այնր՝ զի ասէ «Գարին ջովացեալ էր, և կտաւն 'ի ծաղկի էր», հեբրայեցի ասէ. «Գարին հասեալ պարարեալ էր, և կտաւն ընտացեալ էր»։ «Բայց ցորեանն և հաճարն ոչ հարաւ, զի ոչ էր բուսեալ». քանզի անագանավար էին։ Փոխանակ այնր՝ զի ասէ «Հան ա՟ծ հողմ խորշակի, և յարոյց զմարախն», հեբրայեցի «Հողմ յարևելից» ասէ։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ «Մի՛ մնացէ և մի՛ մի եղունգն», հեբրայեցի «Եւ մի՛ կճղակ մի» ասէ։

Բայց դարձեալ ասի. զոր օրինակ զգուշացեալ էր Փարաւոն 'ի ժողովուրդ անդ, և տանջէր չարչարէր զնա. զի ոչ ելանել յերկրէ իւրմէ թոյլ տայր նմա, և ոչ հանգչել 'ի մէջ աշխարհի իւրում տայր նմա։ Սոյնպէս և արար նմա ստուգութիւն, զի զգուշացեալ էր 'ի նմա զի մի՛ տացէ 'ի ձեռս զժողովուրդն. և զի հարկանէր զնա, զի թոյլ տացէ ժողովրդեանն. քանզի մի պատիժ պատուհասի փոքր և սակաւ էր խրատել զՓարաւոն, հար զնոսա տասնհարուածեայ գաւազանաւն, այնոքիկ՝ որ հարիւր հարուածովք ոչ էին կարող հատուցանել զփոխարէնս զոր պարտ էին նոցա վասն նոցա։ Եւ քանզի առաջին հարուածովքն մատաղելով մատաղեցոյց նա զՓարաւոն, որպէս զի կակղասցի նա ընդունել զխրատ նորա։ Ի ժամանակի իբրև արար նա զԱհարոն միջնորդ 'ի մէջ Մովսէսի և Փարաւոնի, որպէս մարգարէ 'ի մէջ ա՟յ և մարդկան. և իբրև սկսաւ նա խօսանալ և գալ, սկսաւ Մովսէս աստուածն Փարաւոնի երևել նշանօք իւրովք։

«Նա ցանեաց, ասէ, Մովսէս զմոխիրն ընդ եր-

կինս 'ի վեր, և եղիցի փոշի երևիլ, ասէ, այս ինքն դալուկն, և հատցի 'ի վերայ ամենայն մարդոյ կեղ, և խաղաւարտք եռացեն ,, ։ Եւ իբրև տեսին կախարդքըն եթէ տանջեցան նոքա 'ի մէջ երկրին եգիպտացւոց, ասեն. "Ձեռն ա̃յ է այս ,, ։ Զի որչափ առաջին հարուածովքն, որչափ և է՛ սաստկացեալ հակառակէին. այլ և յորժամ հայեցեալ երևեցաւ 'ի վերայ նոցա աստուածն եգիպտացւոցն, եկին և ժողովեցան առ միմեանս ահիւ և երկիւղիւ ։ Վասն այսորիկ և Փարաւոն իբրև ետես զնոսա՝ թէ տկարացան լքան ձեռք նորա, և լուծան անկան ջիլք բազկաց նորա 'ի քննութ̃է գործոյն. և զի գիտաց Փարաւոն թէ հաստատեցան կացին 'ի վերայ նորա չարիքն հանել արձակել զորդիսն Յակովբու 'ի ծառայութենէ անտի հնազանդութ̃ե նորա, ցոյց նա Մովսիսի 'ի դէմս ցասման յասել իւրում ցնա. "Այլ մի ևս յաւելցես դու անկանել յակն իմ. զի յաւուր յորում երևեսցիս դու ինձ, նոյն օրին մեռցիս ,, ։ Եւ զի անց նա զսահմանաւ, և ետ վճիռ մահու 'ի վերայ ա̃յն՝ որ տուաւ նմա, սաստակեցան և ամենայն երկիրն եգիպտացւոց. զի անունն ա̃յ որ կոչեցեալ էր 'ի վերայ Մովսիսի, անմահ էր ։ Եւ զի վճիռ մահու ետ 'ի վերայ նորա, յայնժամ եկն եհաս 'ի վերայ նորա պատիժք մահու ։

ԳԼՈՒԽ Գ

"ԱՄԻՍՍ այս եղիցի ձեզ սկիզբն ամսոց ,, . զի 'ի նմա արար ա̃ծ փրկութիւն հեթանոսաց և ժողովրդեան. ժողովրդեանն 'ի ձեռն Մովսիսի, և հեթանոսաց 'ի ձեռն մահուն կենարարին ։ Ի նմա հանգեան աշխատեալքն՝ որ վաստակէին առանց վարձուց. և ազատեցան նոքա 'ի խիստ տէրութ̃է անտի. և 'ի նմա ազատեցան արարածք և բնակիչք նորա 'ի հնազանդութ̃է անտի սատանայի ։ Ի նմա ելին արգելեալքն 'ի հանգիստ, և 'ի նմա զգեցան մերկացեալքն ըզփառս ։ Ի նմա արձակեցան կապեալք յաւերակ գբոյ անտի, և 'ի նմա մեծացան աղքատք և ստացան զոր

ինչ ոչ ունէին ։ Ի նմա հորդեցաւ ճանապարհ յանապատ անդ, և 'ի նմա արձակեցաւ արգելեալ ճանապարհն 'ի դրախտն փափկութեն ։ Ի նմա արգելաւ գառն փրկութեն, և 'ի նմա արգելաւ գառնն ճշմարտութեան 'ի յարգանդ կուսին ։ Ի նմա յաղթեաց լոյս, և 'ի նմա ծագեաց լոյսն մեր ։

Իսկ զի ասէ "Ընդ երեկս զենցեն,,. 'ի մէջ երկուց լուսաւորաց, 'ի մտանել արևու և 'ի ծագել լուսնի. որպէս զի երբ իջէ՝ հասցէ լոյս 'ի լոյս, և մի՛ տիրեսցէ խաւար 'ի մահու անդ նորա ։ Բայց դարձեալ զի ասէ՝ ընդ արևուն մտանել սպանցեն զնա, զի հանդերձեալ էր արևն 'ի մառն դառնալ. զի ժամ նորա 'ի վերայ նորա մարգարէացաւ, իբրև զայն զվրան ժամուն ։ Մտին նոքա յԵգիպտոս իբրև յերկիր խաւարին, և իբրև 'ի խաւարի և 'ի գիշերի բնակեալ էին 'ի նմա. այնպէս և 'ի գիշերի ելին նոքա անտի, որպէս և գրեալ է. ասէ. "Այս գիշեր յառաջագահ պահեստ տեառն,,։ Եւ զի ասէ "Առցեն յարենէ անտի, և նշանեսցեն 'ի վերայ սեմոցն չորեցունց,,. զնշան խաչին դրոշմէ մեզ՝ որ 'ի բարձրութեան և 'ի խոնարհութեան, յաջ և յահեակ ։ Եւ զի ասէ "Խորովեալ հրով,,. խորհուրդ կենդանի հացին զոր առնումք մեք. և զի մի՛ յամիցեն յեփել նորա, և զի բաղարջ կերիցեն, զի յիշեսցեն զչտապ տագնապի իւրեանց. զի ոչ ետուն նոցա թոյլ խմորել զհայսն իւրեանց, զի նկարեսցէ զնշան նորոգութեան եկեղեցւոյ իւրոյ ։ Քանզի թուեաւ տարածեցաւ հին խմորն Եւայի, որ հնացոյց զամենայն. եկն եհաս խորհուրդ բաղարջին, զի նորոգեսցէ զամենայն ։ Եւ զի ասէ "Եղէգ կերիցեն,,. զի յիշեսցեն զդառնութիւն եգիպտացւոցն հնազանդեցուցչացն իւրեանց ։ "Դառնացուցանէին, ասէ, և կեղէին զկեանս նոցա խիստ հնազանդութեամբն,,։ Եւ զի ասէ "Ոսկր ինչ մի՛ թողուցուք,,, զի մի՛ արհամարհեալ եղիցի նա իբրև ընկերակուր ինչ դոյզն և անցաւոր, զի եղիցի քեզ իբրև զզեղ կենաց ։ Եւ զի մի՛ ոք կերիցէ զնա իբրև նստցի, խորհուրդ մարմնոյ նորա սրբոյ. զի եթէ սրովբէք փութացեալ տագնապեալ ահիւ և երկեղիւ կան առաջի նորա, իսկ ո՞վ ուտէր զնա 'ի նստելեաց ։ Եւ զի

ասէ “Գտանէք ընդ մէջ”․ փութապէս , ասէ , որպէս մարդիք պատրաստեալ են ելանել երթալ ճանապարհ , 'ի դրօշմէն նորա զայն՝ զի ասէ “Եղիցին մէջք ձեր պնդեալ”, այլովք հանդերձ ։ Եւ զի ասէ “Ցուպք 'ի ձեռին”․ խաչք իւրեանց 'ի վերայ ուսոց իւրեանց ։ Եւ զի ասէ “Ոսկր մի բեկանիցէք”․ այն իսկ է զի բեկլին զբարձս աւազակացն , և զնորայն ոչ բեկլին ։ Եւ զի ասէ “Անհետք առնիջիք զամենայն խմոր 'ի տանց ձերոց”, այս ինքն զեգիպտացւոց , այն իսկ է՝ զի ասէ “Արտասցուք տօնս մի 'ի խմորս հինս , և մի 'ի խմորս չարութե և անօրէնութեց , այլ յանխմոր ստուգութեց և ողորմութեց և ճշմարտութեց” ։ Եւ “Ամենայն անձն որ կերիցէ հաց 'ի հայոց խմորելոյ , սատակեսցի անձն այն յորդւոց Իսրայէլի 'ի բնակաց և յեկաց”․ հեբրայեցի՝ “Հրէից և 'ի պանդխտաց” ասէ ։

Փրկութե մեծ Իսրայէլի ելքն իւր էին յերկրէն եգիպտացւոց․ և ծանր պարծանք նորա այն են՝ արիւնն որ նշանեցաւ 'ի վերայ դրանց նոցա․ և փակեալ դրամբք իւրեանց՝ ամենայն մարդ 'ի ներքս 'ի տան իւրում քահանայ անձին իւրում լինէր․ և ոչ Ղևի պիտոյ եղև անդ և ոչ Ահարոն , ոչ քահանայութիւն և ոչ պաշտօն և ոչ եւթնօրեայ աշտանակն և այլ պահպանութիւնք օրինացն ։ Եւ եթէ անդ՝ զի խորհուրդ էր՝ այսպիսի կատարումն դրօշմեցաւ անդ , առ ճշմարտութիւն որչափ ևս առաւել․ զի անդ գառն սպանեալ , և աստ մարմին կենդանի ։ Այլ ոչ եթէ գառն մաքեաց զօրագոյն ինչ էր քան զամենայն նշանս , և վասն այնորիկ նովաւ փրկեցաւ ժողովուրդն․ այլ զօրագոյն է նա , զի եղև նա օրինակ հզօրին ։ Սոյնպէս և գաւազանն որ փրկեաց , և փայտըն որ քաղցրացոյց զջուրն դառնութե ; և օձն պղնձի որ բժշկեաց զհարուածս օձիցն ։

Եւ զի մի կարծիցեն՝ թէ ոսկին իրքս այս ընտրեալ և սուրբ են , անիծեալ օձիւն արար սքանչելիս յառաջագոյն առաջի Փարաւոնի ։ Զի նոյն իսկ զայն գաւազան զսուրբն՝ արար օձ անիծեալ , խորհուրդ որքոյն այնորիկ՝ որ առն զմեղս բազմաց յանձն իւր․ զի քննեսցեն և գիտասցեն՝ թէ այս անիծեալ զկարգ

եղև 'ի փրկութիւն, եթէ ոչ խորհուրդ ինչ օրհնելոյ հանդերձեալ էր նա: Զի եթէ էր գնացեալ նորա ոսկւով՝ ասէին, վասն զի պատուական է. և հրով՝ զի ահագին է. այլ գնաց նա 'ի պէտս պիտոյից անխծեալ օձիւն և անարգ մորենւոյն և անքաւաչ գաւամբն, որ զվրէժ անձին իւրոյ ոչ կարէր խնդրել:

Բայց տես դու զքանչելիս, զոր արար Մովսէս հրով և յիւս ահագինս, որ կարէին խնդրել զվրէժ անձանց իւրեանց. և ժողովրդեանն՝ զի խնդրեացէ առցէ զվրէժ՝ ոչ կարաց, մինչև առ խնդրեաց զվրէժ ժողովրդեանն գաւազանն՝ որ զանձին իւրոյ զվրէժ ոչ կարէր խնդրել: Զի այն խոնհարուածեայ գաւազանն զխիստ պարանոցն նորա ոչ խոնարհեցոյց, 'ի սատակել անդրանկացն իւրեանց լուծան լքան ձեռք նորա, զի Իսրայէլ ապրեսցէ, և ա՟ծ բարձրասցի: Զի զոր օրինակ նեղեաց զկախարդսն նորա խորհուրդ խաչին խոստովան լինել նոցա յասել իւրեանց՝ թէ «Ձեռն ա՟յ է», նոյնպէս հնազանդեցաւ և նա 'ի զենուլ անդ գառինն, որ նկարէր զխորհուրդ կատարեալ լրմանն. զի զԻսրայէլ անդրանիկ ազատեսցէ 'ի հնազանդութ՟է անտի ծառայութ՟ե նորա: Այլ ոչ սրբեցաւ Եգիպտոս տասն նշանօքն, մինչև զի գառն զենաւ. զոր օրինակ և ոչ Ադամ փրկեցաւ քարոզութ՟քն մարգարէիցն, մինչև զի գառն ճշմարտութ՟ե 'ի վերայ խաչափայտին կախեցաւ:

«Որդիքն Իսրայէլի արարին, ասէ, ըստ բանիցն Մովսիսի, և խնդրեցին նոքա յեգիպտացւոց անտի զհանդերձս զարդու զզարդ ոսկւոյ և զզարդ արծաթոյ. և կապուտ կողոպուտ արարին նոքա զեգիպտացիսն»: Զի եթէ այս կամք էին ա՟յ, նախ Մովսիսի իսկ արժան էր կողոպտել յափշտակել զեգիպտացիսն. այլ Մովսէս՝ զի ոչ ծառայեաց և աշխատեցաւ յաղիւսարկի անդ, վարձս կողոպտոյ նա ոչ առ. բայց առ նա զոսկերսն Յովսէփու, զի յամօթ արասցէն հաւատքն մեռելոյն զթերահաւատութիւնն կենդանեաց. զի մեռեալն փութայր մտանել յայն երկիր պարգևաց, և կենդանիքն փութային փախչել յերկրէ անտի պարգևաց: Արդ առ նա զոսկերսն Յովսէփու, զի երդմնեցոյց զնոսա. և կշտամբեաց

նոքօք զորդի ազգի ժողովրդեան իւրոյ, որ պոռնկեցան ընդ դստերսն մադիանացւոց ։

Զգուշացեալ էր ա̃ծ ՚ի միտս ժողովրդեանն. վասն այսորիկ որչափ զեգիպտացիսն տանջէր և չարչարէր, նոցա թշնամութի̃ յաճախէր առ հեբրայեցիսն. և որքան թշնամութի̃ն արտաքոյ յաճախէր և բազմանայր, խէթ և խիղճ ՚ի ներքոյ սաստկացեալ զօրանայր ։ Այլ քանզի ոչ էր բաւական այս միայն՝ զի նեղեսցէ զնոսա ելանել, դարձաւ եւ զնոսա յողորմութի̃, զի ևս քան զևս սաստկացեալ զօրասցի թըշնամութի̃ն. զի կապուտ կողոպուտ առնեն զսքանչելի զանձսն եգիպտացւոց և ելանեն ։ Զի թէպէտ և վասն երկիւղի ոչ ելցեն, սակայն գոնեայ վասն ձրի զանձուցն հարկ լիցի նոցա ելանել. վասն այսորիկ դարձեալ միւսանգամ անդրէն յերկիրն եգիպտացւոց մի մտցեն ։ Կամ վասն զի սիրէին, զի ըմբոշխնեսցեն զոր ինչ առինն. կամ վասն զի երկնչէին, զի մի տուժիցին զոր ինչ բարձին անտի, վիհ մեծ արար ա̃ծ ՚ի մէջ իսրայէլացւոցն և ՚ի մէջ եգիպտացւոցն ։ Թէպէտ և նոքա զվարձս վաստակոց իւրեանց և զգինս կենաց որդւոց իւրեանց առին և ելին արդարութ̃բ, սակայն զայն զոր խնդրեցինն և առին ՚ի զարդու՝ գողութ̃ի եղև նոցա. և այնոքիկ որ ետուն ՚ի զարդու, դարձաւ եղև նոցա խաբէութի̃ ։ Արդ այն՝ որ արար զխաբէութիւն, փախչելով փութայր փախչել. և այն՝ որ ծաղրն եղև, սպառնութի̃ն մերձ էր ՚ի բերան նորա ։

Արդ որչափ և փախուստն ժողովրդեանն հեռանայր, սպառնութի̃ եգիպտացւոցն զօրանայր. արդ ՚ի մէջ փախստեանն և սպառնութե̃ն արար ա̃ծ վիհ ՚ի մէջ իսրայէլացւոցն և եգիպտացւոցն, լինել օգնական անապատն անապատու̃ք իւրով, և ծովն խղճիւ իւրով, ծարաւն նեղութ̃բ իւրով. միանաւանդ ծովն պարիսպ՝ տալ տեղի առաջի երեսաց նորա ոչ առնոյր յանձն ։ Եւ այս ամենայն ոչ եթէ զի մի եկեսցէ եգիպտոս զկնի նոցա, այլ զի նոքա մի դարձցին անդրէն յեգիպտոս ։ Բայց իբրև տեսին՝ թէ ոչ կարեն մարմինք նոցա հատանել անցանել զայս ամենայն պարիսպս ամրացեալս, և դառնալ միւսանգամ յե-

գիպտոս, փոխանակ ընդ մարմնոյ նոցա՝ դարձան սիրտք իւրեանց: Զի գիտակ և խելամուտ էին այսմիկ, զի եթէ դառնային, ածն այն՝ որ իբրև զբարեկամս գիտաց զնոսա, յանցանել անդ նոցա՝ իբրև զթշնամիս ճանաչէր զնոսա, թէ դառնայցեն: Արդ իբրև ետես Մովսէս՝ թէ զօրագոյն է զէնն զոր ետ ածութեն, և կարօղ է բռնութեն Փարաւոնի հնազանդել նովաւ, և խստութեն Իսրայելի զի կակղասցի նովաւ, դարձաւ նա տեսանել թէ իցէ պատերազմող զօրագոյն քան զնա, զի զգեցցի նա զզէնն նորա:

Այլ յայսմիկ՝ զի ասէ “Առաքեա դու յոյր ձեռն առաքելոց ես,,. զի լաւ թուէր Մովսիսի՝ փոխանակ թէ ինքն եղիցի փրկիչ, թէ այնու որ զօրագոյն իցէ քան զնա՝ փրկեսցի ժողովուրդն. որպէս զի եղիցի փըրկութին կատարեալ այնմիկ՝ որ նեղեցաւ նեղութե կատարեալ: Սակայն ած՝ ոչ եթէ զօրութե զօրաւորաց տուեալ լինի յաղթութե նորա, այլ տկարութեամբ տկարաց քարոզի առաքինութե նորա. զի ոչ եթէ պատուական ամանովք արքունեացն ած զդեղ կենաց, զի մի թողուցուն ընկօղքն զըմպելին և զարմասցին ընդ անօթմն. և ոչ եթէ կշռաւոր մեծամեծ արամբք ցուցանէ զփրկութիւն իւր, զի մի թողուցուն զյաղթութե և զարմասցին ընդ երկարս հասակաց: Այլ ետ պտուղ կենարար յանարգ արմատոյ, զի երկպատիկ յաճախեսցեն բազմասցին փառք նորա, թէ որպիսի մեծութիւն յորպիսւոյ գանձուց, և որպիսի սքանչելի յորպիսւոյ տկարութենէ: Զի թագաւորաց յորժամ փառաւորեալ լինին հրեշտակք իւրեանց, նոքին իսկ թագաւորքն մեծացեալ բարձրանան նոքօք. այլ ած զնոյն իսկ զայն զոր առաքէն՝ կամի մեծացուցանել, և ընդ նմա և 'ի ձեռն նորա և զայնոսիկ ևս՝ առ որս առաքի նա:

Արդ եթէ տկար ես դու, ո՛վ Մովսէս, ահա տկարութիդ քո մեծացուցանէ զքեզ, և զժողովուրդդ քո և զթշնամիս քո զարմացուցանէ. զի ածն քո փառաւորեալ գովէ՝ զի դու մեծացեալ բարձրանաս: Զի կակազոտ ծանրախօսն՝ որ ոչ կարէր խօսել զճշմարտութե առաքչի իւրոյ, խօսեցան նշանքն և սքանչելիքն փոխանակ ընդ նորա զփրկութիւնն՝ որ

առաքեցաւ 'ի ձեռն նորա ։ Եւ իբրև լեզուն թոթով 'ի բերան նորա, խօսէր գաւազանն լռութբ՝ զոր ունէր 'ի ձեռին իւրում. զի յորժամ լեզուն նորա հատկոտոր էր ձայնիւ, գաւազան նորա մեծ էր գործով. զի թէև բերանոյ Ահարոնի էր, բայց զգործ բանին գաւազանն ցուցանէր ։ Զի յորժամ արուեստագիտութի բանիցն պատերազմէր, լեզուն Ահարոնի պարտաւորէր զնա. և յորժամ թերահաւատութին մարտնչէր, գաւազանն նշանօքն կշտամբէր զնա ։

Սակայն զնոյն իսկ զգաւազանն յերկրէն եգիպտացւոց Ահարոն ունէր 'ի ձեռին. որպէս զի եղիցի որոշեալ մեկնեալ և զատեալ պատիւ փառաց այնորիկ՝ որ զգեցեալ էր զզէնն, քան զայն՝ որ բարձեալ ունէր զզէնն. զի Ահարոն՝ մարգարէ էր Մովսէսի և կապարճակիր ։ Եւ այս են զարմանք սքանչելեաց, զի ամենայն պատերազմօղք յորժամ զգեցեալ են զզէնս իւրեանց՝ պատերազմին. բայց Մովսէս յորժամ այլք բարձեալ ունէին զզէնն նորա՝ մարտնչէր. այլ ոչ եթէ նա մարտնչէր, այլ զէնն մարտնչէր ընդ նորա. որպէս զի յայտնի եղիցի՝ թէ որչափ ինչ պատուական էր Մովսէս, զի եղբայրն նորա խօսէր ընդ նորա, և գաւազանն նորա մարտնչէր ընդ նորա ։ Այն՝ զի ասաց "Առաքեաց յայլ ձեռն առաքելոց ես դու„. և այսպէս կարծեաց նա՝ թէ արք հզօրք պիտոյ իցեն այ. ուսոյց նմա՝ թէ և ոչ զայս՝ զոր կարէր Մովսէս առնել, ետ նմա առնել ։ Զի ամբառնալն զգաւազանն իւր և հարկանել, և առնուլ հող և ցանել ընդ երկինս կարող էր նա ։ Թէպէտ և կարող էր, և ոչ որովք կարողս էր՝ աշխատ ինչ արար զնա. զի յայտ արասցէ նմա՝ թէ ինքնին իսկ քնարն յանձնէ իւրմէ երգեաց աղեօք իւրովք փրկութի իսրայելացւոց ։

Այլ քանզի և ոչ եթէ ամօթ ինչ էր նմա բառնալ զխորհուրդս տեառն իւրոյ, յետ ելից նոցա յերկրէն եգիպտացւոց Ահարոն այլ 'ի գաւազանն ոչ մերձեցաւ. որպէս զի յայտնի եղիցի՝ թէ 'ի զարդ երկուց եղբարցն տուաւ գաւազանն՝ խորհուրդ խաչին և փայտին միածնին ։ Այլ բարձեալ ունէր զնա Ահարոն յերկրին եգիպտացւոց, զի ծանիցեն եգիպտացիքն՝ թէ որչափ պատուական է Մովսէս քան զԱ-

հարոն ։ Բայց բարձեալ ունէր զնա Մովսէս յանա-
պատի անդ, զի գիտասցէ Իսրայէլ՝ թէ որչափ պա-
տուական է որդի քան զծառայ ։ Զի եթէ Ահարոն
յերկրին եգիպտացւոց․ իբրև հրամանաւ Մովսէսի
զնայր՝ մեծացեալ բարձրանայր նշանօքն զոր առ-
նէր, որչափ և առաւել բարձրացեալ մեծանայր
Մովսէս, զի զնշան որդւոյ բարձեալ ունէր ։ Արդ ոչ
հար Մովսէս նովաւ զգետն փոքր յերկրին եգիպ-
տացւոց, զի հանդերձեալ էր նա հարկանել նովաւ
զծովն մեծ․ և ոչ համբարձ զնա 'ի վերայ ջրշեղջաց
և ջրժողովից, զի հանդերձեալ էր նա համբառնալ
զնա 'ի վերայ վիմին, զի բղխեսցէ գետս ։

Արդ տես դու, զի ա՟ծ մեծով յայսցանէ՝ զոր և խօ-
սեցաւ Մովսէս, ոչ բարկացաւ․ բայց յայնժամ զի ա-
սաց՝ թէ "Առաքեաց յոյր ձեռն առաքելոցն ես„․
զի զզօրութիւն զոր ընտրեաց Մովսէս, տկարութիւն
զա՟յ ցուցանէր ։ Զի եթէ հզօրոք կարող է ա՟ծ փըր-
կել, ով Մովսէս, դու զիա՞րդ տեսեր զմորենին որ-
կար, զի ոչ այրէր 'ի սուրբ հրոյ անտի ։ Այլ այն՝ որ
ես մորենւոյն զի մի՛ վնասիցի 'ի հրոյ անտի, մեծա-
ցի և փառաւորեցի քան զամենայն ծառս փառա-
ւորեալս, նա ես և քեզ, զի այսու առաքինու-
թեամբ մեծասցիս և փառաւորեսցիս քան զամենայն
ընդդակազմ հզօրս ։ Եւ ընդէ՞ր բարկացաւ 'ի վերայ
նորա ա՟ծ ։ Այլ մինչև առաքեալ էր ա՟յ զծանրա-
խօսն վասն փրկութե՟, ետ նմա օրինակ 'ի լուռ մո-
րենին, զի ոչ վնասեալ լինէր նա 'ի խօսուն հրոյ ան-
տի ։ Զի զոր օրինակ հաղորդ եղև մորենին ըստ սի-
րոյ հրոյն՝ զի արար զնա հաղորդ զօրութե՟ իւրում,
այնպէս հաղորդեաց զնա ընդ ինքն աստուածութե՟ն
'ի մէջ մորենւոյն զայն՝ զոր ասաց արտաքոյ քան ըզ-
մորենին․ "Առաքեաց յորս ձեռն առաքելոցն ես„ ։
Եւ այս յետ բազում նշանացն՝ զոր ցոյց նմա, ասաց
"Առաքեա յոր ձեռն առաքելոցն ես„ ։ Արդ յայտ
արար նմա, զի ոչ եթէ նովաւ ինչ կարօտեալ էր
ա՟ծ; այլ զի ինքն Մովսէս մեծասցի, և եղիցի նա
ա՟ծ՝ այն որ բնութե՟ իւրով ոչ էր ա՟ծ․ այս է ա՟ծ
մեր՝ որ նեղէ սիրովն իւրով զմահկանացուս, զի ե-
ղիցին ա՟ծք ։

Զար թուեցաւ նմա վասն Մովսիսի, զի ոչ կամեցաւ իջանել լինել ա̃ծ 'ի վերայ Փարաւոնի. և ոչ վասն Մովսէսի բարեկամի միայն, այլ և վասն Փարաւոնի թշնամւոյ. զի 'ի տեսանելն Փարաւոնի թէ որպիսի սքանչելիս կարող են հաւատք գործել, հաւատասցէ նա՝ թէ կարող է ողորմութի բարերարին քաւել և արդարացուցանել զբազում չարիսն նորա: Բայց Մովսէս պաշտելով պաշտէր, այլ Իսրայէլ պաշտելով պաշտեցաւ. զի 'ի կարծել մեծամեծացն՝ թէ պատուականք իցեն, ծանիցեն և գիտասցեն կրտսերքն [1], թէ ինքեանք են պատուականք, այս է Մովսէս՝ Ճրագ օրինակ Լուսաւորին մերոյ՝ որ պաշտեաց յերկրին եգիպտացւոց զխաւարեալ տեղին. զի յայտ արասցէ վասն լուսոյն՝ որ հալածեաց զխաւարն մեր 'ի մէնջ. այս է Մովսէս՝ որ բանիւ առանց աշխատութե մեծամեծ սքանչելիս որպէս զա̃ծ առնէր, այն որ յառաջագոյն զփոքր նշանս առանց աշխատութե առնել ոչ կարէր: Զի իշխանութի ունէր ձայն բարբառոյ իւրոյ լուծանել զառաջին նշանսն, զի անցցեն. և կոչէր զվերջին նշանսն, զի եկեսցեն: Զի զառաջինսն ողորմութբ սահմանէր վասն խոստանալոյն Փարաւոնի, և զվերջինսն արդարութբ ածէր վասն զրկելոյն Փարաւոնի:

Այլ այս՝ որ յաղթեաց ամենայն եգիպտացւոց, յաղթահարեցաւ նա վասն թերահաւատութե [2] իւրոյ 'ի վերայ ծովուն: Այլ ստոյգն իբրև ետես զԱստուածն Փարաւոնի՝ թէ երկեաւ նա յերեսաց Փարաւոնի, յանդիմանեաց զնա՝ թէ ա̃յ 'ի մարդկանէ երկնչել չէր արժան: Զի՞, ասէ, անկեալ կաս դու հզօրդ առաջի տկարի. արի և արկ ամա 'ի ծով զդա և զամենայն զօրս դորա, զի ծանիցէ եթէ որչափ յոյժ բազում է զօրութի պաշտամանն քան զզօրութի մարդոյն: Արդ համբարձ դու զձեռն քո 'ի վերայ ծովուդ իբրև զա̃ծ: Իսկ արդ դու երբ համբարձեր զձեռն քո 'ի վերայ արարածոց, և ոչ տագնապեալ փութացան յերեսաց զինուդ՝ որ 'ի ձեռին քո: Զի գրեցաւ նմին Փարաւոնի անուն ա̃յ տասն

1 Յօրինակին կրտսերն:

2 Յօրինակին թերահաւատութեան:

Հարուածովքն, որպէս և տասն նշանօքն, զի նոքօք կոչեսցէ և ծանիցէ զայն՝ զոր ոչն ճանաչէր ։ Խրատեաց զնա Մովսէս իբրև զվարդապետ մի քաջ. և զի ոչ կամեցաւ ընդունել զվարդապետութիւն Մովսիսի, առ ընկալաւ զնա ծովն ; և խրատեաց զնա 'ի մէջ ալեաց իւրոց ։ “Փախիցուք, ասեն, յերեսաց Իրայէլացւոցն, զի տէր ինքնին ետ պատերազմ ընդ զօրսն Եգիպտացւոց„ ։ Արդ տես դու, զի այն ինչ որ եղև յերկիրն Եգիպտացւոց, անդէն յԵգիպտոս ոչ ծանեան, մինչև եկին ուսան զայն 'ի մէջ ծովուն ։ Բայց Հեբրայեցի ասէ. “Փախիցուք յերեսաց Իրայէլացւոց, զի այս այն տէր է՝ որ արար մարտ պատերազմի փոխանակ նոցա յերկրին Եգիպտացւոց„ ։ Արդ 'ի սպանանել և արու մանկանցն՝ որդիքն Իրայէլի ոչ սպառեցան, և Մովսէս ոչ սպանաւ ։ Սոյնպէս և 'ի Քրիստոսին ոչ եսպան զարու մանկունսըն, զի էգ մանկունքն եղիցին ստացուածք նորա. և ոչ գիտէր եթէ 'ի նոսա ծածկեալ էին անդակազմ նահատակքն, որ հարին վանեցին զնա. զի թէպէտ և զպտուղն ապականէր նա, սակայն ակամայ կամօք պահապան լինէր արմատոցն նորա. և ստուգութիւն համբարձաւ վրէժ խնդրել 'ի նոցանէ ։ Եւ 'ի ժամ առաւօտու, զի 'ի նմա թագաւորէ լոյս՝ և գործք նորա 'ի վերայ խաւարի, զգայլն ժպրհութիւն իւր եթող զնա, և զաւազանաւն [1] խաղաղութեան եղև կործանումն նորա. և զժանիսն նորա զչարչարիչս խըզեաց ընկէց ստուգութիւն, և 'ի խզելն նոցա ճաշակեցոյց նմա զչարչարանսն, զի ամենայնի ճաշակեցուցանէր նա զչարչարանսն ։ Ոչ մնաց մնացորդ յազգէ նորա, և ոչ ապրեալ զերծեալ 'ի տոհմէ նորա. 'ի վերայ ամենայնի ամբարտաւանեաց նա մեղանչել, և առ յամենեցունց ելանէր հեծութիւն վասն նորա. վասն այսորիկ յամենայն տեղիս արկ կործանեաց զնա աջն ։ Ուրախ եղեն թելակալք ընդ լռութի, և խոստովան եղեն հովիւք ընդ կերակրչութիւն. և 'ի դիպել այսր ամենայնի, հաւատք 'ի հովուաց անտի ոչ գտան զրկեալ. փոխանակ զի խորհեցաւ նա հինգ

1 Յօրինակին գաւազան ։

չարչարանս 'ի վերայ ժողովրդեանն, մինչև եկն եհաս 'ի վերայ տասնհարուածեան յաստուծմնն. և ընդ միոյ երկու հատուցաւ նմա: Եւ որդիք ազգի ժողովըրդեան իւրոյ, զի զլացան զրկեցին զվարձս աղիւսարկինն, թօթափեցան 'ի գանձից իւրեանց. կամ զի մի դարձցին նոքա անդրէն յերկիրն եգիպտացւոց, զօրացոյց զնոսա կապուտ կողոպուտ առնել զստացուածս նոցա. կամ զի հանդերձեալ էր հանել առնուլ 'ի նոցանէ զկեանս նոցա, հան առ նախ յառաջագոյն զստացուածս նոցա: Ապրեալք 'ի ջուրց անտի ընկղմեցին զեգիպտոս՝ որ ընկղմէր զտղայսն. և զերծեալքն յառեւծուց անտի, սպանին զՆաբուգադոնոսոր առեւծ:

Յետ երկերիւր հնգետասան ամի ելին նոքա յերկրէն եգիպտացւոց: Իսկ արդ ո՞ւր է այն՝ զի ասէ չորեքհարիւր. այս ինքն յորէ անտի՝ յորմէ հետէ ասացաւ բանն. ասէ "Պանդուխտք եղիցին,,: Նա և եղեն իսկ նոքա. իբրև զայն՝ զի ասէ "Եղին նոքա 'ի թիւ սակաւք նուազք և պանդուխտք 'ի նմա,,: Եւ զերեսուն ամն աւելի զոր ասաց Առաքեալ, զի 'ի ժամանակի իբրև կատարեցան չորեքհարիւր ամն՝ առաքեցաւ Մովսէս փրկել զնոսա: Եւ իբրև ետ նա զնշան փրկութեն Իսրայելի, և զօրինակ ընկղմելոյն եգիպտացւոց՝ որպէս և Ստեփաննոս ինքնին վկայեաց, ոչ՝ ընկալան, ասէ, զառաքելութի նորա, և հալածեցին զնա. վասն այսորիկ յամեցին նոքա անդէն զայն զերեսուն ամ:

Եւ առաջնորդեաց Ած Իսրայելի ընդ անապատ կողմն, զի մի նեղեսցէ տրտմեցուսցէ զհեթանոսս յանցանելն նոցա ընդ աշխարհ նոցա. և նոքա ոչ ուղղեցին զսիրտս իւրեանց 'ի գործ պաշտաման նորա: "Իբրև ետես, ասէ, Իսրայէլ զձեռն բարձր և զբազուկ հզօր՝ զոր արար 'ի վերայ նորա, և զի սատակեցան եգիպտացիքն, յայնժամ հաւատացին 'ի տէր և 'ի Մովսէս ծառայ նորա,,: "Յայնմ ժամանակի, ասէ, Մովսէս և որդիքն Իսրայելի օրհնեցին զԱստուած զօրհնութիւնս զայս, և մատեան յասել,,: Զի 'ի ժամանակի իբրև զօրացան խորհուրդք նոցա, և իբրև 'ի կաթ մի 'ի հոգւոյն սրբոյ հա-

ղորդեցան նոքա, խոստովան եղեն և ասեն. "Ո՞վ է իբրև զքեզ տէր"։ այլովք հանդերձ. այս ինքն ընդդէմ Փարաւոնի՝ զի ասաց, ասէ "Ոչ գիտեմ զտէր"։ Ի նախատել իւրեանց զնա, ասեն. "Սա է իմ ա͞ծ, և փառաւոր արարից զսա"։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Ածցես զնոսա և տնկեսցես զնոսա 'ի լեառն ժառանգութ͞ե քո, 'ի պատրաստութ իւն բնակութ͞ե քո. արարեր դու, տէր, զսրբու͞ի քո. տէր պատրաստեաց զնա ձեռօք իւրովք", հերքայեցի ասէ. "Տարցես զնա, և տնկեսցես զնոսա 'ի լեառն ժառանգութ͞ե քո և 'ի տեղի պատրաստութ͞ե, զոր պատրաստեցեր, տէր, սրբութ͞ք. զոր պատրաստեցին ձեռք քո"։

## ԳԼՈՒԽ Դ

"Եւ եկն, ասէ, Իսրայէլ 'ի Մառաթ. և սկսան տրտնջել"։ Եւ զի յայտ արասցէ՝ զի ոչ եթէ վասն ջուրց տրտմեցան նոքա, այլ զի հեռացան նոքա յերկրէ անտի եգիպտացւոց. և զի մի՛ գտցի նոցա պատճառք ասել. զի ոչ գիտէաք մեք զօրէնս, "Գրեաց, ասէ, անդ. ետ նոցա զիրաւունս և զդատաստանս"։ Զինչ են. "Եթէ լսելով լուիջիք, ասէ, ձայնի տեառն ա͞յ ձերոյ, զամենայն ախտս չարչարանաց հարուածոցն զոր ածի 'ի վերայ եգիպտացւոցն, զայն ոչ ածից 'ի վերայ քո"։

Եւ իբրև եկին դարձեալ յԵղիմ 'ի տեղին ցանկալի, յայտնի եղեն խորհուրդք նոցա և ասեն. "Ուրեմն լաւ էր մեզ եթէ մեռեալ էաք անդէն յերկրին եգիպտացւոց, զի ուտէաք անդ և յագէաք"։ Եւ զի ցուցին նոքա կարծիս՝ թէ վասն քաղցոյ իւրեանց տրտնջեցին, ոչ արգել զխնդրուածս նոցա. և ոչ որպէս խնդրեցինն միայն, այլ առանց աշխատութ͞ե՝ յերկնից տեղեաց նոցա, զի պատճառք ինչ մի՛ գտցի նոցա։ Սակայն նոքա ոչ համբերէին խնդրել որպէս և կարօտեալք, այլ որպէս և փորձիչք. զի եթէ ոչ տացէ նոցա զխնդրուածս նոցա, ոչ արասցեն զինչ և պատուիրեաց նոցա։ Սակայն և ոչ այսպէս պահեցին նոքա զուխտն նորա. զի նա զհաց հրեշտակաց ետ նոցա,

և նոքա զխորհուրդս մարմնաւորս ստացան ։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Ընդ ցածնուլ ցօղոյն,,. հեբրայեցի, "Ամպ ցօղոյ,,։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ "Համ իւր քաղցր էր իբրև զխորիսխ մեղու,,. հեբրայեցի, "Համ իւր իբրև կնճիթ 'ի մեղր,,։

Եւ զի չափով առին նոքա հրաման, զի կարծեսցին յորկորստութէ անտի, և եղիցին նոքա 'ի ներքոյ պատուիրանին. և զի ոչ յաւելաւ՝ որ շատն քաղեաց, զի ընթացաւ նա որկորստութե յաւելլի անդր. և որ սակաւն ժողովեաց՝ ոչ պակասեաց, զի կաց նա 'ի պատուէր հրամանին և չափով ժողովեաց ։ Զի նեխեցաւ զոր թողին, զի խնդրեցին և առին. հրամայեցաւ նոցա և ոչ պահեցին ։ Եւ զի ծանիցես թէ այս այսպէս է, ահա աւանիկ հանդերձն նոցա որ բնութե իւրով մաշելոց էր, ոչ մաշեցաւ. և մանանայն զի ոչ մեղանչէր, ապականեցաւ. զի պահեսցի խորհուրդն, և յայտնի լիցի առակն օրինակի ։ "Մի՛ ոք, ասէ, 'ի ձէնջ եթէ 'ի վաղիւ ոք թողուցու յայնմանէ,,։ Այն իսկ է զի ասէ. "Մի՛ հոգայք վասն վաղուի,,։ Ոչ ինչ յաւելաւ՝ որ շատն ժողովեաց. և ոչ ինչ պակասեաց՝ որ սակաւն ժողովեաց ։ Խորհուրդ մարմնոյն տեսանէ մերոյ. զի եթէ շատ ոք առնուցու և եթէ սակաւ, մի պարգևս առնուն ։ Բայց գոյ և նմա և առակ օրինակի տկար բնութեես մերոյ. զի այն՝ որ շատն ժողովէ, ոչ ինչ երթայ ընդ նմա. սակայն և այն՝ որ սակաւն ժողովեաց, ոչ ինչ պակասեաց. զի նեղութիւնք նորա աստէն ընդ մարմնոյս մնան, և կարօտութիւնք նորա աստէն յաշխարհի թողեալ լինին ։ Եւ զի ասէ "Որ ինչ մնայ 'ի ձէնջ առ վաղիւ, ոյծ պահեսջիք,,, հեբրայեցի ասէ. "Զոր ինչ պատրաստէք դուք՝ պատրաստեցէք մինչև յառաւօտ,,։

"Եւ մի ելանիցէք դուք, ասէ, յաւուրն եւթներորդի. և ոչ անսացին,,։ Զի եթէ մինչ դեռ զգործն տեսանէին՝ երկմտեալ բաժանէին, եթէ զհանդերձեալն խոստացեալ էր նոցա՝ զիարդ լսէին նոքա ։ Եւ այս ոչ եթէ մոլորութե նոցա էր, այլ ապստամբութե նոցա է ։ Եւ զոր օրինակ զնոսա բռնութե հանգոյց 'ի քաղելոյ անտի մանանային, այսպէս բռնութե նեղեաց զնոսա, զի հանգուսցեն զծառայս իւրեանց. զի այն

ագահութիւն՝ որ զնոսա նեղեաց զի աշխատեսցին, նոյն ագահութիւն դարձեալ նեղէր զնոսա աշխատ առնել զծառայսն իւրեանց։ Զի առին նոքա հրամանս զի մի թողուցուն, և թողին. և զի մի ելցեն յաւուրն եւթներորդի քաղել, և ոչ անսացին. վասն այսորիկ զբազումն սակաւացոյց 'ի չափ անդր, և զաւելսն զազրացոյց յեռալ որդամբն, և զեւթներորդն սահմանեաց պատուիրանաւ։

Եւ զայս զոր արար՝ զի եղիցին նոքա 'ի ներքոյ լծոյ, և ամենայնիւ 'ի լծոյ անտի ապստամբէին. մինչև ցանկացան և խոնարհ եղեն, և նուաղեցին և մտին 'ի փորձանս։ Եւ ոչ առին 'ի միտ, զի անցին նոքա ընդ ծովն առանց նաւաց, և ընդ անդունդս առանց կամուրջից. և կապեցան ջուրքն զօրութեամբ, և կացին իբրև պարիսպք հրամանաւ. և գործեցաւ խորհուրդ 'ի մէջ ջուրցն, և ամենայն նշմարանք և կերպարանք իբրև ճշմարտութիւն երևեցաւ նոցա։ Եւ եղև յոյս ապաստանի իւրեանց 'ի տաճարն քարեղէն, և փրկութիւն նոցա 'ի գառն մսեղի. և սրբութիւն նոցա յորոշել կերակրոցն, հանդիստ նոցա 'ի բազում արմտիս, զարդ նոցա 'ի գոյնագոյն հանդերձս, մեծութիւն նոցա 'ի ստացուածս անասնոց, պարծանք նոցա յաղթութիւն սրոյն՝ կոտորել զընկերս իւրեանց։ Այլ իմաստունք նոցա որոշեցին մեկնեցին զնշմարանսն՝ որ առաջի երեսաց իւրեանց. և 'ի միտ առին զառակս օրինակաց մարգարէից, և զխորհուրդս զոր դրոշմեաց Հոգին սուրբ վասն գալստեանն Քրիստոսի։ Զի թէպէտ և յառակս օրինակաց կային նոքա, սակայն ճշմարտութեանն որ հանդերձեալ էր յայտնել, ակն ունէին։ Բայց բազումք 'ի նոցանէ այսպէս կարծէին՝ թէ Մովսէս 'ի կամս իւր առաջնորդէ նոցա. և վկայեաց այն՝ զի ասէ “Կոչեաց զանուն տեղւոյն այնորիկ փորձութիւնք և տանջանք. եթէ իցէ, ասեն, Տէր ընդ մեզ թէ ոչ„։ Վասն այսորիկ գրգռեցաւ եւ 'ի վերայ նոցա Ամաղէկ, զի անկցի 'ի վերայ նոցա ահ և երկիւղ հեթանոսաց, և զի եղիցին դառնալ առ Մովսէս 'ի տեսանելն իւրեանց զի 'ի ձեռն նորա փրկեալ լինէին յամենայն փորձութենէ, և նա է փրկանք կենաց նոցա, իբրև նոքա կամէին սպանանել զնա։

"Յայնմ ժամանակի, ասէ, յարեաւ ժողովեաց պատրաստեաց Ամաղէկ գալ տալ պատերազմ ընդ որդիսն Իսրայէլի ,, : Վասն այսորիկ Ամաղէկ սկիզբն հեթանոսաց . այս ինքն զի նա յառաջագոյն արար ընդ նոսա մարտ պատերազմի : Արդ որովհետեւ եղեւ նա սկիզբն, սատակելով սատակեսցի, կատարած նորա յաւիտեանս ժամանակաց : Սոյնպէս եւ Համան որդի նորա պահեաց զոխս, եւ նեղեաց զժողովուրդն վասն Մուրթքէի . իբրեւ զի զԵսաւ նորա ոչ էր տեսեալ՝ այն որ պահեաց զոխս յաւիտենից· Իբրեւ զնա ոչ էր տեսեալ քո, զմիտս նորա ո՛վ ուսոյց զքեզ: Արդ կամեցաւ Ամաղէկ խափանել զօրհնութիւնսն Սահակայ, քանզի երկուցեալ զարհուրեալ էր նա 'ի բանէ անտի յայնմանէ՝ որ ասացաւ Իսաւայ . ասէ "Եղբօր քում ծառայեսցես ,, . քանզի Ամաղէկ հարճորդի էր Եղիփազու որդւոյ Իսաւայ : Եւ զի հնազանդեցոյց Սահակ զԵսաւ 'ի ներքոյ ձեռին Յակովբու փոխանակ կանանցն զոր առ նա, որ դառնացուցանէին զոգիս հարցն նորա, եւ նոքա էին դստերք Քանանու, այն որ անիծաւ 'ի Նոյէ . եւ զի կամեցաւ Ամաղէկ խափանել զանէծսն Նոյի եւ զօրհնութիւնն Սահակայ, եւ առնել մարտ պատերազմի ընդ որդիսն Յակովբու . վասն այսորիկ արդարութիւն գրեաց 'ի վերայ նորա զպատիժս պատուհասից, զի ջնջեսցի յիշատակ Ամաղէկի 'ի ձեռն որդւոցն Հռաքելայ : Նախ Յեսու որդի Նաւեայ յազգէ անտի Յովսէփու, եւ ապա Սաւուղ բենիամինեանց . եւ զմնացորդսն որ մնացեալ էր նորա, բարձաւ 'ի ձեռն Աղթերայ եւ Մուրթքէի :

"Եւ շինեաց, ասէ, անդ սեղան, եւ կոչեաց զանուն նորա՝ Տէր փորձեաց ,, . զի փորձեցին անդ հեթանոսք եւ որդիքն Իսրայէլի . այնոքիկ, զի թէ պատերազմ տայցեն՝ սատակեսցին . եւ այսոքիկ, եթէ հաւատասցեն՝ յաղթեսցեն . ցոյց երկոցունց կողմանց՝ եթէ օգնութիւն այլուստ ելանէ նոցա, այս ինքն 'ի ձեռաց Մովսիսի : "Արդ ահա, ասէ, ձեռն 'ի վերայ աթոռոյն ,, . այս ինքն ձեռն տեառն 'ի վերայ աթոռոյն՝ յորոյ վերայ նստէր Մովսէս, զի եղիցի պատերազմ տեառն ընդ Ամաղէկ : Քանզի պատերազմ առաջին էր, շինեաց սեղան 'ի վկայութիւն Իսրայէլի

և հեթանոսաց, զի մի՛ ժպրհեսցին և համարձակեսցին առ զօրութիւն որ զօրագոյն և բռնագոյն է քան զնոսա. թէպէտ և տեսին նոքա թէ 'ի ձեռս Մովսիսի կախեալ կայ օգնութիւն նոցա և վնաս նոցա, սակայն ոչ խնդրեցին ձեռն: Այսէ տուր ձեռն քաղաքաց, նախ զօրս պաշարես դու:

Որդ չինեաց սեղան, սեղան 'ի տեսիլ: «Գրեա դու, ասէ, և 'ի մատեանս յիշատակաց. և զհամբաւն լուիցեն ամենայն հեթանոսք՝ թէ ջնջելով ջնջեմ ես զյիշատակ նորա». զի թէ թերևս կամ նոքա երկիցեն, կամ սոքա ապաշխարեսցեն, և դարձուսցէ 'ի նոցանէն. իբրև զայն՝ զի ասէ «Տարաւ մայծ զգաբաւոնացիս և զմովաբացիս»: Եւ զի ասէ դարձեալ «Գրեա 'ի մատեանս յիշատակաց». զի հեռագոյն էր վրէժն հատուցման. և ձեռն 'ի վերայ աթոռոյ, շարժումն և խռովութիւն աթոռոյ թագաւորութեան նորա, զի մի տացէ նմա թոյլ դադարել՝ մինչև խնդրեսցի 'ի նմանէ վրէժն հատուցման: Արդ հար սատակեաց զԱմաղէկ, զի ոչ ողորմեցաւ 'ի վերայ նոցա. զի յանողորմութենէ անտի նորա ուսցին նոքա զպորդութիւն սիրոյ՝ որ առ միմեանս:

Արդ տուր ինձ, ով որ պատուհասես, և լեր միջնորդ արդար 'ի մէջ խրատչին և 'ի մէջ յանցաւորաց. միթէ արժա՞ն ինչ էր Սեհոնի և Ովգայ՝ յետ ծովուն բաժանելոյ, և յետ ընկղմելոյն Փարաւոնի գալ և առնել մարտ պատերազմի ընդ զօրս՝ որոյ այսպիսի ահաւորութիւնք գործեցան: Նա և օրէ՞ն ինչ էր՝ յետ բաժանելոյն Յորդանան գետոյ, և կործանմանն պարսպացն յԵրիքով քաղաքի, ժպրհել համարձակել քանանացւոցն գալ և առնել մարտ պատերազմի ընդ ձեռին այնմիկ՝ որ 'ի վերայ ամենայնի իշխանն էր: Պա՞րտ ինչ էր դարձեալ՝ յետ նշանացն այնոցիկ, որ եղեն յերկրին եգիպտացւոց, և սքանչելեացն այնոցիկ՝ որ եղեն յանապատի անդ, փոխանակել Իսրայելի ընդ որթուն զտէրն նշանաց և զարարիչն սքանչելեաց: Եւ պատշա՞ճ ինչ էր դարձեալ և մեզ՝ զի 'ի լսելն մեր զվրէժ հատուցման չարաց, և զդառն տանջանս՝ որ եկին հասին 'ի վերայ մեղաւորաց, մեղս 'ի վերայ մեղաց յաւելուլ:

## ԳԼՈՒԽ Ե

«Ի՛ՅՒ երկին ելին, ասէ, յանապատ 'ի Սինէ. և խօսեցաւ տէր ընդ Մովսիսի 'ի մառախուղ ամպոյ անտի», զի երկիցեն այնոքիկ՝ որոց խաւարեալ են սիրտք իւրեանց, իբրև ինքն Մովսէս լուսաւոր ամպոյն տեառն մերոյ արժանի եղև։ Բայց 'ի հեբրայեցի՝ մրրիկ ամպոյ գրեալ է փոխանակ մառախղոյ։ Փոխանակ այնր՝ զի ասէ «Վկայեա զգուշացո ժողովրդեանն, զի մի հեռասցին հայել մերձենալ». հեբրայեցի, «Գուցէ ժտիցին հայել մերձենալ»։

«Ես եմ տէր ա̃ծ քո՝ որ հանի զքեզ, ասէ, յերկրէն եգիպտացւոց. մի արասցես դու քեզ այլ աստուածս բայց յինէն, զի ես եմ տէր ա̃ծ քո. ա̃ծ նախանձոտ եմ, հատուցանեմ զմեղս հարցն յորդիս մինչև յերիս և 'ի չորս դարս»։ Հեբրայեցի «Խնդրէ զվրէժ մեղաց». իբրև զայն զԱմովսայն՝ զի ասէ «Զի 'ի չորս չորս անօրէնութիւնս նոցա, և առնէ զողորմութի̃ 'ի հազար դար». զի յիշէր նա զսէր արդարոց իւրոց, և քաւէր զմեղս որդւոց նոցա։ «Մի սպանաներ. մի գողանար. մի սուտ վկայութի̃ վկայեր 'ի վերայ ընկերի քո»։ Եւ այս սերմանեալ լի են 'ի սիրտս մարդկան 'ի սկզբանէ յաւիտենից, և սոքօք առաւելան հարքն արդարք։ Բայց եղև 'ի սոսա փոփոխումն իբրև սքանչելեօք յօգտութի̃ ըստ կամացն ա̃յ. զի յայսմիկ յայտ արասցէ վասն լուծանելոյ օրինացն ա̃յ. զի գրեալ է, ասէ «Մի շնար». և դարձեալ ասացաւ մարգարէին. ասէ «Գնա և առ դու քեզ կին մի պոռնիկ և շուն». զի այսուիկ զարմասցին, զի 'ի հարցանելն իւրեանց զնա՝ յանդիմանեսցէ զնոսա պոռնկութիւն իւրեանց, որ պոռնկեցան և ելին յա̃յ։ Վասն այսորիկ եղեն նմա մարգարէքն 'ի նշան, այլ ոչ պղծեցաւ մարգարէն, զի հրամանաւ ա̃յ գործեաց. յայնժամ պղծեալ լինէր նա՝ թէ ոչ էր առեալ զկինն, զի զպատուէր հրամանին ա̃յ անգօսնէր։ Եւ դարձեալ ասէ «Մի գողանար». և Մովսէս, և որ ընդ նմա էին՝ զեգիպտացիսն կապուտ կո-

ղոպուտ արարին. և քանզի պատուէր հրամանի այ̃ էր, ոչ եպերեցան. Թէպէտ և եգիպտացիքն տրտմեցան, և զող համարեցան զնոսա, որպէս և համարեցաւ մարգարէն պոռնիկ՝ իբրև այ̃ իւրոյ սուրբ էր նա: Եւ դարձեալ ասէ «Մի՛ ստեր». և Մովսէս ստեաց, և ոչ պատուհասեցաւ. ասէ «Երեքօրեայ մի գնաց ճանապարհ երթիցուք, և եկեսցուք». և Շմուէլ դարձեալ դոյնպէս գործեաց պատուիրանաւ յերթալն իւրում օծանել զԴաւիթ, և յասել անդ «Պատարագ մատուցանել տեառն եկի ես»: Ասէ «Մի՛ սպանաներ». և Մովսէս նախ սպան զեգիպտացին. և զի ոչ կամեցաւ սպանանել Շաւուղ զԱգագ, անարգեցաւ յարքայութենէ իւրմէ. և Շմուէլ՝ զի պատառեաց զնա, առաքինացաւ. և Աքաբ՝ զի ոչ հար սատակեաց զԲարհադադ, ինքն սատակեցաւ. և Եղիա՝ զի կոտորեաց նախանձու իւրով զպաշտօնեայսն Բահաղու, արդարացաւ և ընդ երկինս վերացաւ. և Դաւիթ բազում արիւն եհեղ, և ոչ համարեցան նմա մեղք: Եւ եթէ ոք ասիցէ. ահա արգելաւ նա, զի մի՛ շինիցէ զտաճարն վասն արեանն, զի եհեղ: Իսկ ընդէ՞ր զամենայն թագաւորս արդարս նմա համեմատէ, և Զօրաբաբէլ ՚ի նա անուանէ, և յիշատակ անուան նորա փրկեաց զքաղաքն և զթագաւորն. Թէպէտ կարի յոյժ արդար էր Եզեկիա: Բայց այն՝ զի արգել զնա՝ զի մի՛ շինեսցէ զտունն, զայս յայտ առնէ. յոյժ աշխատեցար դու, ասէ, ՚ի մարտ պատերազմաց. մի՛ յաւելուր դու այլ աշխատութիւս քեզ: Եւ զի մի՛ տրտմեսցի նա, ուրախ արար զնա յայնմիկ՝ զի ասէ. «Որդի քո, ասէ, որ ելանէ յերանաց քոց, նա շինեսցէ»: Եւ այս ոչ եթէ պատուհասից ինչ է, այլ պատուոյ և փառաց. զի ահա աւանիկ Սողոմոն՝ որ շինեաց զտաճարն, զկուռս պաշտեաց:

Եւ զայս՝ զի ասացաք, զի յայտ արասցուք՝ զի ոչ երբէք պահեցան օրէնք՝ որ ՚ի գիրս էին: Այլ ոչ երբէք լուծանելով ինչ լուծաւ ստուգութիւն. այլ իշխանութիւն Աստուծոյ երևեցաւ պէսպէս սքանչելեօք, որպէս կատարեցին ճշմարտութիւք արարածոց. Թէպէտ և փոփոխեցան նոքա ՚ի ձեռն Մովսիսի,

առ ժամանակ մի վասն Փարաւոնի ։ Բաժանեցաւ ծով, պատառեցաւ վէմ, և հան զլորամարգին, և իջոյց զմանանայն ։ Եւ յաւուրս Յիսուայ բաժանեցաւ գետ, և արգելաւ կաց արեգակն և լուսինն ։ Եւ յաւուրս Եզեկիայ դարձաւ յետս արեգակն. և ոչ եթէ հանապազ լինին, այլ յօգտութիւն եղեն յորժամ եղենն, և բնութիւն նոցա չէ անցեալ ։ Եւ ստուգութիւն թէպէտ և փոխեցաւ առ ժամանակ մի 'ի ձեռն արդարոց իւրոց վասն օգտութեան, սակայն հաստատուն կայ 'ի ճշմարտութեան իւրում, զի ոչ փոփոխի. և նոյնպէս արդարացան առաջինքն. և յայտնի եղև լուծումն օրինացն յայլակերպս լինելոյն նորա 'ի ժամանակի իւրում. և նոյնպէս առաքինեալն ամենեքեան 'ի հեռանալն իւրեանց 'ի պահպանութենէ անտի օրինաց, այն' որ երբէք ոչ կատարեցան, և 'ի ստուգութենէ սրտից իւրեանց արդարացան ։

Իսկ ընդէ՞ր պատուիրանքն' որ գրեալ էին 'ի տախտակսն, մի՛ շնար ասեն, և ոչ ասեն մի՛ պոռնկիր ։ Այլ քանզի ժողովրդեանն Իսրայէլի պատուիրեցաւ պատուէրն այն' զի ասացաւ 'ի միւսում պատուիրանի. ասէ "Պոռնիկ 'ի դստերս Իսրայէլի մի՛ եղիցին". որպէս ժողովուրդ մի' որ արգելեալ կարճեալ իցէ 'ի պոռնկութենէ, պատուէրն որ վասն պոռնկութեանն էր և վասն շնութեանն' որ լինելոց էր յերկրի նոցա, 'ի կանայս նոցա և 'ի դստերս նոցա, նոյնպէս ուսոյց և պատուիրեաց նոցա ։ Եւ երկու' զի մի՛ անուանեսցէ և անուանելով բնաւ ամենևին պոռնկութիւն 'ի մէջ նոցա. զի գոն իրք յորժամ պարսաւէ զնոսա բանիւք իւրովք, յիշեցուցիչ լինի նոցա, և յիշատակք նոցա ոչ ինչ բարի գործ գործեն 'ի միտս լսողի. զի չէր ինչ մարթ ամենայն լսողաց պնդակազմ լինել մտօք խորհրդովք իւրեանց ։ Եւ խորհուրդք' յորժամ գտանին լուծութիւն յայնմ ժամու, վասն լուծութեան իւրոյ խառնեալ լինի ընդ նմանոյն, իսկ յիշատակն խառնելով իւրով. և իբրև անկեալ լինի նա 'ի նմա, հարկ է զի և պտուղ ևս նորա երևեսցի 'ի նմա ։

Վասն շաբաթու :

"Յիշեսջիր դու, ասէ, զօրն շաբաթուց սրբել և փափուկ ունել զնա. զվեց օր զգործ զամենայն զքո գործեսջիր. և օրն եւթներորդ՝ շաբաթ փափուկ տեառն ա՟յ քո. մի՛ գործեսցես դու ՚ի նմա զամենայն զգործ քո„: Վասն է՞ր. "Զի ՚ի նմա հանգեաւ, ասէ, ա՟ծ յամենայն գործոց իւրոց„: Եւ ո՞ւր է այն՝ զի ասէ "Ոչ տաղտկի և ոչ աշխատի և ոչ վաստակէ„: Այլ այն՝ զի ասէ հանգեաւ, այն իսկ է՝ զի կատարեաց զարարածս. և զի յիշեցուսցէ թէ ա՟ծ է հաստիչ և արարիչ ամենայնի: Բայց պատուիրանս այս զչարութ՟ին նոցա յայտ առնէ, և վասն անողորմ կալեալ զթութեան նոցա՝ որ էր առ անասունս իւրեանց: "Զի հանգիցէ, ասէ, ծառայն քո և աղախինն քո„, այլովքն հանդերձ: Արդ ասաց՝ քայ հանգեաւ, զի մեք հանգուսցուք. իբրև զայն՝ զի ասէ. "Զղջացայ զի արարի զմարդ ՚ի վերայ երկրի„. զի յայտ արասցէ թէ նա է արարիչ նորա. և զի մեք ՚ի միտս մեր զղջացեալ վշտասցուք, թէ ա՟ծ զղջացաւ վասն մեր:

Արդ շաբաթու մեկնութ՟ին նորա հանգիստ է: Եւ եթէ ՚ի հանգիստ տուաւ նա, առանց շաբաթու եթէ ոք հանգուցանէ զծառայ իւր՝ պահէ՞ նա զշաբաթ եթէ ոչ. այլ ասէ՝ ոչ հրամայեաց ա՟ծ: Իսկ արդ ե՞րբ հրամայեաց ա՟ծ. ոչ ասես ինձ յԱդամայ արդեւք, եթէ ՚ի Շէթայ, յԵնովքայ և ՚ի Նոյէ. զի եթէ ա՟ծ ոչ արգելու յաւուրն շաբաթու զգործս իւր, զի ոչ անձրև արգելաւ ՚ի ջրհեղեղի անդ, և ոչ մինչև ցայսօր ժամանակի արգելեալ լինին գործք նորա ՚ի գնացից իւրեանց. զի արեգակն ծագէ զճառագայթս իւր յաւուր շաբաթու, և լուսին տայ զլոյս իւր, և աղբեւրք բղխեն, և գետք գնան, և աստեղք ընդ ամենայն երկիր տան զլոյս իւրեանց. արդ զի՞նչ օգուտ է խափանել շաբաթուն: Եւ եթէ վասն թլփատութ՟ն, ցուցաք մեք՝ եթէ ինչ մի փոքր է. բայց ոչ ինչ արգելեալ լինին նոքա յաւուրն շաբաթու թլփատել. ահաւանիկ և ինքն թլփատութ՟ին տկար՝ եղծ

զշաբաթն խափանեալ ։ Եւ եթէ քահանային՝ զի առժամն էր փութապէս և առանց բամբասանաց պաշտել զօրէնսն, հրամանս տան նմա օրէնքն գործել յաւուր շաբաթու, և փոխանակ տօնից տարեկանաց՝ որ դիպեալ պատահէին նմա, և քահանայն՝ վարդապետեալ օրինաց՝ ոչ պահէ զօրէնս շաբաթուն. այլ որպէս օրէնսդէտի միոջ հրաման ետ նմա գործել, իբրու նա այլոց խափանել հրամայէ ։

Արդ զի պատուհաս եդ, բամբասես դու՝ եթէ ըստ հանգստեան քահանայից գնամք մեք. և եթէ սրբութիւն շաբաթու է խափան, ահա պղծեաց նա զմեռեալ, և մեռանի 'ի նմա. և պղծեաց զգնացս գիջութեան երազոց, և լինի 'ի նմա. և ծնունդ ամենայն աշխարհի պիղծ. "Զքառասուն օր, ասէ, պիղծ է կինն որ ծնանի„. և ահա բազում շաբաթք անցանեն 'ի վերայ նորա, և ոչ կարաց արգելուլ շաբաթն սրբութեան իւրով զգործոն սրբութեան, զի մի պաշտեսցին ։ Եւ եթէ վասն զի բնութիւնք են՝ զի այսպէս են հաստատեալ. ահա բաժանեցաւ ծովն, և կաց արեգակն և լուսին, զի պատուեսցեն զպատուէր հրամանի նորա. սոյնպէս և սոքա եթէ յօգտութիւն եղեալ էր նախ յառաջ զբնութիւն նոցա, լռեցուցանէր 'ի նմա, որպէս և զայլ բնութիւնս կապեալս ; զի հրամանաւ արձակեցան ։

Արդ շաբաթ զգործս բարիս անուանեաց. զի ոչ եթէ շաբաթն պահէ զմեզ 'ի բարիս, և ոչ այլ աւուրք մոլորեցուցանեն զմեզ 'ի չարիս. ոչ եթէ առնեմք մեք 'ի բարիս յաւուրն շաբաթու՝ պատուհասիմք, զոր օրինակ և ոչ եթէ առնեմք զչար յայլ աւուրս՝ պարտաւորիմք մեք ։ Զի թէ արդար են գործք բարիք՝ համապազորդ, թէպէտ և յաւուրն շաբաթու արասցեն. և չարիք կարծեալ արգելեալ են համապազօր. ոչ ահա աւասիկ յայտնի է այս՝ թէ վասն խստութեան պարանոցի նոցա ետ նոցա, զի գոնեայ յաւուրն շաբաթու մերձեսցին նոքա 'ի գործոն բարութեանց. զի շաբաթ սակաւ ինչ ժամանակս ծաղկեաց ։ Եւ դարձաւ եցոյց նա զխստապարանոցութիւն՝ դարձուցանել զթիկունս՝ փախստեայ գնալ տկար պարգևօքն իւրովք, և փոքր չափովն իւրով յերե-

տաց հօրն որ ծնիչն էր ամենայնի . զի նա ինքն է միաշաբաթի ։ Նա՝ որ եղև անդրանիկ գործոց և սկիզբն եղելոց, զի 'ի նմա հաստատեցան երկինք և երկիր . այս է չափ որ կապէ զլոյս իշխանութեամբ իւրով, և կրկնորդ ճշմարտութեան պակասէ խաւար յիշխանութենէ իւրմէ ։ Ի նմա որոշեցան մեկնեցան աւուրք 'ի միմեանց . իբրու լեալ է նա նոցա գլուխ, և առաջնորդ միաշաբաթին ։

Որդ. եթէ օգտութիւն ինչ լեալ էր 'ի շաբաթուանդ՝ հարցն տայր զնա, այնուքիկ՝ որ անուանք նոցա փրկեցին ապրեցուցին զպահօղս շաբաթուցն ։ Եւ Յիշով յայտնապէս խափանեաց զնա յերիքով քաղաքի ամենայն ժողովրդեամբն հանդերձ . և յայտ արար մեզ, զի ոչ եթէ պահպանութիւնք ինչ շաբաթուց պիտոյ են առ կատարեալս . և եթէ յոչ պահելն շաբաթու՝ ոչ ինչ եղև արգել փրկութեան լինելոց, այլ առանց ձեռացն զօրութիւն պարսպացն անկեալ կործանեցաւ . իբր ոչ եթէ մոռացեալ ինչ էր այ, զի հրամայեաց շուրջ գալ զերիքով քաղաքաւ . և հրամայեաց զի պահեսցի շաբաթ ։ Եւ ոչ եթէ Յիշով միայն լոյծ և խափանեաց զնա, այլ և Մովսէս 'ի լերին անդ, և քահանայք 'ի տաճարի անդ, և Եղիա 'ի Քորեբ լերան, և Դանիէլ պահօքն իւրովք, և Մակաբայեցիքն պատերազմօք . 'ի լուծանելն 'ի խափանելն զնա՝ ապա յաղթեցին . և 'ի պահելն իւրեանց զնա՝ պարտաւորեցան և յաղթահարեցան . և Աքար իբրև անց զնզովիւքն, նա ամենայն ընչիւքն իւրովք քարկոծ եղև, և ոչինչ օգնական եղև նմա շաբաթն և թլփատութիւն ։

Վասնզի ոչ ինչ օգուտ են զոհք հանդերձ թլփատութեամբն և շաբաթու . զի ոչ ասաց՝ թէ որ սպանանէ՝ զոհիւք քաւեսցի, և ոչ՝ որ հայհոյէ զած՝ թլփատութիւն ապրեցուսցէ . և որ զայն՝ որ պոռնկին՝ թէ շաբաթ փրկեսցէ . այլ ասէ “Սպանող մահու մեռցի„ . և ո՞ւր են զոհքն, զի ոչ քաւեցին ։ Եւ այն “Որ հայհոյէ, ասէ, մահու մեռցի„ . և ո՞ւր է շաբաթն, զի ոչ փրկեաց ։ Եւ զայն “Որ շնայ՝ քարկոծ լիցի„ . և ո՞ւր է թլփատութիւնն, զի ոչ օգնեաց . և զի պատճառք ժամանակաց էին, անարգեցան և անցին ։ Արդ

ոչ կարացին քաւել զոհքն և թլփատութիւն և շաբաթ վասն սպանութեանց և շնութեանց. բայց զեղջ և ապաշաւ մնաց քաւեաց: "Մեղայ, ասէ, Դաւիթ": Ասէ ցնա. "Եւ տէր թողցէ զյանցանս քո":

Որդ որ մարմնով իւրով խափանեալ է 'ի չարեաց յաւուր շաբաթու, և մտօք իւրովք գործէ զչարիս, զիա՞րդ կոչեսցուք զնա՝ պահօղ շաբաթու, թէ լուծիչ օրինաց: Այլ խափանեաց զբարւոյն մի օր՝ եթէ գոնեայ բռնութ 'ի չարեաց անտի լռեցուսցէ զնոսա. բայց 'ի տաճարի անդ. քանզի ոչ կարէին չար գործել, ոչ կապեաց զնոսա յօրէնս շաբաթուն. քանզի գիտաց եթէ կապեալ են 'ի բռնութն սպասուն պաշտաման: Եւ դարձեալ, զի ուսուսցէ թէ մարմինն իւր տաճար այ է, համարձակէ մտացն նորա որպէս և քահանայի, զի պաշտեսցէ զմծութիւն՝ որ բնակեալ է 'ի խորանի իւրում. Այլ քանզի կռապաշտութիւնն բնակեալ էր 'ի նոսա, այն զի 'ի ժամանակի իբրև վերացաւ 'ի նոցանէ բռնութիւնն Մովսիսի՝ երկիր պագին կռապաշտութեանն, և պաշտեցին զնա յայտնապէս, զայն՝ որ ծածուկն պաշտեալ լինէր 'ի նոցանէ. վասն այսորիկ կապեաց զնոսա բռնութիւն աւուրն եւթներորդի, զի կապեսցէ զձեռս նոցա խափանելովն՝ զի դադարեսցեն 'ի չարեաց անտի: Եւ զի խլեսցէ զկռապաշտութին 'ի մտաց նոցա, խափանեաց զնոսա զի մի զոհեսցեն կռապաշտութեանցն. զի եթէ քահանայիցն իւրոց համարձակեաց մատուցանել զպատարագս, յայտ է ամենայն՝ զի կապեալ էին նոքա, զի կռապաշտութեն զոհէին: Եւ զի յետ ամենայն պատուիրանի երկրորդեաց նա յասել իւրում, թէ "Ես եմ տէր ած քո". զի յայտ արասցէ՝ եթէ որպէս մերձենայ գրովք առ պատուիրանն իւր, սոյնպէս մերձ է և գործովն առ անցանել զպատուիրանաւն: Փոխանակ այնր՝ զի ասէ "Սեղան հողեղէն շինեսջիք ինձ". հեբրայեցի, "Սեղան յերկրի շինեսջիք ինձ":

իրաւունք դատաստանի ։

"Եթէ գնեսցես դու քեզ ծառայ 'ի Հեբրայեցւոց, զվեց ամ ծառայեսցէ քեզ. յամին եւթներորդի արձակեսցես զնա, և գնասցէ նա ձրի 'ի քէն„ ։ Եւ ո՞ւր է այն՝ զի ասէ "Եղիցի Քանան ծառայ նորա„. և այն՝ զի ասէ "Մի՛ ծառայեցուսցես զեղբայրն քո զՀեբրայեցի, մի՛ զայր և մի՛ զկին„ ։ Այլ յորժամ վաճառիցի քեզ եղբայրն քո, այն խոկ է՝ զի ասէ. եթէ ոչ ինչ իցէ գողոյն տալ զտոյժս, վաճառեսցի 'ի գողութեան իւրում. կամ այն՝ որ վասն աղքատութեան իւրոյ վաճառի, վասն այնպիսւոյն ասաց. ասէ, "Յամին եւթներորդի ազատ գնասցէ 'ի քէն„ ։ Երկու պատուիրանս եդ նմա. մի՝ զի յամին եւթներորդի. և երկու՝ թէ մեռցի տէրն նորա, ոչ, ասէ, ունի նա իշխանութիւն ժառանգել զնա որդւոյ իւրում կամ դստեր. իբրև զայն՝ զի ասէ "Երկիրն, ասէ, ճշմարտութեամբ բնութեամբ մի՛ վաճառեսցի, զի իմ է, և նոքա ծառայք իմ են՝ զոր հանի ես յերկրէն եգիպտացւոց. մի՛ վաճառեսցին նոքա ըստ վաճառի ծառայից„ ։ Երրորդ՝ եթէ հասեալ իցէ ամն յոբելեան, զի նա ինքն է ամն յիսներորդ ։ "Զվեց ամ, ասէ, ծառայեսցէ քեզ, և յամին եւթներորդի ազատ գնասցէ„ ։ Ապա եթէ կապեսցի նա 'ի սէր աշխարհին և 'ի տեառնն՝ որ անուանեցաւ նմա, անցեալ է 'ի նմանէ գիր կատարեալ ազատութեան իւրոյ ։ և ընդունի նա դրոշմ յականջի իւրում, նշան՝ որ ոչ լսէ, զի մոռացաւ նա զազգատոհմ ազատութեան իւրոյ ։

"Եթէ հարցէ ոք զոք և մեռցի, մահու մեռցի ։ Իսկ եթէ որ ոչ յիւր կամս հար, այլ Ած ետ զնա 'ի ձեռս նորա, այս ինքն օրհասն եկն հաս, իբր ոչ 'ի կամս առնն պաշտեցան 'ի նմա կամք Այ, փախիցէ նա 'ի քաղաքն ապաստանի„ ։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Եթէ ոք հարցէ զծառայ իւր ձեռբ իւրով և մեռցի 'ի ձեռն նորա, իրաւունք դատեսցեն զնա„. Հեբրայեցի, "Խնդրեսցեն զվրէժ արեան նորա„ ։ "Ապա թէ կռուիցին արք երկու, և առ ոտն հարկանիցեն զկին յղի, և անկանիցի սաղմն կերպարան աննկար, այս ինքն է

թէ ոչ լիցէ կատարեալ, զարժանն տուժեսցի,,։ Եւ զի չիք վրէժխնդրութի՛ անկերպարան սաղմին, զի մի՛ կորիցէ անձնն կատարեալ փոխանակ փոքր ընչի։ "Եւ եթէ կատարեալ լիցէ, ասէ, սաղմն նկարեալ կերպարանեալ, տացէ անձն ընդ անձին,,։ Բայց Հեբրայեցին՝ "Եւ առ ոտն հարկանիցեն զկին յղի, և անկանիցի սաղմն անկերպարան աննկար յորովայնէ անտի, և կինն կինն ոչ մեռանիցի, զարժանն տուժեսցի, որպէս զինչ և արկցեն դատաւորք. ապա եթէ մեռցի և կինն կինն հանդերձ սաղմիւն, տացէ անձն ընդ անձին,,։

Եղան իրաւունք դատաստանի, զի յաւելցին օրէնքըն արժանաւորութք։ Զի. եթէ մի ակն լիցէ մարդոյ և կուրացելոյն՝ որ կուրացոյցն զնա՝ զակն նորա զի՞նչ արասցեն. զի ահա ոչ լինի հատուցեալ, եթէ մի ակն իւր կուրանայ. զի նա զամենայն զլոյս նորա բարձ 'ի նմանէ, և զնորա զմի կուրացուցանեն։ Եւ եթէ կուրացուցանէ այն՝ որոյ մի ակնն է, զայն՝ որոյ երկուքն են, զի՞նչ լինչ է՝ արժան է զի բարձցի լոյսն նորա 'ի նմանէ։ Վասն այսորիկ եղան իրաւունք դատաստանի, զի ըստ տեսանելոյն խնդրեսցեն զվրէժն։ Այլ ոչ եթէ զի հատուսցեն զփոխարէն հրամայեաց, այլ զի հատցէ զժպրհութի համարձակութե զառաջնոյն։ Եւ զի դէպ եղև՝ վասն էր կուրանայ միւսն ևս. զի մի՛ եղիցին նոքա կարծել՝ թէ սաստ միայն է և սպառնութի դոյզն առանց խրատու, և արհամարհեսցեն։ Արդ երևի թէ վասն անձնտութե մարդկութե են պատուիրանքս "Որ սպանանէ՝ մեռցի,,. վասն բազմութե մարդկութե է. զի մահուամբն միոյն զբազումս 'ի մահուանէ խնայեաց, նա և զնոյն իսկ զսպանօղն ահիւն և երկեղիւն։

Իսկ այն զի ասէ "Քարկոծ լիցի ցուլն հարկանօղ,,. զի եղիցի պակասութի, և զի հանդիցէ և վրէժխնդրին. իբրև զայն՝ զի ասէ "Քարկոծ լիցի անասունն ընդ որում մարդն պղծիցի,,. զի մի՛ յիշեսցին 'ի միջի նոցա իրքն այն։ "Ապա թէ ցուլ ուրուք զցուլ սպանցէ, ցուլն կենդանի տուժեսցի ընդ մեռեալ ցլուն. և եթէ հարկանիցէ զայր, քարկոծ լիցի,,. այն իսկ է՝ զի ասէ "Ի ձեռաց ամենայն գազանաց խնդրեցից զնա,,. խորհուրդ կատարելոյն. զի պահանջէ զնա

'ի վախճանի յամենայն գազանաց ։ "Ապա եթէ զծառայ, ասէ, կամ զաղախին հարցէ, երեսուն սատեր տացէ տեառն նորա. և ցուլն քարկած լիցի ". խորհուրդ տեառն մերոյ և Յուդայ ։

"Այլ եթէ յական գտցի գող, և հարցի 'ի գիշերի և մեռցի անդէն, արիւնն այն 'ի մահ մի գրեսցի ։ Ապա թէ արև 'ի վերայ հասցէ, գոյ նորա վրէժխնդրութի̃. մահապարտ է՝ որ հարկանէն ". Իբրև զայն՝ զի ասէ "Զի եթէ 'ի հալածել մերձաւորի արեանն, եթէ գտցէ արտաքոյ քան զքաղաքն ապաստանի և հարցէ սպանցէ զնա, անպարտ լիցի. ապա եթէ արև 'ի վերայ հասցէ՝ պահանջեսցի, տուժելով տուժեսցի ընդ միոյ չորս. և եթէ ոչ ինչ իցէ գողոյն, զնա իսկ վաճառեսցեն ".

"Այլ եթէ ոք ընկերի իւրում յաւանդ տացէ արծաթ կամ այլ ինչ կարասի զիւր, և գողք գողասցին 'ի տանէ առնն, եթէ գողքն 'ի մէջ եկեսցեն՝ կրկին տուժեսցի. ապա եթէ ոչ գտցի գողոնն, առաջի դատաւորաց մտցեն բանք երկոցունց, և որ պարտիցին առաջի դատաւորաց՝ կրկին տուժեսցի ընկերի իւրոյ ". Այս ինքն զի երկեցուսցեն զնոսա դատաւորքն պատուհասիւ խրատու, զի գուցէ վասն երդման լինին նոքա զրկել զբազումս, որպէս և ասէ. "Եթէ տացէ ոք ընկերի իւրում յաւանդ զրաստ, և եզն կամ ոչխար, կամ զինչ անասուն և իցէ. կամ բեկցի, կամ մեռցի, և ոչ ոք գիտասցէ, երդումն այ̃ եղիցի 'ի մէջ նոցա. ապ' եթէ 'ի նմանէ գողասցին՝ տուժեսցի նա տեառն կարասոյն. և եթէ բեկցի, բերցէ զնա 'ի վկայութի̃. և ընդ բեկելոյն մի տուժեսցի ". Փոխանակ այնր՝ զի ասէ "Եթէ վարձու առեալ իցէ, վարձուց իւրոց գինք են ". հեբրայեցի, "Թէ վարձուց է, յաւելցէ տեառն նորա 'ի վարձս նորա ".

Իսկ զի ասէ "Մի մատուսցես 'ի վերայ խմորելոյն զարիւն զոհից քոց, զի աղտեղեալ են և շարաւոտեալ ". զի բազում անգամ խմոր յորժամ թրէն յանօթս բազումս փոփոխեն՝ որ ոչ իցէ սուրբ. կամ թէպէտ և սուրբ իցէ, սակայն դարձեալ կարգէ նա, և այնոքիկ որ գալոցն է ոչ պահեն զնա. իբրև զայն զի ասէ. "Մեղր մի մատուսցես պատարագ վասն մե-

զուլ, զի իջանէ 'ի վերայ մեռելոտւոյ և 'ի վերայ ամենայն պղծութեան. կամ զի ոչ անկանի 'ի նա աղ: "Զամենայն զպատարագ քո, ասէ, աղիւ համեմեսցես":

"Մի՛ եփեսցես զուլ 'ի կաթն մօր իւրոյ": Կամ զի մի՛ զոհեսցէ զնա մինչ դեռ յղի է նովաւ, կամ մինչ չև լցեալ է նորա ութ օր, մի՛ պատարագեսցի նա ընդ մօր իւրում 'ի զոհս պատարագաց. քանզի գրեալ է վերագոյն քան զնա, ասէ. "Որթ կամ գառն յորժամ ծնցի, նոյն օրին մի՛ զոհեսցես ինձ. այլ զի լցցի նա կաթամբ իւրով զութ օր, և ապա մատուսցես": Այլ այս ինքն զի դաշն մօրն այրէ զգութ աղեաց իւրոց 'ի թօթափել սիրոյ մանկանն 'ի սիրտ մօր իւրոյ: Արդ զի մի՛ ցաւեցուսցէ զգութ աղեաց նորա, ընդերկարեաց զութ օր, որպէս զի ցածիցէ և զովասցի այրումն գթոյ աղեաց նորա, և ապա մատուցեալ լինիցի նա 'ի զոհս պատարագաց: Սոյնպէս և զթլփատութիւն՝ յաւուրն ութերորդի, ասէ, թլփատեսջիք, զի մի՛ 'ի ձայնէ ճչելոյ 'ի ցաւոց անտի չարչարանաց թլփատութեան մանկանն՝ նեղիցի չարչարիցի գութ աղեաց մօր նորա. մանաւանդ զի չէ 'ի մանուկն համբերութիւն, և յանդամս նորա զօրութիւն: Կամ պարզ ուղիղ՝ զի մի՛ ոք զենցէ ուլ և եփեսցէ զնա 'ի կաթն մօր իւրոյ. կամ զի մի՛ եփեսցեն զուլ և զմայր 'ի միասին. կամ զի կաթն սնուցիչ նորա՝ մի՛ եղիցի եփիչ նորա. այն զի և պահեն իսկ հովիւք մինչև ցայսօր ժամանակի, զի ոչ եփեն զուլ 'ի կաթն մօր իւրոյ: Դարձեալ, մի՛ եփեսցեն զուլ 'ի կաթն մօր իւրոյ. այս ինքն զանդրանիկս խաշանց քոց վաղվաղակի մատուսցես ինձ, զի մի՛ ագահեսցես դու 'ի վերայ նորա յորժամ աճիցէ: Այս իսկ է՝ զի ասէ. "Մի՛ գործիցես դու անդրանկօք զուարակաց քոց, և մի՛ կտրեսցես դու զանդրանիկս խաշանց քոց": Կամ այն իսկ է՝ զի ասէ. "Մի՛ հատուսցէ որդի զմերկս հօր իւրոյ":

"Ոչ զթիւ աւուրց քոց կատարեցից". զի ոչ եթէ կէտ ինչ էր, ոչ ամենայն մարդոյ, այլ Իսրայէլի. այս ինքն զի մի՛ եղիցի կին ամուլ, և այր անսերմն. այլ բազմասցի զաւակ քո, և մի՛ մեռցի յառաջ քան զծե-

լնանալ, այլ կատարեալ աւուրք իւրեանց. Իբրև զայն՝ զի ասէ Դաւիթ. "Բայց եթէ մեռցի 'ի պատերազմի, կամ տէր հարցէ սպանցէ զնա, կամ օրհաս իւր հասցէ,,: Եւ եթէ օր նորա է՝ զիա՞րդ 'ի պատերազմի. և եթէ 'ի պատերազմի՝ ոչ էր օր նորա: Երկիս դնէ անդ. եթէ ապրեսցի յերկուց անտի, հարկ է ծերանալ և 'ի մահիճս իւր մեռանել:

"Մ՛եղուս, ասէ, առաքեսցէ տէր առաջի քո,,. զի յայտ արասցէ զքաղցրութի̅ պտղոյ երկրին պարգևաց տիրելեաց իւրոց, և դառնութի̅ որոյ ատելեաց իւրոց. զի քաղցրութի̅ 'ի բերանոյ նորա ճաշակեալ լինէր, և դառնութի̅ 'ի խայթոց նորա չարչարէր: Կամ զի լուան նոքա՝ թէ ազգք բազումք են, զի մի յորժամ յաղթեսցեն, ասիցեն՝ թէ մեք յաղթեցաք. Իբրև զայն զԳեդէոնին. "Եւ, ասէ, առաքեմ զօրս,,. Իբրև ոք զի ասիցէ՝ իբրև զմարախ: "Մեղուս առաքեսցէ տէր,,. զայնոսիկ՝ որ 'ի ձեռս ձեր հանդերձեալ էր տ̅ծ հարկանել սատակել զնոսա վասն անհաւատութե̅ նոցա: "Առաջի մեղուաց,,. այս ինքն առաջի անարգ և արհամարհ մեղուաց տկարացուսցէ զնոսա: Փոխանակ այնր՝ զի ասէ "Առաքեցից զմեղուս առաջի քո,,. հերքայեցի, "Առաքեցից զհարուածս իմ առաջի քո, և սատակեցից զքանանացիս,,, այլովք հանդերձ:

Իսկ այն՝ զի ասէ "Ոչ սակաւ սակաւ սատակեցից զնոսա, զի մի գազանք անապատի բազմասցին,,, զայս կամեցաւ նա ասել. զի մի բազմասցին 'ի վերայ քո մեղք չնութէ̅[1]. զի նոքօք ուսանէին նոքա ոչ եթէ յայտնի պատերազմ, այլ ծածուկ. զ՝ 'ի դադարել 'ի մէնջ[2] արտաքին թշնամեացն՝ զարթիցեն 'ի վերայ մեր ներքին թշնամիքն: Արդ զարթնուն 'ի վերայ յայտնի թշնամիքն, զի մի երբէք զարթիցուք և ցածուսցուք զծածուկ զթշնամիսն, և զի թերևս ապաշխարեսցեն և հեթանոսք: ՅՅակոբէ ասէ. "Ես իջից ընդ քեզ, և ես հանից զքեզ անտի,,: Եւ զի ցուցցէ՝ թէ ոչ մոռացաւ զնոսա, հնազանդեցան նոքա 'ի գործ աղիւսարկին, ցոյց նոցա յետ փրկելոյն նոցա աղիւս մի շափիւղայ, այս ինքն խորհուրդ ծովու. և աղիւսն

1 Յօրինակին չնութեան:    2 Յօրինակին 'ի մէջ:

նշան հնազանդութեան ։ Եւ այն՝ զի ասէ "Իբրեւ զգոյն երկնից". հեբրայեցի, "Իբրեւ զտեսիլ երկնից". այս ինքն սուրբ ։ "Եւ 'ի վերայ ծերոց ոչ ձգեաց զձեռն իւր հովանի առնել 'ի վերայ նոցա, զի մարգարէացին". զի վասն տեսանելոյ եղեալ էին նոքա անդր ։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Ի վերայ ծերոց ոչ ձգեաց զձեռն իւր". հեբրայեցի, "Եւ առ Մովսէս զարիւնն և ցանեաց, ասէ, 'ի վերայ սեղանոյն և 'ի վերայ ժողովրդեանն". այս ինքն՝ զի ոչ կարացին 'ի վերայ ամենայն ժողովրդեանն ցանել զարիւնն. բայց միայն 'ի վերայ այնոցիկ որ մօտն էին առ նա, ասէ. "Եւ տեսին զած Իսրայէլի և այլ քն և, յորոց վերայ ոչ եհաս արիւնն. կերան և արբին և ուրախ եղեն" ։ Եւ այն՝ զի ասէ "Ըստ նմանութեան որ երեւեցաւ քեզ 'ի լերին անդ", զի կարծիս տացէ նոցա թէ այսպէս իցէ յերկինս, զի եղիցին շքեղ և անհապին. և զի մի կարծիցեն եթէ այսօր խորհեցաւ թէ եղիցի այսպէս ։

ԳԼՈՒԽ Զ

"ԵՐԵՒԵՑԱՒ, ասէ, ժողովուրդն թէ յամեաց Մովսէս 'ի լերին անդ, կուտեցան 'ի վերայ Ահարոնի և ասեն ցնա. արի արա մեզ աստուածս, որ առաջնորդեսցեն մեզ. զի Մովսէսն այն, ասեն, որ եհան զմեզ յերկրէն եգիպտացւոց, չգիտեմք զի՞ եղեւ նմա. արդ ծն արի արա մեզ աստուածս, որ առաջնորդեսցեն մեզ" ։ Եւ յայսմանէ ուսաւ և Յորոբովամ, զի ոչ եթէ մի որթ միայն խնդրէին նոքա. բայց Ահարոն զմին արար, և զմիւսն արգել. զի այնու զոր արարն՝ ժողովեսցէ զանօրէն զբարսն. և այսու զոր ոչն արար՝ հաւանեցուսցէ զանձն իւր հաւատացելոց ։ Եւ զի՞արդ արդեւք խնդրեաց Ահարոն իւր պատճառս՝ թէ մի է ած, միայն արժան ձեզ առնել. զհաւանութիւն նոցա ընկալան, և ձայն բարբառոյ նոցա 'ի բազմաց անտի ոչ դադարեաց. ասեն. "Այս են աստուածք քո, Իսրայէլ" ։ "Եւ ընդէր, ասեն, հաներ զմեզ յերկրէ անտի՝ որ բղխէր զկաթն և զմեղր" ։ Եթէ չար եղեւ՝ որ եկին, թշնամանեցին

զկուռսն իւրեանց. և եթէ բարի էր, զրկեցին զաստուածն իւրեանց: Կշտեաց ծովն զժողովուրդն և զհեթանոսս, զի մի ասասցեն իբրև զայն. "Ած լեռանց է ած նոցա":

"Արա դու մեզ, ասեն, աստուածս": Ո՜վ մոլորութիւն բազմաց. զիա՞րդ նեղէր նա զմարդն լինել նմա արարիչ աստուածոց: Զի այն՝ որ արարն նոցա աստուածսն, զնա խսկ արժան էր նոցա առնել իւրեանց աստուած. այլ նոքա՝ որ մոլորութեամբ կուրացան, այսպէս կարծէին եթէ մեծ իցէ գործն քան զառնելի գործոյն: Զի այն՝ որ զմանանայն և զլորամարգին հանդերձ ամենայն բարութեամբք՝ զոր հանդերձեալ էր և տալ նոցա, ետ նոցա. զի ոչ եթէ գնով տայր նոցա կերակուրս, այն՝ որ մեծամեծ փորձանօք գնեաց զնոսա յԵգիպտոսէ. և ոչ եթէ տրտունջելով տայր նոցա զվերջինսն, այն որ ողորմութեամբ և գթութեամբ արար զառաջինսն. զի զփոխարէն չարեաց ընդդէմ Եգիպտացւոց 'ի մէջ Եգիպտոսի ընդունէին. այլ պահէր նա զբարիսն զոր առնէր. զի յառնելն նոցա եղիցին նոքա բով քննութեան առողացն իւրեանց. զի յանդիմանեալ կշտամբեսցին նոքօք եթէ այսոքիկ չէին արժանի: "Ահա, ասեն, աստուածք քո, Իսրայէլ": Եւ եթէ էր նոցա պագեալ երկիր գառինն փոխանակ որթուն, գոյր 'ի նմա հաւանութիւն. թէ վասն փրկութե՟ գառինն զատկաց մոլորեցան նովաւ, և երկիր պագին նմա: Այլ ոչ պագին նոքա երկիր գառինն զատկաց, զի տեսին 'ի նմա զխորհուրդ ա՟ծութե՟ն. ատեցին նոքա զա՟ծութիւն և զխորհուրդս նորա, իբրև զայն՝ զի ասէ "Մի մարգարէանայք դուք մեզ յանդիմանութիւն. և բարձէք խափանեցէք դուք 'ի մէնջ զսուրբն Իսրայէլի":

"Թող տուր ինձ, ասէ, 'ի բաց կաց. թող հարից[1] սատակեցից ջնջեցից զժողովուրդդ": Ես հողս զտէր, մոխիրս զա՟ծ. արարեալս զարարիչ, հաստատեալս հաստիչ: Եւ եթէ մեծարել մեծացուցանել կամիս դու զիս, յո՞յր աչս մեծացուցանես դու զիս. եթէ յաչս ժողովրդեանն, ժողովուրդ ժպիրհ յամառոտ է նա.

1 Յօրինակին հանից:

և փոքրկանաս դու 'ի միտս նորա , և լինին նոքա ասել՝ եթէ ոչ Մովսիսի լեալ էր , սատակէր զմեզ յանապատի անդ ։ Բայց զի ասես դու զիս՝ Թող տուր ինձ . զի՞նչ արասցես ։ Զի ջնջել զժողովուրդն ։ Միթէ դարձեալ զեգիպտացիսն՝ որ մնացինն . ոչ ։ Իսկ ապա զամաղեկացիսն , կամ զքանանացիսն . ոչ ։ Ապա թէ ոչ զո՞ ջնջես . զժողովուրդն , զզաւակն աբրահամեան , զորդիսն Սահակայ , զծնունդս Յակոբու . զայս՝ զոր հաներ դու յերկրէն եգիպտացւոց . զայս՝ զոր կոտորեցեր զեգիպտոս , և սատակեցեր 'ի ծովու անդ զեգիպտացիսն վասն դորա . զայս՝ զոր փրկեցեր դու առաքինութեամբ . զայս՝ զոր լուան հեթանոսք ամենայն զփրկութիւն դորա ։

Զի՞նչ ասիցեն հեթանոսք որ շուրջ իցեն , կամ եգիպտացիքն . զրպարտեն զքեզ հեթանոսք և եգիպտացիք , և լինին նոքա ասել . ոչ գիտէր նա զայն ժողովուրդ մինչև փորձեաց և առ զչափ նորա . այլ եթէ գիտէր նա զնոսա , ընդէ՞ր յետ փրկելոյն զնա դարձաւ սատակեաց զնոսա յանապատի անդ ։ Եւ եթէ այս 'ի միտի էր քո , թող փրկեալ էր զնոսա դոյզն փրկութեամբ , և ոչ էր զգացեալ հեթանոսաց զփրկութիւն նոցա , քան այսօր՝ զի լուան հեթանոսք զառաքինութիւն զոր արարեր դու նմա . և արդ կամիս դու սատակել կորուսանել զնա ։ Զի՞նչ ասիցեն . ո՞չ ահա համարին նոքա զողորմութիւնսն շնորհաց քոց չարութիւն , և լինին ասել՝ զի եթէ վասն այսր հան զնոսա յերկրէն եգիպտացւոց սատակել զնոսա յանապատի անդ , միթէ գերեզմանք ո՞չ էին յերկրին եգիպտացւոց . կամ ո՞չ էին արժանի թաղել անդ , և վասն այնորիկ հան զնոսա . և զի՞նչ հարկ էր առաքինութիւնս այնորիկ փրկել զժողովուրդն , զի զդիակունս նոցա գերեզմանաց արժանի ոչ եղեն ։ Կամ զեգիպտացիսն ընդէ՞ր կոտորեաց սատակեաց վասն ժողովրդեանն , զի այսպիսի վախճան կատարածի պահելոց էր նմա ։ Կամ թերևս ոչ կարաց տանել զնոսա յայն երկիր խոստացեալ երդմամբ հարցն իւրեանց , վասն այսորիկ հար սատակեաց կորոյս զնոսա 'ի մէջ լերանց ։

Զի՞ս իսկ չարարին յամօթ եգիպտացիքն 'ի ժա-

մնացակի՝ խորհ. չոգայ ես փրկել զնոսա, ասէին զիս. զմի՞լ եկեալ փրկելդ դու: Ասեմ ցնոսա՝ զժողովուրդ-իմ: Ասեն նոքա եղբ. յորմէ հետէ և այսր եղև այս ժողովուրդ՝ ժողովուրդ իմ, ահա ընդ մեզ երկիր պա-գանէ սա կռոց, և առաւել ևս քան զմեզ նոքա նուիրին նոցա: Մուտ դու, և տես 'ի սենեակս նոցա զիա՞րդ պագանեն նոքա երկիր որթուցն՝ զոր ուղղեալ և եդեալ է նոցա: Եթէ ընդունիս դու զՀեբրայե-ցիս համդերձ որթուքն իւրեանց, ապա մի փրկեր զնոսա, զի 'ի պաշտամանէ մերմէ նոքա ոչ փոխին: Եւ եթէ ոչ հաւանիս դու, դայ գործն 'ի մէջ, և հաւանեցուցանէ զքեզ: Երէկ ընդ մեզ որթուց եր-կիր պագանէին. և յորմէ հետէ դու եկիր եղե՞ն նո-քա ժողովուրդ որոյ մի ած է: Զայս նախատինս լը-ւան ականջք իմ յերկրէն եգիպտացւոց. և չար թուե-ցաւ ինձ, զի զայս ասացին նոքա յականջս իմ, քան զայն՝ զոր արարին կախարդքն յանդիման իմ: Եւ ես 'ի բանս քո հաստատեալ կայի, զի առաքեցերն զիս. նա փոքր մի և ես գիտէի զնոսա, զի ընդ նոսա իսկ սնեալ էի ես: Կարէի ես թաքչել անդէն յերկրին եգիպտացւոց. 'ի նոցանէ իսկ երկեայ ես առաւել, քան 'ի Փարաւոնէ. զի նոքա իսկ չարախօսեցին զի-նէն, և դառնային մատնէին զիս: Դու առաքեցեր զիս յետ փախչելոյ իմոյ. և ես այսպէս ակն ունէի՝ թէ փոխեցան նոքա 'ի բարոյից անտի իւրեանց, և վասն այնորիկ առաքեցեր դու զիս. և վասն յուսոյ ապաստանի բանիցն քոց անգոսնեցի անարգեցի զար-համարհանս և զչարախօսութիւս եգիպտացւոց:

Արդ զի՞ ասացեր դու ինձ, բան "Թո՛յլ տուր, 'ի բաց կաց: Թող հարից սատակեցից ջնջեցից զնա": Եւ զբարուոքս որ են 'ի նմա՝ և զնոսա՞ ջնջիցես, և ըզ-ծե՞րսն կորուսանիցես դու, և զտղա՞յսն սատակիցես դու. և զիս զի՞նչ առնիցես դու, և զի՞ս սպանանիցես դու. կամ զիս միա՞յն թողուցուս դու: Եւ ո՞չ լաւ իցէ ինձ մեռանել առաջի նոցա, քան եթէ 'ի կեանս իմ տեսանիցեմ ես զայն աղէտ տարակոյս ապակա-նութեան: Թէ այդ այդպէս իցէ, ե՞ս ուրեմն մեղայ քեզ, և ինձ բազմացուցանել յաճախես զտանջանս չարչարանաց 'ի թողուլ քո զիս տեսանել ինձ զգա-

զանս երկրի և զթռչունս երկնից, զի գայցեն ուտիցեն զմարմինս զայնոցիկ՝ զոր հաներ դու յերկրէն եգիպտացւոց առաքինութեամբ։ Արդ զի՞նչ արարից յետոյ, կամ յո՞ երթայց ես, կամ ո՞վ առնուցու յանձն դարձեալ ընդունել զիս. յԵգիպտո՞ս երթայց, կամ առ ամաղեկացիս և առ քանանացիս երթայց պանդխտուք. զպաշտօ՞ն նոցա պաշտիցեմ, թէ 'ի քեզ հաստատեալ կայցեմ։

Արդ յորժամ հարցանիցեն զիս և ասիցեն. զո՞վ պաշտես դու. զի՞նչ ասիցեմ։ Ասեմ զա̃ծ Իսրայէլի։ Ասիցեն զիս. զայն ա̃ծ պաշտես դու, որ սատակեաց կորոյս զժողովուրդն իւր. ո՛չ ահա նա ասէր՝ որդի իմ է. ո՛չ ասէր՝ անդրանիկ իմ է։ Զիա՞րդ գգուեաց սիրեաց բարձրացոյց զնա, և դարձեալ միւսանգամ անդրէն խոնարհեցոյց կործանեաց զնա. արդ դու ո՞վ ես. եթէ 'ի նոցանէն իցես դու, զիա՞րդ ոչ սատակեցար դու ընդ նոսա յանապատի անդ. և եթէ չիցես 'ի նոցանէ, զիա՞րդ պագանես դու երկիր ա̃յն նոցա։ Զի՞նչ ասացից նոցա. ստեցի՞ց, դանդաչեցի՞ց. ասիցեմ թէ չեմ 'ի նոցանէ. նա թլփատութիւս և շաբաթն և ընտրութի̃ կերակրոցն յանդիմանեն զիս։ Եւ եթէ ասիցեմ՝ թէ 'ի նոցանէն եմ, ասեն. իսկ դու զիա՞րդ ապրեցար։ Զի՞նչ ասիցեմ ցհեթանոսն՝ առ որս եմն երթանայցեմ. ասե՞մ Մովսէս եմ ես։ Լինին նոքա նախատել զիս և ասել. ո՞չ շատ իցէ քեզ այն, զի աւերեցերն դու զԵգիպտոս և սատակեցեր կորուսեր զժողովուրդն. զի՞ եկիր դու դարձեալ այսր. միթէ պատրել հանե՞լ կամիս դու զմեզ յանապատ սատակել կորուսանել և զմեզ եւս, որպէս սատակեցեր կորուսեր դու զժողովուրդն՝ զոր հաներ յերկրէն եգիպտացւոց։

Արդ զայս արասցես դու ժողովրդեանն, որ չորք անկիւնք լուան զփրկութիւն՝ զոր արարեր դու նմա։ “Թո՛յլ տուր ինձ, ասէ, թող սատակեցից ջնջեցից զժողովուրդն„։ Եւ յորժամ ջնջես դու զնոսա, ես 'ի մէջ հեթանոսաց վասն օրինաց քոց և վասն այլոյ ընչի ոչ կարեմ երթալ. զի՞նչ արասցես դու զիս, եթէ շնորհս ողորմութե̃ առնիցես ընդ իս, յայսմիկ՝ զի միայն թողուցուս զիս. մահ լաւ իցէ ինձ քան

զայս կեանս. Թափուր է ինձ անապատս աւերակ: Արդ զի՞նչ առնիցես, զի մնամ ես միայն 'ի սատակման նոցա. կամ թէ զորդիս նոցա Թողուցուս դու, և այն որդիքն ո՞չ ահա որդիք են նոքա հարցն այնոցիկ:

Մի՛ տրտմիր դու, ո՛վ Մովսէս. յաղագ մեծ և 'ի հզօր արարից զքեզ: Տէր, ազգին՝ որում իշխան կացուցանես զիս, ուստի՞ իցէ. յոչընչէ՞ հաստիցես զնա, թէ յերկրէ աստի ստեղծուցուս զնա. կամ թէ 'ի վերայ եգիպտացւոց դարձուցանիցես կացուցանիցես զիս, թէ 'ի վերայ քանանացւոցն այնոցիկ՝ զորս մեքն երթամք հարկանել և սատակել զնոսա վասն գործոց իւրեանց չարաց. թէ զհեթանոսս ածիցես դու 'ի հեռաստանէ, և կացուցանիցես զիս իշխան 'ի վերայ նոցա: Եւ այն ժողովուրդ՝ զոր ածիցես դու կամ յարուցանիցես, ո՞չ մեղանչիցէ. կամ յորժամ մեղանչիցէ, և զնա նո՞յնպէս առնիցես դու: Եւ եթէ այսպէս առնիցես դու զնա, լաւ իցէ նմա թէ ոչ հաստիցի և ոչ եկեսցէ, քան եթէ յետ հաստելոյն դարձեալ միւսանգամ այսպիսի կատարած լինիցի նմա:

Արդ զիա՞րդ ընդունիցին զիս ժողովուրդն՝ զոր ածիցես դու, կամ առ քեզ զիա՞րդ հաւանիցին գալ. նշանս և սքանչելիս մեծամեծս քան զայս՝ որ եղեն յերկրին եգիպտացւոց և յանապատի աստ՝ թէ առնիցեմ ես 'ի մէջ նոցա, փոխանակ զի ընդունելով ոչ ընդունիցին զիս, և դարձեալ նախատիցեն զիս և կարդայցեն զիս սպանող ժողովրդեան իւրոյ և սատակիչ որդւոց ազգի իւրոյ, և գալ ընդ իս ոչ հաւանիցին. և զի՞նչ քարոզիցեմ ես նոցա. զառաքինութիւն՝ որ յերկրին եգիպտացւո՞ց արարեր, թէ զսքանչելիսն՝ զոր արարեր յանապատի աստ: Եւ յորժամ հարցանիցեն զիս և ասիցեն. ո՞ւմ եղև այս զոր քարոզես դու. արդ զի՞նչ ասիցեմ: Ասեմ՝ ժողովրդեանն. և եթէ ասիցեն ո՞ւր է. ասեմ՝ սատակեցան. ասիցեն ո՞ւր են աւետիքն և պարգևքն տանն Աբրահամու, և ո՞ւր է այն զի ասէրն "Ի դարս չորրորդ դարձցին նոքա այսրէն". կամ զերդումնն զոր երդուաւ Աբրահամու և ասէ. "Ի զաւակի քում օրհնեսցին ամենայն ազգք": Զայս յորժամ երկրորդեսցեն

ինձ, զի՞նչ ասիցեմ նոցա։ Ասեմ համարձակ. վասն զի երկիր պագին նոքա որթուն, դարձաւ և նա յայնմանէ զոր ինչ և խոստացաւ նոցա։ Եւ զի՞նչ, ասեն, հարկ էր նմա խոստանալ երդնուլ, իբրու գիտէր զնոսա՝ թէ այսպէս են։ Արդ մեզ զի՞ քարոզես դու և ասես. մտանեմք մեք ժառանգել զերկիրն զոր երդուաւ տալ Աբրահամու և զաւակի նորա։ Եւ զաւակ նորա, որ հաճոյ եղև նմա և երդուաւ նմա; ոչ կարաց մտանել, արդ զմեզ տանի՞ նա և մուծանէ այն՝ որ զայնոսիկ ոչ տարաւ մոյծ։ Եւ յայսմիկ իբրև զխաբեբայ թուիցիմ, և իբրու աղուփոխ. համարիցիմ ես նոցա, և հաւանել չառնուցու յանձն։

“Թո՛յլ տուր ինձ, ասէ, թող կոտորեցից ջնջեցից զժողովուրդդ„. և այս՝ զի ցուցէ նմա դուռն՝ խընդրել վասն նոցա։ Զի եթէ սատակել զնոսա խընդրէր, Մովսէսի ոչ յայտնէր. և եթէ ջնջել զնոսա կամէր, խրամակարկատ ժողովրդեանն ոչ ցուցանէր. դատաւորն առ խնդրող բարեխօսն ոչ գայր. և պատժարարն առ այն՝ որ ունէր զնախապետութիւն ժողովրդեանն։ “Թո՛յլ տուր ինձ, ասէ. թող սատակեցից ջնջեցից զժողովուրդդ, և զքեզ արարից յազգ մեծ„։ Եւ ոչ առ յանձն Մովսէս, զի եղիցի և այս ես վասն փառաց նորա. զի փոխանակ փոքր ժողովրդեանն իւրոյ աղաչեաց զի ապրեսցին, և մեծ իշխանութիւն ակն ոչ առ. զի 'ի փորձ քննութեան մոյծ զնա և յայսմիկ ես։ Եւ զի ետես ա͞ծ զճշմարտութի͞ն նորա, առ ակն աղօթից խնդրուածոց նորա։ “Արարից, ասէ, զքեզ յազգ մեծ„. և ոչ կամեցաւ նա հրաժարել յայնցանէ, որք հրաժարեցինն 'ի նմանէ։ “Ո՞վ, ասեն, արար զքեզ իշխան և դատաւոր 'ի վերայ մեր„։ Ո՞չ կամիս դու քարոզել այլոց, ահա քարոզէ զքեզ ազգն մեծ։ Ո՞ր. հեթանոսք։ Եւ զօրագո՞յն է քան զժողովուրդն. այո. զի ասէ նա վասն Իսրայէլի. “Դուք նուազ էք քան զամենայն հեթանոսս„։ Եւ բանն նորա վկայեաց՝ թէ լաւագոյն է ազգն այն քան զայն, որում Մովսէսն առաջնորդէր։ Եւ եթէ վասն դարուն այնորիկ ասաց, որդիք նոցա ո՞չ ահա անդ էին. զի որդւոց նոցա ոչ էր լեալ Մովսէս առաջնորդ։ Եւ զի՞արդ ասաց “Արարից զքեզ

յազգ մեծ և 'ի հզօր քան զնոսա »: Այլ այս՝ փոխանակ զի տրտմեցաւ Մովսէս վասն նոցա. որպէս Շմուէլ՝ զի տրտմեցաւ վասն Շաւուղի, ասէ ցնա. «Երթ օծ դու զԴաւիթ »:

Զի տեսին նոքա զպայլթիւն երկնից, և զփայլիւն փայլատականց, և զթանձրութին ամպոցն զօրութեն. և իբրև այն՝ թէ անդ միայն իցէ և ոչ ընդ ամենայն տեղիս. այլ զի արկցէ զահ և զերկիւղ իւր 'ի վերայ նոցա. «Քաջալերացարուք պինդ կացէք, զի փորձել, ասէ, եկն առ ձեզ տէր ած. զի տնկիցէ 'ի սրտի ձերում զերկիւղ զահի իւրոյ »: Թէպէտ և զայս արար ընդ նոսա, սակայն կալ մնալ զայն զքառասուն օր ոչ կարացին համբերել:

Ասէ ցՄովսէս. «Անօրինեցաւ, ասէ, ժողովուրդն քո »: Եւ իբրև ետես Մովսէս՝ թէ մեղան նոքա, զի ցրեաց զնոսա Ահարոն. և եթէ Ահարոն յանցոյց զնոսա, զիա՞րդ ոչ ընկալաւ նա զպատիժս պատուհասից: Այլ քանզի Մովսէս զԱհարոն և զՈւր հրամայեաց 'ի վերայ ժողովրդեանն. և ինքն գնաց, յայտ առնէ մեզ բանն Ահարոնի՝ եթէ զՈւր քարկոծելով քարկոծեցին. յասել իւրում «Սակաւիկ մի ևս քարկոծ առնեն զիս »: Եւ տրտմեցաւ Մովսէս վասն նորա. զի երկեաւ նա, զի մի՛ քարկոծ լիցի՝ որպէս ընկերն իւր: Բայց ոչ լի կատարեալ տրտմեցաւ վասն նորա. զի և ոչ տր ած 'ի վերայ նորա զպատիժս պատուհասից, և ոչ Մովսէս գրեաց 'ի վերայ նորա խըրատ ըստ անուանն յանցանացն: Եւ զի գրեաց զկնի նորա պակասութին, իբրու չիք զկնի նորա յանցանք, զի մի՛ եղիցի զրոյց նոցա գայթագղութին. և կարծիցեն թէ անխառութեն թողլ եռ՝ անփոյթ արար 'ի նըմանէ: Յայնմիկ՝ զի ասէ «Սակաւիկ մի ևս քարկոծ առնեն զիս », յայտ արար՝ թէ աւելի քան զզօրութին նորա հակառակեաց կաց ընդդէմ նոցա, զի խըռտաննայր սիրտ նոցա. զի եթէ մեռեալ բարձեալ էր նա յերեսաց նոցա, զի այլ առաջնորդ և գլուխ էր հրամայեալ նոցա առ 'ի Մովսիսէ: Զի եթէ զերկոսին քարկոծեալ էր նոցա, ո՞վ կարէր կալ առաջի նոցա. նոյն ժամայն անդրէն դառնային, և մտանել յԵգիպտոս փութային: Զօրացան 'ի վերայ եգիպ-

տացուոցն. և Փարաւոն և զօրութիւնք նորա ընկղմեցան: Եւ փոխանակ զի գոհացցին, սկսան սիրտք նոցա երգիծանել մեղօքն. և 'ի նշանաց և 'ի սքանչելեաց անտի՝ որ շուրջ պատեալ էր զնոքօք, ոչ ամաչեցին. և 'ի Մովսիսէ ոչ երկնչէին՝ թէ զուցէ իջանիցէ վաղվաղակի:

Արդ եթէ Ահարոնի զկամս նոցա չէր արարեալ, անդրէն յԵգիպտոս դառնային նոքա. վասն այսորիկ համբեր Ահարոն յանձն իւր և հաւանեցաւ նոցա, զի մի ժողովուրդն սատակեսցի յայս խստութք, և մի ինքն քարկոծ լիցի, և մի Մովսիսի տրտմութն եղիցի: Արդ արար նա խորհրդիւ, զի մի ժողովուրդն աւանց առաջնորդի եղիցին, և ապստամբեսցին. և հնազանդ եղև կամաց նոցա: Քանզի գիտաց նա՝ թէ այն ինչ ոչ նկարեցաւ 'ի խորհուրդս նոցա 'ի ծածուկ, այժմանի է պատժոց պատուհասից. և զի խրատեսցին նոքա մինչ դեռ 'ի ծածուկ է, գայթակղութիւն էր այն բազմաց: Արդ արար նա զկամս նոցա, քանզի գիտէր իսկ եթէ վասն այնորիկ մերժեցաւ հեռացաւ 'ի նոցանէ Մովսէս առ ժամանակ մի: Եւ զի ստուգեալ էր՝ թէ իջանէ Մովսէս, և խնդրէ զվրէժ 'ի նոցանէ, անփոյթ արար. որպէս զի յայտնի եղիցին ամենայն սիրելիք որթուն:

Այլ էջ Մովսէս և պատուհասեաց զԱհարոն. ոչ եթէ զի ոչ գիտէր՝ թէ ոչ է Ահարոն հաղորդ յանցանացն նոցա, այլ իբրև ետես թէ Ովր մեռաւ, և 'ի միտ ած՝ թէ իմաստութբ մեծաւ արար Ահարոն. և ունել շնորհս նմա 'ի ծածուկ էր յԻսրայէլէ, և յայտնի էր որթն ձուլածոյ: Եւ զի ժամանակ էր վրիժուց խնդրելոյ, զի մի եղիցի տեղի կարծեաց ակնառութեանն վասն նորա՝ իբրու նա է առնելի որթուն, սակայն աղատեաց զնա 'ի բամբասանաց, և զնոսա սատակեաց: Նախ ընդհարաւ ընդ նա, զի իբրև ետես Իսրայէլ՝ եթէ Ահարոնի ցասեաւ, երկեան զարհուրեցան յոյժ տալ պատասխանի Ահարոնի: Եւ անփոյթ առնելն այ, զի ոչ յիշեաց զյանցանս նորա, կամ ամենայն՝ զի ոչ յիշեաց ած 'ի վրէժխնդրութե անդ զյանցանսն Ահարոնի, զի աղօթս մատոյց վասն նորա Մովսէս առաջի տեառն Աստուծոյ: Զի 'ի

զգուշացուցանելն Մովսիսի զժողովուրդն յերկրորդյօրէնսն, բերէ զնա 'ի մէջ իմաստութեամբ և ասէ . "Նա և 'ի վերայ Ահարոնի աղաչեցի ես յայնմ ժամանակի „ . այս ինքն՝ ոչ եթէ ակն ինչ առ Աստուած, զի ոչ ած 'ի վերայ նորա զպատիժս պատուհասից . զի ես աղաչեցի վասն նորա ։ Այլ այս՝ զի ասէ աղաչեցի, 'ի հարցանել խնդրել եդ զնա ։ Վասն էր զամենայն Իսրայէլ որպէս զԱհարոնն ոչ ապրեցուցեր, ով Մովսէս ։ Սակայն և այս 'ի միջի եդեալ է ։ Զի եթէ գիտէր ած՝ եթէ չարաչար խնդրեաց Մովսէս, ոչ առնու յանձն . և այն՝ զի ասէ "Ողորմեցայց որում ողորմեցայց, և գթացայց 'ի վերայ՝ յորոյ վերայ գթացայց „ ։ Եւ իբրև այն՝ զի 'ի վերայ Ահարոնի և 'ի վերայ ղևտացւոց ասացեալ է՝ գթացայց . և 'ի վերայ այլոցն, զի ոչ հաւանեցան՝ ողորմեցի ողորմելով ։ Բայց ոչ դարձեալ պատուհասեցաւ, զի առ յայն եղև քննութիւն փորձանաց նոցա . և ոչ կարէր նա արգելուլ զնա . իբրև զայն զԴաւթին, իբրև կամեցաւ ած խրատել զժողովուրդըն, ոչ եղև կարող Դաւիթ արգելուլ . քանզի 'ի ձեռն նորա իսկ սկիզբն արար խրատն ամենայն ժողովրդեանն ։

Որդ յանփոյթ առնելոյ անտի այ, և 'ի տալ պատասխանի Ահարոնի, գիտասջիր՝ զի վասն էր ոչ ընկալաւ նա զպատիժս պատուհասից, զի հայրապետ եղև նա կամացն այ . զի կամեցաւ նա քննել զնոսա յայն 'ի քառասնօրեայ ժամանակի ։ Արդ խելամուտ լեր դու, զի ոչ եթէ ըստ մեծութե գործոյն պատուհասեաց զնա Մովսէս . վասն այսորիկ և Դաւիթ, զի գիտաց նա՝ թէ ոչ գտաւ 'ի նմա արատ ինչ, ասէ սուրբ է Մովսէս . և ոչ դադարեաց . այլ ած հաւասարեաց ընդ Մովսիսի զԱհարոն ևս . "Եւ Ահարոն, ասէ, 'ի քահանայս նորա „ ։

## ԳԼՈՒԽ Է.

Եւ իբրև էր Մովսէս 'ի լեառն, Յեսու ընդ նմա էր. ապա թէ ոչ՝ ոչ տայր նոցա թոյլ անուանն Յեսուայ երկիր պագանել կռոց։ Այլ իբրև ելին նոքա 'ի լեառն անդր, Յեսու մնաց 'ի խոնարհ անդր, և Մովսէս ել 'ի վեր. զի ահա 'ի դառնալ անդ Մովսիսի և իջանել ասէ ցնա Յեսու. "Ձայն պատերազմի լսեմ ես 'ի բանակէ անտի"։ Զի եթէ 'ի բանակի անդ լեալ էր նորա՝ զայն ոչ ասէր, զի գիտէր նա թէ որթու երկիր պագին. և եթէ ընդ Մովսիսի էր՝ զայս ոչ երկրորդէր նմա, զի լսէր նա զայն. զի ասաց "Անօրինեցաւ ժողովուրդն քո"։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Զձայն բարբառոյ մեղաց լկտութեան լսեմ". հեբրայեցին, "Ձայն բարբառոյ երգոց լկտութեան"։

Եւ եղև իբրև մերձեցան 'ի բանակ անդր, հայեցաւ ետես, ասէ, Մովսէս զորթն, և շուրջ զնովաւ զկաքաւիչս պարուն. բարկանայր 'ի սրտմտութեան իւր, զձեռն զձերբ ածէր, և ընկենոյր զտախտակսն քարեղէնս՝ խորտակէր անդէն առ ստորոտ լերինն։ Ընկէց զտախտակսն ընտիրս, զի ձեռք պիղծք զնա մի ընկալցին. ջնջեաց զգիրն սրբութեան, զի աչք պիղծք ընդ նա մի հայեսցին. ընկէց զօրէնսն 'ի ձեռաց իւրոց, զի անիծեալ բերանովն՝ որով զորթն համբուրեաց, մի ընթերցցի զնա. զոր օրինակ ոք զձեռն զօձեօք արկանէ և զպատմուճան պատառէ՝ յորժամ տեսանիցէ թշուառութիւն ինչ 'ի տան իւրում, սոյնպէս և Մովսէս բուռն հար և ձգեաց յինքն, և պատառեաց զպատուիրանսն իբրև զպատմուճան մի 'ի տեսանել նորա զկռուսն, որ կապուտ կողոպուտ արարին զսիրտ որդւոց ազգի ժողովրդեանն իւրոյ։ Իբրև ետես զայն զնծութիւնն՝ թէ 'ի ձեռն տախտակացն իջանէ և խառնի ընդ մարդկութիւն, 'ի ձուլել որթուն խառնեաց զնոսա ընդ կռապաշտութիւն։

Խորտակեաց Մովսէս զտախտակսն սրբութեան, զի յայտ արասցէ՝ թէ ոչ եղև ժողովուրդն վասն տախտակացն, այլ տախտակքն վասն ժողովրդեանն. սոյն

պէս և տաճարն և քահանայութ՟ին և թագաւորու-
թ՟ին ։ Ոչ եթէ հրեշտակ գրեաց զպատուիրանսն 'ի
վերայ տախտակացն , զի ոչ եթէ նա է տուիչ օրի-
նաց . կոփածն մարդոյ , և գիրն ա՟յ . զի յայտնի լիցի
եթէ հաղորդեալ է ա՟ծ ընդ մարդոյ օրինօքն . ա՟ծ 'ի
տալ իւրում , և մարդ 'ի պահել իւրում ։ Ետ նա
մեզ զգիր օրինաց , զի տացուք մեք նմա զպահել օրի-
նացն . գրեաց զնա ձեռնն տիրացեալ , զի թեւակոխե-
ցի նովաւ ազատութ՟ին տիրացեալ . գրեաց զնա ա՟ծ ,
իջոյց զնա մարդ ։ Մովսէս քանզի ա՟ծ էր ժամանա-
կեան միոյ , և կտակարանք ժամանակեան տուան 'ի
ձեռս նորա . այլ տէր մեր քանզի ա՟ծ կատարեալ է ,
և կտակարանք նորա յաւիտենից են ։ Վասն Մով-
սիսի ասէ . "Ետու ես զքեզ աստուած Փարաւոնի ". 
բայց վասն Որդւոյ ասէ . "Ա՟ծ ամենայն երկրի կոչես-
ցի "։ Կտակարանքն Մովսիսի անկեան միոջ գաւա-
ռի միոյ փոքու . և Որդւոյ կտակարանք ամենայն ծա-
գաց երկրի ։

"Առ առ , ասէ , Մովսէս զորթն' զոր արարեալ էր ,
այրեաց զնա 'ի հուր , և խարտեաց զնա մանր և ցա-
նեաց զնա 'ի վերայ ջուրցն , և արբոյց որդւոցն Իս-
րայէլի "։ Եւ իբրև մտին ջուրքն աղացեալ որթուն
առ սիրտ նոցա , այն' որ սիրեաց զորթն , պատահեաց
որթն աղացեալ սրտով իւրով , և գոչեաց նա 'ի մէջ
որովայնից նոցա թէ այս սէր' սէր մեղաց է . և իբր ոք
զի ասիցէ , զի բերան չիցէ նորա խօսելոյն , իբրու զգլու-
խըս իւրեանց առաջի նորա խոնարհեցուցանէին , որ-
պէս իբրև թանիւ արգելցէ և կարձեսցէ զժպրհութ՟ին
համարձակութ՟ե նոցա ։ Իբրև եղև նմա տեղի և առ-
սեղան 'ի պատուէր հրամանի , յայտ արար զկամս
բնութ՟ե իւրոյ , զի ոչ հաւատարիէր նա ցանկութեան
ժպրհութ՟ե համարձակութ՟ե նոցա ։ Արդ գոչեաց
նա յորովայնի այնոցիկ' ոյք սիրեցին զնա , և մեծաւ
նախանձու զերկրպագուս իւր հեղձ պայթոյց . այս է
որթ' որ ծնաւ պոռնկութ՟ե , և աղացաւ նախանձու ,
և արբաւ օրինօք , և յղացաւ 'ի քննութիւն . զի ա-
մենայն սիրտ ամուլ' որ ոչ ընկալաւ զսերմն զամուս-
նութ՟ե սիրոյ նորա , ոչ ապականեաց զնա նշանն քըն-
նութ՟ե . քանզի ոչ գոյր 'ի նմա յղութիւն պաշտա-

մանն նորա։ Նա և աստի իսկ տուաւ օրինակն, և հաստատեցաւ պատուիրանն, զի ամենայն կին որ զանգանիցէ զարամբ իւրով, եկեսցէ նա առ քահանայն. զի 'ի գալն նորա առ քահանայն, 'ի ցուցանել զյատակ նախանձ իւր որդւոցն Ահարոնի՝ թէ ատեամ ես ըզշնութիւն, և ոչ եմ ես հաճեալ ընդ ամուսնանալ լինել կնոջն իմոյ՝ եթէ անցցէ նա ըստ ձանապարհ ամուսնութեան իմոյ, եղիցի 'ի յիշել և յիշեցուցանել զպոռնկութիւն որթուն։ Զի յայտնել կնոջն նորա, ջուրքն քննութեան զգուշասցի ինքն յանցանելոյ ըստ ձանապարհ ծյ իմոյ. մանաւանդ զի նախանձուն իւրով ազատի նախանձն ծյ. Եւ 'ի գալն նորա առ քահանայն, բարձցէ զեպերանս յայնմանէ՝ որ արդարութեամբն խնդրեաց զվրէժս պոռնկութեան ժողովրդեան իւրոյ։ Վասն այսորիկ գրէ 'ի ժամանակի իբրև յափըշտակեցին հեթանոսք զժողովուրդն նորա յասել իւրում. “Նախանձեցայ ես 'ի Սիոն նախանձ մեծ.„։

“Ո եստղ առ, ասէ, Մովսէս առաջի դրան բանակին և ասէ. հապա, եթէ ոք 'ի տէր պանձացեալ իցէ, առ իս մատիցէ։ Ցայն վայր վաղվաղակի հասանէին որդիքն Ղևեայ։ Սկսաւ խօսել Մովսէս և ասէ ցնոսա. այսպէս ասէ տէր ած Իսրայէլի. լցէք կատարեցէք զձեռս ձեր այսօր տեառն յարենէ եղբարց ձերոց, զի տուեալ լիցի 'ի վերայ ձեր օրհնութի„։ Որ. այն զոր ասաց, զի զեղբարս իւր ոչ ծանեաւ, գրեցէ նա խունկս 'ի բարկութեան քում։ Եւ զիարդ, ով տէր Մովսէս. առ վրէժխնդրութի անձին քո հեզ և հանդարտ ես դու, և առ գործ ծյ խիստ և սաստիկ ես դու։ Սակայն նմին իսկ Աստուծոյ նման լինէին երկրըպագուք [1] նորա. այն որ զիւրն անփոյթ առնէ, և զծառայիցն իւրոց վրէժ խնդրէ։ Զի թող նա այնոցիկ՝ որք երկիր պագին որթուն, և առ խնդրեաց զվրէժ յանցանէ՝ որք բամբասեցին զՄովսէս. սոյնպէս և Մովսէս։ Իբրև աղաչեաց Մովսէս, եթող ած զմեղս ժողովրդեանն։ Էջ Մովսէս, և առ խնդրեաց զվրէժ հատուցման 'ի նոցանէ նշանաւ ջուրքըն քննութե, և 'ի սուր սայր սուսերի զեռացուցին։

1 Յօրինակին Երկրպագուք։

թէպէտ և սպանութիւն պղծիչ է սպանողի, սակայն առ որդիսն Ղևեայ սուրբ է և յստակ, զի 'ի սպանանելն իւրեանց արդարացան, և 'ի հեղուլ իւրեանց զարիւն քաւեցան. որպէս Մովսէս 'ի սպանանելն իւրում առաքինացաւ. և Փենեհէզ յաշտիճան մեծութեան քահանայութեան եհաս. և Եղիա զքուրմս, և Շմուէլ զԱգագ:

“Արդ թէ թողուս նոցա, ասէ, զյանցանս թող. ապա թէ նոցա զյանցանսն ոչ թողուս, և զիս ջնջեա 'ի դպրութենէ քումմէ՝ զոր գրեցեր կենաց„: Բայց բազմացաւ գութ ողորմութեան ոչ քան զաղօթս խնդրուածոյ նորա. զի պատրաստեալ էր բարերարն հաշտել յասել իւրում. “Թոյլ տուր ինձ„. սակայն Մովսէս եղև ձեռնկալու շնորհացն ողորմութեան նորա, զի մի յառաջագոյն կանխեսցէ թողուցու ողորմածն իբրև չիցէ միջնորդ՝ որ խնդրեսցէ 'ի նմանէ. և լինելն այնուհետև բազում չար գործել:

Այլ ընդէ՞ր յետ թողութեան յանցանաց էջ Մովսէս կոտորեաց զժողովուրդն. և յետ թողլոյն տեառն գրեալ է, ասէ. “Հար տէր զժողովուրդն անհնարին հարուածովք„. փոխանակ զի պաշտեցին նոքա զորթ, և երկիր պագին նմա: Զի եթէ էր թողեալ զնոսա Մովսիսի առանց պատժոց պատուհասից, ժպրհէին համարձակելին նոքա յապստամբութիւն, և ուսուցանէին ևս որդւոցն իւրեանց զժպրհութիւն համարձակութեան անօրէնութեան մեղացն իւրեանց. վասն այսորիկ առ խնդրեաց զվրէժ հատուցման 'ի նոցանէն: Եւ եթէ ոչ էր առեալ նոցա զպատուհաս խրատուոյ, այսպէս կարծէին՝ թէ Մովսէս 'ի կամս իւր խնդրեաց զվրէժն 'ի նոցանէ, և ոչ ընդունելի լինէր գործըն նոցա: Մովսէս եղբարբքն իւրովք որդւովքն Ղևեայ կոտորեաց զնոսա, և ած նշանաւ ջուրբքն քննութեան խայտառակեաց զնոսա:

“Ապա թէ ոչ, ասէ, դու ինքնին երթիցես առաջի մեր, մի հաներ զմեզ աստի: Եւ զիա՞րդ, ասէ, գիտասցեն„: Եւ իբրև հաւանեցաւ առ յանձն, ասէ. “Ցոյց ինձ զփառս քո„: Զիա՞րդ լինիցիմք մեք որոշեալ մեկնեալ զատեալ յամենայն հեթանոսաց. այնոքիկ՝ որ հրեշտակք նոցա 'ի սպասու առաջնորդու-

թէ, եթէ ոչ դու ինքնին երթիցես առաջի մեր : « Եւ կոչեցի զքեզ յանուն իմ տէր ». իբրև զի ասէ . «Արարի զքեզ ած Փարաւոնի »: Եւ աստ կատարեաց արդեամբք յայտնիկ, զի իջին նստան փառք 'ի վերայ երեսաց նորա : « Քաւեմ զանօրէնութի և զմեղս և զանիրաւութի, և ոչ առնեմ անպարտ զպարտաւորն ». Հեբրայեցի, «Եւ խնդրելով ոչ խնդրեմ, ածեմ զմեղս հարց յորդիս և 'ի չորս դարս »: Ոչ եթէ զմեղս հարց կուտէ 'ի վերայ նոցա, այլ մինչև յորդիս և 'ի չորս դարս ներէ և երկայնամիտ լինի առ նոսա . յիշեցուցանէ զնա 'ի վերայ նոցա, զի խնդրեսցէ 'ի նմանէ, յայտնիկ զի ասէ . «Ոչ երթամ ես ընդ ձեզ, այլ հրեշտակ իմ ». «Տեսէք, ասէ, մի մեղանչիցէք . գուցէ ոչ թողուցու զմեղս անօրէնութե ձերոյ »: Ես, ասէ, թողում . և 'ի մէջ այսոց ասէ . «Ես եմ տէր ած ողորմած և գըթած, հատուցանեմ զմեղս յորդիս և 'ի չորս դարս ատելեաց իմոց ». այս ինքն այնոցիկ' որ կատարեալ լինին 'ի կարգս մեղաց հարցն իւրեանց քանանացւոց [1] : Այն իսկ է' որ Աբրահամուն ասացաւ . ասէ «Հնազանդեցի զաւակ քո զչորեքարիւր ամ »: «Եւ յորժամ լնուն, ասէ, մեղքն ամուրհացւոց, ապա ելցեն նոքա 'ի դար չորրորդ »: Զի չոգաւ նա ներելովն և երկայնմտութեն իւրով ընդ մեղաւորս մինչև 'ի դար չորրորդ . և իբրև ոչ դարձան յապաշխարութիւն, առ խնդրեաց զվրէժ հատուցման 'ի նոցանէն ստուգութիւն նորա : Փոխանակ այնր' զի ասէ «Ցոյց ինձ զճանապարհ քո, և ծանեայց զքեզ ». Հեբրայեցի, «Ցոյց ինձ զճանապարհ քո ». այս ինքն յաւուրցն Ադամայ : Եւ անդ, ասեն, յայտնեցաւ նմա այն' որ գրեաց վասն արարածոց :

Իսկ զի ասէ «Տեսցես զթիկունս իմ ». այս ինքն յետ հաստատելոյ աշխարհիս : «Եւ երեսք իմ քեզ մի երևեսցին ». մինչ չև հաստատեալ էր աշխարհ . տխմարքըն մտօք ասեն զայս . տէր մեր ասէ այն որ է առ ած մտօք իւրովք, նոյն իսկ է նմա տեսիլ առ աներևոյթ ած : Արդ Մովսէս ոչ եթէ տեսանել զած գոյիւ իւրով խնդրէր, այլ 'ի պատճառս խնդրելոյ նորա տե-

[1] Յօրինակին քանանացոց :

սանել զնա, քարոզեսցի՝ թէ ոչ երեւեցաւ եւ ոչ երեւի։ Իբրեւ զայն՝ զի ասէ “Թոյլ տուր ինձ, թող ջնջեցից զնա„. եւ մատեաւ նա խնդրել ստուգութի̃. իբրեւ այն՝ թէ արդարեւ խնդրէր Աստուած ջնջել զնա. բայց եթէ ոչ ժողովեսցէ զնոսա ամենեսին 'ի հարցանել, 'ի հարկէ մնացեալ լինին։ Մովսէս իբրեւ լուաւ զձայնն ա̃ծեղէն, իմացաւ թէ այս ձայն օտար է 'ի լսելեաց իւրոց, եւ գովելի է. վասն այսորիկ ասէ “Ցոյց ինձ զփառս քո„։ Եւ զի ասէ “Ոչ կարէ տեսանել զիս մարդ եւ ապրել„. եւ զոր օրինակ օտար են լսելիք քո այնմ ձայնի՝ զոր լուար դու, սոյնպէս եւ օտար է ակն քո այնմ տեսլեան՝ զոր խնդրեցեր դու տեսանել։ Մուտ նա յայրն, փայլեաց 'ի վերայ նորա լոյս. եղեւ նմա իբրեւ երկինք, անկաւ 'ի վերայ նորա ահ եւ երկիւղ. սկսաւ աղաղակել եւ ասել. “Տէր ա̃ծ ողորմած եւ գթած„, այլովքն հանդերձ։

Բայց դարձեալ զի յօժարէր նա տեսանել զա̃ծ, վասն սիրոյ կարծէր նա՝ թէ եւ տեսանել կարեմ. քանզի սէրդ ըստ ամենայն չափս զանցանէ։ Այլ ա̃ծ իբրեւ ետես զնա թէ ոչ միայն 'ի խնդրուածոց իւրոց, եւ ոչ տեսանել զնա բովանդակ է վասն բնութե̃ իւրոյ, ցոյց նմա որպէս եւ կարող էր տեսանել։ Եւ զի յայտ արասցէ՝ եթէ այն՝ որ հայի ընդ ա̃ծ՝ ծնեալ լինի նա վերստին, զի եղիցի նա իբրեւ զորդիս ա̃յ, մոյծ զնա յայրն իբրեւ յորովայն. եւ ծնաւ այլ ծնունդ զգեցեալ փառօք՝ որ ոչ 'ի բնութե̃ իւրում։ Եւ զի ասէ “Ցոյց ինձ զփառս քո„. զայս կամեցաւ խնդրել նա, զի ընդ նմա ճշմարտապէս խօսեցեալ լիցի յա̃յ, եւ ոչ միջնորդաւ. այս ինքն կամ հրով, կամ հրեշտակաւ, կամ բարբառով. այն իսկ է, զի խօսեցաւ ընդ նմա բերան 'ի բերան, եւ ձեռն 'ի ձեռն դէմ յանդիման։ Փոխանակ այնր՝ զի ասէ “Առաջի իմ երթիցես դու, զետեղեցից զքեզ„, հեբրայեցի՝ “Ես ինքն իսկ երթայցեմ առաջի քո„։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ “Յականէ յանուանէ գիտեմ ըզքեզ„. հեբրայեցի, “Ծանուցից քեզ„ ասէ. իբրեւ զայն զԴաւթին, ասէ “Արարից քեզ անուն„։ Փոխանակ այնր՝ զի ասէ “Փառաւորեցան երեսք Մովսիսի„, հեբրայեցի՝ լուսաւորեցան. այս ինքն իբրեւ զարեգական։

Իսկ զի երկիցս անգամ քառասուն քառասունս մնաց 'ի լերինն, ուսուցանելով, ասեն, ուսուցանէր նմա՝ թէ զինչ արասցէ 'ի սպաս պաշտաման խորանն ժամուն։ Եւ ահա ոչ կարէր նա ուսանել առանց պարգևաց. և եթէ պարգևօք ուսանէր, յակամն թօթափել ուսանէր. ամենայն իմաստութեամբ խելամուտ առնէր զնա։ Այլ զայս ասասցուք, եթէ վասն քննութեն ժողովրդեանն արգել զնա անդ զքառասուն օր զառաջինն։ “Գնա էջ դու աստի, ասէ, զի անօրինեցաւ ժողովուրդն քո,,։ Եւ էջ խորտակեաց զտախտակսն, և ոչ պատուհասեցաւ. զի ժողովուրդ պիղծ և անօրէն էր։ Եւ քառասուն ևս օր վասն էր. զի մի եղիցին նոքա ասել՝ թէ չեն այս նոյն օրէնք։ Զի եթէ էր նա իջեալ վաղվաղակի, լինէին նոքա ասել՝ թէ զինչ է, զի առաջին կտակարանքն քառասնօրեայ ժամանակօք տուան, և վերջինն փոքր աւուրբք. ոչ են հաւասար վերջինքս առաջնոյն։ Մանաւանդ զի յայամ ուխտի աղաչել վասն նոցա ելեալ էր նա, զի մի թեթև իցեն աղօթք նորա որ վասն նոցա. կաց մնաց զքառասուն օր, որպէս զի մեծասցին և յանցանք նոցա յաչս իւրեանց։

Իսկ զի յերկուս տախտակսն տուան օրէնքն, առակ օրինակի երկուց կտակարանաց, իբրու մի է տուիչ նոցա։ Եւ զի տախտակքն փոխանակ տախտակաց տուան, երկուս ժողովուրդս յայտ առնէ. այն՝ որ խոտեցաւն անարգեցաւ, և եկեղեցի՝ որ ընտրեցաւ։ Բայց է դարձեալ, զի մի արհամարհեսցին տախտակքն վերջինք Մովսիսի քան զառաջինսն այ, զգեցոյց նմա շուք փառաց և անուն երկրպագեալ. զի անդ ասացաւ նմա, ասէ “Կոչեցից զքեզ յանուն տեառն,,. զի ըստ նմանութեն այ եղիցի նա։ Յորժամ գիշերի ելանէր Մովսէս, խաւարն յամենայն յանապատէ անտի փախուցեալ հալածական լինէր, և լոյս 'ի վերայ ամենայն անապատին սփռեալ տարածեալ լինէր։ Զի լոյսն՝ որ յերեսաց նորա ծագէր, հալածական առնէր զխաւարն յերեսաց յաչաց իւրոց։ Այլ իբրև տեսանէին զնա որդիքն Իսրայէլի և քահանայքն, ոչ նոքա երկնչէին և տային զանձինս իւրեանց 'ի ձեռս նորա, և ոչ նոքա հաւանէին աշա-

կերտել նմա ։ Վասն այսորիկ քանանացիքն , զի ոչ եառուն ձեռն Մովսիսի, հրաւիրեցան նոքա 'ի սուր սուսերի յեշուայ աշակերտէ նորա . և որդիքն Իսրայելի աշակերտեցան նմա , հար սատակեաց զնոսա հրամանաւ այն Մովսիսին ։ Այլ աչացն Մովսիսի լոյսն որ 'ի նոցանէն հաղորդեալ էր ընդ տեսանելիս նոցին . այս ինքն լոյս՝ որ ոչ 'ի բնութեն ընդ տեսանելիսն՝ որ 'ի բնութեն . զի ամենայն աչաց տեսիլ գոյ , այլ ոչ ամենայն աչաց լոյս գոյ ։ Սոյնպէս ոչ են կարող աչք արդարոց լուսով, զի լոյս նոցա խառնեալ է ընդ հայելիս նոցին . որպէս և Մովսէսն , զի մութացեալ լուսոյ ոչ էր կարող , և մարմինն նորա զայսպիսի փառս զգեցեալ էր , զամօթ խայտառակութեն Ադամայ ոչ ստացաւ ։

Տասն պատուիրան յերկուս տախտակս . հինգ մի՝ և հինգ միւս . և համեմատին ընդ միմեանս այսպէս ։ Առաջինն ընդ վեցերորդին . երկրորդն ընդ եւթներորդին . երրորդն ընդ ութերորդին . չորրորդն ընդ իններորդին . հինգերորդն ընդ տասներորդին ։ Առաջինն՝ Ես եմ տէր ած ։ Երկրորդ՝ Մի արասցես դու քեզ այլ ած ։ Երրորդ՝ Մի երդնուցուս յանուն տեառն ։ Չորրորդ՝ Յիշեսջիր դու զօրն շաբաթու սրբել ։ Հինգերորդ՝ Պատուեա դու զհայր քո և զմայր ։ Վեցերորդ՝ Մի սպանաներ . եթէ ես եմ, մի սպանաներ ։ Եւթներորդ՝ Մի շնար , պոռնկութին է քեզ խոտորել յԱստուծոյ քումմէ ։ Ութերորդ՝ Մի գողանար . եթէ գողանաս երդնուս ։ Իններորդ՝ Մի սուտ վկայութիւն վկայեր 'ի վերայ ընկերի քո . ապ՝ եթէ չաւատաս դու՝ թէ նա արար զերկինս և զերկիր , վկայութիւն ստութեան վկայես ։ Տասներորդ՝ Մի ակն դներ տան ընկերի քո . և որպէս պատուես դու զհարսն քո , սոյնպէս պատուեսցես զընկերն քո ։ Եւ մի ակն դներ ամենեւին զինչ ընկերին քո իցէ ։ Այն իսկ է՝ զի ասէ “Սիրեսցես զընկեր քո իբրեւ զանձն քո ,, ։

ԿԱՏԱՐԵՑԱՒ ԵԼՔ ԴՊՐՈՒԹԻՒՆ ԵՐԿՐՈՐԴ
ԱՐԱՐԱԾՈՑ

# ՍՐԲՈՅՆ ԵՓՐԵՄԻ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

## ՂԵՒՏԱՑՒՈՑ

ՏԵԱՌՆ

# ԵՓՐԵՄԻ

ԽՈՐԻՆ ԱՍՈՐՒՈՑ

ԴՊՐՈՒԹԻՒՆ ԵՐՐՈՐԴ

## ՂԵՒՏԱՑԻՈՑՆ

### ԳԼՈՒԽ Ա

ԱՍՏՈՒԱԾ, զի առ յանձն զպատարագն Իսրայէլի, թէ զուցէ լուելն իւր 'ի զոհից անտի օգնական ապստամբութեան նոցա լինիցի, և եղիցին նոքա այնուհետև զոհել դիւաց. զի յիշէին նոքա զփափկութիւն իւրեանց՝ որ յերկրին եգիպտացւոց, դառնայցեն նոքա յերկիւղէ նորա, 'ի տալ նոցա ձեռն յայսմիկ իսկ եղև քաւութիւն մեղաց։ "Ինձ, ասէ, զոհեսջիք". այս ինքն ըստ օրինաց՝ զոր պատուիրեմ. և անասուն՝ զոր որոշեաց մեկնեաց և զատեաց նոցա, զոր զոհիցեն նոքա¹. զի ծանրասցին իրքն յաչս նոցա, և մեծասցին քան զհեթանոսացն. զի մի՛ կարծիցեն թէ զոհք դիւաց սուրբ են քան զայ, և զգուշութիւն մատուցեալ լինին. և դառնայցեն նոքա։ Զի թէ ասացեալ էր նոցա անասուն մատուցանել, զայն զոր ոչ միտք մարդկան ախորժէին, այն զի ոչ դիւաց մատուցեալ լինին նոքա, զիա՛րդ ոչ դառնային նոքա առ նոսա։ Ապա թէ ոք ընդդէմ դարձցի և ասիցէ՝ թէ վասն դիւաց առ նա յանձն զոհսն Իսրայէլի. Իսկ Աբրահամ, Նոյ և Հաբէլ, որ յառաջ

1 Ցօրինակին նոցա ։

քան զօրէնսն մատուցին պատարագ, զի՞նչ են ։ Այլ զայս ասասցուք. զի ուսուցէ զԻսրայէլ՝ թէ ոչ նոր ինչ է այս, և երկմտեալ բաժանեսցի նա՝ թէ յառաջագոյն են զոհք հեթանոսաց քան զնորայն ։ Սակայն և ոչ առաջնոցն ասաց նա ըստ գրոց մատուցանել զոհս պատարագաց. այլ և զայս ևս արար նա, զի մի պարծիցէ Իսրայէլ՝ թէ ՚ի հեթանոսաց ուսան և ընկալան նոքա. անուանեաց ՚ի վերայ առաջնոցն, զի յընթեռնուլ իւրեանց զգիրս՝ ծանիցեն և գիտասցեն, թէ յառաջագոյն է հարց նոցա քան զհեթանոսաց ։

Օ ի բազում են զոր պատուիրեցին օրէնք՝ զոր ուտիցեն, և զոր ոչ ուտիցեն. որպէս սովորութիւնն հաւանեցուցանէ, և ՚ի նոցանէ անխայեաց ։ Զի զայն ինչ՝ որ ոչ իցէ նոցա սովորութիւն, մի ուտիցեն. զի քաղցրասցի նոցա օրէնսդրութիւն, և ուրախ եղիցին ՚ի նա ՚ի մեծարել իւրեանց զնա. և զորս բարձն ՚ի նոցանէ, զի եղիցի օտար փոքր մի և նորոգ յաչս նոցա. և ՚ի նոցանէ հրամայեաց, զի կերիցեն զայնոսիկ՝ որոց եգիպտացիքն երկիր պագանէին ։ Զի ՚ի զենուլն իւրեանց զնոսա, իմասցին և գիտասցեն ՚ի ձեռն չարչարանաց նոցա՝ թէ ընդունային և տարապարտուց երկրպագութի նոցա, այն՝ որ են զուարակք և ոչխարք և այլ ևս ։

Բայց զայնոսիկ՝ որ յերկրին եգիպտացւոց առանց կարգաց ՚ի պէտս իւրեանց զնայլին, և որկորստութ̅ե̅ ագահութ̅ե̅ ուտէին, հեռանալ ՚ի նոցանէն հրամայեաց, և զնոսա ՚ի նոցանէ կարձեաց. զի նա ինքն է խող, այն զի խնդրեցին յանապատի անդ ։ Բայց դարձեալ, քանզի միտք մարդկան կանխեցին յառաջագոյն խոտեցին անարգեցին զբազումս ՚ի պատճառս պատճառս, և զնոյն իսկ զսովորութին յորում կապեալ էին նմա դարքն կարգելոյն ոչ շրջեցին օրէնքն. բայց զայս նեղեցին, զի կերիցեն զայնոսիկ՝ որոց երկիրն պագանէին եգիպտացիքն. և զայս զի մի կերիցեն, զորս ագահութ̅ե̅ և որկորստութեամբ ուտէին յերկրին եգիպտացւոց. զի բնաւ ամենայնիւ խլեսցէ զեգիպտոս ՚ի մտաց նոցա հանդերձ զոհիւք իւրովք ։

Բայց ոչ եթէ մի կարգ էր զոհիցն և պատարագացն . զի է՝ որ փոխանակ զոհից և վասն սրբութեան , և է՝ վասն օրհնութեան կամ շնորհ ունելոյ , և է՝ որ ըստ կարգի մասին , և է՝ վասն ողջակիզաց : Զի յորժամ 'ի հիւանդութեան , կամ 'ի պատերազմի , կամ եթէ պատճառք ինչ ապրելոյ 'ի նեղութեան մատուցանէ , իբրու յիշեցուցանէ զայն զԴաւթայն . "Զի՞նչ տաց , ասէ , տրիտուր տեառն ընդ ամենայնի զոր ետ ինձ" : Եւ զայս զի ետ նոցա , զի որոշեսցեն . ոչ եթէ սուրբ էին նոքա քան զհեթանոսս : Զի ահաւանիկ և ոչ զամենայն՝ որ սուրբ էր , հրամայեաց նոցա ուտել . ասէ "Զճարպ դոցա մի ուտիցէք , այլ 'ի վերայ սեղանոյ հանիջիք : Եւ զարիւն , դարձեալ , մի ուտիցէք . 'ի վերայ սեղանոյն սրսկեսցի" : Եւ տես դու՝ զի արիւն պիղծ է առ ուտել , և ճարպ սուրբ է . և երկոքին 'ի վերայ սեղանոյ ելանեն : Եւ իբրև համարեցաւ զսուրբսն , համարեցաւ անդ և զայծեամն և զեղջերու : "Եւ 'ի վերայ սեղանոյ , ասէ , մի հանիցէք , այլ 'ի տան քում կերիցես զնա : Եւ զճարպ նոցա , դարձեալ , մի ուտիցէք" : Նա և զմեղր սուրբ արար առ յուտել . "Եւ 'ի վերայ սեղանոյ , ասէ , մի մատուսցեն" : Եւ կին մարդ սուրբ է յամուսնութի բնութեան , և պիղծ է նա պոռնկութեամբ արտաքոյ բնութեան . զի ամենայն ինչ պատուիրանաւ որոշի : Եւ 'ի տեղի ուրեք զամենայն զծնունդ այգւոյ պղծէ , և առ պատարագս սուրբ է : Եւ Սամփսոն ոչ պատուհասեցաւ , զի եկեր նա զմեղրն 'ի նեխեալ 'ի մեռելոտի մարմնոյ անտի պիղծ գազանի : Եւ յայսմիկ յայտ եղև՝ թէ ոչ էր կատարեալ սրբէին նոքա 'ի ձեռն այնր՝ զի ոչ հրամայեաց նոցա մատուցանել պատարագ 'ի նոցանէ : "Անասուն , ասէ , անարատ մատուսցես" . խորհուրդ այնորիկ՝ որ առանց մեղացն էր , որ քաւեաց զմեղս մարդկութեան : Ոչ անասուն արատաւոր կարէր քաւել , և ոչ մեղաւորն և լի արատով պիտոյ էր մեռանել փոխանակ մարդկութեան :

Բայց տես դու զի և Յոթոր քրմապետ էր հեթանոսաց , և արդարացաւ . և գաբաւոնացիքն յոյս ապա[illegible]ին արարին զժողովուրդն . և զի կամեցաւ Շաւուղ կոտորել զնոսա , արգելան երկինք 'ի ցօղոյ .

և զբարկութիւն զոր խորհեցաւ նա 'ի վերայ նոցա , յեւթն որդիս նորա ել : Եւ Ովբար եդովմայեցի՝ որհ-նեցաւ տուն նորա , փոխանակ զի պատուեաց նա ըզ-տապանակն կտակարանաց առաւել քան զքահա-նայս : Եւ Աթի գեթացի կերակրեաց զԴաւիթ 'ի ժամանակի իբրև հալածական էր նա յերեսաց Ա-բիսաղոմայ որդւոյ իւրոյ : Եւ Աբեդմելէք քուշացի հնդիկ հան զԵրեմիայ 'ի գբոյ անտի տղմոյ , զի արկին զնա անդր որդիք ժողովրդեան իւրոյ . նոքա գերե-ցան , և նա ապրեցաւ : Եւ Ուրիա քետացի մի յիշ-խանաց էր Դաւթի . և Րահաբ յազգն Յուդայ յա-րեցաւ , և 'ի տոհմ տանն Դաւթի խառնեցաւ . և Հռութ մովաբացի , և Նեեմի ամոնացի : Սոյնպէս և ոչ եպերեցան որք ընկալան զնոսա , այլ 'ի նոցանէ ծնան թագաւորք օծեալք և մարգարէք , և ոչ կա-րաց կալ ընդդէմ նորա պատուիրանն . այն՝ զի խօ-սէ "Մի՛ մտցէ ամոնացի և մովաբացի 'ի ժողովուրդ-տեառն,, : Եւ ոչ 'ի դար տասներորդ . այլ զոր ինչ աստուածութիւն հատանէ վասն օգտակարութեան , ողոր-մութիւն արձակէ վասն ապաշխարութեան . զի առանց օրինաց է :

Արդ քանզի մի արարիչ է այս , որ զամենայն զոր և արար բարի է յոյժ , եթէ անուանեաց սրբութիւն և պղծութիւն՝ յայտ է թէ պատճառք են այս . այս-պէս և 'ի նմին յօրինաց . զի ահա աւասիկ որք ընտ-րեցինն և կերան , ոչ արդարացան . և որք անփոյթ արարին , վասն նոցա ոչ պատուհասեցաւ արդարու-թիւն նոցա . և ահա սուրբքն՝ եթէ մեռելոտի լինին , պղծին : Արդ ո՞ւր է սրբութիւն նոցա . և զոր զենոյին , ոչ լինէր պղծեալ՝ թէ այսպէս էր , զի երկաթ սրբէ զնոսա , և ոչ երկաթն դարձեալ սրբէ զնոսա . զի ե-թէ պեղծ է այն՝ որ զենուն , նովաւ պղծութիւն է . և 'ի մերձենալ սրբոյն 'ի պղծութիւն պղծեալ լինէր : Թէ այդպէս է , զօրագոյն է պղծութիւն քան զսրբու-թիւնն : Այլ յայտ է այս՝ թէ առակք օրինակաց և պատճառք ինչ են . զի ահա Եղիա ոչ պղծեցաւ յագ-ռաւուց անտի և 'ի մսոյն , այն զի չէր իսկ յայտնի թէ սուտ էր , կամ երևէր . և յօրէնս ասէ . "Ետու ես ձեզ զամենայն միս,, զպիղծն և զսուրբն , որպէս

զպայծառանս և զեղջերուս ։ Եւ ահա արիւնն՝ որով պղղ-ծեալ լինէր մեռեալն , նովաւ սրբէր անդամն , և 'ի վերայ նորին սրսկեալ լինէր , և ոչ ինչ էր այլ պիտոյ . ասէ "Ոչ ուտեմ ես միս զուարակաց , և ոչ զարիւն նոխազաց ըմպեմ ես ,, ։

Արդ տեսցուք եթէ կացին մնացին սուրբքն և պիղծքն 'ի կարծիս իւրեանց ։ Արդ գիտեմք՝ եթէ անիծաւ օձն , զի եղև նա պատճառք մահու , և ապա յետոյ եղև նա պատճառք կենաց ։ "Ամենայն որ հայէր , ասէ , ընդ օձն պղնձի , կայր և ապրէր ,, ։ Արդ յայտ եղև՝ եթէ պատուիրանն եթէ վասն պատճառանաց ընչի պիղծ է՝ և սրբէ , և ոչ եթէ բնութեն նոցա պիղծ է ։ Եթէ բնութեամբ չար էին օձք , զապստամբօղս պահէին , և զհլուս ապականէին . զոր օրինակ և առեւծքն զի պահեցին զԴանիէլ , և կերան զչարախօսն՝ ոչ եթէ որպէս պիղծք , այլ որպէս և սոյգք և արդարք . և ագռաւուցն դարձեալ զԱխաբ արժան էր կերակրել և ոչ զԵղիա ։ Այսու իրիք 'ի վերայ ամենայն սողնոց թռչնոց և գազանաց հաւանեցուցաք՝ եթէ չիք պղծութի 'ի բնութեն , այլ կամք են . և պատուիրանն ընտրեաց և անարգեաց զզոհս ։

Արդ եթէ օգուտ ինչ էր ընտրութեն կերակրոց , ահա զքառասուն ամ յանապատի անդ զմանանայն կերան , և ոչ կարաց սրբել զհիւանդացեալ միտս նոցա ։ Եւ տապանն սրբեաց զամենայն՝ որ 'ի նմա , զի հաւատովք ապրեցան 'ի ջրհեղեղէ անտի ։ "Եւ զի՞նչ , ասէ , պիտոյ է ինձ բազմութի զոհից ձերոց . և զճարպ գառանց և զարիւն ցլուց և նոխազաց ձերոց ոչ կամիմ տեսանել . յագեալ եմ ձեօք ,, . չիք հնար յայսմ հեռէ , այլ ոչ եւս ներբեցից մեղաց ձերոց ։ Եւ զազրացաւ նա և յայնցանէ՝ որ զպատարագն մատուցանէին , յայնմիկ՝ զի ասէ "Մերժեցից զնոսա յերեսաց իմոց ,, . և զի ասէ "Բնաւ ո՞ իսկ խնդրեաց զայդ 'ի ձեռաց ձերոց . կոխել դուք ամենեին այսուհետև զգաւիթս իմ մի յաճախիցէք ։ Եթէ մատուցանէք դուք զխաշինս պատարագ , այն զուր է ձեզ . եթէ արկանէք դուք ինձ խունկս , և այն պիղծ համարեալ է ինձ ,, ։ Եւ համարեցաւ զնոսա իբրև սպանութիւն , յայնմիկ՝ զի ասէ "Բայց անօրէնն՝ որ

մատուցանէ ինձ եզն պատարագ՝ այնպէս լիցի, որպէս զի հարկանիցէ ոք զկառափն մարդոյ»: Եւ համարեցաւ զսուրբն իբրև զպիղծս, յայնմիկ՝ զի ասէ «Եւ որ մատուցանէ ոք զոչխար պատարագ՝ այնպէս լիցի, որպէս թէ մորթիցէ ոք զշուն. և որ մատուցանէ ոք զնաշիհ պատարագ՝ այնպէս լիցի, որպէս հեղուցու ոք զարիւն խոզի»: յայնմիկ՝ զի անարգեալ է նա 'ի սրսկելոյ: Եթէ բնութեամբ իւրեանց սուրբք և պիղծ էին, ոչ փոփոխեալ լինէին նոքա. այլ պատճառք են, զի նոքօք մերձեսցին տգէտք 'ի գիտութիւն ճշմարտութեան:

Արդ պատարագք վասն նշանակի տուան. զի ահա ոչ արդարք կարօտ եղեն նոքօք, և ոչ մեղաւորացն օգուտ ինչ եղեն նոքա. յայնմիկ՝ զի ասէ «Մի՛ քաւիցին մեղք և անօրէնութիւնք տանն Հեղեայ զոհիւք և պատարագովք 'ի ձեռն տօնիցն զոհից»: Յայտ արար զզոհսն օգտակարս, յայնմիկ՝ զի ասէ «Լաւ է լուր քան զպատարագ»: «Մատո Աստուծոյ պատարագ օրհնութեան». և «Պատարագ խոնարհ և սիրտ աշխատեալ»: Եւ զի հպարտացեալ էին 'ի տաճարն, «Տաճար էք դուք, ասէ, տեառն Աստուծոյ՝ եթէ հաճոյ արասցէք զգործս ձեր». և այսու խափանեաց զտաճարն: «Եւ ես յո՞ հայեցայց և բնակեցից, բայց 'ի հեզս և 'ի խոնարհս և յայնոսիկ՝ որ դողան 'ի բանից իմոց»:

Ապա եթէ ասիցեն. եթէ պատարագք արդարոց ընդունելի եղեն, զի՞նչ օգուտ է յանասունս՝ զի զմեղաւորս ոչ արդարացուցին. և արդարոցն եթէ ոչ էր զոհեալ, ոչ մեղանչէին. առանց զոհից առաւելան և առաքինացան, և յիշատակք նոցա օգնական եղեն այնոցիկ՝ որ զզոհսն մատուցանէին. և 'ի զոհսն չիք ինչ պէտք: Եւ զի հրամայեցան զոհքն վասն նշանակի գիտութեան այ̃. զի Մովսէս ոչ եթէ զոհիւք հաշտեցոյց զա̃ծ 'ի ժամանակի՝ իբրև մեղաւ ժողովուրդն, բայց աղօթիւք հանդերձ այլովք առաքինութիւք: Եւ Եզեկիա ոչ եթէ զոհիւք հաճոյ եղև այ̃ և փրկեաց զքաղաքն, այլ աղօթիւք: Եւ Յեսու ոչ եթէ զոհիւք հանդերձ բաժանեաց զՅորդանան, և կործանեաց զպարիսպն Երիքով քաղաքի, և արգել զարե-

գակն և զլուսին, և հար վանեաց զթագաւորս, այլ 'ի տարածանել ձեռաց աղօթիւք։ Եւ Փենեհէս աղօթիւք առաքինացաւ առանց զոհից. և Եղիա ցլովք հանդերձ։ Զի ոչ քաւեցին զոհք վասն սպանութեց և շնութեց, բայց զեղջ և ապաշաւ ողւոց քաւեաց։ «Մեղայ, ասէ, Դաւիթ»։ Ասէ ցնա. «Եւ տէր թողցէ զմեղս յանցանաց քոց»։

Քանզի զոհէին նոքա դիւաց 'ի դաշտս, ասէ, և 'ի լերինս, հրամայեաց զի նմա զոհեսցեն. զի 'ի ձեռն այսր՝ կապեսցին նոքա 'ի սէրն նորա. զոր օրինակ և տօնքն զի պատուիրեցան, զի յիշեսցեն զողորմութիւն շնորհաց նորա, և խոստովան եղիցին նմա այնոքիկ՝ որ կատարեալ են սիրով նորա. բարձրագոյն են նոքա 'ի պատճառանաց օրինաց։ Տօն առաջին բաղարջակերաց, զի խոստովան եղիցին այնմիկ՝ որ փրկեաց զնոսա յերկրէն եգիպտացւոց։ Եւ տօն երկրորդ պէնտակոստէից, զի 'ի նմա տուան նոցա օրէնք, զի մի մոռասցեն զտէր պատուիրանաց։ Եւ տօնն երրորդ 'ի սկիզբն տարւոյն ըստ թւոյ ամաց նոցա, զի խոստովան եղիցին տեառն կենաց իւրեանց։ Եւ տօնն չորրորդ յաւուրն տասներորդ յամսեանն եւթներորդի. պահք, խոնարհութիւն, որ վասն որթուն. «Պահեսցեն, ասէ, վասն ամենայն մեղաց և յանցանաց իւրեանց». զի յիշեսցեն նոքա զստուգութիւն՝ որ խնդրեաց 'ի նոցանէ զվրէժն, և արգելեալ կարճեսցին նոքա 'ի մեղանչելոյ։ Եւ տօն հինգերորդ տաղաւարահարաց, զի մի մոռասցին զայն՝ որ ծածկեաց զնոսա 'ի ներքոյ ամպոյն յանապատի անդ։ Արդ վասն յիշատակի դժուարին մտաց նոցա տուան նոցա տօնք տարեկանաց, զի 'ի պատճառս տօնից նորոգեսցէ 'ի նոսա զսէրն այ իւրեանց, որպէս և ասաց իսկ. ասէ «Ամենայն՝ զի եսու ես զօրէնս զայսոսիկ, զի ծանիցես դու զտէր ած քո»։

Ադէ թողցուք անդր զօրէնս, և տեսցուք յետ այսորիկ 'ի ձեռն աղօթից։ Ի՞ւ եղև փրկութիւն գերոյն. ո՞չ ահա աղօթիւք Երեմիայի. այն՝ որ յորովայնէ մօր իւրոյ սրբացեալ էր 'ի կերակրոց. այն զի ասէ «Եւ ոչ Մովսէս և Սամուէլ, որք ընտրեցին իսկ զկերակուրս, թէպէտ և կացցեն յաղօթս առաջի իմ

յայսմ ժամանակի, սակայն ոչ լուայց նոցա,,։ Եւ տունն Անանիայ Թէպէտ և ունգս ունէին, սակայն ոչ կարացին ապրեցուցանել զորդիս ժողովրդեան ազգին իւրեանց յերկրպագութէ անտի պատկերին, բայց միայն զանձինս իւրեանց։ Եւ Եսթեր, զի ունէր 'ի խորտկաց անտի Թագաւորին, և ըմպէր 'ի գինւոյն նորա, և ննջէր 'ի ծոց նորա, կաց յաղօթս զերիս աւուրս, և լսելի եղեն աղօթք նորա. և ոչ համարեցաւ նմա պղծութիւն։

Նոյն զայս դարձեալ ասասցուք. եթէ վասն կերակրոց՝ որ մերժեալ ընկեցեալ լինի յորովայնէ արտաքս, ցոյց եթէ պղծէ զայն՝ որ կատարէ զպէտս իւր նոքօք, ո՛րչափ ևս առաւել պղծեն գործք չարք որ 'ի կամաց լինին։ Զի եթէ որք ոչ 'ի կամնն մեր պատահեն մեզ, պղծիմք մեք. արդ յորժամ լինի 'ի մարմինս մարդոյ արիւն կամ աղտեղութի՟ դաշտանի, կամ աղտեղութի՟ սերման եղանելոյ գիշերի, և եթէ մերձենայ 'ի նոսա՝ որ սուրբն իցէ՝ պղծեալ լինի նա, ո՛րչափ ևս առաւել արժան է մեզ զգուշանալ 'ի սպանող մեղաց՝ որ կամաւ գործեալ լինին։

## ԳԼՈՒԽ Բ.

ԸՆՏՐԵՑԱՒ ժողովուրդն յամենայն ժողովրդոց. ընտրեցաւ տոհմն յամենայն տոհմաց. ընտրեցաւ ազգ յամենայն ազգաց. ընտրեցաւ այր յամենայն արանց առանց արատոյ։ Արդ տես դու ո՛րչափ ընտրութի՟ք են, զի եղիցի ընտրութի՟ն կատարեալ. և եթէ էր արատ ինչ յանձն քահանային, կամ եթէ լինի արատ 'ի մարմին նորա, և տես դու զիա՞րդ մարդ՝ յորում արատ գուցէ 'ի մարմին նորա, մատուցանէ պատարագ՝ յորում լիցի արատ, և ընդունելի լինի։ Եւ մարդն անարատ մարմնով իւրով մատուցանէ պատարագ՝ յորում արատ իցէ, և ոչ լինիցի ընդունելի։ Եւ իբրև այս հոգաբարձութի՟ եղև 'ի վերայ քահանայից, մեռան նոքա յօտար հրոյ անտի, և ընտրութի՟ նոցա ոչ ինչ օգնեաց նոցա։ Արդ վասն ժամուն նշան եղև խորանին. և ժողովուրդն որ խա-

փանեցաւ, եկն տաճարն և խափանեաց զխորանն, և զտաճարն քակեցին Թշնամիք. և քահանայն խորհուրդ Քրիստոսի է, զի չիք 'ի նմա արատ. զի արատ մարմնոյ՝ խորհուրդ է յանցանաց անգամոց ոգւոց: Արդ զոր օրինակ մերժէ երիտասարդութի զողջութի, և ծերութի զերիտասարդութի, սոյնպէս մերժեաց անցոյց հրէութի զհեթանոսութի, և քրիստոնէութի զհրէութի. որպէս մերժեաց անցոյց կրտսերութի զանդրանկութիւն:

Այլ զգոհս զոր սիրէր՝ զայն մատուցէք նմա. այն զի յայտնի զոհքն 'ի վերայ նոցա վկայեն՝ եթէ հայելի են արարածք գեղոյ ծածուկ պատարագին, զի 'ի նմա կապեալ լինիցի խորհուրդք, սէր, գութ և աղօթք մատուցողացն: Եւ յորժամ ընդունելի լինիցի, եղիցի վկայութի 'ի վերայ ծածուկ և գեղեցիկ մտացն մատուցչին նորա. և յանարգելն նորա դարձեալ, յայտնապէս եղիցի վկայութի յայտնի առաջի ժողովրդեանն, որ ատեայ զներքին պատարագս, և ընթանայ հաճոյ լինել արտաքին պատարագօք: Արդ արտաքին պատարագօքն հանապազորդ մերձաւորութիքն իւրեանց յանդիմանիչք ոչ են այնոցիկ՝ որ ոչն են հանապազորդ ներքին պատարագօք: Սոյնպէս սեղանն արտաքին՝ մարգարէ է ամենայն իրուք ծածուկ սեղանոյն. և քահանայն՝ խորհուրդ է ծածուկ քահանային:

Արդ ժողովեցէք զանդամս ձեր, և արարէք նմա մի խորան սրբութե, և զխորհուրդս ձեր պատարագհաճոյութե, և զկնճիռս ձեր արարէք սեղան հաշտութե, զի 'ի վերայ նորա նուիրեսցէ սիրտ զծածկեալ խորհուրդս իւր հատուցչին ծածկելոց: Զի ամենայն յատակ խորհուրդ եկեղեցի է 'ի ծածուկ, և սիրտ՝ սեղան ընտրութեց եդեալ է 'ի նմա: Յանդիմանեա զնոսա յայսմիկ. զի եթէ մարմնոյ նոցա տաճար մի լինեալ էր, ոչ լինէր ա̃ծ հակառակ անձին իւրոյ՝ թէ 'ի տաճար քարեղէն պաշտեալ լինիցի, և տաճար մարդկութե ոչ պաշտեսցի: Վասն այսորիկ եդ զնշանս իւր 'ի վերայ պատկերի մերոյ, զի յայտարասցէ՝ եթէ նա է յամենայն մարմնոյ խորան ա̃ծութեան: Արդ ամենայն պատարագք կրկին գտանան

առ մատուցիչս իւրեանց, զի խնդրուածք իւրեանց ոչ են կարօտ նոքօք. զի վասն պատճառանաց բարեաց անուանեցաւ կարօտութիւն 'ի միջի, զի նովաւ եղիցի մեզ համապազորդ յորդորումն բարեաց նորա: Զի 'ի տալն մերում նմա, զարթուցուք 'ի վերայ մեր զպարգևսն նորա. և 'ի թօթափելն մերում զգանձ-սըն մեր փոխ տալ նմա, փախուսցուք զնա 'ի խղճ-մտի 'ի տուն գանձի նորա: Եւ զի եդեալ է 'ի վե-րայ պատարագաց մերոց անուն կարօտութեան նորա, և յանփոյթ առնելոյ ստուգութեան նորա՝ երկեցու-ցէ զտուրսն մեր, զի մի նուազեսցեն, կապեաց դար-ձեալ զգոհս պատարագաց նոցա 'ի միում վայրի. և յայտ արար նոցա, զի եթէ բարկացուսցեն՝ հատանէ նա զարմատսն՝ յորում կապեալն էին, և լուծեալ արձակեալ և խափանեալ լինին տեղեաւն համդերձ:

Բայց համդերձն՝ որ էր 'ի վերայ լանջաց քա-հանայապետին, զոր օրինակ դատաւորք՝ զի ածեն սուր ընդ մէջ իւրեանց վասն ահի երկեղի իշխա-նութեան իւրեանց, և վասն պատժոց պատուհասից անցելոցն զօրինովք, սոյնպէս և այն՝ որ եդեալ էր 'ի վերայ լանջաց քահանայապետին, կատարումն իշ-խանութեան նորա և խոստումն պատժոցն պատու-հասից անցելոցն զպատուիրանօքն: Արդ ամենայն համդերձն լանջաց նորա իրաւունս դատաստանի քա-րոզէ:

Թէպէտ և պատուական էր քահանայն յայտնի համդերձիւն, սակայն յոյժ փառաւոր և քան զնա քահանայն ծածուկ: «Քահանայ, ասէ, յորժամ մտանիցէ 'ի խորան, գինի մի արբցէ»: Բայց ուխտա-ւորն ընաւ ամենևին գինի և ցքի մի ճաշակեսցէ, և ընաւ որ ինչ ծնունդ որթոյ իցէ: «Եւ առ մեռեալ, ասէ, մի մտանիցէ, քանզի պսակ ա̃յ իւրոյ 'ի վերայ գլխոյ նորա»: Յայսմ վայրի յայտ արար մեզ՝ եթէ առաւել է պսակ ուխտաւորին, որպէս և քահանայ-ապետին. զի պսակ ա̃յ իւրոյ 'ի վերայ գլխոյ նորա՝ այս ինքն աղօթք ուխտի նորա:

Մեծութիւն յայտնեցաւ 'ի վերայ առաջին զոհիցն 'ի խորանի անդ, և հուրն ել և կեր. և նոքա հպար-տութեամբ պարծանօք արբեցան փոխանակ ընդ գինւոյ,

և չոգան արկանել նոքա խունկս առանց հրամանի՝ քանզի ոչ էր նոցա զենեալ։ Զի զնոխազն զվասն մեղաց յերկիւղէ իւրեանց ոչ կերան, այլ այրեցին զնա. բարկութ՟, ասէ, եղև. կամ զի յամեցին նոքա 'ի գինւոջ, չիջաւ հուրն. այն զի պատուիրեցաւ նոցա հանապազօր դարման ունել նմա փայտիւ։ Եւ վասն այսորիկ բերին նոքա հուր օտար արտաքուստ. և վառեցաւ բորբոքեցաւ 'ի նոսա, և անդէն սատակեաց. զի ոչ պատուեցին նոքա զպաշտօնն իւրեանց քան զգինի. և «Որ զիս, ասէ, պատուիցեն, պատուեցից զնոսա. և որ զիս անարգիցեն, անարգեցից զնոսա»։

Դարձեալ ասի. զի ոչ եթէ չիջաւ հուրն, այլ իբրև արբեցան նոքա յանցանել զգինեաւն իւրեանց, ասեն այր ցընկեր. արիք թող արկցուք խունկս. և 'ի պատճառս խնկոցն արկանելոյ, արկին նախ ըստ սովորութ՟ բնութ՟ իւրեանց հուր օտար 'ի բուրուառս իւրեանց. այն զի արժան էր նոցա 'ի ներքուստ առնուլ. և վասն այնորիկ այրեցան նոքա։ Եւ 'ի սուրբն սրբոց մտին նոքա, ուր ոչ ունէին նոքա իշխանութ՟ մտանել. զի սեղանն խնկոց և սեղանն ողջակիզաց արտաքոյ էր, և մտանի 'ի ներքուստ ել հուրն. և վասն այսորիկ ասէ. «Ի ժամանակի իբրև մտանիցէ քահանայն, յորժամ և ելցէ, գինի մի ըմպիցէ». զի գոյր ժամանակ՝ թօթափել զսպասն մտանէր։ Զի եթէ վասն հրոյն շիջանելոյ. ոչ խունկս մուծանէին բուրվառօքն՝ այլ հուր, քանզի հրամայէր նա վասն հրոյն՝ զի մի շիջցի, զինչ օգուտ էր. այն՝ զի ասէ «Մի ըմպիցէ գինի՝ յորժամ մտանիցէ»։ Ապա թէ յառաջ քան զմտանելն շիջեալ էր, գոգցուք բնաւ թէ ծարաւի իսկ էին։

Որդ յայտնամանէ զի պատուիրեաց նա Ահարոնի՝ զի մի եղիցի մտանել 'ի ներքս քան զվարագոյրն, զի մի մեռանիցի, յայտ է թէ 'ի սուրբ սրբոցն, համարձակեցան. ժպրհեցան մտանել արկանել խունկս։ Բայց դարձեալ, խունկքն հանապազօր ընդ առաւօտս եդեալ լինէին, նա և եդեալ իսկ էր այնր աւուր Ահարոնի, և աւելի ինն գործ գործեցին որդիք նորա։ Այլ 'ի մէջ սրբոյն սրբոց և ընդ սրահն արտաքին սենեակ էր, զի 'ի նմա եդեալ էր սեղանն

հանապազորդ հացիցն, և սեղանն ոսկի խնկոցն, և աշտանակքն վեցոստեանն, խունկքն հանապազորդք, և հացն պատարագաց շաբաթէ շաբաթ, և ճրագարանքն մշտնջենաւորք։ Բայց 'ի ներքս մի անգամ 'ի տարւոջն մտանէին խնկովք և արեամբք. բայց Մովսէս հանապազօր մտանէր, զի ժամադիր լինիցի նմա անդ, զի խօսեսցի ընդ նմա. և վասն այնորիկ ասէ. "Ամենայն 'ի տան իմում հաւատարիմ է. բայց ընդ ձեզ երազովք և տեսլեամբք"։

Բայց յետ այսորիկ իբրև լաց ժողովուրդն 'ի վերայ այրեցելոցն, մատոյց զնոխազն վասն մեղաց. և առին Եղիազար և Իթամար որդիքն Ահարոնի և ոչ մատուցին զնա, այլ պահեցին. վասն այսորիկ գրէ. ասէ "Եւ զնոխազն զվասն մեղացն խնդրելով խնդրեաց Մովսէս"։ Ի բորբոքել նախանձուն իւրոյ, յայտ առնէ՝ թէ ժողովրդեանն էր, յասել իւրում. "Զնա, ասէ, ետու ես ձեզ"․ զի բարձցէ զմեղս ժողովրդեան. և քաւել վասն նորա։ "Առէք դուք, ասէ, զնշխար ողջակիզաց պատարագաց ընծայիցն տեառն, և կերիջիք դուք բաղարջ առաջի սեղանոյն, զի սուրբ սրբոց է. զի օրէնք են քեզ այդ, և որդւոց քոց"։ Եւ բարկացաւ նա 'ի վերայ որդւոցն Ահարոնի, զի ոչ մատուցին Ահարոնի առ սեղանն՝ զի քաւեսցեն մեղք բանակին. և կերիցեն զայն նոքա։ Ասէ ցնոսա Մովսէս. եթէ նոխազ էր նա, որ մատուցեալ լինէր յողջակէզ պատարագաց, բարւոք անփոյթ առնէիք. զի յայնժամ ոչ ի մտանել 'ի սուրբ սրբոց ոչ կամէիք դուք. այլ ընդ մեղաց՝ սոյնպէս և պատարագ նորա. այլ թող կերեալ էր ձեր զնա 'ի տեղւոջ մի սուրբ, այս ինքն 'ի սրահի անդ վրան ժամուն։

Ահարոն իբրև ետես զՄովսէս թէ սաստիւ խօսի, ետ նմա պատասխանի տրտմութեան խոնարհութեան, զի քաղցր բարբառովն և ազերս բանիւք խոնարհեցուսցէ և ձգեսցէ զգթութ ողորմութենն Մովսիսի առ տրտմութին իւր։ Ահա ասէ, տէր, որ ութերորդ է օծման իմոյ այսօր, զի 'ի սմա եղև յորդիս իմ խրատ. զի այսօր մատուցին պատարագ զվասն մեղաց և զողջակէզդ առաջի տեառն, այս ինքն ժողովուրդն։ Եւ այնպիսի ինչ անցք անցին ընդ իս։ Որպիսի։ Որդիքն

իմ, զի այրեցան բարկութեամբ. միտք իմ, զի վառեալ բորբոքեալ են 'ի սէրն նոցա, և չիք նմա մխիթարութիւն սփոփութեան 'ի սահմանս անտի զոր եդիր դու՝ ոչ զգլուխ իմ բանալ, և ոչ զհանդերձ իմ պատառել, և ոչ ձայնս արկանել, և ոչ 'ի խորանէ անտի ելանել, և ոչ զորդեակս իմ համբուրել և թաղել զնոսա: Այս ամենայն յետ ողջակիզացն մատուցանելոյ անցք անցին ընդ իս: Եւ յայսմիկ, տէր, բարձեալ են միտք մեր, և չիք 'ի մեզ միտք հաստատուն առողջութեան: Ի տրտմութենէ աստի նուաղեցաւ սիրտ իմ յայս ինչ՝ զոր ետես անձն մեր. խռովեաց զմեզ ստրջումն յանկարծակի, զի 'ի մէնջ սկիզբն արար տէր տիրել հարուածովք, զի չիցէ նորա բժըշկութիւն. և գեղուն աղիք մեր, զի այսօր մատուցին ժողովուրդն զողջակէզսն զվասն մեղացն, և ոչ ինչ յամենայց պատուհասն խրատու, և արբեցոյց զմեզ 'ի բաժակէ անտի բարկութեան տեառն: Եւ արդ ահա աւասիկ պահանջէ զմեզ նախանձ քո. մարդ՝ որ ընաւ իսկ և գիտեն ոչ զանձինս իւրեանց՝ ուր իցեն: Այլ դու, տէր, բարւոք և արդարութ̅ պատուիրեցեր. և զիարդ մարթէաք ուտել այն օրին զպատարագ՝ որ վասն մեղացդ էր. գուցէ արդեւք ոչ հաճէր տէր: Իբրև լուաւ Մովսէս, և հաճեցաւ: Փոխանակ այնր՝ զի ասէ “Ոչ մտանէ արիւնն նորա առաջի սըրբութեան„. Հեբրայեցի, “Ոչ էր արիւնդ դորա մտեալ առաջի սրբութեան. թող կերեալ էր ձեր զդա„:

Քահանայութիւն՝ որդւոցն Ահարոնի, այլ սպաս պաշտաման խորանին վկայութեանց և այլ ևս որդւոցն Ղևեայ: Ասէ Մովսէս ցԿորխ. “Ո՞չ շատ իցէ ձեզ այդ, զի ընտրեաց և զատեաց զձեզ ա̅ծ յամենայն ժողովրդենէ աստի, և մերձեցոյց առ իւր պաշտել զպաշտօն վրան ժամուդ, կալ յանդիման խորանին և սպաս ունել դմա, նուաճել ինքն զքեզ և զորդիս քո և զեղբարս Ղևեայ ընդ քեզ. արդ քահանայութեա՞ն ևս ցանկայք„: Իսկ արդ զորդիսն Մովսիսի որ պատճառք կոչեցին զի 'ի քահանայութիւն մի մերձեսցին: Թէրևս ասիցես. ընդ մօրն իւրեանց դարձան անդրէն 'ի Մադիամ. զի կամեցաւ մայրն՝ թէ զպաշտօն հարց իւրոց եղիցին պաշտել

որդիքն, սակայն և հայրն նորա կատարեալ էր զկնի Մովսիսի։ Այլ՝ եթէ այդ այդպէս իցէ, ո՞ր պատճառք կոչեցին զնոսա Թոռունս զպատիւ հարց իւրեանց, և երթալ 'ի տուն մօր իւրեանց։ Նա և ոչ տունն մօր իւրեանց փոքր ինչ էր, զի քրմապետ էր նա ամենայն մադիանացւոց։ Եթէ պատճառք պատուոյ են, յոյժ փոքր էր հայրենի տունն նորա քան զՄովսիսին. եթէ վասն պաշտաման հօր իւրոյ, նա և ինքն հայր նորա կատարեալ էր զկնի Մովսիսի. ապա եթէ վասն Թլփատութեան նոցա, թլփատեալ էին. և եթէ վասն նեղութեանց երկնչէին, միանգամ գնաց և եկն կինն։ Եւ եթէ պիտոյ ինչ իցէ այս յաւել, նա և որդիքն Ահարոնի ընդէ՞ր ոչ մտին ամենեքին 'ի քահանայութիւն, բայց միայն Եղիազար. նա և ոչ որդիքն Մարեմու յայտնապէս։

Յաներեւութէ աստի փոքր մի ճաշակս ցուցից քեզ։ Քանզի հօրեղբօրն իւրեանց որդի Կորխ է. զի եթէ նա եղբայրութիւ հեռաւոր էր, լրբութ̃ լրբեցաւ յափշտակել առնուլ զքահանայութիւն Մովսիսի։ Բայց զի՞նչ ասասցուք վասն Կորխայ. նա և Ահարոն իսկ և Մարիամ նախանձեցան ընդ նա. զոր օրինակ և Աքեշադովմ ապստամբեաց 'ի Դաւթայ, իբրու որդի ազգաց էր նորա։ Սոյնպէս եթէ էր որդեալ Մովսիսի պատճառս լինել որդւոց իւրոց քահանայք, հպարտացեալ բարձրանային նոքա 'ի վերայ նորա և 'ի վերայ ամենայն ժողովրդեանն. մանաւանդ զի Ահարոն ընտրեցաւ, և ոչ որդիք նորա։ Եւ դարձեալ, զի զաւակ էին նոքա Մադիամու, և մնուանդ մայրենի 'ի տանն իւրեանց, վասն այսորիկ ոչ մերձեցոյց զնոսա. բայց զի անարգեաց զնոսա, անխայեաց զանձն իւր 'ի տրտնջելոյ անտի ժողովրդեանն։ Եւ մի դարձեալ պակասութիւ ինչ լինիցի նմա, իբրև զայն՝ զի փոքր մի իրք արգելլին զնա յերկրէ անտի պարգեւաց։ Արդ անխայեաց նա զանձն իւր յաշխատութենէ բծոց. զի 'ի պատճառս որդւոցն Շմուէլի խնդրեաց ժողովուրդն թագաւոր, և 'ի պատճառս որդւոցն Հեղեայ եղև բարկութիւ 'ի վերայ որդւոցն Իսրայէլի։ Կամ զի անուանեցաւ նա ա̃ծ, ոչ մոյծ զորդիս նորա՝ զի եղիցին քահանայա-

պետք, զի պակաս էր. նա 'ի կատարելոյ. զի Որդին այ միայն եղև քահանայապետ, և քաւեաց զմեղս աշխարհի իբրև զայն զՍահակայն:

Բայց հրամայեաց վասն մեղու, զի մի՛ մատուցեալ լիցի նա 'ի պատարագս, զի ոչ անկանի 'ի նա աղ. ասէ "Զամենայն զպատարագս քո աղիւ համեմեսցես": Կամ զի իջանէ հանգչի մեղու 'ի վերայ մեռելոտւոյ և 'ի վերայ ամենայն պղծութեան՝ որ ըստ օրինացն պղծէ: Բայց եբրայեցի փոխանակ այնր՝ զի ասէ "Զամենայն խմորեալ, զամենայն մեղրեալ". "Զամենայն խմոր և զամենայն մեղր":

ԳԼՈՒԽ Գ

"Կին, ասէ, եթէ յղասցի և ծնցի արու մանուկ, պիղծ կացցէ զեւթն օր և երեսուն և երիս աւուրս": Եւ վասն էգ ծննդեան չորեքտասան օր և վաթսուն և վեց: "Եւ ապա եկեսցէ նա առ դուռն խորանին վկայութեան մատուցանել պատարագ. և ապա իշխեսցէ նա կալ յաղօթս 'ի տեղին սրբութեանց": Իսկ ընդէ՞ր 'ի ծնանել արու մանկանն նստի նա յաղտեղութի պղծութեան իւրոյ զքառասուն օր, և 'ի ծնանել էգ մանկանն զութսուն օր: Զի 'ի քառասուն օր կատարի մանուկն կերպարանօք իւրովք, և աղջիկն զութսուն օր. վասն այսորիկ 'ի կատարել ժամանակին մինչ չև կատարեալ էր այն ինչ՝ որ յորովայնի նորա էր, նստի յաղտեղութի պղծութեան իւրոյ մայրն. զի արգելեալ էր 'ի նմա մեռեալ: Զի մինչ չև կատարեալ էր մանուկն կերպարանօք իւրովք, ոչ փչեցեալ լինի 'ի նմա ոգի, և ընկալեալ լինի զկենդանութի: Արդ որչափ ժամանակս զի ոչն էր 'ի նմա կենդանութի, նա մեռեալ էր, և մայրն նորա գերեզման էր: Արդ զայս ամենայն աւուրս որչափ եղև նա գերեզման դիականն՝ որ 'ի միջի նորա, ըստ թուոյ աւուրցն նոցա եղիցի նա պիղծ, և մի՛ իշխեսցէ նա մերձենալ 'ի սուրբ ինչ: Եւ վասն էգ մանկանն զութսուն օր: Եւ ընդէ՞ր էգն յութսուն, և արուն 'ի քառասուն. քանզի յաջակողման է արուն

իբրև պատուով, և յառաջագոյն կանխէ հասանել նա 'ի հասուցանելոյ անդի ըեղոյն. այլ էգն մանուկն, քանզի 'ի ձախ կողմն կայ հանդարտութք, ընդ երկար առնու զաճումն ծննդեանն. զոր.օրինակ երկուք մասամբք հեռի է արուն 'ի զեղլոյ անտի, նոյնչափ ևս հեռի է 'ի նմանէ և էգն:

Այլ յայտնեսցուք զառակս օրինակաց՝ որ 'ի միջի նորա․․ քանզի պահեաց Մովսէս զքառասուն օր, և Եղիա զքառասուն, զի տացեն առակ օրինակի եկեղեցւոյ: Զոր օրինակ Մովսէս արգելաւ անդ զքառասուն օր, թէպէտ և ոչ 'ի սկզբանն վասն այլոց ինչի, զի համդերձեալ էր նա գործել, զի չև ևս էր լիեալ նոցա արժանի ընդունել զկտակարանսն: Վասն այսորիկ և ոչ կնիքն կտակին լի կատարեալ գործեցաւ. այլ կրկնեցան աւուրքն, զի մի պակասեալ տկարացի խորհուրդն և ասիցէ՝ թէ տկարագոյն և թերի այս քան զառաջինն. զի առաջինն 'ի քառասուն օր տուաւ, և այս 'ի քանի և իցէ: Արդ ծնաւ յաւուրս քառասուն, և փառաւորեցան դէմք երեսաց նորա, զի նկարեսցին 'ի նմա երկաքին. զի եկեղեցի 'ի նման արու մանկանն, զի 'ի քառասուն օր փառաւորի պահովք իւրովք, և ընդունի զոգի 'ի ջուրց անտի աւազանին մկրտութեն, որպէս և մանուկն զոգի. և ժողովուրդն Իսրայէլի որպէս էգ մանուկն յութսուն օր, զի յետ ութսուն աւուր՝ և ապա եղև արժանի ընդունել: Այնդ օրէնքն պղծուն ընդ երկար, և աստ սրբութի մերձաւոր:

"Այս, ասէ, օրէնք են բորոտութե, որով սրբեսցի. առցեն 'ի սրբելոյն հաւս երկուս կենդանիս, և փայտ նոճի". այլովք հանդերձ. զի եղիցին իւրքն շքեղ, և զի անկցի 'ի նմա պատճառս նոցա հոգի Աստուծոյ. և զի գնեսցէ զնա, զի մի եղիցի անարգ ձրի:

Վասն կանանց:

Իսկ վասն կանանց հրամայեաց, ասէ "Առ դուռն խորանին վկայութե կայցեն յաղօթս, և 'ի ներքս մի մտցեն". իբրև զայն՝ թէ սրբութիւն կանանց պիղծ է, և քան զայր ոք դոյզն: Մի եթէ ծնունդ կանանց

մայլ իցէ ։ Իսկ արդ ո՞ւր է այն՝ զի ասէ «Թողցէ այր զհայր իւր և զմայր իւր, և երթիցէ զհետ կնոջ իւ-րոյ, և եղիցին երկոքեան ՚ի մարմին մի»։ Արդ ոչ եթէ վասն պղծութեան արգելան կանայք զի մի՛ մտցեն ՚ի խորան վկայութեանց, այլ վասն այլոց պատճառա-նաց։ Ապա՛ եթէ պիղծ իցէ կին մարդ, իսկ ընդէ՞ր էջ հանգեաւ Հոգին ՚ի Մարիամ քոյրն Ահարոնի. և զԴեբովրայ ընտրեաց և առաքինացոյց. և Հոգւոյ մար-գարէ էր. և Աննա մայրն Սամուէլի առաքինացաւ. և դուստրն Փանուէլի մարգարէացաւ, հանդերձ այ-լովք՝ յորս պաշտեցան կամք այ։ Ապա՛ եթէ վասն պղ-տեղութեան դաշտանին արգելեալ են նոքա, նա և ա-րանց լինի այսպիսի ինչ։ Կամ վասն յղութեան արգելուք արգելլան. նա և արանց իսկ սերմն ՚ի նոսին կայ։ Եւ եթէ յղութեան պղծութիւն իցէ, ո՞ւր է այն՝ զի ասէ ցԵ-րեմիայ. «Մինչ չև նկարեալ զքեզ իցէ՝ յորովայնէ ծանեայ զքեզ. և մինչ չև ելեալ իցէ ՚ի յարգան-դէ՝ սրբեցի զքեզ»։

Ապա եթէ ած նկարէ մանկունս յարգանդի, ո՞ւր է պղծութիւն. և «Ես եմ, ասէ, որ ծնուցանեմ և արգելում», ասէ ած. և ո՞ւր է այն՝ զի ասէ «Ածի-ցից յոգւոյ իմմէ ՚ի վերայ ծառայից իմոց և ՚ի վերայ աղախնաց իմոց. և մարգարէասցին ուստերք ձեր և դստերք ձեր»։ Եւ եթէ այս ճշմարիտ է, ընդէ՞ր ար-գելան կանայք ՚ի խորանէն անտի վկայութեանց. միթէ զի մի՛ պղծիցեն զօրէնսն կտակարանաց. Եւ առաւել արդեւք իցեն օրէնքն քան զտուիչ օրինացն. և ահա խոստացաւ նա՝ թէ փոփոխելոց են, և նոր կտակա-րանք տալոց են։ Այլ թերևս ասիցեն. անէծքն օ-րինաց խափանելոց են ՚ի դարձի անդ, և ոչ եթէ օրէնքն ամենայն։ Սակայն ոչ տայ թոյլ մարգարէն յասել իւրում. ասէ. «Առաջինն մի՛ անկցի ՚ի միտս. և տաց նոցա իբրև զայն զհարցն իւրեանց»։ Եւ յայտ է թէ հարցն նոցա ամենայն օրէնքն ըր կատարեալ տուան օրհնութիւնք և անիծիւք. և ամենայնիւ խա-փանի և անցանէ, և այս տուեալ լինի մեզ եւս այլ. զի նա ինքն է գիտութիւն սրտի, որպէս և գրեալ է. ասէ. «Ի փոքրկանց մինչև ցմեծամեծս ծանիցեն զիս»։

Այսուհետեւ 'ի սիրտս երեւի ած և պաշտի, և չիք պղծութի՝ եթէ յայտնիցի արանց և կանանց, որպէս և պատէ․ "Սփռեցից յոգւոյ իմմէ 'ի վերայ ծառայից իմոց և 'ի վերայ աղախնաց իմոց․ զոր օրինակ և առաջին օրէնքն հասարակաց տուան, և եղան 'ի սուրբն սրբոց վասն նոցա․ զի ահա հրամայեաց Յեշովայ առնել սեղան, և գրել 'ի նմա յայտնապէս զամենայն օրէնսն ; և ոչ արգել ընթեռնուլ ուրուք ։ Ոչ եթէ զի զրկեալ էին նոքա 'ի նոցանէ, այլ զի եղիցին նոքա յիշեցուցիչք օրինացն մտացն նոցա ։ Եւ յայտ եղեւ թէ ոչ ինչ աւելի էր նոցա․ զի ահա օրէնքն նոցա յանդապատի․ անդ յանդիման ամենայն մարդոյ գրեցաւ ։ Այլ յաւելուածքն թլփատութեան և շաբաթուցն և ընտրութե՞ կերակրոցն համգերձ այլովք՝ որ յաւելան 'ի վերայ օրինացն մտաց, վասն յանցաւորութե՞ 'ի ստուգութե՞ անտի․ այն՝ որ ըղխէր և գնայր յաւիտենից 'ի սկզբանէ 'ի միտս ամենայն արդարոց ։ Վասն այսորիկ յաւել նոցա մանուկս, զի 'ի պատճառս նոցա պահեսցին մեծամեծք ։ Եւ յաճախեցաւ թիւն մարգարէից եղեւ 'ի վերայ նոցա, մինչեւ երեւեցաւ զաւակն՝ որ խոստացաւ ած Աբրահամու, զի 'ի նմա օրհնեսցին ամենայն ազգք հեթանոսաց․ և ըստանան զգիտութի՞ ճշմարտութե՞, և յիշեն զօրէնս բնութե՞ իւրեանց, զի 'ի նմանէ դատելոց են․ և առնուն [1] զհատուցումն ամենայն որդիք մարդկան, լուսաւորս և կատարեալս ։ Յորժամ զգենոյր քահանայ, ընդունէր նա զգիտութի և զյայտնութի․ կամ զլուսաւորսն և զկատարեալս դարձաւ կարգաց գիտութիւն և ճշմարտութիւն ։

Վասն բարութեան և այլոց արտաց ։

Դարձեալ հրամայեաց․ ասէ․ "Յորժամ արատ ինչ մարմնոյ իցէ, մի՛ մերձեսցի 'ի սեղան„ ։ Եւ այս ոչ եթէ 'ի մէջ մեղաց և արդարութեան որոշեն․ զի խեղդութիւնք արտաքոյ կամաց են, և մեղք անօրէնութե՞ 'ի կամաց են․ և աղատութիւն առնու զհատուցումն,

1 Յօրինակին առնու ։

և նոյն դարձեալ պատուհասի: Այլ՝ եթէ ոչ, եթէ ամենայն յորում խնդրութիւն արդարոյ իցէ, խոտեալ անարգեալ է, թէպէտ և յառաջագոյն ընտրեալ էր: Թէ այդ այդպէս իցէ, Սահակ՝ զի շլացան աչք նորա՝ խոտեալ անարգեալ է. և ահա 'ի խնդրուե̃ արդարոյն իւրոյ առաւել ևս եղև նա ընդունելի. օրհնեաց և եղև հաւատարիմ: Նա և Յակոբ յետ ընդարմանալոյ ամոլաջլի իւրոյ՝ և եղև 'ի նմա արատ կաղութե̃, արժան էր նմա լինել խոտան անարգ. և ոչ լինել սեղան ա̃յ, և ոչ տասանորդել, և ոչ առուգել օրհնութեցն մարգարէութե̃. և առաւել ևս յետ կաղալոյն իւրոյ կոչեցաւ անուն նորա Իսրայէլ: Եւ Մովսէս կակազոտ էր, ընդէ՞ր ոչ անարգեցաւ. և ոչ բժշկեաց զնա ա̃ծ, թէպէտ և կարի շատ խնդրեաց 'ի նմանէ. այլ հաւանեցուցանէ զնա և ասէ. "Ո՞յր տուեալ է մարդոյ բերան, կամ ո՞յր արարեալ է զհամրս և զխուլս և զականս և զկոյրս. ո՞չ ես տէր ա̃ծ": Եւ իբրև ընտրեաց զնա, զգեցոյց զնա բորոտութ̃, և այլ արատ 'ի վերայ արատոյ նորա յաւել նմա. և ոչ միայն զի ոչ անարգեցաւ նա, այլ առաւել ևս հաւատարիմ եղև, և տուաւ նմա առնել նշանս և սքանչելիս: Եւ Հեղի իբրև ծերացաւ և շլացաւ աչք նորա, ընդունելի էր ա̃յ, և 'ի քահանայութե̃ կայր. և որդիք նորա՝ զի ողջք էին, խոտեալ անարգեցան: Եւ Դանիէլ և ընկերք իւր, և նոքա ներքինիք էին և արատ գոյր 'ի նոսա. և ոչ միայն զի ոչ անարգեցան նոքա, այլ և առաքինացան ևս: Եւ որդիքն Իսրայէլի հնազանդեցան ծառայեցին Եգղոմ արքային. մովաբացւոց 'ի ձեռն Ահովդայ. որոյ ձեռն իւր աջ կարկամեալ էր. և եղև փրկութի̃ ամենայն ողջոցն:

Եւ յայսմիկ յայտ եղև՝ թէ ոչ եթէ արատք մարմնոյ անարգեալ են յա̃յ, այլ գործք չարք որ 'ի կամաց լինին: Եւ օրէնք զի հրամայեցին՝ ոչ եթէ վասն ողջոց, այլ վասն տղայոց անմտաց. զի յայտնի տեսլեամբ շքեղացուսցէ զպաշտօնն յաչս նոցա. և զի ուսուսցէ նոցա 'ի ձեռն յայտնի արատոցն, զի զգուշասցին ծածուկ արատոյ անտի ոգւոց: Այլ 'ի նմանէ ոչ եղեն պղծեալ. զի ահաւանիկ ոչ արգել և կար-

Ճեաց զնոսա ուտել՝ի պատարագաց անտի իւրոց, այլ վասն տղայոցն անմեղաց ասէ՝ արտաքս մի՛ երևեսցին ։ Զի ոչ եթէ պատիժք պատուհասի եղեալ են ՚ի վերայ արատոյ մարմնոյ, այլ ՚ի պատուէ անտի պաշտաման մերժէ զնոսա և հեռացուցանէ վասն լքանելոյ լուծումն տեսողաց. և ոչ եթէ ապականանելով ապականանեն արատք մարմնոյ ։ "Որ գնայ, ասէ, ոչ եթէ անարատ մարմնով, այլ ճանապարհ անբիծ, նա պաշտեսցէ զիս,, ։ Եւ ցԱբրահամ այսպէս ասէ. "Հաճոյ լեր առաջի իմ,, . մարմնո՞վ արդեւք, եթէ հոգւով ։ Եւ "Լեր դու անարատ,, . միո՞ք արդեւք, թէ մարմնով ։ Ո՞չ ահա յայտնի է այս՝ թէ գործովք և ոչ անդամովք ։

Նոյն արատք մարմնոյ հանդերձ դաշտանի վասն տղայոց անմեղաց. և վասն զի խորհէին զայն ՚ի մէջ հեթանոսաց, եւս և նոցա, զի մի՛ կարծիցեն թէ պաշտօն կռոց սուրբ է քան զայ. և վասն այնորիկ եւ նոցա քնարս և սաղմոսարանս և զամենայն երգս արուեստականաց. այլ արգելաց նոցա զճարպն, զի նա ինքն յստակութի̃ և սրբութի̃ մսոյ. և պղծեաց զբորոտութի̃, զի չիք ՚ի նմա արիւն, զի նա արգել զսեղանն և զպաս նորին ։ Եւ զի նա ինքն է կեանք մարմնոյ, և առանց նորա մեռեալ է նա ։ Եւ զի եւթն ազգս ասաց վասն բորոտութե̃. ՚ի յաճախել անդ և ՚ի տուն ուրուք, ասէ, և յանօթ, ՚ի մեծացուցանել անդ, և կարծեսցի թէ ինչ աւելի կայցէ նոցա քան զհեթանոսաց, զի կապիցին ՚ի նա իբրև զայն, զի առյանձն զզոհն նոցա. զի արգելցէ զնոսա առ ՚ի դիւաց՝ զի ՚ի նմա կապեսցին, առաջի խորանին, ասէ, վկայութեանց. և բանիւ քահանային սոյնպէս. և այն երկուցն հաւուց. ահա, ասէ, սրբիք դուք. որպէս զի ուրախ լինիցին ընդ քաւութիւն՝ որ լինի նոցա ՚ի ձեռն թռուանելոյ հաւուն ։ Եւ իբրև զայն զնոխազն աղազայելի. և իբրև զայն զի ասէ "Բարձցէ զմեղս մեր և ընկեսցէ ՚ի խորս անդնդոց ծովու,, ։ Այլ քանզի ՚ի խորհուրդս գրեցան՝ զոր դրոշմեալ է Մովսիսի, զի վկայէ նորին հնոյն՝ թէ "Այս գրեցաւ վասն մեր, զի ոչ եթէ, ասէ, վասն եզանց ինչ փոյթ էր այ,, ։ Արդ բոլորովին այն որպէս իբրև զխորհրդիւ յառնուլ զարդ-

բութիւնն եղև պատարագ վասն նորա փոխանակ քաւութեան նորա ։

Զաւն որ զենեալ լինէր և հեղեալ լինէր արիւն նորա 'ի վերայ ընկերին իւրոյ, այն զի ոչ հաւատարեալ լինէր ընկերութեան մահուն նորա*, խորհուրդ նկարեալ էր նա 'ի ծննդոցն Ադամայ. զոր օրինակ լի էր բորոտութեամբ մարմին նորա, սոյնպէս և Ադամ մահուամբն իւրով ։ Եւ զոր օրինակ պիտոյ լինէր կենդանի վասն պարտեաց նորա, զի կորուսցէ զկենդանութիւն իւր փոխանակ սրբութեան բորոտին, սոյնպէս պիտոյ էր միջնորդ 'ի սրբութիւն հին մարդոյն. զի եթէ հաւն, զի ոչ էր մերձ 'ի բորոտն, և դատապարտեցաւ 'ի մահ, սոյնպէս և Որդի իբրև զմեղս ոչ գործեաց. «Ոչ, ասէ, գործեաց զանօրէնութիւն». և «Ո՞ 'ի ձէնջ յանդիմանեսցէ զիս վասն մեղաց», եւ զանձն իւր վասն սրբութեան պղծութեան հօրն մերոյ, այն՝ որ բորոտեալն էր մահուամբ ։ «Թագաւորեաց, ասէ, մահ և 'ի վերայ այնոցիկ՝ որ ոչն մեղան» ։ Արդ որ խորհուրդ առաւել է քան զայս, կամ առաւել օրինակի՝ որ յայտնապէս ցուցանէ զխորհուրդս նորայն կտակարանաց ։ Իբրև զայն՝ զի բորոտն սրբեցաւ իբրև զԱդամ, և քահանայն իբրև զՅովհաննէս ։ Աղբիւրն իբրև զմկրտութիւն աւազանի ; փայտ նոճի իբրև զփայտ խաչին. և երկու հաւքն՝ մին որ զենեալ լինէր, և միւսն որ ոչն մեռանէր, երկու զօրութիւնք մարմնեղէնք և ոգեղէնք ։

Բայց քանզի ցայնժամ նշմարանք էին և ոչ մարմինք, և խորհուրդք էին և ոչ լրումն ճշմարիտ, անկարկեաց 'ի ձեռն խորհրդոցն գործ հին հանդերձելոյ. զի ամենեքին այնոքիկ՝ որք կային 'ի վերայ աղբերն, ողջութիւն առն որ անդ՝ մի եղեն և խառնելով ։ Եւ զի հանդերձեալ էր տէր մեր մատնել զմարմին իւր 'ի մահ, զի ոչ կարէր տիրել 'ի վերայ այնր բնութեան գաւազան ժահրին ; յառաջագոյն կանխեաց նկարեաց 'ի հաւսն երկոսին. զի այն՝ որ մեռանէրն, եղիցի օրինակ մարմնոյն. և փայտն՝ որ թանայր արեամբն նորա, եղիցի խաչն՝ որ ընդունէր զարիւն 'ի կողից նորա. և աղբերն խորհուրդ աւազանին մկրտութեան ։ Եւ զի բարձ այն՝ որ ոչն հա-

զորդեցաւ 'ի մահն նորա., զչարչարանս արեանն այնորիկ որ զենաւն ։ Որպէս և ա̃ծութիւն ,. զի կարծեցաւ թէ չարչարեցաւ ցաւովք խաչին . որպէս զի եղեցի կենդանի մանկայն արեամբ՝ որ հեղեալ է 'ի վերայ թիկանց հաւուն թռուցելոյ . խորհուրդ տեառն մերոյ, զի վերացաւ եւ նստաւ ընդ աջմէ աթոռոյն ա̃ծութեան ։

Արդ եւ 'ի խաչ Որդի, իբրու ա̃ծութիւն ոչ չարչարեցաւ . որպէս հաւն՝ զի բարձեալ ունէր 'ի վերայ թևոց իւրոց զչարչարանս մանկոյն և թռչէր . Այլ չարչարեցաւ ; զի զմորին չարչարանաց բարձեալ ունէր 'ի վերայ թևոց իւրոց . այլ ոչ չարչարեցաւ , զի ահա կենդանութի նորա քարոզ է 'ի վերայ զրպարտութեն՝ որ եդեալ էր 'ի թիկնամէջս նորա ։ Եւ Յովսէփու հեզի խոնարհի , զի բարձ տարաւ պատմուճանն նորա զչարչարանս մահու առ հայրն նորա . և ցաւք ուլոյն առ եղբարս նորա ։ Զի զոր օրինակ նկարեալ էին նշանքն տեառն մերոյ 'ի Յովսէփ , սոյնպէս դրոշմեալ էր խոնարհութի նորա յուլն՝ որ ընկալաւ զմահ նորա ։ Զի թէպէտ և արիւն ուլոյն 'ի վերայ պատմուճանին Յովսէփու հեղաւ 'ի ձեռաց անտի եղբարցն իւրոց , սակայն 'ի միտսն Յակովբու հօրն իւրեանց Յովսէփ սպանեալ էր ։ Իբր ոչ կարացին սպանանել զՅովսէփ , զվկայութի բերանոյ իւրեանց առ հայրն իւրեանց հաստատէին՝ եթէ զարիւնն զոր հեղին ձեռք իւրեանց , Յովսէփու է . զոր օրինակ և հրեայքն որդիքն նոցա ժխտին՝ թէ զայն զոր արարին ընդ նա , յայն՝ զոր խոստովանիմքն մեք՝ թէ ա̃ծ է նա , մարդոյ գործեցին ։ Այլ ոչ Յովսէփ մեռանեցաւ , և ոչ ա̃ծութիւնն չարչարեցաւ ։

Փոխանակ այնր՝ զի ասէ “Աղուամազ,,. 'ի հեբրայեցի , “Մազ խարտեաշ,,։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ “Զքեզան իւր պատեալ կրեսցէ,,. հեբրայեցի , “Յաղթեա նոսցի,,։ Փոխանակ այնր՝ զի ասէ “Յաւէժ կամ յօգուտն,,. հեբրայեցի , “Յաւէժ կամ 'ի թեզան,,։ Ի հայելեաց անտի կանանց , 'ի տեղւոջ յօրաւմ եղեալ էր զաւազանն արուրի 'ի վերայ աշտիճանացն աղբեձեաց , զի 'ի նմանէ արբուցանէին զջուրն քննութե . կամ 'ի հայելեաց անտի , զի դային կա-

նայէք յաղօթս կայլին առ դուռնն վրան ժամուն, զի տեսցեն զնա կանայք և երկիցեն ։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Ջեռնցեն զհաւն 'ի վերայ աղբեր ջուրցն կենդանեաց"։ Հեբրայեցի, "Ջեռնցէ զհաւն յաման մի՝ յորում իցէ ջուր աղբեր կենդանի"։

Վասն մեռելոյ ։

"Որ մերձենայ ։ ասէ, 'ի մեռեալ, պիղծ կացցէ"։ Եւ ընդէր եկն լուացի և սրբեսցի, և եթէ մարմին պղծէ. Թէ այդ այդպէս իցէ, ամենայն սըրբութի ոգւոյ իցէ ։ Կամ զիարդ ոչ սրբեաց նա ըզմարմին 'ի մերձենալն իւրում. և եթէ այս այսպէս իցէ, ընդէր պղծին կենդանիք վասն արատոց և մեղաց. և ընդէր անուանք և մարմինք Աբրահամու Սահակայ և Յակովբու սուրբ են համդերձ ոսկերօքն Յովսէփու և Դաւթի և Եղիշայի, համդերձ այլովքն ։ Այլ յայտ է այս՝ թէ ամենայն որ արդարքն էին գործովքն իւրեանց, և մարմինք իւրեանց սուրբ և սիրելի են. և այնոքիկ որք մեղաւորքն էին 'ի կեաննըս իւրեանց, և յիշատակ նոցա ատելի է, և զազրացեալ աղտեղեալ են մարմինք նոցա իբրև զԱխաաբուն, զՄանասէին և զԵրոբովամուն համդերձ այլովք ։ Եւ Եղիշայի մարմինն առաւել քան 'ի կեանս իւր առաքինացաւ ։ Մովսէս ոսկերօքն Յովսէփու առաւելաւ, և ած թաղեաց ծածկեաց զնա. և չիք պղծութի առ առողջս ։ Եւ Սամփսոն իշու ոսկերովքըն առաքինացաւ. և ոչ պղծեցաւ, բայց իբրև մեղաւ և անց ըստ ուխտ իւր, և լաւ թուեցաւ նմա կլինն իւր քան զած ։ Եւ Եղիշայ 'ի մերձենալն իւրում առ մեռեալն նա և ոչ պղծեցաւ, 'ի ժամանակի իբրև եդ զբերան առ բերան և զամենայն առ ամենայն, այլ սրբութիւն նորա եւս քան զեւս յաճախեաց և բազմացաւ, և մարմնով վերացաւ ընդ երկինս ։ Արդ գործք սրբեն և պղծեն, և ոչ եթէ մեռելութիւն և կենդանութի, այլ պատուիրանն՝ զի տուաւ ։

Եւ վասն կերակրոցն զի զզուշացոյց, ասէ "Զմեռելոտի մի ուտիցէք". և ահա յառաջ քան զօրէնսն

այս առաքինութիւն սուրբ մնացին, և երկու՝ զի յաւետեկեր-անտի իւրոյ ծանրանան մարմինք: Իսկ և զայն՝ թէ ընդ-մեռանելութիւն նորա հաղորդիցին, «Բնաւ, ասէ, ամենեքին մի մերձենայք»: զի յայտ արասցէ ինչ մի նոր զի չիցէ 'ի մէջ հեթանոսաց, սրբութիւն պարկեշտութեան, ար-բեցեալ 'ի վերայ բնութեան: Քանզի զերկրաւորս խառ-նացեալ ժողովրդեանն այնմիկ, պարտ էր՝ թէ 'ի վե-րայ այսր սրբութեան պարկեշտութեան պատուիրեսցէ: Արդ զգուշութիւն 'ի բոլորութեան և՝ յայլոց արատոց անտի՝ վասն խիթի խղճի նոցա, զի երկիցեն յայն: Իսկ և զայն զչնութեան, ասէ «Որ չնայ, մեռցի»: զի յերկիւղէ պատժոցն պատուհասից պահեսցէ նա զպատուիրանսն: Արդ որ առին զօրանս, խնդրեն յայն զի փրկեսցին. և որ ոչն առին, աղաչեն զի ապրես-ցին. և զի յամենայն ժամ յիշեսցի արդարութիւնս, այս ինքն ոտն առաջի երեսաց իւրոց:

«Իցէ, ասէ, Ահարոն 'ի վերայ երկուց նոխազաց վիճակս երկուս. վիճակ մի յանուն տեառն, և վի-ճակ մի ազազայելի[1] յանապատ»: Մինն երթայր և դառնայր տարոյ տարի: Կարմիրն մանեալ զի սպի-տականայր. և զի ոչ հաւատան այլք, զենցի նոցա միւսն ևս 'ի քաւութիւն: Իսկ և զայն՝ զի ասէ. «Թէ եղիցին մեղքն ձեր իբրև որդան կարմիր. և եթէ ե-ղիցին իբրև զձանձրախարիթ, իբրև զձիւն սպիտակ արարից: Եթէ ախորժեսջիք և լուիցէք ինձ բանից իմոց, զերանութիւն երկրի կերիցէք»: որպէս նախազն զի արածի զերանութիւն երկրի և դառնայ. այլ ոչ եթէ զօրութիւն ինչ այլ է ազազայէլ, այլ որպէս ա-նապատն կայցէս: Կամ իբրև զայն՝ զի ասէ «Բարձ-ցէ զմեղս մեր և ընկեսցէ 'ի խորս անդնդոց ծովու, և իբրև զմատեանս յեփրատ»: Բայց դարձեալ ա-սասցուք. և զոր օրինակ ետ նոցա զտօնս տարեկա-նաց, զի նոքօք յիշեսցեն զաքանչելիս նորա՝ որ առ-նոսա. և 'ի միտ առցեն զի ոչ ընդդէմ մեղաւորաց փակեաց զգուռն; և ոչ յապստամբողաց արգել զխը-րատ իւր: Սոյնպէս և ազազայէլ, զի յիշեսցեն ըզ-սաստկութիւն նորա և զքաղցրութիւն նորա՝ որ եղև 'ի վե

1 Յօրինակին ազազելի. ուղղեցաք ըստ այլ աւրինակացն:

բայ նոցա յանապատի անդ. և արգելցին նոքա 'ի մեղաց, զի ապագայելդ՝ սաստկութի նոյ անուանի : Արդ ուսոյց նոցա նովին գործովն նոյ :

Եւ զի եդ նա զօրէնսն, այլ ոչ եթէ 'ի ներքոյ ուխտի օրինաց իւրոց է նա, յորժամ անցանէին զուխտիւ նորա : Խոստացաւ հարցն նոցա . ասէ "Ի դարս չորրորդ մտցեն յերկիրն քանանացւոց" : Եւ փոխանակ զի անցին նոքա զուխտիւ նորա, առ ցրուեաց զոսկերս նոցա յանապատի անդ : Եւ ցոյց նոցա ըզսաստկութի իւր, իբր ոչ պահէ նա զուխտ իւր. զի յամենայն ժողովրդենէ անտի զերկուսն տարաւ մոյծ : Մնացորդք են, որչափ և էն, 'ի դարէ անտի յայնմանէ. արժանի արար երկրին պարգևաց, զի զուխտն իւր հաստատեսցէ, և 'ի ժողովրդենէ անտի վրէժ խնդրեսցէ, և վկայքն մի զրկեսցին :

Ո՜վ այս անապատ, որ այսպիսի իրք գործեցան 'ի սմա; և զայս սաստկութիւն սուգութե, զի ոչ անխնայեաց 'ի նոսա, արար զի յիշեսցեն յանապատի անդ՝ յորում հարուածող լինէր նոխազն : Եւ զի մի լքցին մեղաւորք 'ի կենաց իւրեանց յորժամ լսիցեն զսաստկութի նորա, և հասցեն զչոյս անձանց իւրեանց, ետ նոցա նշանակ չինութե 'ի պատարագել նոխազին զենլոյ. զի թէպէտ և իցէ նոյ սաստկութի, զի ոչ ընդունի զգոհս պատարագաց առանց արդարութեանց ողորմութե, սակայն գոյ նորա և ողորմութի, զի հրամայեաց նա մատուցանել զգոհս պատարագաց անասունն փոխանակ մարդկան : Զի երկու իրք՝ որ միմեանց ոչ նմանեն, զի անկեալ կայցեն նոքա 'ի մէջ ծփանաց, զի մի յողորմութիւն նորա ապաստան լինիցին վասն սաստկութե նորա. և մի 'ի խստութենէ անտի նորա զարհուրեալ երկիցեն վասն քաղցրութե նորա. և զի մի 'ի պատարագսն ապաստան լինիցին առանց արդարութեան. և մի 'ի սուգութէ անտի զարհուրեալ երկիցեն յորժամ յապաշխարութիւն ապաստան լինիցին, որպէս և յայլում վայրի գրէ. ասէ. "Հատուցանէ զմեղս հարց յորդիս՝ յերիս և չորս դարս" : Եւ զի եղև ժպրհութիւն որ գողութեն ոչ հաստատեաց առ Աքար խոստովանողն իւր : Եւ 'ի միւսում վայրի լցած զուխտ օրինաց իւրոց ար-

դարութ՟, որ պատահեաց նմա 'ի ժամանակի իբրև անարգեալ զՀեղի, և ընտրեաց զՇմուէլ։ Զի այնոքիկ որ լսեն՝ թէ մինչ 'ի չորս դարսն ներբէ և երկայնամիտ լինի, և լքանին լուծանել 'ի մեղանչել, զարհուրեալք երկիցեն 'ի հարուածոց անտի Աքարայ. զի ոչ ապրեցան որդիքն նորա՝ որ հեռի էին 'ի յանցանաց անտի նորա՝ 'ի բարկութէ անտի, որ եկն 'ի վերայ նորա։ Եւ քահանայքն որդիքն Ղևեայ, թէ կարծիցին՝ զի իբրև մեղաւորք իցեն, փութացեալ ընթանան աւետիքն պարգևաց Ահարոնի առ նոսա, արգելեալ կարճեսցին Շմուէլիւ ղևտացւով, որ ընտրեցաւ 'ի քահանայութիւն։ "Որ զիմն պատուիցեն, ասէ, պատուեալ լիցին. և որ զիմն անարգեսցեն, անարգեալ լիցին"։ Իբրև անկարկեաց դարձեալ վասն տեառն մերոյ, զի նախազն՝ որ փոխանակ յանցաւորաց զենեալ լինէր, զԱզազէլ երկրորդ նկարէր. զի փոխանակ մեղաց դարուց նորա 'ի խաչ մատնեալ լինէր։ Իբրև զայն զուարակին, զի արտաքոյ բանակին այրեցեալ լինէր, այլ և Քրիստոս արտաքոյ բանակին յանձն առ զչարչարանս։ Եւ զի վիճակ որպէս ՟այ ելանէր նմա, զի Յիսուս արասցէ վասն այնորիկ որ ծածկեալն էր. և կարմիրն մանեալ՝ նշան արեան նորա, զի բառնայր նախազն զմեղս և ելանէր. իբրև զայն՝ զի ասաց մարգարէն վասն Որդւոյ. ասէ. "Նա զմեղս բազմաց բարձցէ և ընդ անօրէնս համարեսցի", այլովք հանդերձ։

## ԳԼՈՒԽ Դ

"ՅԱՄՍԵԱՆ, ասէ, եւթներորդի 'ի տասն ամսոյն պահեսջիք և խոնարհեցուսջիք զանձինս ձեր. ամենայն ինչ գործ գործումն յայն աւուր մի գործիցի"։ Եւ եթէ յայս պահս, որ տարւոյ տարի լինի, ամենայն մեղք թողեալ լինին. զոհք և քաւութիւնք ընդէր։ Արդ ոչ եթէ 'ի պատճառս որթուն են այս պահք միայն, այլ վասն ամենայն մեղաց և անօրէնութեան նոցա։ Որ օր եւթն և տասն էր մարգաց ամսոյ, էջ 'ի լեռնէ անտի Մովսէս, և խորտակեաց զտախտակ-

սըն, և խարտեաց մանրեաց զորթն. և ամիսն եւթ-ներորդ, զի 'ի նմա եւս նոցա պատուէր հրամանի պա-հել զպահսն, հոռի ամիս է: Փոխանակ այնր՝ զի ասէ “Որ ոք և արկցէ զսերմն իւր 'ի կին օտար”. հեբ-րայեցի, “Մի տացես 'ի սերմանէ քումմէ պատիւ Մեղքոմայ”. այս ինքն, զի դստերք հեթանոսաց յա-ռաջ մինչև արանց լինէին, նախ պոռնկէին և ապա արանց լինէին, և զվարձս պոռնկութեան կուսու-թե իւրեանց կռոցն նուիրէին: Ասէ “Մի տացես դու 'ի սերմանէ քումմէ Մեղքոմայ”. զի նա ինքն է Թարհաթայ կուռքն որդւոցն Ամոնայ.

“Այր ոք, ասէ, որ և տացէ զանձն իւր 'ի խառնս անասնոյ, մահու մեռցի, և զանասունն քարկոծ ա-րասցեն”: Զի այն օրէնսդիրն, որ զքարինսն զգե-ցեալ բորոտութեամբ հրաման ետ խլել յորմոյ՝ զի յստակեցուսցէ և պարզեսցէ զմիտս բնակչաց աշխար-հին, նա դարձեալ հրամայեաց քարկոծ առնել զա-նասունսն՝ որ պղծեցաւ. զի մի վնասիցին 'ի դնել մտաց իւրեանց տեսողքն նորա, և զի մի դարձեալ յիշեսցին 'ի մէջ նոցա իրքն այն:

“Դուստր քահանայի, ասէ, եթէ յաղտեղութե պղծութեան հայհոյիցի, կենդանւոյն այրեսցեն. և դուստր դոյզն մարդոյ դոյզն մահու մեռցի”: Բայց նա քանզի 'ի սրբութէ անտի ուտէր, որչափ ևս ա-ռաւել այն՝ որ ուտէ զմարմինն կենդանի, կամ պղծէ զխորանն սրբութե:

Վասն ափնեաց և հասկաքաղաց և ճռաքաղի զոր պատուիրեաց, զի ուսուսցէ նոցա ողորմութիւն, զի հաղորդեսցին որոց ոչն իցէ աստ ընդ այնոսիկ՝ որոց իցէ: Եւ զի ոչ եւս սրբանալ քահանայիցն յամուս-նութէ, զի մի խափանեսցին, և նուազեսցին զաւակ քահանայութե. զի ահա հրամայեաց զի մի արբցեն քահանայքն գինի յորժամ 'ի սպաս պաշտաման մեր-ձենայցեն. և որդիքն Յովնադաբու ընաւ ամենեւին գինի ոչ արբին, և ոչ ագարակ ստացան. արդ եպե-րեա՞լ ինչ իցեն նոքա՝ թէ ահա յաւելլով յաւելլին յօրէնսն. ոչ:

Այր ոք, ասէ, եթէ իշխեսցէ հայհոյել նզովել զա՛ծ, մեղք լիցին 'ի նմա”: Այս ինքն ամենայն որ

իշխեսցէ ասել, այսպէս եղիցի տեառն այ Իսրայէլի, այնպիսին մահու մեռցի : Կամ որ հայհոյիցէ զկուռս 'ի կարդալ իւրում նմա զանուն այ. և այսպիսի ինչ եղիցի այսր անուան այ, մահու մեռցի. փոխանակ զի հայհոյեաց նա զանուանն երկրպագեալ, և ետ զնա կռոց : Բայց հեբրայեցի, "Որ հայհոյեսցէ զդատաւոր իւր, մեղք լիցին նմա. այլ որ իշխեսցէ անուանել հայհոյութիւն զանուն տեառն, մահու մեռցի" : Եւ այն՝ զի ասէ "Յետ յիսուն ամի դարձցի մարդ 'ի սահման իւր, զի եղիցին արմտիքն յիսունն ամի 'ի տեղ գնոց. և ապա առցէ զսահմանս իւր" :

ԿԱՏԱՐԵՑԱՒ ԴՊՐՈՒԹԻՒՆ ՂԵՒՏԱՑԻՈՑ

## ՏԵԱՌՆ

# ԵՓՐԵՄԻ

## ԽՈՐԻՆ ԱՍՈՐԻՈՑ

### ԴՊՐՈՒԹԻՒՆ ՉՈՐՐՈՐԴ ԱՐԱՐԱԾՈՑ

# ԹԻՒՔ

### ԳԼՈՒԽ Ա

ԽՕՍԵԼ սկսաւ Տէր ընդ Մովսիսի և ասէ. “Խօսեաց դու ընդ որդիսդ Իսրայէլի և ասասցես. այր կամ կին ոք՝ որ ոք արասցէ ինչ մի յամենայն մեղաց մարդկօրէն յանցանս, դատապարտեսցի անձն այն. և խոստովան եղիցին վաղվաղակի ըզմեղս իւրեանց՝ զոր արարին, և դարձցին մեղք նորա ՚ի գլուխ նորա„: Բայց հեբրայեցի, “Մատուսցէ զվասն գողման, նախ զգլուխն, և ապա զհինգերորդման ՚ի վերայ. և տացէ այնմիկ՝ որում յանցեաւն: Ապա թէ չիցէ ոք առնն մերձաւոր, ածցեն զնա առ քահանայն, ժողովուրդն տասանորդել ղևտացւոց. և ղևտացիքն Ահարոնի, և Ահարոն այ̃„: Եւ իշխան որդւոցն Գադայ, Եղիափաս որդի Հռագուէլի. անուն է հեբրայեցերէն Յոթորայ: Որդիք Գեթանեայ յետոյ խորանին բանակեալ էին յարևմտից կողմանէ, և դուրք նորա ընդ արևելս:

“Որն աւրուք, ասէ, եթէ եկեսցէ ՚ի վերայ նորա ոգի նախանձու, և նախանձեսցի ընդ կնոջ իւրում, ածցէ զկինն առ քահանայն„; այլովք հանգերձ: “Ապա թէ ոչ իցէ, ասէ, պղծեալ կինն, քաւեալ եղիցի, և ծնցի

արու մանուկ ,,։ Եւ եԹէ ամուլ լիցէ զիա՞րդ ծնցի ․ սակայն և այս ողորմուԹի նորա է ։ Եւ որպէս զի եղիցին վարձք զըպարտուԹեն նորա , բանալն արգանդի իւրոյ , "Քաւեալ լիցի նա , ասէ , և ծնցի արու մանուկ,, ։ Բայց եբրայեցի փոխանակ այնր՝ զի ասէ "Եւ ջուրս քննուԹեն ,, ․ "Ջուրս անիծեալս նզովեալս ,, ասէ ։ "Այ՛ եԹէ չիցէ , ասէ , պղծեալ , բերցէ նա պատարագ քաւել զյինքն , և այրն անպարտ եղիցի ,,։ Իսկ արդ կինն զի՞ մեղաւ ․ բերցէ զպատարագն այր նորա , որ զըպարտեաց զնա ։ Այլ քանզի նախանձ զայրման առն իւրոյ այրն պահապանէ նորա , և ոչ կամի նա ընդ կործանելն նորա ․ այն՝ որ արԹունն կայր վասն պահպանուԹեն նորա ։ Այլ Թերևս ինքն կինն եռ պատճառս 'ի լկտուԹեն իւրում ․ զի կարծիցէ 'ի վերայ նորա , այսպէս և յանցոյց զնա ․ Թէպէտ և յաղԹեաց նա արդարուԹբ , սակայն 'ի ներքոյ բծի դնէ զնա , զի զգուշասցի նա ։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ "Նաշիհ է նախանձու զայրման ,, ․ հեբրայեցի , "Պատարագ է նախանձու զայրման ,, ասէ ․ զի գարոյ չիք նաշի՛հ ։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ "Ջուր սուրբ կենդանի խեցեղէն ամանով ,, ․ "Ջուր աղբեր ,, ասէ ։

"Նու խառնիճաղանճն , ասէ , որ ելեալ էր ընդ նոսա , ցանկացան զցանկուԹի յանապատի անդ ․ և դարձան լացուցին եւ և զորդիսն Իսրայէլի ,, ։ Այս ինքն՝ զի նոցա անօրէն գործովն ուսան և նոքա եւ տրտնջել ։ Արդ՝ տես դու , խմորն չար զիա՞րդ դառնացուցանէ զամենայն քաղցր զանգուածն ․ զի որչափ և հեռանայր Իսրայել յերկրէն եգիպտացւոց , եւ քան զեւ յաճախէին բամբասանք նորա յարժանաւոր պատճառս ։ Անարժան սրտմտուԹբ ընդյր նա ․ բայց կուրացոյց զնա սրտմտուԹիւն [1] տրտնջելովն իւրով ։ Կուրացեալ էր նա՝ զի տրտնջէր , զի դարձցի նա մտանել յերկիրն ապականիչ եգիպտացւոց , քան մտանել յայնմ երկիր ազատուԹեան ։ Լաւ համարեցաւ նա ընտրել իւր զծառայուԹի հնազանդուԹե երկրին եգիպտացւոց , քան զլինել ներքոյ հնազանդուԹե օրինաց ․ զի ամենայն խրատ նորա որ ընդ ամե֊

1 Ցորենակին մրփմփուԹեան ։

նոյն տեղիս է, զի լուծն օրինաց 'ի վերայ պարանոցի նորա մի՛ դիցի ։

Բայց իբրև ետես խրատիչն՝ թէ կամօք հաճութեամբ ոչ խոնարհեցուցանեն զպարանոցս իւրեանց 'ի ներքոյ լծոյն օրինաց, զարթոյց բռնութի՛ 'ի վերայ կամակար կամացն. զի “Ի բազուկ, ասէ, բարձր, և մեծաւ բարկութեամբ թագաւորեցից 'ի վերայ նոցա,,։ Ած 'ի վերայ նորա 'ի սկզբան նախ զամաղէկացիսն, զի երկիցեն նոքա դառնալ անդրէն յերկիրն եգիպտացւոց 'ի պատերազմէ անտի հեթանոսաց։ Օգնական եղև նոցա 'ի ձեռն Մովսիսի, զի կարծեսցեն նոքա թէ յաղթութի՛ նոցա 'ի ձեռն Մովսիսի, և սիրեսցեն զնա։ Թող դարձեալ ա՛ծ զմեղս յանցանաց նոցա վասն աղօթիցն Մովսիսի, զի մի՛ ևս տրտնջեսցեն վասն նորա։ Բնակեցոյց 'ի վերայ նորա զփառս ա՛ծութե՛, զի մի՛ քարկոծ արասցեն զնա։

“Կացուցուք, ասեն, մեզ իշխան, և դարձցուք անդրէն յԵգիպտոս,,։ Ասէ ցնա տէր. “Ի բաց կաց, թոյլ տուր ինձ, թող սատակեցից և ջնջեցից զնոսա, և զքեզ արարից յազգ մեծ,,։ Խռովեցան նոքա, զի ոչ ոք էր իբրև զՄովսէս, զի եղիցի փոխանակ ընդ նոցա բարեխօս։ “Զինչ, ասէ, առնեմ ես զժողովուրդս զայս, զի սակաւիկ միւս ևս քարկոծ առնեն զիս,,։ Զգեցոյց նմա զփառսն ա՛յ, զի փոխանակ քարկոծելոյն երկրպագութի՛ մատուցեն նմա։ Սրբեաց զնոսա զերիս աւուրս, և խօսեցաւ ընդ նոսա որոտմամբք և փայլատակմամբք. զի կարծիցեն թէ փառք ինչ յորդեցան 'ի վերայ նոցա, զի եղիցին չքեղ անձինք իւրեանց յաչս իւրեանց։ Նա և այն՝ որ ընդունի զպատիւ փառաց նախապատուութե՛ և թագաւորութեան, չքեղանայ անձն նորա յաչս նորա։ Եւ խնայեաց նա 'ի պատիւ փառաց իւրոց. զի յիրս անարգս մի՛ թեթևացուսցէ զնա։

Ի ժամանակի իբրև սկսան նոքա տրտնջել, յայտնեցաւ նոցա սիւն. զի ծանիցեն եթէ այն՝ որ երևեցաւ 'ի սիւն հրոյ եգիպտացւոց և խռովեաց զնոսա, ոչ եթէ խստագոյն են նոքա քան զնա։ Այլ այն՝ որ յայսմ նշանի խրատեաց զժպիրհսն յամառոտս, նովին իսկ ցոյց զողորմութի՛ գթութե՛ իւրոյ։ Իբրև

ոչ տանջին նոքա, երկեցուցանէ զնոսա. զի 'ի գնացս այնոցիկ՝ որ տանջեցան, մի՛ հասցեն ։ Եւ եղև սահման նոցա դարձեալ Եգիպտոս և Սոդոմ. մի՛ որ տանջեցան, և միւս ևս՝ որ կործանեցան. զի 'ի լինել նոցա սահմանք երկրի նոցա յայտնապէս, եղիցին և սահմանք խորհրդոց նոցա 'ի ծածուկ. զի կործանումն Սոդոմայ և տանջանքն Եգիպտոսի յիշեցուցանէին նոցա յամենայն ժամու, զի զգործս եգիպտացւոց և սոդոմայեցւոց մի՛ գործեսցեն ։

Հար սատակեաց նա զանդրանիկս եգիպտացւոց, և կապեաց զյիշատակս ելից նոցա 'ի զատիս անդ ։ Հերձ բաժանեաց զծովն, կապեաց զյիշատակ փրկութեան նոցա յօրհնութեն անդ ։ Քաղցրացոյց զջուրսն դառնութեն, կապեաց զքաղցրութին նոցա 'ի դնել օրինացն և իրաւանց դատաստանի ։ Փրկեաց զնոսա յամաղէկացւոց անտի, կապեաց զյիշատակ յաղթութեան նոցա 'ի մատեանսն յիշատակաց ։ Ետ նոցա զմանանայն, կապեաց զյիշատակս նոցա 'ի սափոր անդ ։ Եւ բժշկեաց զնոսա 'ի հարուածոց օձից անտի, կապեաց զյիշատակ բժշկութեան նոցա յօձն պղնձի ։ Եւ զոր օրինակ 'ի բարձրանալ օձին 'ի վերայ փայտին, կեցին և ապրեցան այնոքիկ՝ որ հայէին յօձն պղնձի անիծեալ, սոյնպէս 'ի բարձրանալ մարմնոյն տեառն մերոյ 'ի վերայ խաչափայտին, կեցին և կեան ամենեքին որք հային ընդ այն՝ որ եղև անէծք վասն մեր ։

Փոխանակ այնր՝ զի ասէ "Ակն նորա իբրև զակն բիւրեղ". Հեբրայեցի, "Իբրև զտեսիլ մարգարտի" ասէ ։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Առնէին 'ի նմանէ նկանս". Հեբրայեցի, "Իբրև զշօլթս" ։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Եղիցի ձեզ 'ի դառնութին". Հեբրայեցի, "Իբրև 'ի զազրութիւն, մինչև այարէն, ասէ, ընդ քիթս ձեր դարձցի" ։

"Վեց հարիւր հազար, ասէ, զօրք են արք հետևակք ժողովրդեանս, ուր կամս ես 'ի մէջ նոցա. և դու ասես. տացես նոցա միս և կերիցեն ամսօրեայ մի ժամանակս. և զի՞նչ խաշինք, ասէ, արջառոց կամ ոչխարի բաւական լիցին դոցա. զի եթէ ամենայն հեղեղքն ձկանց որ 'ի ծովու անդ իցեն՝ որսասցին, բաւական

կարիցեն լինել զօգա 'ի կերակուր ,, ։ Եւ այս ոչ եթէ երկմտեաց նա, այլ զի ցուցցէ՝ եթէ այն ինչ՝ որ մարդկան դժուարին իցէ, բանն Այ բաւական է 'ի կերակրել զնա, ըստ նմանութեան այն զի ասաց Փիլիպպոս. ասէ "Հինգ հարիւր դահեկանի հաց ոչ է բաւական նոցա, իբրու առ սակաւ սակաւ կերիցեն ,, ։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Ձեռն տեառն բաւական է ,,. հեբրայեցի, "Միթէ ձեռն տեառն տկար և փոքր ինչ երևեցի քեզ ,,։

"Ոչ, ասէ, կարեմ ես հանդարտել միայն ժողովրդեանս այսմիկ ։ Ասէ ցնա տէր, ժողովեա դու առ իս արս եւթանասուն, և առից ես յոգւոյ անտի քումմէ, և արկից զնոքօք ։ Եւ եղիցին նոքա քեզ օգնականք՝ դիմակալ լինել նոքօք հանդերձ ժողովրդեանն, և քեզ միայն մի ծանրասցին ,,։ Արդ այն հոգին՝ զոր բաշխեաց նոցա, զարմատ նորա 'ի մի անդ կապեաց, զի մի բաժանեսցեն զնա որդիք մարդկան 'ի բազում արմատս ։ Արբոյց նոցա ած 'ի միջէ աղբերէ անտի, զի մի արբցեն բազումք 'ի բազում աղբերաց. զի իւրաքանչիւր յեւթանասուն ծերոց անտի իմանայր և ըմպայր 'ի մտանել հոգւոյն՝ որ մտանէր 'ի փոր նորա, գիտէր թէ 'ի Մովսիսէ ընդունիմ ։ Եւ զոր օրինակ ընդունին պտուղ ծառոց զզօրութիւն ջուրցն յարմատոց անտի, վասն այսորիկ և նոքա 'ի Մովսէս իբրև պտուղ յարմատս ինքեանց ուրախ լինէին ։ Նա և Մովսէս իբրև ծառ մի 'ի պտուղ իւր ցնծայր ։

Այլ իբրև կամեցաւ Յեսու որդի Նաւեայ՝ զի արկցէ բաժինս 'ի մէջ պտղոյն և 'ի մէջ ծառոյն նոցա, դարձաւ ծառն խոնարհեցաւ բանիւք իւրովք իբրև ոստովք իւրովք և առ չարս, զի պատուաստեսցին նոքա յոստ նորա ։ "Ո՞ տացէ ինձ, ասէ, տեսանել զամենայն ժողովուրդս տեառն 'ի մարգարէութիւն դարձեալ ,,։ Եւ զի ասէ. "Յոգւոյ քումմէ առից և արկից զնոքօք ,,, զի մի բարձրասցին նոքա 'ի վերայ նորա ։ Բայց ինքն Մովսէս զի և զայս ես Այ տացէ, ասէ. "Քանզի արկ տէր զհոգին իւր 'ի վերայ նոցա ,,։ Բայց հեբրայեցի, "Յորժամ արկցէ տէր զհոգին իւր 'ի վերայ նոցա ,, գրեալ է ։ Զայս մարգարէանային Ելդադ և Մովդադ հանդերձ եւթանասուն ծերովքն,

յասելն իւրեանց. «Մովսէս եհան զմեզ յերկրէն եգիպտացւոց, և Ցիշոլ տանի յայն երկիր պարգեւաց»։ Վասն այսորիկ ասաց Ցեշոլ. «Տէր իմ Մովսէս, հրաման տուր դու արանցն այնոցիկ, զի արգելցին նոքա 'ի մարգարէութենէ անտի»։ Կամ զի ահա մարգարէանային նոքա տեւանց քո, ասէ «Հրաման տուր և արգելցին»։ Բայց լռեցոյց կարծեաց, զի գիտաց թէ նախանձու ասաց։ «Մի, ասէ, նախանձեցուցաներ դու զիս»։ Բայց հերքայեցի՝ փոխանակ այնր՝ զի ասէ «Մարգարէացան, և այլ ոչ ևս յաւելին»։ «Մարգարէացան, ասէ, և այլ ոչ ևս հատան»։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ «Որ ընաւ սակաւ ժողովեաց տասն չեղջ»։ ասէ «Տասն քոռ»։

## ԳԼՈՒԽ Բ

«Այլ ի կուշն, ասէ, բամբասել Մարիամ և Ահարոն զՄովսիսէ վասն կնոջն այլազգւոյ»։ քանզի կին 'ի Հնդկաց ունէր Մովսէս։ Եւ վասն այսր ցուցանէ և Յովսեպոս, ասէ 'ի մատեանս իւր. ասէ այսպէս։ Ի ժամանակի իբրև աճեաց, ասէ, Մովսէս, առաքեցին զՄովսէս առնել մարտ պատերազմի ընդ Հնդիկս՝ ընդ թշնամիսն եգիպտացւոց. զի յուսացեալ յայս ապաստանէին Հնդիկք, եթէ ընդ ճանապարհսն անապատի ոչ ոք կարէ գալ 'ի վերայ նոցա վասն թևաւոր օձիցն խարամանեաց՝ որ էին անդ. և զսահմանս իւրեանց՝ որ յայլոց կողմանց էին՝ պահէին զգուշութք։ Բայց Մովսէս այսմ խելամուտ և տեղեակ էր, և ել եգիտ նա գործոյն. և չոգաւ նա ընդ անապատ կողմն. և ածին թռչունս, զի 'ի ձայնէ թռչնոցն փախչէին օձքն թևաւորք. և արձակեցին առաջի զօրացն։ Եւ որչափ ևս լսէին զձայնս թռչնոցն օձքն թևաւորք, տեղի տային. մինչև եկն եհաս 'ի վերայ թշնամեացն իւրեանց, և փախստեայ հալածականս արար զնոսա։ Եւ զի յանկարծակի հաս 'ի վերայ նոցա և պաշարեաց զնոսա, և լուծան լքան ձեռք նոցա, և փախստական անկան 'ի կղզի մի՝ զի անուն էր նորա Սաբա. այս իսկ է՝ զի ասէ «Թագաւորք Արաբայ և

Սաբայ ո․ և ապա յետոյ կոչեցաւ Մրիայ 'ի Կամբիւսեայ ըստ անուան քեռ նորա ։ Եւ իբրև մերձեցոյց Մովսէս զզօրսն իւր առ 'ի պարիսպն մարտնչել, ետես զնա Թերբաս դուստր թագաւորին Հնդկաց՝ թէ զօրապէս մարտնչէր, և ընդ գիւտս խորագիտութեն նորա զարմանայր․ և ապա յետոյ անկաւ պարտաւեցաւ նա 'ի գութ սիրոյ նորա․ և առաքեաց առ նա ։ Իբրև պաշարեաց Մովսէս զկղզին և նեղեաց զնոսա, և հուպ յառնուլ արար, սկսաւ աղաչել զՄովսէս տիկինն Հնդկաց, զի տացէ Մովսէսի զանձն իւր․ և առցէ զնա իւր կնութեն, բայց միայն զքաղաքն մի՛ նեղեսցէ ։ Եւ ետես Մովսէս եթէ հնար ինչ դիւրին յաղթել ոչ գոյ բայց յայսմիկ, և նստել պաշարել զնոսա ընդ երկայն ժամանակս ոչ կարէր, ձեռն ետ նմա Մովսէս և առ զնա իւր կնութեան, որպէս զի տացէ զզօրսն և զաշխարհսն իւր 'ի ձեռս Եգիպտացւոց ։ Վասն այսորիկ ասացին․ ասեն “Կին այլազգի արար նա” ։ Եւ գիրք ևս կնքեն վասն այսորիկ․ այո, ասեն, և կին հնդիկ արար ։ Եւ այս յառաջ քան զփախչելն յԵգիպտոսէ, և յերթալ առ Յոթոր, և առնուլ զդուստր նորա զՍեփորա իւր կնութեն ։

Եւ միւս ևս այլ մատենագիր Յունաց, որ անուանեալ կոչի Արտեմենոս, գրէ այսպէս․ ասէ ։ Իբրև եղեն թագաւորք յԵգիպտոս, թագաւորեաց Փաղմնթէս յԱրեգ քաղաքի․ և էր նա թշնամի ազգին Հրէից ։ Եւ եղև նորա դուստր մի, զի անուն էր նորա Մառի․ և ետ զնա կնութեն Քանեփրայ թագաւորի Մեմփեսացւոց քաղաքի, զի նա ինքն է Հաւգուսա, այն՝ որ առն զՄովսէս յորդեգիր ։ Եւ իբրև զօրացաւ, ասէ, Մովսէս, և շինեաց նա զՀերմոպօլիս քաղաք․ և արար նա մարտ պատերազմի ընդ Հնդիկս և ընդ Թեբայեցիսն զտասն ամ ։ Եւ յետ մահուն այնորիկ՝ որ առն զՄովսէս յորդեգիրս, Քանեփրա այլն նորա սպառնայր Մովսէսի սպանանել զնա ։ Եւ թաղեցաւ ինքն Մառի յԵգիպտոս․ և 'ի նմանէ կոչեցաւ Մոռիա քաղաք ։ Եւ իբրև գիտաց Մովսէս զնենգութիւնն Քանեփրայ, սպան նա զՔաննոթէսայն, այն որ կամէրն սպանանել զնա․ և ինքն փախստեայ

գնաց յԱրաբիա առ Հռագուէլ. և առ զդուստրն նորա իւր կնութեան։

"Այս սկսան, ասէ, Մարիամ և Ահարոն բամբասել զՄովսէս վասն կնոջն այլազգւոյ զոր առ"։ Եւ ահաւասիկ պատճառքն հրաժարեցութեան Մովսիսի մերձեցուցին զԱհարոն. Թէպէտ և այս այսպէս իցէ, սակայն մարգարէ անուանեցաւ աստուածոյն Փարաւոնի։ "Ընդէ՞ր ոչ, ասէ, զանգիտեցէք և ոչ զարհուրեցարուք բամբասել զՄովսէսէ ծառայէ իմմէ"։ Իբրև Մովսէս վասն այսր ոչ եղև ամբաստան, սակայն ա̃ծ ոչ անփոյթ արար. զի ստոյգքն և արդարք առ վրէժխնդրութեան անձանց իւրեանց հեղգք. քաղցունք լինէին, և ողորմութեամբ և անմեղութեամբ գնային[1]. բայց որ ա̃յ իրք էին, իբրև զառս բորբոքէին նախանձուն իւրեանց. նմա իսկ նմանօղք լինէին, զի վասն իւրոյն անփոյթ առնէ, և զծառայիցն իւրոց վրէժ խնդրէ։ Գրեալ այսպէս է. ասէ. "Խօսեցան որդիքն Իսրայէլի զբան հայհոյութեան 'ի վերայ ա̃յ"։ Եւ ոչ ուրեք յայտ առնէ՝ թէ ասաց. զիա՞րդ ոչ զանգիտեցէք և ոչ զարհուրեցարուք 'ի բամբասել զինէն. որպէս և աստ ասաց, ասէ "Ընդէ՞ր ոչ զանգիտեցէք և ոչ զարհուրեցարուք բամբասել զՄովսէսէ զծառայէ իմմէ"։

Փութացաւ վաղվաղակի վրէժխնդրութիւն զկնի պատգամին, որպէս զի փութացեալ տագնապեցին ուսօղքն, և 'ի նշանն պատժոց յայտնի եղիցին յանցաւորքն։ Արդ սկիզբն արար վրէժխնդրութեանն այնմիկ, զի սկիզբն արար նախանձու. և բորոտութիւնն եղև յայտնիչ և ծանուցիչ 'ի վերայ այնորիկ՝ որ վաղհասուկ եղև 'ի ժպրհութեան համարձակութեան. որպէս զի փութացեալ յօժարեսցի ապաշխարողն յապաշխարութիւն, և ապրեսցէ 'ի բարկութենէ խրատու։ Արդ յայս ամենայն փառքն ա̃յ քարոզեցան, և խոնարհութիւն հեզութեան Մովսիսի յայտնի եղև։ Եւ փոխանակ զի ոչ եղև նա ամբաստան զայնմանէ՝ որ յանցեան նմա, այլ աղօթս փոխանակ ընդ նոցա մատուցանէր։ Բայց ա̃ծ աղօթից նորա առ ժամանակ մի ոչ անսաց. ոչ եթէ զի ոչ էր հաճեալ ընդ նա, զի ահա

1 Յօրինակին գնացին։

ուանիկ 'ի Քորեբ լեառնն զմահն և զապականիչն սահ-մանեաց աղօթիւք իւրովք՝ 'ի ժամանակի իբրև փո-խանակեցին նոքա ընդ որթուն զա̃ծ . այլ զի քարո-զեացի նախ ժպրհութիւն համարձակութեան Մարեմուն առաջի տեսողաց, ասէ “Խորտակեցի զեւթն օր„ . որպէս զի լուիցէ ամենայն ժողովուրդն ։ Ոչ եթէ զի խայտառակեսցէ զնա , այլ զի դիցէ ահ և երկիւղ առաջի նոցա . զի “Ի մերձաւորս իմ, ասէ, փառաւո-րեցայց ես յանդիման ժողովրդեանդ„ ։ Եւ զի ցուց-ցէ ինքն Մովսէս՝ թէ առաւել են հաւատք քան ըղ-պատուէր հրամանի ։

Իբրև բորոտեցաւ Մարիամ, ոչ եթէ օրինօքն այ-նոքիւք՝ զոր ետ նա վասն բորոտութեանն՝ բժշկեաց զնա , այլ հաւատովք և աղօթիւք ։ Բայց Ահարոն զի ամպրեցաւ, զի զղջացաւ և ապաշխարեաց ։ Զի զոր օ-րինակ 'ի ժամանակի իբրև եանց Ադամ զպատուի-րանաւն, ոչ վաղվաղակի եդ 'ի վերայ նորա զպատիժ-սըն պատուհասից, այլ թոյլ ետ նմա՝ զի ապաշխա-րեսցէ, յայնմիկ՝ զի հարց զԵւայ, և անէծ զօձն նախ ։ Եւ զի արար նա զայս վասն յանդիմանութեան նորա , սակայն ոչ զղջացաւ և ապաշխարեաց . և կարգեցան եկին հասին պատիժքն պատուհասից 'ի վերայ Եւայի, և Ադամ ոչ կակղացաւ . ապա և զնա ևս հան ըն-կէց արտաքս ստուգութին 'ի դրախտէ անտի ։ Այն-պէս Ահարոն . իբրև ետես եթէ ընկալաւ Մարիամ զպատիժս պատուհասից իւրոց , գիտաց թէ և ինքն չէ ապրելոց , զի հաղորդակից էր նա յանցանաց նորա , որպէս Ադամ ընդ Եւայի . վասն այսորիկ փութա-ցաւ վաղվաղեաց ապաւէն իւր արար զՄովսէս ։ “Ա-ղաչեմ , ասէ , զքեզ տէր , մի շտապ տագնապի հա-սուցաներ 'ի վերայ մեր , զի յանցեաք և մեղաք մեք 'ի տգիտութեան մերում„ ։ Եւ քանզի փոխանակ անձին իւրոյ և քեռն իւրոյ հասարակաց աղաչեաց , որպէս զայն զՇմաւոնին Վիմի . “Զինչ , ասէ , եղիցի մեզ„ ։ Եւ գթածն քաւեաց վասն յանցանաց նոցա ։ Որպէս և Դաւիթ ասաց ցՆաթան , ասէ “Մեղայ„ . ետ նմա անդրէն պատասխանի և ասէ . “Եւ տէր թողցէ զյան-ցանս քո և մի մեռցիս„ ։

“Մի , ասէ , եղիցի պատուհաս մինչև 'ի մահ . որ-

պէս և մեռեալ՝ զի ելանէ յարգանդէ մօր իւրոյ, և կերեալ է կէս մարմնոյ նորա „. այս ինքն զի մեռաւ մորթ մարմնոյն, զի վառեցաւ նա բորոտութբ՟, զի ոչ զեռաց 'ի նա արիւն կենդանի ։ Բայց 'ի Հեբրայեցի ասէ . ասէ "Մի՛ եղիցի իբրև զմեռեալ մի, զի մինչև ելեալ իցէ նա յորովայնէ մօր իւրոյ, կերեալ իցէ զկէս մարմնոյ նորա անդէն 'ի նմին „. բայց պատճառք, զի տրտմնջեցին նոքա վասն նորա՝ կարծիք այս են ։ Քանզի խրատատու եղև Մովսիսի աներն իւր, և հաճոյ թուեցաւ նմա խրատն նորա ։ Եւ ասէ ցնա Մովսէս . "Մի՛ թողուր զմեզ յայս անապատի . լեր դու մեր առաջնորդ „. այս ինքն իբրև զմարգարէ մի 'ի նմանութեան Ահարոնի ։ Եւ իբրև տեսին Ահարոն և Մարիամ նախանձեցան . քանզի Ահարոն էր Մովսիսի 'ի տեղ մարգարէի ։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Եղեր դու մեզ առաջնորդ „. ասէ "Եղեր դու մեզ վկայութեան „ ։

"Առաքեա դու, ասէ, արս ընտիրս երթալ դիտել զերկիրն քանանացւոց „ ։ Եւ այս ոչ եթէ յայտնի եղև Մովսէսի ազգն քանանացւոց՝ ասաց նմա . ասէ "Առաքեսցես արս լրտեսս անդր „. այլ զի հանդէս արասցէ, և զչափ առցէ զանհաւատ դառնացող ժողովրդեանն . և յանդիմանեալ դսրովեսցի 'ի Հռախաբ հաւատացեալ ։ Իբրու մեծամեծ սքանչելի էին նշանքն որ շուրջ էին զնոքօք, յամենայն ժամ երկմըտեալ բաժանէր նա 'ի նշան անդ պտղոյն, այն՝ որ ըստ համեմատի յոյժ փոքր և նուազ էր նա քան զընկերս իւր, իբրև զայն զՑեշովայն որդւոյ Նաւեայ և զՀռախաբայն ։ Բայց ողկոյզն բաժակ փրկութեան նորոցն կտակարանաց . և դարձեալ խորհուրդ խաչին որ 'ի միջի, և երկու որ բարձեալն էին զնա, իբրև զայն՝ որ էին 'ի խաչ 'ի մէջ երկուցն անօրինաց ։

"Երկիրն, ասեն, մարդածախ մարդավար է „ ։ Եւ զիա՞րդ տեսէք դուք անդ սկայս որդիս սկայից 'ի Հրակայազանց . երկիր մի՝ որոյ այսպիսի պտուղ է, զիա՞րդ է նա չար ։ Եկն պտուղն, և եղև երաշխաւոր . քանզի սուտ համարեալ են յաչս նոցա աւետիքն և պարգևք, հայհոյեցին վասն բարութեան երկրին այնորիկ . զի պտուղն՝ որ բերին յերկրէ անտի յայնմանէ,

յանդիմանեալ կշտամբեաց զհամբաւսն՝ զոր հանին 'ի վերայ նորա ։ Զի եթէ չար էր երկիրն այն, իսկ զիա՞րդ պտղալծով բարձին զողկոյզն և բերին ։ Եւ եթէ երկիրն արդարեւ մարդավար մարդածախ է, իսկ զիա՞րդ սնոյց աճեցոյց երկիրն սկայս և սկայազունս. և դուք, զի սնայք յերկիրն եգիպտացւոց իբրև նստէիք դուք առ կաթսայս լի մսով, զիա՞րդ եղերուք դուք յաչս նոցա իբրև զմարախ ։

Աբրահամու զի ասացաւ նմա, թէ "Քեզ տաց զերկիրս զայս և զաւակի քում յետ քո", ցանկայր՝ զի 'ի քայլել ոտից զաւակին իւրոյ հաստատեսցի ուխտն այն իւրոյ ։ Եւ 'ի ժամանակի իբրև մտին լրտեսքն, զի խորամանեսցեն զցանկն հին և զսահմանն՝ որ յաւիտենից՝ զի ժողովուրդն երթիցէ մտցէ առ հարս իւր, ընթացոյց Աբրահամ թողեալ յերկիր զպտուղ երկրին առ որդիս իւր, որպէս աղաւնին զպտուղ ձիթենւոյն առ Նոյ արդար ։ Եւ զի ոչ էին նոքա որդիք Աբրահամու եթէ փափագիցեն և ցանկասցին, ելանել ընդ առաջ պարգևացն հօրն իւրեանց ոչ կամեցան ։ Եւ զի ոչ էին զաւակ նորա, ոչ վասն պարգևացն հօրն իւրեանց խոստովան եղեն, և ոչ աւետեաց նորա արժանի եղեն, զի սնունդ էին նոքա եգիպտացւոց և ոչ Աբրահամու ։ Առաքեաց ընդ առաջ նոցա զերկիրն օրհնեալ աւետեօքն, այն՝ որ ժողովեաց ամփոփեաց 'ի ներքոյ թևոց իւրոց զհարսն օրհնեալս, զպտուղն քաղցր և զանոյշ. խորհուրդ գործոյ հարցն նոցա՝ ստուգաց և արդարոց ։ Այլ ոչ գործոցն հարցն իւրեանց նմանօղք եղեն, և ոչ բարւոք առ հաւատչէիւն ճշմարիտ աւետեաց խոստովան եղեն նոքա ։ Եւ զի ոչ եթէ զպտուղ երկրի նոցա զրկեցին նոքա, այլ զաւետիսն անգոսնեցին նոքա. ընդդէմ այնր՝ զի ասէ "Երկիր է որ բղխէ զմեղր և զկաթն", դարձուցին յասել իւրեանց. ասեն "Երկիր մարդավար մարդածախ է" ։

Այս ողկոյզ նմանութիւն Աբրահամու, զի բարձեալ ունէր 'ի թևս իւր զժողովս խաղողոյ իւրոյ, և մտանէ առ զաւակ իւր բաժանել բաշխել ծննդոց իւրոց ըզքաղցրութիւն աւետեաց իւրոց ։ Սակայն ոչ փափագեաց և ցանկացաւ նմա ժողովուրդն. զի խաղող նոցա խա-

ղող դառնութե՟. վասն այսորիկ մատնեցան նոքա 'ի ձեռս մահու հնծանահարին իւրեանց. փոխանակ զի անարգեցին խոտեցին նոքա զողկոյզն՝ որ մտանէր խորհրդիւ, զի քաղցրացուցէ զդառնութիւս զողկուզացն որ ելին յերկրէն եգիպտացւոց: "Խաղող նոցա, ասէ, խաղող լեղի, և ողկոյզ նոցա ողկոյզ դառնութեան": Եւ զի գիտաց թշնամին զխորհուրդն, խռովեաց զժողովուրդն յօրինակ անդ: Այս է զկացութի՟ առաջին որ եղև օրինակ զպարտութեան վերջնոց. զի հարքն զրկեցին զկացան զերկիրն և ասեն. "Մարդածախ մարդավար է". և զողկոյզն զվկայն ճշմարիտ պարարտ երկրին. և որդիք նոցա զպարտեցին զՄարիամ և պտուղն որ 'ի նմանէ, որ հալածէ քաղցրութեամբ իւրով զդառնութիւնս հեթանոսաց: Զի վասն այսորիկ ողկոյզն խորհրդիւ իւրով սահման հաստատեաց և եդ, զի զպարտիչքն իւր յերկիրն պարգևաց մի մտցեն. զի նկարեաց գործովն իւրով զխաչն, այն՝ որ զժողովուրդն զկացող 'ի ժողովրդենէ իւրմէ եհան, և փոխանակ նոցա տնկեաց տունկ նորատունկ՝ որ խոնարհի յըմպելի արեանն ազատչին իւրոյ 'ի դրախտի անդ իւրում, զի նա ինքն է աւետիք պարգևաց իւրոց. զի հինն նորովն սիրեսցի, և նորն հնովն հաւատարիմ լիցի: Փոխանակ այնր՝ զի ասէ "Կենդանի եմ ես. և լցան փառքն տեառն յամենայն երկիր". հերքայեցի, "Կենդանի եմ ես, և փառք իմ ընդ ամենայն երկիր": Փոխանակ այնր՝ զի ասէ "Եւ ընկալցին զպատնկութիւս իւրեանց". հերքայեցի, "Զմեղս իւրեանց":

"Ամենայն որ արասցէ, ասէ, 'ի ձեռն բարձր". այս ինքն՝ որ յանձնէ մեղանչել հպարտութեամբ պատճառանօք. կամ անգոսնէ՝ իբրև գիտէ թէ մեղանչէ. կամ իբրև յիշէ մեղանչէ. յակամայ խաբէութի ոչ մտուցանէ: "Հանէք, ասէ, զայրն զայն՝ որ քաղեաց զփայտն յաւուրն շաբաթու, և մեռցի": Քանզի ամենայն ժողովուրդն խափանեալ նստէր, և նա հպարտացաւ ամբարտաւանութբ, որպէս զՋամբրին: Եւ զի մի խորամանկեսցին, որպէս և այրն որ զփայտն քաղեաց: "Մուանալով, ասէ, մուացայ ես": Ասէ "Արարէք դուք ձեզ արկանելիս քղանցա

ւորս, զի մի մոլորեցիք դուք զկնի ոտից ձերոց»:

«Ո՜ այս գիտնաշխիք, ասէ, եթէ տէր առաքեաց զիս, և ոչ եթէ յանձնէ ինչ գործեցի որպէս և դուք կարծէք»: «Ասացից, ասէ, և յանուն տեառն, և եղիցի: Արդ եթէ ըստ օրահասի մահու ըստ ամենայն մարդոյ մեռանիցին մարդիկս այս, և այցելութի պատուիրանի լցի սոցա իբրև այլոց, ապա զիս տեառն չիցէ առաքեալ գործել զայդ գործ: Իսկ եթէ արարածս ինչ հաստատիցէ, և ցուցցէ զզօրութիւն տէր, և բացցէ երկիր զբերան իւր, գիտնաշխիք, ասէ, եթէ ոչ 'ի կամս իմ ինչ բանամ ես զբերան իմ»: Եւ եթէ բարկացողացն սրբեցան բուրվառք իւրեանց յանձինս իւրեանց, ո՛րչափ ևս առաւել սրբին մարմինք մարտիրոսաց յանձինս իւրեանց: «Մի՛, ասէ, մերձեցի. օտարածինն արկանել խունկս առաջի իմ, զի մի եղիցի նա իբրև զԿորխ և զժողովուրդն իւր»: Եւ 'ի վաղիւ անդր յարեան ժողովեղեալք և թայրաթոսք և ամենայն ազգատոհմք. «Դուք, ասէ, սպանէք կոտորեցէք ջնջեցէք զայնչափ ժողովուրդն տն». այս ինքն, զի կացէք դուք, ասէն, յաղօթս, և արար զկամս ձեր Աստուած: Եցոյց զրպարտեալն զսէր իւր զոր ունէր առ նոսա: «Առ դու, ասէ, բուրվառ մի և արկ խունկ և քաւեա 'ի վերայ նոցա»: Եւ ապա ըստուգեցաւ նոցա այն՝ զի ասէ. «Արարից զքեզ յազգ մեծ»: Փոխանակ այնր՝ զի ասէ «Զի մի մտանիցեն տեսանիցեն զսրբութիւն մինչ դեռ ընկղմեսցի». հեբրայեցի, «Մինչ դեռ յայտնի է», ասէ:

«Տուցեն քեզ, ասէ, երինջ մի կարմիր տրմուղ անարատ»: Եւ եթէ զոհիւքն կարօտ էր, իսկ մոխրոյն երնջոցն՝ զոր ետ 'ի սրբութի կարօտելոցն, զի՞նչ կարօտ էր նա: Սկիզբն արար 'ի զուարակէ մինչև 'ի տատրակ, զի յայտ արասցէ՝ զի զոր օրինակ ոչ բռնադատեաց զնոսա յայտնի պատարագօքն աւելի քան զզօրութի նոցա, սոյնպէս և ոչ բռնադատեաց զնոսա ծածուկ պատարագօք. այլ թաղեաց 'ի զոհս անդ և զմոխիրն ևս երնջոյն իբրս անարգս: Զի յորժամ կարծիցեն՝ թէ զոհիւք ինչ կարօտ իցէ, յանդիմանեալ կշտամբեսցին ինքնին զոհքն. և եղիցի լուծանել նոցա յանձանց իւրեանց: Սոյնպէս մոյծ թաղեաց զամե-

նայն յամենայն ինչ. զի այն ինչ զոր Թաղեացն 'ի նմա, այն ինքն լուծցէ զնա: Եւ զի ելցէ զենցէ զքօշն, 'ի վաստակելն իւրում քահանայն՝ տացէ նա զվարձս քահանային, այն որ արբէն, զվարձս ոտից նորա:

## ԳԼՈՒԽ Գ

«Մօսեացես դու, ասէ, ընդ միմեզ, և արձակեսցէ ձեզ ջուրս»: Եւ փոխանակ զի բարկացաւ նա, և ոչ արձակեաց զջուրս իւր, յաւելեաւ Մովսէս և եհար զնա, և ապա արձակեաց զջուրս իւր: Այս, տէր Մովսէս. իսկ արդ դու երբ համբարձեր զձեռն քո 'ի վերայ արարածոց, և ոչ փութացեալ տագնապեցան 'ի զինէ անտի՝ որ 'ի ձեռին քում: Զի եթէ կամեցեալ էր Մովսիսի առնել մի 'ի նշանաց անտի գաւազանաւն և ոչ էր լեալ, բարւոք երկմտեալ բաժանէր նա 'ի վերայ գաւազանին. այլ՝ եթէ յամենայն տեղիս, ուր և կամեցաւ առնել նշանս և զքանչելիս, փութացեալ վաղվաղակի լինէին, չարաչար անարգեաց Թերահաւատութեամբն իւրով զզէն՝ որ պատկեացն զնա իբրև զարդար: Այս է Մովսէսի, զի 'ի բարձրութէ անտի աստուածութեան իւրոյ էջ նա 'ի Թերահաւատութի: Ասէ. «Ի վիմէ՞ աստի յայսմանէ հանէ ձեզ տէր ջուրս». ոչ եթէ զանձն իւր միայն անկարացոյց յայսմ վայրի ինքնին աստուածն Փարաւոնի, այլ զԱստուածն ևս Իսրայէլի փրկչացոյց ընդ իւր: Այլ պարզեաց այս և իբրև ոչ կամէին՝ ցուցին զզօրութիւն իւրեանց առ աստղս իւրեանց. զի ուսուսցէ, զի եթէ Թերահաւատութեան ատողին[1] իւրոյ այսպիսի զօրութիւն գործեաց, որչափ ևս առաւել հաւատովք նորա առաքինանայր նա:

Արդ «Հար, ասէ, Մովսէս զվէմն». զի ցուցցէ եթէ ոչ կարեն ելանել ջուրք փափուկք 'ի ցամաք վիմէն: Բայց վէմն վաղվաղակի փութապէս բղխեաց գետս, զի ելցեն ջուրք և կշտամբեալ յանդիմանեսցեն զայն՝ որ երկմտեալն բաժանեցաւ. զի խորհուրդ էր

1 Ցօրինակին ատողն:

նա այնորիկ՝ որ յորժամ երկմտեալ բաժանէին 'ի վերայ նորա որդիք ազգի ժողովրդեանն Մովսիսի, գործ աքանչելեացն նորա յանդիմանեալ կշտամբէր զնոսա: Արդ փոխանակ զի երկմտեալ բաժանեցաւ նա, զրկեաց և արգել զնա յերկրէ անտի պարգևաց: Այլ ոչ եթէ 'ի սրտի իւրում անգոսնեաց նա զպատուիրանն: "Դառնացուցիք, ասէ, զոգի նորա, և խռովեցաւ շրթամբք իւրովք: Փոխանակ, ասէ, զի ոչ հաւատացէք դուք զիս՝ փառաւոր առնել զիս 'ի մէջ ժողովրդոցն Իսրայելի, մի մտցէք դուք յայն երկիր պարգևաց „:

Արդ Մովսէս, այն որ պէսպէս նշանսն գործէր, ուղղել զխիստ ժողովրդեանն առ Աստուածն իւր հնարէր նա գործովքն իւրովք որ 'ի վերայ վիմին եղև, իբրև մարդ: Այս 'ի մտաց անտի նորա վրիպեցաւ, և աղօթս նա վասն յանցանացն ոչ մատոյց. վասն այնորիկ եդաւ 'ի վերայ նորա մնաս յանցանացն, զի զժողովուրդն իւր առ Աստուածն իւր ոչ հայեցոյց նոցա. իբրու զամենայն զգործս իւր՝ որ ինչ միանգամ գործէր նա՝ Աստուծով իւրով գործէր, և առանց գայթագղութեն լինէրն նա ժողովրդեանն: Յայսմիկ իսկ զի Աստուած մի՛ անձամբ իբրև 'ի պատիւ փառաց նորա և յաշակերտութեն ժողովրդեանն՝ բազում սիրովն իւրով զոր ունէր առ նա՝ խոստացաւ նմա, զի ընդ նմա և առ նմա և առաջի նորա կայցէ նա: Իսկ նա բարկանալովն իւրով 'ի վերայ վիմին հաղորդ և կցորդ լինէր նա ուրացողացն. զի վէմն այն ցամաք որ նկարեալ էր 'ի հին հաւատարիմ, այն որ ծնուցիչն էր որինացն, զպտուղս զոր յղացեալ ունէր վէմն, ոչ եթէ արտմտութեն ինչ արժան էր ծնուցանել զնա, և ոչ բարկութեն ինչ պարտ էր հանել զնոսա: Վասն զի աղօթիւք և խնդրուածովք պարտ և պատշաճ էր խորհուրդն փառաւորեալ կատարեալ հօրն փառաւորի զխոստումն իւր 'ի ձեռնկալըն իւրոյ կատարել նա. և զխորհուրդն Որդւոյ գգուել Մովսիսի արժան էր: Քանզի խորհուրդն Երրորդութեն անդ նկարեալ լինէր. զի ահա աւանիկ հայրն անդ էր, և ծնունդն՝ որ ոչ 'ի բնութենէ 'ի խորհուրդ վիմին առաջի նորին: Վէմն, ասէ. զի նա ինքն է Քրիստոս „: Եւ հոգին՝ որ

'ի Մովսիսի անդ է, այն որ առանց Հոգւոյ մի ինչ 'ի գործոց իւրոց նա ոչ կատարեաց։ Նա և մարգարէն իսկ նովին տրամութեամբ գործոյն այսպէս ասաց, եթէ "Դառնացուցին զհոգի նորա, և խօսեցաւ շրթամբք իւրովք"․ այն՝ որ այսու գործով միայն ևեթ եպերեցաւ, զի եղև նա առանց աղօթից․ զի վասն այսորիկ իսկ պատուհասեցաւ նա, քանզի ըստ օրինակի գործոյն զժողովուրդն առ ինքն դարձոյց․ իբրու զի թէ ինքն զօրութեամբ անձին իւրոյ զովացոյց զպապակումն ծարաւոյն նոցա։ Զի թէպէտ և ոչ այսպէս կամէր նա, սակայն ժողովուրդն այսպէս խորհեցաւ․ զի վասն այսորիկ արգել և զրկեաց զնա յերկրէ անտի պարգևաց։

Բայց ոչ եթէ վասն այսր ինչ առաւել ցաւէր Մովսիսի արդարոյն մտանելն յայն երկիրն պարգևաց․ այլ զի արգելեալ կարծեցան գնացք նորա, զի մի տարցէ մուծցէ զարդարն առ հարսն իւր, այս ինքն զՅովսէփ առ ծնանելեան իւր․ զի ոչ տուաւ նմա մտանել տարածանել զձեռս իւր 'ի վերայ տեղւոյն՝ ուր եդեալ էին հարքն իւր, և գոհացի զայնմանէ՝ որ եդ զնոսա յերկիրն քանանացւոց մեռեալ կռապաշտութեամբ․ և պահեաց զնոսա 'ի միջի նորա իբրև շունչ 'ի մէջ մարմնոյ։ Զի վասն այսորիկ գրեալ է, թէ "Սիրեաց Աստուած զերկիրն զայն"․ ոչ զի արժան էր նա սիրելոյ, զի ահա աւանիկ պիղծ էր նա իբրև զայլ ընկերսն իւր․ այլ վասն սգայուն ամանոցն՝ որ պաշտեցաւ 'ի նոսա աստուածութիւն 'ի ժամանակի անդ իւրեանց։ Արդ զի ոչ առ նա ակն յանցանացն Մովսիսի և ոչ աչառեցաւ նմա, զի եղիցի և այս ևս վասն փառաց նորա․ զի եթէ անփոյթ արարեալ էր, կարծիք լինէին թէ և այլ ևս բազում յանցանս յանցուցեալ էր նորա, և ոչ յայտնեաց վասն նորա։ Արդ 'ի պատուհասելն նորա զնա վասն այսր յանցանաց, յայտ արար թէ այլ յանցանս նորա չէր յանցուցեալ․ ապա թէ ոչ՝ և ոչ զայն թողոյր նմա, իբրև զայն զԴաւթայն․ զի յայտ արասցէ՝ թէ և ոչ արդարոց իւրոց ակն առնու նա։

Իսկ եթէ ասիցես, թէ ահաւասիկ և 'ի միւսում վայրի երկմտեալ բաժանեցաւ Մովսէս, զի ասէ այս

պէս. "Զի՞նչ խաշինք արջառոյ կամ ոչխարի բաւական լինիցի դոցա. զի եթէ ամենայն հեղեղքն՝ որ 'ի ծովու անդ իցեն՝ բաւական կարիցեն լինել դոցա 'ի կերակուր„: Բայց այս ոչ եթէ նորա է, այլ զերկմտութի ժողովրդեան առ նա յանձն, և մատոյց առ Աստուած, որպէս զի լուիցէ ժողովուրդն յայտ եթէ ձեռն տեառն բաւական է, և հաւատայցեն: "Փոխանակ զի ոչ, ասէ, հաւատացէք դուք փառաւոր առնել զիս 'ի մէջ որդւոցն Իսրայէլի, մի՛ մտանիցէք դուք յայն երկիրն պարգևաց„: Եւ ահաւասիկ յետ այսր կաց նոցա յաղօթս վասն այնոցիկ՝ որ խածատեցան յօձից անտի, և լսելի եղեն աղօթք նորա, զի՞արդ վասն անձին իւրոյ ոչ լինէր նա լսելի՝ թէ արդարև յանցուցեալ էր նորա: Թէպէտ և խնդրեաց նա և վասն այսր, այլ մտանել յերկիր անդր պարգևաց խնդրեաց նա աղօթիւք, և ոչ վասն զի մեղաւ նա: Այն զի թէ արդարև ճշմարտիւ մեղուցեալ էր նորա, վասն լաւութէ անձին իւրոյ փոյթ յանձին ունէր նա, և ոչ եթէ մտանել յերկիրն քանանացւոց. զի լաւ էր նմա ընդունել զքաւութիւն և մեռանել յանապատի անդ, քան մտանել լի մեղօք յայն երկիրն պարգևաց: Զի թէպէտ և զայն՝ որ խնդրեաց՝ ոչ տուաւ նմա, սակայն զայն ինչ՝ որ լաւ ևս էր՝ արար նմա. զի 'ի լեռնէ անտի ցոյց նմա զայն երկիրն պարգևաց:

Արդ զի ոչ ետ Մովսէս փառս գաւազանաւն իւրով 'ի վերայ վիմին, ասէ "Խաղաց առաջ ջուր հորոց„: Արդ ժողովելով ժողովէին ծերակոյտն յօթեվանաց յօթեվանս, և օրհնէին 'ի վերայ գաւազանացն իւրեանց. և ապա յայտնի լինէր վէմն՝ ուստի ջուրքն բղխէին: "Եւ յայտնեցին զնա, ասէ, գաւազանօք իւրեանց„: Բայց հեբրայեցի, "Փորեցին զնա, ասէ, իշխանք ժողովրդեանն, և յայտնիչքն գաւազանօքն իւրեանց„. այս ինքն Մովսէս և Ահարոն: Եւ փոխանակ այնր՝ զի ասէ "Եւ ապա յանապատէ անտի տուաւ 'ի Մանթանին, և 'ի Մանթանեայ 'ի Մանայէլ, և 'ի Մանայելայ 'ի Բեմոնթ„. հեբրայեցի ասէ. "Եւ յանապատէ տուաւ նոցա. և յորմէ հետէ տուաւ նոցա, էջ նա ընդ նոսա 'ի ձորսն, և 'ի

ձորոց անտի 'ի բարձունս՝ որ հայեցեալ երևէին դէմ յանդիման Աշխմոն անապատին,,։ Մանթանին՝ հեբրայեցերէն՝ տուաւ նոցա Թարգմանի, և Մանայէլն՝ ձորք, և Բեմոթն՝ բարձունք ։

Որ դուռն խորանին եղ զօձն, զի դարձուսցեն զերեսս իւրեանց անդրէն, զի դարձուցեալ էին անտի. և ծանիցեն ամենեքին թէ ուստի ելանէ բժշկութիւն ։ Եւ զոր օրինակ նոքա որով խոցեցան՝ նովին բժշկեցան, սոյնպէս փայտիւն մեռաւ Ադամ և փայտիւն եկեաց ։ Եւ զի ժողովուրդ էր նա անիծեալ, անիծեալ օձիւն փրկեաց զնոսա. և հեթանոսք կենդանարարաւն ամենայնի բժշկեցան ։ Բայց դարձեալ, զի 'ի ձեռն օձիցն խրատեաց զնոսա. փոխանակ զի եւ օձին հող կերակուր, և ոչ տրտնջեաց, առաքեաց զնա 'ի վերայ ժողովրդեանն՝ որ ուտէին զհացն հրեշտակաց և տրտնջէին ։ Կանգնեաց հաստատեաց կացոյց նոցա զօձն խոյլ զնշան, զի յայտ արասցէ՝ թէ ապաւումն յուսոյն նոցա անիծեալ է 'ի նկարել անդ զխորհուրդ խաչին, այն՝ որ առ զանէծսն յանձն իւր ։

Որդ խրատու օձին մեռան մարդիկ յանցանել զպատուիրանաւն. և տեսլեամբ օձին կեցին 'ի պահել զպատուիրանն ։ Եւ զի կարծեցին տունն Ադամայ՝ թէ օձն կարող եղև լինել հակառակորդ այ, արար ած զօձն հակառակորդ անձին իւրոյ. զի եղիցի խափանել օձն պղնձի զթոյնս հարկանող օձին կենդանւոյ ։ Եւ զի եղև նա նշան կենդանութեան մարդկան, վասն այսորիկ "Որպէս բարձրացոյց, ասէ, Մովսէս զօձն յանապատի անդ,,. և զոր օրինակ մաքառեցան առաջինքն յայսմիկ՝ թէ զիարդ պահեսցուք մեք և հաստատեսցուք յայն յանիծեալսն և 'ի սպանօղն, այլ ընդ պատուիրանն հայէին և զբժշկութիւն հայեցեալ տեսանէին, սոյնպէս արժան է և վերջնոցս՝ զի մի՛ գայթագղեսցեն խաչիւն, այլ ընդ զօրութիւն նորա նայեսցին և զարմասցին ։

Փոխանակ այնր՝ զի ասէ "Անձինք մեր վշտացան նեղեցան տակաւ հացիւս,,. հեբրայեցի, "Բալալի հացիւս,, ասէ ։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ "Արա դու քեզ օձ պղնձի, և դիր զնա 'ի նշան,,. հեբրայեցի, "Ի տեղւոջ մխում 'ի բարձու,, ։ Եւ փոխանակ

այնր զի ասէ, եթէ «Բանակեցան յականս հեբրայե-ցւոց»․ այլ հեբրայեցի, «Ի ձոր մի ջուրց 'ի տեղւոջ ուր հուն է» ասէ։ Փոխանակ այնր՝ զի ասէ «Վասն այսորիկ ասացեալ է 'ի գրութեան մատենից պատե-րազմաց տեառն»․ հեբրայեցի, «Վասն այսորիկ ահա գրեալ է 'ի մատենանս պատերազմունք տեառն»։

## ԳԼՈՒԽ Դ

ԱՌԱՔԵԱՑ Մովսէս հրեշտակ առ Սեհոն թա-գաւոր ամուրհացւոց 'ի պատգամս խաղաղութեան և ասէ․ «Տուր մեզ տեղի անց ճանապարհի ընդ եր-կիր քո»։ Եւ եթէ էր տուեալ նոցա տեղի անցանել, ոչ կոտորեալ լինէին նոքա 'ի նոցանէն․ այլ յառա-ջագոյն կանխեաց գիտաց նա՝ թէ ոչ տան տեղի, վասն այսորիկ խնդրեաց նա 'ի նմանէն կերպարանս, զի մի երևեսցին թէ նոքա յառաջագոյն գրգռեցան 'ի մարտ պատերազմի։ Զի թէպէտ և վճիռ հրամանին և դա-տաստանքն եղեալ էին 'ի վերայ նոցա, սակայն քաղ-զըն ցոյց զողորմութիւն իւր․ զի և ոչ յայնցանէ, որ չէին արժանի, արգելեալ լինի ողորմութիւն նորա։ Զի կանխեաց յառաջագոյն խօսեցաւ 'ի վերայ նոցա սուր, և քարոզեաց նոցա զխաղաղութիւն․ զի եթէ հաւանեսցին նոքա, ձեռն շինութեան տացեն նոցա, իբրև զայն զԳրիքէով քաղաքին․ զի երկայնեաց նոցա զքարոզութիւն 'ի ձեռն շուրջն գալոյ, և արկ 'ի վերայ խստացեալ սրտից նոցա զխռովութիւն և զահ և զերկիւղ զձայն փողոյն․ զի եթէ կակղասցին և խոնարհեսցին, տացեն նոցա ձեռն 'ի շինութիւն, զի «Հուր, ասէ, ել յԵսեբոնայ, և եկեր զՄովաբ և զպաշտօնեայս մեհէ-նին Առնոնայ»․ հեբրայեցի, «Զտեարս քաղաքացն Առնոնայ» ասէ։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ «Սատա-կեցար ժողովուրդ Քամոշայ»․ հեբրայեցի, «Սատա-կեցար կորեար ժողովուրդ՝ որ ծառայէք Քամոշայ»։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ «Իշխանութիւն տէրու-թեան Եսեբոնայ սատակեցաւ կորեաւ»․ հեբրայեցի, «Պաշտօն կռոցն Եսեբոնեայ սատակեցաւ կորեաւ»։ Փոխանակ այնր՝ զի ասէ «Բաղամ որդի Բաովրայ

'ի Փիթովր քաղաքէ 'ի Միջագետաց ,,. հեբրայեցի , "Բաղաամ որդի Բեովրայ հարցուկ 'ի Միջագետաց ,,, Եւ փոխանակ այնր՝ զի ասէ "Եւ դիւթութիւք իւրեանց 'ի ձեռս իւրեանց ,,. հեբրայեցի , "Հրովարտակք իւրեանց 'ի ձեռս իւրեանց ,, :

Այլ զի լուաւ Բաղակ զսքանչելիսն որ եղեն յերկրին եգիպտացւոց և յանապատի անդ , առաքեաց նա զկնի Բաղաամու , զի եկեսցէ նա յանիծանել 'ի նզովել զժողովուրդն իսրայելեան . որպէս զի անէծքն և նզովքն նորա արգելեալ կարճեսցեն 'ի նոցանէն զօրհնութիւնս այ : Վասն այսորիկ և ած 'ի ձեռն այնորիկ՝ յորմէ սիրեացն լսել 'ի նմանէն զճշմարտութիւն արքայն մովաբացւոց , 'ի ձեռն նորուն ծանոյց նմա ած զճշմարտութիւն : Եւ զի թոյլ ետ ած Բաղաամու , ոչ եթէ վասն ժողովրդեանն միայն , այլ զի և այլ հեթանոսք դարձցին 'ի գիտութի նորա , որպէս և ինքն իսկ ասաց . "Ի քեզ , ասէ , ցուցից զզօրութի իմ , և քարոզեսցի անուն իմ ընդ ամենայն երկիր ,,: Այլ քարոզելն՝ որպէս զի հաւատարիմ լիցի տեսչութիւն այ , կարծիցի յամենայն ժամու : Զի իբրև զայն՝ թէ մի գործ ևեթ գտեալ իցէ 'ի նմա , և մի ինչ ևեթ խնդրէ հաստատել և ուղղել : Այլ բազում ես յայսմիկ կատարէ ; զի զԱբրահամ պատուէ , յայնմիկ՝ զի զաւետիսն նորա կատարէ . և Փարաւոնի դարձեալ հատուցանէ , և զհաւատոյն այ հաստատեալ ստուգէ . և հեթանոսօքն՝ որ ընդ ամենայն երկիր , զգիտութի նորա 'ի ձեռն համբաւուն զօքանչելեաց իւրոց սերմանէ . և այլ պատճառս՝ որ վասն նորա արար , զի մեք նոցա խելամուտ չեմք , զի և ինքն Բաղաամ դարձցի յապաշխարութի աչիւ և երկեղիւ 'ի տեսանել իւրում թէ գոյ զօրութի հարուստ և սաստիկ քան զնա , յայնմիկ՝ զի զկամսն իւր առնել ոչ ետ թոյլ նմա : Զի շատ ինչ իրք գործեալ լինին 'ի ձեռն մեղաւորաց վասն արժանաւոր պիտոյից ; որպէս և յաւուրսն Աքայաբու . զի եղև այն պեղծ յերեսաց տեառն , և ել մոլորեցուցանել զսուտ մարգարէսն . բայց Միքիա յայտնեաց . "Թէ ելանես դու , ասէ , մեռանիս ,,: Փորձեաց զնա ած մարգարէիւքն նորա ստութբք , և խնայեաց 'ի վերայ նորա

'ի ձեռն Միքէի ողորմութիւնք ։ Սոյնպէս և երազքն Փարաւոնի երևեցան վասն կերակրելոյն՝ որ հանդերձ ձեռն էր, այլովք հանդերձ ։

Որպէս և տայր խրատ երբեմն Աքիտոփէլ Դաւթայ և լինէր, սոյնպէս և Բաղաամ ։ "Իբրև ոք զի հարցանէ, ասէ, յԱյ" ։ Այլ զի խաբեսցէ և մեծացուսցէ զգոհսն Բաղաամ, զանուն Այ դնէր 'ի վերայ նոցա ։ Եւ այն՝ զի ասէ "Եթէ տացէ ինձ Բաղակ լի տամբն ոսկի կամ արծաթ" . որպէս զի վաճառեսցէ զերթալն իւր ծանր գնոց՝ խորամանկեցաւ ։ Նա և զի գիտասցես դու՝ եթէ նիւթ շահու օգտութիւն արկ նա իւր . ահա աւանիկ պատաց նմա Աստուած, բայ "Մի երթար" . և յաւել ևս դարձեալ հարցանել . և յերթալն իւրում դարձեալ ասէ . "Օրհնեա" . և նա ետ նմա խրատ անիծից ։ Եւ եթէ ասացեալ էր՝ թէ երթ, զնոյն իսկ զոր խրատ ետ՝ տայր նմա, և նովաւ և ընդ նմա և անիծանէր ևս, և զերկոսին ընդ միմեանս յեւոյր նա, որպէս և սովոր իսկ էր նա . զի յանիծանել անդ իւրում եհան նա զգլուտերմն մաղխանացելոյ 'ի պանծանկութե ։

Եւ իբրև այս խորամանկութի նորա սպանանէր զժողովուրդն, սակայն անմեղաց մոլորութի էր այս յոյժ . ասէին՝ թէ անէծքն Բաղաամու սատակեցին զնոսա ։ Բայց իբրև արգելաւ նա՝ զի մի անիծանիցէ, գիտաց նա՝ թէ նոյնժամայն վնասեցաւ . զի ոչ ասեն մոլարացիքն՝ թէ անիծանելով անէծ . բայց սակայն նոյն իսկ նենգութի խրատուն նորա կայր ։ Զի եթէ գիտէր Բաղաամ՝ եթէ ոչ է զօրութիւն 'ի խրատուանդ նորա, այլ յանէծս և յօրհնութիս նորա, ոչ տայր նա խրատ չարի, զի չգոյր 'ի նմա զօրութի վասն ժողովրդեանն՝ որ օրհնեցաւ 'ի նմանէ ։ Եւ զի զկնի օրհնութեն ետ նմա խրատ չարի, յայտ արար եթէ խոտան և անարգ են անէծք և օրհնութիւնք նորա, զի կերպարանօք ունէր նա զնոսա . զի տացէ կարծիս մարդկան՝ թէ Ած գոյ ընդ նմա, զի մի ոք մեղիցէ նմա . և զի մեծասցի քան զիմաստունս և զխորհրդականս ։ Զի փոյթ ամենայն Բաղաամու այս էր, զի ուսցի թէ զինչ իցեն ամենայն օրէնքն՝ զոր ետ Ած ժողովրդեանն ։ Ետես նա՝ թէ այս երկու են՝ որ սա-

տանելն զժողովուրդն, կռապաշտութիւն՝ իբրև զորթն զոր լուաւ թէ արարին և սատակեցան. և պոռնկութիւն՝ զոր գիտացնա՝ թէ քեզ կանանց ածցէ զնոսա 'ի Բեղբեգովր: “Մի՛, ասէ, փեսայեսջիք դուք ընդ դըստերս նոցա, զի մի՛ խոտորեցուսցեն նոքա զսիրտ ձեր զհետ դից իւրեանց,,:

Արդ զի մի՛ մոռասցեն, զի եթէ էր ելեալ Բաղաամու, անիծանէր զնոսա՝ և սատակէին, ոչ արգել զնա ա͞ծ երթալ. և ոչ հրեշտակն դարձոյց զնա 'ի ճանապարհէ անտի, իբրև զի ցուցցէ թէ 'ի նենգոյ իշխանութենէ նորա է: “Թերևս, ասէ, հաճոյ եղիցի տեառն,,. ապա այսուհետև տէր է՝ որ անիծանէ: “Եւ եթէ էր, ասէ, սուր 'ի ձեռս իմում, առաջին սպանանէի զքեզ,,: Ասէ ցնա էշն. վեց հարիւր հազար բանիւ ելանես դու անիծանել սատակել 'ի հեռաստանէ, ես զի անցեալ նստիմ 'ի ներքոյ քո, առանց սրոյ ո՞չ կարես դու յաղթել զօրութեան իմոյ: Փոխանակ այնր՝ զի ասէ “Ասաց Բաղաամ ցէշն իւր. փոխանակ զի այպն կատականաց արարեր դու զիս,,, հեբրայեցի ասէ. “Փոխանակ զի չարչարեցեր ճմլեցեր դու զիս ընդ որմն,,: Եւ փոխանակ այնր՝ զի ասէ “Տարաւ զնա 'ի քաղաքն Եծրովթայ,,. հեբրայեցի, “Ի քաղաքս Բաւկաց,, ասէ. զի Եծրովթ՝ բակք են: Փոխանակ այնր՝ զի ասէ “Հան զնա 'ի բեմովթ Բահաղու,,. հեբրայեցի, “Ի բարձաւանդակ Բահաղու,, ասէ:

“Շինեա դու, ասէ, ինձ աստ եւթն սեղանս, և պատրաստեա դու ինձ եւթն զուարակ և եւթն խոյ,,: Արդ զոհիւք և սեղանովք կամէր Բաղաամ խաղել զա͞ծ, որպէս ինքն խաղեցաւ պատուովքն և պատարագօք: Բայց յայտ արար նմա Աստուած 'ի վերայ զոհից իւրոց, և յամօթ արար զնա 'ի վերայ սեղանոց իւրոց, յայնժամիկ՝ զի փութացոյց զնա, և եդ բանս 'ի բերան նորա, զի օրհնեսցէ: Բայց կորոյս նա զպատիւ մարգարէութեանն ագահութեամբ իւրով. զի քաղցրացան նմա իրքն մամոնայի առաւել քան զմարգարէութիւն Հոգւոյ: Բայց հաւանեցուսցէ զքեզ այս. զի զոր օրինակ իբրև ետես յառաջին նուագին անդ, զի ասաց նմա ա͞ծ՝ բայ “Մի՛ երթար,,. և նա յաւել ևս հարցանել: Եւ իբր եցոյց նմա դառնալ հրեշ-

տանն՝ թէ մահու արժանի էր, յայնմիկ՝ զի դարձան միտք նորա 'ի ճանապարհի անդ, և խորհեցաւ նա անիծանել զնոսա. ասէ ցնա հրեշտակն. «Ելի ես լինել քեզ սատանայ, փոխանակ զի կամակորեալ են ճանապարհք քո առաջի իմ». որպէս և գրեալ է 'ի հեբրայեցի :

Նա իբրև դարձեալ փորձեաց զոհիւքն միանգամ և երկիցս, և գիտաց 'ի ձեռն այսոցիկ՝ թէ կամք ա̃յ այս են, զի ժողովուրդն օրհնեսցի, յերկրորդել և յերրորդել սեղանոցն իւրոց՝ զկամսն ա̃յ հնարս խնդրէր փոփոխել շրջել, զոր ինչ մարգարէքն ճշմարիտք այսպէս ոչ գործէին : Արդ զոր օրինակ զկնի այսր ամենայնի յաւել և խօսեցաւ ընդ նմա ա̃ծ ոչ վասն արդարութե̃ նորա, այլ քանզի պատշաճ իսկ էր, կապեցան 'ի նմին 'ի Բաղաամու իրքն այն, և նովին իսկ մարգարէութ̃բ իւրով մարթ էր լուծանել, սոյնպէս վասն սորին իսկ այսր կամեցաւ խօսել ընդ նմա ա̃ծ 'ի սկզբանն. իբր ոչ էր սովորութիւն Հոգւոյն սրբոյ՝ եթէ պղծոյն զխորհուրդս իւր սուրբս յայտնեսցէ : Զի եթէ ոչ էր յայտնեալ նմա ա̃յ, և արգելեալ էր զնա 'ի ներքոյ ահի երկեղի իւրոյ, 'ի տեսանելն Բաղաամու՝ զի ոչ ետ նմա ա̃ծ պատասխանի, դանէր իւր պատճառս, և երթայր անիծանէր զնոսա. և լինէր այնուհետև գրգռութի̃ 'ի մարտ պատերազմի 'ի մէջ եղբարցն : Զի եթէ իբրև ա̃ծ յայտնեցաւ և հրեշտակ երևեցաւ և էջն խօսեցաւ, նա զթոյնս իւր դառնութ̃բ իւրով չար խորհրդովք իւրովք որպէս և չար խայթոցիւք արկանէր, և քսան և չորս հազարս 'ի նոցանէն սատակէր, որչափ ես առաւել արկանէր նա զթոյնս իւր՝ եթէ ոչ էր տեսեալ նորա զայս ամենայն. այլ եկն նա հարցանել, իբրու այն թէ զա̃ծ պատուիցէ :

Յայտնեցաւ նմա ա̃ծ, և արգել և փակեաց զնա 'ի ներքոյ պահի և երկիւղի. իբրու էր անդ բեւր խորամանկութի̃ 'ի միջի : Զի եթէ արգելեալ էր զնա ա̃յ, բանութ̃բ թագաւորեալ լինէր մոլորութիւնն յարգելով անդ նորա. և լինէին նոքա ասել. վասն զի զօրութե̃ գոյր յանէծս նորա, արգել զնա ա̃ծ, զի մի երթիցէ նա : Եւ եթէ կամեցեալ էր հրեշտա-

կացն ասել վասն նորա մինչ դեռ հեռի էր՝ թէ անեծ նա զժողովուրդն, նա և այսպէս խռովեալ լինէր Իսրայէլ. և լինէին այնուհետև ճշմարիտ անէծք նորա 'ի վերայ նոցա 'ի պարտաւորութն: Վասն այսորիկ հնարեաց իմաստութիւն բարձանց, լոյծ իմաստութն զամենայն կամակորութիւն՝ որ մի ըստ միոջէ, զԲաղաամու, զԲաղակայ և զԻսրայէլի: Բայց եկն Բաղաամ պահանջել զվարձս իւր, և սպանին զնա 'ի Մադիան, զի առաւել ևս լուծցի մոլորութն օգնականին Բաղակայ. զի անձին իւրում նա ոչ կարէր օգնական լինել: Եւ յայնմ ժամու իբրև եկն եհաս Իսրայէլ 'ի վերայ մադիանացւոցն մարտիւ պատերազմաւ, ո՞չ արդեւք անիծէր և պարտաւորէր նա զԻսրայէլ, և օրհնէր և տայր յաղթութիւն մադիանացւոցն, գոնեայ վասն անձին իւրոյ՝ զի մի մեռցի:

Փոխանակ այնր՝ զի ասէ “Եւ գնաց նա ուղղորդընդդէմ„. հեբրայեցի, “Եւ գնաց նա միայն առանձինն„ ասէ: Փոխանակ այնր՝ զի ասէ “Ի հեթանոսս մի համարեսցի„. հեբրայեցի, “Եւ ընդ հեթանոսս մի խառնեսցի, ասէ, որպէս զի եղիջիք դուք ինձ սիրելիք քան զամենայն հեթանոսս„: Եւ փոխանակ այնր՝ զի ասէ “Ո՞ համարեսցի զհամարս յակոբեան զաւակին„. հեբրայեցի, “Զհող նորա, ասէ. կամ ո՞ կարասցէ զթիւ ունել զչորրորդ մասին զիսրայէլեան գնդին„. այն իսկ է՝ զի ասէ. “Իբրև զհող բազում եղիցի զաւակ քո„: Փոխանակ այնր՝ զի ասէ “Ըստ ժամանակի ժամանակի խօսեսցի և այլ ևս„. հեբրայեցի, “Ոչ գոն հմայք 'ի տան Յակովբու, և ոչ դիւթութիւնք 'ի մէջ Իսրայէլի. այլ ըստ ժամանակի ժամանակի խօսեսցի ընդ Յակովբու և ընդ Իսրայէլի զինչ գործելոց էր ընդ նոսա ած„. այն իսկ է զի ասէ. “Ոչ ինչ առնէ տէր տերանց, թէ ոչ յայտնէ նախ զխորհուրդս իւր մարգարէից„: Փոխանակ այնր՝ զի ասէ “Այնր՝ որոյ յայտնի է ակն իւր„. հեբրայեցի, “Այն՝ որում ծածկեալքն յայտնի էին նմա„: Եւ փոխանակ այնր՝ զի ասէ “Այր որ տեսանէր զտեսիլն այ աչօք բացօք„. հեբրայեցի, “Այրն որ պագանէր երկիր 'ի վերայ երեսաց իւրոց, և երեւէր նմա„:

“Իբրև ետես նա, ասէ, զբանակսն իսրայէլացւոց, զի գնդագունդ բանակեալ էին 'ի դաշտի անդ, ասէ. Իբրև՛ զի գեղեցիկ են բանակք քո, Յակովբ, և պարկեշտ են խորանք քո, Իսրայէլ„: Փոխանակ այնր՝ զի ասէ “Իբրև ուղխք զի գնան, և իբրև զբուրաստան առ ափն գետոյ„. հեբրայեցի, “Իբրև զբուրաստան լի ծաղկաւ վտակալից առ ափն գետոյ„: Եւ փոխանակ այնր՝ զի ասէ “Իբրև զխորան՝ զոր ձեռն տեառն կանգնեալ„. հեբրայեցի, “Իբրև զդարաստան տօսախոյ յանցս վտակաց՝ զոր տնկեաց Տէր„: “Յարիցէ այր յորդւոց նորա„, Հաւուղ: “Եւ զաւակ նորա 'ի ջուրս բազումս„. զի զօրացաւ և մեծացաւ նա 'ի վերայ մարդկայնոցն: “Եւ բարձրասցի առաւել քան զԱգագ թագաւոր, և բարձցի թագաւորութիւն նորա„. այս իմքն սպառեսցի: Ընդէ՞ր. փոխանակ զի կոտորեաց սատակեաց նա զգաբաւոնացիսն 'ի ժամանակի իբրև կոտորեաց նա զԱբիմելէք և զտուն հօր նորա: Եւ գաբաւոնացիքն որ հաղորդք էին սեղանոյն, զի փայտաքաղք էին նոքա և ջրբերք: Բայց հեբրայեցի, “Բարձրասցի առաւել քան զԱգագ թագաւոր նորա, և մեծասցի թագաւորութիւն նորա„:

“Բայց եկ յայտնեմ քեզ զինչ գործ գործեսցեն զօրքս այս ընդ զօրս քո յետին աւուրց ժամանակի„. այն իսկ է՝ զի ասէ. “Հարցէ սատակեսցէ զիշխանսն Մովաբու„: Եւ իբրև զայս լուաւ Բաղակ, նմա այսպէս թուեցաւ՝ թէ հասեալ է սատակումն նորա 'ի կարծել իւրում դարձեալ՝ թէ Բաղաամու է այս և ոչ այլ. ասէ ցնա Բաղակ. “Ես ասացի՝ բամ մեծարելով մեծարեցի զքեզ, արդ կորիս 'ի քէն Տէր զփառս քո„: Ասէ ցնա Բաղաամ. մի՛ այդպէս փութացեալ տագնապիր դու. ոչ եթէ սատակումն քո է. թէպէտ և խրատիս դու սակաւիկ մի, սակայն ոչ եթէ բարձեալ լինի թագաւորութիւն քո. զի հայեցայ ես յայնմիկ՝ որ առնեն քեզ սատակումն. և ոչ է մերձ, այլ յետ բազում դարուց:

“Ծագեսցէ աստղ Յակովբայ, և հարցէ սատակեսցէ զիշխանսն Մովաբու„, այլովք հանդերձ: Փոխանակ այնր՝ զի ասէ “Յարիցէ այր յորդւոց նորա, և զաւակ նորա 'ի ջուրս բազումս„. հեբրայեցի,

«Ելցեն ջուրք 'ի բազկաց նորա, և զաւակ նորա իբրև ջուրս բազումս»։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ «Եղիցի 'ի Սէիր ժառանգութիւն թշնամեաց իւրոց»․ հեբրայեցի, «Եղիցի Սէիր ժառանգութի թշնամեաց իւրոյ»։ Փոխանակ այնր՝ զի ասէ «Զօրասցի և զարթիցէ 'ի Յակոբայ, և սատակեսցէ զմնացորդս քաղաքի»․ հեբրայեցի, «Եւ իջցէ տէրութիւնն տանն Յակոբայ, և սատակեսցէ զքաղաքն, և մի ոք մնասցէ 'ի նմանէ մնացորդ»․ իբրև զայն՝ զի ասէ «Սակաւաւորն հպարտաւոր եղիցի»․ իբրև զայն՝ զի ասէ «Միոյն հալածէր զհազարս, և երկու զբիւրս»։

Արդ իբր ոչ կարաց Բաղաամ առնել զերփել 'ի ձեռն աղտեղի արուեստագիտութեան իւրոյ զչար և զօգուտ անօրէնութեան ըստ սովորութեան իւրոյ, յայնժամ՝ զի ոչ ետ նմա ըստ կամաց նորա օրհնել, խորհուրդ խորհեցաւ նա ընդ Բաղակայ և ասէ․ Որչափ, ասէ, զօրքն իւրեանց յոյս և ապաւէն արարեալ է նոցա, ոչ կարէք դուք յաղթել զօրութեան նոցա․ այլ առէք զարդարեցէք դուք զդստերս ձեր․ և ահա անուհետև կապին նոքա յերկրպագութի կռոց դստերացն ձերոց, և հարկանէք կոտորէք դուք զնոսա 'ի վերայ դստերացն Մադիամու։ Բայց զնոյն զմադիանացիսն կոտորեցին, և ոչ զմովաբացիսն․ այլ ած ոչ զիսրայէլ եթող առանց վրիժուց խնդրելոյ․ և ոչ զԲաղաամ եթող առանց պատժոց պատուհասից։ Բայց զժողովուրդն իւր ինքն խրատեաց, և զմադիանացիսն 'ի ձեռն ժողովրդեան իւրոյ կոտորեաց սատակեաց։

Նա զի ոչ եղև ած երկայնամիտ առ Իսրայէլի 'ի ժամանակի իբրև պոռնկեցան նոքա ընդ դստերսն մադիանացւոց․ զի կոտորեաց երկուս, մի՝ զի յանդիմանեալ կշտամբեսցին օրհնութիւքն Բաղաամու, և միւս ևս՝ զի պատիժքն պատուհասից փութացեալ կարճեսցէ զնոսա 'ի պոռնկութենէ անտի։ Բայց ուսանին անդ զճշմարտութիւն սիրելիք ճշմարտութեան․ զի ոչ յօրհնութիւնս նորա պէտք ինչ էին, և ոչ յանէծս նորա, այլ ստուգութի տեառն հատուցմանց․ ուսանին՝ թէ որչափ իշխանութի ունին աղօթք քան զմոլորութի, այս ինքն նախանձայոյզ Փենեհեսայ՝ քան

զԲաղաամու դիւթի ։ Նա եւ ժողովուրդն կոյր եւս լուան զի ասաց նմա Աստուած, բայց "Օրհնեալ է ժողովուրդն, մի անիծաներ դու զնա„, նոքա այսպէս կարծեցին 'ի միտս իւրեանց․ ասեն․ Թէպէտ եւ պոռնկեցաք, սակայն օրհնեալ եմք, ոչ ինչ պատուհասիմք ։

Բայց մեծ ուսոյց մովսեսացւոցն եւ ամենայն հեթանոսացն՝ թէ ամենայն հեթանոսք զի անիծեալ են վասն գործոց իւրեանց․ աՀաւասիկ տեսէք զինչ անցս անցեալ ընդ օրհնեալսն՝ որ պոռնկեցան ։ Եւ զի յայտ արասցէ ժողովրդեան իւրում, զի եթէ մեղք իւրեանց ոչ պարտաւորեն զնոսա՝ չիք այն ձեռն՝ որ կարէ տիրել 'ի վերայ նոցա ։ Եւ եթէ ոչ կուրացեալ էին մովաբացիքն, դիւրին էր նոցա դառնալ ընդդէմ Բաղաամու եւ ասել, թէ զիա՞րդ հարկանին նոքա պոռնկութե՞ք, ապա մի՞ զոր դու ինքնին օրհնեցեր զնոսա ։ Եւ այս վկայ իսկ էր, զի գիտակ եւ խելամուտ իսկ էր Բաղաամ՝ թէ չիք զօրութիւն յօրհնութիւն եւ յանէծս նորա ։ Եւ զի յայտ արասցէ՝ թէ ստուգութի՛ւ ասաց Բաղաամ, այն զի ասէ․ "Զոր ինչ ասէ ինձ տէր, զայն գործեմ„։ Ասէ․ "Մի՛ մըտցէ ամովնացի եւ մովաբացի 'ի ժողովուրդ տեառն, փոխանակ զի ոչ հանին ընդ առաջ ձեր հաց եւ ջուր, եւ փոխանակ զի 'ի վարձու կալան վասն քո զԲաղաամ յանիծանել 'ի նզովել զքեզ, եւ ոչ կամեցաւ տէր լսել նմա․ եւ դարձոյց զանէծսն նորա յօրհնութիւնս„ ։

Արդ իբրեւ հպարտացեալ մեծապէս Բաղաամ, եցոյց մեծ եթէ ելեալ էր հրաման վասն նոցա, ասել զկնի նորա դարձեալ․ "Հանդէս արա, համար կալ զօրաց ժողովրդեանդ այդորիկ 'ի քսանամենից եւ 'ի վեր„․ յետ սատակմանն նոցա ։ Զի վասն այսորիկ ոչ ետ նմա թոյլ անիծանել զնոսա, զի մի ասիցեն՝ թէ յանէծսն Բաղաամու սատակեցան, եւ ոչ 'ի մեղս իւրեանց մեռան ։ Արդ նախատէ բանն․ զմեռեալսն, ասէ, սպանանես դու, ով Բաղաամ, եւ ոչ զկենդանիս ։

Երկայնագոյն է մարգարէութիւն Բաղաամու քան զՄովսիսի․ զի Մովսէս զպատմութիւն դառնացչութե

նոցա ցուցանէ՝ զանցելոցն զմերձաւորացն. զի յօրհնութեան իւրում այսպէս ասէ. "Մեղան՝ այլ ոչ եթէ նմա". զի զինքեանս ապականեցին. բայց ազգ թեւր և կամակոր վասն հանդերձելոցն։ Զի ահա աւանիկ յանդիմանէ զնոսա և ասէ. "Ո՞չ սա ինքն է հայր քո՝ որ ստացաւ զքեզ և հաստատեաց զքեզ"։ Յիշեաց զօրէնսն որ յաւիտենից։ Իբրու յայտ առնէ թէ վասն որոյ ժամանակի ասաց. ասէ "Բնակեցոյց զնա ՚ի վերայ զօրութեան երկրի, և ջամբեաց նմա կերակուր ՚ի վայրէ"։ Զի մինչ դեռ յանապատի անդ էր, մեղր ՚ի վիմէ ցոյց նմա՝ յասել իւրում զայս ցուցանէր. "Գիրացաւ, ասէ, Իսրայէլ և կիցս ընկեց. գիրացաւ յօրացաւ և մոռացաւ զարարիչ իւր, և անարգեաց զԱստուած որ ստացաւն զնա, և հայհոյեաց զԱստուած փրկիչ իւր"։ Իբրու յայտ առնէ դարձեալ, եթէ հանդերձեալ ծառայել կռոցն օտարոտեաց. ասէ "Գրգռեցին զնա օտարոտեօք իւրեանց, և կռովք իւրեանց բարկացուցին զնա"։

Արդ գտանի մարգարէութիւն Բաղաամու երկայնագոյն քան զՄովսիսի. ասէ "Տեսի զնա, և ոչ առ արդ. և հայեցայ ՚ի նա, և ոչ էր մօտ". հեռի է ասէ. զի քաջալերեսցէ զայն՝ որ ածն զնա ՚ի յայտնել իւրում նմա։ Ասէ ոչ եթէ արդէն լինիցի սատակումն քո. զի հայեցայ ես այնմիկ՝ որ առնելոց է քեզ սատակումն, և ոչ է մօտ։ "Ծագեսցէ, ասէ, աստղ ՚ի Յակովբայ, և յարիցէ իշխան ՚ի յԻսրայէլէ, և հարցէ սատակեսցէ զիշխանս Մովաբու"։ Եւ զի յայտ արասցէ նմա՝ և զի ոչ եթէ նմա միայն ասաց, այլ և ամենայն որդւոցն Շէթայ. այս ինքն որդւոցն Ադամայ։ Քանզի Ադամ անիծաւ և Կայէն երեր և տատան եղև, և Հաբէլ մեռաւ անորդի, կոչեցաւ Շէթ՝ Ադամ։

Արդ ծագեսցէ ՚ի վերայ Զօրաբաբէլի. զի Երեմիայ այսպէս ասէ. "Ծագեցից Դաւթի ծագումն, և կոչեսցեն զնա Տէր բաժին մեր". այս ինքն մասն մեր։ "Եւ ահա այր, և անուն նորա ծագումն"։ Եւ այս ամենայն ՚ի վերայ նորա կատարի. զի յերկրորդում ձեռինն, այս ինքն՝ զի նա կաց ՚ի տեղի Յեշուայ որդւոյ Նաւեայ, և նա ժառանգեցոյց զնոսա յերկիրն

դում նուագի անոդ զերկիրն պարգևաց . և նա դադ ձեալ նորոգեաց զառաձարն երկրորդում . և ’ի ձեռն նորա եղև սատակելոց հեթանոսքն այնոքիկ , ամովնացիքն և մովաբացիքն և այլ ևս : “Եւ սատակեսցէ զքաղաքն ,, , զի նա ինքն է Եսաւայ . զի վասն սորին իսկ այսր ասաց Դանիէլ . ասէ . “Տեսանէի ես զգազանն զի սատակեցաւ և կորեաւ մարմին նորա ,, . այս ինքն չիք ուրեք :

Արդ Մովսէս զսատակումն Իսրայէլի յայտ արար . “Օրհնեցէք , ասէ , ազինք ժողովրդովք նորա , և դարձուցանէ զվրէժ հատուցման ’ի վերայ ատելեաց իւրոց ,, : Բայց Բաղաամ , “Ծագեսցէ աստղ և սատակեսցէ զորդիսն Եսաւայ ,, : Եւ այն՝ զի ասէ . “Եթէ եղիցի ձռաքաղեալ կինացին , մինչև յասորեստան վառեսցի ,, : Եւ փոխանակ այնր՝ զի ասէ “Լեգէոնք ելանել ,, . հեբրայեցի , “Ելցեն դեղքացիք ’ի կիտացւոց ,, . այս ինքն է Յոյնք : “Եւ հարցեն և չարչարեսցեն զասորեստան և զՄիջագետս ,, : Եւ զի ասէ “Ինքեանք անդէն միանգամայն առ հասարակ սատակեսցին ,, . զի ոչ հաստատեցաւ թագաւորութիւն արքայութեան նոցա . կամ ’ի վերայ տանն Անտիոքայ , զի հարին կոտորեցին սատակեցին զհեբրայեցիսն յաւուրս մակաբայեցւոցն :

Արդ գտանի զի յառաջագոյն է քան զԲաղաամ Մովսէս յասել իւրում զկատարած սատակման Իսրայէլի . զի իբրև եւեռս զնոսա խառող լեղի և ողկոյզ դառնութեան , և լցան նոքա սրտմտութեամբ վիշապաց . “Սրտմտութիւն , ասէ , վիշապաց սրտմտութիւն նոցա ,, : Եւ զի յայտ արասցէ՝ թէ հատուցանէ նոցա , յասել իւրում . “Իմ է հատուցումն զոր հատուցանեմ ես նոցա ,, : Ե՞րբ . ’ի ժամանակի իբրև սխալէ ոտն նոցա : Ոչ , ասէ , հեռի է , այլ մերձ է ժամանակ կորստեան նոցա . և փութացուցանէ որ ինչ պատրաստեալ է նոցա : Այլ իբրև մերձեցաւ ժամանակն , ասէ վասն նոցա . “Համբարձի յերկինս զձեռն իմ և երդուայ յաջ իմ և ասացի . կենդանի եմ ես յաւիտեան ,, : Եւ զի յայտ արասցէ՝ թէ սրով բարկութեամբ սատակէ զնոսա , փոխանակ զի պաշտեցին նոքա զկուռս , ասէ . “Սրեցից իբրև զփայլակն զսուր

սուսերի իմոյ, և բուռն հարեալ կալցի 'ի դատաստանի ձեռն իմ»։ այս ինքն ստուգութեան ձեռն իմ։ «Եւ արբեցուցից զնետս իմ յարենէ, և սուր իմ կերիցէ զմարմին յարենէ վիրաւորաց և գերեաց, և 'ի գլխոց թագի թշնամեաց»։ Այլ այս 'ի Ցեշովայ մինչև 'ի Նաթանայէլ որդի Մակաբէի գործեալ լինէին նոցա յորժամ յանցանէին. այս ինքն յիշխանաց իւրեանց։

Եւ իբրև խորտակեաց զնոսա սրով իւրով, բարկացաւ 'ի վերայ նոցա յաւիտեանս ժամանակաց։ Ասէ 'ի թողուլն զնոսա, և յերթալն իւրում 'ի մէջ հեթանոսաց, «Օրհնեցէք ազինք ժողովուրդք նորա, զի խնդրէ զվրէժ արեան ծառայից իւրոց, զմարդարէիցն, զքահանայիցն և զարդարոցն՝ որ հեղաւ 'ի մէջ ազգաց նոցա»։ այն զոր երկրորդեաց փրկիչն մեր յասել իւրում. «Զի եկեսցէ 'ի վերայ նոցա արիւնն ամենայն արդարոց»։ Եւ դարձուցանէ, ասէ, զվրէժ հատուցման 'ի վերայ ատելեաց իւրոց, և վրէժ հատուցման ամենեցուն. որոց բանքն իւրեանց հասանեն, ասէ. թէպէտ և ողորմէր 'ի հրամանն անարգութեան, սակայն եւս նոցա զանարգն և զխոնարհըն՝ որ մեռանէր և արդարացուցանէր զարդարս։ Փոխանակ այնր՝ զի ասէ «Առակելով առակեսջիր զնոսա առաջի տեառն յանդիման արևու»։ «Կանգնեա զնոսա յանդիման արևու»։

## ԳԼՈՒԽ Ե

ՔԱԶԲԻ Քաւզի դուստր էր թագաւորի. և ուր խորանն հարեալ էր նորա, ներքինիքն շուրջ կային ըղնովաւ։ Ետես զնա Զամբրի, և մուտ առ նա։ Եւ ասէ ցնա կինն. ես Մովսիսի կամ միոյ ումեք 'ի գլխաւորաց անտի հրաման ունիմ տալ զանձն իմ։ Ասէ ցնա Զամբրի. ես լաւ ևս եմ քան զնոսա։ Ասէ ցնա կինն. Իւ գիտացից։ Ասէ ցնա. ահաւասիկ առաջի նոցա ցուցանեմ ես զի մտանեմ, զոր ինչ այլք 'ի ծածուկ գործեն։ Եւ «Չոգաւ մուտ, ասէ, յանդիման Մովսիսի և յանդիման ծերակոյտ ժողովրդեանն»։ Եւ

ետես Փենեհեզ և խրոխտացաւ ՚ի վերայ նորա ։ Նոր քննիչքն այսպէս կարծեն՝ թէ ՚ի պոռնկել մտանէ, և ոչ եւսուն նմա թողլ ։ Ասէ ցնոսա . մինչ տայցեք նմա, թէ Փենեհեզ կամի մտանել այդր ։ Նա խաբև լուաւ, ուրախ եղև . նա այսպէս կարծեաց ՚ի միտս իւր, թէ ամենայն ժողովուրդն ՚ի պոռնկութիւն դարձաւ . և մուտ խոցեաց զնոսա զերկոսին, և բարձ եղ զնոսա ՚ի վերայ ուսոյ իւրոյ ։ Վասն այսորիկ առնու քահանայ զթեկնն և զծնօտն ։

Փենեհեզ խոցեաց զնոսա, և հին համար թուոյն սատակեցաւ սպառեցաւ . վասն այսորիկ մեծացաւ Փենեհեզ, զի կաց նա ՚ի մէջ նորոցն՝ որ ժառանգելոցն էին, և ՚ի մէջ հնոցն՝ որ ոչն ժառանգեցին ։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Եղեն որ մեռան յանկարծակի ՚ի մահուանէ անտի". "Որ մեռան բարկութք," ասէ ։ "Փենեհեզ, ասէ, նախանձեցաւ զնախանձ ՚ի միջի ձերում". ասէ ցնա Մովսէս ։ Եւ յայնժամ և զՄովսէս եւս ՚ի ներքս արկ . ասէ "Ցանդիման Մովսիսի և յանդիման ծերակոյտ ժողովրդեանն". զի ոչ եթէ վասն չար խօսելոյ զնմանէ առնեմք մեք զայս, այլ դզրեալն երկրորդեմք մեք ։

Արդ Մովսէս, այն որ լիեալ էր առաջնորդութիւն նորա ժողովրդեանն՝ որպէս և ոգիք զի բարձեալ ունիցին զմարմին, զիարդ տկարացաւ նա քան զնախանձն Փենեհեզայ ՚ի ժամու անդ ցորժամ պոռնկեցաւ ժողովուրդն ընդ դստերսն Մադիամու, որպէս ՚ի յընթերցուածոյ անտի ։ Մովսէս կամ վայրապար կայր, կամ խղճիւ և հեռիւ էր վասն գործոյն Փենեհեզայ ։ Արդ զիարդ դադարէր նա, և վասն էր եթէ էր նա ՚ի ժամու՝ յորում արհամարհեալ լինէին օրէնքն, զոր եդ նա ։ Զի առաջի ամենեցուն եդ նա զպատուէրն յասել իւրում . "Մի՛ եղիցի պոռնիկ ՚ի դստերացդ Իսրայէլի". և զկնի բանին ժողովուրդն իւր յոչ ժողովուրդ զգործ պոռնկութեան գործէր ։ Այլ զայն ասասցուք ։ զի Փենեհեզ, այն որ այսու միով գործովս իւրով առաքինացաւ, մի ՚ի գործոց իւրոց ուրեք ոչ առնէ յայտ՝ եթէ պսակեցաւ նա ։ Բայց Մովսէս յամենայն զնացս իւր առ խնդրուածքս մերձենալ ունէր զանձն իւր, և գործ մատակա֊

'ի Փիլթովր քաղաքէ 'ի Միջագետաց „: Հեբրայեցի, “Բաղաամ որդի Բեովրայ հարցուկ 'ի Միջագետաց „: Եւ փոխանակ այնր՝ զի ասէ “Եւ դիւթութիւնք իւրեանց 'ի ձեռս իւրեանց „: Հեբրայեցի, “Հրովարտակք իւրեանց 'ի ձեռս իւրեանց „:

Այլ զի լուաւ Բաղակ զսքանչելիսն որ եղեն յերկրին եգիպտացւոց և յանապատի անդ, առաքեաց նա զկնի Բաղաամու, զի եկեսցէ նա յանիծանել 'ի նզովել զժողովուրդն իսրայելեան. որպէս զի անէծքն և նզովքն նորա արգելեալ կարձեսցեն 'ի նոցանէն զօրհնութիւնս ա̃յ: Վասն այսորիկ և ա̃ծ 'ի ձեռն այնորիկ՝ յորմէ սիրեացն լսել 'ի նմանէն զճշմարտութիւն արքայն մովաբացւոց, 'ի ձեռն նորուն ծանոյց նմա ա̃ծ զճշմարտութիւն: Եւ զի թոյլ ետ ա̃ծ Բաղաամու, ոչ եթէ վասն ժողովրդեանն միայն, այլ զի և այլ հեթանոսք դարձցին 'ի գիտութիւն նորա, որպէս և ինքն իսկ ասաց. “Ի քեզ, ասէ, ցուցից զզօրութիւն իմ, և քարոզեսցի անուն իմ ընդ ամենայն երկիր „: Այլ քարոզելն՝ որպէս զի հաւատարիմ լիցի տեսչութիւն ա̃յ, կարծիցի յամենայն ժամու: Զի իբրև զայն՝ թէ մի գործ ևեթ գտեալ իցէ 'ի նմա, և մի ինչ ևեթ խնդրէ հաստատել և ուղղել: Այլ թագուն ևս յայսմիկ կատարէ, զի զԱբրահամ պատուէ, յայնմիկ՝ զի զաւետիսն նորա կատարէ. և փարաւոնի դարձեալ հատուցանէ, և զհաւատոյն ա̃յ հաստատեալ ստուգէ. և հեթանոսօքն՝ որ ընդ ամենայն երկիր, զգիտութիւն նորա 'ի ձեռն համբաւուն զսքանչելեաց իւրոց սերմանէ. և այլ պատճառ՝ որ վասն նորա արար, զի մեք նոցա խելամուտ չեմք, զի և ինքն Բաղաամ դարձցի յապաշխարութիւն ահիւ և երկեղիւ 'ի տեսանել իւրում թէ գոյ զօրութիւն հարուստ և սաստիկ քան զնա, յայնմիկ՝ զի զկամսն իւր առնել ոչ ետ թոյլ նմա: Զի շատ ինչ իրք գործեալ լինին 'ի ձեռն մեղաւորաց վասն արժանաւոր պիտոյից; որպէս և յաւուրսն Աքայաբու. զի եղև այն պեղծ յերեսաց տեառն, և եւ մոլորեցուցանել զսուտ մարգարէսն. բայց Միքա յայտնեաց. “Թէ ելանես դու, ասէ, մեռանիս „: Փորձեաց զնա ա̃ծ մարգարէիւքն նորա ստութեամբք, և խնայեաց 'ի վերայ նորա

'ի ձեռն Միքէի ողորմութիւնք։ Սոյնպէս և երազքն Փարաւոնի երևեցան վասն կերակրելոյն՝ որ հանդերձեալն էր, այլովք հանդերձ։

Որպէս և տայր խրատ երբեմն Ախիտոփէլ Դաւթայ և լինէր, սոյնպէս և Բաղաամ։ "Իբրև ոք զի հարցանէ, ասէ, լո՛յ"։ Այլ զի խաբեաց և մեծացուցէ զզոհսն Բաղաամ, զանուն Աստուծոյ դնէր 'ի վերայ նոցա։ Եւ այն՝ զի ասէ "Եթէ տացէ ինձ Բաղակ լի տամբն ոսկի կամ արծաթ"․ որպէս զի վաճառեսցէ զերթալն իւր ծանր գնոց՝ խորամանկեցաւ։ Նա և զի գիտասցես դու՝ եթէ նիւթ շահու օգտութիւն արկ նա իւր․ ահա աւանիկ պատգամ նմա Աստուած, թէ "Մի՛ երթար"․ և յաւել ևս դարձեալ հարցանել․ և յերթալն իւրում դարձեալ ասէ․ "Օրհնեա"․ և նա ետ նմա խրատ անիծից։ Եւ եթէ ասացեալ էր՝ թէ երթ, զնոյն իսկ զոր խրատ ետ՝ տայր նմա, և նովաւ և ընդ նմա և անիծանէր ևս, և զերկոսին ընդ միմեանս յեւոյր նա, որպէս և սովոր իսկ էր նա․ զի յանիծանել անդ իւրում եհան նա զպղատերսն մաղթանացն 'ի պատանկութի։

Եւ իբրև այս խորամանկութի նորա սպանանէր զժողովուրդն, սակայն անմեղաց մեղսութի էր այս յոյժ․ ասէին՝ թէ անէծքն Բաղաամու սատակեցին զնոսա։ Բայց իբրև արգելաւ նա՝ զի մի անիծանիցէ, գիտաց նա՝ թէ նոյնժամայն մատնեցաւ․ զի ոչ ասեն մովաբացիքն՝ թէ անիծանելով անէծ․ բայց սակայն նոյն իսկ նենգութի խրատուն նորա կայր։ Զի եթէ գիտէր Բաղաամ՝ եթէ ոչ է զօրութիւն 'ի խրատու անդ նորա, այլ յանէծս և յօրհնութիս նորա, ոչ տայր նա խրատ չարի, զի չգոյր 'ի նմա զօրութի վասն ժողովրդեանն՝ որ օրհնեցաւ 'ի նմանէ։ Եւ զի զկնի օրհնութեանն ետ նմա խրատ չարի, յայտ արար եթէ խոտան և անարգ են անէծք և օրհնութիւնք նորա, զի կերպարանօք ունէր նա զնոսա․ զի տացէ կարծիս մարդկան՝ թէ Աստուած գոյ ընդ նմա, զի մի ոք մեղիցէ նմա․ և զի մեծասցի քան զիմաստունս և զխորհրդականս։ Զի փոյթ ամենայն Բաղաամու այս էր, զի ուսցի թէ զինչ իցեն ամենայն օրէնքն՝ զոր ետ Աստուած ժողովրդեանն։ Ետես նա՝ թէ այս երկու են՝ որ սա-

տանելն զժողովուրդն, կռապաշտութի՝ իբրև զորթն զի լուաւ թէ արարին և սատակեցան. և պոռնկու-թի՝ զի գիտաց նա՝ թէ գեղ կանանց ածցէ զնոսա 'ի Բեղբեգովր: “Մի՛, ասէ, փեսայեսջիք դուք ընդ դըս-տերս նոցա, զի մի՛ խոտորեցուսցեն նոքա զսիրտ ձեր զհետ դից իւրեանց„:

Արդ զի մի՛ ասասցեն, զի եթէ էր ելեալ Բաղաա-մու, անիծանէր զնոսա՝ և սատակէին, ոչ արգել զնա ած երթալ. և ոչ հրեշտակն դարձոյց զնա 'ի ճանա-պարհէ անտի, իբրև զի ցուցցէ թէ 'ի ներքոյ իշխա-նութե՛ նորա է: “Թերևս, ասէ, հաճոյ եղիցի տեառն„. ապա այսուհետև տէր է՝ որ անիծանէ: “Եւ եթէ էր, ասէ, սուր 'ի ձեռս իմում, աստէն սպանանէի զքեզ„: Ասէ ցնա էշն. մեց հարիւր հազար բանիւ ե-լանես դու անիծանել սատակել 'ի հեռաստանէ, ես զի անցեալ նստիմ 'ի ներքոյ քո, առանց սրոյ ո՞չ կա-րես դու յաղթել զօրութե՛ իմոյ: Փոխանակ այնր՝ զի ասէ “Ասաց Բաղաամ ցէշն իւր. փոխանակ զի այպն կատականաց արարեր դու զիս„, հեգնայեցի ասէ. “Փոխանակ զի չարչարեցեր ճմլեցեր դու զիս ընդ որմն„: Եւ փոխանակ այնր՝ զի ասէ “Տարաւ զնա 'ի քաղաքն Եծրովթայ„. հեգնայեցի, “Ի քաղաքս Բա-կաց„ ասէ. զի Եծրովթ՝ բակք են: Փոխանակ այնր՝ զի ասէ “Հան զնա 'ի բեմովթ Բահաղու„. հեգնայ-եցի, “Ի բարձաւանդակ Բահաղու„ ասէ:

“Շինեա դու, ասէ, ինձ աստ եւթն սեղանս, և պատրաստեա դու ինձ եւթն զուարակ և եւթն խոյ„: Արդ զոհիւք և սեղանովք կամէր Բաղաամ խաղել զած, որպէս ինքն խաղեցաւ պատուովքն և պատարագօք: Բայց յայտ արար նմա Աստուած 'ի վե-րայ զոհից իւրոց, և յամօթ արար զնա 'ի վերայ սե-ղանոց իւրոց, յայնժամ՝ զի փութացոյց զնա, և եդ բանս 'ի բերան նորա, զի օրհնեսցէ: Բայց կորուսանա զպատիւ մարգարէութեանն ապահութե՞ իւրով. զի քաղցրացան նմա իրքն մամոնայի առաւել քան զմար-գարէութիւն Հոգւոյ: Բայց հաւանեցուսցէ զքեզ այս. զի զոր օրինակ իբրև ստեաց յառաջին նուագի անդ, զի ասաց նմա ած՝ բայ “Մի՛ երթար„. և նա յաւել ևս հարցանել: Եւ իբր եցոյց նմա դարձեալ հրեշ-

տանն՝ թէ մահու արժանի էր, յայնմիկ՝ զի դարձան միտք նորա 'ի ճանապարհի անդ, և խորհեցաւ նա անիծանել զնոսա. ասէ ցնա հրեշտակն. «Ելի ես լինել քեզ սատանայ, փոխանակ զի կամակորեալ են ճանապարհք քո առաջի իմ». որպէս և գրեալ է 'ի հեբրայեցի:

Նա և իբրև դարձեալ փորձեաց զոհիւքն միանգամ և երկիցս, և գիտաց 'ի ձեռն այսոցիկ՝ թէ կամք այ այս են, զի ժողովուրդն օրհնեսցի, յերկրորդել և յերրորդել սեղանացն իւրոց՝ զկամսն այ հնարս խնդրէր փոփոխել շրջել. զոր ինչ մարգարէքն ճշմարիտք այնպէս ոչ գործէին: Արդ զոր օրինակ զկնի այսր ամենայնի յաւել և խօսեցաւ ընդ նմա ած ոչ վասն արդարութեն նորա, այլ քանզի պատշաճ իսկ էր, կապեցան 'ի նմին 'ի Բաղաամու իրքն այն, և նովին իսկ մարգարէութբ իւրով մարթ էր լուծանել, սոյնպէս վասն սորին իսկ այսր կամեցաւ խօսել ընդ նմա ած 'ի սկզբանն. իբր ոչ էր սովորութիւն Հոգւոյն սրբոյ՝ եթէ պղծոյն զխորհուրդս իւր սուրբս յայտնեսցէ: Զի եթէ ոչ էր յայտնեալ նմա այ, և արգելեալ էր զնա 'ի ներքոյ ահի երկեղի իւրոյ, 'ի տեսանելն Բաղաամու՝ զի ոչ ետ նմա ած պատասխանի, գտանէր իւր պատճառս, և երթայր անիծանէր զնոսա. և լինէր այնուհետև գրգռութի 'ի մարտ պատերազմի 'ի մէջ եղբարցն: Զի եթէ իբրև ած յայտնեցաւ և հրեշտակ երևեցաւ և էշն խօսեցաւ, նա զթոյնս իւր դառնութբ իւրով չար խորհրդովք իւրովք որպէս և չար խայթոցիւք արկանէր, և քսան և չորս հազար 'ի նոցանէն սատակէր, որչափ ևս առաւել արկանէր նա զթոյնս իւր՝ եթէ ոչ էր տեսեալ նորա զայս ամենայն. այլ եկն նա հարցանել, իբրու այն թէ զած պատուիցէ:

Յայտնեցաւ նմա ած, և արգել և փակեաց զնա 'ի ներքոյ ահի և երկիւղի. իբրու էր անդ բեւր խորամանկութի 'ի միջի: Զի եթէ արգելեալ էր զնա այ, բանութբ թագաւորեալ լինէր մոլորութիւնն յարգելով անդ նորա. և լինէին նոքա ասել. վասն զի զօրութի գայր յանէծս նորա, արգել զնա ած, զի մի երթիցէ նա: Եւ եթէ կամեցեալ էր հրեշտա-

կացն ասել վասն նորա մինչ դեռ հեռի էր՝ թէ անէծ նա զժողովուրդն, նա և այսպէս խռովեալ լինէր Իսրայէլ. և լինէին այնուհետև ճշմարիտ անէծք նորա 'ի վերայ նոցա 'ի պարտաւորութի̅ : Վասն այսորիկ հնարեաց իմաստութիւն բարձանց, լոյծ իմաստութե̅ զամենայն կամակորութիւն՝ որ մի ըստ միոջէ, զԲաղաամու, զԲաղակայ և զԻսրայէլի : Բայց եկն Բաղաամ պահանջել զվարձս իւր, և սպանին զնա 'ի Մադիամ, զի առաւել ևս լուծցի մոլորութի̅ օգնականին Բաղակայ. զի անձին իւրում նա ոչ կարէր օգնական լինել : Եւ յայնմ ժամու թէպէտ եկն եհաս Իսրայէլ 'ի վերայ մադիամացւոցն մարտիւ պատերազմաւ, ո՞չ արդեւք անիծէր և պարտաւորէր նա զԻսրայէլ, և օրհնէր և տայր յաղթութիւն մադիանացւոցն, գոնեայ վասն անձին իւրոյ՝ զի մի մեռցի :

Փոխանակ այնր՝ զի ասէ “Եւ գնաց նա ուղղորդ ընդդէմ„. հեբրայեցի, “Եւ գնաց նա միայն առանձինն„ ասէ : Փոխանակ այնր՝ զի ասէ “Ի հեթանոսս մի համարիցի„. հեբրայեցի, “Եւ ընդ հեթանոսս մի խառնեսցի, ասէ, որպէս զի եղիջիք դուք ինձ սրբելիք քան զամենայն հեթանոսս„ : Եւ փոխանակ այնր՝ զի ասէ “Ո՞ համարեսցի զհամարս յակովբեան զաւակին„. հեբրայեցի, “Զհող նորա, ասէ. կամ ո՞ կարասցէ զթիւ ունել զչորրորդ մասին զիսրայէլեան գնդին„. այն իսկ է՝ զի ասէ. “Իբրև զհող բազում եղիցի զաւակ քո„ : Փոխանակ այնր՝ զի ասէ “Ըստ ժամանակի ժամանակի խօսեսցի և այլ ևս„. հեբրայեցի, “Ոչ գոն հմայք 'ի տան Յակովբու, և ոչ դիւթութիւնք 'ի մէջ Իսրայէլի. այլ ըստ ժամանակի ժամանակի խօսեսցի ընդ Յակովբու և ընդ Իսրայէլի զինչ գործելոց էր ընդ նոսա Ա̅ծ„. այն իսկ է զի ասէ. “Ոչ ինչ առնէ տէր տէրանց, թէ ոչ յայտնէ նախ զխորհուրդս իւր մարգարէից„ : Փոխանակ այնր՝ զի ասէ “Այնր՝ որոյ յայտնի է ակն իւր„. հեբրայեցի, “Այն՝ որում ծածկեալքն յայտնի էին նմա„ : Եւ փոխանակ այնր՝ զի ասէ “Այր որ տեսանէր զտեսիլն Ա̅յ աչօք բացօք„. հեբրայեցի, “Այրն որ պագանէր երկիր 'ի վերայ երեսաց իւրոց, և երեւէր նմա„ :

“Իբրեւ ետես նա, ասէ, զբանակսն իսրայէլացւոց, զի գնդագունդ բանակեալ էին 'ի դաշտի անդ, ասէ. Իբրե՛ւ զի գեղեցիկ են բնակք քո, Յակոբ, և պարկեշտ են խորանք քո, Իսրայէլ”։ Փոխանակ այնր՝ զի ասէ “Իբրեւ ուղխք զի գնան, և իբրեւ զբուրաստան առ ափն գետոյ”. Հեբրայեցի, “Իբրեւ զբուրաստան լի ծաղկաւ վտակալից առ ափն գետոյ”։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ “Իբրեւ զխորան՝ զոր ձեռւն տեառն կանգնեալ”. Հեբրայեցի, “Իբրեւ զդարաստան տօսախոյ յանցս վտակաց՝ զոր տնկեաց տէր”։ “Յարիցէ այր յորդւոց նորա”, Շաւուղ։ “Եւ զաւակ նորա 'ի ջուրս բազումս”. զի զօրացաւ և մեծացաւ նա 'ի վերայ մարդկայնոցն։ “Եւ բարձրասցի առաւել քան զԱգագ թագաւոր, և բարձցի թագաւորութիւն նորա”. այս իսկն սպառեսցի։ Ընդէ՞ր. փոխանակ զի կոտորեաց սատակեաց նա զգաբաւոնացիսն 'ի ժամանակի իբրեւ կոտորեաց նա զԱբիմելէք և զտուն հօր նորա։ Եւ գաբաւոնացիքն որ հաղորդք էին սեղանոյն, զի փայտաքաղք էին նոքա և ջրբերք։ Բայց Հեբրայեցի, “Բարձրասցի առաւել քան զԱգագ թագաւոր նորա, և մեծասցի թագաւորութիւն նորա”։

“Բայց եկ յայտնեմ քեզ զինչ գործ գործեսցեն զորքս այս ընդ զօրս քո յետին աւուրց ժամանակի”. այն իսկ է՝ զի ասէ. “Հարցէ սատակեսցէ զիշխանսն Մովաբու”։ Եւ իբրեւ զայս լուաւ Բաղակ, նմա այսպէս թուեցաւ՝ թէ հասեալ է սատակումն նորա 'ի կարծել իւրում դարձեալ՝ թէ Բաղաամու է այս և ոչ նոյ. ասէ ցնա Բաղակ. “Ես ասացի՝ բամ մեծարելով մեծարեցից զքեզ, արդ կորոյս 'ի քէն տէր զփառս քո”։ Ասէ ցնա Բաղաամ. մի՛ այդպէս փութացեալ տագնապիր դու. ոչ եթէ սատակումն քո է. թէպէտ և խրատիս դու սակաւիկ մի, սակայն ոչ եթէ բարձեալ լինի թագաւորութիւն քո. զի հայեցայ ես յայնմիկ՝ որ առնեն քեզ սատակումն. և ոչ է մերձ, այլ յետ բազում դարուց։

“Ծագեսցէ աստղ Յակոբայ, և հարցէ սատակեսցէ զիշխանսն Մովաբու”, այլովք հանդերձ։ Փոխանակ այնր՝ զի ասէ “Յարիցէ այր յորդւոց նորա, և զաւակ նորա 'ի ջուրս բազումս”. Հեբրայեցի,

«Ելցեն ջուրք 'ի բազկաց նորա, և զաւակ նորա իբրև ջուրս բազումս»։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ «Եղիցի 'ի Սէիր ժառանգութիւն թշնամեաց իւրոց»․ հեբրայեցի, «Եղիցի Սէիր ժառանգութի թշնամւոյ իւրոյ»։ Փոխանակ այնր՝ զի ասէ «Զօրասցի և զարթիցէ 'ի Յակոբայ, և սատակեսցէ զմնացորդս քաղաքի»․ հեբրայեցի, «Եւ իջցէ տէրութիւնն տանն Յակոբայ, և սատակեսցէ զքաղաքն, և մի ոք մնասցէ 'ի նմանէ մնացորդ»․ իբրև զայն՝ զի ասէ «Սակաւաւորն հազարաւոր եղիցի»․ իբրև զայն՝ զի ասէ «Մինն հալածէր զհազարս, և երկու զբևրս»։

Արդ իբր ոչ կարաց Բաղաամ ապաւել գերծել 'ի ձեռն աղտեղի արուեստագիտութեան իւրոյ զշահ և զօգուտ անօրէնութեան ըստ սովորութեան իւրոյ, յայնժամ՝ զի ոչ ետ նմա ըստ կամաց նորա օրհնել, խորհուրդ խորհեցաւ նա ընդ Բաղակայ և ասէ․ Որչափ, ասէ, զա͞ծն իւրեանց յոյս և ապաւէն արարեալ է նոցա, ոչ կարէք դուք յաղթել զօրութեան նոցա․ այլ աւէք զարդարեցէք դուք զդստերս ձեր․ և ահա անուհեաւ կապին նոքա յերկրպագութիւն կռոց դստերացն ձերոց, և հարկանէք կոտորէք դուք զնոսա 'ի վերայ դստերացն Մադիամու։ Բայց զնոյն զմադիանացիսն կոտորեցին, և ոչ զմովաբացիսն․ այլ ա͞ծ ոչ զԻսրայէլ եթող առանց վրիժուց խնդրելոյ․ և ոչ զԲաղաամ եթող առանց պատժոց պատուհասից։ Բայց զժողովուրդն իւր ինքն խրատեաց, և զմադիանացիսն 'ի ձեռն ժողովրդեան իւրոյ կոտորեաց սատակեաց։

Նա զի ոչ եղև ա͞ծ երկայնամիտ առ Իսրայէլի 'ի ժամանակի իբրև պոռնկեցան նոքա ընդ դստերսն մադիանացւոց․ զի կատարեսցէ երկուս, մի՝ զի յանդիմանեալ կշտամբեսցին օրհնութիւքն Բաղաամու, և միւս ևս՝ զի պատիժքն պատուհասից փութացեալ կարճեսցէ զնոսա 'ի պոռնկութենէ անտի։ Բայց ուսանին անդ զճշմարտութիւն սիրելիք ճշմարտութեան․ զի ոչ յօրհնութիւնս նորա պէտք ինչ էին, և ոչ յանէծս նորա, այլ ատուգութի տեառն հատուցմանց․ ուսանի՝ եթէ որչափ իշխանութի ունին աղօթք քան զմա-լրութի, այս ինքն նախամեծայոյց Փենեհեսայ՝ քան

զԲաղաամու դիւթի ։ Նա և ժողովուրդն կայր իբրև լուսն զի ասաց նմա Աստուած, բայց «Օրհնեալ է ժողովուրդն, զի անիծանել դու կամիս», նոքա այսպէս կարծեցին 'ի միտս իւրեանց. ասեն. Թէպէտ և պոռնկիցիմք, սակայն օրհնեալ եմք, ոչ ինչ պատուհասիմք ։

Բայց ա̃ծ ուսոյց մոլորացելոցն և ամենայն հեթանոսացն՝ թէ ամենայն հեթանոսք զի անիծեալ են վասն գործոց իւրեանց. ահաւասիկ տեսէք զինչ անցս անցեալ ընդ օրհնեալսն՝ որ պոռնկեցան ։ Եւ զի յայտ արասցէ ժողովրդեան իւրում, զի եթէ մեղք իւրեանց ոչ պարտաւորեն զնոսա՝ չիք այն ձեռն՝ որ կարէ տիրել 'ի վերայ նոցա ։ Եւ եթէ ոչ կուրացեալ էին մոլորացեալքն, դիւրին էր նոցա դառնալ ընդդէմ Բաղաամու և ասել, թէ զիա՛րդ հարկանեն նոքա պոռնկութիւն; ապա մի՛ զոր դու ինքնին օրհնեցեր զնոսա ։ Եւ այս վկայ իսկ էր, զի գիտակ և խելամուտ իսկ էր Բաղաամ՝ թէ չիք զօրութիւն յօրհնութիւն և յանէծս նորա ։ Եւ զի յայտ արասցէ՝ թէ ստուգութիւն ասաց Բաղաամ, այն զի ասէ. «Զոր ինչ ասէ ինձ տէր, զայն գործեմ»։ Ասէ. «Մի՛ մտցէ ամոնացի և մովաբացի 'ի ժողովուրդ տեառն, փոխանակ զի ոչ հանին ընդ առաջ ձեր հաց և ջուր, և փոխանակ զի 'ի վարձու կալան վասն քո զԲաղաամ յանիծանել 'ի նզովել զքեզ, և ոչ կամեցաւ տէր լսել նմա. և դարձոյց զանէծսն նորա յօրհնութիւնս»։

Արդ իբրև հպարտացեալ մեծացաւ Բաղաամ, եցոյց ա̃ծ եթէ ելեալ էր հրաման վասն նոցա, ասել զկնի նորա դարձեալ. «Հանդէս արա, համար կալ զօրաց ժողովրդեանդ այդորիկ 'ի քսանամենից և 'ի վեր». յետ սատակմանն նոցա ։ Զի վասն այսորիկ ոչ ետ նմա թոյլ անիծանել զնոսա, զի մի՛ ասիցեն՝ թէ յանէծսն Բաղաամու սատակեցան, և ոչ 'ի մեղս իւրեանց մեռան ։ Արդ նախատէ բանն. զմեռեալսն, ասէ, սպանանես դու, ով Բաղաամ, և ոչ զկենդանիս ։

Երկայնագոյն է մարգարէութիւն Բաղաամու քան զՄովսիսի. զի Մովսէս զպատմութիւն դառնացելութ̃

նոցա ցուցանէ՝ զանցելոյն զմերձաւորացն. զի յօրհնութեան իւրում այսպէս ասէ. “Մեղան՝ այլ ոչ եթէ նմա„. զի զինքեանս ապականեցին. բայց ազգ թեւր և կամակոր վասն հանդերձելոցն: Զի ահա աւանիկ յանդիմանէ զնոսա և ասէ. “Ո՞չ սա ինքն է հայր քո՝ որ ստացաւ զքեզ և հաստատեաց զքեզ„: Յիշեաց զօրէնսն որ յաւիտենից: Իբրու յայտ առնէ թէ վասն որոյ ժամանակի ասաց. ասէ “Բնակեցոյց զնա 'ի վերայ զօրութեան երկրի, և ջամբեաց նմա կերակուր 'ի վայրէ„: Զի մինչ դեռ յանապատի անդ էր, մեղր 'ի վիմէ ցոյց նմա՝ յասել իւրում զայս ցուցանէր. “Գիրացաւ, ասէ, Իսրայէլ և կիցս ընկէց. գիրացաւ յօրացաւ և մոռացաւ զարարիչ իւր, և անարգեաց զա̅ծ որ ստացաւն զնա, և հայհոյեաց զԱստուած փրկիչ իւր„: Իբրու յայտ առնէ դարձեալ, եթէ հանդերձեալ ծառայել կռոցն օտարոտեաց. ասէ “Գրգռեցին զնա օտարոտեօք իւրեանց, և կռովք իւրեանց բարկացուցին զնա„:

Արդ գտանի մարգարէութիւն Բաղաամու երկայնագոյն քան զՄովսիսի. ասէ “Տեսի զնա, և ոչ առարդ. և հայեցայ 'ի նա, և ոչ էր մօտ„. Հեռի է ասէ. զի քաջալերեսցէ զայն՝ որ ածն զնա 'ի յայտնել իւրում նմա: Ասէ ոչ եթէ արդէն լինիցի սատակումն քո. զի հայեցայ ես այնմիկ՝ որ առնելոց է քեզ սատակումն, և ոչ է մօտ: “Ծագեսցէ, ասէ, աստղ 'ի Յակովբայ, և յարիցէ իշխան 'ի յԻսրայէլէ, և հարցէ սատակեսցէ զիշխանս Մովաբու„: Եւ զի յայտ արասցէ նմա՝ և զի ոչ եթէ նմա միայն ասաց, այլ և ամենայն որդւոցն Շեթայ. այս ինքն որդւոցն Ադամայ: Քանզի Ադամ անիծաւ և կայէն երեր և տատան եղև, և Հաբէլ մեռաւ անորդի, կոչեցաւ Շէթ՝ Ադամ:

Արդ ծագեսցէ 'ի վերայ Զօրաբաբելի. զի Երեմիայ այսպէս ասէ. “Ծագեսցէ Դաւթի ծագումն, և կացեսցեն զնա Տէր բաժին մեր„. այս ինքն մասն մեր: “Եւ ահա այր, և անուն նորա ծագումն„: Եւ այս ամենայն 'ի վերայ նորա կատարի. զի յերկրորդում ձեռինն, այս ինքն՝ զի նա կաց 'ի տեղի Յեսուայ որդւոյ Նաւեայ, և նա ժառանգեցոյց զնոսա յերկրոն

զում նուագի անդ զերկիրն պարգևաց . և նա զպար-ձեալ նորոգեաց զառաձարն երկրորդում . և 'ի ձեռն նորա էին սատակելոց հեթանոսքն այնոքիկ , ամովրհա-ցիքն և մովաբացիքն և այլ ևս : "Եւ սատակեսցէ զքա-ղաքն „ , զի նա ինքն է Եսաւայ . զի վասն սորին իսկ այսր ասաց Դանիէլ . ասէ . "Տեսանէի ես զգազանն զի սատակեցաւ և կորեաւ մարմին նորա „ . այս ինքն չիք ուրեք :

Արդ Մովսէս զսատակումն Իսրայէլի յայտ արար . "Օրհնեցէք , ասէ , ազգք ժողովրդովք նորա , և դարձուցանէ զվրէժ հատուցման 'ի վերայ ատելեաց իւրոց „ : Բայց Բաղաամ , "Ծագեսցէ աստղ և սա-տակեսցէ զորդիսն Եսաւայ „ : Եւ այն՝ զի ասէ . "Եթէ եղիցի ձգաքաղեալ կինացին , մինչև յասորե-ստան վարեսցի „ : Եւ փոխանակ այնր՝ զի ասէ "Լե-գէոնք ելանել „ . Հեբրայեցի , "Ելցեն դեղքացիք 'ի կիտացւոց „ . այս ինքն է Յոյնք : "Եւ հարցեն և չար-չարեսցեն զասորեստան և զՄիջագետս „ : Եւ զի ասէ "Ինքեանք անդէն միանգամայն առ հասարակ սատա-կեսցին „ . զի ոչ հատուցանեցաւ թագաւորութիւն արքայութեան նոցա . կամ 'ի վերայ տանն Անտիո-քայ , զի հարին կոտորեցին սատակեցին զհեբրայեցիսն յաւուրս մակաբայեցւոցն :

Արդ գտանի զի յառաջագոյն է քան զԲաղաամ Մովսէս յասել իւրում զկատարած սատակման Իս-րայէլի . զի իբրև եւես զնոսա խաղող լերին և ող-կոյզ դառնութե , և լցան նոքա սրտմութե՛ վիշա-պաց . "Սրտմութի , ասէ , վիշապաց սրտմութիւն նոցա „ : Եւ զի յայտ արասցէ՝ թէ հատուցանէ նոցա , յասել իւրում . "Իմ է հատուցումն զոր հատուցա-նեմ ես նոցա „ : Ե՞րբ . 'ի ժամանակի իբրև սխալէ ոտն նոցա : Ոչ , ասէ , հեռի է , այլ մերձ է ժամա-նակ կորստեան նոցա . և փութացուցանէ որ ինչ պատրաստեալ է նոցա : Այլ իբրև մերձեցաւ ժա-մանակն , ասէ վասն նոցա . "Համբարձի յերկինս զձեռն իմ և երդուայ յաջ իմ և ասացի . կենդանի եմ ես յաւիտեան „ : Եւ զի յայտ արասցէ՝ թէ սրով բարկութե սատակէ զնոսա , փոխանակ զի պաշտեցին նոքա զկուռս , ասէ . "Սրեցից իբրև զփայլակն զսուր

սուսերի իմոյ, և բուռն հարեալ կալցի 'ի դատաստանի ձեռն իմ». այս ինքն ստուգութեան ձեռն իմ: «Եւ արբեցուցից զնետս իմ յարենէ, և սուր իմ կերիցէ զմարմինս յարենէ վիրաւորաց և գերեաց, և 'ի գլխոց Թագի Թշնամեաց»: Այլ այս 'ի Ցեշովայ մինչև 'ի Նաթանայէլ որդի Մակաբէի գործեալ լինէին նոցա յորժամ յանցանէին. այս ինքն յիշխանաց իւրեանց:

Իսկ իբրև խրատեաց զնոսա սրով իւրով, բարկացաւ 'ի վերայ նոցա յաւիտենական ժամանակաց: Ասէ 'ի թողուլն զնոսա, և յերթալն իւրում 'ի մէջ հեթանոսաց, «Օրհնեցէք ազինք ժողովուրդք նորա, զի խնդրէ զվրէժ արեան ծառայից իւրոց, զմարգարէիցն, զքահանայիցն և զարդարոցն' որ հեղաւ 'ի մէջ ազգաց նոցա». այն զոր երկրպագեաց փրկիչն մեր յասել իւրում. «Զի եկեսցէ 'ի վերայ նոցա արիւնն ամենայն արդարոց»: Եւ դարձուցանէ, ասէ, զվրէժ հատուցման 'ի վերայ ատելեաց իւրոց, և վրէժ հատուցման ամենեցուն. որոց բանքն իւրեանց հասանեն, ասէ. Թէպէտ և ողորմէր 'ի հրամանն անարգութեան, սակայն ետ նոցա զանարգն և զխոնարհըն' որ մեռանէր և արդարացուցանէր զարդարս: Փոխանակ այնր' զի ասէ «Առակելով առակեսջիր զնոսա առաջի տեառն յանդիման արևու». «Կանգնեա զնոսա յանդիման արևու»:

ԳԼՈՒԽ Ե

ԲԱՅՑ Քասբի դուստր էր Թագաւորի. և որ խորանն հարեալ էր նորա, ներքինիք շուրջ կային ըղնովաւ: Ետես զնա Զամբրի, և մտաւ առ նա: Եւ ասէ ցնա կինն. Ես Մովսիսի կամ միոյ ումեք 'ի գլխաւորաց անտի հրաման ունիմ տալ զանձն իմ: Ասէ ցնա Զամբրի. Ես լաւ եմ քան զնոսա: Ասէ ցնա կինն. Ես գիտացից: Ասէ ցնա. Ահաւասիկ առաջի նոցա ցուցանեմ ես զի մտանեմ, զոր ինչ այլք 'ի ծածուկ գործեն: Եւ «Չոգաւ մտաւ, ասէ, յանդիման Մովսիսի և յանդիման ծերակոյտ ժողովրդեանն»: Եւ

եանս Փենեհէզ և խորոխտացաւ 'ի վերայ նորա ։ Ներքինքն այսպէս կարծէին՝ թէ 'ի պատնիել մտանէ, և ոչ ետուն նմա թոյլ ։ Ասէ ցնոսա . մինչ տայցէք նմա , թէ Փենեհէզ կամի մտանել այդր ։ Նա կարելուաւ , ուրախ եղև . նա այսպէս կարծեաց 'ի միտս իւր , թէ ամենայն ժողովուրդն 'ի պատնիութի դարձաւ . և մտեալ խոցեաց զնոսա զերկոսեան , և բարձ եղ զնոսա 'ի վերայ ուսոյ իւրոյ ։ Վասն այսորիկ առնու քահանայ զթեկնն և զծնօտն ։

Փենեհէզ խոցեաց զնոսա , և հէն համար թուոյն տատանեցաւ սպառեցաւ . վասն այսորիկ մեծացաւ Փենեհէզ, զի կաց նա 'ի մէջ նորոցն՝ որ ժառանգելոցն էն , և 'ի մէջ հնոցն՝ որ ոչն ժառանգեցին ։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Եղեն որ մեռան յանկարծակի 'ի մահուանէ անտի ,, . "Որ մեռան բարիւք ,, ասէ ։ "Փենեհէզ , ասէ, նախանձեցաւ զնախանձ 'ի միջի ձերում ,, . ասէ ցնա Մովսէս ։ Եւ յայնժամ և զՄովսէս ես 'ի ներքս արկ . ասէ "Ցանդիման Մովսիսի և յանդիման ծերակոյտ ժողովրդեանն ,, . զի ոչ եթէ վասն չար խօսելոյ զնմանէ ասեմք մեք զայս , այլ զգրեանն երկրորդեմք մեք ։

Երդ Մովսէս , այն որ լինել էր առաջնորդութիւն նորա ժողովրդեանն՝ որպէս և ոգիք զի բարձեալ ունիցին զմարմին , զիարդ տկարացաւ նա քան զնախանձն Փենեհէզայ 'ի ժամու անդ ցործամ պատնըկեցաւ ժողովուրդն ընդ դստերսն Մադիամու , որպէս 'ի յընթերցուածոյ անտի ։ Մովսէս կամ վայրապար կայր , կամ խղճիւ և հեծիւ էր վասն գործոյն Փենեհէզայ ։ Արդ զիարդ դադարէր նա , և վասն էր եթէ էր նա 'ի ժամու՝ յորում արհամարհեալ լինէին օրէնքն , զոր եդ նա ։ Զի առաջի ամենեցուն եդ նա զպատուէրն յասել իւրում . "Մի՛ եղիցի պոռնիկ 'ի դստերաց Իսրայէլի ,, . և զկնի բանին ժողովուրդն իւր յոչ ժողովուրդ զգործ պոռնկութեան գործէր ։ Այլ զայն ասասցուք ։ զի Փենեհէզ , այն որ այսու միով գործովս իւրով առաքինացաւ , մի 'ի գործոց իւրոց ուրեք ոչ առնէ յայտ՝ եթէ պսակեցաւ նա ։ Բայց Մովսէս յամենայն զնացս իւր առ խնդրուածքս մերձենալ ունէր զանձն իւր , և գործ մնատակա-

րարութեան նորա 'ի կատարածի իւրեանց զկնիք. աղօթից նորա առնուն. Թէպէտ և մինն գործ ցասման իւրոյ կարաց կողոպտել յափշտակել զնա ։

Արդ այն՝ որ յամենայն տեղիս աղօթիւք նորա առաքինացան, և ուրեք 'ի նախանձու իւրմէ յետս նա ոչ եկաց, զիա՞րդ 'ի ժամու անդ՝ յորում լուծեալ լինէր բանն նորա, և անարգեալ անգոսնեալ լինէր պատուէր հրամանի նորա, և հայհոյեալ բամբասեալ լինէր ա̃ծն նորա, դադարէր նա 'ի գործոյ անտի՝ որ պարտուպատշաճ էր նախանձու նորա ։ Բայց սակայն քանզի գործով իւրով ոչ էր տկար, և այն որպէս այր մի՝ զի չիք նորա ընկեր, ընտրեալ էր նա յայնմիկ՝ զի իբրև զնա խոնարհ 'ի ժողովրդեան նորա ոչ գտաւ 'ի ժամու անդ՝ յորժամ ժողովուրդն նորա 'ի համարձակութիւն պոռնկութեան գայթագղեցաւ. զի ժողովուրդն որ ոչ անսայր բանից, 'ի տիղմ պղծութեան իւրոյ եթող, և առ տէր իւր աղօթս և խնդրուածս մատուցանէր, և իբրև դաստիարակ իմաստուն զաղօթս իւր առաջի տեառն իւրոյ սփռէր ։

Արդ տես դու զցաւն խրատ՝ որ տարածեցաւ 'ի ժողովուրդն նորա. և հարուածքն խստութեան՝ որ տիրեցին 'ի վերայ նոցա, ուղղեաց զանձն իւր և դիմեաց հոգաւ առ բժիշկն, զի փութացեալ ընթասցի եկեսցէ սուր բժշկութիւն 'ի վերայ անդամոց ։ Արդ ժողովուրդն պոռնկէր, և Մովսէս աղօթս մատուցանէր, և Փենեհեզ ընկեր լինէր ա̃յ նախանձու իւրոյ ։ Զի ետես նա՝ թէ մահ տիրեաց, և Մովսիսի չև էր յաղօթիցն յարուցեալ. զի կամեցաւ նա՝ թէ զօրացեալ սաստկասցի խրատն ժողովրդեանն, որ դառնացոյց զա̃ծն իւր պոռնկութե̃ իւրով. և խորհեցաւ Փենեհեզ զի ընկեր եղիցի Մովսիսի, և հաղորդ գտցի ա̃յ, սպան ընդ ա̃յ, և կաց յաղօթս ընդ Մովսիսի ։

“Յարեաւ, ասէ, Փենեհէս կաց յաղօթս, և արգելաւ մահ„. զի ոչ եթէ հակառակորդ ինչ եղև Փենեհէս Մովսիսի գործովն իւրով թէ Մովսէս յաղօթս կայր վասն սատակման ժողովրդեանն, և Փենեհէս խնդրուածս խնդրէր վասն փրկութեան ժողովրդեանն. այլ Մովսէս իբրև արբեալ մի 'ի գործ իւր հանապազորդ զբաղեալ էր. և Փենեհէս 'ի տեսիլն

չորութե՝ նախանձուն իւրով իբրև հրով վառեալ բորբոքեալ էր. և դիակունք յամենայն կողմանց անկեալ դնէին : Բայց տեղն որ հարեալ կարեցաւ ընդ լանջս այնոցիկ, եղև իբրև սահման անչափ հեղեալ բարկութե ստուգութեն. և շտապ տագնապի և գոչումն աղաղակի ժողովրդեանն զՄովսէս յաղօթից անտի դարձոյց, զի հանգիցէ նա 'ի տրտմութէ անտի իւրմէ, և ելցէ տեսցէ զխրամատութիւն որ եղև 'ի դիակունս նոցա : Արդ երրորդութե առ դու 'ի միտ, վասն զի ոչ հաւասարութե համեմատին. զի 'ի ժամու յորժամ տեսանէր զանկեալ վիրաւորս, աղօթիւք իւրովք զածն իւր ցածուցանէր 'ի բարկութէ. զոր օրինակ և Փենեհեզ 'ի հաղորդութիւն գործոյն մերձեցաւ, որպէս եղև հրամանաւ բանին իւրոյ Ահարոնի բուրուառաւն 'ի խնդրուածս աղօթից իւրոց : Այլ ոչ եւս յայտնապէս Մովսէսի զփրկութի, զի մի տկարացեալ աղքատասցին խորհուրդքն Փենեհեզի, այն որ զայս գիւտս նախանձու հնարեաց գտանել վասն պսակելոյ անձին իւրոյ :

Բայց Մովսէս, այն որ առաքինութիւքն բազում էին, ոչ եթէ միովս այսուիկ մեծանան պարծանք գովութե նորա. զի մի գործ էր երկոցուն. և եթող զմին և գովեաց զմիւսն միայն առանձինն : Զի յետ գործոյն գրեցաւ. և փրկութի՝ զի սովոր է ողորմութին կերակրել զբազումս իբրև զմի, և միով որպէս և բազմօք. զի 'ի վաստակել յաշխատելն իւրեանց յայտնապէս՝ գոն ընդ նոսա հաղորդք իւրեանց 'ի ծածուկ. զեւթն հազար եղեալ էին այ իբրև 'ի գանձի 'ի ծածուկ հանդերձ միովն յայտնի մշակաւն, որ կարծեաց թէ վասն աղօթից իւրոց եղև նա լսելի, 'ի ժամանակի իբրև կոտորեաց նա զքուրմսն Բահաղու, և ոչ գիտէր նա՝ թէ գունդ մի մեծ է նոցա յաղօթս խնդրուածոց իւրոց : "Ահա, ասէ, թողի անձին իմոյ եւթն հազար ,,. այս ինքն ընտրեցի ես 'ի սպաս պաշտաման իմոյ զայնոսիկ՝ որք արժան իսկ էին ընտրութեան :

Փոխանակ այնր՝ զի ասէ "Որդիքն Կորխայ 'ի թիւ համարու ոչ մտին ,,. հեբրայեցի, "Եւ որդիքն Կորխայ, ասէ, ոչ մեռան ,, : Եւ զի ամենայն մարդ յաղ-

զի տոհմի իւրում սերասցի, զի մի՛ եղիցին խառնել ազգքն ընդ միմեանս։ Եւ այն՝ զի ասէ “Մինչեւ մեռանի մեծ քահանայն„. վասն է՞ր. այլ զի զգուշացուսցէ զնա, զի բնաւ ամենեւին մի՛ փրծանիցի երկաթ՝ զի եղիցին զգուշացեալք յամենայն ինչ։ Եւ դարձեալ, զի ասէ “Յորժամ մեռցի քահանայն մեծ, դարձցի սպանօղն անդրէն յերկիր ժառանգութեան իւրոյ„. ակնարկէ մեզ յայնմիկ՝ զի ՚ի մեռանել մեծ քահանային դառնայ Ադամ՚ի դրախտն ժառանգութեան իւրոյ։

## ԿԱՏԱՐԵՑԱՒ ԹԻՒՔ ՈՐԴԻՈՑՆ ԻՍՐԱՅԵԼԻ

## ՏԵԱՌՆ

# ԵՓՐԵՄԻ

## ԽՈՐԻՆ ԱՍՈՐՒՈՑ

### ԴՊՐՈՒԹԻՒՆ

# ԵՐԿՐՈՐԴ ՕՐԻՆԱՑ

### ԳԼՈՒԽ Ա

ՈՐՊԷՍ անձրև կանուխ զի զարթուցանէ զսերմանիս, և զայ հասանէ անձրևն անագան կատարէ ըզմնունդս նորա, սոյնպէս իբրև լուան զօրէնսն 'ի լեառն Սինայ իբրև զանձրև կանուխ ընկալան զնա. և զերկրորդ զօրէնսն իբրև զանձրև անագան. զի զպտուղս զարդարէ և ծաղկաց զփառս զգեցուցանէ: Վասն այսորիկ «Ցօղեսցէ իբրև զանձրև վարդապետութիւն իմ, և իջցէ որպէս ցօղ խօսք իմ»: Կամ զի եղծան ապականեցան յետ առաջնոյ որթուն, յաւելաւ նոցա երկրորդումն. զի եթէ էր կատարեալ նոցա զպահպանութիւն առաջնոյն, ոչ լինէր պէտս նոցա երկրորդն: Կամ զի այնոքիկ՝ որ լուան զառաջինսն սատակեցան ըստ հրամանին՝ որ ել 'ի վերայ նոցա, հարկ եղև նորոգել առ որդիսն նոցա յերկրորդելն նորա 'ի զգուշացուցանել զնոսա, զի մի եղիցին որպէս և հարք իւրեանց: Փոխանակ այնր՝ զի ասէ «Եւ հալածիցեն զձեզ իբրև զմեղուս ծխալիցս». հեբրայեցին, «Իբրև զմեղուս՝ որ հալածիցին»: Փոխանակ այնր՝ զի ասէ «Ոմնացիք յառաջագոյն բնակեալ էին 'ի նմա». եբրայեցին՝ սկայս ասէ. և դարձեալ մովաբացիք սկայս

կարգաւն նոցա ։ Փոխանակ այնր՝ զի ասէ «Վիճակ երգոքայ», հեբրայեցի ասէ, «Վիճակ դերբկի» ։

Իսկ այն՝ զի ասէ. «Տէր ած քո որոշեաց զնոսա». վասն մօտաւորութեն Իսրայէլի և վասն հեռաւորութեն հեթանոսաց՝ կամեցաւ ասել զիւրաքանչիւր 'ի հեթանոսաց ։ Ընտրեցին կալան իւրեանց կուռս, և նա ոչ բռնադատեաց զնոսա. բայց զի որոշեաց զնոսա՝ ոչ եթէ զի երկրպագեցին. զի եթէ վասն երկրպագելոյ եղեն, ահաւանիկ բազում հեթանոսք են՝ որ ոչ պագանեն երկիր լուսաւորաց՝ քան զայնոսիկ՝ որ երկիր պագանեն նոցա ։ Եւ հեբրայեցւոց ոչ հրամայեցաւ երկիր պագանել լուսաւորաց զիարդ պագանէին նոքա երկիր. զի ահա ահաւանիկ Եզեկիէլ, զի պագէին նոքա երկիր արեգական, յանդիմանէ զնոսա. և Երեմիայ զայնոսիկ, որ արկանէին զխունկս պաշտամանն երկնից, կշտամբեաց զնոսա. և Մանասէ 'ի սրահ տաճարին տեառն շինեաց սեղանս ամենայն զօրութեանց երկնից. և Ամովս, զի առին նոքա զվրանն Մողոքայ և Քեւանայ պատկեր զաստղն՝ զոր արարին իւրեանց աստուած, նախատեցին զնոսա աղաղք հանդերձ ։

Իսկ եթէ յայտնի՝ եթէ հեթանոսք ազգի ազգի կռոց երկիր պագին, յայտ է եթէ այն որոշեաց զնոսա, զի եղիցին նոքա լուսատու հեթանոսաց՝ ասացան, և ոչ եթէ զի երկրպագեսցին նոքա 'ի նոցանէ ։ «Եւ զքեզ, ասէ, մերձեցոյց առ իւր տէր ած առաւել քան զամենայն հեթանոսս». իբրև զայն՝ զի ասէ «Ոչ արար այսպէս ամենայն ազգաց». այս ինքն նշանս և սքանչելիս՝ զոր արար առ նոսա ։ «Եւ զդատաստանս իւր ոչ յայտնեաց նոցա». որպէս և ցոյց նոցա որդւոյն Յակովբայ ։ Վասն պարծանաց Իսրայէլի ասացաւ այսպէս. և զի բարձր արասցէ զգլուխ նորա. իբրև զայն՝ զի ասէ «Եթէ լուաւ այլ ժողովուրդ ըզձայն այ, որպէս զի տէր ած մեր մերձ է առ մեզ» ։ Զի 'ի ցուցանելն նոցա՝ թէ որպիսի տէր գոյ նոցա, զի մի թողցեն և դարձցին առ կուռս հեթանոսաց ։

Բայց դարձեալ, զի որոշեաց զնոսա՝ իբրև զայն զՓարաւոնին ։ «Ես, ասէ, զրգռեցի զնա». զի եթէ նա զրգռեաց, իսկ էր ընդէր դատի. և եթէ որոշեաց, իսկ ընդէ՞ր պատուհասէ ։ Բայց հեբրայեցի այսպէս

ասէ զբանն յայտնապէս. “Մի, ասէ, յորժամ հայի-
ցիք դուք ընդ երկինս, տեսանիցէք դուք զարեգակն
և զլուսին և զաստեղս և զամենայն զարդ երկնից,
պակչիցիք յիմարիցիք մոլորիցիք երկիր պագանիցէք
նոցա, կամ սպաս պաշտաման տանիցիք նոցա, զոր
հատուեաց տէր ա՟ծ ձեր”. այս ինքն հաստատեաց
կացոյց զնոսա 'ի սպաս պաշտաման ամենայն հեթա-
նոսաց՝ որ 'ի ներքոյ երկնից, հեթանոսաց և ժողո-
վրդեանն: Եւ զի ասէ. “Զձեզ ընկալաւ ա՟ծ, և հան
զձեզ 'ի հնոցէ երկաթոյ 'ի միջոյ Եգիպտոսի”. հնոց
զնեղութիւն անուանէ, և երկաթ զխորայէլ, կամ
զԵգիպտոս և զխստութիւն նորա՝ որ հնազանդէ
զեռանն որպէս և զերկաթ:

Փոխանակ այնր՝ զի ասէ “Կամ փորձեցին զա՟ծ,
զի շոգաւ նա և առ իւր ազգ մի յազգէ միոջէ”. հեբ-
րայեցի, “Եթէ իցէ յազգաց ուրուք, ասէ, լուեալ
զձայն ա՟յ կենդանւոյ 'ի միջոյ հրոյ. կամ փորձեաց
ա՟ծ երբեք մտանել առնուլ հանել իւր ազգ մի յազ-
գէ միոջէ փորձանօք նշանօք սքանչելեօք և արուես-
տիւք, որպէս և արար մեզ տէր ա՟ծ մեր, և հան զմեզ
յԵգիպտոսէ”: Փոխանակ այնր՝ զի ասէ “Սիրեսցես
զտէր ա՟ծ քո յամենայն սրտէ քումմէ”. հեբրայեցի,
“Յամենայն մտաց քոց”: Փոխանակ այնր՝ զի ասէ.
“Եղիցին այս պատուիրանք նշան 'ի ձեռին քո”.
հեբրայեցի, “Իբրև զնշան 'ի վերայ ձեռին քո”:
Փոխանակ այնր՝ զի ասէ “Առաքեսցես զպիծակն և
զմեղուս առաջի երեսաց քոց”. հեբրայեցի՝ հա-
րուածս ասէ:

Որպէս ցուցանէ յերկրորդ օրէնսն, երիցս անգամ
պահեաց Մովսէս քառասուն քառասուն օր: Այն
զի ասէ. “Կացի ես յաղօթս առաջի տեառն”. “Յա-
մենայն տեղի, ուր և, ասէ, յաղօթս կացի, պահեցի”
գրեալ է 'ի հեբրայեցի: Եւ զոր օրինակ վասն ժողո-
վրդեանն պահեաց, նոյնպէս և վասն Ահարոնի զքա-
ռասուն օր պահեաց: Զի մեղք քահանայի քան
զամենայն ժողովրդեանն խիստ է. զի փոխանակ ժո-
ղովրդեանն ամենայնի զուարակ մի մատուցեալ լինէր,
և փոխանակ քահանային զուարակ մի: Արդ ասաց
նա “Եւ 'ի վերայ Ահարոնի, ասէ, բարկացաւ տէր

սատակել զնա, և վասն նորա պահեցի„: Արդ զա-ռաջինն զոր պահեաց, զի առ զօրէնս. և զերկրորդն վասն ժողովրդեանն. և զերրորդն վասն Ահարոնի:

Այլ զի ասէ. “Զարչարեաց խոնարհեցոյց զքեզ և սովաբեկ արար զքեզ, և ետ ուտել քեզ զմանանայն յանապատի անդ՝ հաց խոնարհութեան տառապանաց, զի յայտ արասցէ քեզ՝ թէ ոչ հացիւ միայն կեայ մարդ„: Բայց հաց խոնարհութեան և տառապանաց՝ զի ասէ, զի չափով կշռով հրամայեցաւ նմա ուտել օր ըստ օրէ: Վասն այսորիկ կարդաց նա հաց խոնար-հութեան տառապանաց, զի ոչ տուաւ նոցա համարձա-կութիւն թէ ըստ կամաց իւրեանց առցեն և կերիցեն. և հաց խոնարհութեան՝ զի ասէ. “Անձինք մեր ձանձ-րացեալ նեղեալ են ’ի հաց սակաւ„. այս ինքն քաղաք հացիւս, որպէս և գրեալ է ’ի հեբրայեցի. այլ “Ա-մենայն քանիւ„ ասէ: Զի եթէ անձրև ոչ իջանիցէ, և երկիր զպտուղ իւր ոչ տացէ. և դուք զհաճոյս ա-րասջիք, մի կարծամիտ լինիցիք դուք՝ թէպէտ և ան-ցեալ իցէ ժամանակ հնձոց. զի ամենայն քանիւ կա-րող է կեցուցանել զձեզ. այս ինքն, զի եթէ քարանց հրամայիցէ հաց լինել, կամ երկնից հնարս լիութեան՝ կարող է:

Փոխանակ այնր՝ զի ասէ “Ոչ պահէ ատելեաց իւ-րոց„. հեբրայեցի, “Ոչ յամէ առ ատելիս իւր„: Փո-խանակ այնր՝ զի ասէ “Երկիր է, որ տէր ա͞ծ քո վրէժ-խնդիր է նորա„. ’ի հեբրայեցի, “Այցելու է նո-րա„: Փոխանակ այնր՝ զի ասէ “Տացես դու օրհնու-թիւնս[1] ’ի վերայ լերինն Գարիզի, և զանէծս տացես ’ի լերանն Գեբաղ„. հեբրայեցի, “Ի Գարիզին և ’ի լերանն Գեբաղ յամենայն տեղիս, ասէ, ուր և ա-նուանիցես զանուն իմ, եկից իջից և օրհնեցից զքեզ„:

Յայնմիկ՝ զի ասէ “Մի՛ ժտիր դու, ոչ ունիս իշխա-նութիւն մատուցանել քեզ պատարագ յամենայն տե-ղիս անխտիր„. տես զի արգելու և կարճէ զնոսա, զի մի յաճախեսցեն զոհեսցեն և ջեռուցին ’ի զոհսն: Այլ զի մի զոհեսցեն, զաղօթսն՝ որ ընդ ամենայն տեղիս

1 Յօրինակին յօրհնութիւնս:

է, ոչ արգել: «Եւ յորժամ արասցես, ասէ, զայս ամենայն, և կատարեսցես զպահպանութիս օրինաց որպէս պատուիրեցի քեզ, եկից իջից ես առ քեզ յամենայն տեղիս ուր և յիշեսցես զանուն իմ 'ի նեղութե և յանդորրութե, և օրհնեցից զքեզ ամենայն որ պիտոյն իցեն»: Եթէ այդ այդպէս իցէ, 'ի սկզբանէ գրեցաւ յայնմանէ 'ի սուրբ անասնոց անտի Նոյի:

Արդ տեսցուք թէ իբրու գիտէր զնոսա Նոյ յառաջագոյն պատուիրեցաւ, ապա թէ ոչ զզոհսն զայն զոր զոհեցին արդարքն առաջինք, թերևս 'ի պիղծ անասնոց անտի էին: Եւ եթէ գիտէին թէ այդ այդպէս իցէ, վասն զի մոռասցին և այն քերցն իւրեանց և զշաբաթուց և զմկրտութեց և թլփատութեն. և զոր օրինակ ոչ յայտնեաց անթլփատիցն Ենոքայ և Նոյի՝ եթէ հանդերձեալ է նա պղծել զթլփատութի, և ոչ Սեթայ և Ենովսայ՝ և եթէ սրբելոց իցէ նա զշաբաթն. սոյնպէս ոչ յայտնեաց՝ եթէ հանդերձեալ է նա լուծանել զշաբաթն, և արձակել զթլփատութին: Եւ եթէ ոչ էր յայտնի արդեւք, յանձանց իւրեանց՝ իբրև մեղք էին առնուլ զքոյրս իւրեանց՝ առնոյին: Սոյնպէս անփոյթ արար զառաջինսն և կապեաց զմիջինսն և թոյլ ետ վերջնոցն. զի յայտ արասցէ զիշխանութի իւր օրէնսդիրն, ոչ յայտնեաց մինչև ինքեանք օրէնքն յայտնեցան, իւրաքանչիւր օրէնքն 'ի ժամու իւրում: Եւ եթէ դարձեալ հատեալ և յայտնեալ յառաջ քան զժամանակն՝ եթէ անցանելոց են, անարգեալ անգոսնեալ էին 'ի ժամանակս իւրեանց, և փութացեալ ընթանային առաջինքն թլփատել 'ի տարաժամ ժամանակի. կամ լուծանէին միջինքն զթլփատութիւն 'ի ժամանակի իւրում. ոչ է արժան լուծանել, եթէ յայտնեալ էր նոցա՝ թէ խափանելոց է զնոսա: Եթէ լուծեալ էր զթլփատութին յանապատի անդ, ո՞չ ահա յոյժ անմտութի էր: Իսկ զի՞ տայր զնա յայնմ ժամանակի, զի ոչ ինչ էր պիտոյ. և եթէ պիտոյ էր, զիա՞րդ լուծանէր զնա միանգամայն և յաւիտեան: Սոյնպէս դարձեալ զշաբաթն. այսպէս և զամենայն ժամանակեան օրէնսն: Այլ կուրացոյց զնոսա յայնմիկ, զի

անցանելին զօրինօքն, և ոչ լինելին պատուհասեալ։

Արդ 'ի լուծանելն աւուրց աւուրցն կամ ժամ ըստ ժամ, յայտ առնէր վասն օրինացն՝ թէ ոչ էին յաւիտենից։ Արդ օրէնքն բարձեալ են, և 'ի զոհս անդ կապեալ են. և ընդ լուծանելն նոցա, լուծանին նոքա. ոչ ունին իշխանութիւն յամենայն տեղիս անխափան մատուցանելը։ Այլ օրէնքն Ճշմարիտք՝ առանց սեղանոյ, առանց պատարագաց, ամենայն տեղի՝ տեղի իւրեանց է, և ամենայն ժամ՝ ժամ իւրեանց է։ Արդ երկիցուք մեք 'ի թողլ տալոյ փոքունց, դուցէ մեծամեծ բիծ դնիցեմք յանձինս մեր. զի ահա աւանիկ յորմէ հետէ պատուէրն եղաւ, յաւելլով յաւելաւ առաջինն 'ի միջինն, և միջինն 'ի վերջինն։ Զոր ինչ մեկնեաց որոշեաց Նոյ 'ի կերակուրսն, պահեաց Աբրահամ թլփատութեամբն, և զշաբաթն՝ որ 'ի Մովսիսէ, կապեալ է 'ի թլփատութեան անդ՝ որ յԱբրահամէ։ Եւ ընդէր Մովսէս՝ որ ետես զօրինակ խորանին, ոչ տուաւ նմա զի շինիցէ զտունն. այլ զխորանն անցոյց տաճարն, և զտաճարն քակեաց ձեռն թշնամւոյ։

“Յամենայն քաղաքս, ասէ, և 'ի գետոյս՝ որ պիղծն իցէ 'ի քեզ և որ սուրբն իցէ, 'ի միասին կերիցեն առհասարակ„. այլ ոչ եթէ վասն պիղծ գազանաց ասաց՝ և որ սուրբ իցէ և պիղծ, այլ վասն մարդկան ասէ. “Ամենայն որ սուրբ և պիղծ իցեն 'ի գետոյս քո, կերիցեն զնա„։ Քանզի յանապատի անդ հրաման ետ նոցա և ասէ. “Ամենայն որ զենուցու ոչխար կամ զուարակ, առաջի սեղանոյն մատուսցէ զնա զի սրբեսցին, և ապա կերիցեն„։ Աստ ասէ. “Յորժամ մտցես դու յերկիրն, զորս տէր ա͞ծ քո տացէ քեզ, զեն և կեր ըստ ցանկութեան անձին քո. բայց միայն արիւն մի ուտիցես„։

Եւ այն՝ զի ասէ. “Թէ յարիցէ 'ի մէջ քո մարգարէ 'ի տեսիլս երազոց, և տացէ նշան, և եկեսցէ նըշանն մոլորութեան զոր խօսեցաւ նա ընդ քեզ, եթէ երթիցուք դիցն օտարոտեաց երկիր պագցուք՝ զոր ոչ ճանաչիցէք, մի հաւատասցես վասն նշանին մոլորութեան նորա, այլ վասն ճշմարտութեան քո երկիր պագցես դու ա͞յ քում. զի ես տէր մոլորեցուցի զնա. և սատակեսցես կորուսցես զնա 'ի միջոյ ժողովրդեանն իմմէ„։

*Արդ ուսուցանէ քեզ օրինակ սպանանել զայնոսիկ. զի Աստուած ոչ եթէ 'ի նշանաց անտի իւրոց արժան է երկրպագել: Երկու բանք աննմանք միմեանց 'ի վերայ երկուց մարգարէից. մի այն՝ որ խոտորեցուցանիցէ, գայ հասանէ բան նորա. և կատարի; բայց յանդիմանեալ կշտամբի նա յայնմիկ՝ զի խոտորեցուցանէ զքեզ. և միւսն այն՝ որ համարձակի ժպրհուք և ոչ ուրացուցանէ զքեզ, կշտամբեալ յանդիմանի յայնմիկ՝ զի ոչ կատարի բան նորա:*

*Փոխանակ այնր՝ զի ասէ թէ "Մի՛ ցտիցէք զմարմինս ձեր". հեբրայեցի, "Մի՛ մոլեգնիցէք, որպէս և այնոքիկ՝ որ մոլեգնեցանն, մինչև հեղու արիւն նոցա 'ի վերայ նոցա": "Մի՛ անկիցես դու քեզ պէսպէս տունկս ծառոց". իբրև զայն՝ զի ասէ "Մի՛ խառնիցէք 'ի խառնս այլազգի զանասունս ձեր. և մի՛ սերմանիցէք զայգիս ձեր խառնակ սերմանեօք". զի զերկիրն ազատեսցէ յաւելի աշխատութենէ անտի, և ընդտէր երկրին 'ի բազում ագահութենէ: "Եւ մի՛, ասէ, լծիցես դու զեզն և զէշ 'ի միասին". մինն անթըլփատ, և միւսն թլփատեալ: Ողորմութիւն նորա է այս. զի չէ ինչ իշոց 'ի լուծ մտանել և ձգել յակօս, զի զօրագոյն է եզն քան զէշ. և եզն վաստակէ, զի չիք իբրև զէշ 'ի վար լծոյ, և էշ տկարանայ և մաշի:*

*Եւ վասն հանդերձից դարձեալ հրամայէ՝ եթէ խառնուածոյ մի՛ զգենուցուն. զի ամենայն գնացիւք իւրեանց զգուշացեալք լինիցին նոքա յօրինաց անտի պահել զնոսա: Զի ամենայն, ուր և գնայցեն նոքա, օրէնքն ընդ առաջ դիպեսցի նոցա. առաւել ևս յայնմիկ, զի ուսուսցէ նոցա՝ թէ ընդ հեթանոսս մի՛ խառնակեսցին և գնացից նոցա մի՛ ցանկասցին. իբրև զայն՝ զի ասէ "Արասջիք ձեզ արկանելիս քղանցաւորս, և ճամուկս դարձիւք":*

*Եզամբ դարձեալ և իշով զոր պատուիրեաց, բայց "Մի՛ սերմանիցես նոքօք միանգամայն", զի զորդիս ժողովրդեանն իւրեանց մի՛ ստանայցեն իւրեանց ծառայս յաւիտեան, իբրև զօտարս: Եւ այն՝ զի ասէ "Զարտավար ձեր մի՛ սերմանիցէք խառնակ սերմանեօք", զի զդստերս իւրեանց հեթանոսաց մի՛ տայցեն: "Եւ մի՛ սերմաներ զայգի քո խառնակ սերմանեօք, զի մի՛ նը-*

ւիրիցի ծնունդ սերմանեաց երկրի քո»։ զի լինի նա այնուհետեւ նզովլ երախայրեաց բաժին քահանայիցն։

## ԳԼՈՒԽ Բ

«ՄԱՐԳԱՐԷ մի, ասէ, 'ի միջոյ եղբարց քոց կանգնեսցէ քեզ տէր ած քո իբրեւ զիս»։ Զի զոր օրինակ ետ նա զկտակարանսն, այնպէս տացէ այն որ գալոցն է՝ կտակարանս նորս։ Եւ եթէ ասիցեն, թէ վասն Յեսուայ որդւոյ Նաւեայ, կամ վասն Սամուէլի ասացեալ է, յանդիմանեալ կշտամբին նոքա յայնմանէ, զի մարգարէ ասաց նա, և ոչ թագաւոր մարգարէս։ Եւ առաւել ևս, զի ոչ եթէ կտակարանք ինչ նորոգեցան 'ի ձեռս նոցա, և ոչ պահպանութիւնք և ոչ սահմանիչք եղեն նոքա մարգարէութեան։ Արդ յայտ եղև՝ թէ մարգարէ իբրեւ զՄովսէս՝ վասն տեառն մերոյ ասացեալ է. զի զնոր կտակարանսն ետ նա՝ որ գրեալ են 'ի տախտակս սրտից։ «Ոչ, ասէ, իբրեւ զայն՝ որ ետու ես նոցա 'ի ժամանակի իբրեւ 'ի ձեռն առի ես զհարս նոցա հանել զնոսա յերկրէն եգիպտացւոց. այլ տաց ես զօրէնս իմ 'ի խորհուրդս նոցա, և 'ի վերայ սրտից նոցա գրեցից զնոսա»։ Եւ յայնմիկ՝ զի ասաց բայ նոր՝ զառաջինն հնացոյց։

Այլ զայս ասասցուք, թէ 'ի ժամանակի՝ յորում հան զնոսա Մովսէս, թող նա զճանապարհ կարճոյն և զդիւրինն՝ որ յԵգիպտոսէ 'ի հրէաստան պարզ ուղեղ տանէր, և յանապատի անդ քառասուն ամ շրջեցոյց զնոսա. որպէս զի ընդ երկար ժամանակօքն փոխեսցին նոքա 'ի սովորութէ անտի չարութեանն իւրեանց՝ զոր ունէին նոքա յերկրին եգիպտացւոց։ Իբրեւ յաւելու նոցա օրէնս և՝ զի խառնեսցին 'ի նոսա, որպէս զի 'ի մոլորութէ անտի կռոցն կարասցէ փոխել զնոսա։ Զի գլուխն պատուիրանաց նորա այս է՝ եթէ «Մի եղիցին քեզ աստուածք բաց յինէն։ Մի արասցես քեզ կուռս պատկեր նմանութեան, որ ինչ յերկինս կամ յերկրի»։

Իսկ զի գիտաց Մովսէս՝ թէ ոչ կարէ բնաւ ամենեւին խլել զցաւսն և զսովորութիւն զերկրպագութեան

կռոցն 'ի մտացն անտի նոցա, հրամանն եւս նոցա պա-
հել, այս ինքն անուանն ա̃յ. զի գոնեայ զկէս ցաւոյն
հատցէ և խափանեսցէ. և վասն ուղղութ̃են միւսոյն
և կիսոյն յայլում ժամանակի 'ի ձեռն այլոյ ուրուք,
որպէս և արժան իցէ, լինիցի: “Նմին, ասէ, մարգա-
րէին լուարուք„. զի յորժամ յայտնեսցի 'ի ժամա-
նակի, յորում կարիցեն նոքա լսել՝ զի ա̃ծ զողոր-
մութ̃իս կամի և ոչ զպատարագս: Եւ որք միանգամ
յանձն առնուն և անսան նմա, արժանի եղիցին նո-
քա կենացն յաւիտենից. և որք միանգամ ոչ հա-
ւատասցեն, 'ի սուր 'ի սատակումն մատնեսցին նոքա:

Արդ քանզի ինքն իսկ գիտութ̃ին ուղղութ̃ին մար-
գարէին կարօտ էր, ժամանակն՝ յորում պարտուպատ-
շաճ էր առ նա յայտնել, նախ խրատեաց զնոսա լսել
դադարել նոցա 'ի զոհից անտի: Եւ զի մի կարծես-
ցին նոքա՝ եթէ զրկեալ լինիցին նոքա 'ի թողութ̃է
անտի փոքր մեղացն՝ որ 'ի ձեռն զոհիցն լինէր նոցա,
և կարճեալ լինիցին նոքա 'ի հաւատոց անտի, եւս
նոցա մկրտութ̃ի. զի 'ի ձեռն ջուրցն զճշմարիտ քա-
ւութ̃ին արասցէ ամենայն մեղաց նոցա: Եւ ոյք միան-
գամ միաբանին նմա, 'ի կեանսն յաւիտենից պա-
հեսցէ զնոսա. և յորժամ ա̃յ հաճոյ լինիցին[1] ըստ
կամաց նորա, ապրեալ լինիցին նոքա: Եթէ և սոքա
այսպէս հեռացեալ մերժեցան, սակայն մարգարէն
երևեցաւ, և նշանս գործեաց. և նախ զերկոտասան-
ան ընտրեաց և ապա զիւթանասուն և զերկուսն,
թէ գոնեայ այսպէս 'ի ձեռն նմանութեանն Մով-
սիսի իմասցին ժողովուրդք նոցա՝ թէ այս այն մար-
գարէ է՝ զոր Մովսէսն քարոզեաց: Այլ թերևս
թիւ ամենայն ումեք դիւրին է առնել, բայց նշանս
և սքանչելիս դժուարին է գործել. այլ ահա աւա-
նիկ աւելի քան զնշանսն զՄովսէսի 'ի մէջ ժողովըր-
դեանն՝ անթիւ և անբաւ նշանս և սքանչելիս ցոյց նա:

“Յորժամ, ասէ, ելանէք դուք 'ի գործ պատե-
րազմի, մի երկնչիք դուք. զի տէր ա̃ծ ընդ ձեզ է„:
Եւ ասէ դարձեալ, եթէ “Կայցեն, ասէ, դպիրք օ-
րինադիրքն ժողովրդեանն, և ասիցեն. եթէ իցէ կին

1 Յօրինակին ըլինիցի:

ոք ուրումն խօսեցեալ իցէ նորա, և չիցէ ածեալ, դարձեալ անդրէն՝ զի մի՛ մեռցի ,,, այլովք հանդերձ : Եթէ տէր ա՛ծ է ընդ նոսա, զիա՞րդ կարէ մի 'ի նոցանէ վնասել . այլ զի մի՛ երկմտեալ բաժանեսցին միտք նորա, և դիցէ գայթագղութիւն սրտից ընկերաց իւրոց, և առնիցէ զնոսա իբրև զինքն, իբրև այն զԳեդէոնին : Զի իբրև ոչ առին նոքա յանձն մնալ 'ի պատերազմէ անտի ըստ բանի նորա, իջոյց զնոսա 'ի վտակն ջուրց, և որոշեաց զնոսա, որպէս զի յայտ լիցի՝ եթէ ոչ բազմութիւն զօրաց առնէ զյաղթութիւն . քանզի տեառն ա՛յ է պատերազմ : Եւ զի ասէ "Տէր ա՛ծ քո երթիցէ առաջի քո ,,, զի քաջալերեսցին նոքա 'ի վերայ հեթանոսաց . զի ահաւանիկ դարձաւ ասաց նա՝ բայ "Գուցէ մեռանիցի, և այլ այր երթեալ նաւակատիս առնիցէ ,, :

Իսկ զի ասէ "Մի՛ մտցէ բոզորդի 'ի ժողովուրդ տեառն ,, . զի յամօթ եղիցին հայր և մայր նորա : Եւ զի ասէ "Շան գինք և բոզի կապէնք ,, . զի անուանս մեկնեացէ վասն շանն և վասն յորջորջման նորին, և յանուն շան զպատարագ բոզին դարշեցոյց : "Մի՛, ասէ, տարցես զնոսա 'ի տուն ա՛յ քո ,,, զպատարագ պիղծ 'ի գիջութենէ : Եւ զի ասէ "Լուասցեն զձեռս իւրեանց 'ի վերայ երինջոցն ,, . զի յայտնապէս որ իբրև զերդումն եղև նոցա՝ երկնչին և քննեն զիրան, զի մի՛ գտցին սպանող . և զի մի՛ ննջեսցեն նոքա յայսմ վրիժու խնդրելոյ և 'ի քննութե՛ : Բայց հեբրայեցի փոխանակ այնր՝ զի ասէ "Եւ զենցեն զերինջ 'ի ձոր անդրր ,,, "Հատցեն զգլուխ նորա ,, ասէ :

"Այս եթէ իցէ ուրուք որդի խեռ և անզգամ և հակառակօղ, և ոչ լուիցէ ձայնի հօր և մօր իւրում, կալցեն զնա հայր և մայր իւր, և ածցեն առաջի ծերակոյտ ժողովրդեանն . և դիցեն զձեռն իւր 'ի վերայ գլխոյն, և քարկոծ լիցի ,, : Երևի՝ թէ առանց ողորմութեանց է, այս ինքն զի ողորմութի՛ն է : Եւ զի ցուցցէ՝ թէ հայրն ծերունի եթէ յանցանիցէ, խրատեսցեն զնա . ապա թէ առանց յանցանաց ատիցէ զորդին իւր, ոչ միաբանին ընդ նմա ծերակոյտ ժողովրդեանն, բայց եթէ մեծ ինչ իցեն յանցանք որդւոյն, մինչ զի յայտնի կալցին զմիջնորդսն՝ ածել նոցա 'ի

վերայ նորա զպատիժ պատուհասից ։ «Դիցեն, ասէ, հայր և մայր նորա զձեռս իւրեանց 'ի վերայ գլխոյ նորա» ։ Զուգեաց զերկոսին վնասս, զի ոչ կարէին երկոքին միաբանել և լինել առանց ողորմութեան. որպէս զի արդարև ոչ նա կարէ զերկոսին առնել լի կատարեալ. զի այն՝ որ ոչ լի կատարեալն առեցաւ, ոչ կարէ լի կատարեալ առնել ։

«Եւ յորժամ գտանիցես դու, ասէ, ձագս մարգն հանդերձ, զմայրն արձակեսցես, զի բարի լիցի քեզ». որպէս զի բարի արար նա հաւուն, բարի առնէ նմա ած. և որպէս բազմացոյց նա զկեանս հաւուն, բազմանան կեանքն իւր ։ Ած՝ այն որ երևեցաւ առանց ողորմութե առ յանցաւորսն, այսպիսի սփռեալ սէր նորա 'ի վերայ թռչնոյն ։ Զի եթէ 'ի վերայ թռչնոց ասաց քեզ ողորմել, քանի՞ ևս առաւել մարդոյ. և եթէ առ հաւու անդ բարի է քեզ, առ մարմնակիցսն քո քանի՞ ևս առաւել ։

Եւ եթէ ճշմարտիցի 'ի վերայ կնոջ չնութիւն, քարկոծ լիցի. և եթէ ճշմարտեսցի զրպարտութիւն 'ի վերայ առն, տուժեսցի նա հարիւր կշիռ արծաթոյ ։ «Մի՛, ասէ, իշխեսցէ անարգել զնա զամենայն աւուրս կենաց իւրոց». զի թէպէտ և ոչ կարաց ըսպանանել զնա յայտնի զրպարտելովն իւրով, սակայն սպան զնա ծածուկ ատելութեամբն իւրով, և օտարացեալ մերժեցաւ կինն զրպարտեալ վասն դիւրութե իրիք, այն՝ զի տացէ նմա թուղթ ապահարզանի ։ Տես դու իբր սպանանէին նոքա զկանայսն իւրեանց զրպարտութբ ։ «Մովսէս, ասէ, վասն խստասրտութե ձերոյ հրամայեաց ձեզ արձակել զկանայս ձեր» ։

«Եթէ ոք գտցէ, ասէ, զկին կոյս՝ որ ոչ իցէ խօսեալ առն, և բռնադատիցէ զնա, տացի հօր աղջկանն յիսուն սատեր արծաթոյ, և կինն նմա լիցի» ։ Կուսութի կուսին օգնեաց նմա ։ Իսկ այրն՝ որ չնացաւ գիջութեամբն իւրով, կարող էր նա առնուլ զնա օրինօք, զի չէր նմա խօսեալ ումեք ։ Իսկ առնակոյսն որ 'ի խօսման կայ, և առնակինն յետ գլորմանն՝ սուր սուսերի կայ 'ի վերայ այնորիկ՝ որ անկանին. զի ծարաւի է սուր սուսերի արեան այնորիկ՝ որ արբ զջուրս օտարս ։ Առնակինն վասն զի ամուսնացաւ

յայտ համարձակ և զանց զամուսնութեն, շնութե՛ պարտաւորեցաւ. աւելին զոր գողացաւ և եկեր, երգիծ գնա։ Իսկ կուսութեն վասն զի քաղցեալ էր և ոչ գոյր նորա, և վասն քաղցութե իւրոյ գողացաւ, և զի ոչ գոյր նորա ուտել, եգիտ զողորմութիւն, նա և զգողօնն 'ի ծանրութե բռնութէ կուսութեանն։ Ծանրութիւն կամաց է կուսութե. թէ իջանէ յաշտիճան ամուսնութե, ամօթ է նմա. և ամուսնութե թէ իջանէ յաշտիճան պոռնկութեան, մահ է նմա։ Իսկ եթէ յաշտիճան ամուսնութե գտանիցի կուսութե, ամօթ է նմա և նախատինք. յաշտիճան շնութե և պոռնկութե եթէ գտանիցի, որպիսի ամօթ բաւական իցէ նմա։ Զի եթէ ուր գովեալն լինի ամուսնութիւն, կուսութե անդ ամօթալից լինի, ուր և ինքն ամուսնութիւն ամօթ կրէ, կուսութիւն ո՞ւր գտանիցի։

“Մի՛, ասէ, զարշիցիս դու յեդովմայեցւոց անտի, զի եղբայր քո է. և մի՛ յեգիպտացւոց անտի, զի պանդուխտ լեալ էիր դու յերկրի նոցա"։ Ծնունդք՝ որ ծնանիցին նոցա 'ի դարի անդ չորրորդում, մտցեն 'ի ժողովուրդ տեառն. զի 'ի փոփոխել նոցա 'ի դարէ 'ի դար, մինչև 'ի չորրորդ դարս փոփոխեսցին սովորութիւնք նոցա, և կրթութիւնն չարաչար վարդապետութե հարց նոցա։ Եւ զի մի՛ զրկիցէ զեղբայրութե Եսաւայ, և մի՛ զեգիպտացւոց. զի ձեռնկալու եղեն նոքա նոցա յաւուրսն Յովսէփու։

“Մի՛ մատնիցես զծառայ 'ի ձեռս տերանց իւրեանց՝ որ 'ի քեզ ապաստան գայցէ 'ի հեթանոսաց. այլ բնակեցուսցես դու զնոսա առ քեզ 'ի միում ուրեք 'ի քաղաքաց քոց" ըստ օրինաց Հոռոմոց և Պարսից. այն իսկ Սողոմոնին. վասն որդւոց ժողովրդեան իւրոյ ասաց նմա, զի մի՛ լաւասցի զկորուստ ընկերին իւրոյ։ “Սոյնպէս, ասէ, արասցես դու զեզն և զզարաստ և զծառայ և զաղախին ընկերի քո"։

“Եւ յորժամ, ասէ, մտանիցես դու յայգի կամ 'ի հունձս ընկերի քոյ, առ դու, ասէ, 'ի ձեռն. և մանկաղ, ասէ, մի՛ արկանիցես յոճ ընկերի քո"։ Զգեա, ասէ, զձեռն քո վասն քաղցութե։ Համարձակեաց թողացոյց վասն քաղցութե, և արգել կար-

ձեռաց զագահութիւն ։ Զորովայն քո լցցես դու լիութեամբ վասն քաղցութեան իւրոյ, բայց գոգքն քո ունայն լի- ցի․ զի ունայն լիցի խորհուրդ քո յագահութենէ ։ Մի կամիր դու՝ թէ ունայն իցեն ձիթենիքն քո ՚ի ձեռոյ, զի մի ունայն գտցին նոքա․ և ՚ի բերոյ անտի պտղոյն թող սակաւիկ մի, զի գտցես բազում․ զի բազմաւն զոր տուեր դու, յաճախեսցէ օրհնութիւն քո․ և սակա- ւուն զոր թողուս դու, հանգիցէ աղքատն և տնանկն ։

Այլ զի համարձակեաց նոցա արձակել զկանայս իւրեանց՝ որ ատեցեալ լինէին ՚ի նոցանէ, զի անխայ- եսցէ զկանայս ՚ի սպանմանէ, և զարմն ՚ի վրիժուց խնդրելոյ սպանմանն և ՚ի պոռնկութենէ․ զի երե- քին այս եկեալ հասանէին ՚ի վերայ նորա, և եթէ ոչ էր թողեալ զնա ։ Բայց զայս ոչ եթէ Աստուած հրամայեաց, այլ Մովսէս․ զի բազում ինչ ետ նա յիւրմէ վասն խստասրտութեան ժողովրդեանն ։ Եւ վկայէ այն՝ զի ասէ, եթէ "Մովսէս, ասէ, վասն խստա- սրտութեան ձերոյ հրամայեաց արձակել ձեզ զկանայս ձեր, բայց ՚ի սկզբանէ ոչ այսպէս էր"։ Եթէ երթի- ցէ, ասէ, կինն այն և լինիցի առն այլում, և մեռցի այրն յետին՝ որ առ զնա, մի իշխիցէ այրն առաջին՝ որ արձակեացն զնա՝ դառնալ առնուլ զնա իւր կնու- թեան ՚ի վերայ պղծութեան նորա․ ապա թէ համարձա- կեսցի ոք և առնուցու զնա, ահա բնակեալ է նա խեթիւ և խղճիւ․ զի թերևս դառնայցէ սիրտ նոցա առ միմեանս, և նա դարձեալ արկանիցէ զճառս վերջին առն իւրոյ ։ Եւ եթէ ոք ոչ համարձակի առ- նուլ զնա յայսմանէ՝ զի երկնչին, ահա ելանէ նա ՚ի դերև․ զի ոչ այրն իւր դառնայ առ նա, և ոչ այլ այր առնու զնա ։ Եւ եթէ էր ասացեալ օրինացն եթէ յետ մահու առնն վերջնոյ դարձցի նա առ ա- ռաջինն անդր, սակայն և այնպէս խեթիւ և խղճիւ բնաւ էր ՚ի կնոջէ անտի իւրմէ վասն կենաց իւրոց․ կամ ՚ի նենգութենէ առն առաջնոյ, և զրպարտութիւն լինէր այնուհետև, թէպէտ և յօրհաս իւրում մե- ռանէր նա․ և ամենայն զի եհատ նա, զի մի դար- ձեալ դարձցի լինիցի նա առն առաջնում․ զի բնա- կեսցին նոքա խաղաղութեամբ, զի երկեցուսցէ՝ զի մի ոք թողցէ զկին ։

"Մ՚ի իշխան լինիցիս երբեք զրկել զվերին երկանն և զներքինն. մի՛ հատաներ զլոյս ընկերի քո, զի իբրև զոգիս գրաւէ այն՝ այնպիսին որ գրաւէն„. այս ինքն զի հատեր զլոյս նորա, և զի չիք պէտք ինչ օգտի 'ի վերին երկանն միայն: Այլ՝ եթէ գրաւեսցես դու ըզվերին երկանն, և զներքինն զատար նորա խափանես դու, և զվարձս նորա պահանջես դու. իբրև զայն, "Եթէ կալցես գրաւ զանասուն„: Զայս ասասցուք, թէ ողորմութիւն ուսոյց նոցա յայնմիկ. իբրև զայն՝ զի ասէ "Ընդ երեկս աւուր ժամանակի դարձուսցես նմա զգրաւն„. բայց Հեբրայեցի, "Մ՚ի գրաւեր զերկանն և զլուծ նորա„ ասէ:

"Զգոյշ լեր դու, ասէ. հայեաց յանձն քո 'ի նըշանեալ բորոտութենէ. և պահեսջիք զնոսա յոյժ. և յուշ լիցի քեզ զինչ արար տէր ած քո ընդ Մարիամ 'ի ճանապարհի անդ„: Զի թէ ես, ասէ, և Ահարոն և Մարիամ պահեցաք, դուք որչափ ևս. Եւ եթէ Մարիամ պատուհասեցաւ՝ զի այսպն արար, որչափ ևս առաւել դուք:

"Եթէ ոչ, ասէ, կամիցի եղբայր առն իւրոյ առնուլ զնա, մատիցէ կին եղբօրն նորա առաջի ծերակոյտ ժողովրդեանն, և հանցէ կօշիկ յոտանէ և թքցէ ընդ երեսս նորա„: Ոչ եթէ ընդ երեսս եղբօր առն նորա, այլ ընդ կօշկին, այս ինքն ընդ ներքանս կօշկի նորա. վասն զի պատուիցէ նա զայն՝ որ ըստ նմանութեն պատկերի կերպարանաց այ հաստատեցաւ, ասէ՝ թքցէ 'ի կօշիկ նորա. "Եւ անուանեսցի, ասէ, անուն նորա 'ի մէջ Իսրայելի՝ տուն բոկացելոյ„:

Փոխանակ այնր՝ զի ասէ "Յասորեստան վարեցաւ հայր իմ„. Հեբրայեցի, "Ասորի էր կորուսեալ հայր իմ„. որպէս և հեթանոսք մոլորեալ, խոստովանելով խոստովանի: Եւ զի ասէ "Ոչ կերայ ես 'ի նմանէ 'ի սգաւորութեան իմում„. Հեբրայեցի, "Ի ցաւս իմ„: Եւ զի ասէ "Քննեցի ես զսրբութին իմ„. "Կատարեցի ես„ ասէ. այս ինքն հանի ես զտասանորդել պտղոյն, և ետու ես անտի ղևտացւոյն, և տասանորդեցի ես զնա, և ապա կերայ: "Եւ ոչ սփռեցի ես զնոսա 'ի պիղծս„. այս ինքն սրբեցի ես 'ի տասանոր-

զերկն իմում զնա : «Եւ ոչ ետու ես անոնի մտանելոյ». այս խնդին սեղանոցն, որ գնէին մտանելոցն ըստ սովորութեանն՝ որ գործէին 'ի մէջ հեթանոսաց :

Պարծեալ ասէ ցնոսա. «Եթէ պահիցէք դուք զօրէնս զայս, եկեսցեն 'ի վերայ քո օրհնութիւնս այս, և գտցեն զքեզ». իբրև կնքէ և մարգարէն յասել իւրում. «Զի եթէ լուեալ էիր քո պատուիրանաց իմոց, եկեալ էր այնուհետև խաղաղութի քո իբրև գետ, և արդարութիւն քո իբրև զալիս ծովու, և եղեալ լինէր զաւակ քո իբրև զաւազ առ ափն ծովու». իբրև զգուշացուցանէր զնոսա յասել իւրում. «Նայեցարուք, ասէ, ընդ Աբրահամ հայր ձեր, և ընդ Սառայ՝ որ ծնաւն զձեզ, զի մի էր նա, և կոչեցի բազմացուցի զնա» :

Այլ եթէ այս իցէ ճշմարիտ օրհնութի օրինացն, եթէ այդ այդպէս իցէ՝ ամենայն հեթանոսք՝ որ հեռի իցեն յօրինաց, ոչ ծնանին և ոչ սերանան : Եւ եթէ տեսանեմք մեք, զի ամենայն հեթանոսք որ 'ի ներքոյ երկնից են, առաւել են քան զհրեայսն ծննդոք, խաղաղութեք և լիութեք, և նոքա 'ի գերութե. և լաւ են քան զնոսա մովաբացիքն, զի ոչ երբէք վարեցան 'ի գերութի. լուեալ է, ասէ, և դադարեալ, և հանգուցեալ են նոքա 'ի մանգութե իւրեանց, և նոքա համբերին զգերութի և զանզաւակութի որովայնի : Եւ եթէ ասիցեն, եթէ իբրև զորդիսն իսրայէլի խրատեաց զմեզ ած, ահա աւանիկ և ծուրացիքն խրատեցան և ցրուեցան. և 'ի կատարել եւթանասունն ամին՝ դարձոյց բնակեցոյց և շինեաց զնոսա. և որպէս զի մարգարէացան վասն նոցա մարգարէքն, սոյնպէս և վասն հեթանոսացն. և ահա աւանիկ ասէ «Իբրև որդիք հնդկաց էք դուք ինձ որդիք իսրայէլի» :

Արդ ո՞ր առաւելութի գտանին առ նոսա՝ որ օրինօք պարծին : Եւ եթէ օրհնութիւն անմահութեան ընտրեալ էր այ, ընդէ՞ր պատուիրէր նա վասն սրբութե : «Սրբեա, ասէ, դու զժողովուրդն, զի մի՛ մերձեսցին կնոջ 'ի կին մարդ. և ապա երևեցայց ես նոցա» : Եւ յայսմ վայրի գարշեցոյց նա զամուսնութիւն : «Եւ քահանայն, ասէ, յաւուրս ժամանակի պաշտա-

մանն իւրոյ 'ի կին իւր մի մերձեսցի ,,։ Եւ ընդէ՞ր զրկեաց զպաշտօնեայսն իւր յօրհնութենէ անտի օրինաց ։ Եւ ահաւասիկ ոչ միայն զի մի մերձեսցին 'ի կին մարդ՝ պատուիրեաց նոցա , այլ թէպէտ և յերազս ոք տեսանէ , պարտաւորեալ լինի ։ Եւ զի՞նչ ևս ասասցուք ․ զկամս նորա գարշեցոյց , եթէ զգործս նորա անարգեաց ։ Եւ ահա աւասիկ նա ինքնին զուգեաց զնոսա ։ Այլ զի յայտնիկ ուսցին նոքա զգաստութիւն հեզութեան ։ Զի թէպէտ և նա էր զամուսնութիւն , սակայն զի մի զանցանիցեն մոլեքար իբրև զգազանս աղտեղիս , և ուսցին դարձեալ թէ սուրբ է նա և պաշտօնեայք իւր ։ Վասն այսորիկ և քահանայիցն հրամանս ետ նա՝ թէ յորժամ մատչիցին նոքա 'ի պաշտօն նորա , սրբեսցեն զանձինս իւրեանց ։ «Մի՛ , ասէ , ասասցէ ներքինին՝ թէ ես եմ փայտ չոր ․ քանզի տաց ես նոցա 'ի տեղւոջ իմում անուն՝ որ առաւել իցէ քան զուստերաց և զդստերաց յաւիտենից ժամանակաց ,,։ Եւ Եղիսէէ առաւելաւ յայնմիկ՝ զի ոչ ամուսնացաւ ․ և Եղիա վերացաւ յերկինս ․ և Դանիէլի հրեշտակք իջին յողջոյն նորա ։ Եւ եթէ ասիցեն՝ եթէ ունիցին նոքա կանայս , և ահա գրեալ է վասն Եղիսէի՝ թէ սուրբ էր և յայնմիկ , զի նախատեաց նա զԳեհեզի վասն ստացուածոց ․ յայտ է թէ ինքն չունէր ինչ ստացուածս , և յամենայն երկրաւոր զնացից ազատ էր ։ Սոյնպէս դարձեալ և Եղիա ։ Եւ առաւել համարեցաւ տ՟րյ՝ սրբութ՟ի քան զամուսնութ՟ի ․ յայնմիկ՝ զի ընդ սրբութ՟ին խօսեցաւ , և նմա հրամայեաց մերձենալ 'ի տապան պաշտաման իւրոյ ․ ետ նմա անուն՝ որ առաւել իցէ յաւիտենից ժամանակաց ։ Զայս ընդդէմ այնոցիկ ասացաք , որ օրինօքն պարծին ․ այլ մեք զերկոսին ընդունիմք ըստ կամաց տ՟րյ ․ զի նա ինքն է տէր ամուսնութ՟ե , որ նկարէ մանկունս յարգանդի ․ և նա ինքն է Աստուած սրբութեան , և բնակի և հանգչի 'ի սուրբս՝ որք յաղթեցին բնութեան իւրեանց կամօք իւրեանց , և նմանօղք եղեն հրեշտակաց ։

## ԳԼՈՒԽ Գ

ՀՐԱՄԱՆ ետ Մովսէս և ասէ . «Յորժամ անցանիցէք ընդ Յորդանան գետ, կանգնեսջիք դուք անդ արձանս . և բռեսցես զնոսա բռով, և գրեսցես 'ի վերայ նոցա զպատճէն օրինաց, և թողջիք զնոսա անդր . և շինեսցես անդ սեղան 'ի բոլորակ վիմաց, և մի մխեսցես 'ի ներքս երկաթ » : Եւ ահա աւանիկ տախտակք՝ որ գրեալ էին 'ի վերայ նոցա, 'ի տապանակի անդ եդան . և նա և սեղանն՝ որ գործեալ էր երկաթով Բեսելիէլի որդւոյ Ովրայ, անդ էր 'ի մէջ որդւոցն Իսրայէլի : Իսկ օրէնքն՝ որ թողան 'ի մէջ հեթանոսաց, զի ճաշակեսցէն հեթանոսք զշնորհս և զողորմութիւն՝ որ եղեն 'ի մէջ որդւոցն Իսրայէլի . զի յորժամ ընթեռնուցուն նոքա զօրէնս, մեծասցի նոցա գիւտք օրինացն, կամեսցին նոքա դառնալ առ Աստուած, իբրև տայ ձեռն անթլփատութեան նոցա սեղանն՝ որ շինեցաւ 'ի բոլոր վիմաց, զի չիցէ մխեալ 'ի նոսա երկաթ : Եւ զի ակնարկեսցէ, զի և հեթանոսաց տուեալ լինէին օրէնքն և սեղան 'ի վախճան ժամանակի : Զի ահա աւանիկ 'ի սկզբանէ իսկ առ ինքեանս թողին զնոսա, զի թեւակոխեսցին նոքօք . վասն այսորիկ և ասէ . «Շունք ուտեն և 'ի փշրանաց սեղանոյ անտի տեառն իւրեանց և կերան » :

Եւ քանզի գործեցաւ նա 'ի լուր խրատուն եգիպտացւոց 'ի զգուշացուցանել անդ՝ զի մի մեղիցեն, ոչ կաց մնաց նա մինչև յայսմ միայն . զի որ միանգամ զխրատ զոր լուեալ էր նոցա, թէպէտ և մեծամեծք էին, սակայն ոչ խոտորեցուցանէին . վասն այսորիկ ասէ ցնա . «Եթէ ոչ լուիցես դու ձայնի տեառն այ քո, ածցէ տէր ած 'ի վերայ քո » . ոչ դադարեաց . «Այլ և զամենայն ախտս չարչարանաց՝ որ չիցէ գրեալ 'ի գիրս օրինացս այսոցիկ » . իբրև զայն՝ զի ասէ, եթէ «Ահա աւասիկ ես հաստատեմ 'ի վերայ ձեր չարիս, և նիւթեմ 'ի վերայ ձեր զխորհուրդս բարկութե̃ » : Զոր օրինակ և գործեցաւ իսկ արդեամբք : «Զի եթէ, ասէ, արարածս նոր հաստատեսցէ ած, և բացցէ

երկիր զբերան իւր եւ կլցէ զնոսա,, այլովքն համդերձ։ Զի յորժամ լուիցէ նա զպատուիրանս բանին, եւ ընկալցի զպատիժս պատուհասից արդեամբք, խրատեսցին նոքա պահել զպատուիրանն։ "Եւ զայլ ախտս չարչարանաց, ասէ, որ ոչ իցէ գրեալ, ածցէ 'ի վերայ քո,,։ Եւ եթէ առ չարիսն ունի ՟ած յաւելուլ 'ի վերայ խրատուն առաջնոց՝ որ չիցէ գրեալ, քանի՞ եւս առաւել առ արդարսն ունի ՟ած յաւելուլ զբարիս՝ զոր ինչ ակն ոչ ետես, եւ ունկն ոչ լուաւ, եւ 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ։

Եւ զի ասէ "Հարցէ [1] զքեզ տէր ՟ած քո 'ի բոց եւ յայրուածս,,. Հեբրայեցի ասէ. "Ի տաւսուէ սաստկացեալ ջերմամբ,,։ Եւ զի ասիցէ "Ընդ մի ճանապարհ եկեսցեն 'ի վերայ քո թշնամիք քո, եւ ընդ եւթն ճանապարհ փախիցեն յերեսաց քոց,,. յաւուրս Դաւթայ եւ Եզ՟կիայ։ Եւ իբրեւ մեղան նոքա՝ դարձաւ եղեւ 'ի վերայ նոցա յետս ընդդէմ. զի փախեան նոքա ընդ եւթն ճանապարհ յերեսաց թշնամեաց իւրեանց։ "Սերմն բազում հանցես, ասէ, եւ սակաւ ինչ ժողովեսցես,,. այն իսկ է՝ զի ասէ. "Քոռս սերմանեսցես, եւ արասցես գրիւ մի, եւ դարձուսցէ զքեզ տէր ՟ած անդրէն յերկիրն եգիպտացւոց հազարաւոր զօրօք,,. այս ինքն թշնամեաց՝ որ գերեն զքեզ։ Եւ զի ասէ "Ո՞չ ետ ձեզ տէր սիրտ գիտել, եւ աչս տեսանել, եւ ականջս լսել,,. յայլ բարբառ ասի այս. այս ինքն ետ ձեզ. զի ասէ իսկ զկնի նորա, եթէ "Համդերձք ձեր ոչ մաշեցան եւ կօշիկք ձեր,, եւ այլն եւս։

Եւ զի ասէ "Պաշտեսցին նոքա զաստուածս՝ որ ոչ գիտացին նոքա,,. այս ինքն յերկրպագութի. այն իսկ է զի ասէ. "Բաժանեաց ետ զնոսա ՟ած հեթանոսաց,,։ Փոխանակ այնր՝ զի ասէ "Ոչ եթէ ընդ ձեզ միայն կացուցանեմ զուխտս զայս, այլ եւ ընդ ամենեսին որ աստ իցեն,,. Հեբրայեցի, "Այլ եւ ընդ այնոսիկ որ չիցեն աստ ընդ ձեզ,,. այս ինքն ընդ այնոսիկ որ ոչն իցեն ծնեալ։ Այն զի ասէ, եթէ "Եղիցին ցրուեալք քո,,. եղեւ յաւուրս Զօրաբաբելի։ Եւ զի ասէ "Եղիցին երկինք 'ի վերայ քո պղնձի,, , յաւուրս

1 Յօրինակին հարցէ։

Աքայարու ։ Եւ զի ասէ “Մի 'ի ձեռնջ հալածիցէ զհա-վարս ”, յաւուրս Գեդեոնի և Դաւթայ ։ Եւ զի ասէ “Նախանձեցուցի զձեզ յազգս անպատուամս ”, վասն ազգին քրիստոնէից ․ այն է զի ասէ ․ “Օրհնեցէք հեթանոսք ժողովուրդ նորա ”։

“Ի ժամանակի իբրև բաժանէր, ասէ, բարձրեալն զազգս ամենայն, և սփռէր զորդիս մարդկան, կացոյց զսահմանս հեթանոսաց 'ի թիւ որդւոցն Իսրայէլի ”․ բայց հեբրայեցի, “Ըստ թուոյ որդւոյն Իսրայէլի ”։ Վասն զի իւթանասունն լեզու բաժանեցան հեթանոսք ըստ նմանութեան իւթանասուն ոգւոցն՝ որ իջանէին յեգիպտոս ։ Բայց դարձեալ կացոյց սահմանըս հեթանոսաց, վասն եւթն ազգացն՝ որ բաժանեցան 'ի ժառանգութիւն ըստ թուոյ որդւոյն Իսրայէլի ։ Եւ զի սահմանեցան դարձեալ հեթանոսք 'ի ձեռն երկոտասան առաքելոցն ։ Զի դարձեալ միւսանգամ յերկրի զկռապաշտութիւն փայտեղէն քարեղէն կռոցն նոքա մի՛ ելցեն ։

Փոխանակ այնր՝ զի ասէ, թէ “Տէր արգել զնոսա ”․ հեբրայեցի ասէ, “Արհամարհեաց զնոսա, և թշնամիք մեր վրէժխնդիրք մեր ”․ այն է զի ասէ ․ “Սոքա ժողովուրդ են ա̃յ ”։ Եւ զի ասէ “Բուռն հարեալ ունիցի ձեռն իմ 'ի դատաստանի իբրև զլուծ կշռոց, զի չափիցէ նոցա և թշնամեաց նոցա ” որպէս Մովսէսն զԱմաղէկն և զԻսրայէլ ․ խորհուրդ․ խաչին՝ որ հատուցանէ իւրոցն և թշնամեացն իւրոց ։ Փոխանակ այնր՝ զի ասէ “Եւ ընդ նմա 'ի բիւրոց սրբոց ”․ հեբրայեցի ասէ “Եւ գայ նա 'ի մեծ սրբութենէ ”․ այս ինքն 'ի լեռնէ անտի 'ի Սինէ ․ այն է զի ասէ ․ “Ի տեղի ուր հարեալ կայ դու 'ի վերայ նորա, սուրբ է ․ և յաջմէ նորա հուր կիզելոյ ”։ Նշան ետ մեզ, այն է հուրն՝ որ 'ի գլուխ լերինն երևեցաւ ։ Փոխանակ այնր՝ զի ասէ “Նոքա հասանեն յատոքս ”․ հեբրայեցի ասէ, “Եւ նոքա երթան և յոտս նորա, և ընդունին 'ի բանից անտի նորա զօրէնս՝ զոր պատուիրեաց Մովսէս ։ Փոխանակ այնր՝ զի ասէ “Եւ եղիցի 'ի մէջ Իսրայէլի նշան, և եղև 'ի մէջ Իսրայէլի իբրև զթագաւոր ”․ վասն նորին Մովսիսի ասէ, 'ի ժողովել իշխանացն ժողովրդոց 'ի միասին ազգացն հանդերձ Իսրայէլի ։

Օրհնեաց Սահակ զՅակոբ 'ի յերկրին քանանացւոց։ Օրհնեաց Յակոբ զերկոտասանսն յերկրին եգիպտացւոց, զի ցուցցէ եթէ Յուդայէ է ընտրութիւն թագաւորութեան. և զի քաջալերեսցէ զնոսա ելանել նոցա յերկրէ անտի եգիպտացւոց։ Եւ Մովսէս յանապատի անդ օրհնութեամբք իւրովք. զի զօրացուսցէ և յորդորեսցէ զնոսա 'ի մտանելն նոցա 'յերկիրն պարգևաց, և յերկիրն եգիպտացւոց մի՛ դարձցին նոքա։

Օրհնութիւնք Մովսէսի 'ի վերայ որդւոցն Իսրայէլի երկոտասանիցն։

Դրոշմեաց ստուգութիւնն 'ի ժամանակ խրատու որդւոյն արդարոյ մինչև ցայս վայր. «Կեցցէ, ասէ, Ռուբէն»։ Եւ օրհնութիւնք Յակոբայ, «Ժողովեցարուք զի պատմեցից ինչ ձեզ զինչ պատահելոց է ձեզ յաւուրս յետինս ժամանակաց»։ Իբրև կիսուց 'ի նոցանէ անէծք են, ընդէ՞ր եղև Մովսէս հակառակ ընդդէմ Յակոբայ, յայնմիկ՝ զի ասէ՝ թէ «Կեցցէ Ռուբէն»։ Բայց ոչ եթէ զօրհնութիւնս նորա փոխէ, այլ զանէծս նորա։ Սակայն և ոչ արժան իսկ էր Մովսիսի անիծիւք սկսանել առ Ռուբէն. զի պարտէր նա նմա զվարձս խրատուն նորա՝ որ եղև առ Յովսէփ. վասն այսորիկ իբրև աղօթիւք ասաց. ասէ «Կեցցէ Ռուբէն և մի՛ մեռցի»։ Զի 'ի ժամանակին իբրև մեղաւ Ռուբէն, գիտացին զնմանէ հայրն և եղբարք նորա։ Իսկ իբրև արդարացաւ նա Յովսէփաւ, ոչ ոք գիտէր զնմանէ. բայց Տէր որ սրտագէտն է։ Եւ զի գիտէր Տէր՝ եթէ կորզէ նա զՅովսէփ 'ի ձեռաց նոցա, ոչ դիպեցոյց զնա անդ 'ի ժամանակի իբրև վաճառէին զնա. վասն այսորիկ ոչ ծածկեցաւ ապաշխարութիւն նորա. այնմիկ՝ որ Թէպէտ բաժակաւ ջուր ցուրտ տացես դու յանուն նորա ծառայոյ՝ ոչ զրկէ զքեզ։ Այլ կարաց ոչ Ռուբէն հանել զՅովսէփ 'ի գբոյ անտի. զի խորհուրդք եղբարցն Յովսէփու յայնմ ժամու սպանմանն էին. և եթէ էր նորա մեռեալ, ապա մի ջնջեալ լինէր 'ի թուոյ անտի երկոտասանիցն։ Վասն այսորիկ «Կեցցէ Ռուբէն». վասն զի կամեցաւ նա կեցուցանել։ «Եւ եղիցին թիւք նոցա 'ի համար ազգաց». զի խորհեցաւ նա պահել զազգ մի թուովք իւրովք։

Ետես իսկ Մովսէս՝ եթէ ընկալաւ զաւակ նորա ըմ-
պատիժս պատուհասից իւրոց, Դաթան և Աբիրոն
որդիք Եղիաբու որդւոյ Ռուբէլայ, ետ նմա կեանս. և
այն Յակովբայն ոչ խափանեցաւ, և ոչ շնորհքն՝ որ
եղեն առ Յովսէփ՝ զրկեցան ։

Արդ Մովսէս ասաց նախ 'ի վերայ Ռուբէլի վասն
անդրանկութեցն. ապա 'ի վերայ Յուդայի վասն թա-
գաւորութեց. և ապա 'ի վերայ Ղևեայ վասն քա-
հանայութեն. ապա 'ի վերայ Բենիամինի վասն տե-
ղւոյն թագաւորութե և քահանայութեան. ապա 'ի
վերայ Յովսէփու դարձեալ վասն թագաւորութեն ։
"Եւ զայս, ասէ, ասաց Յուդայի" զկնի այնր Ռուբէ-
լայն ։ Եւ յայսմիկ զի ած յարեաց և խառնեաց զնա
ընդ նմա, յայտ է՝ թէ և զնա ևս 'ի չար իրաց ընչէ
անցուցանէ նա. այս ինքն յայնմանէ, զի եմուտ Բե-
նիամին փոխանակ ընդ նորա ։ Եւ վասն զի գողացաւ
Յուդայ 'ի քաղաքէ անտի յանդրանիկ քաղաքացն՝
որ տասանորդեցաւ, գողացեալ եղև նա 'ի թագա-
ւորութէ անտի Յուդայ զքառասուն ամ ։ "Եւ 'ի ժո-
ղովս նորա, ասէ, ժողովեսցին, զի ձեռք նորա ընտ-
րեսցեն նմա. ինքն զինքն դատեսցի". լսի այս և վասն
այնր՝ զի բարձաւ թագաւորութին Բենիամինի, և ե-
մուտ Յուդայն. և վասն դարձին որ 'ի Բաբելոնէ, զի
յելանելն նորա անտի նա թագաւորեաց ։ Բայց հեբ-
րայեցի փոխանակ այնր՝ զի ասէ "Եւ 'ի ժողովս նորա
ժողովեա զնա", "Հան զնա" ասէ. այս ինքն տիրեցո
զնա ։ Եւ փոխանակ այնր՝ զի ասէ "Ձեռք նորա ընտ-
րեսցեն նմա, և օգնական 'ի թշնամեաց իւրոց լեր
նմա". հեբրայեցի ասէ. "Ձեռք նորա խնդրեսցեն ըմ-
վրէժ նմա 'ի թշնամեաց իւրոց, և օգնականք և պաշտ-
պանք եղիցին նմա" ։

Արգելաւ Շմաւոն յօրհնութենէն, զի մի արգել-
ցէ նա զբազումս 'ի յօրհնութենէ. և եղև նա 'ի կողմ
անիծչացն, զի մի ընկալցին բազումք զանէծ ։ "Զայր,
ասէ, անօրէն որդիք իւր արդարք անիծցեն". զի վասն
նորա եղեն նոքա նախատ յաշխարհի. բայց սատա-
գութին [1] իբրև խորհրդիւ անէծ զՇմաւոն 'ի բերան

1 Յօրինակին զսպառագութեանն ։

Մովսիսի, յայտնի՛ք զի զօրհնութիւնն Ղեւեայ հնարեցաւ արար զնա անէծս Շմաւոնի :

“Խորտակեա դու, ասէ, զզօրութիւն թշնամեաց նորա”, ասաց վասն Ղեւեայ : Զի թէպէտ և կատարի այս 'ի վերայ Մովսիսի, որ կոտորեաց նա յանցս Յորդանանու գետոյ զթագաւորսն ամուրհացւոց, սակայն և ոչ առ Փենեհէս օտար է այս, այն որ ցցեաց զտէգն իւր 'ի քամակ Զամբրեայ նահապետին շմաւոնեանց գնդին՝ թշնամւոյն Ղեւեայ : Եւ եթէ ասիցես, ընդէ՞ր ոչ քաւեաց Մովսէս զՇմաւոն որպէս զՌուբէն, յիշեա դու՝ զի սկիզբն երազոյն Յովսէփու ամենայն ընդդէմ Ռուբէնի անդրանկան էր . և փոխանակ զի նա առեցէ աւելի քան զեղբարսն իւր, աւելի քան զամենեսին սիրեաց զնա : Արդ տես դու՝ զի որպէս Յովնաթանն յաղթեաց նախանձու և ատելութե՟ տանն Կայենի, ջանացաւ ապրեցուցանել զՅովսէփ, և ոչ կարաց : Եւ զի ետես Մովսէս զլալիւնն և զարտասուս Ռուբէնի 'ի վերայ գբոյն Յովսէփու, քաւեաց զնա : Կամ վասն Զամբրեայ ոչ օրհնեցաւ Շմաւոն : Զի զոր օրինակ Յակոբ հան զՌուբէն 'ի թուոյ անտի ազգաց մինչև 'ի Մովսէս, զի ած խառնեաց զնա, նոյնպէս վասն Նաքովրայ յապաղեալ խափանեցաւ թագաւորութի՟ն Յուդայ 'ի Նմանէ մինչև 'ի Դաւիթ : Նոյնպէս և պատճառքն՝ որ մերժեցին զՇմաւոն, չէին սակաւ ինչ . զի քսան և չորք հազարք սատակեցան 'ի պատճառս նորա : Արդ թող նա, զի մի եկեսցեն 'ի մէջ յանցանք նորա, և անիծիւք նզովեսցի նա : Կամ վասն այսր ոչ օրհնեցաւ Շմաւոն 'ի Մովսիսէ, զի կացցեն մնասցեն 'ի վերայ նորա անէծքն Յակովբու հօր իւրոյ : Եւ եթէ ասիցեն՝ թէ ահաւասիկ Ղեւի ընկեր նորա օրհնեցաւ, այլ Ղեւի եղոյծ զանէծս հօր իւրոյ գործով նախանձուն իւրով 'ի Քորեբ լերին . զի զեղբարսն իւր նա ոչ ծանեաւ :

“Կատարումն քո, ասէ, և լոյս քո առն արդարոյ”. այս ինքն գիտութի՟ քո և ճշմարտութիւն քո իբրև առն կատարելոյ : “Փորձեցի զնա, ասէ, 'ի վերայ Ջուրցն հակառակութե՟, զի արբոյց նոցա . և վասն զի զհայր իւր և զմայր իւր ոչ ծանեաւ, պահեցին նոքա զպատուիրանս քո” . զայն ինչ՝ որ ասացաւ Նա

ցա գործել, եթէ «Հարէք սատակեցէք, ասէ, իւրաքանչիւր զեղբայր իւր»: Վասն այսորիկ «Ուսուսցեն զիրաւունս քո Յակոբայ», զի մի՛ մեծասցին նոքա, և երկու՝ զի նոցա վայել էր ուսուցանել: Որովհետև ուսուցին նոքա, «Դիցեն խունկս բարկութեան քո 'ի հանգիստ», յորժամ անցանիցէ Իսրայէլ զվարդապետութեամբ նոցա: «Եւ կատարումն 'ի վերայ սեղանոյ քո», նոյն իսկ է: Եւ որպէս և նոքայն ոչ ծանեան զհարս իւրեանց, «Խորտակեա և դու զզօրութիւնս թշնամեաց նոցա», 'ի վերայ փղշտացւոցն՝ որ խորտակեցան առաջի Սամուէլի որդւոյ Ղևեայ. և Յոյնքն դարձեալ, զի ոչ կացին առաջի տանն Յուդայ Մակաբէի:

Իսկ զԲենիամին ասէ. «Սիրեցեալն 'ի տեառնէ բնակիցէ յուսով. և Աստուած հովանի իցէ 'ի վերայ նորա, և 'ի մէջ ուսոց իւրոց հանգուցէ զնա». քանզի Երուսաղէմ միջնորդ է սահմանաց, և հանգիստն անդ է՝ ուր Ռաքէլն մեռաւ 'ի սահմանս Բենիամինի:

ԶՅովսէփ օրհնեաց Մովսէս աւելի քան զՅակոբ զօրհնութիւն զերկնից և զերկրի և զանդնդոց և զցօղոյ և զարեգական և զլուսնի և զդրախտի և «Ի գլխաւոր լերանց արևելից». հեբրայեցի ասէ, «Եւ 'ի քաղցրութենէ լերանց առաջնոց»: «Անդրանիկք, ասէ, զուարակաց գեղ նորա». փոխանակ մեծամեծ պարգևացն՝ զոր մատուցանէ նա իբրև զթագաւոր, և ոչ եթէ ուլս և ամիկս իբրև զտնանկս և զաղքատս. կամ վասն պարգևացն զոր առնու նա 'ի ժողովրդենէ անտի: Բայց հեբրայեցի ասէ. «Իբրև զանդրանիկս զուարակաց գեղեցիկ է նա, և եղջերք նորա իբրև եղջերք միեղջերոյ». վասն թագաւորութեանն՝ զոր թագաւորէ նա:

Բայց դարձեալ, նա՝ թէ ունի և տիրէ, մեկնէ զնա յասել իւրում, թէ «Այս բիւրաւորք Եփրեմի». Յեսու որդի Նաւեայ, որ կոտորեաց զբիւրս հեթանոսաց, որ կոտորեաց զհազարս Գեդէոն յազգէ անտի Մանասէի. իբրև զայն՝ զի ասէ «Ետուն Դաւթայ զբիւրս, և ինձ զհազարս. և նորա է արքայութիւն»: Սոյնպէս և Եփրեմի վասն բիւրուցն: Բայց դարձեալ, «Եղջերք նորա իբրև եղջերք միեղջերոյ», զի ոչ 'ի վե-

րայ միեղջերոյ լուծ, և ոչ 'ի վերայ Եփրեմի հնազանդութիւն: «Եւ նոքօք զհեթանոսս խեթկեցէ», իշխանութիւն անձին իւրոյ. Եւ զի ասէ «Մինչև 'ի ծագըս երկրի», զի յայտ արասցէ՝ զի եթէ նոքա արդարասցին, 'ի նմանէ չիք ինչ արգելումն ինչ 'ի ծագս երկրի: «Այս բիւրաւորք Եփրեմի». զի նա թագաւորեաց, այս ինքն Յորոբովամ: Եւ զի ոչ ցուցցէ՝ թէ յաւուրսն՝ յորում թագաւորէ Յորոբովամ, պատառի 'ի նմանէ եղբայրն իւր լինել ընդ Հռովբովամու: Իբրև ակնարկէ վասն պատուոյ փառացն, որ լինէր նմա վասն իշխանութեան տէրութեան զոր առնոյր նա 'ի վերայ եղբարց իւրոց, ասէ «Այս բիւրաւորք Եփրեմի, և այս հազարաւորք Մանասէի»:

«Ուրախ լեր Զաբուղոն յելս քո». այս ինքն 'ի վաճառս քո: Յորոշելն իւրում 'ի վերայ ծովու, զի 'ի վերայ նաւահանգստացն բնակեալ նստէր նա 'ի շաւեղս հեթանոսաց. մուտս արմտեաց՝ որ մտանէին նմա 'ի նաւաց անտի. զի յամենայն ազգաց հեթանոսաց առնոյր նա և զպտուղ տուրեւառ բազում աշխարհաց. «Վասն այսորիկ զկաթն հեթանոսաց ծծեսցէ նա»:

Բայց Իսաքար, «Յարկս քո գեղեցիկ բնակութեանս իւրով». հեթանոսքն՝ որ շրջին 'ի ծովու անդ, ուխտս ուխտիցեն նաւահանգստին. վասն զի զլրութիւն ծովուն դիւրեցեն նոքա: Տեարք լերինն, և նաւք՝ որ թաղեալ են աւազով յորժամ թափէին զերանութիւնն, բառնային աւազ և գնային՝ զի մի տապալեցին: Բայց հեբրայեցի, «Նաւք որ կայցեն 'ի վերայ աւազոյ, և հեթանոսք 'ի լեառն անդր կարդայցեն զմիմեանս. զի ժամադիր լիցին, և երթիցեն 'ի նաւահանգիստ տանն Իսրայելի, և զոհեսցեն անդ զտուրս ողորմութեան իւրեանց»: Եւ դարձեալ. հեթանոսք 'ի լեառն անդր կարդասցեն ըստ սովորութեան նաւավարաց՝ որ երթան և կարդան, եթէ յոր քաղաք երթայցեն:

Իսկ «Անդ զոհեսցեն զզոհս արդարութեան». Զաբուղոն և Իսաքար, զի լինի հաւասարութիւն միաբանութեան յերկրի նոցա. այս ինքն՝ զի մեծամասն յղփութիւն կարօտեալք, և յագին լիութիւն քաղցեալք: Ընդէր ասէ: Այլ քանզի լիութիւն մեծութեան ծովուց

դիեն նոքա : Բայց դարձեալ հեթանոսք 'ի լեառն անդըր կարդայցեն . այս ինքն 'ի տեղւոջ՝ ուր յարկքն Խաքարու էին , որ անցանեն ընդ ծով և հային ընդ լեառնն Խաքարայ . զի անտի ելանէր նոցա օդ խաղաղութեան , և լինէր նոցա ցածումն և դադարումն հանգստեան : Եւ քանզի 'ի հանդիպէ անտի նորա գըտանէին հեթանոսք հանգիստ նաւաց իւրեանց , իբրև խոստորէին անդ հանգչել , ելանէին 'ի լեառն զոհել : Եւ քանզի հրէութիւն չառնուին յանձն աշակերտել զոհել նոցա յԵրուսաղէմ , ոչ տային նոցա թոյլ՝ զոհել դիւաց , այլ անուանն տն : Եւ զի յանձն առնուին նոքա , յայսմիկ ասաց Մովսէս վասն զոհիցն նոցա՝ թէ արդարութի էին : Եւ յայնմիկ՝ զի յորժամ ելանէին բնակիչք ծովուն 'ի լեառնն 'ի յարկս Խաքարու գնէին և վաճառէին , թէ զլիութի մեծութե դիւցեն նոքա . այս ինքն բնակիչք աշխարհին : Խառնեաց ած զանէծս 'ի բերան Յակովբու , և ցանեաց 'ի մէջ ամենայն Իսրայէլի 'ի ձեռն Շմաւոնի և Ղեւեայ : Խառնեաց դարձեալ ած զօրհնութիւս 'ի բերան Մովսիսի 'ի ձեռն Խաքարու և Զաբուղոնի , և սերմանեաց 'ի մէջ ամենայն հեթանոսաց՝ որ զոհեն զզոհս արդարութե :

“Օրհնեալ է այն , որ ընդարձակեաց Գադայ յաշխատութէ անտի „ . քառասուն ամ նախկին նա հանգեաւ , խորտակեաց զբազուկ և զիշխան յայն կողմ Յորդանանն գետոյ , և յայս կողմն կատարեաց նա : “Եւ ետես , ասէ , նա [1] 'ի նմա . զի նա նախ ժառանգեաց զառաջինն . զի անդ թաղեալ վիճակ մարգարէին „ . այս ինքն զի անդ թաղեալ է Մովսէս : Եւ փոխանակ այնր՝ զի ասէ “Ետես նա 'ի նմա „ . հերքայեցի “Ետես այլ ևս՝ որ արժան էր նմա , զի անդ թաղեալ է բաժին մարգարէութեան . և գայ նա զօրավարօք զօրացն ժողովրդեան „ . վասն Նափթեթայ : “Զարդարուն տեառն գործեաց „ . զի մատոյց նա զդուստր իւր պատարագ : “Զիրաւունս և զօրէնս նորա 'ի մէջ Իսրայէլի „ . այն՝ իսկ է՝ որ երթան դստերքն Իսրայէլի տարւոջէ 'ի տարի , և լան վասն դստերն Նափթեթի .

1 Յօրինակին նախ նմա . ուղղեցաք ըստ յաճախորդին :

“Դան կորիւն առեւծու”, որդի 'ի Մանթանեայ 'ի թագաւորութենէ անտի Ովգ արքայի, դիէ զբարու-թի։ Բայց դարձեալ “Դան կորիւն առեւծու”, Սամփ-սոնն. որ առնոյր աւար 'ի Մենթենայ, այս ինքն 'ի փղշտացւոց անտի։

“Նեփթաղիմ յագուրդ յագեալ; լցեալ բարւոք կամօք Տյ. ծով եւ հարաւ ժառանգութիւն նորա”։ Եղեւ նա նաւահանգիստ ծովու, եւ բանակեալ 'ի ցա-մաքի. վասն այսորիկ յագեցան կամք նորա ամենայն բարութբ, եւ լի է օրհնութեամբ տեառն, եւ տայ նա զպատարագս բարիս, զի օրհնեաց նա գովութբ զթա-գաւորս։ “Նեփթաղիմ յագեալ կամօք”, վասն Բա-րակայ որ օրհնեցաւ, եւ Դեբովրայ։

“Օրհնեալ յորդիս Ասեր”, զի տասանորդէր. զի զամենայն զոր միանգամ տացես ինձ, տասանորդե-լով տասանորդեցից քեզ։ “Եւ եղիցի, ասէ, ընդու-նելի կամքն յեղբարս իւր”. զի գտանէին կամք նոցա առ նա։ Եւ զի եմուտ Ղեւի փոխանակ ընդ նորա, նա ոչ նախանձեցաւ. վասն այսորիկ օրհնեաց նա։ Եւ զի ետ նա զօծումն իւր եղբօր իւրոյ, “Մխեսցէ 'ի ձէթ զոտն իւր”. ցոյց թէ պարարտ է երկիր նորա եւ հզօր։ Եւ քանզի քահանայութի եւ թագաւորու-թի էր՝ առաջնորդութի խառնեալ է 'ի նմա, եւ հզօր է նա իբրեւ զերկաթ եւ զպղինձ՝ զի խառնեալ են ընդ միմեանս, ասէ ցնա. “Երկաթ եւ պղինձ կօշիկք քո”. զի կոխիցես զթշնամիս քո։ “Որպէս աւուրք քո, ասէ, զի բազում իցեն, բազմասցի զօրութի քո”։ Կամ զի երկիր նորա ապամացւոց երկիրն էր, ասէ “Մը-խեսցէ 'ի ձէթ զոտն իւր”։ Եւ զի մերձ էր նա 'ի կող-մանս մաքասացւոց, ասէ “Երկաթ եւ պղինձ կօշիկ քո”։ Փոխանակ այնր՝ զի ասէ “Որպէս աւուրք քո եւ զօրութիւն քո” եւ այլ եւս. հեբրայեցի, “Որպէս ման-կութի քո, ծերութի քո”։

“Ոչ գոյ իբրեւ զԱծ Իսրայէլի, որ նստի յերկինս վասն օգնականութե քո՝ եւ մեծվայելչութբ իւրով զբարձունս հնազանդէ. Ած նախ եւ 'ի ներքոյ ըղ-բռունս աշխարհի”. այս ինքն զպատերազմօղս։ Իբրեւ զայն զԵսայեայն՝ զի ասէ “Հրամայեաց տէր Ած 'ի վերայ զօրութեանց բարձանց 'ի բարձունս, 'ի վերայ

*թագաւորութեանց երկրի յերկիր »: Փոխանակ այնր՝ զի ասէ «Օգնական իցէ քեզ տէր ած քո, և ոչ եթէ 'ի սուր սուսերէ պարծանք քո ». Հեբրայեցի, «Վահան է նա, ասէ, օգնականութեան քո, և սուր պարծանաց քոց »:*

*Յակովբ զյանցանս Ռուբենի յիշատակէ [1], վասն զի պղծեաց զանկողինս նորա: Իսկ Մովսէս վասն բարուոք խրատուն՝ զոր ետ նմա վասն Յովսեփու, քաւեաց զմեղս նորա, և ած խառնեաց 'ի թիւ համարուց:*

*Յակովբ զՇմաւոնի և զՂևեայ դարձեալ զյանցանս երկրորդէ. և զի՞նչ ասէ. «Ցրուեցից զնոսա »: Դառնայ այսուհետև յօրհնութիւն Մովսէս, մեկնէ զնա գործովն՝ որ եղև 'ի Քորեբ լեառն, և ստուգէ զբանն Յակովբայ իբրև ցարդ չև ևս լեալ էին քահանայք: Զի միաբանեցին, ասէ, քահանայքն, և դիցեն խունկս 'ի բարկութեան քում. և զի ասէ բաժանեցից զնոսա. Ղևեայ ոչ տուաւ ժառանգութիւն Շմաւոնի, զի սակաւ էր. ետուն նմա վերադիր յիւրաքանչիւր ժառանգութենէ եղբարցն իւր:*

*Յակովբ վասն Յուդայի ասէ. « Ի սպանմանէ, որդեակ, ելեր ». վասն այնր Թամարայն և Յովսեփու: Մովսէս ասէ. «Լուր, տէր, ձայնի Յուդայի, և 'ի ժողովս նորա ժողովեա զնա ». յայտ առնէ զգերութիւն նորա: «Ձեռք նորա ընտրեսցեն նմա ». զի ինքն յինքենէ թագաւորեսցէ:*

*Իսկ Յակովբ ասէ Զաբուղոնի և Իսաքարու վասն ժառանգութեան նոցա. մարգարէացաւ՝ զի Զաբուղոն 'ի նաւահանգիստ բնակեալ էր, և Իսաքար 'ի ծովեզերի և 'ի լերին. և Զաբուղոնի դարձեալ 'ի նմին լերին մինչև 'ի Սիդոն: Մովսէս թարգմանէ զնա. «Ուրախ լեր, ասէ, Զաբուղոն, յելս քո. Իսաքար, յարկս քո. հեթանոսք՝ որ առ լեառն՝ կարդասցեն ». և այլ ևս:*

*Յակովբ ասէ. «Դան դատեսցէ զժողովուրդ իւր », վասն Սամփսոնի: Մովսէս մեկնէ զնա. «Դան կորիւն առեւծու ». որդի է 'ի Մենթանոյ:*

*Յակովբ վասն Գադայ ասէ. «Ընդ աւազակս ել-*

1 Յօրինակին յիշատակէ:

ցէ, և նա առաջնորդեսցէ զնացից նոցա”․ քանզի 'ի ժամանակի իբրև ժառանգեցուցանէր Մովսէս զՌուբէն և զԳադ, ասաց՝ թէ անցէք առաջի եղբարց ձերոց, և հաստատութի վերջնոյն 'ի զօրութի առաջնոյն գտեալ լինէր : Մովսէս մեկնէ զնա․ “Օրհնեալ այն՝ որ ընդարձակեաց Գադայ” :

Յակովբ վասն Ասերայ ասէ․ “Ի պարարտութեան հացի, և համբարակ դնէ զնա թագաւորաց”: Մովսէս թարգմանէ զնա․ “Եւ եղիցի, ասէ, ընդունելի յեղբարս իւր, և մխեսցէ 'ի ձէթ զոտն իւր”․ ցոյց՝ թէ պարարտ է երկիրն նորա և հզօր :

Յակովբ վասն Նեփթաղիմայ ասէ․ “Հրեշտակ թեթև երագութեամբ”: Մովսէս թարգմանէ զնա, “Նեփթաղիմ յագեալ կամօք, և տայ զխօսս՝ զի օրհնեաց նա զթագաւորս”:

Յակովբ վասն Յովսէփայ յայտ առնէ՝ թէ ոխացան ընդ նմա եղբարք իւր, և օրհնէ զնա օրհնութի զերկնից և զերկրի և զանդոց[1], իբրև յայտ առնէ եթէ մինչև յոյս անդր մշտնջենաւոր բարձանց մինչ 'ի դրախտն անդր : Մովսէս թարգմանէ զնա, և օրհնէ զնա աւելի քան զՅակովբ՝ օրհնութի զերկնից և զերկրի, զարեգական և զլուսնի և զդրախտի, իբրև յայտ առնէ՝ եթէ թագաւոր լինելոց է 'ի նմանէ : “Եղջերք նորա, ասէ, իբրև միեղջերոյ եղջերք․ այս բիւրաւորք եփրեմի”․ զի թագաւորէ նա :

Յակովբ զԲենիամին գայլ յափշտակօղ դնէ վասն իրաց հարճին, կամ վասն Ամաղեկայն և Շաւուղի : Իսկ Մովսէս ասէ․ զամենայն աւուրս 'ի մէջ ուսոց իւրոց հանգստեան, որ էր յԵրուսաղէմ․ զի նա ինքն է 'ի մէջ սահմանաց՝ ուր Ռաքէլն մեռաւ 'ի սահմանս Բենիամինի :

[1] Յօրինակին զանդընդոց :

## ԳԼՈՒԽ Դ

"Եւ ասէ տէր ցՄովսէս. ել դու 'ի լեառն, և նայեաց տես զամենայն երկիրն քանանացւոց, և ժողովեաց դու առ հարս քո յազգի քում,,: Են ոմանք՝ որ ասեն թէ անցուցանելով անցոյց ա͞ծ զերկիրն առաջի նորա, և ետես նա զնա: Այլ չէ ինչ նման այս. ոչ եթէ զի ա͞յ դժուարին է այս, զի այն՝ որ ետ զգենուլ զփառս երեսաց նորա, նա ետ նմա աչս լուսաւորս իբրև զարեգական տեսանել զայն երկիր պարգևաց, որպէս զի ետես նա զնմանութիւն խորանն ժամուն 'ի լերին անդ, և որպէս զի ետես նա զդրախտն փափկութեան 'ի ճանապարհի անդ: "Ել դու, ասէ, 'ի լեառն անդըր և մեռիր,,: Եւ ոչ ասաց նմա թէ ա͞ծ արարեր զիս, ոչ մեռանիմ. այլ ուրախ եղև նա ընդունել զմեռելութի պահելով զպատուիրանն, և ոչ ա͞ծութիւն անցանելով զպատուիրանաւն: Նա և Պաւղոս և Բառնաբաս՝ 'ի ժամանակի իբրև արարին զնոսա աստուածս, ոչ կամեցան թաքուցանել զա͞ծութիւնն զախտորիկ՝ որ զնոսայն առաքեաց. այլ յայտնեցին նոքա զա͞ծութիւն նորա, և ոչ թաքուցին զմարդկութիւնն իւրեանց. պատառեցին զհանդերձս իւրեանց և ասեն. "Եւ մեք, ասեն, իբրև զձեզ մարդիկ եմք,,:

Փոխանակ այնր՝ զի ասէ "Եւ եղ Մովսէս յԱրաբովթ Մովաբու,,. Հեբրայեցի ասէ "Ի դաշտէ անտի Մովաբու,,: Եւ զի ասէ "Ոչ վատեցին աչք նորա, և ոչ թարշամեցան երեսք նորա,,. խորհուրդ աշխարհի նորոյ նկարեաց մեզ: Եւ զի ծածկեցաւ գերեզմանն Մովսիսի, զի մի եղիցի հայհոյութի 'ի վերայ ա͞յն նորա. մանաւանդ զի Աստուծոյ իսկ արժան էր թաղել զաստուածն. այս ինքն՝ այն ճշմարիտն զայս, որ ըստ կրելոյն տուեալ էր: Եւ զի մի դարձեալ նուաղեալ գտցի մեծութին օրինացն յայնմ ժամու, զի տեսանէր ակնն զայլթագղեալ զլոյսն զայն՝ որ սփռեցաւ 'ի վերայ երեսացն Մովսիսի, 'ի ժամանակի իբրև նուաղեալ շիջանէր առ սակաւ սակաւ: Կամ զի մի կանգնիցեն արձան 'ի վերայ գերեզմանի նորա,

և պագանիցեն նմա երկիր. կամ զի մի եկեսցեն մովաբացիքն և հանցեն զոսկերս նորա և ցրուեսցեն. զի մի հեբրայեցիքն արտաքոյ կարգի պատուեսցեն զնա, և հեթանոսք անարգեսցեն զնա: Փոխանակ այնր՝ զի ասէ «Մեռաւ Մովսէս, և թաղեաց զնա ա՟ծ». Հեբրայեցի, «Մեռաւ Մովսէս ըստ բանի տեառն»: Սնունդն Մովսիսի և թաղեալն նորին՝ երկոքին ա՟յ էին:

Շտապեալ տագնապեալ զարհուրէին մարգարէքն և երկնչէին, իբրև հոգին՝ որ 'ի նոսա էր, 'ի ներքոյ այսր չարչարանաց չէր եդեալ: Զի ոչ եթէ ինքն 'ի նոսա փոփոխեալ լինէր, այլ զնոսա զկնի կամաց իւրոց ձգէր. զի պարգև էր նա՝ որ բնակեալ էր ընդ ազատութեն. և զազատութիւն բանի ոչ վարէր նա. թէպէտ և խօսել զայն ինչ զոր կամէին նոքա՝ ստիպէր ոչ զնոսա, սակայն գործք՝ զայն ինչ զոր կամէին նոքա՝ բռնադատէր զնոսա 'ի հնազանդել զքեզ բնութեան մարգարէութեան իւրում. այլ ոչ հնազանդէր զազատութի նոցա բռնութբ 'ի գործ պաշտաման իւրոյ: Նա և այս է, զի հնազանդեաց զբերանս մարգարէիցն խօսից իւրոց, զի ետես նա՝ զի հնազանդեցին նոքա զկամս իւրեանց օրինացն նորա, և որպէս բանից իւրոց զձայնս նոցա, և խօսից իւրոց զբերանս նոցա, սոյնպէս պարգևքն հաւատոցն նոցա, և հարցմունքն նորա վաստակոց նոցա, և յաղթութիւնն հոգւոյն՝ մարտից նոցա: Եւ զի միանգամ բնակեալ էր 'ի նոսա ա՟ծութիւնն, կայր 'ի վերայ նոցա և կարգ մարգարէութե. թէպէտ և բնակեալ էր 'ի նոսա հոգին ծածկոյթ, սակայն տեղի տայր նա, զի մի մարգարէութիւն խափանի, և զի մի զրկեսցի ա՟ծութիւն յիւրոց անտի: Եւ եթէ զի յանդիմանեալ կշտամբեսցի փոքրկութիւն, և մի տրտմեսցին. այլ վասն զի յայտ լիցի խառնեալ մեծութբ, և ընդ նմա է՝ իբրև ամփոփէր հոգին զպարգևս 'ի նոսա: Եւ էր՝ որ սրփուէր զնոսա արտաքս քան զնոսա, և զինքն նոցա ոչ յայտնէր. և էր՝ որ և այլոց ընդ նոսա յայտնէր, զի և մարգարէն եղիցի կատարեալ, և լսօղքն եղիցին փափագեալ. և ծանիցի մարգարէն՝ թէ շնորհաց է այս, և գոհասցէ զնմանէ: Գիտասցէ և լսօղն՝ թէ ստացուած է սա հասարակաց, և ցանկասցի նմա:

Մարգարէք վարիւք իւրեանց առ Հոգւոյն առաքեալ լինէին, և նա առ նոսա նշանօք հաւատարիմ լինէր։ Ցուցին մարգարէքն գործօք իւրեանց զչարչարանս վասն նոցա. և Հոգւոյն 'ի ձեռն նշանաց ըզ-պսակումն պատկերագրի. զի 'ի ժամանակի իբրև համբեր Մովսէս փափկասուն խիստ հովուութեան զ-քառասուն ամ, չարչարանքն էին նմա 'ի մարտ պատկերագրի։ Այլ և դարձեալ եղև նա հրամանատար զ-քառասուն ամ մարդկեղէն խաշին։ Այս հատուցումն է այնորիկ՝ որ փախչէր նա 'ի Փարաւոնէ, մարտ պատերազմի եղեալ վասն ժողովրդեանն իւրոյ։ Եւ իբրու հարկանէր զծովն, և նա փախչէր յերեսաց նորա, այս փոխանակ իւր փախստեանն լինէր։ Նոյնպէս և ամենայն մարգարէքն ընդունէին զպսակն 'ի Հոգւոյն սրբոյ։

## ԿԱՏԱՐԵՑԱՒ ԴՊՐՈՒԹԻՒՆ ՎԵՐԾԱՆՈՒԹԵԱՆ ԱՐԱՐԱԾՈՑ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՍ

# ՍՐԲՈՅՆ ԵՓՐԵՄԻ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

## ՅԵՍՈՒԱՅ

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

# ՅԵՍՈՒԱՅ

ՈՐԴՒՈՅ ՆԱՒԵԱՅ

ԶՈՐ ԱՐԱՐԵԱԼ Է

## ՏԵԱՌՆ ԱԲԲԱՅ ԵՓՐԵՄԻ

ՅԱՆՁՆ եղև ժողովուրդն Յեսուայ տանել ժառանգեցուցանել նոցա զերկիրն պարգևաց: Եւ խոկ և խոկ առաքեաց լրտեսս յԵրիքով, զի հզօրացուսցէ զփոքր թերահաւատութիւն ժողովրդեանն:

Բաժանեաց զգետն. զի արկցէ զահ և զերկիւղ քանանացւոցն, զի մի եկեսցեն մարտնչել ընդ նմա և կոտորեսցին 'ի սուր սուսերի նորա:

Թլփատեաց զժողովուրդն կրկնակի:

Կործանեաց զպարիսպն Երիքովի:

Քարկոծեաց զԱքար, և արար զխնամս ողորմուէ 'ի վերայ Ռահաբու:

Կոտորեաց զթագաւորսն քանանացւոց, զի ժպրհեցան յանդգնեցան մարտնչել ընդ նմա:

Արար ողորմութիւն գաբաւոնացւոց, զի երկեան և ապաւինեցան 'ի նա:

Արգել զարեգակն և զլուսին, զի տացէ զհաւանութիւն քանանացւոց. կամ զի եթէ աշակերտեսցին նմա, կամ զի եթէ առցէ զտեղի 'ի գալոյ անտի մարտընչել ընդ նմա:

Նա զերկիրն պարգևաց որ 'ի յԱբրահամէն և այսր խոստացեալ էր նոցա. բաժանեաց ազգաց ժողովրդեանն, որպէս և հրամայեցաւ նմա։

Օ այսոսիկ և որ սոցին նման են և որ ինչ եղև 'ի ձեռն նորա՝ գրեաց։

ԵԻ

# Ի ՍԿԶԲԱՆ ԲԱՆԻՑ ԻՒՐՈՑ ԱՍԱՑ ԱՅՍՊԷՍ

## ԳԼՈՒԽ Ա

“Յետ մահուն Մովսիսի ասաց տէր ցՅեսու պաշտօնեայ Մովսէսի”։ Զայս զի ասաց՝ եթէ “Պաշտօնեայ Մովսիսի”, խոնարհութիւն է Յեսուայ. քանզի ’ի ժամանակի իբրև հաւասարեաց զնա ած ընդ Մովսիսի՝ ասէ ցնա, եթէ “Որպէս եղէ ընդ Մովսէսի, եղէց և ընդ քեզ”։ Բայց ոչ կամեցաւ համարել զանձն իւր գոնեայ աշակերտ Մովսիսի, այլ պաշտօնեայ Մովսիսի։ “Անց դու, ասէ, և ժողովուրդս այս ընդ Յորդանան”։ Եւ ամենայն գաւառ՝ զոր կոխեսցեն ոտք ձեր, ճշմարտեալ հաւատասջիք, զի լինի նա վիճակ ժառանգութե ձերոյ, որպէս և խոստացայ ես Մովսիսի. զի յանապատէ անտի՝ որ եղերուքն դուք քառասուն ամ, և լեռանս այս Լիբանանու զոր տեսանեն աչք ձեր, և մինչև ցգետն մեծ Արածանի, եզերցի սահմանք ձեր։ Բայց ոչ կամեցան նոքա ժառանգել մինչև յԱրածանի. քանզի և ահա և յաւուրն իսկ Դաւթի մինչև յանցս Արածանւոյ գետոյ կոտորեցին և հրձիգ արարին։ Բայց զի “Մի՛ ոք կացցէ առաջի ձեր զամենայն աւուրս կենաց ձերոց”. այլ և այնմ ազգի՝ որ ժառանգեաց զերկիրն ’ի ձեռն Յեսուայ, որ զկնի նորա գալոց են, որ պահեն զպատուիրանս տեառն իբրև զԴաւիթ՝ խոստացաւ։ Եւ զոր օրինակ եղէ ընդ Մովսիսի զօրութբ և նշանօք, եղէց և ընդ քեզ, և ոչ թողից զքեզ ’ի ձեռանէ, և ոչ անտես արարից զքեզ յամենայն մարտ պատերազմի, մինչ զի ժառանգեցուսցես զերկիրն ժողովրդեանն, որպէս խոստացայ ես աբրահամեանց հարց նոցա։ Բայց այսու ուխտիւ եղէց ընդ քեզ, որպէս եղէ

ընդ Մովսիսի, “Եթէ պահեսցես զամենայն օրէնս՝ զոր պատուիրեաց քեզ Մովսէս ծառայ իմ”. որպէս և ինքն իսկ Մովսէս պահեաց զնոսա ։

“Ասէ Յեսու ցժողովուրդն. պատրաստեցէք ձեզ պաշար իւրաքանչիւր” ։ Եւ զի՞նչ պիտոյ էր նոցա պատրաստութիւն, զի մանանայն մինչև ցայնժամ ոչ էր արգելեալ ՚ի նոցանէն. այլ վասն զի ընդ գետն անցանէին նոքա, ետ նոցա հրաման աւուրբ յառաջ պատրաստել պաշար իւրաքանչիւր ՚ի մանանայէ անտի, որպէս զի պարապորդք լիցին կալ և տեսանել զսքանչելիսն՝ որ լինելոց էր ՚ի գետ անդ ՚ի վաղիւ անդր ։ Եւ զգունդն Ռուբէնի վառեաց ընդ իւր քառասուն հազար կուռ վառեալ. այլ զի գուցէ մնալոցն իւրեանց յայն կոյս Յորդանան գետոյ թեկցեն զսիրտս եղբարց իւրեանց ։

Եւ զի առաքեաց երկուս արս, և լրտեսեցին զԵրիքով. Թէպէտ և առ ՚ի քաջալերել ժողովրդեանն առաքեցան, այլ վասն Ռահաբու պոռնկի առաքեցան արքանեակքն յԵսովեայ. զի ՚ի դէմս բազմաստուած բազմախողխին Ռահաբու՝ որ ՚ի ձեռն կարմիր նշանին՝ որ ՚ի փայտն էր, միում[1] Աստուածոյ և միում տան համարեցաւ և անուանեցաւ, նկարագրեսցի խորհուրդ բազմապատկեր եկեղեցւոյ ։ Զի ՚ի ձեռն երկոտասան առաքելոցն Յիսուսի հանդերձեալ էր օտարանալ յամենայն կռոց և յամենայն չարեաց, և ՚ի մի ա̃ծ բարի գործովքն՝ զոր ընտրեալն է իւր՝ ապաւինելոց էր ։

Ռախաբ՝ որ իջոյց պարանօք զառաքեալսն Յեսուայ ընդ պատուհան պարսպին, զխորհուրդն եկեղեցւոյ գրեալ նկարէր, այն որ զՊաւղոս առաքեալն Յիսուսի իջոյց վանդակաւ ընդ պարիսպն Դամասկոսի ։ “Գիտացի, ասէ, զի մատնեաց տէր զերկիրս ՚ի ձեռս ձեր”. և մեք և ամենայն բնակիչք երկրիս քանանացւոց զահի հարեալ ՚ի մեծ երկիւղի կամք յերեսաց ձերոց. վասն զի լուաք մեք զի բաժանեաց զջուրս Կարմիր ծովուն առաջի որդւոցն Իսրայէլի ՚ի քառասուն ամէ և այսր, երկիրս այս ձեր է ։ Եւ արդեւք

1 Միւս օրինակին միում յայս և միում տան ։

վասն զի ապաշխարեսցուք, բնակեցաք 'ի սմա մինչև ցայսօր. այլ յօրէ՝ զի բաժանեցաւ ծովն և կատարեցան երկու Թագաւորքն ամովրհացւոց, զահի հարեալ դողացին սիրտք մեր, և ոչ մնաց 'ի մեզ շունչ։ Եւ տակաւ ոք 'ի ձէնջ՝ եթէ անցեալ յայս կոյս միով փոքր գնդաւ՝ կարօղ էիք ունել զամենայն երկիրս քանանացւոց։ Արդ ա͞ծն ձեր նա իսկ է յերկինս 'ի վերուստ. այնու զի իջոյց զհուր և զկարկուտ յերկնից 'ի վերայ եգիպտացւոցն։ Եւ նա ինքն է յերկրի 'ի ներքոյ, զի բաժանեաց զներքին անդունդս ծովու առաջի ազգաց ձերոց։ Արդ այսուհետև եկայք երդուարուք ինձ. մի՛ 'ի կուռս և 'ի պատկերս Երիքովի զոր անարգեցի, այլ երդուարուք ինձ 'ի տէր՝ եթէ հատուցանէք ինձ շնորհս երախտեացս այսոցիկ, և կեցուցանէք զիս 'ի ժողովրդեանն ձերում։ Եւ որպէս կեցուցի ես զձեզ 'ի մէջ քանանացւոց, կեցուսջիք և դուք զիս և զհարս և զեղբարս իմ վասն հաւատոց նոցա, որ կարմիր նշանաւն 'ի պատուհանի կապեմ ես, և վասն դառնալոյն նոցա 'ի կռոց պատկերաց, և վասն հաւանութեան նոցա՝ որ գալոց են 'ի մեծ հաւանութիւն Ճշմարիտն Աստուծոյ։

Տեսն ցնա, զի եթէ այսօր ոչ կարեմք մեք հատուցանել քեզ զշնորհ երախտեացն զոր արարեր մեզ. այլ յորժամ մատնէ տէր զերկիրն քանանացւոց 'ի ձեռս մեր, հատուսցուք քեզ յայտնապէս 'ի լոյսն արեգական զփոխարէնս շնորհիդ՝ զոր արարեր մեզ 'ի ժամս խաւարի. բայց միայն կապեսջիր 'ի պատուհանիդ քում զնշանն։ Մի՛ զայլ գոյն՝ որ պատշաճ և պիտոյ է նշանի և ոչ խորհրդոյ. այլ զկարմիր նշանն՝ որ պատշաճիցի[1] յերկոսին դէմս։ Եւ զի զգուշացուցին՝ եթէ որ ելցէ 'ի տանէ անտի յայնմանէ՝ ուր նըշանն կապեալ է՝ և մեռցի, արիւն նորա 'ի գլուխ իւր, յայտ արար և եցոյց՝ թէ զոր օրինակ ամենայն որ արտաքս քան զտունն գտանէր, ոչ կարէր գտանել զկեանս ժամանակեանս. սոյնպէս և ամենայն՝ որ 'ի խորհրդոյն անդր Քրիստոսի չհաղորդի, ոչ կարէ գտանել զկեանս յաւիտենից։ Ի տանն Ռախաբու

1 Միւս օրինակն պաշտեսցի։

կեանք ժամանակեան, և արտաքս քան զնա մահ ժամանակեան: Իսկ յեկեղեցւոջ զմն կեանք յաւիտենից, և արտաքս քան զնա դարձեալ մահն յաւիտենից: Եւ որ հանդուրժէր ժուժկալել 'ի կարմիր նշանն, 'ի ժամ կործանման պարսպացն ոչ երկնչէր նա: Սոյնպէս և որ 'ի խաչն հաւատայ 'ի ժամանակի զի կործանեն և քակտեն արարածք, ոչ զարհուրի և ոչ շտապի: Ի ժամուն զի կապէր Ռախաբ զնշանն 'ի փայտի, զխորհուրդ ժողովրդեանն՝ որ կապելոց էր զորդին միածին 'ի փայտի՝ նկարէր նա: Ո՜ Ռախաբ դուստր հեթանոսաց. զի մտանելովն իւրով գրէր նկարէր զելանել այնոցիկ՝ առ որս երթայրն, մինչ չև խառնեալ էր ընդ ժողովուրդս նոցա. հան ընկեց զժողովուրդս նոցա: Եւ քանզի ոչ գրեալ անուն իւր 'ի համար բանակի նոցա, թուղթ ապահարզանի գրեաց և ետ բանակի նոցա:

Արդ 'ի ժամուն իբրև առ նա զնշանն կարմիր 'ի ձեռն իւր, օտարացաւ նա 'ի կռոց պատկերաց. զի նկարեաց և նշանակեաց զխորհուրդ խաչին. զի ամենայն կուռք և պատկերք հանդերձեալ էին խափանել յամենայն հեթանոսաց: Ձեռք նորա կալան ըզնշանն կարմիր, այլ ոչ մերձեցան 'ի զոհս դիւաց: Եւ 'ի ժամանակէն զի ներկեաց[1] սէր նշանին 'ի սիրտ նորա, փարատեցաւ 'ի սրտէ նորա սէր բազում հոմանեաց՝ որ 'ի սրտի նորա տնկեալ կայր: Զգաստացոյց սրբեաց զանձն իւր, և սպասէր և դէտակն ունէր Յեսուայ կուսանի, զի նկարեաց զխորհուրդն եկեղեցւոյ, այն՝ որ որբովքն և ընտրելովքն իւրովք սպասէ և դէտակն ունի Ճշմարիտ Յիսուսի:

Արդ լրտեսքն չոգան պատմեցին որ ինչ դէպն տուաւ նոցա, բայց ոչ բեկին զխրատ եղբարց իւրեանց իբրև զընկերս իւրեանց՝ որ ասէին թէ "Համարեցաք մեք յաչս նոցա իբրև մարախ„: Այլ թէպէտ և դառն նեղութի պատահեցաւ նոցա, սակայն քաջալերեցին զժողովուրդն և ասեն. եթէ մատնեաց տէր 'ի ձեռս մեր. ոչ զԵրիքով միայն, այլ և զամենայն երկիրն քանանացւոց. ահաւասիկ ուսաք և տեղեակ եղեաք,

1 Միւս օրինակն ունի:

զի և 'ի համբաւոյն մերմէ անգամ զահի հարեալ և 'ի դողման կան բնակիչքն քանանացւոց յերեսաց մերոց :

## ԳԼՈՒԽ Բ

Չու արարին ժողովուրդն, և եկին հասին յափն Յորդանան գետոյ . բանակեցան զերիս աւուրս զգետովն, և այսր ոչ անցին . զի գուցէ թէ լուիցեն բնակիչք Երիքովի, երկիցեն բնակիչք Երիքովի և խնդրեսցեն զաջն խաղաղութեան Յեսուայ և կեցցեն : Եւ զի յաւելցէ և ածցէ տէ՞ր զահ և զերկիւղ յամենայն ազգն քանանացւոց, զի մի՛ եկեսցեն մարտնչել ընդ զօրութեանն : Որ բաժանեաց զծովն Կարմիր 'ի ձեռն Մովսէսի, յաւել բաժանեաց զգետն Յորդանան 'ի ձեռն Յեսուայ որդւոյ Նաւեայ . զի գիտասցեն և ծանիցեն զի եթէ գան մարտնչել ընդ զօրութեան՝ որ բաժանեաց զՅորդանան առաջի Յեշովայ, կատարէ զնոսա իբրև զամովրհացիս զօրութիւնն այն՝ որ բաժանեաց զծովն Կարմիր առաջի Մովսիսի : Եւ վասն զի համդերձեալ էր բառնալ[1] 'ի նոցանէ ամպն և սիւնն համդերձ մանանայիւն, ցոյց նոցա զի յայսմ հետէ տապանակն կտակարանաց երթալոց էր առաջի նոցա : Եւ նոցա հրաման հեռանալ 'ի տապանակէ անտի իբրև երկուս հազարս կանգուն . վասն զի մեծաշուք արասցէ յաչս նոցա, և զի մեծաւ պատուով փառաւորեսցի սուրբ զօրութիւնն որ բնակեալ էր 'ի նմա : Հրամայեաց նոցա դարձեալ սրբել զանձինս իւրեանց աւուրբք յառաջ վասն սքանչելեացն՝ որ լինելոցն էր 'ի Յորդանան գետ . որպէս զի նշանակեսցէ զխորհուրդն որդւութեան, որ 'ի ձեռն Ճշմարիտ Յիսուսին տարածանելոց էր ընդ ամենայն ազգս ազգաց :

Եւ իբրև չուեաց խաղաց տապանակն կտակարանաց, և ժողովուրդն զկնի նորա, ասաց տէր ցՅեշով . "Յայսմ օրէ և անդր սկսայց,, այս ինքն 'ի նշանէ աստի յայսմանէ, զոր առնելոց եմ ես 'ի ձեռն քո այսօր, "Սկսայց յարգել փառաւորել զքեզ յաչս ամենայն

1 Միւս օրինակն բաժանէլ . . . զամպն և զսիւնն :

Իսրայէլի»։ զի գիտասցեն և ծանիցեն՝ թէ որպէս եղէ ես ընդ Մովսէսի 'ի բաժանել անդ ծովուն, սոյնպէս լինիմ ես ընդ քեզ 'ի բաժանել աստ գետոյդ։

Արդ տապանակակիրքն եկին հասին 'ի Յորդանան. և իսկ և իսկ իբրև հասին ոտք նոցա 'ի ջուր անդր, կացին և զտեղի առին ջուրքն, այս ինքն է բաժանեցան։ Քանզի ջուրքն ստորինք՝ որ իջանեն[1] 'ի ծովն արևմտից՝ հատան սպառեցան, և ջուրքն վերինք դարձան անդրէն զանձամբք. որպէս զի բացէ 'ի բաց պահեսցին[2] 'ի տեղւոջէ անտի ընդ որս անցանէին ժողովուրդն։ Զի մի զահի հարեալ երկիցէ ժողովուրդն վասն յորդորդմանն կուտակադեզ մրձաւորութե ջուրցն վերնոց, իբրև 'ի տիկս արգելեալ կային։ Բացէ 'ի բաց հեռացան յերեսաց նոցա, որպէս զի և ակամբ անգամ մի տեսցեն. զի քաջալերութք վստահասցին անցանել ընդ գետն։ Բայց ոչ միայն քաջաքն, որ նստէին յստորին ափն Յորդանանու՝ որ տեսին զցամաքել գետոյն՝ գիտացին եթէ բաժանեցան, այլ որ և զվերին կողմն նստէին՝ իբրև տեսին զանհաւան խաղաց բնութի ջուրցն՝ որ յետս ընդդէմ գնայր՝ գիտացին եթէ բաժանելով բաժանեցաւ։

Մեծ սքանչելի էր այն, զի ցամաքեսցի ստորին կողմըն գետոյն. բայց ոչ էր իբրև զայն զարմանալի, զի մեծահոսան ջուրքն անդրէն կուտակեալ յետս դարձան, զի մի իբրև խաղասցէ ըստ իւրում սովորութեն, բաղմասցի կուտակադեզք ջուրցն պարապեալք, ելցէ և գերփեսցէ զքաղաքսն 'ի հեղեղատէ ջուրցն մթերելոց՝ որ 'ի հնէն և 'ի վեր նստէին. և իբրև դիմեսցեն դարձեալ ջուրքն իջանել ըստ իւրեանց գնացիցըն, յորդութքն իւրեանց հեղեղատեսցեն զգեօղս և զագարակս՝ որ զներքնակողմն ափն գետոյն կարգեալ նստէին, դարձան ջուրք վերինք ընդ արևելս զի հեռասցին բացուստ 'ի բաց յԱդամ գեղջէն, որ էր առ կողմն Ճարթանուն[3], տեղի անցանելոյ՝ ընդ որ անցին ժողովուրդն։ Եւ արգելան յորդաբուխ ջուրքըն Յորդանանու. զի գուցէ թէ ժողովեալ ջուրցն

1 Միւս օրինակն իջանէին 'ի ծովն արևմտից։

2 Միւս օրինակն պահանջեսցին։

3 Միւս օրինակն Ծարթանուն։

կուտածոյ լինիցի ծով երկրորդ, և լինիցի վնաս վերնակողմանցն և ներքնակողմանցն. և զի ցուցցէ և յայտ արասցէ, զի ոչ յաւելան ջուրքն, վասն զի արգելաւ և զտեղի առ բղխումն ջուրցն:

Ասաց՝ թէ դարձան ջուրքն Յորդանանու 'ի տեղիս իւրեանց, և գնացին իբրև յառաջագոյն ափամբ ընդ ամենայն երկարութիւն գետոյն Յորդանանու վերուստ 'ի վայր: Եւ զի ոչ միայն ազգքն հեթանոսաց, յորոց աւուրս բաժանեցաւ Յորդանան, գիտասցեն զբաժանել գետոյն, յաւել և եհան երկոտասան վէմս 'ի գետոյ անտի. զի տեսլեամբն իւրեանց լիցին քարոզք ամենայնի որ անցանէ՝ եթէ բաժանեցաւ գետն Յորդանան 'ի ժամանակին՝ զի ժառանգեցին հեբրայեցիք զերկիրն քանանացւոց, և տապանակ կտակարանացն երթայր առաջի ժողովրդեանն մինչև ցՅորդանան: Իբրև էջ 'ի գետ անդր, կաց և զտեղի առ 'ի մէջ նորա, որպէս զի տեսլեամբ տապանակին կտակարանաց՝ որ կայր ընդ երեսս ջուրցն վերնոց, քաջալերեսցին փութաժիրաքն և ծանծաղասիրտ կանայք և տղայք՝ յապահով յաներկիւղ անցանել ընդ Յորդանան:

Եւ իբրև անց ժողովուրդն ամենայն, քահանայքն տապանակակիրք՝ որ ընդ իջանել նոցա 'ի ջուրս անդր՝ բաժանեցան ջուրքն գետոյն, դարձեալ և ընդ ելանել նոցա 'ի ցամաք անդր դարձան ջուրքն Յորդանանու 'ի խոնարհակողմն անդր ընդ ճանապարհ ճապաղ գնացից իւրեանց: Բայց ջուրքն գետոյն զի բաժանեցան վասն քանանացւոց, զի զահի հարեալ երկիցեն և մի կռուեսցին 'ի սրոյ սուսերի Յեշուայ որդւոյ Նաւեայ. որպէս և ջուրքն ծովուն զի բաժանեցան վասն ամովրհացւոց, զի դողասցեն զանգիտասցեն և մի սատակեսցին. ոչ երկեան քանանացիքն, որպէս և ոչ ամովրհացիքն: Եւ զոր օրինակ եկին ամովրհացիքն յետ ծովուն բաժանելոյ տալ զմարտ պատերազմի ընդ Մովսիսի և կոտորեցան, սոյնպէս և ժողովեցան քանանացիքն յետ բաժանելոյ Յորդանան գետոյ գալ միագունդ միահամուռ 'ի մարտ պատերազմի ընդ Յեսուայ և սատակեցան:

Արդ 'ի սմին յայսմ ժամանակի հրամանն Թլփա-

տուԹեան, որ խափանեալն էր յանապատին քառասուն ամ, դարձաւ նորոգեաց զնա 'ի ձեռն Յեշուայ որդւոյ Նաւեայ։ Եւ իբրեւ մտանէին¹ խառնակել ընդ ազգսն հեԹանոսաց, Թլփատեաց Յեսու զանԹլփատսն՝ որ ծնան յանապատին. վասն զի անԹլփատուԹիւն իւրեանց պահեաց զնոսա 'ի ժամանակի՝ զի մահն իշխեցեալ տիրէր 'ի վերայ ԹլփատուԹեան վեց հարիւր հազարին։ Եւ զի հրամայեաց նոցա Թլփատել դայլախաղիւն, վասն զի դիւրին է հարուած նորա, և արագագոյն էր առ 'ի բժշկել քան զվէրս երկաԹոյ, և դարձեալ ամենայն մարդոյ գտանէր. և զի 'ի ձեռն դայլախաղին զարտաքին անդամս նոցա դրոշմէր, զի ներքոյ նոցա դայլախաղեայ կակղացին, և օրինօքն նոյ անԹլփատուԹիւն նոցա Թլփատէր։

Արարին զգատիկն, և արգելաւ մանանայն. զի ցուցէ Թէ որպէս փոխանակեցին զնա հացք նոցա յանապատին ընդ խստորոյն և ընդ սոխոյն, արհամարհեցին նա և յաչս որդւոյն յերկիրն պարգեւաց, յորժամ տեսանեն զերկիրն ժառանգուԹեան իւրեանց լի ամենայն երանուԹեամբ²։

Եւ իբրեւ Թլփատեցաւ ամենայն ժողովուրդն նորոգապէս, և նստան յիւրաքանչիւր տեղիս անխիղճ մինչ զի բժշկեցան, ասաց տէր ցՅեսու Թէ "Այսօր անցուցի զնախատինս եգիպտացւոց 'ի ձէնջ". կամ զի Թլփատեալ էին, և չէր ոք որ հալածէր զԹլփատուԹիւնն իբրեւ զողջոյն յԵգիպտոս, զի վասն ԹլփատուԹեան ընկենուին զնոսա 'ի գետ. կամ զի յայնժամ պանդխտուԹբ նստէին 'ի մէջ եգիպտացւոց, և այսօր կոխեցին ոտք իւրեանց զերկիր ժառանգուԹե իւրեանց. և կամ վասն զի նախատէին զնոսա յանապատի անդ եկին և խառնակին Եգիպտոսի՝ որ էին ընդ նոսա Թլփատեալք, զայսոսիկ՝ որ ոչ էին Թլփատեալ. և զի կոչեաց զանուն տեղւոյն այնորիկ Գաղգաղ. այս ինքն է բլուր. անուն բոլորակ

1 Ասաց մինչև ցհասարկն այսպէս ունի միւս օրինակն. մտանէին 'ի մէջ պաղեստացւոց ընդդէմ հեԹանոսաց, Թլփատեաց Յեսու զանԹլփատսն. զի յանապատի անդ ստափոխեցան անԹլփատք. և վասն այնորիկ Թլփատեաց զնոսա. և 'ի ժամանակի . . . 'ի վերայ անԹլփատուԹեն վեց հարիւր հազարին։

2 Միւս օրինակն բարեբանեալ է։

թլփատութեան, զի յայնմ տեղւոջ նորոգեցաւ թլը-փատութիւն 'ի վեց հարիւր հազարս նոցա:

Եւ իբրեւ անդ էին նոքա, երեւեցաւ Յեսուայ այր մի զի կայր ընդ երկինս եւ ընդ երկիր, իբրու ունէր 'ի ձեռին իւրում սուսեր մերկացեալ: Եւ զի մի ըն-տապեսցի ժողովուրդն տեսլեամբ նորա, ոչ ցոյց զան-ձըն իւր ժողովրդեանն. զի յայտ լիցի Յեշուայ եւ գիտասցէ, թէ հրեշտակ երթայ առաջի աչաց նոցա կոտորել զթշնամիս իւրեանց, նմա միայն յայտնե-ցաւ. եւ ապա յետ այսորիկ նուաճ եղեւ ազգ ամե-նայն ժողովրդեանն: Բայց Յեշուա իբրեւ ետես զայն, համարեցաւ նմա թէ մի ոմն 'ի դիցն հեթանոսաց ժպրհեցաւ երեւել նմա 'ի ձեռն սուսերի, որպէս զի արկցէ 'ի վերայ նոցա զահ եւ զերկիւղ: Բայց թէ գիտացեալ էր զնմանէն՝ եթէ նա է զօրագլուխ զօ-րաց տեառն, 'ի վերայ երեսաց իւրոց խոնարհ երկիր պագանէր նմա. եւ եթէ զինչ հրամայէր տէր ծա-ռայի իւրում՝ ասէր ցնա, եւ ոչ եթէ՝ 'ի մէնջ ես դու, եւ կամ 'ի թշնամեաց մերոց՝ հարցանէր ցնա: Եւ զի ասաց հրեշտակն՝ եթէ "Զօրագլուխ եմ ես տեառն", զի ուսուսցէ զնա, եւ տեղեակ արասցէ նմա՝ թէ հրեշտակն գլխաւոր եկեալ է 'ի թիկունս երկնաւոր օգնականութեան մանկանց ժողովրդեան նորա:

Եւ զի ասաց՝ եթէ "Այժմ եկի", յայտ արար եթէ որչափ յանապատին էիք դուք առանց մարտի, ոչ եկի ես. բայց այժմ, զի սկսարուք դուք տալ ճա-կատ եւ խլանել 'ի մարտ պատերազմի ընդ քանա-նացիս, ահաւասիկ եկեալ հասեալ եմ 'ի թիկունս օգնականութեան ձերոյ: Եւ զի ասաց ցնա՝ թէ "Լոյծ զկօշիկս քո յոտից քոց", այս ընկեր է այնր՝ որ ըղ-տուսերին ցոյց նմա: "Լոյծ, ասէ, զկօշիկս քո հարկա-նել հնձանն դիթաւալ գիտականցն՝ որ հանդերձեալք ես կթել 'ի ձեռն մերկ պողովատիկ սուսերիս այ-սորիկ՝ որ ցուցի քեզ":

Եւ զի ասաց՝ եթէ "Տեղիդ յորում կաս դու, սուրբ է", զի ցուցցէ նա թէ առաջի ում կայր նա. զի զոր օրինակ այն՝ որ բնակեալն էր 'ի մորենւոջն՝ աստուած էր, զի 'ի ձեռն հրեշտակին որ յայտնեցաւ 'ի նա՝ ասաց

զՄովսէս հանել զկօշիկս 'ի յոտից իւրոց․ իջանել կոխել հարկանել հնձան զեգիպտացին, սոյնպէս և սաստ մեծութիւնն քուրապատին որ բնակեալ էր 'ի զօրագլուխ զօրաց տեառն, որ երևեցաւ քեզ՝ հրամայէ քեզ հանել զկօշիկս քո յոտից քոց՝ հարկանել վանել կոտորել սատակել և քեզ զքանանացիս՝ որպէս և կոտորեաց Մովսէս զեգիպտացին և զամովրհացին։ Բայց զաւառքն սուրբք որ անուանեցան, յայտ եղեն վասն մեծութեանն՝ որ 'ի մորենւոյն[1], և 'ի զօրագլուխ անդ՝ որ եկեալ էր․ և զի գիտասցեն քանանացիքն՝ եթէ զան մարտնչել ընդ նոսա, կոտորին սատակին նոքա յետ բաժանելոյն Յորդանանու։ Վասն այնորիկ յաւել դաշտաձև կործանեաց զպարիսպն Երիքովի․ որպէս զի կործանեալ պարսպօքն և 'ի խռախոյս բարբառոյ ժողովրդեանն զահի հարցին քանանացիքն, և մի՛ եկեսցեն 'ի մարտնչել ընդ նմա յանկարծակի պատերազմաւ։ Արար զքաղաքն նզով, վասն զի անցցեն նովաւ ընդ փորձ հանդերձի հեբրայեցիք։ Եւ զի պարտ և պատշաճ էր քաղաքն առաջին զոր աւերեցին նոքա 'ի քանանացւոց անտի, տալ մի 'ի տասանէ այնմիկ՝ որ ետ նոցա զերկիրն ամենայն քանանացւոց։

Եւթն պատեաց պաշարեաց ժողովուրդն զքաղաքն առաջին օրն և զերկրորդն և մինչև ցվեց օրն լռելեայն, և ոչ դողացին և զահի հարան որդիքն Երիքովի։ Եւ յեւթներորդ աւուրն յորում ակն ունէին եթէ ոչ պաշարեն զնոսա հեբրայեցիքն վասն աւուրն շաբաթու, գտան նոքա՝ զի նոքին անձամբ իւրեանց լուծին զշաբաթն իւրեանց յառաջին մարտ պատերազմի․ զի գուցէ վարեսցին պատրաստեսցին հեթանոսք զալ տալ ընդ նոսա ճակատ յաւուր շաբաթուն։ Լուծին այսուհետև զշաբաթն 'ի սկիզբն յառաջին մարտին իւրեանց․ զի ազդ լիցի հեթանոսաց և գիտասցեն, թէ երբ և եկեսցեն՝ պատրաստ են հեբրայեցիքն ելանել ընդդէմ նոցա 'ի մարտ պատերազմի։ Որդիքն Երիքովի ելին 'ի պարիսպ անդր վասն նոր գործոյն զոր գործեցին հեբրայեցիքն․ զի բազում անգամ շուրջանակի պատեալ պաշարէին զքաղաքն․

1 Միւս օրինակն 'ի մորենւոյն, և զօրագլխոյն։

մնացուանդ վասն այնր կարի, զի գիտէին և վստահ էին, զի ոչ նետիւ և ոչ քարիւ մարտնչէին ընդ նոսա արտաքինքն արտաքուստ 'ի ներքս : Իսկ պարիսպքն, իբրև թարձին համօրէն միահամուռ զմնակիչս քաղաքին, ներքուստ 'ի վեր անկան կործանեցան 'ի խրախոյս թարթառ աղաղակի արտաքնոցն, և սպանին զորդիս իւրեանց որպէս զի արգելցեն զեբրայեցիս յաշխատութէ անտի կորստեան թշնամեացն իւրեանց:

Բայց պարիսպն այն՝ յորում Ռախաբն նստէր, ոչ կործանեցաւ. զի եթէ կործանեալ էր, կորուսանէր զՌախաբ և զտուն հօր իւրոյ: Արդ հրամանն՝ որ կործանեաց զպարիսպն Երիքովի, իբրև ետես զնշանն կարմիր՝ որ կապեալ էր 'ի փայտի անդ, արգելաւ կաց և զտեղի առ: Եւ այն՝ որ զաշտարակսն յաղթս և թարձրապարիսպսն կործանեաց, զմահարձանս պարսպացն՝ յորում Ռախաբն նստէր, վասն խորհրդոյն՝ որ փայտիւն 'ի պատուհանի անդ կապեալ էր՝ ոչ շարժեաց: Բայց ոչ միայն 'ի ժամ կործանմանն պարսպին պահեաց խորհուրդն զպարիսպն, զի մինչև ցայսօր իսկ կան. այլ վասն զի եղիցի նա վկայ խորհրդոյն՝ որ պաշտեցաւ 'ի նմա: Քանզի ինքն խորհուրդն յամենայն ազգս պահէր զնա, իբրև տրուչութէ ազգի ազգի եղիցի նա կարգեալ զպատմութի նորա. համայն զՌախաբ և զտուն հօր իւրոյ յԵրիքովէ: Եւ յորում աւուր Աքար յուդայեանց 'ի թուոյն Յուդայի ընչեցաւ, Ռախաբ 'ի հեթանոսաց 'ի թիւ ազգին Յուդայի խառնեցաւ: Եւ զի նստուցին զտունն Ռահաբու արտաքոյ բանակին, մի՝ զի ողբեսցի 'ի պղծութենէ պոռնկութե զոր պաշտէրն. և դարձեալ զի թլփատեսցին արուք նոցա, և ուրասցին 'ի ձուլածոյ դրօշեալ կռոցն իւրեանց, և ապա խառնեսցին ընդ նոսա:

Յայսմ աւուր անէծ Յեսու զայրն՝ որ յարիցէ յետ անցանելոյ ժամանակաց, և շինեսցէ զԵրիքով. մի՝ վասն զի ժպրհեցաւ մարտնչել ընդ նոսա յետ բաժանելոյն Յորդանանու. և երկրորդ՝ զի զեւթն օր երկայնամիտք եղեն. տալ զաջ խաղաղութեան ասա 'ի կեալ զկեանս իւրեանց, և ոչ կամեցան: Եւ վասն զի արար զնա նզով յաւիտենից, խորհեցաւ նստուցանել զնա 'ի վերայ ապականութե. հատ և զդաստա-

վճիռն մահու և 'ի վերայ որդւոցն այնորիկ՝ որ շինեսցէ զնա. զի վասն գթոյ աղէտացն խնայելոյ որդւոց իւրոց արգելցի այն՝ որ կամիցին շինել զնա։

## ԳԼՈՒԽ Գ

Որ Աքար յուդայեանց 'ի նզովածոյ անտի և թաքոյց. բարկացաւ տէր 'ի վերայ ամենայն ժողովրդեանն առ հասարակ։ Եւ որք յառաջ քան զնզովսն պարիսպքն Երիքովի մարտնչէին ընդ նոցա ընդ բնակիչսն Երիքովի, յետ նզովածոյ անտի ձախողակի շառափնատ[1] կապարճս դարձուցեալ փախստեայք լինէին յերեսաց բնակչացն Գեհայ[2] փոքր և սակաւազօր քաղաքին սկայազունք և քաջամարտիկքն իսրայէլացւոց։

Արդ սրտին Գեհայ զի իշխեցաւ Իսրայէլ յետ յաղթութեանն իւրեանց՝ որ եղև յԵրիքով, զխորհուրդ աւերածին իւրեանց 'ի քանանացւոց՝ որ ուխտէին ընդ նոսա. ուխտ՝ գրէր և նշանակէր նոր կոտորածիւն որ եղև 'ի ժողովրդեանն անդ, եղեն իբրև ջուր յերկիւղէ իւրեանց։ Անդ պատառէր Յեշու զհանդերձ սրն իւր, անկանէր 'ի վերայ երեսաց իւրոց հանդերձ ծերակոյտ ժողովրդեամբն մինչև յերեկոյ, և ասէր ցտէր. անցուցեր զմեզ ընդ Յորդանան՝ մատնել զմեզ 'ի ձեռս ամովրհացւոց[3]. և դու զի՞նչ արասցես զանուն քո մեծ զոր երդուարն առնել զմեզ քեզ ժողովուրդ սեփհական յաւիտենից։

Բայց ոչ կամեցաւ տ̃ր լսել Յեշուայ և ծերակոյտ ժողովրդեանն զօրն ամենայն. զի թերևս եկեսցէ Աքար և խոստովանեսցի, և ապաշխարութ̃բ իւրով անցուսցէ զբարկութ̃ի յանձնէն և յընտանեացն իւրոց։ Աղերսէր Յեշու, վասն զի ոչ գիտէր խիղճ ինչ մնաց յանձին իւրում. և ասէր՝ թէ այժմ լսեսցեն քանանացիք եթէ տկար որդիքն Գայեայ կոտորեցին զմեզ, և վաղվաղակի զօրաժողով լինին կորուսանել

1 Միւս օրինակն կառափնատ։ Գայեայ։
2 Յօրինակին 'ի լուսանցսն 3 Միւս օրինակն հեբուսացւոց։

զմեզ, և դու զի՞նչ արասցես զանուանդ քո, այն՝ որ յեգիպտոսէն ամենայն նահատակութիւնք կոչեցաւ և անուանեցաւ 'ի վերայ մեր ։

Ասէ տէր ցՅեշուա. զի՞ անկեալ կաս դու 'ի վերայ երեսաց քոց զօձիս արկեալ՝ պատառեալ զզգեստ քո, իբրև ցարդ և ա այն՝ վասն որոյ անկան վիրաւորեցան սպանեալք 'ի պատերազմի, զսիրտն իւր ոչ կամեցաւ պնդառել. արդ մի կարասցեն որդիքն Իսրայէլի ունել զդէմ թշնամեաց իւրեանց. բայց եթէ անցուսցեն զնզովսն 'ի միջոյ իւրեանց ։ Զի ցուցցէ և յայտ արասցէ Աքարայ, զի եթէ ապաշխարութիւնն իւր յայնմ գիշերի ոչ ապրեցուցէ զնա, մինչակն ստուգութեան մատնէ զնա և զընտանիս իւր 'ի մահակողմն անդր ընդ մերկ լուսանալ առաւօտուն ։

Այս նմա հրաման մատուցանել նմա զարգս և ընտոհմին և զտունս և զարս. այլն՝ զոր որսասցէ տէր, կորիցէ նա և ամենայն տունն իւր հանդերձ ամենայն ընտանեօքն իւրովք ։ Յաճախեցոյց արկ նմա սպառնալիս, զի երկիցէ. և յաւել և զայն ևս՝ եթէ "Զոր տէրն յանդիմանեսցէ ». զի ճշմարտեալ գիտասցէ Աքար՝ եթէ ոչ կարասցէ զերծանել և ապրել ։ Իսկ իբրև յանդիմանեցաւ ազգն Աքարայ՝ և Աքար ոչ երկեաւ, յանդիմանեցաւ և ազգատոհմն՝ և նա ոչ զահի հարաւ, յանդիմանեցաւ և տունն իւր՝ և նա ոչ ամաչեաց, ապա իբրև ձեռն արկին և կալան զԱքար, այն՝ որ առանձինն ընդ ինքն և ընդ Յեշուայ ոչ կամեցաւ խոստովանել վասն իւրոյ գողութեան, յանդիման Յեշուայ և ամենայն ծերակոյտ ժողովրդեանն ակամայ կամօքն՝ իբրև ոչ կամէր՝ եկն խոստովանել վասն նզովածին, որ 'ի վրանի նորա թաղեալ կայր ։

Իսկ կինն և որդիքն նորա զի՞ մեռան ։ Վասն զի գիտակ էին գողութեանն նորա, և ոչ կամեցան խոստովանել ։ Եւ զի՞ քարկոծեցան դարձեալ ստացուածք նորա ։ Զի արկցէ զահ և զերկիւղ 'ի վերայ ժողովրդեանն. զի իբրև տեսցէ ժողովուրդն թէ զորպիսի զինչս և զմեծութիւն ունէր նա, յաճախեսցի ցասումն սպառնալեաց նոցա 'ի վերայ նորա ։ Զի ոչ եթէ վասն աղքատութեան ինչ անց նա ընդ նզովսն, այլ վասն ագահութեան. քարկոծեաց զնա ժողովուրդն, զի բաւա-

կան լցին նմա քարակոյտն՝ որում ոչն եղև նմա բաւական տոպցուածքն որ յԵգիպտոսէն էին և որ 'ի Թագաւորացն ամովրհացւոց աւարի առեալ էր նորա։

Իսկ իբրև անցուցին զնզոմն 'ի միջոյ իւրեանց, ելին 'ի վերայ Գեհայ և հրձիգ արարին զնա։ Եւ զի հրամայեաց նստել 'ի դարանի 'ի վերայ փոքր քաղաքին, վասն զի ուսուսցէ որդւոցն Իսրայէլի զտեղեկութիւն ճարտարութեան պատերազմի։ Եւ զի հրամայեաց դարձուցանել զնիզակն զոր ունէր 'ի ձեռին իւրում Յեսու, նշան ետ այնոցիկ՝ որք դարանամուտքն էին, եթէ յորում ժամու պատշաճ էր նոցա ելանել 'ի դարանէ անտի իւրեանց։ Եւ զի ասաց՝ եթէ "Ոչ դարձոյց Յեսու զձեռն իւր՝ որով բարձեալ ունէր զնիզակն, մինչ զի կոտորեցին զամենայն բնակիչսն Գեհայ„. իբրև այն՝ զի ասէ, թէ "Ի կարկառել ձեռացն Մովսիսի կոտորեաց Յեսու 'ի սուր սուսերի համօրէն զամաղէկացիսն„։

Իսկ սեղանն՝ զոր շինեաց Յեսու տեառն 'ի լերին անդ Գաբաղայ, թէպէտ և զհրամանն Մովսիսի կատարէր նա, այլ ոչ եթէ առ 'ի մատուցանել զողջակէզսն շինեաց զնա. զպատուիրանսն օրինացն գրէր 'ի վերայ նորա, զի ցուցցէ և յայտ արասցէ, զի թէպէտ և օրէնք էին ժամանակեան, այլ և օրէնք էին հասարակաց։ Քանզի ժողովրդեանն, տախտակօք՝ որ 'ի տապանակի անդ էր, ետ զօրէնսն. հեթանոսաց, քարամբքն՝ որ 'ի վերայ սեղանոյն եդեալ էր, գրեաց և ետ զնա։ Ընթերցան անդ առաջի ժողովրդեանն զօրէնս, զի և այսու զհրամանս Մովսիսի կատարեսցէ։ Ընթերցաւ դարձեալ զօրհնութիւս և զանէծս նորա. զի վասն օրհնութեանն փութասցին պահել զպահպանութիւն օրինացն, և վասն անիծիցն նորա զահի հարեալ երկիցեն՝ առ 'ի հարկանել ընդ ոտն զհրաման պատուիրանի օրինացն։

Յաւամ եդևն, ապա արարին քանանացիքն գալ միագունդ միահամուռ միաժողով տալ զմարտ պատերազմի ընդ Իսրայէլի։ Իսկ բնակիչք գաբաւոնացւոց[1] ոչ անկան 'ի խորհուրդս հեթանոսաց՝ որ շուրջ

1 Միւս օրինակն Գաբաւոնացն։

վնորքոք բնակեալ էին, վասն զի զարհուրեցան 'ի դի-
պաց անտի՝ որ ինչ եղև որդւոցն Երիքովի և որդւո-
ցըն Գէհայ ։ Եւ խորամանկեցան պաշարաւն և խա-
բեպատիր զգեստուք և սուտ բանիւք, զի մարթաս-
ցեն գտանել զհնարս խաղաղութեան յեշովայ և յիս-
րայելացւոց, որով կարիցեն կեալ զկեանս ժամա-
նակեան ։ Բայց ամենայն խորամանկութիւնք նոցա,
յոր ապաւինեցանն, եթէ 'ի հեռի աշխարհէ եմք
մեք. վասն զի լուան զի ասացաւ Մովսիսի՝ եթէ "Մի
դիցեն ուխտ ընդ բնակիչսն քանանացւոց, այլ կո-
տորելով կոտորեսցեն զնոսա. և ընդ այնոսիկ՝ որ
յանգս Արածանի գետոյ իցեն, արասցեն խաղաղու-
թիւ, եթէ կամեսցին լինել նոցա հարկատու՝ կալ նո-
ցա 'ի ծառայութեան,, ։ Իսկ իբրև տեսին որդիքն Իս-
րայէլի զգաբաւոնացիս, վասն բանիցն իւրեանց և
զգեստին, և պաշարին, հաւատացին եթէ 'ի հեռաս-
տանէ են նոքա. ետուն նոցա զօրհնութիւ[1], և արա-
րին ընդ նոսա խաղաղութիւ, մանաւանդ զի ասացին
եւս թէ 'ի լուր տեառն եկաք մեք. "Լուաք, ասէ,
զամենայն ինչ զոր արար յեգիպտոս և ընդ երկուս
թագաւորս ամովրհացւոց,, ։ Ետուն նոցա զաջն խա-
ղաղութեան իբրև ոչ հարցին 'ի բերանոյ տեառն ։

Արդ յետ երից աւուրց եկին որդիքն Իսրայէլի
և բնակեցան 'ի գեօղս նոցա. եղև ամբոխ մեծ 'ի ժո-
ղովրդեանն սպանանել զնոսա ըստ հրամանացն Մով-
սիսի. բայց ոչ թողին մեծամեծք ժողովրդեանն վասն
երդմանն՝ զոր երդուան նոցա ։ Եւ զի ապրեցուսցէ
զնոսա Յեսու 'ի տրտմնջոյ ժողովրդեանն, յանիծանել
անդ իւրում օրհնեաց զնոսա, արար զնոսա փայ-
տաբերս և ջրկիրս 'ի տուն[2] տեառն ։ Զի այնուքիկ որ
ոչ կամէին թողուլ զնոսա կենդանի 'ի մէջ իւրեանց,
յանուն անիծից արար զնոսա կցորդս և զովօղս սպա-
սաւոր քահանայիցն տան տեառն ։

Արդ գաբաւոնացիքն որ հազիւն ապրեցան 'ի սրոյ
սուսերի իսրայէլացւոց, գրգռեցան թագաւորքն քա-
նանացւոց ելանել կոտորել հրձիգ առնել զքաղաքսն
գաբաւոնացւոց ։ Քանզի երկեան զահի հարան 'ի գա-

1 Միւս օրինակն հաստատութիւն ։ 2 Միւս օրինակն յատուն ։

թաւմնացուոց անտի՝ զի գուցէ միաբանեսցին ընդ Իսրայէլի, ուխտ դնիցեն և դաշինս կռիցեն՝ յորում աւուր գայցեն նոքա մարտնչել ընդ որդիսն Իսրայէլի։ Առաքեցին աղդ ապարին գաբաւոնացիքն Յեսուայ, եկն եհաս ՚ի Թիկունս օգնութեան նոցա։ Եւ երթե հարին վանեցին կոտորեցին զնոսա, և թաղում եղեն մեռեալքն որ մեռան ՚ի քարանց անտի կարկտի՝ զոր արկ տէր ՚ի վերայ նոցա, քան զկոտորեալսն և զվիրաւորսն՝ որ կոտորեցին որդիքն Իսրայէլի ՚ի սուր սուսերի, ձայն ետ և խօսեցաւ Յեսուն առաջի տեառն և առաջի գնդին իսրայէլացւոց։ Արգել զարեգակն և զլուսին առաջի սպանողացն և անկելոցն. զի անկեալքն ընկեցին նոքօք, և սպանօղքն՝ որ տեսանեն զվատթարութիւն նոցա, մի խաբեսցին ՚ի նոսա։ Արդ զդիմն հեթանոսաց և զհեթանոսն առ հասարակ յաղթեաց. զի ցուցցէ և յայտ արասցէ, եթէ Յեսուն՝ որ յաղթեաց զզօրգամն աստուածոցն ՚ի ժամ Հակատին, խորհուրդ էր Յիսուսի, այն որ հանդերձեալն էր յաղթել զամենայն դիս դիւականս հեթանոսաց ՚ի ձեռն խաչին իւրոյ։

"Կաց, ասէ, արեգակն ՚ի Գաբաւոն, և լուսին ՚ի դաշտ Իլոնի"։ Արդ նոքա գնան ըստ բանին Յեսուայ, և ոչ եթէ երկինք շրջին. զի եթէ երկինք շրջէին, ոչ հրամայէր նոա կալ և զտեղի առնուլ լուսաւորացըն, զի [1] զսատոիկ շրջուածս երկնից արգելոյր նա։ Այսուհետև լուսաւորքն գնան. և վկայէ այն՝ որ բանիւն արգել զնոսա։ Եւ զի եթէ երկինք շրջէին, զերկինս և զլուսաւորս միանգամայն արգելոյր. զի գուցէ ՚ի կացուցանելն արեգականն ՚ի Գաբաւոն, և արգելուլ լուսնին ՚ի դաշտ Իլոմի, զերկինս շրջանակաւն իւրով յայլ տեղի ածիցէ նա։ Իսկ երկու աւուրքն զոր արար Յեսու մի օր, զխորհուրդն զայնր նկարէր՝ որ ՚ի միջի օրէ երկօւս աւուրս հանդերձեալ էր առնել յաւուր խաչելութեանն իւրոյ։ Եւ զի ասաց՝ եթէ "Գրեալ էր ՚ի դպրութիւն օրհնութեանց", արգելուք այն իսկ է՝ զի արեգակն և լուսին կացին ՚ի յարկս երկնից, այս ինքն արգելան և

1 Միւս օրինակն այսպէս ունի՝ շրջանս երկնից ընդ լուսաւորսն արգելոյր նա զնա։

կացին 'ի շաւղաց գնացից իւրեանց ։

Որք կոտորեցին զԹագաւորսն հանդերձ զօրօքն իւրեանց . և նոքա՝ որ կոտորեցան վասն պատուիրանազանցութեան, երեսուն և երկու արք կոտորեցան 'ի նոցանէն 'ի ձեռն որդւոցն Գայեայ ։ Իբրև պահեցին զհրաման պատուիրանին մեծ կոտորածիւն՝ զոր արարին 'ի զօրսն բազմաժողովն հինգ Թագաւորացըն, ոչ մի այր յիսրայելացւոցն վնասեցաւ[1] ։ Զայսուսիկ Թագաւորս հանդերձ զօրօք իւրեանց կոտորեաց Յեսու, և զաշխարհս նոցա հար վանեաց 'ի սմբակս երիվարաց, և ոչ մնաց գոնեայ գեօղ մի փոքրիկ՝ որ ապրեցաւ 'ի նոցանէն՝ բայց Թէ Գաբաւոն, զոր ինքն կացոյց պաշտել ծառայել Իսրայելի ։

Իսկ զի ասաց՝ եԹէ "ի տեառնէ եղև այս", զի հզօրացի սիրտն Թագաւորացն քաջալերութեամբ տալ զմարտ պատերազմի ընդ Իսրայելի . յայտ առնէ և ցոյց՝ զի այնպիսիք որ հարցուկքն և դիքն իւրեանց խօստացան նոցա յաղԹութիւն, և ոչ գիտացին զի և այս 'ի տեառնէ եղև՝ ելանել կոտորել սատակել 'ի սուր սուսերի, լինել անժառանգ ։ Վասն զի ոչ հաւանեցան աշակերտել այնմիկ՝ որ զծովն բաժանեաց, և ընկղմեաց զՓարաւոն, և կոտորեաց զամովրհացիս, բաժանեաց զՅորդանան, կործանեաց զպարիսպս Երիքովի, արգել զարեգակն և զլուսին . դիքն անարիք անուանիքն՝ յորս հպարտացեալ էին քանանացիքն ։ Իսկ զի յաւել և ասաց՝ վասն զի կոտորեսցին և մի եղիցի 'ի վերայ նոցա աղաչանք[2] և պաղատանք . այսինքն՝ զի մի եղիցի 'ի վերայ նոցա խնայութիւն 'ի ժողովրդեանէ անտի ։

Յետ այսորիկ կոտորեաց զսկայազունսն զլեռնայինսն 'ի Քեբրոնէ և 'ի լեռնէն Յուդայի և Իսրայելի, և ոչ մնաց այր յերկիր որդւոցն Իսրայելի, բայց Թէ 'ի Գազա և 'ի Գադ և յԱսկողոմ փղշտացւոց . և այսորիկ կամ վասն Աբիմելէքայ և Փիքողայ՝ որ պատուեցին զաբրահամեանսն, և կամ զի փորձեսցին նոքօք որդիքն Իսրայելի, որպէս և ասացեալ իսկ է վասն նոցա ։ Իսկ իբրև ծերացաւ Յեսու, և ոչ կոտորեաց

1 Միւս օրինակին պակասեցաւ ։ 2 Միւս օրինակին [illegible] և [illegible] ։

զերկիրն ամենայն կալի , մանաւանդ զի և բաւական իսկ ոչ էին երկրին որդիքն Իսրայէլի , խոստացաւ նմա տէր , և հանգոյն զնա՝ եթէ "Ես կոտորեցից զԹագաւորսն հեթանոսաց որ մնացին „ : Բայց 'ի ժառանգութիւն Ռուբելի սպան Իսրայէլ զԲաղաամ գիտուն , իբրև կոտորեցին զիշխանս Սեհոնի՝ որ բնակեալ էին յերկրին : Արդ կէս երկրին որդւոցն Ամոնայ՝ զոր ժառանգեցին ազգքն Գադայ , ոչ եթէ յորդւոցն Ամոնայ առ զնա Մովսէս , այլ Սեհոն արքային Եսեբոնայ առեալ էր զնա . և առ 'ի նմանէն , և ետ որդւոցն Գադայ : Եւ ժողովուրդն Թլփատեցաւ 'ի Գաղգաղայ . անդ նստան մինչև կոտորեցին զամենայն Թագաւորսն քանանացւոց անդէն 'ի Գաղգաղայ :

Ասաց Քաղեբ որդի Յեփոնեայ ցՅեսու . դու քեզէն գիտես զպատգամսն՝ զոր խոստացաւ տէր վասն իմ և վասն քո . այս ինքն , զի մեք միայն մնացաք յերկիրն պարգևաց յամենայնէ՝ որ ելին յԵգիպտոսէ . և ետու Ճշմարիտ պատասխանի Մովսիսի , որպէս էր 'ի սրտի իմում , և ոչ ինչ զահի հարայ խօսել զայլ ինչ 'ի շրթունս իմ յերկիւղէ ժողովրդեանն՝ որ խռովեցուցին լրտեսք ընկերք իմ : Եւ վասն զի ասաց Մովսէս , եթէ "Երկիրն զոր կոխեսցես դու ոտիւք քովք՝ քեզ և որդւոց քոց եղիցին յաւիտեան „ , և ահա եղև աւասիկ : Արդ քառասուն և հինգ ամ է յորմէ հետէ ասաց տէր զբանս զայս ; և այս որ ութսուն և հինգ ամ է իմ , և կար զօրութեան իմոյ յայնժամ և այժմ նոյն է 'ի մարտ պատերազմի . այս ինքն , որ մանկացոյց զգեղ կերպարանացն Մովսիսի վասն վայելչութեան փառացն զոր ընկալաւ ինքն , մանկացոյց և զզօրութիւն իմ վասն օրհնութեան նորա : Եւ այժմ տուր ինձ զլեառնդ զոր ասաց տէր , և դու քեզէն լուար , այս ինքն "Զտեղի զոր կոխեսցեն ոտք քո՝ քեզ տաց „ : Թէպէտ և անուանիք քաջութեամբ և սկայազունք 'ի մարտ պատերազմի , և քաղաքք ամրաշէնք ամրապարիսպք անյաղթք թուին՝ եթէ կայցեն անդ , բայց սակայն դու տուր ինձ քոյով բանիւդ , զի եղիցի տէր ընդ իս , որպէս և խոստացաւ . և կոտորեսցից զնոսա ; և ժառանգեսցից զերկիր նոցա , որպէս զի ասաց ցիս յայնժամ աւուր իբրև դարձաք մեք 'ի լրտեսութենէ երկրին :

Եւ ետ Յեսու Քաղեբայ զՔեբրոն 'ի ժառանգութիւն, այնոցիկ՝ որ 'ի վերայ տկար եւ անպիտան որդւացըն Գեհայ զահի հարեալ երկնչէին ելանել 'ի վերայ Քեբրոնի սկայազանցն՝ յաներկիւղ յանհոգ յապահով վստահութեամբ փութացեալ ելանէին մարտընչել. կոտորեաց Քաղեբ 'ի սուր սուսերի խուռն զերիս որդիս սկայազանցն: Դարձեալ թէպէտեւ զթագաւորն Յեբուսայ սպան Յեսու, այլ զբնակիչսն յեբուսացւոց՝ զի նա ինքն է Երուսաղէմ՝ ոչ կոտորեցին որդիքն Յուդայ: Եւ եփրեմեանք ոչ կոտորեցին զքանանացիս որ 'ի Գազարն [1] էին. բնակեցան ընդ նոսա եւ եղեն նոցա հարկատուք 'ի ծառայութէ:

## ԳԼՈՒԽ Դ

ՅԱՅՆՄ ժամանակի ժողովեցան որդիքն Իսրայէլի 'ի Սելով, եւ եդին անդ զվրան ժամուն, եւ չոգան արք յազգաց եւ գրեցին զգեօղն յեւթն բաժինս. եւ վիճակեաց նոցա Յեսու վիճակս 'ի Սելովմ առաջի տեառն: Առ եւ Յեսու գեօղ մի 'ի լեառնն եփրեմեան, եւ շինեաց եւ բնակեցաւ 'ի նմա: Եւ զի ասաց դառնալ սպանողին՝ որ սպանանէ ակամայ կամօքն 'ի մեռանել մեծի քահանային, յայտ արար եւ ցոյց՝ զի զգուշասցին եւ յայնոցիկ չարեաց՝ որ ակամայ կամօքն մարդոյն գործին: Եւ իբրեւ զատան մեկնեցան քաղաքքն ապաւինութէ, ետուն զքաղաքս 'ի մէջ ազգացն առ 'ի բնակութ՟ի քահանայից որդւոցն Ահարոնի՝ երեքտասան քաղաքս գեղիւք եւ ագարակօք հանդերձ: Եւ այլոց որդւոցն Կահաթու գեօղս եւ քաղաքս տասն ագարակօք հանդերձ: Եւ որդւոցն Գեթսոնի երեքտասան քաղաք ագարակօք հանդերձ: Եւ որդւոցն Մերարեայ երեքտասան քաղաքս ագարակօք հանդերձ: Եւ ետ տէր ա՟ծ Իսրայէլի զերկիրն ամենայն եւ ժառանգեցին, եւ ոք 'ի թշնամեաց նոցա ոչ կալաւ զդէմ նոցա, որպէս եւ խոստացաւ. եւ ոչ խափանեցաւ բան մի յամենայն բարեացն՝ զոր ասաց

1 Միւս օրինակն 'ի Գազարն:

տէր տանն Իսրայէլի ։ Բայց նոքա զուխտիւն՝ որ ուխտեցին պաշտել զտէր, մօտ 'ի մօտոյ վաղվաղակի անդրէն անցին, և փոխեցին զդիմն դիակունս ընդ ա̃յ կենդանւոյ ։

Օրհնեաց դարձեալ տէր և զգունդն Ռովբէնի, զի անցին առաջի եղբարց իւրեանց կազմ վառեալս 'ի թիկունս ազգի իւրեանց, արձակեալ զնոսա դառնալ 'ի վիճակ ժառանգութե̃ իւրեանց ։ Եւ իբրև բաժանեցաւ երկիրն յինն և կէս ազգաց, բայց սակայն ընչիւք և մեծաւ աւարաւ դարձան. որպէս և 'ի Մովսէսէն կանխեցան և օրհնեցան ։ Արդ 'ի գալն իւրեանց 'ի ժառանգութի̃ անդր, շինեցին իւրեանց սեղան, և առաքեցին առ նոսա յինն և կէս ազգքն զՓենեհէս քահանայ, և զտասն նահապետսն ազգաց, և ասեն ցնոսա. ընդէ՞ր 'ի ձեռն սեղանոյդ զոր շինեցէք, ցուցէք վասն ձեր և յայտ արարէք՝ եթէ զատեալ և որոշեալ էք դուք յերկրպագութենէն տեառն ։ Քանզի համարեցան նոքա, եթէ նախանձելով ինչ նախանձեցաւ Ռովբէլ անդրանիկ ընդ կրտսերայն Բենիամինի, զի բնակեալ էր տէր 'ի մէջ ուսոց նորա, և վասն այնր շինեաց զսեղանն յիւրում ժառանգութե̃. զի վասն այսորիկ պահանջէին նոքա զպատասխանի տալ 'ի նոցին գնդէն ռովբէլեանց ։

Արարին նոքա անդրէն պատասխանի և ասեն. եթէ զիսրայէլ՝ որ երկիր պագանէ առաջի ճշմարիտ սեղանոյն, թէ զիարդ և կամ որպէս պագանէ, ինքն ծածկագէտն գիտէ. և զմեզ թէ վասն էր շինեցաք զայս սեղան, ինքն գիտէ. զի ոչ եթէ առ 'ի դառնալ 'ի տեառնէ շինեցաք զնա, այլ զի մի ասիցեն վաղիւ որդիքն ձեր ցմեր որդիսն՝ եթէ ոչ գոյ ձեզ մասն և բաժին 'ի յարկս տեառն, ահաւասիկ Յորդանան զատանէ և որոշէ ընդ մեզ և ընդ ձեզ ։ Շինեցաք մեզ 'ի նմանութի̃ սեղանոյ, զի եղիցի առ 'ի վկայութի̃ որդւոց մերոց. զի առաջի այնր ճշմարիտ սեղանոյն երկիր պագանէին հարքն մեր 'ի ձեռն պատարագաց խոյոց և զուարակաց, և առաջի այսր 'ի ձեռն պատարագաց մտաց և խորհրդոց ։ Արդ 'ի նշան արարաք. շինեցաք զսեղանս զայս, զի գիտասցեն ծանիցեն ազգքն մեր՝ զի տեառն պագանեմք երկիր, և

գնասցեն ընդ հետ շաւղաց գնացից մերոց. և ոչ եթէ զի արդէն իսկ խոտորիցիմք 'ի տեառնէ՝ շինեցաք զնա որպէս դուք կարծէք: Այդ զի մի՛ տասցեն ցնոսա րուբինեանք՝ եթէ ձեզ զի՞ փոյթ է եթէ դառնամք 'ի տեառնէ, ցուցին նոքա՝ զի վասն անձանց նոցա տրտմեալ էին, զի մի՛ հարցին և մաշեսցին: “Ոչ, ասէ, սրբեցաք մեք 'ի մեղացն Փեղփեգովրայ„. այս ինչն ոչ կատարեցաւ խրատն՝ որ եկն 'ի վերայ մեր ամենեցունն վասն նուաղ սակաւուցն՝ որ երկիր պագին Փեղփեգովրայ, և ոչ առ մխիթարութիւն ժողովլ բանակացն մերոց յանկելոց վիրաւորացն՝ որ կոտորեցանն 'ի մէնջ վասն մեղացն Աքարայ: Նոքա առին կալան զնոցա հաւանութիւն, և եկին միաբանեցին ցածուցին զմանկունս ժողովրդեանն իւրեանց, որք ժամ եդեալ ժողովեալ պատրաստեալ էին գալ կռուանել սատակել զնոսա:

Մերձեցան աւուրք Յեսուայ մեռանելոյ, և ասէ ցնոսա. տեսէք աւադիկ, զի ոչ ինչ պակաս արարի ձեզ, և ոչ մի բան յամենայն բանից բարեաց զոր ասաց տէր ածել 'ի վերայ ձեր զբարիսն՝ զոր խոստացաւ ձեզ: Սոյնպէս ածէ 'ի վերայ ձեր զդատաստանս չարեացն՝ զոր հատ համառօտիւք 'ի վերայ ձեր, եթէ անցանիցէք զպատուիրանօք նորա: Եւ հեթանոսքն ազգացն՝ որ մնացին, եթէ խառնիցէք ընդ նոսա խնամութիւն փեսայ լինել և հարսն առնել 'ի նոցանէն, ոչ կոտորեսցէ զնոսա տէր յերեսաց ձերոց, որպէս և խոստացաւ ձեզ. և լինիցի ձեզ յորոգայթս պատնկութն և 'ի գայթագղութի կռապաշտութն, և կորնչիցիք յերկրէ. վասն զի նմանեցարուք դուք գործովք ձերով բնակչաց երկրիս: Եւ ժողովեաց զնոսա Յեսու 'ի Սիւքէմ առաջի վրան ժամուն՝ ասելով ցնոսա. “Այսպէս ասէ տէր. յանցս Արածանուոյ գետոյ բնակեցան Թառա և Նաքովր, և պաշտեցին զդիս դիւականս. և ես Աբրահամու և որդւոց նորա զՔանան, և Եսաւայ զլեառն Սէիրա„: Եւ սկսան այնուհետև երկրորդել զգործսն և զերախտիսն՝ որ եղեն առ նոսա 'ի ժամանակէն Յակովբու մինչև յօր մահուանն Յեսուայ: Եւ յետ այսորիկ ասէ ցնոսա. “Անցուցէք զդիսն օտարոտիս, որոց տուեալն Նաքովրայ՝ որ 'ի Խա-

ւան [1], երկիր պարգևանէր նոցա, և հարք ձեր յեգիպտոս պաշտեցին զնոսա, և պաշտեցէք զտէր։ Արդ ընտրեցէք ձեզ մինչ ես կենդանի եմ, զո՞ պաշտէք. զդիմն զոր պաշտեցին հարքն ձեր, եթէ զաստուածս ամովրհացւոց՝ որ մտէք և բնակեցէք 'ի մէջ նոցա „։ Եւ զի յորդորեսցէ զնոսա երթալ զկնի նորա, ասաց՝ թէ "Ես և տուն իմ զտէր պաշտեմք „։

Ուխտ եդին և դաշինս կռեցին և ընդ Յեշուայ յերկիրն քանանացւոց, որպէս և ուխտեցին ընդ Մովսէս յանապատի անդ պաշտել զտէր։ Եւ ասեն ցնա. "Զտէր պաշտեսցուք, և նմա երկիր պագցուք, որ կորոյսն առաջի մեր զամովրհացիսն, և աստուածքն նոցա ոչ կարացին լինել նոցա թիկունք օգնականութեան „։ Երկրորդեցին դարձեալ և ասեն առ 'ի հաստուցանել զկամսն Յեշուայ, եթէ ոչ լինի մեզ այլ պաշտօն դից դիականն, բայց եթէ զտէր պաշտեսցուք, և զձայն նորա լուիցուք։ Եւ կացոյց Յեշուայ զուխտ կտակարանաց ժողովրդեանն յաւուր յայնմիկ։ Եւ զորպիսի՞ կտակարանս. բայց եթէ զայս՝ զի ուխտեցին և երդուան եթէ զտէր պաշտեմք մեք։ Եւ իբրև գրեաց զբանս նոցա, կանգնեաց զարձանն 'ի տան սըրբութեան և ասէ. "Արձանս այս՝ որ ոչ անցանէ, եղիցի 'ի վկայութիւն. վասն զի ինքնին լուաւ զբանս տեառն՝ որ խօսեցաւ ինև ընդ ձեզ, զի մի՛ ստեսջիք յամենայն բանիցն՝ զոր խօսեցայք առաջի նորա այսօր „։

Պաշտեցին որդիքն Իսրայէլի զտէր զամենայն աւուրս կենաց Յեշուայ և ծերակոյտ ժողովրդեանն՝ որ կեցին ըստ նմանէն։

1 Յօրինակին խաւան։

## ԿԱՏԱՐԵՑԱՒ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅԵՇՈՒԱՅ ՈՐԴՒՈՅ ՆԱՒԵԱՅ

# ՍՐԲՈՅՆ ԵՓՐԵՄԻ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

## ԴԱՏԱՒՈՐԱՑ

## ՏԵԱՌՆ

# ԵՓՐԵՄԻ

## ԽՈՐԻՆ ԱՍՈՐՒՈՑ

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

# ԳՐՈՑ ԴԱՏԱՒՈՐԱՑ

ԳԻՐՔ ազգաց դպրութիւն է դատաւորաց, որ կացին 'ի ժողովրդեանն յետ մահուանն Յեսուայ որդւոյ Նաւեայ:

Գրեցան 'ի գիրս յայսմ առաքինութիւնք նահատակութեանց, և փրկութիւնք զոր արար մի մի 'ի նոցանէ 'ի նահապետաց անտի ժողովրդեանն և 'ի հեթանոսս:

Գրեաց և զժամանակս առաջնորդութեան նոցա՝ թէ զորչափ ինչ ամս մի մի 'ի նոցանէ դատեաց զժողովուրդն: Քանզի որպէս յայտ է սկիզբն առաջնորդութեան Յեսուայ 'ի կատարումն մարգարէութեան և առաջնորդութեանն Մովսիսի, սոյնպէս և խառն է սկիզբն առաջնորդութեան և դատաւորութեան դատաւորացն՝ որք կացին յետ Յեսուայ, 'ի կատարումն առաջնորդութեան և դատաւորութեանն Յեսուայ:

Զայս և որ սոցին նման են, գրեալ է 'ի դպրութեան դատաւորաց:

# Ի ՍԿԻԶԲՆ ԲԱՆԻՑ ԻՒՐՈՑ ԱՅՍՊԷՍ ԱՍԱՑ

## ԳԼՈՒԽ Ա

"Եւ յետ մահուանն Յեսուայ խնդրեցին որդիքն Իսրայէլի 'ի տեառնէ և ասեն. ո՞վ ելցէ մեզ զօրագլուխ 'ի մարտ պատերազմի տալ ճակատ ընդ քանանացիսն: Եւ ասէ տէր. Յուդայ ելցէ,, . քանզի 'ի նմա իսկ խոստացեալ է առաջնորդութիւն նահապետութեան ըստ օրհնութեան Յակովբայ: "Եւ պատասխանի Յուդայ և ասէ ցՇմաւոն. եկ ընդ իս յիմում վիճակիս 'ի թիկունս օգնականութեան 'ի մարտ պատերազմի,, . այս ինքն եկ ընդ իս տալ ճակատ ընդ քանանացիսն, որ բնակեալ նստին 'ի ժառանգութեանն' որ եհաս ինձ վիճակաւն. և ապա յետ այսորիկ տացուք ճակատ և մարտիցուք ընդ ընկերս նոցին, որ բնակեալ նստին 'ի ժառանգութեան' որ եհաս քեզ 'ի վիճակի անդ:

Զու արարին խաղացին գնացին կոտորեցին զքանանացիսն. հատին զթաթս ձեռաց և զոտից զարքային Բեզեկայ, որ եւթանասուն թագաւորք թաթահարք ձեռաց և ոտից իւրեանց քաղէին հաց 'ի ներքոյ սեղանոյ նորա: Արդ այսու միով, որ յայտնեցան անօրէնութիւնք նորա ընդ բաժին պատուհասից' որ եկն 'ի վերայ նորա, յայտ եղև' թէ ամենայն քանանացիքն' որ կոտորեցան 'ի մեղս և յանօրէնութիւն իւրեանց, սատակեցան ջնջեցան յերկրէ իւրեանց: Եւ վասն զի ոչ կամեցան որդիքն Իսրայէլի ջնջել սատակել զքանանացիսն, որպէս և հրամայեցաւ նոցա, ել հրեշտակ տեառն 'ի Գաղգաղայէ: կամ Յեսու էր այն, որ ցարդ եւս 'ի բանակի անդ էր' որ բնակեալ նստէր 'ի Գաղգաղայ. և կամ այլ մարգարէ էր, զի

Վասն արքանեկութեանն իւրոյ կոչեցաւ հրեշտակ. և կամ՝ ճշմարտիւ իսկ հրեշտակ էր, զի առաքեցաւ առ նոսա 'ի նմանութիւն առն։ Զի թէպէտ և ասաց 'ի սկիզբն գրոցն աղգաց, եթէ "Յետ մահուանն Յեշուայ" 'ի սկզբան անդ գրոց, այլ գոյ ճառն Յեշուայ 'ի սկիզբն պատմութեանն. և ապա դառնայ և գրէ զմահուանէ նորա։ Յանդիմանեաց զնոսա վասն քանանացւոցն, զի թողին. և լաց ժողովուրդն առաջի տեառն, վասն զի ցարդ ևս ոչ էր թողեալ նոցա։

Խօսել սկսաւ տէր և ասէ. "Վասն զի անց ժողովուրդն զուխտիւ իմով, ոչ կորուսից սատակեցից զհեթանոսսն՝ զոր եթող Յեշուայ"։ Եւ արդ որ ուխտ էր այն՝ զորով անցին, բայց եթէ զայնու՝ զոր ուխտն եդին և դաշինս կռեցին, զի մի արկցեն խնամութիւն ընդ քանանացիսն։ Քանզի հեթանոսքն որ մնացին, նոքօք փորձէր զնոսա տէր՝ եթէ պահեն զճանապարհս տեառն ըստ ուխտին զոր ուխտեցին, եթէ ոչ։ Բայց հեթանոսք որ թողան՝ այնք են, որ ընաւ ամենևին ոչ մարտեաւ ընդ նոսա Յեշուա. վասն զի ոչ էր կարօտեալ ինչ ցարդ ևս յերկիր նոցա. զի ասէր, թէ գիտասցեն և իմասցին ազգն որ 'ի յետոյն գալոց են՝ ուսանել զմարտ պատերազմի. քանզի ոչ գիտէին առաջինքն զտեղեկութիւն ճակատի 'ի մարտ պատերազմի, վասն զի ինքն մարտնչէր փոխանակ նոցա, և առանց աշխատութեան և խորամանկութեան մատնէր զթշնամիս իւրեանց 'ի ձեռս նոցա։

Արդ խօսեցին որդիքն Իսրայէլի խնամութիւն ընդ քանանացիս. 'ի նոցանէն առին, և նոցա ետուն, և խոտորեցան զկնի Բահաղու և դիցն օտարաց, և մատնեցան 'ի ձեռս Քուսարսաթեմայ արքային ասորւոց, և ծառայեցին նմա ութ ամ։ Եւ կացոյց տէր փրկիչ զԳոթոնիէլ զորդի Կենեզեայ՝ զեղբայր Քաղեբայ զկրսերն։ Եւ սպան զՔուսար անօրէն՝ որ անօրինեցաւ 'ի ժողովրդեանն։ Եւ հանգեաւ երկիրն քառասուն ամ։

Դարձեալ արարին որդիքն Իսրայէլի չար առաջի տեառն, և մատնեաց զնոսա տէր 'ի ձեռս Եգղովմ արքային մովաբացւոց։ Կացին 'ի ծառայութեան, և պաշտեցին զնա ութ և տասն ամ։ Ապա բողոք կալան

որդիքն Իսրայէլի առաջի տեառն ա̃յ, և յարոյց նոցա տէր փրկիչ զԱւովդ որդի Գերեայ՝ որդւոյ Ամենեայ։ Եւ սպան զԵգղոմ արքայ մովաբացւոց, և տասն հազար այր վառեալ 'ի զօրաց անտի նորա։ Եւ դադարեաց երկիրն ութսուն ամ։ Ապա յետ նորա եղեւ նոցա Սամեգար որդի Անաթայ՝ փրկիչ, այն՝ որ կոտորեաց յայլազգեացն վեց հարիւր այր մաճիւն արօրոյ։

Ապա դարձեալ յաճախեցին որդիքն Իսրայէլի գործել զչարիս առաջի տեառն. և մատնեաց զնոսա 'ի ձեռն Յաբին արքային քանանացւոց և զօրավար զօրացն նորա Սիսարա։ Եւ հար վանեաց հնազանդեաց զժողովուրդն իսրայէլացւոց, և կացոյց 'ի ծառայութեան քսան ամ։ Եւ Դեբովրա մարգարէ՝ կին Աղփիդովթայ, և վասն մարգարէութեան իւրոյ ինքն դատէր զԻսրայէլ։ Եւ կոչեաց զԲարակ և ասէ ցնա. ո՞չ հրամայեաց քեզ տէր, յայտ արար՝ եթէ քեզ ետ տէր հրաման վարել ընդ քեզ տասն հազար յորդւոց Նեփթաղիմայ յազգէ քումմէ, և յորդւոցն Զաբուղոնի սահմանակցացն քոց, և եկեսցեն ընդ քեզ 'ի մարտ պատերազմի 'ի վերայ Սիսարայ, և մատնեցից զնա 'ի ձեռս քո։ Բայց մի իցէ եթէ պարծեսցիս ինչ, վասն զի 'ի ձեռն կնոջ, այս ինքն 'ի ձեռն Յայելի կնոջ Քաբերայ կենացւոյ աներոյն Մովսիսի մատնեսցէ տէր զՍիսարա։

Իսկ իբրև հրձիգ եղեն և կոտորեցան, և առին յաւարի զկառսն Սիսարայ 'ի ձեռն Բարակայ, և մեռաւ Սիսարա 'ի ձեռն Յայելի, օրհնեցին Դեբովրա և Բարակ որդի Աբենեէմայ յօր փրկութեան իւրեանց յասել։ Եւ զիա՞րդ օրհնեցին երկոքեան իբրև ինքն Դեբովրա օրհնէր և մարգարէանայր. բայց օրհնեաց Բարակ և ոչ օրհնեաց. օրհնեաց ընդ նմա 'ի սկզբան օրհնութեան՝ զոր ասէր ընդ նմա 'ի յօր կոտորածին Սիսարայ, իբրև զայն՝ թէ “Օրհնեցէք զտէր, զի փառօք փառաւորեալ է„. զոր օրհնեաց Մարիամ համադերձ կանամբք յօր ընկղմելոյ եգիպտացւոցն։ Բայց ոչ օրհնեաց ընդ նմա. վասն զի Դեբովրայ էր օրհնութիւն և ոչ Բարակայ։ “Վրէժխնդրութի՛ն, ասէ, զոր խնդրեաց Իսրայէլի օրհնութ̃ք ժողովրդեանն՝ որ օրհնեցին զտէր„. յայտ արար, զի վասն վրէժխնդրու-

թեն՝ զոր խնդրեաց Իսրայէլի 'ի Սիսարայ և 'ի զօրա-ցըն՝ որհնեցին ժողովուրդն զօրհնութիւնս զայս տեառն : Արդ զայս 'ի սկիզբն օրհնութեան ասացին երկոքեան . և աստի և անդր ինքն Դեբովրա ասէր զոր ինչ ա-սաց :

"Լուարուք թագաւորք՝ որ նմանէքդ Յաբինայ, և պարծունք[1] պետք և զօրավարքդ՝ որ նմանէքդ Սիսա-րայ . Ես զտեառն օրհնութիւն օրհնեցից ,, . վասն գոր-ծոցն զոր գործեաց ընդ հալածիչս ժողովրդեանն : "Եւ տասնաղեանն սաղմոսարանեան սաղմոս ասացից Աստուծոյ ,, . վասն որոյ իրիք հանդերձեալ է տա-նել աստի և անդր ընդ թշնամիսն իսրայէլացւոց : Եւ արդ սկսաւ 'ի պատճառ այսր փրկութեան յիշատակել զառաջին երախտիս փրկութեանն : "Տէր, ասէ, յե-լանելն քում 'ի Սէիրայ ,, . վասն առաջին փրկու-թեանն՝ որ եղև Յակովբայ հօր նոցա, Իսաւայ՝ որ բնակեալ նստէր 'ի Սէիր, յիշատակէ : "Եւ սուրբն 'ի Փառան լեռնէ ,, . զփրկութիւն այն՝ որ եղև յեգիպ-տոս, յիշատակէ : "Իբրև գնայիր դու 'ի մէջ ան-դաստանայն եդովմայեցւոց՝ երկիր շարժեցաւ ,, հան-դերձ այլովք . զնոյն զապրուածն, որ եղև Յակովբայ յԻ-սաւայ և յայլոց թագաւորաց հեթանոսաց՝ որք ոչ ինչ մեղանչեցին նմա վասն կոտորածոյն Սիքեմայ, յիշատակէ : "Լերինք շարժեցան առաջի տեառն, և լերինք դողացան իբրև զլեառն Սինայ ,, . զհսկայա-զունսն՝ որ էին ընդ Եսաւայ, և զթագաւորսն հե-թանոսաց՝ որ բնակեալ նստէին շուրջ զՍիքեմաւ, յորջորջեաց 'ի լերինս :

"Յաւուրս Սամագարայ որդւոյ Քանանաթայ ,, . այն որ մաճիւն արօրոյ կոտորեաց յայլազգեաց վեց հարիւր այր յաւուրս Յայէլի՝ որ առաքինեցաւ և սպան նահատակութեամբ զՍիսարա : "Հատան կորեան ճանապարհք քաղաքացն և ճանապարհքն ընդ որս երթայինն ,, . տեղին՝ ուր բնակեալն էր սրբութիւնն, թողան լքան շաւիղքն հարդեալք, և գնացին զարտա-քի յերկիւղէ կառացն Սիսարայ : "Հատան մնացին գաւառք Իսրայէլի ,, այս ինքն 'ի Գաղաւթ . Ելին 'ի բնա-

1 Միւս օրինակին պարոնք :

կուռ գեօղքն և քաղաքքն և ագարակքն՝ որ անպարիսպ բնակեալ նստէին. մինչ զի եկի հասի կացի ես Դեբովրա, և մարգարէացայ և զօրացուցի զԲարակ։

«Ընտրեսցուք ա͞ծ նոր, կամ Ցայել նոր». վասն զի 'ի ձեռն զածածկողին [1] սատակեաց ա͞ծ զՍիսարա զհսկայազնն հեթանոսաց։ Կամ զի թէ 'ի ձեռն դրատերն հեթանոսաց եղև փրկութիւն հէբրայեցւոցն, կամ մարգարէն որով մարգարէացաւ յաւուրս փըրկութե Բարակայ վասն մեծ փրկութեան՝ որ հանդերձեալ էր լինել 'ի ձեռն Գեդէոնի. քանզի և անդնոր գործեցաւ, զի 'ի ձեռն Ջուրցն փորձեցան և ընտրեցան սակաւքն և նուաղքն, փորձեցան քննեցան և բազումք անարգեցան։ Եւ կամ թէ այսու նորն սափորոցն և կանթեղացն և փողոցն, «Ընտրեսցուք, ասէ, Աստուած նոր». այս ինքն եղիցի նոր ինչ, այնու՝ որ 'ի Ջուրսն եղև, և կամ այնու՝ որ 'ի կանթեղսն և 'ի փողսն եղև։ Եւ ապա եղիցի կոտորածն 'ի մադիանացիս. այն՝ որ առակեցաւ 'ի նկանակն գարեղէն։ «Եւ սուսեր և գեղարդն մի երևեսցի 'ի մէջ քառասուն հազարացն Իսրայէլի». վասն զի այս քառասուն ամ, զոր տիրեաց նոցա Բարակ, հանգչելոց էին 'ի պատերազմէ. և ոչ էր երևելոց 'ի մէջ նոցա սուսեր և գեղարդն, այն որ վառեցոյց Ցեշով զքառասուն հազարն՝ որ առաջի որդւոցն Իսրայէլի անցին յերկիրն պարգևաց։ Իսկ ըստ հէբրայեցի բարբառոյն փոխանակ այսորիկ զոր ասէս, թէ «Ընտրեսցուք ա͞ծ նոր», ասէ «Ընտրեսցէ ա͞ծ նոր դատաւորս, և ուղղեսցէ նոքօք զիրաւունս և զարդարութիւն. սուսեր և գեղարդըն մի երևեսցի 'ի մէջ քառասուն հազարացն Իսրայէլի». յայտ արար՝ եթէ յորժամ կան ուղիղ դատաւորքն, իշխէ սուր նոցա 'ի թշնամիս իւրեանց. որպէս և յաւուրս Ցեշովայ, զի վառեցոյց զքառասուն հազար։

Եւ այն՝ եթէ «Սիրտ իմ ասաց ցքննիչ», յայտ արար եթէ սիրտս իմ միաբան է ընդ վարդապետս Իսրայէլի, որք մեկնեն և ընտրեն 'ի միտս իւրեանց 'ի ժողովրդեանն օրհնեն զտէր։ «Եւ որք նստիք յէշս

1 Միւս օրինակն ծածկողին։

ապիտակս, և որ բնակեալն են յապարանս; և որք Ճանապարհորդքն են, ընդ միտ ածէք 'ի բանից այտի քննողաց»: յայտ առնէ՝ եթէ մեծամեծք և փաքունք՝ և որ 'ի չէնս նստին, և որ ընդ Ճանապարհս անցանեն, առ հասարակ օրհնեն յորժամ տեսանեն զի կատարի արդեամբք կոտորածն Սիսարայ՝ որ կանխեցաւն և ստացաւն 'ի ձեռն բանի: Եւս առաւել անկանի զարմացումն յօրհնիչս և յերգարկս[1], յորժամ տեսանեն եթէ 'ի ձեռն վատթարի և ծանակի[2] անկաւ պարծոյկ քաջամարտիկն հեթանոսաց: Իսկ ըստ հեբրայեցւոց բարբառոյն փոխանակ այնր՝ թէ «Ընդ միտ ածէք 'ի բանից քննողացն», ասէ՝ թէ «Ընդ միտ ածէք 'ի բարբառոյն փայտահարացն և Ջրկրացն[3] ստղանոյն ամենայն իսրայէլացւոց»: «Անդ տացեն զարդարութիւն տեառն»: և զի ասաց՝ թէ որ հեծեալ յէշս, հանդերձ այլովք, յայտ առնէ՝ թէ երկիրն չինի, և լինին գաւառնացիքն փայտակիրք[4] և Ջրբերք: և օրհնէ ժողովուրդն և վասն այսր առաջի դրան վրան ժամուն: «Եւ ապա եկն էջ ժողովուրդն 'ի դուռն տեառն»: վասն զի փախստեայք եղեալ էին, և 'ի դառնալն իւրեանց եկին իջին 'ի դուռն վրան ժամուն օրհնել զտէր:

«Զարթիր Դեբովրա և մարգարէաց, զարթիր զարթիր և քաջալերեաց զԲարակ, զարթիր և զարթո երթալ գերել զգերիչս իւր»: այսինքն աւերել յաւարի զաւարիչս իւր: «Յայնժամ էջ զօրագլուխն զօրավարն օրհնել առաջի տեառն»: յայտ առնէ և ցոյց՝ եթէ գալոց է Բարակ հաստուցանել զխոստովանութիւն, զարթոյց զօրացոյց զնա 'ի վերայ Յաբինու արքային քանանացւոց: Բայց ըստ հեբրայեցւոց բարբառոյն փոխանակ այնր՝ եթէ «Էջ ապրեցուցիչն օրհնել», ասէ «Յայնժամ իշխեցէ մնացորդն որ դատանեցի յիսրայէլ 'ի հսկայազնն հեթանոսաց, զի էջ ընդ խսարամին յեփրեմէ, և գործք իւր յԱմաղէկ»: Ցեղոյն՝ որ կոտորեաց զամաղեկացիսն յանա-

1 Միւս օրինակն յերգարկս:

2 Միւս օրինակն ծանաւ և պարոյկ քաջամարտիկն:

3 Միւս օրինակն Ջրակրացն:

4 Միւս օրինակն փայտբերք:

պատի ։ “Զկնի քո Բենիամին սիրով քո” , Սաւուղ , այն՝ որ կոտորեաց սատակեաց և ինքն զմնացորդս ամաղեկացւոց ։ “Ի Մաքերայ եւ քննիչն” . այս ինքն վարդապետ և ուսուցիչ ։ “Եւ ՚ի Զաբուղոնէ որ գրէին յեղէգն գրչի՝ դպիրք են նոքա” . յայտ առար և ցոյց՝ թէ դպիրքն վարդապետքն , որ մեծամեծք Իսաքարայ , միաբանեին ՚ի մարտ պատերազմի ընդ Դեբովրայ և ընդ Բարակայ ։ Եւ Իսաքար իբրև առակի ՚ի հեթանոսս . վասն զի և նոքա իբրև զԲարակն քաջ եղեն ՚ի մարտ պատերազմի ։

“Նուաքեցաւ յոտս իւր բաժինն Հռուբէլի” . այս ինքն ՚ի բաժինն Հռուբէլի նահապետ եղբարց իւրոց կարդեցաւ երթալ մարտնչել Բարակ նեփթաղիմեանց , միջնորդ եղբարց իւրոց ։ “Մեծամեծք են Ճշդուեք քննուածք սրտի” . վասն զի քննեցին հաւաքլեանք զխիստ որդւոցն՝ որ ոչն էին ծնեալ , թէ “Մի՛ , ասէ , ասասցեն որդիքն ձեր ցմեր որդիսն” ։ Սկսաւ ուսուցանել նմա , թէ “Զիա՞րդ նստիս դու ՚ի մէջ շաւղաց լսել զխանչիւն ցռուց” . այս ինքն է , զի թէ մեղիցէք և խոտորիցիք ՚ի տեառնէ , և երթիցէք ՚ի վերայ թշնամեաց ձերոց ընդ մի Ճանապարհ , ընդ եւթն Ճանապարհ փախստեայք լինիցիք յերեսաց նոցա ։

“Գաղ յանցս Յորդանանու գետոյ բնակեալ է” ՚ի բաժինն Ովգայ . և յաղթ և հզօրագոյն է քան զամենայն թագաւորս ։ Եւ Դան , զի անուանեցաւ օձ խարամանի[1] , որ հարկանէ զգարշապարս երիվարաց ։ ՚Հա գայ[2] նաւովք իջանել լինել պանդխտութեամբ ՚ի մէջ սոցա յերկիւղէն քանանացւոց ։ “Ասեր բնակեալ էր զծովեզերաւ” . զի յորժամ լսէ զհամբաւն , և նա փախստեայ լինիցի , և բնակեսցէ ՚ի խորամանս նորա” . այս ինքն յամենայն աւերակս նորա բնակեսցէ զօրուն յերկիւղէ գերեվարացն ։ “Զաբուղոնն՝ ժողովուրդն որ նախատեաց զանձն իւր ՚ի մահ” . այս ինքն զի խրոխտացաւ և ընկէց զանձն իւր ՚ի մահ ։ “Նեփթաղիմ յետ յաղթութեան իւրոյ ՚ի բարձունս ագարակաց բնակեսցէ” հնձել զհունձ , և կթել զկութ .

1 Միւս օրինակն խորամանի ։ 2 Միւս օրին · գան տանուտք իջանել.

և ոչ եթէ 'ի մէջ նաւաց նստել պանդխտութեան ։

"Լծկին թագաւորքն ժողովեցան ,, . յաւուրսն Յեշուայ ։ "Եւ եղև ընկումն նոցա 'ի վերայ Ջուրցն Մեգեդդովնեայ ,, . զի 'ի վերայ նոցա ժողովեցան ։ "Զարծաթ և զաւկի ոչ առին ,, . վասն զի կոտորել յօժարէին և ոչ յաւարել ։ "Աստեղք ևառն ճակատ ընդ բիւրաքանչիւր կարգաց ,, . կամ զի զատումն Բարակայ առակեաց յաստեղս , իբրև եղբարքն Յովսէփու՝ որ առակեցան յաստեղս 'ի ձեռն երազոյն Յովսէփու . և կամ զի 'ի ձեռն աստեղացն ծանուցէ , զի յերկնից եղև նոցա փրկութին 'ի ձեռն Բարակայ ։ "Գերփեաց զնոսա ձորն Կիսոնի ,, . կամ Ջուրքն որ բըղխէին 'ի նմա , կամ արեամբն որ հեղաւ 'ի նմա . նա և Դաւիթ իսկ ցուցանէ՝ եթէ 'ի ձորն Կիշոնի կոտորեցան սիսարայեանք ։ "Հաս անձն իմ 'ի զօրութեն վերայ ,, . այս ինքն ասացաւ զզօրութին ։ "Յայնժամ անկան կարեան սմբակք երիվարաց սիսարայեանց , և մանչիւն զօրութեան պատերազմողացն Բարակայ ։ Նզովեցէք զՄերովզ ասաց հրեշտակն տեառն ,, . որ էր 'ի գլուխ [1] առան հազարացն Բարակայ ։ "Նզովեցէք զնա և զբնակիչս իւր , զի ոչ եկին ընդ առս յօգնականութին ժողովրդեանն տեառն ,, ։

"Օրհնեցի 'ի կանայս Յայէլ ,, . ոչ յամենայն կանայս՝ որ յերկրի են , այլ "Ի կանայս որ 'ի վրանի են ,, ։ Քանզի Յայէլ՝ որ սպան զթշնամին ժողովրդեանն , առաջ եղեն Մարիամու . զի 'ի ձեռն պտղոյն՝ որ 'ի նմանէն եղև , վանեցաւ թշնամին սատանայ հեթանոսաց և ժողովրդեանն ։ Մարիամ օրհնեցի յամենայն կանայս . վասն զի 'ի ձեռն որդւոյն՝ որ 'ի նմանէն ծնաւ , եղև փրկութին ճշմարիտ ամենայն բնակչաց երկրի ։ "Օրհնեցի 'ի կանայս Յայէլ կին Քենեայ կենացւոյ աներոյն Մովսիսի ,, . զի ետ Աստուած փրկութին 'ի ձեռս նորա , զի եղիցի նոցա պարծանք 'ի մէջ ժողովրդեանն՝ ուր նստէին 'ի պանդխտութեն , և 'ի հեթանոսս՝ զի նախատէին զնոսա . վասն զի թողին զերկիրն և զգիւս նոցա , և եկին բնակե-

[1] Յօրինակին դժուարընթեռնլի էր բառս . և 'ի միւս օրինակին պակասէր առաջին բանն ։

ցան 'ի մէջ իսրայէլացւոց։ Արդ "Գտին, ասէ, զաւառ, և բաժանեցան [1] իւրաքանչիւր առ այր ջորի"։ Արդ նայեաց և տես, զի զոր ինչ ասացն՝ եթէ "Մի՛ տայք զանաստուածս ձեր 'ի խառնս", զնա առաւել փութացաւ առնել ժողովուրդն. և ողորմութիւնք նորա իբրև ծագել արեգական տապեցուցանողն զօրութեամբ իւրով, յայտ արար՝ զի 'ի վերայ ամենայնի սփռեալ են ողորմութիւնք Տն̃. զի իբրև ծագումն արեգական, զի անկանի համօրէն 'ի մարդկանց ամենեանն 'ի վերայ ամենայնի զուլախառն տապն արեգական։

ԳԼՈՒԽ Բ.

Յետ այսորիկ տիրեցին մադիանացիքն 'ի վերայ ժողովրդեանն զեւթն ամ վասն մեղաց ժողովրդեանն. և ոչ տային նոցա նստել բնականալ յերկիր ժառանգութեան իւրեանց, վասն զի խաղացեալ գային ամենայն մադիանացիքն ոչ իբրև գերիչք՝ որ գերեն և թողուն մնացորդ, այլ գային հատանէին ամենայն ստացուածովք իւրեանց, և լնուին անդ բազում ժամանակս. զի որ ինչ 'ի նոցանէն մնայր, աւերէր անասուն նոցա։ Բողոք բարձին ժողովուրդն վասն այսր առ տէր. և առաքեաց առ նոսա մարգարէ, և եկն պատմեաց վասն մեծի փրկութեան զոր արար նոցա յեգիպտոսէ. և վասն զի զլպարտեցին զնա, և կցորդ եղեն կռոցն ամովրհացւոց, ած 'ի վերայ նոցա զայս ամենայն։ Եւ երևեցաւ հրեշտակն տեառն Գեդէոնի, և խոստացաւ նմա՝ զի 'ի ձեռն նորա փրկէ տէր զժողովուրդ իւր։ Իբրև եբեր զպատարագն, մատոյց զողջակէզն, վառեցաւ հուր 'ի վիմէ անտի, և եկեր զպատարագն, և վերացաւ։ Եւ վասն զի երկեաւ Գեդէոն՝ զի գուցէ մեռանիցի 'ի տեսլենէ անտի հրեշտակին, ասէ ցնա տէր 'ի տեսլեանն, և կամ 'ի ձեռն մարգարէի որ յաւուրս նոցա էր. "Ողջոյն ընդ քեզ, մի՛ երկնչիր, ոչ մեռանիցիս"։ Դարձեալ քակեաց զմեհեանն Բահաղու՝ որպէս ասացաւ նմա, և կոտորեաց

1 Միւս օրինակն բաժանեցան իւրաքանչիւր այր ջորի։

զանտառն . և զի մատնեաց զանձն իւր 'ի մահ , ապ-
րեցոյց հայր իւր 'ի ձեռաց ժողովրդեանն , որ կամե-
ցան սպանանել զնա :

Յայնմ ժամանակի ժողովեցան մադիանացիքն . և
խնդրեաց Գեդէոն նշան , որ պաշտէր զգեղմն փրկու-
թե նոցա , և նկարէր 'ի նմա խորհուրդ յաւիտեան
խոտելոյ նոցա : Քանզի գեղմն աստ , զոր խնդ-
րեաց տեղալ 'ի վերայ նորա միայն անձրև , Երուսա-
ղէմ էր . զի 'ի նմա միայն բնակեալ էր սրբութիւնն
քան յամենայն քաղաքս . և զի մզեցաւ և լցաւ 'ի նը-
մանէ կրաւ միաւ ջուր , յայտ արար և եցոյց՝ զի մեր-
կացաւ և կաց խայտառակ . վասն զի թողին զխոր-
հուրդսն մկրտութե՝ որ նկարեալ էին 'ի նմա : Եւ
զի երկրորդեաց և խնդրեաց՝ թէ 'ի վերայ ամենայն
երկրի եղիցի անձրև , և 'ի վերայ գեղմանն ոչ , նոյն
ինքն է Երուսաղէմ . զի ել սրբութի 'ի միջոյ նորա .
և փոխանակ միոյ սեղանոյն , որ կանգնեալ էր 'ի նմա ,
սեղանք բազումք եղեն ընդ ամենայն երկիր , այս
ինքն է ընդ ամենայն եկեղեցիս Քրիստոսի ահա կազ-
մեալ կարգին :

Իսկ զի մի' պարծեսցին ժողովուրդն՝ թէ բազմու-
թեն իւրեանց յաղթեցին մադիանացւոցն՝ և ոչ օգ-
նութեն տեառն , և զի ծանուցէ նոցա՝ թէ պահեն
զօրէնս Ճշմարտիւ , պաշտի 'ի նոսա այն՝ զոր ասացն՝
թէ "Մինն 'ի ձէնջ զհազարսն հալածեսցէ , և եր-
կուքն զբիւրսն" , դարձոյց անդրէն զքսան և զեր-
կուս հազարսն վատասիրտս . և տասն հազար՝ որ մնա-
ցին , զատան մեկնեցան 'ի ջուրսն քննութե . զի որք
լափեցեն զջուրսն լեզուաւ իւրեանց , նոքա են տի-
րասէրք իբրև շունք միամիտք , և նոքա են արժանի
հաղորդել քեզ 'ի փրկութե յայս՝ որ լինի 'ի ձեռն
քո որդւոցն Իսրայելի : Զի եթէ ոչ էին նոքա հա-
ւատացեալք , ոչ իջանէին նոքա երեքարիւր արամբ
'ի վերայ բանակին՝ որ բազում էր իբրև զմարախ ,
ընդ որում ամենայն զօրք նոցա միահամուռ զահի
հարան մարտնչել ընդ նոսա . վասն զի մեկուսի եղև
Գեդէոն 'ի զօրուէ անտի զոր ժողովեաց , զի քաջա-
լերեսցի 'ի վերայ մադիանացւոցն : Առաքէ 'ի բանակ
անդր լրտես , զի լուիցէ թէ զինչ ինչ մարգարէանան

տեսիլքն մադիանացւոց ։

Արդ 'ի նկանակ գարեղէն 'ի փոքրն և յանարգն առակեաց զսուր իւր. վասն զի նուաղեալք և սակաւուք կոտորելոց էր զմեծ բանակն մադիանացւոց։ Իսկ իբրև լուաւ Գեդէոն զերազն և զմեկնութիւն երազոյն, և ետես զի սուրն նորա առակեցաւ 'ի նկանակ գարեղէն, նկանակն գարեղէն' զոր կանխեաց մարգարէացաւ Դեբովրա վասն նորա, դարձաւ և ասաց' եթէ մատնեաց տէր 'ի ձեռս ձեր զբանակն մադիանացւոց. ոչ կարէր համարձակել և ասել' եթէ մատնեաց տէր զբանակն 'ի ձեռս ձեր, եթէ ոչ զի ամենեքին ճշմարտիւ հաւատացեալ էին 'ի տէր ։

Այս զի բարձցէ զպարծանսն հպարտութեան և 'ի սոցանէ, առ 'ի նոցանէն զսուսերս իւրեանց, և ետ 'ի ձեռս նոցա զփողս և զկանթեղս. զի 'ի բարբառոյ աղաղակի նոցա զարթիցէ Մադիամ և վառեսցի 'ի պատերազմ, և 'ի լուսոյն կանթեղաց ելցէ այր ընդ սուր ընկերի իւրոյ։ Բարբառեալ կոչէին սուր. ոչ զզօրուն իսրայէլացւոց' որ երկեաւ և փախեաւ, այլ տեառն' որ զԳեդէոն առաքեաց։ Եւ Գեդէոնին' զի ասէին., վասն զի 'ի ձեռն նորա կամեցաւ տէր փրկել և տալ զնահատակութիւն ժողովրդեանն։ Եւ զի ցուցցէ և յայտ արասցէ ա̃ծ, զի եթէ մատնեալ զՄադիամ 'ի ձեռս ժողովրդեանն պատժէր, եւ թոյլ տայ փախստեայ լինել երկուց զօրավարացն Մադիամու, զի եղիցին ձերբակալ լինել 'ի ձեռաց եփրեմեան գնդին ։

Արդ նոքա փոխանակ զարմանալոյ ընդ մեծ հաւատս առնն, որ երեքարիւր մերկանդամ արամբքն քաջալերեաց ելանել 'ի վերայ կուռ վառեալ բանակին, որ բազում էր իբրև զաւազ առ ափն ծովու, և թէ զիա՞րդ ինքն զինքն կոտորեաց Մադիամ, և անձամբ կոտորածոյն ետ զնահատակութիւնն Գեդէոնի, եկին վասն երկուց փախստէից նորա նկանս 'ի ձեռս նոցա. Ճառ արկեալ և կագէին ընդ նմա կագ չար, և ասէին' եթէ "Ընդէ՞ր ոչ կոչեցեր զմեզ յերթալն քո 'ի վերայ մադիանացւոցն 'ի մարտ պատերազմի"։ Իսկ Գեդէոնի արար իւր թիկունս և տուն ապաւինութեան զխոնարհութիւն իւր. զի գուցէ'

թէ տարեցաւ նա 'ի մադիանացւոցն, սպանանիցեն զնա զունդն եփրեմեան, ետ. պատասխանի և ասէ, եթէ "Լաւ է ճռաքաղութիւն Եփրեմի, քան զկութն Իսրայէլեան,, ։ Այս ինքն, լաւագոյն է փրկութին՝ որ եղև ժողովրդեանս 'ի ձեռն այդ երկուց փախստէիցդ զոր կալարուքդ, քան զեւերսն և զհազարսն մադիանացւոց, որ կոտորեցան 'ի կանխեղաց և 'ի բարբառոյ մերոյ ։ Այսու միով բանիւ խոնարհութեն փարատեաց յիւրմէ զմահաբեր սպառնալիսն ։

Որդ Գեդեոնին՝ այն որ կանխեղօքն և աղաղակաւ կոտորեաց 'ի գիշերին հարիւր և քսան հազար, առաջի արկեալ փախստեայ ամնէր 'ի տուէ զհնգետասան հազարն որ մնացին ։ Եւ ասէ ցորդիսն Սակքովթայ և ցընկերս նոցուն, զի տացեն հաց զօրուն՝ որ նքողեալ էին 'ի սովոյն ։ Դարձուցին նոքա նմա անդրէն անարգանս փոխանակ ընդ հացին ։ Բայց ոչ համբերէր նոցա իբրև զեփրեմեան գնդին . վասն զի իբրև կալաւ Զեբէէ և Սաղմննա զթագաւորսն Մադիամու, որովք նախատեցաւն, մերկաց զոգիսն 'ի մարմնոյ նոցա 'ի ձեռն սրոյ սուսերի, վասն զի ոչ կամեցան արկանել զսյժ զօրութեն 'ի ձեռն հացին արանցն որ ընդ նմա էին . սպան և զտունն Զեբէեայ ։ Վրէժխնդիր եղև 'ի նոցանէն երկոցունց զվրէժ արեան եղբօր իւրոյ, որ սպանին սրով ։ Եւ հանգեաւ երկիրն յաւուրս նորա ամս քառասուն ։

Յետ Գեդեոնի կաց Աբիմելէք հարճորդին Գեդեոնի երիս ամս, և սպան զեւթանասուն զեղբարսն իւր . բայց Յովաթամ միայն ապրեցաւ ։ Բայց որդիքն Սիքեմայ և ընկերքն իւրեանց, որ թագաւորեցուցինն զնա, կոտորեցան 'ի նմանէն . սատակեցաւ և ինքն 'ի ձեռաց նոցա ։ Եւ եղև 'ի նոցանէն վրէժխընդրութի որդւոցն Գեդեոնի՝ զորս սպանն Աբիմելէք 'ի ձեռն ապիրատ մարդոց զոր վարձեաց եւթանասուն արծաթոյ . այսոքիկ որ 'ի Բաղնեայ կռոցն իւրեանց թոշակեցին նոքա ։ Ապա յարեաւ յետ Աբիմելէքայ Թովլա որդի Փուայ, և դատեաց զժողովուրդըն Իսրայէլի քսան և երիս ամս ։ Եւ յետ նորա յարեաւ Յայեր գաղաադացի, և առաջնորդեաց Իսրայէլի քսան և երկուս ամս ։

Ապա յետ նորա գործեցին որդիքն Իսրայէլի չարիս առաջի տեառն, և մատնեցան 'ի ձեռս որդւոցն Ամոնացւոց ութ և տասն ամ: Ապա բողոք բարձին որդիքն Իսրայէլի առաջի տեառն, և ոչ լուաւ նոցա: Արա-քեցին առ Նափեթ գաղաադացի գալ լինել նոցա զօրավար զօրաց 'ի մարտ պատերազմի. և վասն զի տես նա՝ զի անարգեաց ժողովուրդն զիւրաքանչիւր կուռս, և ոչ եղեն ընդունելի առաջի տեառն, մատուցին զպաղատանս, և ոչ լուաւ: Ասէր ընդ անձն իւր, թէ ես իսկ ո՞վ իցեմ, զի ինձ լուիցէ այն՝ որ ոչ լուաւ ամենայն Իսրայէլի. զի յաղօթս կաց և խընդրեաց 'ի նմանէն. և վասն զի ուխտել զանասուն անարգ էր, և ուխտել զմարդ բամբասելի էր. և թէ իւ ցուցից զսէրն իմ առ նա, զայն ոչ գիտեմ: Ահաւասիկ բանամ զբերան իմ 'ի ծածուկ առ նա, թէ որ ելցէ 'ի տանէ իմմէ ընդ առաջ իմ, մատուցից նմա պատարագ: Եւ արդ այսուհետև 'ի ձեռս տեառն է, զի պատրաստեսցէ զպատարագն 'ի փառս ծառայից իւրոց, որպէս զի և երբեմն պատրաստեաց ընդ գառն իւրում պատարագին:

Իսկ իբրև յաղթեաց և դարձաւ, և ուխտեաց յայտնապէս զոր ուխտեալն էր 'ի ծածուկ: Զի թէ ուխտեալ էր զնա յայտնապէս մինչ դեռ երթայր 'ի պատերազմ, լսէին զհամբաւ ուխտի նորա, և զգուշանային ընտանիք նորա յելանելոյ ընդ առաջ նորա. Նա և բարեկամքն իսկ և հարազատքն յետ յաղթութեանն որք ընթանային 'ի տուն անդր, զի պատրաստեսցեն հանել ընդ առաջ նորա որ ինչ պատշաճ էր առ 'ի մատուցանել զպատարագ ուխտից իւրեանց: Նա և աւետաբերք յաղթութեան նորա պատմէին վասն ուխտից նորա, և կարծէր դուստր իւր յելանելոյ ընդ առաջ նորա: Արդ ո՞վ հան զդուստր իւր ընդ առաջ նորա, եթէ ոչ աւետաբերք յաղթութեան նորա: Արդ այնոցիկ՝ որ ընթացան առնուլ զառհաւատչեայն, որ զաւետիսն յաղթութեան բարձեալ ունէին, եթէ գիտակ էին ուխտից նորա՝ յառաջ քան զտալ աւետեացն՝ նախ զգուշութիւն տային ընտանեաց նորա, զի մի մեռցին:

Արդ ուխտեաց զդուստր իւր, և ոչ ուխտեաց.

ուխտեաց զնա, զի ընդ բնակիչս տանն իւրոյ համա-
րեալ էր նմա իբրեւ ուխտերն. բայց ոչ ուխտեաց զնա,
զի ոչ զանուն դստերն իւրոյ ասաց յայտնապէս 'ի
ժամ ուխտից իւրոց: Ծածուկ էին ուխտքն Նափե-
թայ. և առ 'ի փորձել մտացն նորա ել միածինն ընդ-
առաջ նորա. և իբրեւ կամէր[1] ծածկել զուխտսն,
ոչ ծածկեաց զնա, այլ տրտմեցաւ. զի ցուցցէ զսէրն
իւր առ դուստրն իւր: Եւ դարձաւ՝ ուխտեաց զնա
յայտնապէս առաջի ամենայն ժողովրդեանն 'ի ժա-
մանակի՝ զի ամենայն զգօնանք ալեաց տառութն յա-
րուցեալ էին 'ի վերայ նորա ծածկել զուխտ ուխտից
իւրոց:

Արդ որդիքն Եփրեմի ոչ վասն յաղթութեն նորա,
և ոչ վասն տրտմութեան դստերն իւրոյ զոր ուխ-
տեաց՝ զի մատուցանէր զնա պատարագ՝ պատերազմե-
ցան, այլ եկին մարտ եդին, սկսան կագել ընդ նմա.
որպէս և կագեցան վասն Գեդէոնի. վասն զի ոչ կո-
չեաց զնոսա յերթալն իւրում 'ի մարտ պատերազ-
մի: Արդ ոչ եթէ Նափեթայ էր այս, զի կոչեսցէ
զնոսա, վասն զի հալածական էր նա. և զնա իսկ
կոչելով կոչեցին յաւուր ճակատուն, յորում աւուր
եկեալ հասեալ էր 'ի մարտ պատերազմի 'ի թիկունս
նոցա: Վասն զի ոչ եթէ կագելով միայն կագեցան
ընդ նմա, որպէս և ընդ Գեդէոնի, այլ և զտուն նորա
այրել կամեցան: Մարտեան ընդ նոսա գաղաադեանս
զնդաւն, և կոտորեաց 'ի նոցանէն քառասուն և եր-
կուս հազարս: Եւ վրէժխնդիր եղև 'ի նոցանէն զամ-
բարտաւանութեանն՝ որ յետ պատերազմին 'ի վերայ
քաջացն յաղթողացն հպարտանային նոքա: Դատեաց
Նափեթ զԻսրայէլ զվեց ամ:

Ապա կաց իշխան յետ նորա Եսեբոն 'ի Բեթ-
ղեհեմ գեղջէ, և առաջնորդեաց Իսրայէլի ամս եւթն:
Ապա առաջնորդեաց յետ նորա տանն Իսրայէլի Ե-
լովմ Զաբուղոնեան, և կաց նա իշխան 'ի վերայ տանն
Իսրայէլի ամս տասն: Ապա կաց իշխան յետ նորա 'ի
վերայ տանն Իսրայէլի Ղաբդոն որդի Սեղղեմայ Փարա-
թոնացւոյ, և առաջնորդեաց տանն Իսրայէլի ամս ութ:

1 Միւս օրինակն՝ կարծէր:

## ԳԼՈՒԽ Գ

ՊԱՐԶԵԱԼ անօրինեցան որդիքն Իսրայէլի առաջի Տեառն, և մատնեցան 'ի ձեռս այլազգեացն քառասուն ամ: Աւետարանեցաւ Սամփսոնն 'ի հրեշտակէ, զի ծնցի յամուլ կնոջէ անտի. և երևեցաւ հրեշտակն երկրորդ անգամ կնոջն վասն խնդրուածոցն Մանուէայ առն նորա, զի յայտ արասցէ և ցուցցէ՝ եթէ հրեշտակ ասաց ցՄանուէ, զի եթէ մատուցանիցես զողջակէզն՝ Տեառն մատուսջիր: Եւ զի ցուցցէ դարձեալ, եթէ ած յայտնեաց¹ նովաւ, ասաց «Զի հարցանես վասն անուան իմոյ, զի նա է զարմանալի»:

Իսկ իբրև ծնաւ մանուկն և եղև այր երիտասարդ, եղև 'ի կամաց Տեառն առնուլ նմա կին 'ի դստերաց այլազգեաց: Նա իբրև խնդրէր յայլազգիս ընդ հօր և ընդ մօր իւրում վասն այսր իրաց, և ահա կորիւն մի առիւծու գոչեաց ընդդէմ նորա. վառեցաւ 'ի նա հոգին զօրութեան զոր զգեցեալն էր, և հերձոյց զնա իբրև զուլ մի, և հօր և մօր իւրում ոչ ցոյց: Իբրև դարձաւ յետ աւուրցն առնուլ զկինն զոր խօսեցաւ, խոտորեցաւ 'ի ճանապարհէ անտի երթալ տեսանել զոսկր յայլն առիւծու. և տեսանէր զի գնդակ մեղուաց պարս առեալ էր 'ի բերան առիւծուն, և այն լի էր խորիսխով մեղու. մատեաւ վաղվաղակի և յինքն կթեաց զխորիսխն մեղու. գնայր գայր և ուտէր: Եկն առ հայր և մայր իւր, և ետ նոցա 'ի խորսխէ անտի մեղու. առին կերան և նոքա: բայց նա ոչ պատմեաց նոցա եթէ յառիւծու բերանոյ առեալ բերէր նոցա զմեղրն. քանզի թէ յայտնեալ էր նոցա, ոչ ուտէին նոքա զմեղրն՝ եթէ 'ի բերանոյ առիւծուն բերէր նա. վասն զի զօրէնս լուծանէին մեղուն, զի 'ի մեռեալ մարմնոյ առիւծուն ուտէին. Այդ քաղցր մեղրն որ 'ի դառն առիւծն գտաւ, խորհուրդ նկարէր զայնորիկ՝ որ 'ի ձեռն ապանող մարմ-

¹ Միւս օրինակ յայտնեցաւ:

նոյն գտանէր զկենանս ամենայն որդւոց մարդկան ։

Արդ առակեաց զառակն, և յայտնեաց զնա կնոջ իւրում, և Թափեցին զնա 'ի նմանէն, զի զխորհուրդըս սրտի իւրոյ այլ կնոջ մի յայտնեսցէ ։ Բայց սակայն վառեցաւ 'ի նա հոգւոյ զօրութեն, և հատ յուռկանէն այլազգեաց և եդ 'ի բերան նոցա. այսու՝ զի 'ի ձեռն կոտորելոցն զոր կոտորեաց 'ի նոցանէն, նուքօք հատոյց նոցուն զպարտս պատմուճանացն. վասն զի նենգեաց զնա կինն իւր, զի պարտաւորեսցի յիւրոց սպասաւորացն ։ Արդ իբրև կոտորեաց զերեսուն այրն այլազգի, և աղուեսօքն այրեաց զամենայն արմըտիս անդաստանացն նոցա, եկին հասին այլազգիքն 'ի վերայ տանն Յուդայի, և կապեցին մատնեցին ըզ Սամփսոն այլազգեացն ։

Իսկ իբրև յարեան այլազգիքն սպանանել զՍամփսոն, նա հատ կոտորեաց զկապանս իւր, և ծնօտիւ իշոյն՝ զոր եգիտ նա առաջի իւր՝ սպան 'ի նոցանէն հազար այր ։ Արդ ծնօտ իշոյն՝ որ 'ի ժամ պատերազմին եկեղ նմա զտեղի սրոյն սուսերին, 'ի ժամ ծարաւոյն դարձաւ և եղև նմա քաղցր աղբերակն ։ Արդ այն՝ որ սակաւիկ միւս եւս յառաջ զաղբեւրս արեանն հոսէր 'ի մարմնոցն այլազգեաց, յետ սակաւ մի ինքն անձամբ անձին աղբեւր հովջուրց գտեալ լինէր առ 'ի հանգուցանել զծարաւն Սամփսոնի ։ Արդ այն՝ որ 'ի ժամ կոտորածոյն մերկանայր զոգիսն 'ի մարմնոցն այլազգեացն ;'ի ժամ աղբերն զնուաղեալ ոգին արկանէր 'ի մարմինն Սամփսոնի ։ Ունայն էր ծնօտն, և լի էր. ունայն էր 'ի ժամ պատերազմին, և լի էր 'ի ժամ ծարաւոյն ։ Արդ այն՝ որ յաջողեաց զնա 'ի ձեռն Սամփսոնի կոտորել նովաւ հազար այր, ինքն մեծացոյց յղփացոյց զնա բղխմամբ աղբեր, որով բաւական եղև յագեցուցանել զմեծ ծարաւն Սամփսոնի ։ Արդ ծնօտն որ հզօրացոյց զնա ջուրքն կակուղք՝ որ էին 'ի ներքոյ նորա, ոչ կարացին ծակել և ելանել արտաքս քան զնա, զկառափունս իշխանաց այլազգեացն խորտակէր, և զմարմինս նոցա յարիւն գլխոցն իւրեանց լուանայր ։

Յետ զնաց անտի 'ի Գազայ ։ Արդ եղև գազացւոցն. եկին պատեցին պաշարեցին զքաղաքն զգիշերն

ամենայն. և վասն զի յուսացեալ էին եթէ այսու-
հետև անկալ նա 'ի ձեռս նոցա, վասն զի մուտ նա
'ի քաղաքն՝ որոյ դրունքն այլուր փակեալ էին, յա-
րեաւ զարթեաւ 'ի կէս գիշերի, և բարձ զդրունս
քաղաքին սեմօքն և դռնափակօքն հանդերձ. առ-
ըստ անձին, և բարձ զնոսա տարաւ եհան 'ի վեր 'ի
լեառնն, և անդ 'ի գլուխ լերինն կանգնեաց դէմ
յանդիման Քեբրոնի, և ինքն գնաց:

Արդ չափով զօրութեան Սամփսոնի՝ զանչափ զօրու-
թիւն տեառն իւրոյ նկարէր, որ զանյաղթ նիգս դժո-
խոց խորտակեալ հանդերձեալ էր: Սամփսոն զար-
մանալեօքն զօր արար, զանձն իւր միայն ապրեցոյց 'ի
մահուանէ. իսկ տէր մեր զմարմին իւր ապրեցոյց, և
զամենայն մարմին ըստ նմանութեան իւրոյ մարմնոյն
ապրեցուցանէ յիշխանութենէ մահու յօր գալստեան իւ-
րոյ: Իսկ իբրև սիրեաց զԴալիլա, և նենգեաց զնա զի
յայտնեսցէ նմա թէ ուր է մեծ զօրութիւն նորա, խա-
բեաց զնա եւթն զուարակեան ներդիւք դալարուովք,
և եւթն կարիւք նորովք՝ որ բնաւ ոչ էր 'ի գործ մա-
տուցեալ, և եւթն գիսակօքն գլխոյ իւրոյ յուսանե-
լովն [1] ազգամբն ընդ նիւթս ոստայնույ: Իսկ իբրև
յաճախեաց բազմացոյց առ նմա զպատրանս խաբէ-
ութեան, այր ծածկամիտ և խորախորհուրդ՝ որ հարցն
իւրոց ոչ յայտնեաց վասն հեղձուցանելոյ առեւծուն,
և վասն մեղուն՝ որ գտաւ 'ի նմա, պոռնկին առ յայտ-
նեաց զխոստովանութիւն իւր: Արբեցոյց և քնեցոյց
զնա. արկ զնա 'ի քուն խոր, և գերծ զգէսս գլխոյ
նորա: Եւ վասն կաշառոյն զոր ընկալաւ յայլազ-
գեացն, զհսկայազն և զքաջամարտիկն Իսրայէլի իբ-
րև զաղուէս մատնէր 'ի ձեռս այլազգեացն: Արդ
զոր օրինակ զօրութիւն Սամփսոնի՝ զօրութիւն տեառն
նկարեցաւ, սոյնպէս և խոնարհութիւն վատթարու-
թիւն նորա՝ կորստական խոնարհութիւն աշխարհիս
նկարեցաւ: Քանզի որպէս Սամփսոն առաջի Դալի-
լայի 'ի ժամ գերծելոյն գլխոյ իւրոյ, այսպէս տկա-
րացեալ վատթարեալ էր աշխարհս առաջի մեղացն
և անօրէնութեանն՝ 'ի ժամանակի զի ժողովուրդն

1 Միւս օրինակն 'ի հիւսնելոյն:

և հեթանոսաց կորացուցանելոյն զգլուխս իւրեանց առաջի ամենայն կռոցն և պատկերաց ։

Շտապեցին փութացան այլազգիքն և բերեցին զաչս նորա առ 'ի խնդրել զքէնս վրիժուցն զանուանի հազար առնն՝ որ կոտորեաց 'ի նոցանէն ։ Այգ՝ արարին ժողովեցան միաբանութեամբ զողջակէզս դիցն իւրեանց ․ վասն զի մատնեաց զթշնամին 'ի ձեռս նոցա, այն՝ որ հրձիգ արար զերկիրն յարմտեաց ․ բազմացոյց յաճախեաց զապականեալս և զվերաւորեալս նոցա ծնօտիւ էշոյն ։ Արդ 'ի կուրութեան անդ շարժեաց զերկուս սիւնս տաճարին, և կործանեաց 'ի վերայ բազմականացն, և արկ միատարած զամենեսին առ հասարակ ։ Եւ բազում եղեն մեռեալք վերաւորք մահուամբն նորա քան զայն՝ զոր սպան 'ի կենդանութեան իւրում ։ Դոյն իսկն Սամփսոնիս այս առաջնորդեաց Իսրայէլի քսան ամ ։

Իսկ Միքայն՝ զի ասաց ցմայր իւր, եթէ հազար և հարեւր արծաթն որ կորեաւ քո, այս իսկն զոր գողացայն 'ի քէն, և երդուար և ասացեր յականջս իմ, զի եթէ գտից՝ արարից 'ի նոցանէն պատկեր ձուլածոյ, ահա արծաթն քո ․ իմ առեալ էր զնա ․ առ զքոյն 'ի քեզ, և արա 'ի նմանէն պատկեր ձուլածոյ, որպէս և ուխտեաց բերան քո ։ Օրհնեաց զնա մայր իւր ․ ոչ վասն զի դարձոյց անդրէն զարծաթն, այլ զի ասաց ցնա՝ թէ արա պատկեր ձուլածոյ ։ Եւ արար կինն պատկեր ձուլածոյ քանդակագործ դրօշեալ, և ետ զնա Միքա 'ի բագնին կառոց՝ զոր շինեաց նա 'ի տանն իւրում, արար և վակաս 'ի նմանութեան ճշմարիտ վակասին ։ Եւ եկն մի ոմն յՂևտացւոցն և եառ զինքն 'ի վարձու տանն արծաթոյ լինել քուրմ տանն Միքայի ։ Արդ եկին հասին որդիքն դանեան գնդին, և առին բռնաբար զպատկերն ձուլածոյ, ոչ թէ բեկանել խորտակել զնա, այլ առնել իւրեանց կուռս օտարոտիս ։ Տարան եդին զնա 'ի քաղաքն Գեսա [1], և զոր գերեցին ․ և կոչեցին զանուն նորա Դան՝ զամենայն աւուրս որչափ եղև տունն Աստուծոյ 'ի Սելով ։

1 Միւս օրինակն Դեսէի ։

Յետ այսորիկ էր այր մի, և ունէր հարճ. և պոռնկեցաւ հարճն նորա, և փախեաւ 'ի նմանէ : Իբրև չոգաւ ածել զնա 'ի տուն իւր, ետ պատասխանի և ասէ ցպատանին իւր. մի՛ մտցուք ուրեք 'ի քաղաք՝ որ ոչ է յԻսրայելի : Եւ եկին հասին 'ի Գաբաա Բենիամինի 'ի ժամ երեկորին. և ոչ էր ոք՝ որ մուծանէր զնոսա : Տես զնոսա այր մի ալևոր յեփրեմեան գնդէն անտի, և տարաւ զնոսա 'ի տուն իւր : Եւ իբրև կերան և արբին, և ուրախ եղեն, ազդ եղև արանցն քաղաքին այնորիկ. եկին պատեցին առ հասարակ զտունն, սկսան խորտակել զդրունսն, և ասեն ցալևորն. հան արտաքս զայրդ՝ որ եմուտ առ քեզ 'ի տուն քո ; զի գիտասցուք զդա՝ ով է դա : Իսկ իբրև խոստացաւ ալևորն զդուստրն իւր կոյս և զհարճ առնն՝ և ոչ կալան յանձին, կալաւ այրն զհարճն իւր և հան զնա արտաքս առ նոսա : Տարան չարչարեցին զնա զգիշերն ամենայն : Իբրև այգ եղև, յարեաւ այրն երթալ զճանապարհ իւր. տես զհարճն իւր զի անկեալ կայր զսեմօք դրացն ; արկ զձեռն իւր 'ի դարչոյն և պատառեաց զնա յերկոտասան մասունս, և ետ տանել ընդ ամենայն սահմանս Իսրայելի :

Իբրև ետես զայն ժողովուրդն Իսրայելի, նախանձայոյզ եղեն ամենայն ժողովուրդն առ հասարակ : Ազդ ետուն ժողովեցան 'ի Մասեփա չորեքհարիւր հազար այր վառեալ. առաքեցին առ որդիսն Բենիամինի տալ 'ի ձեռս զվրիժագործսն չարեաց, և ոչ կամեցան. կամ զի թէ ամենեքին իսկ այնպէս էին, և կամ զի թէ 'ի պատճառ գրգռութեան կնոջն լեցի վրէժխնդրութիւն յայնցանէ՝ որ մոլորեցան 'ի պատկերն Միքայի. զի յազգէն Դանայ առին զնա : Ազդ ետուն, ժողովեցան գունդն բենիամեան 'ի մարտ պատերազմի. և եղև քսան և հինգ հազար և եւթն հարիւր : Հարցին գունդն իսրայելեան ցա՜ծ թէ ո ելցէ մեզ զօրավար զօրաց 'ի մարտ պատերազմի : Ասէ ցնոսա տէր. Յուդայ : Եւ վասն զի 'ի պատկերսն և 'ի կուռսն ձուլածոյս յառաջինսն՝ զոր արարին՝ ոչ նախանձեցան, և վասն պատկերին՝ զոր առ ազգն դանեան 'ի տանէն Միքայի, ոչ նախանձեցան, և վասն պոռնկին՝ որում փոխարէնն հատուցաւ՝ նա-

խանձեցան ։ Վասն զի ծուլացան 'ի մեծամեծսն , և վասն փոքուն առ 'ի կորուսանել որդւոցն Բենիամինի փութացան ժողովել , տայր նոցա հրաման ելանել 'ի մարտ պատերազմի . ոչ զի խրատեսցին բենիամինեանք՝ որպէս և կարծեցան , այլ զի նոքա խրատեսցին 'ի ձեռն նոցա . զի էր հակառակ նոցա կարծեացն ։

Իսկ իբրև կոտորեցան յԻսրայէլէ յառաջին կոտորածին քսան և երկու հազարք , և ոչ իմացան ընդմիտ ածել՝ թէ ընդէր կոտորեցան , տայ նոցա միւանգամ հրաման ելանել 'ի վերայ նոցա 'ի մարտ պատերազմի ։ Զի եթէ գիտացեալ էր նոցա յառաջին կոտորածին զյանցանսն իւրեանց , յերկրորդ հարուածի աստ ոչ կոտորէին նոքա . և զի ետուն ըղպարտութիւն իւրեանց դիւաց և ոչ այ՟ , յաւելան կոտորել կրկին անգամ , և անկան 'ի նոցանէն երեքտասան հազար ։ Իսկ իբրև սատակեցան՝ որ եղեն պատճառ առաջին կռոցն և ձուլածոյն պատկերին տանն Միքայ , և խնդրեաց զիւր վրէժսն ստուգութին 'ի չարացն և յանօրինացն 'ի ձեռն այնոցիկ՝ որ չարն էին և անօրէն քան զնոսա ։ Ապա յետ լալոյն և ծոմելոյն նոցա , և զողջակէզսն մատուցանելոյն 'ի ձեռն Փենեհէս քահանայի առաջի տեառն , ետ նոցա հրաման յերրորդ նուագին ելանել 'ի պատերազմ ։ Իբրև խոստանայր նոցա զճշմարիտ յաղթութիւնն , ապա խորհուրդս խորհեցան և դարանամուտ եղեն առ Գաբայ Բենիամինի , որպէս և 'ի վերայ Գայեայ ։ Հարին վանեցին կոտորեցին 'ի Բենիամինէ քսան և հինգ հազար և հարիւր այր ։ Եւ վեց հարիւր այրն՝ որ ապրեցան , փախստեայք եղեն և արարին ապաւէն զքարանձաւսն Ռեմոնինեայ ։ Եւ յետ կոտորածոյն ազգին բենիամեան հանդերձ կանամբքն և որդւովք և ընչիւք իւրեանց , երդուան երդուան և դաշինս կռեցին , զի մի տայցեն զդստերս իւրեանց կնութեան որդւոցն Բենիամինի ։

Արդ յետ երդմանն անկաւ զիղջ և ապաշաւ 'ի միտս նոցա . եկին սկսան լալ և մեղ դնել , ոչ մեղացն իւրեանց , այլ տեառն ։ "Ընդէր , ասեն , տէր՝ եղև այս , բնաջինջ լինել գնդի միոջ 'ի միջոյ Իսրայէլացւոց " ։

Եւ վասն զի մի՛ սատակեսցեն զերդումն իւրեանց, և գտին 'ի ամենէ Յաբիսայ Գաղայադու չորեքարիւր աղջիկ կոյս՝ որ ոչ գիտէին զայր, հարին սատակեցին զբնակիչսն Յաբիսայ գաղայադացւոյ 'ի սուր սուսերի. վասն զի ոչ ելին ընդ նոսա 'ի մարտ պատերազմի 'ի վերայ Բենիամինի. և զչորեքարիւր կուսանսն զոր գտին 'ի նոցանէն, և ետուն զնոսա որդւոցն Բենիամինի: Ետուն զհաւանութիւս և այլոցն՝ որ ոչ առին յառնուլ իւրեանց 'ի դստերաց Սելովմայ, իբրև տայցեն ժողովուրդն պատասխանի ընդ նոսա որդւոցն Սելովմեայ՝ զի ոչ եթէ կանայս տարան ընդ իւրեանս և չոգան փախստեայք, և արդ եկին յուսան առնուլ զկանայս 'ի վերայ այլոց կանանցն: Բայց շինեցին ազգին Բենիամինի գեօղս և բնակեցան 'ի նմա: Եւ 'ի սակաւ ամս հազարքն որ կոտորեցան, նուազունքն որ մնացին՝ լցին զհետս նոցա: Աստուծոյ՝ որ կացոյց զդատաւորս 'ի ժողովրդեան անդ՝ մինչև զի սահմանեցան թագաւորք և կարգեաց զթագաւորս. դարձեալ մինչև բովանդակեցաւ մինչև 'ի տէրն թագաւորութեանց՝ որ էն օրհնեալ յաւիտեանս. ամէն:

## ԿԱՏԱՐԵՑԱՒ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱԶԳԱՑՆ

# ՍՐԲՈՅՆ ԵՓՐԵՄԻ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

## Ա. ԵՒ Բ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ

# ՏԵԱՌՆ

# ԵՓՐԵՄԻ

## ԽՈՐԻՆ ԱՍՈՐՒՈՅ

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

# ՍԱՄՈՒԷԼԻ

ԳԻՐՔ Սամուէլի, որ պատմեն զծննդեանէ և զերկուց կանանցն նորա։

Վասն ծննդեանն Սամուէլի և աղօթիցն Աննայի մօրն նորա։

Վասն ապահովութեան որդւոցն Հեղեայ, և քահանայութեան անարգելոյ՝ որ յազգի նոցա կարգեալ կայր։

Վասն յայտնութեան Տն̃ առ Սամուէլ, և սպանմանն որդւոցն Հեղեայ։

Վասն գերի երթալոյ տապանակին կտակարանաց, և հարուածոց յայլազգիսն և 'ի դիս նոցա և յերկիր նոցա։

Վասն դառնալոյ տապանակին առ Հեբրայեցիս, և անարգելոյն Սամուէլի 'ի ժողովրդենէն՝ խնդրելոյ զթագաւորն իւրեանց։

Վասն յանդիմանութեան Սաւուղի մատուցանել զողջակէզսն 'ի Գաղգաղայ։

Վասն յանցանելոյն Յովնաթանու ըստ նզովս հօրն իւրոյ. և ապրեցոյց զնա ժողովուրդն 'ի ձեռաց հօր նորա, զի մի սպանցէ զնա։

Վասն առաքելոյն Սաւուղի կոտորել զամաղէկա

ցիսն, և զի կեցոյց զԱգագ արքայն, և անխնայեաց 'ի գեղեցիկ խաշինս ամաղեկացւոց:

Վասն օծման Դաւթի. և զի խնդրեցին զնա մատնել 'ի տունն Սաւուղի:

Վասն սպանանելոյն Դաւթի զհսկայազինն այլազգեացն, և զի գովեցին յարգեցին զնա կանայք յերգըս վիպասանաց, և նախանձեցաւ ընդ նմա Սաւուղ:

Վասն փեսայ լինելոյ նորա Սաւուղի յերկու դըստերս նորա. և զի ձգեաց նմա զգեղարդն միանգամ և երկիցս. և զի փախոյց զնա Մեղքող դուստր Սաւուղի, և եդ ընդ նորա պատկեր 'ի գահոյսն. և զի չոգաւ առ Սամուէլ. և զի չոգան հրեշտակք Սաւուղի և Սաւուղ զկնի նորա և մարգարէացան. և զի չոգաւ ինքն և խնդրեաց հաց և սուսեր, և կոտորեցան քահանայքն վասն նորա. և զի մուտ 'ի Գաղայաթ և եւ պատգամաւ տեառն 'ի Նմանէն, զի մի մատնեսցեն զնա 'ի ձեռս Սաւուղի բնակիչք քաղաքին. և զի եւ Սաւուղ 'ի խնդիր Դաւթի, և ադաւ յայրին. և զի հատ Դաւիթ զքղօշակ վտաւակաց Սաւուղի և զղջացաւ:

Վասն մահուն Սամուէլի, և անարգութեն Նաբաղայ, և իմաստութե կնոջ նորա:

Վասն ելանելոյ Սաւուղի զկնի Դաւթի, և քուն 'ի տեառնէ անկանելոյ 'ի վերայ նորա. և զի առ նա զստումանն և զգեղարդն Սաւուղի, և նա ոչ գիտաց:

Վասն երթալոյ Դաւթի առ Անքուշ արքայն այլազգեաց, և նստելոյ 'ի Սիկելակ:

Վասն երթալոյ Սաւուղի յԱնդոյր և հարցանելոյ զվհուկն:

Վասն երթալոյն Դաւթի 'ի Սիկելակ, և գտանելոյն զնա հրձիգ արարեալ:

Վասն առնն՝ որ եկն ետ զաւետիսն Դաւթի:

Վասն մահուն Սաւուղի և Յովնաթանու:

Վասն ողբալոյն և ողբս առնելոյ Դաւթի զերկոցունց:

Վասն թագաւորելոյն Դաւթի 'ի Քեբրոն, և զի խաղացին մանկտին 'ի զնդէն Աբեններեայ ընդ մանկտի զնդին յովաբեան, և դարձաւ խաղ նոցա 'ի սուր սուսերի:

Վասն զրգռելոյն Մեմփիբոսթեայ ընդ Աբեններեայ 'ի պատճառս հարճին Սաւուղի. և զի եկն նա ուխտ եդ ընդ Դաւթի դարձուցանել առ նա զամենայն Իսրայէլ:

Վասն մահուն Աբեններեայ, զի սպան զնա Յովաբ. և վասն մահուն Մեմփիբոսթեայ, զի մեռաւ նա 'ի Բաանեայ և 'ի Հռեքեբայ:

Վասն գալոյն Դաւթի յԵրուսաղէմ:

Վասն հանելոյ տապանակին. և սատակելոյ Ոզայ քահանայի՝ որ ձգեաց զձեռն իւր յարկղն կտակարանացն առ 'ի կանգնել զնա:

Վասն զի կամեցաւ Դաւիթ շինել տուն տեառն և արգելաւ:

Վասն մեղացն՝ որ մեղաւ յՈւրիա քետացի:

Վասն պատերազմին՝ որ արար յԵդոմ, և ետ ճակատ ընդ որդիսն Ամոնայ հանդերձ այլովք հեթանոսօք:

Վասն անարգելոյն Ամոնի զԹամար, և մեռանելոյն յԱբեսողոմայ:

Վասն փախստեայ լինելոյ Աբիսողոմայ:

Վասն կնոջն Թեկուացւոյ՝ որ իմաստութեամբն հաճեցոյց զնա ընդ Դաւթի:

Վասն ապստամբելոյն Աբիսողոմայ և Աքիտոփէլի:

Վասն փախստեայ լինելոյն Դաւթի յերեսաց նորա, և զի անարգեաց զհարճս հօրն իւրոյ:

Վասն Սիբայ, որ պատուեաց զԴաւիթ 'ի հալածմանն:

Վասն Մեմփիբոսթեայ՝ որ խնդրեաց զթագաւորութիւն Սաւուղի:

Վասն ելանելոյն Աբիսողոմայ զկնի հօր իւրոյ:

Վասն մեռանելոյն Աբիսողոմայ, և սուգ ունելոյ հօրն վասն նորա:

Վասն ամբարհաւաճելոյն Յովաբու 'ի վերայ Դաւթի:

Վասն դառնալոյն Դաւթի 'ի հալածմանացն, և ընդ առաջ լինելոյն Սեմեայ առ ափնն Յորդանանու:

Վասն հակառակելոյն ազգաց ցուցանել զսէրն իւրեանց առ Դաւիթ յետ մահուանն Աբեսողոմ-

մայ, որք յուրաստ եղեն յամենայն երախտեացն Դաւթի 'ի կեանսն Աբիսողոմայ ։

Վասն ապստամբելոյն Սամէայ, և զի հարին զգլուխ նորա և ընկեցին զպարսպաւ, և ապրելոյն քաղաքին ։

Վասն սովոյն, որ եղև զերիս ամս ։

Վասն որդւոցն Սաւուղի զորս սպանին ։

Վասն զի նախանձ առ սպանանել զգաբաւոնացիս ։

Վասն բանիցն օրհնութեան, թէ սիրեցի զքեզ տէր զօրութիւն իմ և ապաւէն իմ, և վասն այլոց բանիցն Դաւթի ։

Վասն անուանց նախարարացն Դաւթի՝ որ բազմէին 'ի բարձի ։

Վասն գրգռելոյ տեառն զնոսա առ 'ի թուել համարել զժողովուրդն ։

Վասն մարդամահին՝ որ կոտորեաց 'ի նոցանէն յառաւօտէն մինչև 'ի վեց ժամն եւթանասուն հազար այր ։

Վասն սեղանոյն՝ որ շինեաց 'ի կալն Արանայ յեբուսացւոյ ։

Վասն ընդունելոյ պատարագին նորա, և զի արգելաւ մարդամահն 'ի ժողովրդենէն նորա ։

Զայս ամենայն և որ սոցին նման են՝ գրեալ է 'ի դպրութեան Սամուէլի ։

# Ի ՍԿԻԶԲՆ ԲԱՆԻՑ ԻԻՐՈՑ ԱՑՍՊԷՍ ԱՍԱՑ

## ԳԼՈՒԽ Ա

"ԱՅՐ մի էր յարիմաթեան Սիփայ յԵփրեմ լեռնէ„ . այս ինքն զի բնակեալ էր նա 'ի լեառնն Եփրեմի ։ "Եւ անուն նորա էր Եղկանա որդի երեմիայեանց Թովկեայ 'ի Նասիփ Եփրեմի„ ։ Արդ զի համարեաց զանուանս նոցա, զի յայտ արասցէ և ցուցցէ՝ թէ քահանայ իսկ էր, և 'ի ցեղէ անտի ղևտացւոց . որպէս և գիրք մնացորդացն գրէ և ցուցանէ ։ Եւ վասն այսորիկ ուխտեաց Աննա զՍամուէլ տեառն . քանզի ոչ տային որդիքն Հեղեայ Սամուէլի կալ 'ի սպասու 'ի տաճարին տեառն, եթէ ոչ զի յազգէ անտի քահանայից էր նա ։ Այլ զի ինքն իսկ Սամուէլ հանդերձեալ էր համարձակիլ մատուցանել զպատարագսն տեառն, վասն զի յորդւոց անտի Ղևեայ էր նա ։ Եւ զի ելանէր Եղկանա հանդերձ կանամբք իւրովք Աննայիւ և Փեննայիւ 'ի տօնս տարեկանս մատուցանել զպատարագ տեառն 'ի Սելով ։ Արդ նայեաց և 'ի միտ առ, զի ոչ եթէ մի 'ի տասանէ բերելի նա մատուցանել, զի ինքն զայլս տասանորդէր . այլ զպատարագս փոխանակ մեղաց անձին իւրոյ գայր մատուցանել, որպէս և առեալ իսկ էր հրամանս քահանայիցն յօրինաց անտի ։ Բայց մատուցանէր զպատարագսն իւր 'ի ձեռն Ոփնեայ և Փենեէսի որդւոցն Հեղեայ քահանայից՝ որ պաշտէին 'ի ժամանակին յայնմ ։

Արդ Փեննա՝ կին Եղկանայի յայնմ աւուր ուրախութեան նախանձաբեկ առնէր զԱննա բարկութբ . և զի ծանուցէ եթէ ամլութիւն նորին նախատէր զնա, ասաց . "Ցասուցանէր, ասէ, զնա„ . վասն զի որբոտ-

մեացի նա, զի փակեաց տէր զդուռն արգանդի նորա։ Եւ զի մի՛ ոք ընդ միտ ածիցէ, եթէ երբէք ուրեք ինչ յանկարծակի տրտմեցոյց զնա, ասաց՝ եթէ այսպէս սարտուցանէր Փեննա զԽաննա առ յամէ յամենայնի յորժամ ելանէին նոքա մատուցանել զպատարագս առաջի տեառն։ Արդ իբրև եղև մի յաւուրց անտի, և տրտմեցոյց զնա ներն իւր, անդստին 'ի տեղւոջէ անտի եղև նմա մխիթարել 'ի տեառնէ իւրմէ։ Քաջալերել սկսաւ Եղկանա զԽաննա և ասէ. «Ո՞չ լաւ եմ ես քան զտասն որդի»։ Արդ իբրև եկեր և յագեցաւ՝ ոչ անչափ, այլ իբրև առ 'ի հանգուցանել զկամս առնն իւրոյ, անց մուտ նա 'ի տունն ա̃յ, և արկ զանձն իւր առաջի տեառն։ Եւ իբրև ուխտեաց տեառն յաղագս այնորիկ՝ որ եբաց զբերան նորա, կաց և ասաց. զի եթէ տեսանելով տեսցես զանարգութի̃ն անձին իմոյ 'ի ներքէ անտի իմմէ, և տայցես ինձ զաւակ մարդոյ, և թագցես զանկար որովայն ամուլ արգանդի իմոյ, տաց զնա առաջի քո ուխտաւորութեամբ փոխանակ այսորիկ՝ որ պաշտեսն զքեզ որկորստութեամբ։

Իսկ Հեղի վասն յերկարելոյ աղօթիցն նորա, և զի ոչ եթէ բարբառելով իբրև զդստերս ժողովըրդեանն մատուցանէր նա զաղօթսն՝ զի արտասուօքն և անմռունչ պաղատանօքն իբրև զդստերս հեթանոսաց աղաչէր նա, և վասն զի շառագունեցան երեսք նորա եռանդմամբն սրտի, այլակերպեցաւ նա յաչս Հեղեայ. և համարեցաւ զնա եթէ գինի կալեալ զխելըս նորա 'ի տաճարի անդ, զայն՝ որ ընդունելութի̃ աղօթից նորա ոչ թողոյր նմա կատարել զաղօթս նորա։ Իսկ իբրև անարգեաց զնա Հեղի, և կոչեաց զնա արբշիռ, զայն՝ որ արբեալն էր 'ի սէր աղօթիցն, կնքեաց զաղօթսն իւր, զի տեառն իւրում մատուցանէր զնա. և ետ վճիռ պատասխանատուութե̃ քահանային՝ որ գայթագղեցաւ 'ի նա։ Բայց ոչ բամբասեաց նա զայն՝ որ բամբասեացն զնա՝ որով չէրն բամբասելի։ Փութացաւ բառնալ զգայթագղութի̃, ընկէց զինքն առաջի քահանային՝ որ գայթագղեցաւ 'ի նա։ «Կին, ասէ, վըշտագնեալ և ոչ եթէ արբեալ. զի 'ի յաղօթից աստի հեղեալ է անձն իմ առաջի տեառն, և ոչ եթէ

'ի գլխոյ. արդ մի՛ համարեսցիս զաղախին քո դուստր ժանտ. զի ոչ եթէ իբրև յայլում ումեքէ խնդրեցի ես որդի, այլ յՏեառնէ. և ոչ ելից ես 'ի տեղւոջէս յայսմանէ մինչև առից զոր խնդրեցի 'ի նմանէ»: Վասն զի ոչ պատմեցի ես ումեք զհանապազորդ տրտմութիւն իմ 'ի ներքոյ անտի իմմէ մինչև ցայս ժամ: Արդ յայտնի պատասխանի տալովն եցոյց զծածուկ զայթակղութիւն իւր. և փոխանակ զի տրտմեցոյց զնա անարգանօքն, մխիթարեաց զնա օրհնութեամբքն:

Նա՛ իբրև անց գնաց 'ի տուն իւր, և այլ ոչ ևս տրտմեցաւ նա, յայտ արար և եցոյց՝ եթէ 'ի յաղօթից անտի նորա և 'ի ձեռն օրհնութեան քահանային՝ ծննդեան կապեալ դուռն արգանդի նորա բացաւ: Իսկ իբրև յղացաւ և ծնաւ, ել գնաց Եղկանա ընդ աւուրցն տօնախմբութեանն մատուցանել զպատարագս ուխտից իւրոց, այս ինքն ընդ իւրում տօնախմբութեանն: Բայց Աննա կաց մնաց և զտեղի առ մինչ զի հատայց զմանուկն 'ի ստենէ: Եւ ած կացոյց զորդին իւր առաջի երեսաց տեառն, որպէս և ուխտեաց զնա յաւուրն խնդրուածոց:

Արդ զաղօթսն Աննայի են ոմանք որ ասեն՝ եթէ գոհանալով գոհացաւ, և ոչ եթէ մարգարէացաւ: Արդ ոչ 'ի միում յիւրս 'ի գրոց ուրեք, և ոչ յայսմ վայրի կոչեցաւ մարգարէ. բայց աղօթք նորա որ խոստովանութիւն է նորա՝ որպէս ոմանք ասացին, և կամ զի թէ մարգարէութիւն է նորա՝ որպէս և այլք ասեն, վասն անձին իւրոյ ասաց: Եւ վասն զի մեռանն որդիք ներքոյ նորա 'ի սերմանալ բազմանալ ամլութեան նորա, և վասն զպատրաստութեան նորա 'ի ներքոյ անտի իւրմէ՝ իբրև զի թէ արար ինչ գետս մեռանելոյ և սատակելոյ որդւոց ներքոյ նորա, և վասն յորդելոյ մեծանալոյ որդւոյն իւրոյ, և վասն մեծամեծ փրկութեանցն որ լինելոցն էին 'ի ձեռն նորա ժողովրդեանն, և զի յեղջերէն նորա օծանելոց էին թագաւորք, վասն այսորիկ և որ սոցին նման են՝ բաց զբերան իւր 'ի գոհութիւն խոստովանութեան, և կամ 'ի մարգարէութիւն, և ասէ այսպէս:

«Զօրացաւ սիրտ իմ 'ի տէր». այն որ յամենայն ժամ ներքին իմ զայրացուցանէր զիս: Եւ բարձրա-

ցաւ եղջեւր իմ„ որդւովն՝ որ եղև ինձ, այն որ զա-մենայն աւուրս իմ ամլութիւնն իմ կափէր զիս. և բացաւ բերան իմ 'ի վերայ թշնամեաց իմոց, այն որ զայպաշափ ամն իմ անձեռնութիւնս իմ առաջի նոցա ափիբերան կայր: Եւ զի ուրախ արարեր զիս 'ի փրր-կութեան քում. վասն զի փրկչիւս զոր ետուր ինձ, փրկեցայ ես յայնմանէ՝ որ յամենայն ամս նախատա-նօքն ուրեանց այպանէին զիս: Չիք սուրբ իբրև զտէր 'ի կուռս օտարոտիս. նա և ոչ 'ի դիմն անուանեալ գոյ այլ՝ բաց 'ի նմանէ. և ոչ հզօր դարձեալ իբրև զայն՝ որ բանայ զդուռն արգանդի զայնորիկ՝ որ ա-մաց բազմաց նախատ եղեալ էր 'ի նորոյ անտի իւր-մէ: Արդ մի՛ 'ի խափանելդ ձեր 'ի նախատանաց սե-րանալոյս և բազմանալոյս իմով, և այլ մի՛ ինչ խօ-սեսջիք զմեծամեծս վասն մահուան որդւոցն ձերոց: Մի՛ 'ի վախճան լինել ձագանացդ ձերոց սկսնուցուք կախարդութ՟ զրպարտել զիս, զի տէր է գիտութ՟եց և ծածկագէտ՝ եթէ ոչ եմ բամբասելի առաջի նո-րա այդու՝ որով 'ի ձէնջդ զրպարտեալ եմ ես, և ոչ մտանելն առաջի նորա խորամանկութ՟իք խորհրդոց ձերոց:

“Զօրաց հաստ աղեղունք խորտակեցին„. այս ինքն՝ լեզուք նախատչաց իմոց լռեցան և կարկեցան: “Եւ տկարք վառեցան զօրութ՟„. այս ինքն զօրութ՟ն խոստովանութ՟, և ոչ զրպարտութ՟: “Յագք և լիք հա-ցիւ նուաղեցան, և քաղցեալք յաւելին զհաց„. այն էր, զի ամուլն ծնաւ և յագեցաւ, և բազմածինն նուաղեաց 'ի ծնունդս իւր: Տէր մեռուցանէ զորդիս քո, և կեցուցանէ զիմս, և ոչ եթէ մարդ: Տէր աղ-քատացուցանէ զհզօր վարազաթեսդ քո, և մեծա-ցուցանէ զզօրս անձեռնութես իմոյ: Նա տկարացու-ցանէ զբարձր եղջեւրդ քո, և բարձրացուցանէ զիմս խոնարհացեալ. և զի “Բարձր առնէ զտնանկն յաղ-բեւաց„, հանդերձ այլովքն, վասն անձին իւրոյ և վասն ժողովրդեանն մատուցանէր զաղօթսն: “Եւ նստուցա-նէ զնոսա ընդ իշխանս„. այս ինքն բարձրացուցանէ զխոնարհեալ գլուխ նոցա առաջի այլազգեացն, որ-պէս զՍամփսոնին, Նափեթայն և Գեդեոնին՝ զա-ռաջին իշխանաց նոցա. վասն զի տեառն են հիմունք

երկրի [1]; և հաստատեաց 'ի վերայ նոցա զաշխարհս ։ Զայս արար և եցոյց՝ եթէ փոյթ է նմա վասն ամենայն աշխարհիս. զի նա արար զաշխարհս լոյս իւրով ։ Զոտս հեզրայեցւոց զարդարոց իւրոց հաստատէ 'ի պատերազմի, և այլազգիքն ամպարիշտք 'ի խաւարի լռեսցին, այս ինքն 'ի դժոխս արգելցին ։ Վասն զի ոչ եթէ զօրութե̃ իւրով զօրանայ հզօրն. զի առ խըրատ ժողովրդեան մերոյ յաղթեն այլազգիքն 'ի պատերազմի ։ Տէր խորտակէ զայլազգիսն դառնայօղս, և 'ի վերայ նոցա որոտասցէ յերկնից առ 'ի սատակումն կորստեան նոցա ։ Տէր դատի զազգս երկրի, այս ինքն՝ արասցէ զդատաստանս յերկրէն այլազգեաց. և տայ զօրութի̃ թագաւորաց մերոց, և բարձր առնէ զեղջեւր օծելոյ իւրոյ ։ Արդ թէպէտ և Աննա վասն քահանայիցն օծելոյ և վասն թագաւորութե̃ն՝ զի թագաւորեցաւ 'ի տանն անդ Յուդայ՝ մատուցանէր զաղօթս, այլ վասն Քրիստոսի՝ որ հանդերձեալն էր ծագիլ 'ի տանէն Դաւթի, յաղօթել անդ իւրում՝ որ և ոչ էր գիտակ՝ մարգարէանայր ։

Արդ Սամուէլ պաշտէր առաջի տեառն, և որդիքն Հեղեայ պաշտէին զորովայնս իւրեանց նոր երեքժանի մսահանաւն՝ զոր տարաին, 'ի մեծամեծ կաթսայիցն հանէին նոքօք, և 'ի փոքր պուտանց ոչ հեղգային հանել ։ Իսկ զհում միսն զոր առնուին, վասն զի յաղեսցի և եղիցի նոցա առ 'ի պէտս կամաց իւրեանց ։ Եւ յառաջ քան զմատուցանելն պատարագին առնուին նոքա վասն բռնութե̃ իշխանութե̃ն՝ զոր ունէին նոքա ։ Քանզի ըստ քահանայութե̃ն զոր ունէին նոքա, ունէին նոքա և զառաջնորդութիւն ժողովըրդեանն. զի վասն իշխանութե̃ն զոր ստացեալ ունէին նոքա՝ յարժանի և յանարժանի՝ բռնաբար ունէին նոքա ։ Վասն այսորիկ և որ սոցին նման են, եղեն մեղք մեծք յոյժ մանկանցն առաջի տեառն ։

Իսկ զմեկնոցն զոսկեհուռ, զի արար Աննա Սամուէլի մանկանն, տիպք էր այնորիկ՝ զոր զգենոյր քահանայն ըստ նմանութե̃ խաչին. զի ոչ նմանութիւն նորա հեռի էր, և ոչ ճշգրտութի̃ նորա գտեալ էր ։

1 Յօրինակին Երկրի. եդաւ ըստ միւս օրինակին ։

Իսկ Հեղի իբրև ետես թէ որդիսն համբերութեան գը-տաւ 'ի մայրն Սամուէլի, զի առանց որդւոց հատաւ արոշեցաւ յայնմանէ, զի օտարք փափագէին տեսա-նել զնա, օրհնեաց զԵղկանա և զկինն նորա. և ասէ, թէ տացէ քեզ տէր զաւակ, ոչ 'ի Փեննայէ, այլ յայսմ կնոջէ որ անջատեցոյց զանձն իւր յորդւոյն իւրմէ. վասն զի տեսանէ ետ զօրհնութիւնն զոր ետ նմա տէր։

Բայց սերմն զոր սերմանեաց ուխտն չըլթանցն Խանա-նայի, եւթն ընդ 'միոջ հնձեաց զնա 'ի ձեռն օրհնու-թեան՝ որ օրհնեցաւ 'ի լեզուէ անտի քահանայից։ "Եւ լուաւ, ասէ, Հեղի զոր ինչ առնէին որդիքն իւր ընդ ամենայն Իսրայէլ". զի անարգէին զկանայսն՝ որ գային յաղօթս կալ 'ի վրան ժամուն։ Բայց զոր ինչ առնէին նոքա Իսրայէլի, այնքանիկ են՝ որ ինչ 'ի վերուստ գրեալ են. այս ինքն զի ագահութեան իւրեանց զա-մենայն որ մատուցանէր զպատարագն՝ տառապեցու-ցանէին նոքա։ Եւ զի անարգէին զկանայսն, ոչ եթէ պոռնկութեամբ, և ոչ եթէ բանիւք անարգութեամբ, այլ զի գային նոքա 'ի հեռի վայրաց. և բազում անգամ հետք գային հանդերձ անդրանկօքն իւրեանց մատու-ցանել զուխտս իւրեանց։ Եւ վասն զի էր ժամ՝ զի ընդ տօթաժամանակս գային նոքա, և երբեմն ընդ ցուրտ ժամանակս, և ոչ գոյր քահանայ՝ որ ընդու-նէր զանդրանիկս և զուխտս նոցա, և արձակէր զնո-սա 'ի տունս իւրեանց. զի զբաղեալ էին նոքա զու-տելօքն և զըմպելօքն. և կամակորութեամբն և հպար-տութեամբն իւրեանց արհամարհելով արհամարհէին զնոսա և անկանէին; և անարգէին զնոսա. և 'ի տօթ անոդր և յանձրև, վասն զի նիրհայր հոգի նոցա իբ-րև նստէին և ուտէին զուխտս իւրեանց, և սպասէին շուայտեալ քահանայիցն 'ի կերակուրս։

Արդ էին 'ի վրան ժամուն ոչ կանայք լկտիք, այլ որք յաղօթս գային կալ. այս ինքն՝ որ գային հա-տուցանել զխոստովանութիւն և զպատարագս փոխա-նակ անդրանկաց իւրեանց տեառնն անդրանկաց։ Կո-չեաց զնոսա Հեղի և ասէ. ընդէ՞ր գործէք դուք զայսպի-սի գործս. զի լսեմ ես զչար համբաւ ձեր. և ոչ յատե-լեացն ձերոց, և ոչ 'ի միոջէ և յերկուց, այլ յամենայն

ժողովրդեանն ։ Եւ զի ցուցցէ՝ թէ որով տայց եթէ զկամաւոյն անարգէին. «Ոչ բարւոք է, ասէ, լուրս այս՝ զոր լսեմ ես»։ զի խափանէք դուք զժողովուրդն տեառն այսու՝ զի զբաղեալ էք յուտել և յըմպել. և խափանեալ նստին արք և կանայք՝ որ բերեն մատուցանել զպատարագս փոխանակ անդրանկաց և մեղաց իւրեանց ։ Եթէ մեղիցէ այր առն, խնդրել 'ի տեառնէ զի արասցէ զդատն երկոցուն, և թողեալ լինի. իսկ որ տեառնն մեղանչէ, յումմէ՞ խնդրել զի քաւեսցէ զնա ։ Եւ «Ոչ, ասէ, լուան ձայնի հօրն իւրեանց»։ վասն զի խրատելով խրատեաց զնոսա, և ոչ եթէ ցասմամբ և սանձանօք ըստ արժանի յանցանաց յամառութեան նոցա խօսեցաւ ընդ նոսա ։ Եւ զի ասաց՝ եթէ վասն զի կամեցաւ սպանանել զնոսա տէր, ոչ եթէ զի վասն այնր ոչ ապաշխարեցին, այլ վասն զի ոչ զղջացան՝ սպան զնոսա ։ Եւ մանուկն Սամուէլ փառաւորեցաւ առաջի տեառն և որդւոց մարդկան. և որչափ որդիքն Հեղեայ անարգեցան յաչս տեառն և ժողովրդեանն, այնպէս և Սամուէլ յարգեցաւ և մեծարեցաւ ։

Եւ եկն այր տեառն, այս ինքն մարգարէ տեառն, եկն առ Հեղի և ասէ ցնա. Այսպէս ասէ տէր. յայտնելով յայտնեցայ ես յԵգիպտոս 'ի վերայ տանն Ահարոնի հօր քո, և ընտրեցի զնա յամենայն ազգաց ելանել առ սեղան և դնել զխունկս առաջի իմ ։ Արդ փոխանակ խնկոցն զոր առի, ետու նմա զպատարագս, վեց հարիւր հազարացն որդւոցն Իսրայէլի. և ընդէ՞ր անօրինեցար 'ի պատարագս իմ. զի՞ պատուեցեր զորդիսն քո քան զիս, ընտրել առնուլ զարժանն ձեր, ոչ զկնի իմ, այլ ընդ իս, և յառաջ ես քան զիս ։ Արդ փոխանակ այսր զոր արարէքս, այսպէս ասէ տէր, թէպէտ և ասացի թէ դու իբրև զտուն հօր քո պաշտեսցես առաջի իմ յաւիտեան, այլ արդ քաւ լիցի, եթէ անարգեցից ձեռք զփառաւորիչս իմ. այլ դուքդ որ անարգիչքդ էք իմ, անարգեսջիք ։ Արդ խորտակեցից զբազուկ քո և զհօր քո. այս ինքն կոտորեցից զզաւակ քո 'ի սուր սուսերի, և եղիցին կարճակեացք և փոքրամեռք՝ որ մեռանին, զի մի եղիցի այր ալեւոր 'ի տան քում ։

Բայց զի ասաց՝ թէ "Մի՛ պակասեսցէ քո այր 'ի սեղանոյ իմմէ", այս ողորմութեան է. վասն զի մի՛ սպառասպուռ չիջուսցէ զզաւակս ազգի միոյ որդւոցն Ահարոնի: Քանզի մինչ 'ի Սողոմոնէ Եղիազար և զաւակ նորա պաշտէր. և 'ի Սողոմոնէ և անդր Սադովկ որդի Իթամարու յազգէն Ահարոնի: "Խաւարեցուցանելոց է զաչս քո"; զի տեսանէ զպատիւ և զշուք սադովկեանց և յոգւոց ելանէ: Եւ այս է քաջ նշան, զի անցանէ յետ ժամանակի քահանայութիւն 'ի զաւակէ քումմէ, որպէս և տեսցես այսօր. զի ընդհուպ ժամանակս Ոփնի և Փենեէս 'ի միում աւուր մեռցին, և կացուցից ինձ քահանայ հաւատարիմ ըստ սրտի իմում զՍադովկ. և շինեցից նմա տուն հաւատարիմ, զի եղիցի կարգեալ զաւակ քահանայութեան նորա մինչև յաւիտեան. և գնասցէ առաջի Սաղոմոնի օծելոյ իմոյ զամենայն աւուրս. և ամենայն որ մնայ 'ի տան քում, փոխանակ ագահութեան պատարագաց, զի պակշոտեալ ակարասցի, և իջցէ մինչև 'ի վարձս արծաթոյ. այս ինքն մինչև 'ի նաքարակիտ մի, և 'ի նկանակ, և 'ի փոքր պատառ հացի:

"Եւ պատգամն տեառն, ասէ, ծանր էր յաւուրսն յայնոսիկ", որպէս և յաւուրսն Ողիայ: Անդ վասն զի կամեցաւ թագաւորն առնուլ իւր զքահանայութիւն. և աստ՝ վասն զի անօրինեցան քահանայքն 'ի քահանայութեան անդ, ոչ գոյր սուտ տեսիլ վասն յայտնի մեղաց տանն Հեղեայ: Եւ կոչեաց տէր 'ի բարբառն Հեղեայ զՍամուէլ. և ընթացաւ առ Հեղի, և ասէ. ահաւասիկ եմ: Եւ զի կոչեաց զնա երիցս անգամ 'ի գիշերի անդ. մի՝ զի լիցի պատգամն ահաւոր, և երկրորդ՝ զի երևեսցի զուարթութիւն նորա երիւք վկայութեամբ, և զի զարթիցէ 'ի բարբառոյ Հեղեայ յոր սովոր էր պատրաստել 'ի վարդապետութենէն Հեղեայ, առ 'ի լսել զձայնն այ յոր ոչն էր սովոր: Իսկ իբրև իմացաւ Հեղի եթէ տէր կոչեաց զպատանեակն, զոր ինչ ոչ իմացաւ Սամուէլ վասն տխմարութեան իւրոյ, հրամայեաց նմա երթալ ննջել: Եւ եթէ կոչեսցի 'ի բարբառն Հեղեայ, այլ մի՛ եկեսցէ առ Հեղի, այլ ասասցէ՝ եթէ "Խօսեաց տէր, և լսեսցէ ծառայ քո":

Իսկ իբրեւ յայտնեցաւ Տէր, ոչ 'ի բարբառն Հեղեայ, եւ ոչ դարձեալ միով բարբառով իբրեւ զառաջին անգամն կոչեաց զնա, այլ կոչեաց երկիցս անգամ: Ասաց եւ Սամուէլ որպէս եւ հրամայեցաւն, եթէ «Խօսեաց Տէր, եւ լուիցէ ծառայ քո»: Ասաց Տէր ցՍամուէլ. «Ահաւասիկ առնեմ ես զպատգամ բարկութեան. զի ամենայն որ լուիցէ զնա, հնչեսցեն ականջք նորա 'ի վրիժուցն զոր արարից. եւ յարուցից 'ի վերայ Հեղեայ զամենայն զոր ասացի առնել 'ի վերայ տան նորա 'ի ձեռն մարգարէին Տեառն. սկիզբն յՈփնեայ եւ 'ի Փենեէսեայ, եւ կատարումն յաւուրս Սադովկեայ. եւ ցուցից եւ յայտ արարից, զի դատիմ ես զտունն նորա յաւիտեան. այն զի անցանէ քահանայութիւն 'ի զաւակէ նորա յաւիտեան»: Գիտէր զի անարգէին որդիքն նորա զկանայսն, եւ ոչ յանդիմանէր զնոսա՝ որպէս եւ արժան էր. վասն այսորիկ սատակեաց զտունն Հեղեայ: Եւ ուխտիւք եւ պատարագօք, զոր մատուցանէին 'ի ժամանակի՝ զի կայր քահանայութիւն նոցա, մի՛ քաւեսցին մեղք եւ անօրէնութիւնք նոցա յաւիտեան:

Բայց Սամուէլ՝ վասն զի ասացաւ այս ամենայն ցՀեղի 'ի ձեռն առնն Տեառն, վասն զի ոչ տուաւ նմա հրաման ասել կամ չասել, երկեաւ նա յայտնել Հեղեայ զխիստ դատավճիռն դառն պատուհասին՝ որ գայր 'ի վերայ տանն նորա. մանաւանդ զի գիտէր թէ պատարագօք ոչ քաւի, թէպէտ եւ ապաշխարութեամբ անձինն քաւէր. քանզի ոչ ասաց թէ ապաշխարութեամբ մի՛ քաւեսցի, այլ թէ պատարագօք մի՛ քաւեսցի: Իսկ իբրեւ երդմնեցոյց Հեղի զՍամուէլ, եւ յայտնեաց նմա, ասէ Հեղի. Տէր՝ որ ետ զքահանայութիւնն զառաջինն Եղեազարու մինչեւ ցայսօր, եթէ կամի տալ այլում զաւակի, որպէս եւ հաճոյ իցէ յաչս նորա՝ արասցէ: Եւ ոչ արկ Սամուէլ յամենայն բանիցն Տեառն 'ի վերայ երկրի, 'ի ժամանակին զի անարգէին որդիքն Հեղեայ զպատուիրանս Տեառն. եւ գիտաց ժողովուրդն այսու յայտնութեամբ, եթէ հաւատարիմ եղեւ Սամուէլ, զի հանդերձ առաջնորդութեամբ ժողովրդեանն եղիցի մարգարէ Տեառն:

## ԳԼՈՒԽ Բ

Մինչ կարգեցաւ ճակատեցաւ 'ի մարտ պատերազմի Իսրայէլ դէմ յանդիման այլազգեացն. բերին ընդ իւրեանս և զտապանակ կտակարանացն, զի 'ի պատճառս նորա առցեն զյաղթութիւն 'ի վերայ գնդին թշնամեաց. և վասն զի անարգեցին զտուն սրբութեն, և առին տարան զնա ընդ իւրեանս, զի նովաւ տարեսցին 'ի ժամ պատերազմին։ Իբրև խրախոյս բարձեալ հեբրայեցւոց առաջի նորա 'ի ձայն փողոյ մեծաբարբառ աղաղակէին, զահի հարան դողացին այլազգիքն. բայց ոչ ինչ երկեան 'ի բարբառոյ նոցա, այլ 'ի զօրութենէն որ բնակեալ էր 'ի տապանակին կտակարանաց՝ որ էր ընդ նոսա։ Զայն ետուն և ասէին ցմիմեանս. "Այս է ա̃ծ՝ որ եհար զԵգիպտոսն 'ի հարուածս մեծամեծս. զոր ինչ հեբրայեցիքն որ թագլխին հանել զնոսա յԵգիպտոսէ վկայէին։ "Քաջ լերուք. պինդ կացէք, ասէ, մի զանգիտէք. զի ա̃ծ եկն 'ի բանակն նոցա. հզօրեցարուք, ասէ, այլազգիք 'ի վերայ հեբրայեցւոցն, զի գուցէ դարձեալ ծառայիցէք այնոցիկ՝ որ ձեզն ծառայեցին,,։

Իսկ իբրև կոտորած մեծ արար ա̃ծ 'ի զօրու անդ, և անկան 'ի նոցանէ երեսուն հազար, և գերեցաւ տապանակն կտակարանաց, և մեռան երկու որդիքն Հեղեայ; եկն եհաս բօթաբերն. գոյժ առ տալ մեծի աղաղակաւ, և ցոյց քաղաքին և Հեղեայ որ ինչ անցք անցին ընդ զօրս իսրայէլացւոց. զորոյց եւ և զգերել տապանակին, և զմեռանել երկուց որդւոցն Հեղեայ։ Եւ յիշեաց Հեղի զտապանակն կտակարանաց որ առ վնահատակութիւն 'ի քանանացիս, զի արհամարհեցաւ 'ի ձեռն այլազգեացն, անկաւ կործանեցաւ և անդէն մեռաւ։ Նա առաջնորդեաց Իսրայէլի քառասուն ամ։ Իսկ նուն նորա առ շտապ տագնապի նեզութեն կոտորածի, ստիպեցին զնա երկունք նորա. և իբրև մեռանէր ընդ ծնանելն, ետ պատասխանի և ասէ. "Անցին փառքն յԻսրայէլէ,,. վասն զի գերեցաւ տապանակն կտակարանաց՝ որ տայր զքաջութին և զառաքինութին Իսրայէլի։

Որդ. այլազգիքն տարան եդին զտապանակն կտակարանաց իբրեւ 'ի պատուի 'ի տանտի Դագոնայ դիցն իւրեանց ։ Իսկ տապանակն որ թեթեւացոյց զինքն 'ի ձեռն այլազգեացն, ծանրացաւ եւ շքեղացաւ 'ի բագնին նոցա ։ Նահատակեցաւ եւ յաղթեաց զդիս նոցա, եւ արկ զնա 'ի վերուստ 'ի վայր 'ի վերայ երեսաց իւրոց ։ Եւ զի մի' կարծեսցեն նոքա եթէ դէպ տուաւ, դարձեալ 'ի միւսում եւս աւուր՝ իբրեւ ուղղեցին եւ հաստատեցին յիւրում տեղւոջն, չոգան գտին զնա ոչ միայն անկեալ յերեսս իւր, այլ եւ զգլուխն հատեալ, եւ կորեալ զթաթս նորա, զորմէ կարծէին այլազգիքն. թէ զօրութ̃ն նոցա մարտնչէին նոքա ։ Եւ իբրեւ ոչ հաւանեցոյց զնոսա հարուածն՝ զոր ած 'ի վերայ դիցն նոցա առաքել զտապանակն կտակարանաց 'ի տեղի իւր, հար զնոսա յերաստանս իւրեանց ։ Եւ իբրեւ տարան 'ի Գէթ, եւ առաքեցին յԱկկարոն, եւ հարան յերաստանս իւրեանց 'ի թանչս, տարան եդին զտապանակն յանդաստանի ։ ապականեցան անդաստանք նոցա 'ի ձեռն մկանցն ։ զի վասն այնորիկ արարին զերաստանսն ոսկի եւ զմկունսն ոսկի, եւ առաքեցին հանդերձ տապանակաւն 'ի սայլակին ։ զի քարոզեսցին թէ 'ի ձեռն անարգ մկանցն եւ աղտեղի երաստանացն տանջեաց Ա̃Ծ, եւ վատթարեաց ըզսաստիկ թագաւորութիւնն այլազգեաց ։

Բայց առաքեցին զտապանակն մեծաւ պատուով 'ի ձեռն մատաղորթ եւ անդրանկածին երինջոցն ։ Իսկ իբրեւ տեսին զբչիւն երինջոցն եւ որթուցն իւրեանց, զի առանց ուրուք բռնութեան ոչ դառնային 'ի միմեանս, զի յաղթեաց ծածուկ բռնութիւն որ շտապէր զնոսա, զի մի' դարձցին, զբուռն գութ աղեացն իւրեանց՝ որ ստիպէր զնոսա դառնալ, ապա գիտացին թէ տէրն որ հար վանեաց զնոսա եւ զերկիրն եւ զդիսն իւրեանց, նա մատնեաց զտապանակն 'ի ձեռս նոցա ։ Վասն այսորիկ իսկ մարդիկն Բեթշամիւշ գեօղջն իբրեւ տեսին զտապանակ կտակարանացն, ուրախ եղեն եւ ցնծացան յոյժ ։ Եկին իջուցին զտապանակն ղեւտացիքն, եւ զփունդամն ոսկեղէն մկանցն, եւ տարան եդին առ մեծ վիմին, եւ մատուցին զողջակէզս եւ զպատարագս ։

Արդ այլազգիքն իբրև տեսին զերինջսն՝ թէ ոչ կացին և զտեղի առին ուրեք՝ մինչև եկին կացին յանդաստանին Յովսեայ, ապա ևս ճշմարտիւ գիտացին թէ տէր գերեաց զտապանակն կտակարանաց վասն մեղաց ժողովրդեանն, և նա դարձոյց զնա մեծաւ առաքինութեամբ՝ զոր արար առ այլազգիսն յերկնէ հարուածովք՝ զոր ած հասոյց 'ի վերայ նոցա: Արդ տապանակն զի եկն 'ի հեթանոսաց, և արգելաւ կաց յանդաստանին Յովսեայ, զխորհուրդ մարգարէութեանն նշանակէր՝ որ սահմանեցաւ խաչիւն Յիսուսի: Իսկ մարդիկն Բեթսամիւսայ վասն զի երկեան և զահի հարան տանել առ իւրեանս զտապանակն վասն անցիցն անցելոց՝ զոր լուան եթէ անցոյց ընդ իշխանս այլազգեացն, հար զնոսա 'ի հարուածս, և յաւել հար յիսուն և հինգ հազար և զեւթանասուն այր 'ի ժողովրդեանն. վասն զի ոչ եզէն նախանձայոյզ տանել զտապանակ կտակարանացն 'ի Սելով:

Տարան զտապանակն առ իւրեանս մարդիկն Կարիաթարիմ գեղջն, և բերին զնա, ոչ եթէ յանդաստան, այլ 'ի տուն Ամինադաբայ ղեւտացւոյ 'ի Գեբաաթ, և սրբեաց զորդին իւր՝ զի պաշտեսցէ զտապանակն կտակարանաց: Իսկ իբրև նստաւ անդ զքսան ամ, և դարձան որդիքն Իսրայէլի առ տէր, ասաց Սամուէլ ցժողովուրդն, եթէ «Բոլորով սրտիւք ձերովք դարձարուք առ տէր, 'ի բաց արարէք զկուռս օտարոտիս, և ապրեցուսցէ զձեզ 'ի ձեռաց այլազգեաց»: Իսկ իբրև թողին զԲահաղ և պաշտեցին ըզտէր, ժողովեաց Սամուէլ զժողովուրդն 'ի Մասեփայ՝ մատուցանել աղօթս վասն նոցա, զի հաշտեսցի ընդ նոսա տէր վասն դառնալոյ նոցա. և այնոքիկ՝ որ դառնացուցին զնա, վասն զի դարձան և խոտորեցան 'ի նմանէն, բերին ջուր և հեղին առաջի տեառն՝ յասելն իւրեանց. իբրև զայս ջուր հեղցի արիւն մեր 'ի ձեռաց այլազգեացն՝ եթէ այլ դարձցուք 'ի տեառնէ:

Իսկ իբրև պահեցին վասն մեղացն զոր մեղանն, և դատեցաւ զնոսա անդ Սամուէլ, այս ինքն զի յանդիմանեաց զնոսա, վասն զի պաշտեցին զԲահաղ և զՄեհեանս: Յաւելին զօրաժողով լինել այլազգիքն

դալ հասանել 'ի վերայ ժողովրդեանն 'ի մարտ պատերազմի : Եւ մինչ դեռ Սամուէլ հանէր զողջակէզն և մատուցանէր զաղօթս ժողովրդեանն, զի զահի հարեալ երկնչէին, կարգեցան ճակատեցան այլազգիքն 'ի պատերազմ : Որոտաց տէր յերկնից և խռովեաց զնոսա : Անդ զօրանայր Իսրայէլ 'ի վերայ այլազգեացն. փախստեայ տանէին զնոսա ժողովուրդն, որ երբեմն 'ի նոցանէ փախստեայ լինէր : Առ Սամուէլ վէմ մի մեծ, և եդ ընդ Մասեփայ և ընդ Բեթիա նշան, և ասաց՝ թէ "Մինչև ցայսր օգնեաց մեզ տէր „. վասն զի 'ի Մասեփայ մինչև ցայս վայր օգնեաց մեզ տէր կոտորել զայլազգիսն :

Իյկին ժողովեցան ծերակոյտ յուդայեանց, որք ակն ունէին մի մի 'ի նոցանէն թագաւորել 'ի վերայ ժողովրդեանն : Ծառ արկին, սկսան խօսել և ասեն ցՍամուէլ. "Ահաւասիկ դու ծերացար և հասեր 'ի չափ աւուրց քոց, և չես կարող արդ յայսմ հետէ մտանել և ելանել ընդ մեզ 'ի մարտ պատերազմի, և որդիքն քո զոր կացուցեր 'ի վերայ մեր դատաւորս՝ ոչ. գնան 'ի ճանապարհս քո, վասն զի խոտորեցան սիրտք նոցա զկնի կաշառոց. տուր մեզ թագաւոր, զի դատեսցէ զմեզ իբրև զամենայն ազգս „ : Չար թուեցաւ զրոյցն յաչս Սամուէլի, ոչ. վասն զի անարգեցին զնա և զորդիս նորա ; և ոչ վասն զի խնդրեցին զթագաւոր, զի 'ի Յակովբու ժամանակացն իսկ խօսացեալ էր. այլ զի ասացին թէ դատեսցէ զմեզ իբրև զամենայն ազգս, այս ինքն՝ զի թողացուցէ նոցա պաշտել զամենայն աստուածս՝ զոր և կամիցին :

Յաղօթս կաց Սամուէլ, զի գիտասցէ թէ ուստի է պատդամս այս՝ զոր խօսեցաւ ժողովուրդն : Ասաց տէր ցՍամուէլ. "Լուր ձայնի ժողովրդեանդ. վասն զի ոչ թէ զքեզ անարգեցին թագաւորանն՝ զոր խնդրեցին, այլ զիս անարգեցին, զի մի թագաւորեցայց քև 'ի վերայ նոցա „ : Իբրև զի մի գործ է 'ի չար գործոցն՝ զոր արարին իբրև ելին յԵգիպտոսէ, զԲահաղ և զՓեղփեգովր, որպէս և թողին զիս և պաշտեցին զաստուածս օտարս, սոյնպէս առարին և քեզ : Բայց այնոքիկ՝ որ երկեան 'ի փոքր գողանացն՝ զոր գողացան որդիքն քո գաղտուկ 'ի քէն, ցոյց նոցա՝ զոր

ինչ առնու յայտնապէս 'ի նոցանէ թագաւորն որ թագաւորէ 'ի վերայ նոցա ։

Իսկ իբրև համարեցաւ առաջի նոցա զընթանալ որդւոցն առաջի կառացն, և գործել զգործ նոցա և հնձել զհունձ նոցա, և զտանել դստերաց նոցա յուտայնանկս և մլաղացս և հացեփեացս առնուլ զայգեստանս և զձիթաստանս նոցա, տասանորդել զարդիւնս արմտեաց նոցա հանդերձ այլովք բազմօք. զի վասն բազմութե հարկացն բողոքեսցեն առաջի թագաւորին՝ զոր ընտրեցին. և մի լուիցէ նոցա տէր ։ Իսկ իբրև վասն այսր ամենայնի ոչ կամեցան հրաժեշտ առնուլ 'ի թագաւորէն՝ զոր խնդրեցին., յայտ եղև զի ոչ եթէ վասն փոքր փոքր կաշառոց որդւոցն Սամուէլի հրաժարեցին 'ի նոցանէ, այլ վասն զի զթագաւորութիւնն խնդրէին իւրեանց, որպէս և Մովսէսն կանխեաց մարգարէացաւ 'ի վերայ նոցա. Եւ զի եղիցի նոցա 'ի ձեռն թագաւորին՝ զոր ընտրեցին՝ համարձակութի երկիր պագանել ամենայն կռոց զոր և կամիցին ։ Եւ վասն զի կամեցան կորզել առնուլ զթագաւորութիւն յիւրեանս, անարգին խոտին ազգքն ամենայն հանդերձ յուդայեան ազգաւն, և ընտրէ զՍաւուղ 'ի փոքր ազգէն Բենիամինի ։

Արդ իբրև առաքեցաւ նա 'ի հօրէ անտի իւրմէ խնդրել զէշսն որ կորեան. և հաս յայս պատճառս մինչ առ Սամուէլ ։ Եւ ահա Սամուէլ մատուցեալ ելանէր 'ի Բամայ, այս ինքն 'ի տեղի երևելի. զի յոր պատարագին իւրեանց անդ ճաշէին ։ Հրաման առ Սամուէլ աւուրբ յառաջ օծանել զորդին Բենիամինի՝ որ գալոցն էր առ նա 'ի վաղիւ անդր ։ Տեսի, ասէ, զժողովուրդ իմ, և մուտ բողոք նոցա առաջի իմ վասն այլազգեացն և ամովնացւոցն, որպէս և եմուտ բողոք հարցն նոցա առաջի իմ վասն եգիպտացւոցն ։ Զոգաւ Սաւուղ առ Սամուէլ, և եցոյց նմա վասն իշոցն որ գտան. մարգարէացաւ նմա և վասն թագաւորութեն, այն զի ասաց ցնա, եթէ "Իսկ ո՞յր իցեն բարութիւք ամ Իսրայէլի, եթէ ոչ քո և տան հօր քոյ " ։ Իսկ Սաւուղ թէպէտ և մտ հեռի իւրացն զորմէ յայտնեաց նմա՝ հաւատաց, այլ սակայն զթագաւորութեն մտ կրտսեր ազգին իւրոյ երկմտեալ էր ։

Արդ իբրև եկեր և արբ Շաւուղ ընդ Սամուէլի, և ետ զմասն զոր պահեալ էր նմա յառաջ քան ըզ-տեսանելն զնա, խօսեցաւ ընդ Շաւուղի վասն ընտանեացն՝ որ ինչ աւուրբ յառաջ 'ի տեառնէ ասացաւ ցնա ։ Եւ իբրև իջանէին՝ հարց զպատանեակն իբրև ոք զի յայտնեսցէ նմա զպատգամս տեառն. և արկ զիւղն 'ի գլուխ նորա, և համբուրեաց զնա ։ Եւ վասն զի երկմտեալ էր Սաւուղ վասն կրտսերութեան տոհմին իւրոյ, ետ նմա նշան զերկուց արանցն՝ որ պատահելոց էին նմա 'ի Ծիծղայ, և մատուցանեն նմա աւետիս վասն իշոցն որ գտանին, և զերից արանցն՝ որ ելանէին 'ի տունն ա͞յ ։ Եւ զի պատահելոց էր նա 'ի Հռամայ ա͞յ դասուն մարգարէից՝ որ մարգարէանային թէ Սաւուղ թագաւորեցաւ 'ի ժողովրդեանն ։ Նա և դու իսկ՝ որ երկմտեալդ ես վասն այսր, մարգարէանաս ընդ նոսա վասն նորին իրի ։ Հրամայեաց նմա դարձեալ երթալ 'ի Գաղգաղա, և մնալ նմա եւթն օր, մինչև եկեսցէ առ նա մատուցանել զողջակէզս, և ցուցանել նմա զինչ առնելոց իցէ ։

Իսկ իբրև դարձաւ նա 'ի Սամուէլէ, փոխեաց ա͞ծ զսիրտ նորա, ոչ զարդարութե՟ այլ զզօրութե՟ ։ Եւ արար Սամուէլ զօրաժողով 'ի Մասեփայ ։ Եւ մինչ դեռ խորհէին և զմտաւ ածէին ազգն յուդայեան՝ եթէ նոքա թագաւորեն, ընտրեցաւ ազգն Բենիամենի, և ընտրեցաւ Սաւուղ յազգի անդ ։ Խնդրեցաւ և ոչ գտաւ. իսկ իբրև յայտնեցաւ տերամբ վասն նորա՝ ածին զնա, զի թաքուցեալ էր ընդ կարասեաւն, և թագաւորեցուցին զնա ։ Միաբանեցան հաւանեցան հաւասարեցան ընդ նմա սակաւքն և նուաղունքն՝ որ ոչն խնդրէին զնա ։ Եւ որդիքն անօրէնութե՟ որք խնդրեցին զնա՝ նայեցան յազգ և 'ի տոհմ նորա, զի կրտսեր էր. ետուն պատասխանի և ասեն ընդ միմեանս՝ թէ "Որո՞վ իւիք կարիցէ փրկել զմեզ յայլազգեացն և յամոնացւոցն" ։ Եւ վասն զի արհամարհեցին զնա, թոյլ ետ ա͞ծ Նախաշու ամովնացւոյ, և եկն բնակեցաւ առ Աքիշ գաղայադացւոց, և խորհեցաւ առնել զնա ձաղ ժողովրդեանն, այսուիկ՝ զի խնդրեաց 'ի նոցանէն կուրացուցանել զաջ ակն իւրեանց. և ապա ուխտեսցէ ընդ նոսա

զուխտ և դաշինս կռեսցէ ։

Իսկ իբրև առաքեցին բնակիչքն Աքիշ քաղաքի 'ի Հռամայ առ Սաւուղ, և ցուցին նմա զայսոսիկ բանս և լային զլալիւն մեծ, վառեցաւ հոգին զօրութեն 'ի վերայ Սաւուղայ. և կալաւ պատառեաց զեզինսն իւր, և ետ տանել ընդ ամենայն Իսրայէլ, զի անկցի նոցա ահ և երկիւղ, և միահամուռ ելցեն զօրաժողով առ Սամուէլ և առ Սաւուղ ։ Ցորում աւուր ակն ունէին կուրացուցանել ամոնացիքն զաջս որդւոցն Իսրայէլի, որ 'ի նմին աւուր եղեն կեր սուսերի ։ Եւ նահատակեցաւ նախ 'ի նոսա առաջին թագաւորն՝ որ եկաց 'ի ժողովրդեանն ։

Զու արարին և եկին ելին յետ այսորիկ 'ի Գաղգաղա նորոգել զթագաւորութիւնն ։ Եւ վասն զի մարգարէ էր Սամուէլ և նահապետ և դատաւոր, ասաց զի գգուեսցէ զանձն իւր առաջի ժողովրդեանն և առաջի թագաւորին. զի յոյժ և անչափ հեռի էր նա յայնմ իմեքէ՝ որով իւիք բամբասէին զնա որդւովքն իւրովք ։ “Զո՞յր, ասէ, զեզն առի վարել նովաւ, և կամ թէ կասուլ. և զո՞յր գրաստ վարեցի աղալ նովաւ, և կամ թէ կրել„ ։ Եւ իբրև վկայեցին ամենեքեան առ հասարակ՝ եթէ “Ոչ զրկեցեր զմեզ և ոչ բռնի վարեցեր„, այլովք հանդերձ, ետ պատասխանի և ասէ ցնոսա. “Դատեցայց ղձեզ առաջի տեառն„. այս ինքն յանդիմանեցից զձեզ առաջի տեառն ։

Իսկ սկսաւ այնուհետև համարել նոցա զնահապետսն յեգիպտոսէ՝ որ կացեալ էին 'ի ժողովրդեանն, և զի յամենայն նեղութեց փրկեալ էր զնոսա 'ի թագաւորացն՝ որ շուրջ զնոքօք բնակեալ էին ։ Եւ արդ այժմ ոչ էր պարտ և պատշաճ երկնչել ձեզ յամոնացւոցն, և խնդրել ձեզ զթագաւորն. վասն զի մինչև ցայսօր ոչ եթէ թագաւորաւ փրկեաց ըզձեզ, այլ 'ի ձեռն դատաւորաց. գիտացէք զի չարիքն ձեր եղեն, զի խնդրեցէք ձեզ թագաւոր. ահա տամ ձեզ նշան 'ի ձեռն որոտման և անձրևոյ, զի տեղասցէ 'ի հունձս ցորենոյ ։ Եւ նոքա պատասխանի և ասեն. “Աղօթս արա 'ի վերայ մեր, վասն զի մեղաք մեք զի խնդրեցաք թագաւոր„ ։ Ասէ ցնոսա. “Քաւ ինձ՝ եթէ մեղայց տեառն, և հատուցից զփոխարէնդ ձեր„.

այս ինքն՝ թէ մատուցից վ̃ն ձեր պատարագ առաջի ա̃ծն:

Դարձեալ յետ ժամանակիս այսորիկ եկին հասին այլազգիքն 'ի վերայ հեբրայեցւոց 'ի մարտ պատերազմի . և Սաւուղ ցարդ ևս 'ի Գաղգաղա էր: Իբրև կաց մնաց եւթն օր, որպէս պատուիրեաց նմա Սամուէլ, ցրուեցաւ ժողովուրդն առ 'ի նմանէն: Բայց յամելն Սամուէլի առ 'ի փորձ հանդիսի էր Սաւուղի, զի եթէ կա՞յ մնայ առ պատուիրանին՝ որ ինչ 'ի Սամուէլէն հրամայեցաւ նմա: Իսկ Սաւուղի այսպէս թուեցաւ՝ եթէ զոր օրինակ առ ազգն նորա զտեղի թագաւորութեան 'ի Յուդայէ, նոյնպէս առնու և զքահանայութիւն 'ի յղևտացւոց անտի: Իսկ իբրև ժպրհեցաւ և մատոյց զողջակէզսն, որ ոչ էր նմա հրամանս, եկն Սամուէլ և ասէ ցնա . "Յանցեար, զի ոչ պահեցեր զպատուիրանս տեառն՝ զոր պատուիրեաց քեզ տէր 'ի ձեռն իմ": Եւ վասն զի խորհեցար առնուլ զերկոսին, արդ և զթագաւորութիւդ զոր ունիս՝ մի ըմբոշխնեսցես . քանզի ընտրեաց իւր տէր զայր Դաւիթ՝ իբրև զսիրտն իւր, առնել զիրաւունս և զարդարութիւն ժողովրդեանն:

Նա պատասխանի Յովնաթան և ասէ ցկապարճակիրն իւր . "Եկ անցցուք 'ի վերայ այլազգեացն": և խնդրեաց նշան 'ի բերանոյ այլազգեացն: Եւ իբրև ետես՝ եթէ տուաւ նմա նշան, այն զի ասացին եթէ եկայք առ մեզ, ելին 'ի վերայ նոցա . և անկան այլազգիքն առաջի նորա: Եւ եղև անդ սուր առն 'ի վերայ ընկերին իւրոյ, որպէս և 'ի Մադիամն: Եւ այլազգիքն և հեբրայեցիքն սիրով էին իբրև յերեկն և յեռանդն, և շուրջ նստէին . այս ինքն ուրախ էին լինել խաղաղութե̃ ընդ Իսրայէլի և ընդ Շաւուղի:

Նա պատասխանի Սաւուղ և ասէ . "Անիծեալ է այր՝ որ կերիցէ հաց մինչև ցերեկոյ, մինչ զի խնդրեցից վրէժ 'ի թշնամեաց իմոց": Եւ Յովնաթան ոչ լուաւ . և կարկառ զնիզակաբունն իւր, և թաթաւեաց 'ի մեղու անդ, և եդ 'ի բերան իւրում, և բացան աչք նորա . և շուայտեցաւ ժողովուրդն յաւար անդր . այս ինքն զի ժլատացան [1] և տարան զխաշինս

1 Միւս օրինակն չլափացան որպէս և 'ի յաւելուածն:

և զանդեալս, և զենին 'ի վերայ երկրի, և կերան հանդերձ արեամբն. վասն զի ոչ ել 'ի ճարպոյ և յարենէ նոցա 'ի վերայ սեղանոյն։ Եւ շինեաց Սաւուղ սեղան տեառն, և հան 'ի վերայ նորա զարիւնն և զճարպ զոր զենուլին, և կերան։ Արդ խնդրեաց Շաւուղ 'ի տեառնէ իջանել 'ի վերայ այլազգեացն, և ոչ լուաւ։ Եւ հրամայեաց Շաւուղ ժողովրդեանն արկանել վիճակ ընդ ինքն և ընդ ժողովուրդն և ընդ Յովնաթան։

Եւ ուստի՞ գիտաց Շաւուղ եթէ անց ժողովուրդն ըստ նզովն. քանզի ոչ գոյին նմա մեղք կամաւս քան զայս, այն՝ զի հան զողջակէզն իբրև ոչ էր իշխան։ Եւ եթէ այս և որ սոցին նման է՝ ոչ կասեցոյց զյաղթութիւն նորա, այս փոքրիկս Յովնաթանու՝ զի ոչ լուաւ իբրև երդմնեցուցանէր հայրն նորա զժողովուրդն, զիա՞րդ արգելլոյր զնա։ Այլ տէր գրգռեաց զնա զի պահանջեսցէ զայս. որպէս զի նովաւ և 'ի նմանէն դատեսցի զնա։ Զի եթէ նա՝ վասն զի անց որդի նորա ըստ նզովն նորա՝ սպանանէր, վասն զի եկեր լիաբերան պատառ մի խորսխոյ՝ իբրև չէր գիտակ՝ 'ի կենաց անտի հատանէր, ինքն զի անց ըստ պատուիրանն տ̃յ՝ որչափ ևս արժան էր մեռանել նմա։ Նա դարձեալ և առ 'ի փորձ հանդիսի ժողովրդեանն եղև այս, զի ապրեցուցին զՅովնաթան 'ի մահուանէ, որպէս զի ընդ միտ մտցեն հօրն նորա. և զքահանայսն որ կոտորեաց, ոչ ապրեցուցին ընդ միտ մտանել տ̃յ։

Եւ յետ այսորիկ առաքեաց զնա Սամուէլ կոտորել 'ի սուր սուսերի զամաղեկացիսն, և հրաժիգ առնել զամենայն ինչս նոցա։ Եւ դատեաց զօրութ̃. այս ինքն յանդիմանեաց զզօրութ̃ն։ Իսկ կենացւոցն զի՞ ոչ խնայեաց։ Զի աներք էին Մովսիսի, և զերախտիսն զոր արարին ժողովրդեանն՝ այն իսկ է, զի սպանին զՍիսարա զխռովիչն հեբրայեցւոց։ Արդ չու արար խաղաց գնաց Սաւուղ յԱմաղէկ, և կոտորեաց զամաղեկացիսն 'ի սուր սուսերի իւրոյ, որպէս և հրաման տուաւ նմա։ Կեցոյց զԱգագ և զգեղեցիկ ստացուածս խաշանցն ամաղեկացւոցն առանց հրամանի։ Ասէ տէր ցՍամուէլ. "Զղջացայ ես, զի

Թագաւորեցուցի զՍաւուղ»: Զայս զի ասաց՝ եթէ զղջացայ, յայտ առնէ և ցուցանէ՝ եթէ ոչ գոյր ընդ նմա այլ՝ ուսուցանել զերզ և ապաշաւ այնմիկ, որ զզջութիւն հեռի էր 'ի նմանէն:

Յաղօթս կայ Սամուէլ վասն Սաւուղի: Եւ զի էջ ընդ առաջ Սաւուղի 'ի Կարմելոս, և ահա նա կազմէր տեղի ողջակիզաց, իբրև ոչ իշխէր և 'ի տեղի ուր ոչ էր հրամայել նմա: Ասէ Սաւուղ ցՍամուէլ. «Օրհնեալ է տէր՝ որ հաստատեաց զպատգամ իւր». կամ զայն՝ զոր ասաց 'ի ձեռն Մովսէսի՝ եթէ «Գլուխ ազգաց Ամաղէկ. վախճան կատարածի նորա կորիցէ յաւիտենից». և կամ զայս՝ զի 'ի ձեռս քո հրամայեաց ինձ իջանել յԱմաղէկ և կոտորել զնա: Արդ եթէ տէր արար 'ի ձեռս քո զոր ինչ ասացն ցքեզ, դու ընդէ՞ր ոչ արարեր զայս զոր պատուիրեացս քեզ: Խնայելովդ զի խնայեցեր յԱգագ արքայ Ամաղէկայ, մահապարտ ես. և զի ցանկացար յաւար, չարիս գործեցեր առաջի տեառն: Իսկ իբրև ստեաց Սաւուղ և ասաց, եթէ «Մատուցանել պատարագ տեառն ածաք զխաշինսդ», ասէ ցնա. «Կոտորել հրամայեաց, և ոչ մատուցանել. քանզի լաւ է զբանն առնել Աստուծոյ, քան մատուցանել զողջակէզս պատարագաց»: Բայց կասկածեմ ես, և 'ի խղճի են միտք իմ. զուցէ յայսմանէ եկեսցես 'ի մեծ քան զայս, որպէս եցոյց ինձ տէր յայսմ գիշերի: Բայց զայս գիտասջիր, զի մեղք դիւթի դառնութիւն է և բարկացողութիւն:

Եւ վասն զի խորամանկեցաւ Սաւուղ զի 'ի ձեռն պատարագին վայելլեցէ և օգտեսցի յաւարէ անտի, և զի ցուցցէ նմա Սաւուղ՝ եթէ գիտաց զխորհուրդ նորա, յայտնեաց նմա և ասէ, եթէ զինչ որ զօդէ մարդ 'ի սրտէ անտի իւրմէ յետ ընդունելոյ պատուիրանին, այն դառնութիւն է և ստութիւն: Ասէ. պատրաստեցար յղենալ, զի տեսցես զպատկեր մեռելոյ, և հարցցես 'ի նմանէն. այն իսկ է, զի Ամաղէկ եղև սկիզբն անարգելոյ նորա և դիւթութեան և խլուսին թագաւորութեան նորա. «Վասն զի անարգեցեր դու զբանն տեառն, յայսմ օրէ և անդր անարգեսջիր 'ի թագաւորութենէդ»: Ստեաց միւսանգամ Սաւուղ

և ասէ, թէ "ի ժողովրդեանն այսր երկեայ, զի մի՛ քարկոծեսցեն զիս վասն ագահութեան իւրեանց. և թողի ես զխաշինս և զանդեայս. այլ դարձ ընդ իս և երկիր պագից տեառն,,: Եւ իբրև բուռն հարեալ ունէր Սաւուղ զՍամուէլէ, պատառեաց զմեկնոցն նորա: Եւ պատասխանի և ասէ ցնա Սամուէլ. ըստ այսմ նմանութեան՝ զի պատառեցեր զմեկնոցս իմ, պատառեցաւ թագաւորութիւնդ քո 'ի քէն. և եղիցի յայսմ հետէ թագաւոր 'ի տանէն Յուդայի որ լաւն է քան զքեզ: Արդ մի՛ խնդրեր յինէն երկիր պագանել և մատուցանել ընդ քեզ աղօթս, զի հաշտեսցի ընդ քեզ տէր. վասն զի անլոյծ դատավճիռն ել 'ի վերայ քո, և ահա տակաւին ասացաւ. այս ինքն է, թէ որ ինչ ասացաւն 'ի Յակովբայ, ոչ լինի սուտ, եթէ ոչ թագաւորէ: Իսկ իբրև կարի աղաչեաց և նեղեաց զնա, զի "Գո՛նեայ թէ առաջի ծերակոյտ ժողովրդեանս՝ զի մի՛ անարգեցայց՝ պատուեա զիս և եկ ընդ իս,, , հարկ եղև նմա. և դարձաւ Սամուէլ, և պատառեաց զԱգագ առաջի տեառն:

Արդ հարցանէր Սաւուղ խորամանկ ցՍամուէլ յստակամիտ, զի յայտնեսցէ նմա թէ ով է այն՝ որ թագաւորելոցն է զկնի նորա և ընդ նմա: Իսկ Սամուէլ զի ոչ ասաց ցնա՝ թէ այս անուն է, զի գուցէ թէ սպանանիցէ զնա. ծածկէ զանուն նորա, զի ընդդուշասցի 'ի կեանս նորա. և քարոզէր զթագաւորութիւն նորա, զի մի՛ ստեսցի բան նորա: Այս, ասէ, որ հատանէ զդրօշակ վտաւակաց քոց, որպէս պատառեցեր զիմս, նա թագաւորէ ընդ քեզ և զկնի քո: Բայց սակայն և ոչ Սամուէլ գիտէր ցարդ ևս եթէ ով թագաւորէ. բայց զոր ինչ գիտէրն եթէ թագաւորելոցն է՝ ասաց նա. այլ եթէ ով թագաւորէ, զոր ոչն գիտէր, ոչ ասաց ցնա:

Ասէ տէր ցՍամուէլ. "Մինչև ցե՞րբ սգացեալ ես վասն Սաւուղի՝ զոր անարգեցի [1], զի հաշտեցայց. անց երթ, օծ մի 'ի յորդւոցն Յեսսեայ. վասն զի 'ի նոսա տեսի ես ինձ թագաւոր,,: Ծածկեաց զանունն Դաւթի, զի եղջերն յայտնեսցէ զնա, և զի ապրե-

1 Յօրինակին անարգեցին:

ցուցէ զնա 'ի նախանձուէ եղբարց իւրոց, և զի թէ հարցցի 'ի Սաւուղէ՝ երդուիցէ եթէ ոչ գիտեմ զայն՝ որ հանդերձեալն է օծանիլ: Եւ վասն զի երկեաւ Սամուէլ երթալ՝ եթէ գուցէ լուիցէ Սաւուղ, և սպանանէ զՍամուէլ և զԴաւիթ և զամենայն տուն հօր նորա, ետ նմա պատճառ՝ որով զնա 'ի ստութէ անտի արգելցէ, և զԴաւիթ և զտունն Յեսսեայ ապրեցուսցէ 'ի մահուանէ: Իսկ իբրև տեսին զսայլն զոր տարաւ ընդ իւր ծերակոյտ Բեթղեհէմ գեօղջն, զահի հարան և երկեան. Թուեցաւ նոցա եթէ սպանումն ինչ գտաւ 'ի սահմանակից գեօղջն իւրեանց, և երկեաւ է տեսանել՝ զի 'ի ձեռն սայլին գիտացէ, եթէ 'ի սահմանս որոյ գեօղջ գտաւ: Ասաց զճշմարիտ զկոյսն. ծերակոյտին՝ որ հարցին զնա. և ած զնոսա 'ի պատարագն: Եւ զի երկմտեցան 'ի բանէ նորա, ցոյց նոցա արդեամբք զգործն: Իսկ իբրև արտաքս քան զօրէնսն հրամանաւն տեառն օրինաց մատոյց զպատարագն 'ի տեղի՝ ուր ոչ էր համարձակ նմա, արձակեաց զծերակոյտն:

Ած անցոյց Յեսսէ զամենայն որդիսն իւր զառաջեաւ. և ոչ հաճեցաւ տէր և ոչ ընդ մի ոք 'ի նոցանէն: Իսկ իբրև եկն Դաւիթ, և յայտնութիւն եղև 'ի վերայ Սամուէլի՝ եթէ այս է, եռաց եղջեւրն 'ի ժամուն՝ իբրև օծանէր, որպէս ոմանք ասեն: Սպան զարջն և զառեւծն. զի այս երկու առաքինութիւնք՝ զոր արար յետ օծմանն իւրոյ, վկայեսցեն վասն երգոցն զոր երգէր նա: Քանզի յորում աւուր բնակեցաւ հոգին 'ի Դաւիթ, 'ի նմին աւուր անց 'ի Սաւուղէ. և փոխանակ նորա այսն չար չարչարէր զնա: Եւ վասն զի՝ որպէս ասենն՝ դև մոլեկանաց էր, վասն այսորիկ խնդրեցին ծառայքն նորա զԴաւիթ, զի 'ի ձայն քաղցր քնարին նորա եղիցի անդորրութիւն Սաւուղի: Իսկ իբրև անդորրեցոյց Սաւուղի, և անց 'ի նմանէն այսն չար, դարձաւ նա առաջնորդութեամբ 'ի տուն հօր իւրոյ:

## ԳԼՈՒԽ Գ

Ի ՍՄԻՆ ժամանակի եղև մարտ պատերազմի ընդ այլազգիսն և ընդ հեբրայեցիսն։ Առաքեցաւ Դաւութ 'ի հօրէ անտի իւրմէ տեսանել զողջոյն եղբարց իւրոց։ Եւ իբրև ետես զԳողիադ զի նախատէր զԻսրայէլ, հար ձեռն յանձին սպանանել զայլազգին. վասն զի գիտէր զի ոչ մեռանէր, մինչև Թագաւորի զօրութիւն՝ զոր ընկալաւ 'ի ձեռն հոգւոյն։ Ոչ էջ զի նոյն Սաւուղի՝ զոր ընկալաւ 'ի վերայ այլազգւոյն. վասն զի ոչ էր փորձեալ նորա եթէ նովաւ հաճեսցի տէր օգնել նմա։ Իսկ իբրև սպան զԳողիադ, հարցանէր Սաւուղ ցԱբեններ, եթէ "Ո՞յր որդի է պատանեակս այս"։ Եւ ահա կապարճակիր էր նորա յառաջ քան զպատերազմն զայս, և յոր պատերազմին առաջի նորա կայր՝ իբրև զգեցաւ և մերկացաւ զզէն նորա, զրոյց տայր նմա և վասն առաքինութեան զոր արար՝ զի սպան նա զարջն և զառեւծն։ Եւ եթէ ասիցեմք՝ եթէ զինուն այլակերպեցաւ, և ահա յառաջ քան զզինուն զգենուլն յառաջագոյն խաղաց գնաց իջանել սպանանել զՀսկայազինն զԳողիադ յայլազգեաց։

Բայց են ոմանք որ ասեն՝ եթէ իբրև առաքեաց զնա հայր իւր առ Սաւուղ, 'ի զգեստս պայծառագեղս թագաւորութեան առաքեաց զնա, և մեծաշուք եղև 'ի մտանել անդ իւրում, գեղեցկացաւ և զուարթացաւ կրկնապատիկ քան զայն՝ որպէս և էր նա։ Իսկ իբրև դարձաւ նա 'ի տուն հօր իւրոյ, և մերկացաւ զզգեստն իւր և զգեցաւ բաճկոն, ագաւ և զձորձմոյկն[1] հովուութեան, ցրտահարեցան երեսք նորա յեղեմնախառն ցրտոյն, եղև և արևակէզ 'ի տապոյ արեգականն. և վասն զի այսու զգեստիւ և յայս գձձութեան ետես զնա Սաւուղ կրկին անգամ, վասն այսորիկ ոչ գիտաց զնա։

Այլ են դարձեալ ոմանք զի ասեն՝ եթէ զի որդի

1 Միւս օրինակն ձորձոյկն ։

Յեսսեայ էր նա. և գիտէին և Սաւուղ և Աբբեններ, բայց կարծելով կարծէր՝ զի ինքն Դաւիթ թագաւորէ. և կամեցաւ տեղեկանալ թէ յորմէ ազգէ է. յուդայեա՞ն իցէ նա, ուստի կարգեալ լինի թագաւորութիւն՝ որ 'ի ժամանակացն Յակովբու խոստացեալ էր. 'ի Զարեհէ՞ իցէ, ասէ, թէ 'ի Փարեսեայ: Ասէ Աբեններ. "Ոչ եմ ես ինչ այդմ տեղեակ„: Եւ վասն զի մեծաւ փութով կամէր գիտել զայս, ասէ ցնա. "Աղէ հարց դու յառաջագոյն թէ ո՞յր որդի է„. և իբրև հարցին ցԴաւիթ, և ասաց՝ եթէ "Որդի Յեսսեայ եմ ես 'ի Բեթղեհեմ գեղջէ„, ասաց զանուն հօր իւրոյ, վասն զի հարցին ցնա. բայց զանուն ազգին իւրոյ ոչ յայտնեաց, զի գուցէ թէ սպանանիցեն: Կացոյց զնա Սաւուղ զօրագլուխ 'ի վերայ գնդին պատերազմողաց. և ուր երթայր՝ յաղթէր նա. զի վասն այսորիկ քաջութեց և առաքինութեց հաճոյ թուեցաւ յաչս ժողովրդեանն և նախարարացն Սաւուղի:

Իսկ իբրև գովեցին և յարգեցին զնա կանայք 'ի յերգս մխպասանաց, չար թուեցաւ Սաւուղի. վասն զի լաւացուցին քան զնա: Եւ "Ետուն նմա, ասէ, բեւրս, և ինձ հազարս. և դարձեալ նորա է թագաւորութիւն„. այս ինքն յայսմ հետէ թագաւորութիւն նորա է: Արդ զայն՝ զոր 'ի Սամուէլէն կամէր գիտել և ոչ յայտնեցաւ ինձ, ահաւասիկ 'ի ձեռն մխպասանց երգոցս կանանց ժողովրդեանն յայտ եղև ինձ: Քանզի իբրև թագաւորի, որ մեծ իցէ քան զընկեր իւր, ետուն յանհերկիւղ յանխիղճ բեւրս Դաւթայ, և հազարս Սաւուղի: Եւ յորմէ օրէ հետէ գովեցաւ Դաւիթ, 'ի նոյն օրէն սկսաւ լինել բամբասելի Դաւիթ յաչս Սաւուղի:

Այլ յետ աւուրց վառեցաւ, այս ինքն մուտ այսն չար 'ի Սաւուղ, և մարգարէացաւ: Եւ արդ ուստի՞ ունիցի այսն պիղծ զմարգարէութիւն. և զի՞նչ ինչ արդեւք իցէ մարգարէութիւն: Մարգարէութիւն նորա այս էր, ասէ՝ Դաւիթ թագաւորէ: Արդ զսոյն զայս լսելով լուաւ այն՝ որ խօսէրն 'ի նմա. և ոչ եթէ մարգարէանալով մարգարէացաւ: Եւ կամեցաւ ձգել զգեղարդնն Դաւթի. և շրջեցաւ Դաւիթ ծպտեցաւ ճմլեցաւ

կրկին անգամ յաջ և յահեակ և ապրեցաւ ։ Արդ թէպէտ և յայսմ աւուր ոչ ձգեաց 'ի նա, այլ երբե արար զնա իւր փեսայ յերկուս դստերացն իւր՝ զի արկցէ զնա 'ի ձեռս այլազգեացն, 'ի հարկանել վնին [1] երբե փարատէր 'ի նմանէն զտենդ տապոյն նեղուէ դիւին չարի՝ որ տառապեցուցանէր զնա, սակայն 'ի նոյն օր ձգեաց 'ի նա զգեղարդն ։ Բայց դարձեալ ճօճեցաւ ճաղպատեցաւ և պրծեաւ ապրեցաւ 'ի գիշերին յանմիկ ։ Եւ հար գեղարդեամբն ոչ զմարմինն Դաւթի՝ որպէս ինքն կամէր, այլ 'ի յորմ անդ սենեկին՝ որպէս ոչն կամէր ։

Արդ առաքեաց Շաւուղ արս 'ի պահել առնուլ զնա, և սպանանել 'ի վաղիւ անդր ։ Իջոյց զնա Մեղքող 'ի պատուհանէ անտի ։ Եւ զի մի առաքեսցէ Շաւուղ զկնի նորա սպանանել զնա 'ի ճանապարհի անդ ընդ երթալն, առ եդ զպատկերն 'ի գահոյս անդ. և ասաց՝ եթէ չարամոյն կայ 'ի մեծ ախտի ։ Զի մինչ երթան դահիճքն և ասեն ցՇաւուղ. և դառնան անդրէն, երթայ հասանէ Դաւիթ առ Սամուէլ և ապրի ։ Յայսմ աւուր պատմեաց Սամուէլ Դաւթի՝ եթէ ասացի ես ցՇաւուղ, եթէ այն՝ որ հատանէ զդրօշակդ քո, որպէս և պատառեցեր դու զլումս, նա թագաւորէ զկնի քո ։

Առաքեաց Շաւուղ հրեշտակս ածել զԴաւիթ. և տեսին զդասն մարգարէից, զի մարգարէանային՝ եթէ թագաւորէ Դաւիթ. մարգարէացան զնոյն զայս և հրեշտակքն Շաւուղի ։ Իսկ իբրև յաւել առաքեաց հրեշտակս կրկին անգամ և երիցս, մարգարէացան՝ եթէ Դաւիթ թագաւորէ ։ Յարեաւ ինքնին Շաւուղ և չոգաւ. և քանզի չև էր հասեալ, մարգարէացաւ՝ եթէ Դաւիթ թագաւորէ. մերկաց ըզպատմուճանս արքայութեան իւրոյ, և ետ նոքօք զթագաւորութիւն Դաւթի ։ Իսկ դասուն մարգարէից, որ պատահեցանն Շաւուղի և մարգարէացան թագաւորութեան իւրում, նոքօք կամեցաւ տալ նմա զհաւանութիւն զթագաւորութեան՝ զոր ետ նմա 'ի ձեռն Սամուէլի. և վկայէ նմա և գաս մարգարէիցն, զի վկայ

[1] Յօրինակին՝ ընին. եդաւ ըստ միւս օրինակին ։

նցին վասն Դաւթի, որպէս վկայեաց ինքն Շաւուղ և հրեշտակք նորա և դասն մարգարէից՝ որ մարգարէանային առաջի Սամուէլի :

Այն եհաս Դաւիթ առ Յովնաթան. իմացոյց նմա՝ զի իմացի զմիտս հօր իւրոյ : Եւ վասն զի մի փախեսցէ զնա հայր իւր ընդ երդմամբ, և զի մի յայտնեսցէ Դաւթի զխորհուրդ նորա, զօղեաց յօղեաց ընդպատճառ պատանեկին և զնետոին ձգելոյ. զի իբրև փախուսցէ նա զԴաւիթ, եղիցի նմա համարձակութիւն յերդուման՝ եթէ ոչ յայտնեաց Դաւթի զչարիսն հօր իւրոյ. քանզի յորում աւուր երդմնեցոյց Յովնաթան զԴաւիթ, թէ մի պակասեսցէ շնորհքդ քո 'ի տանէ իմմէ յաւիտեան, 'ի նմին աւուր երդմնեցոյց Մեղքող զԴաւիթ, զի եղիցի յիշել զնա յաւիտեան :

Այն եհաս Դաւիթ 'ի Նաբիմա առ Աքիմելէք քահանայ. զարմացաւ սխրացաւ, վասն զի ետես զզարագլուխն և զփեսայ արքայի յայնպիսի գձձութեան, և ասէ ցնա. զի՞ դու, զի՞ ընդ քեզ, զի՞նչ զրոյց է, զի միայնոդ ես դու : Վասն զի զգուշացաւ՝ թէ իբրև յայտնեսցէ նմա եթէ փախչելով փախուցեալ է, հասանիցէ լուրն առ Սաւուղ, և սպանանիցէ զԱքիմելէք. վասն զի գիտաց՝ և ոչ կալաւ զնա : Ստեաց և ասէ. "Արքայ, ասէ, առաքեաց զիս, և ետ ինձ պատուէր՝ եթէ մի յայտնեսցես ումեք վասն որոյ առաքեալդ եմ զքեզ" : Բայց զպատանիսն զի թաքոյց, վասն զի մի 'ի տեսանել անդ նոցա խռովեսցի գեօղն : Խնդրեաց հինգ նկանակ, վասն զի երկեաւ նա յայլմէ խնդրել՝ թէ գուցէ տեսանիցին. [1] քանզի համարեցաւ նա՝ զի թէպէտ և եղիցի և գիտասցէ արքայ վասն Աքիմելէք քահանային, որ ետ նմա զհացն, սակայն ոչ համարձակի սպանանել զքահանայսն : Ետ պատասխանի Աքիմելէք և ասէ, եթէ "Չիք այլ ինչ աստ, բայց եթէ հացն սրբութեան". այս ինքն հաց պատարագին՝ որ դնի 'ի վերայ սեղանոյն շաբաթէ 'ի շաբաթ : Ասէ ցնա Դաւիթ. "Ո՞չ ապաքէն այսօր օրէնն է մեզ ուտել 'ի պատարագէ, զի յերեկէ և յեռանդէ և այսք պա-

1 Միւս օրինակն քննանիցին :

*տանիքն որ ընդ իս են՝ սուրբ են, և նոքա և զգեստք իւրեանց, և զի ինքն Ճանապարհն արձակ է,,: Ցայտ արար՝ եթէ 'ի հարկէ Ճանապարհին և քաղցին եդին ծերակոյտն զօրէնս զայս ուտել զսրբութիւնն, զի մի սովեսցին և մեռցին մարդիկն: Վասն զի կանխեաց Հոգին սուրբ 'ի Դաւիթ, և համարձակեաց զհացն սրբութեան որ 'ի տաճարի անդ դնէին. զի ուսուսցէ եթէ համարձակեալ էր 'ի վերայ սեղանոյն եկեղեցւոյ մարմինն Քրիստոսի եղանել փոխանակ հացի պատարագին՝ որ 'ի վրան ժամուն և 'ի ժամանակեան տաճարի անդ եդև:*

*Իսկ իբրև առ զհացն և զսուսերն, եկն Դովեկ եդովմայեցի և եցոյց Շաւուղի. և ած զԱհիմելէք և զտուն հօր նորա, և կոտորեաց զնոսա Դովեկ 'ի սուր սուսերի իւրոյ, և ոչ ապրեցոյց ժողովուրդն զքահանայսն 'ի մահուանէ, որպէս ապրեցուցին զՅովնաթան 'ի մահուանէ: Ապրեցաւ Աբիաթար որդի Աքիմելէքայ: Ասէ ցնա Դաւիթ, թէ "Ես եմ մեղապարտ,,. այս ինքն ես եղէ պատճառ մահու տան հօր քո, զի մի է թշնամի մեր երկոցունց: Նիստ ընդ իս. վասն զի պահապանն որ առաքեաց օծանել զիս, զի թագաւորեցայց, ընդ իս է. և վասն այսորիկ ասաց Սամուէլ ցՍաւուղ, և մարգարէացան մարգարէքն և հրեշտակք Սաւուղի, և ինքն Սաւուղ՝ եթէ թագաւորէ Դաւիթ, և Սաւուղ ոչ հաւատաց:*

*Իբրև չոգաւ խնդրել զնա, յայրին ագաւ՝ ուր ղաւթեանքն էին. և հատ Դաւիթ զղրօշակ վտաւակաց նորա վասն երկուց, մի՝ զի ցուցցէ և յայտ արասցէ ամենայն ժողովրդեանն՝ եթէ ոչ կամի նա ընդ մահն նորա, զի ահաւասիկ մատնեցաւ 'ի ձեռս նորա, և ոչ սպան զնա. և երկրորդ՝ զի ցուցցէ և ծանուսցէ նմա 'ի ձեռն նշանին՝ զոր ետ նմա Սամուէլ, յորում աւուր պատառեաց զմեկնոցն նորա, եթէ Ճշմարտիւ համարձակեալ է Դաւիթ թագաւորել: Իսկ իբրև ել Սաւուղ յայրէ անտի, ձայն ետ Դաւիթ, կոչեաց և ասէ ցնա. ահաւասիկ մատնեաց զքեզ տէր 'ի ձեռս իմ. ոչ եթէ սպանանել զքեզ, զի ոչ խնդրէի իսկ ես զայս, այլ զի քև մեծարեցայց ես յաչս ժողովրդ-*

դեանն՝ եթէ ոչ կամէի ես ընդ մահ քո . բայց ասացեալ է յառաջին առակս նախնեաց, եթէ "Յամպարշտէ ելցէ ամպարշտութիւն" . այն իսկ է, եթէ որ փորէ խորխորատ ընկերի իւրում, անձն իւր լցցէ զնա : Բայց Սաւուղ իբրև ետես եթէ պատառեցաւ դրօշակ վտաւակացն նորա, ճշմարտեաց նա և հաւատաց վասն նշանին՝ որ ետ նմա Սամուէլ՝ թէ արդարեւ ճշմարտիւ Դաւիթ թագաւորէ : Ասաց Սաւուղ, թէ "Արդ գիտացի՝ եթէ թագաւորես, և հաստատի՚ի ձեռս քո" . այս ինքն է՚ի ձեռն քո զաւակի կարգի թագաւորութեան : Երդուաւ Դաւիթ եթէ ոչ ինչ վնասեսցէ զաւակին Սաւուղի, յետ արդեամբք ցուցանելոյն՝ զի ընդ մահ նորա և ընդ մահ զաւակի նորա նա ոչ կամէր :

Իսկ յետ ժամանակի իբրև մեռաւ Սամուէլ և թաղեցաւ ՚ի Հռամայ, առաքեաց Դաւիթ առ Նաբաղ՝ ոչ վասն արծաթոյ և ոչ վասն ոսկւոյ, այլ վասն հացի միայն յղեաց առ նա՝ որով իւիք կեցցէ : Այս ինքն, յերկայնամիտ Դաւթէ ողջոյն քեզ և ընտանեկացն քոց . տուր զոր ինչ կամիս ծառայից քոց, զի մեծ ժամանակս պահեցին զհօտ քո ՚ի լերին աստ : Իբրև թոշակեաց նա զծառայսն Դաւթի անարգանօք փոխանակ օրհնութեան հացին, վառեցաւ Դաւիթ ՚ի մեծ ցասուման դառն բարկութեան կորուսանել սատակել առնել հրձիգ զնա և զընտանիս նորա և զամենայն ինչս իւր : Ազդ եղև և լուաւ կինն Նաբաղու . փութացաւ յարեաւ եկն ընդ առաջ Դաւթի պատարագօք հացին և պատիր բանիւքն հրապուրանաց : "Խօսեսցի, ասէ, աղախին քո վասն առն . վասն զի ըստ անարգ անուան նորա սոյնպէս և նա" : Վասն զի մեկնութիւն Նաբաղու՝ անարգիչ է . նա և այսօր իսկ ասէ՝ եթէ Նաբաղեմ ես զքեզ, այս ինքն՝ եթէ անարգեմ ես զքեզ : "Վասն զի հանդերձեալ է առնել տէր զտէր իմ տուն հաւատարիմ" . այս ինքն տայ քեզ զճշմարիտ թագաւորութիւն՝ որ ՚ի զաւակի այդր քում կարգեալ է, լինի մինչև ՚ի վախճան կատարածին . և չար ինչ ոչ գտաւ ՚ի քեզ, իբրև առ Սաւուղ՝ յորմէ օրէ եղև մինչև ցայս օր . և Սաւուղ մարդ ոչ կարաց հալածել զքեզ . և եղիցի իբրև արասցէ զքեզ տէր առաջնորդ իւրում

ժողովրդեանն, որպէս և խոստացաւն քեզ, մի՛ եղիցի քեզ այս 'ի գայթագղութիւն և 'ի խիղճ մտաց քոց՝ եթէ հեղեր դու զարիւն ընտանեացն Նաբաղու առանց յանցանաց. և յորժամ արասցէ քեզ տէր բարի, ապա յիշեսցես զաղախին քո՝ եթէ բարի խրատ խրատեցի զքեզ:

Իսկ Դաւիթ առ ընկալաւ զհաւանութիւն նորա. ընկալաւ և զպատարագ նորա, արձակեաց զնա 'ի տուն իւր խաղաղութբ̃, և չօգաւ ցոյց Նաբաղու. և մեռաւ սիրտ նորա 'ի փորի իւրում: Եւ վասն զի առաքեաց նա Դաւթի բեռն նախատինս, եղև սիրտ նորա իբրև քար, և մեռաւ յետ տասն աւուր: Եւ զի ոչ սպան զնա Դաւիթ վասն հաւանութեան կնոջն իւրոյ, սպան զնա ստուգութիւն տեառն, և ետ զԱբիգաղ Դաւթի. քանզի պիտոյ են չնորհք ստուգութեան, և պատիր բանքն Աբիգաղու հաշտեցուցիչք խիստ դառն բարկութեան թագաւորութեանն: Առ Դաւիթ կանայս 'ի կնութեան. զի զառաջինն կանայսն ետ զնոսա հայրն իւրեանց այլոց արանց. և զի եղիցի օրինակ այնոցիկ՝ որք առնուն զկանայս բազումս, զի մի՛ անկցին 'ի հեթանոսութիւն զկնի կանանցն իւրեանց: Եւ զի ծածկեցաւ երախտիքն զոր արար Դաւիթ Սաւուղի յայրի անդ, և կարծեցին թէ վասն զի 'ի ներքս էր հանդերձ արամբքն իւրովք, վասն այնր ոչ սպան զթագաւորն:

Այց դարձեալ յաղօթս առ ա̃ծ, զի դարձեալ մատնեսցի 'ի ձեռս նորա. ոչ զի սպանցէ զսպանօղն իւր, այլ զի յարգեսցի յաչս ամենայնի՝ եթէ թիկունք և սպահապան նորա եմ, և ոչ եթէ սպանող նորա: Արդ իբրև ննջէր Շաւուղ յանապատի անդ, և Աբեններ սպարապետ զօրօքն հանդերձ շուրջ ըզնովաւ պահ ունէին, էջ նա և Աբիսէ քեռորդին իւր. և կամեցաւ Աբիսէ սպանանել զՍաւուղ, և ոչ եթող Դաւիթ: Եւ զի մի՛ հանապազ ձանձրացուսցեն և աշխատ արասցեն զնա, երդուաւ 'ի տէր և ասէ, եթէ "Ոչ սպանից զնա. բայց եթէ սպանցէ զնա տէր,,: Առ զտոմանն և զգեղարդնն, և անց գնաց: Ել կաց 'ի բարձր բարձաւանդակին, և ոչ ոք գիտաց, վասն զի քունն տեառն անկաւ 'ի վերայ նո-

ցա։ Իսկ այնոքիկ՝ որ խնդրէին որսալ զԴաւիթ, քնոյն նոցա ետ հրաման պահապանն Դաւթի որսալ ունել անձամբ զանձինս և մատնել ՚ի ձեռս Դաւթի։ Սոքա եղեն այնք՝ որ քուն աչաց իւրեանց եղև նոցա շղթայ ձեռաց, և ընկղմումն քնոյն իւրեանց՝ եղև նոցա կապանք, զի մատնեսցէ զնոսա ՚ի ձեռն անխայիչ կապելոց շնորհօք ողորմութեան։ Եւ ասաց Դաւիթ ցՍաւուղ. եթէ տէր գրգռեաց զքեզ ընդ իս, եկ երկոքին մատուսցուք պատարագ. տեսցուք ՚ի ձեռն ընդունելութեան պատարագաց՝ եթէ արդարեւ տէրն իցէ զքեզ ընդ իս գրգռեալ, ճենճերեսցի ճարպն քո. ապա եթէ որդիք մարդկան գրգռեցին զքեզ ընդ իս, անիծեալ են. այս ինքն չար են. քանզի առ ՚ի նոցանէն իբրև ՚ի հեթանոսութիւնն հեթանոսաց անկեալ էի ես. զի ՚ի հալածանս հեթանոսաց ահա հալածեցին զիս։ Եւ անց գնաց Դաւիթ առ Աքիշ արքայն այլազգեաց, և նստաւ բնակեցաւ ՚ի Սեկելակ։

Եւ եկին ժողովեցան այլազգիքն ՚ի մարտ պատերազմի, և եկին բանակեցան ՚ի Սիւքէմ։ Եւ Սաւուղ և զօրքն իւր բանակեցան ՚ի Գաղգաղա։ Եւ երկեաւ Սաւուղ յայլազգեացն. հարց ՚ի տէր և ՚ի տեսիլ և ՚ի հուր. այս ինքն հրովն խնկոցն զոր մուծանէր քահանայն ՚ի սուրբ սրբութեանցն. զի թերևս ՚ի միջոյ քրովբէից անտի յայտնեսցի և խօսեսցի ընդ նմա։ Եւ իբրև հարցաւ ՚ի ձեռն մարգարէին կենդանւոյ, և ետես զի ոչ լուաւ նմա տէր, մերկաց ըզգեստ իւր և այլակերպեցաւ, և չոգաւ մուտ առ վհուկն ՚ի գիշերի, և ասէ ցնա. “Հան ինձ զՍամուէլ մարգարէ”։ Եւ ասէ ցնա. “Ո՞չ դու քեզէն իսկ գիտես զինչ արարին որդիքն Իսրայէլի, զի ջնջեցին յերկրէ զգիտունս և զհարցուկս”։ Եւ վհուկն երկրորդէ աւասիկ առաջի այսր յայտնեալ Սաւուղի զառաջին առաքինութեանց անտի իւրոց զվարս, և ոչ ամաչեաց։ Զկնի նորա դարձեալ անգոսնեաց յայսմանէ, զի երկրորդէր զառաքինութիւնն Սաւուղի առաջի Սաւուղի, և ոչ գիտէր զնա. “Ընդէ՞ր, ասէ, որսաս զանձն իմ կորուսանել զսա”։ Արդ եկ տես աւասիկ, քանիօն զահի հարեալ երկնչէր ՚ի մահուանէ,

այն՝ որ զկեանս մեռելոց խոստանայր ։ Բայց արդ ա-ղէ՛ զխա՞րդ՝ եթէ զիւր օրհասն ոչ գիտաց նա , ո՞րպէս կարէր գիտել ճանաչել զայլոց օրհասն ։ Իսկ նա քաջալերեաց զնա և ասէ. "Կենդանի է տէր , ասէ , եթէ ոչ եղիցի քեզ վնաս ինչ 'ի պատգամաս յայսմիկ" ։ Իսկ կինն ոչ իբրև կանխագէտ՝ որ գիտէր զառ յապայսն , դարձոյց անդրէն պատասխանի և ասաց , եթէ իսկ դու ո՞վ ես՝ որ երդնուս , զի մի՛ լիցի յիս վնաս ինչ. եթէ լուիցէ Սաւուղ՝ դու ո՞վ ես՝ որ ապրեցուցանես զիս 'ի ձեռաց այնորիկ ; զի ոչ կարացին ապրեցուցանել զառաջին կախարդսն և զգիտունսն որ կոտորեցանն ։ Ասէ ցնա կինն . "Զո՞ կամիցիս դու եթէ հանիցեմ քեզ" ։ Եւ ոչ զմտաւ ած և իմացաւ Սաւուղ՝ եթէ ոչ գիտաց , և ոչ զոր խնդրէրն հանել 'ի նմանէն ։ Ասէ ցնա՝ եթէ "Հան ինձ զՍամուէլ" ։ Եւ արդեւք ասաց նա , եթէ քաւ ինձ՝ եթէ յարուցից ես զՍամուէլ , այն՝ որ իջին 'ի ձեռն խրատուն նորա ամենայն հարցուկք և գիտունք 'ի ներքին սանդարամետս երկրի ։ Խնդրել իցիւ քո գոնեայ՝ թէ զի մեռուցից զՍաւուղ , և ոչ զի կեցուցից զՍամուէլ ։ Զայս ասացեալ իցէ եթէ զՍամուէլ հանէր նա , բայց ոչ ասաց . քանզի գիտէր՝ զի յանուն Սամուէլի զդեւն զայն՝ զոր ցուցանէր նա ։ Արդ ետես կինն ոչ զՍամուէլ , այլ զայն՝ որ նմանեցաւն Սամուէլի . և ճչեաց և ասաց ցՍաւուղ . "Ընդէ՞ր նենգեցեր զիս , դու ես Սաւուղն" ։

Ո՛վ կին նենգաւոր , զի՞ կոչեցեր զՍաւուղ . և եթէ նա՝ վասն զի ծածկեաց զանձն իւր 'ի քէն՝ նենգաւոր իցէ քան զքեզ , դու՝ զի յանուն Սամուէլի զայլ ընդ այլոյ առեալ ածես նմա , ո՞չ ահա նենգաւոր ես և դու ։ Ապա եթէ երկոքեան նենգաւոր էք , և 'ի միմեանց նենգութէնց 'ի վերայ ոչ կարացէք կալ , իսկ արդ զխա՞րդ գիտիցես զառ 'ի յապայսն՝ ուր նենգութեանն Սաւուղի չեղեր հասու ։ Սաւուղ իբրև ետես զկինն զի ճեպեալ շտապեցաւ 'ի նմանէն , որ վատթարեալն կայր յերեսաց նորա , և անկեալ կայր 'ի կոր կորացեալ , քաջալերեաց զնա և ասէ . "Մի՛ երկընչիր , զի՞նչ ինչ տեսանես" ։ Ասէ ցնա կինն . "Տեսի ես աստուածս , զի ելանեն յերկրէ" ։ Եւ ընդէ՞ր փախ-

նակ Սամուէլի՝ զոր խնդրեացն 'ի քէն, հանես նմա աստուածս՝ զոր ոչ խնդրեաց 'ի քէն. փոխանակ միոյն զոր խնդրեաց, առեալ ցուցանես նմա երկուս։ Ջհաւուղ ուրեմն ետես ընդ Սամուէլի, և վասն այնր ճչեաց. քանզի զոր օրինակ ետես զՍամուէլ 'ի ըզգեստ քահանայութեանն, այնպէս ետես զՍաւուղ 'ի զգեստ թագաւորութեն։ Սաւուղ իբրև ետես զի և ոչ զայն՝ զոր յարոյցն գիտէր նա, ասէ ցնա. "Զինչ տեսիլ է այնորիկ որ ելանէն"։ Ասէ. "Այր ալևոր ելանէ արկեալ կրկնոց"։ "Եւ գիտաց, ասէ, Սաւուղ՝ եթէ Սամուէլ է. և անկաւ խոնարհ երկիր եպագնմա 'ի վերայ երկրի"։

Արդ ուստի գիտաց Սաւուղ եթէ Սամուէլ է. զի ահա կինն՝ որ յարոյցն զնա՝ ոչ գիտաց. զի եթէ գիտացեալ էր՝ փոխանակ աստուածոցն զի ասաց, ասէր նա զանուննն Սաւուղի. և փոխանակ զի ասաց՝ այր, և երկրորդեաց՝ ալևոր, և երրորդեաց՝ եթէ մեկնոց արկեալ էր, մեկնակ իսկ ասէր՝ եթէ Սամուէլ յարեաւ։ Ապա եթէ կինն՝ որ զօդեաց զնա և փչեաց 'ի նա շունչ՝ ոչ գիտաց՝ ոչ եթէ զոյր զօդեաց, և ոչ եթէ զոյր շունչ ած և փչեաց և արկ 'ի մարմինն, իսկ դու ուստի գիտացեր եթէ Սամուէլ է։ Թուեցաւ քեզ եթէ Սամուէլ է, անկար յերեսս քո 'ի վերայ երկրի զի՞ պագեր նմա երկիր։ Եւ եթէ 'ի կենդանութեանն պատուեցեր, բարւոք արարեր, զի ոչ ինչ նուաղեցեր թերացուցեր զպատիւ մահու նորա քան զկենդանութեանն՝ մինչ կայր նա. ապա եթէ 'ի կենդանութեանն մինչ դեռ կենդանի էր, և ոչ երթալն տեսանել զնա թուէր քեզ բարւոք, և զի՞արդ 'ի մահուանն նորա պագանես երկիր այնմ՝ զոր դառնացուցերն և իջուցեր զնա 'ի դժոխս իբրև տրտմեալ սգացեալ էր վասն քո։

Ասէ Սամուէլ ցՍաւուղ. "Ընդէ՞ր խռովեցեր հաներ զիս"։ Արդ եթէ ոչ էր Սամուէլ այն, թէ այդպէս է՝ ստելով ստեաց յայսմ վայրի, զի ասաց՝ եթէ "Ընդէ՞ր խռովեցեր հաներ զիս". քանզի ահաւասիկ ոչ եթէ յերկրէ ել։ Ապա թէ Սամուէլ էր, ընդէ՞ր դարձաւ ուսաւ 'ի Սաւուղէ զայն ինչ՝ զոր Սաւուղն 'ի նմանէն կամէր ուսանել. զի փոխանակ հար-

ցանելոյն ցնա Սաւուղի, մինչ ցՍաւուղ հարցանէր՝ եթէ "Ընդէ՞ր խռովեցեր հաներ զիս"։ Իսկ իբրև ոչ գիտաց թէ վասն է՞ր եւ, ասէ ցնա Սաւուղ. "Այլազգիքն եկեալ մարտնչին ընդ իս. Աստուած անց 'ի բաց յինէն, և ոչ լուաւ ինձ. և արդ եկեալ իմ կարդացի առ քեզ, զի ցուցցես ինձ զինչ առնելոց իցեմ"։

Ո՛չ Սաւուղ, գրեսցուք թէ Սամուէլ յարեաւ, կարեւ ասել ցնա՝ եթէ տէր 'ի բաց եկաց յինէն, և ոչ լուաւ ինձ. և արդ Սամուէլ լուէ՞ քեզ։ Երկրորդեաց նմա՝ եթէ 'ի ձեռն կենդանի մարգարէին հարցի ցնա և ոչ յայտնեցաւ ինձ. և մեռեալ մարգարէիւն՝ զի յայտնեսցի 'ի վերայ քո՝ դէտ ա՞կն ունիս. և գոնեայ թէ լուեցեր, և ոչ ասացեալ իցիւ եթէ "Տէր անց հեռացաւ յինէն, և ոչ լուաւ ինձ". արդեւք մտաբերէր Սամուէլ ասել ցքեզ. ապա եթէ տէր անց հեռացաւ 'ի քէն, Սամուէլ ծառայ նորա զիա՞րդ լուէ քեզ. և կամ ո՞չ գիտես զի զա̃ծ բարկացուցանէր քև, եթէ որ ինչ ծածկեալն էր 'ի քէն՝ յայտնէր քեզ։ Ասաց և Սամուէլ ցՍաւուղ, եթէ "Տէր անց հեռացաւ 'ի քէն". և այս ոչ եթէ նորա ինչ է. զայն երկրորդեաց՝ զոր Սաւուղն իսկ ասաց ցնա, թէ "Տէր անց հեռացաւ յինէն, և ոչ լուաւ ինձ"։ Եւ զի ասաց, եթէ "Եղև ընդ ընկերի քում, որպէս և ասացն 'ի ձեռն իմ", արդարեւ ճշմարիտ 'ի ձեռն սորա ասաց տէր վասն Դաւթի։

Ապա եթէ այս ոչ է Սամուէլ, ընդէ՞ր յափշտակեաց առ իւր զանուն մարգարէութեան՝ իբրև ոչ ունէր նա զմարմինն իւր և զշունչ մարգարէին։ Եւ ընդէ՞ր, իբրև անձամբն իւրով այս չար էր, յօրջորջեաց զանձն իւր անման Հոգւոյն սրբոյ։ Եւ զի ասաց՝ եթէ "Պատառեաց տէր զթագաւորութիւնդ 'ի քէն, և ետ ընկերի քում". և զայս գիտէր ինքնին Սաւուղ. վասն զի լուաւ 'ի Սամուէլէ, զի ասաց եթէ. "Պատառեաց տէր զթագաւորութիւնդ 'ի քէն, և ետ ընկերի քում"։ Եւ զի ասաց դարձեալ, եթէ "Մատնեսցէ տէր զԻսրայէլ 'ի ձեռս այլազգեաց", վճիռ արար արդեւք և հրամայեաց իբրև զա̃ծ, եթէ մարգարէացաւ իբրև մարգարէ։ Եթէ հրամայելով հրա

մայեսցէ՝ ա՛ծ է, և ոչ է Սամուէլ. ապա եթէ մարգարէանալով մարգարէացաւ, ճշմարտիւ Սամուէլ է։ Ապա եթէ ոչ է Սամուէլ, տեսիլ և բարբառ Սամուէլի զի՞նչ առնիցեն առ նմա. և զի ասաց՝ եթէ "Վաղիւ դու և որդիք քո առ իս"։ Արդ եթէ արդարեւ մարմին Սամուէլի յարեաւ և անկաւ, ճշմարիտ է բան դիւթին՝ զոր ասաց եթէ "Դու և որդիք քո առ իս"։ Ապա եթէ դիւթն ոչ մեռանի, և սաւուղեանքն մեռան, զիա՞րդ եղեն սաւուղեանքն վաղիւ անդր առ նմա. զի ահա կինն և վհուկ 'ի մէջ կենդանեաց, և Սաւուղ և որդիքն իւր 'ի մէջ անկելոց վիրաւորաց։

Իսկ զի՞ փութացաւ Սաւուղ և անկաւ 'ի վերայ երկրի յերկիւղէն զոր երկեաւ, և ընդէ՞ր վասն էր երկեաւ 'ի մահուանէն՝ որ վհուկն յարուցիչ մեռելոց գոյր նորա։ Ապա եթէ զնա՝ որ մեռաւն 'ի վաղիւ անդր՝ ոչ յարուցանէր, զիա՞րդ յարոյց զմանրեալ ոսկերսն Սամուէլի. զի եթէ ճշմարիտ է բան դիւթին, ճշմարիտ է և յարուցելութիւն նորա. և մի՛ երկիցէ Սաւուղ 'ի մահուանէն, զի 'ի վաղիւ անդր վհուկն յարուցանէ զնա. ապա եթէ բան վհկին ճշմարիտ է և յարութի՛ն նորա սուտ, և զիա՞րդ գտանիցի 'ի սուտ յարութենէն ճշմարիտ բանն։ Զի կամ մի՛ երկնչիր 'ի բանէ նորա, զի չիք ճշմարտութի՛ն 'ի բանի անդ, և կամ փախիր խոյս տուր, և մի՛ երթար 'ի ճակատ անդր, զի 'ի վաղիւ կոտորելոց է 'ի սուր սուսերի։ Զի եթէ լինի ես պատերազմ վաղիւ, ահա Աբեններ և որդի քո Յովնաթան հանդերձ եղբարբքն անդ են. եթէ սոքա կան 'ի գլուխ զօրուն հրաման տալ կարգել ճակատել 'ի մարտ պատերազմի, դու ընդէ՞ր երթիցես և լինիցիս նոցա յուղարկիչ 'ի դժոխս։ Զի եթէ զյաղթութիւն խոստացաւ քեզ վհուկն, բարւոք երթայիր դու. ապա եթէ գրեաց և ետ քեզ մահ և որդւոց քոց և բազում զօրացն Իսրայէլի՝ որ ընդ քեզ են, զի՞ է զի ոչ փախչիցիս մինչև անցցէ օրն ճակատի, և ապա եկեսցես 'ի զօրս անդր։ Զի եթէ սուտ համարեալ էր զվհուկն, ոչ երկնչէր նա. և եթէ ճշմարտեալ հաւատացեալ էր նմա, ոչ դառնայր 'ի բանակ անդր։ Նա

և կլինի իսկ սուտ արար զտեսիլն, այնու՝ զի սպան նմա զորթն դիեցիկ զոր մնուցեալն էր իւր: Զի եթէ ոչ անկեալ էր 'ի խիղճ մտացն՝ եթէ գուցէ յաղթէ և դառնայ վաղիւ, ոչ կաշառէր նմա զորթն դիեցիկ, այնմ՝ որ կոտորիչ սատակիչ էր դիւթացն և կախարդացն՝ որ հրաւիրեցաւ 'ի մահն այլազգեացն:

Իսկ իբրև դարձաւ եկն 'ի Գաղգաղա 'ի բանակ անդր, այլազգիքն որ բանակեալ էին 'ի Միքեմ, չուաբարին և եկին յԱփեկ: Եւ իսրայէլացիքն դարձեալ, յորում աւուր ասաց վհուկն՝ թէ "Դու և որդիք քո առ իս", չուեցին 'ի Գաղգաղայէ և եկին բանակեցան առ աղբեւրականն Յեզրայէլի: Ահաւասիկ գտաք մեք որպէս 'ի գրոյ, զի անց օրն այն, և ցարդ եւս ճակատ ոչ եղև. վասն զի բանակքն անդրէն չուելով անցին գնացին յաւուր յայնմիկ: Եւ եթէ յայնմ աւուր ոչ եղև մարտ պատերազմի, վասն զի ցարդ եւս ոչ տեսեալ էր բանակացն զերեսս միմեանց, սուտ եղև բան վհկին՝ զի ասաց թէ "Դու և որդիք քո վաղիւ առ իս": Արդ որպէս գիրն ցուցանէ՝ յերկրորդում [1] աւուր եկին այլազգիքն 'ի Յեզրայէլ, ուր բանակեալ նստէին որդիքն Իսրայէլի: Ոչ եթէ յերրորդում աւուրն եղև պատերազմն՝ ասեմ ես, այլ զի երեք աւուրք անցին, և ցարդ եւս պատերազմն ոչ էր եղեալ: Զի թէպէտ և տեսին զունդքն երկոցունց կողմանցն յերրորդում աւուր զմիմեանս՝ ցուցանէ գիր, այլ զի թէ մարտեան յերրորդում աւուրն՝ զայն ոչ ցուցանէ: Արդ որովհետև գտաք մեք որպէս և 'ի գրոյ, զի անցին երեք աւուրք և պատերազմ ոչ եղև. և յառաջ քան զամենայն յայտ եղև՝ եթէ սուտ է բան վհկին, զի ասաց՝ եթէ "Վաղիւ դու և որդիք քո առ իս":

"Եկն, ասէ, Դաւիթ գնդաւն իւրով 'ի Սեկելակ յաւուրն երրորդում, և եգիտ զնա հրձիգ եղեալ, և գերի վարեալ զորդիս և զկանայս իւրեանց": Եւ յետ իջանելոյն նորա 'ի վերայ ամաղէկացւոց, և կոտորելոյն զնոսա և թափելոյ զաւարն, և ածելոյ զնոսա 'ի Սեկելակ և լինելոյ անդ նորա զերիս աւուրս,

1 Միւս օրինակն յերրորդում:

ապա եկն յերրորդում աւուրն բոլթաբերն զուժ-կանն հող 'ի գլուխ, պատառեալ զպատմուճանն, և եցոյց Դաւթի զմահն Սաւուղի և զորդւոյ նորա։ Հողն գլխոյ և ապարանջանն Սաւուղի զոր ունէր՝ վկայեն զի 'ի նմին աւուր մեռաւ Սաւուղ։ Եկն ինքն այս գուժկան առ Դաւիթ, և գտաւ զի յետ բազում աւուրց մեռեալ էր նա։ Ապա եթէ բազմօրեայ եկն գուժկանն 'ի Ճակատատեղւոյն 'ի Սեկելակ, բազմօ-րեայ եկն Դաւիթ գնդաւն իւրով 'ի Սեկելակ։ Քան զի ոչ էին երագունք վեց հարիւր այրն որ ընդ Դաւ-թին էին քան զամաղէկացին՝ որ ձիպեալն ընթա-ցեալ գայր. զի զոր ինչ մեծ էր քան զապարանջանս և զպսակն, առցէ 'ի Դաւթէ զօրէնն աւետեաց։ Եւ արդ որչափ և շրջեցուսցես զբանն, գտեալ լինի՝ զի 'ի բազում աւուրս գործեցաւ ինքն Սաւուղի և որ-դւոյ նորա, զոր ինչ ասաց մհուկն՝ եթէ վաղիւ գործի։

Իսկ աւետաբերն՝ որ կարծեաց եթէ ընդ միտ ինչ մտանէ Դաւթի, այնու՝ զի ասաց եթէ "Յարեայ 'ի վերայ Սաւուղի՝ և սպանի զնա", իբրև ետես զի դըժ-կամակ եղև և տրտմեցաւ Դաւիթ վասն սպանողին իւրոյ, փոխեաց զբանն իւր անդրէն և անդ, և ասէ. "Վասն զի գիտացի եթէ ոչ էր ապրանաց յետ գլոր-մանն իւրոյ". այս ինքն յետ խոցուածոյ վիրացն իւ-րոց։ Սպան զամաղէկացին իբրև սպանող. վասն զի բերանն իւր պարտաւորեաց զայն՝ որ ոչ մերկաց ըղ-սուսեր իւր 'ի վերայ պարանոցին արքային։

Ողբք Դաւթի վասն Սաւուղի և Յովնաթանու։

Եւ արդ ողբս առեալ Դաւթի լայր զՍաւուղ և զՅովնաթան. և ասէ ուսուցանելով որդւոցն Յուդայ զկորովութիւն աղեղանց. ահա գրեալ է 'ի դպրութեն Ասերայ, այս ինքն՝ 'ի դպրութիւն օրհնութեց։ "Այծեամն Իսրայէլ 'ի վերայ բարձանց քոց սպանեալք". վասն զի ժողովուրդն իբրև զկնի այծեմանց հալածէին ըղ-հեա թշնամեաց իւրեանց։ Բարձունք Գեղբոնայ, ա-հա լցեալ լինի 'ի վիրաւորաց իւրեանց։ "Լերինք, լե-րինք Գեղբոնի, մի իջցէ 'ի վերայ ձեր անձրև". վասն զի արբէք դուք զարիւնն Սաւուղի։ "Եւ մի անկցի 'ի

վերայ ձեր ցօղն առաւօտին „ . վասն զի օծայք դուք 'ի Ճարպոյն Յովնաթանու և եղբարց նորա ։ Զի ասաց "Անդաստանս խայտառակեալս „ , զի խայտառակեալ անդաստանաց նմանեցոյց զխայտառակեալ դիակունսն Շաւուղի և որդւոցն ։ Վասն զի անդ բեկաւ խորտակեցաւ ապաստանն [1] Շաւուղի՝ սկայազինն Խորայելի 'ի մահու անդ իւրում, ապաստանն Շաւուղի՝ որ օծեալն էր իւղով յարենէ անկելոց վիրաւորաց և 'ի Ճարպոցն հսկայից . վասն զի յարենէն և 'ի Ճարպոց անկելոցն վիրաւորելոց Շաւուղի օծանէր յամենայն ժամ ապաստանն Շաւուղի ։ Աղեղն Յովնաթանու զի ոչ դառնայր անդրէն դատարկացեալ . աղեղնաւոր էր Ճարտար կորովաձիգ ։ Երագունք քան զարծուիս 'ի հալածելն իւրեանց . սաստկագոյնք զազանասիրտք քան զառեւծս 'ի կոտորելն իւրեանց ։ Դստերք Շաւուղի , լացէք 'ի վերայ Շաւուղի . զի զգեցուցանէր ձեզ զգեստս կարմիրս յաւարէն հեթանոսաց , զոր բերէր յառ յապուռ , և հանէր զնըկարս ոսկեքանդակս զոսկենկարս զգեստս . յայտսիկ զոր ինքն բաժանէր ։ Յովնաթան 'ի վերայ լերանց քոց վիրաւորեալ . զի յամենայն մարտ պատերազմի խառն 'ի խուռն դիմեալ 'ի ներքս անկանէիր ։ Զիա՞րդ անկան կործանեցան սկայազունք քաջամարտիկքդ , որ յամենայն պատերազմունս առնուին զնահատակութիւն յաղթութե՛ , և կորեան չքացան անօթք զինու պատերազմի . վասն զի նոքօք յաղթէին մանկունք ժողովրդեանն , երբև զինուք պատերազմի թշնամեաց իւրեանց ։

## ԳԼՈՒԽ Ե.

ՀԱՐՑ Դաւիթ 'ի տեառնէ . ետ նմա հրաման ելանել թագաւորել 'ի Քեբրոն . և օրհնեաց զմարդիկն Յաբիս գաղաադացւոց՝ որ թաղեցին զՇաւուղ և զորդիսն ։ Եւ Աբեններ թագաւորեցոյց զԱբիսող զորդին Շաւուղի 'ի վերայ Եփրեմի և Բենիամինի ։ Եկին պատահեցան 'ի դիմի հարան գունդն յովա-

1 Միւս օրինակն ապաւէն . որպէս և 'ի յաջորդսն ։

բեան գնդին Աբեններեայ ։ Զայն ետ, խօսել սկսաւ Աբեններ ընդ Յովաբու, և ասէ ցնա. "Յարիցեն մանկտիդ խաղասցեն առաջի մեր"։ Եւ յարեան անցին երկոտասան 'ի գնդէն Յովաբու, և երկոտասան 'ի գնդէն Աբեններեայ. և իւրաքանչիւր ձեռք իւրաքանչիւր առն 'ի գլուխ ընկերի իւրում, և իւրաքանչիւր վաղակաւոր 'ի կուշտ ընկերի իւրոյ. և անդէն սատակեցան բեկան և 'ի պարտութիւն մատնեցան գունդն Աբեններեայ առաջի ծառայիցն Դաւթի ։ Արդ պատանիքն իբրև սկսան խաղալ, իբրև յաղթէին և լինէին յաղթեալք 'ի միմեանց, դարձաւ խաղալն նոցա 'ի մարտ պատերազմի. սկսան իբրև 'ի խաղալոյ անտի հմայս հմայել, հարցուկս հարցանել՝ ո՞ր կողմ յաղթիցէ, և ո՞ր կողմ զօրագոյն իցէ ։ Անկան 'ի տանէն Դաւթի Ասայել հանդերձ երկոտասան արամբք ։

Դարձաւ Աբեններ և ասէ ցԱսայել. դարձ դու և առ քեզ կապուտ զինու միոյ ուրուք 'ի զօրականաց այտի զոր և կամիս, և շատ է քեզ այս՝ որչափ զի առաքինացիս և ցուցցես 'ի նա զքաջութիւն քո. զի սպաներ և առեր զկապուտ զինու սպանելոյն ։ Իբրև ոչ կամեցաւ ցուցանել 'ի լոկ ոք զառաքինութիւն քաջութեան իւրոյ, բայց եթէ 'ի նա, ապա կքեաց Աբեններ և հար զմնակուշտն Ասայելի 'ի տեղ նիզակի իւրոյ և անդէն սատակեաց ։ Անկան 'ի գնդէն Աբեններայ երեքարիւր և վաթսուն այր ։ Զայն ետ, սկսաւ կոչել Աբեններ զՅովաբ և ասէ. եթէ զզօրականսդ՝ որ սկսան խաղալ զխաղ՝ սուրն կոտորեսցէ, ո՞չ գիտես դու զի դառնութիւն լիցի վախճան գործոյն. այս ինքն յորժամ դարձցի թագաւորութիւն առ Դաւիթ ։ Ապա յետ այսորիկ ետ հրաման Յովաբ փողոյն հարկանել, և զանգի առնուլ գնդին առ հասարակ 'ի կոտորածոյ եղբարցն իւրեանց ։ Վասն զի այսու կոչեաց զնա պարտութիւն, 'ի վերայ Աբեններեայ համարեցաւ ։

Արդ սկսաւ բամբասել Ասբիսող զԱբեններ, վասն զի մտանէր նա առ հարճ հօր նորա ։ Ասէ ցնա Աբեններ. "Զի՞նչ՝ շանագլուխ եմ ես այսօր 'ի տուն յուդայեան". այս ինքն՝ զի ես միայն կացի ընդ ե-

րեսաց քոց և ընդ երեսաց բարեկամաց քոց հակա-ռակ ընդդէմ տանն Յուդայի ։ Եւ արդ յիշեսցէր 'ի վերայ իմ փոքր յանցանս աղջկան միոյ վատթարի ։ Բայց Ասբիսող՝ զի յամենայն ժամ խիղճ մնաց նո-րա խիթէր զնա, զի գուցէ թէ 'ի ձեռան հարճին Սա-ւուղի առցէ նա 'ի նմանէ զթագաւորութիւն Սաւու-ղի ։ Սակաւ Աբեններ բանս արկանել առ Դաւիթ ։ Առաքեաց առ նա Դաւիթ և ասէ. "Մի տեսանէր զերեսս իմ, բայց եթէ ածցես առ իս զՄեղքող դուս-տրը Շաւուղի", որ բազում անգամ ապրեցոյց զիս 'ի ձեռաց հօր իւրոյ՝ զի մի սպանցէ զիս ։

Եւ եկն Աբեններ, և սպան զնա Յովաբ յարիւն Ասայէլի եղբօր իւրոյ ։ Եւ ելաց վասն նորա Դաւիթ և ասէ. "Ըստ մահուն Նաբաղայ մեռաւ Աբեններ". վասն զի զնա սպան երկիւղն, և զսա նենգութիւնն ։ Եւ իբրև բերէր 'ի մէջ աղերսանօք զմահն Նաբաղու, ուսուցանէր նա՝ եթէ ոչ կամէր նա ընդ մահն նո-րա ։ "Ձեռք քո ոչ էին կապեալ 'ի շղթայս առ 'ի մարտնչել. և ոտք քո ոչ էին կապեալ 'ի շղթայս առ 'ի փախչել. իբրև կործանեալ առաջի որդւոց անօրէ-նաց անկար դու". այս ինքն իբրև պարտաւոր անկար կործանեցար. ոչ առաջի պատերազմողաց, այլ առա-ջի որդւոցն անօրէնութեան՝ որ նենգեցին զքեզ. զի դու 'ի պատերազմի սպանէր զեղբայր նորա, և նա զքեզ դաւաճան դաւաճեր նենգութեամբ ։ Ողջոյնն 'ի բերան Յովաբու, և վաղակաւորն 'ի ձեռին ։ Արդ մեռաւ Աբեններ որ եկն դարձուցանել զԻսրայէլ առ Դա-ւիթ. զի մի ասիցեն եթէ մարդ ետ նմա զթագաւո-րութիւն, և ոչ Ած ։ Սպանին դարձեալ Հռեքաբ և Բանի զԱսբիսող, և բերին զգլուխ նորա առ Դա-ւիթ ։ Եւ սպան զնոսա Դաւիթ. և զգլուխն Ասբի-սողի տարաւ թաղեաց առ Աբեններայ ։

Եւ թագաւորեաց Դաւիթ 'ի վերայ ամենայն Իս-րայէլի ։ Եւ եկին 'ի վերայ Երուսաղեմի. զի նա ինքն է Յեբուս ։ Եւ ասեն յեբուսացիքն ցԴաւիթ. "Մի մը-տանէր այսր, բայց եթէ անցուսցես զկոյրս և զկաղս". այս ինքն, զոր օրինակ ոչ կարես դու անցուցանել զայսոսիկ յերկրէ, սոյնպէս և ոչ 'ի Յեբուս ամրա-պարիսպ ապստամբեալ կարես մտանել դու ։ Եւ ա-

ասէ Դաւիթ. «Ամենայն որ սիրելի է յեբուսացւոց, եւ մարտնչի վահանաւ ընդ կոյրս եւ ընդ կաղս, ատելի է նա Դաւթի»: Վասն զի ամենայն որ սիրէ զյեբուսացիս, եւ կամ թէ մարտնչի վահանաւ ընդ կոյրս եւ ընդ կաղս, որպէս եւ կամեցան յեբուսացիքն, ատելի են Դաւթի: Ցաճախեաց պահեաց Դաւիթ զնոսա. վասն զի ասացին յեբուսացիքն՝ թէ մի՛ մտցէ կոյր եւ կաղ 'ի տուն: Վասն այսորիկ ասեն իբրեւ նախատանօք, թէ «Մի՛ մտցէ կոյր եւ կաղ 'ի տուն»:

Եւ հան Դաւիթ զտապանակն կտակարանաց տեառն 'ի Գաբայէ: Եւ վասն զի յանցեան քահանայքն, եւ եդին զնա 'ի սայլի, իբրեւ կարկառ Ոզա զձեռն իւր ուղղել զնա անդրէն 'ի տեղի իւր զայն՝ զոր հրամայեացն բառնալ 'ի վերայ ուսոց, հար զնա տէր եւ անդէն սատակեաց զնա: Եւ երկեաւ Դաւիթ տանել զտապանակն 'ի քաղաքն իւր. եւ տարաւ իջոյց զնա 'ի տանն Աբեդադայ գեթացւոյ: Եկին ասեն ցԴաւիթ. օրհնեցաւ տունն Աբեդադայ գեթացւոյ յերիս ամիսս, զի եղեւ տապանակն կտակարանաց տեառն առ նմա: Եւ զգեցաւ Դաւիթ զոսկեհուռն բեհեզի, զի ուսուսցէ ժողովրդեանն սրբել զանձինս իւրեանց ըստ նորա նմանութենն. եւ տարաւ զտապանակն կտակարանաց 'ի տուն իւր: Եւ զի բաց զբերան իւր Մեղքող եւ անկանեաց զԴաւիթ վասն կաքաւածն պարուցն՝ որ զուարճացեալ գայր առաջի տապանակին, փակեցաւ վասն այսորիկ դուռն արգանդի նորա:

Եւ ասաց Դաւիթ ցՆաթան մարգարէ շինել ըզտուն տեառն այ: Ասէ ցնա Նաթան մարգարէ. շինեա: Իսկ Նաթան՝ զի յօժարեցոյց զԴաւիթ 'ի կամս անձին իւրոյ շինել զտունն հրամանաւն այ, արգելաւ նա՝ զի մի՛ շինեսցէ. բայց ոչ բարկութեամբ եւ ոչ վասն յանցանաց ինչ, այլ ասաց ցնա՝ թէ արարից քեզ անուն ըստ անուան ազգաց մեծամեծաց, որ իցեն 'ի վերայ երկրի. «Յորժամ կատարեսցի, ասէ, թիւ աւուրց քոց, եւ ժողովեսցիս դու առ հարս քո խաղաղութեամբ, յարուցից զզաւակ քո զկնի քո, եւ նա շինեսցէ տուն անուան իմոյ. եւ 'ի յանցանս իւր յանդիմանեցից զնա գաւազանաւ առն». այս ինքն

գաւազանաւն Ադրահազարու եղովմայեցւոց ։ "Եւ 'ի տանջանս որդւոց մարդկան ". այս ինքն խրատուն այնորիկ՝ որ խռովիչքն էին թագաւորութեն ։ "Եւ զաթոռ քո 'ի ձեռն զաւակի քո կանգնեցից մինչև յաւիտեան "։

Եւ եկն Դաւիթ և նստաւ առաջի տեառն, և ասէ. "Տէր իմ տէր իմ, ո՞վ եմ ես, զի հասուցեր զիս մինչև ցայս վայր. փո՞քր ինչ է այս՝ զոր ասացեր 'ի վերայ տանն ծառայի քո 'ի հեռաստանէ ". այս ինքն՝ կամ 'ի ժամանակէն Յակովբու, և կամ այս զոր այսօր խոստացար՝ կարգել 'ի զաւակի իմում զթագաւորութիւն մինչև յաւիտեան. այս ինքն՝ առ ուսումն մարդոյն՝ զի հաւատասցէ յայն ինչ՝ որ 'ի քէնն խօսեցեալ է նմա ։ "Եւ դու յայտնեցեր յունկն ծառայի քոյ շինել զտուն անուան քո ". այս ինքն՝ զի կարգեսցի զաւակ թագաւորութե քո մինչև յաւիտեան ։

Եւ իբրև գնայր Դաւիթ 'ի վերայ տանեաց ապարանից արքայութե իւրոյ, ետես նա կին մի զի լուանայր. այս ինքն զի սրբէր զուրքն 'ի դաշտանէ անտի իւրմէ. քանզի 'ի ժամ երեկորի սրբէին կանայքն հեբրայեցիք ըստ օրինացն ։ Բայց սա ինքն այս կին դիտելով դիտէր զարքայն Դաւիթ՝ թէ յորում վայրի անկցի 'ի վերայ նորա խաբեպատիր գեղոյն իւրով. ոչ եթէ արհամարհութեամբ ինչ, այլ զի կորզեսցէ հանցէ 'ի նմանէն զգանձն՝ որ ծածկեալն էր 'ի նմա ։ Իսկ իբրև ետես զնա Դաւիթ, և որսացաւ 'ի գեղ նորա իբրև 'ի ծուղակս, առաքեաց ածել զնա. և նա ոչ հպարտացաւ և ոչ մեծամտեցաւ, և ոչ գոնեայ թէ սակաւ բանիւք անհաւանութեան աշխատեցոյց զսենեկապանսն, որ չոգանն զնմանէն ։ Յարեաւ գընաց վաղվաղակի 'ի կամս կամաց իւրոց առանց պարգևաց. վասն զի և այս իսկ էին աղօթք նորա, զի յաղթահարեսցի 'ի գեղոյ նորա յղել զնմանէն ։ Իսկ իբրև եկն եմուտ առ նա, և չոգաւ 'ի տունն իւր, առաքէ առ նա՝ եթէ զայս գիտասջիր՝ զի յղի եմ ես ։ Զի եթէ դարձեալ մտեալ էր առ նա, ինքն իսկ ասէր ցնա, և ոչ եթէ 'ի ձեռն այլոյ առաքէր. և զի գիտասցես եթէ 'ի հիւր [1] ժամու էր, և ոչ մեղք

[1] Միւս օրինակն հիւր ։

օրացի ։ Եւ վասն զի մի՛ մնացի կինն, և կնաւն խայտառակեսցի արքայն պատուական՝ գրէ առ Յովաբ, զի արձակեսցէ առ նա զՈւրիա ։

Նա իբրև եկն, յղեաց զնա Դաւիթ 'ի տունն իւր, և ոչ չոգաւ ։ Իսկ իբրև արբեցոյց զնա և ետ նմա պարգևս, սակայն և 'ի ձեռն պարգևացն ոչ մտաբերեաց երթալ 'ի տուն իւր. այլ և ասացեալ և ցուցեցոյց զԴաւիթ իբրև ոչ գիտէր. «Տապանակն կտակարանաց տեառն, ասէ, և Իսրայէլ և Յովաբ զօրօքն հանդերձ 'ի դաշտի անդ բնակեալ են, և ես երթայց 'ի տուն իմ, և ննջեցից ընդ կնոջ իմում. քաւ լիցի ննջել ընդ կնոջն իմում վասն տապանակին կտակարանաց, զի բնակեալ է 'ի դաշտի անդ »։ Իբրև մեղք իմն համարեցան նմա գործն արժանաւոր օրինացն առնն և կնոջն ։ Բայց ոչ խորամանկեցաւ Դաւիթ ընդ ածել կնոջն նորա առ իւր, որպէս զայլսն՝ որ խորամանկեցաւ, զի մի՛ անջրպետեսցի նա յառնէ անտի իւրմէ ։ Ապա իբրև ոչ բանիցն արքայի լուաւ, և ոչ 'ի բանս կնոջն պատրեցաւ երթալ 'ի տուն իւր, վասն զի մի՛ կինն մնացի, և 'ի ձեռն կնոջն խայտառակեսցի և արքայն պատուական, և 'ի պատճառս արքայից ջեռնուցու ամենայն Իսրայէլ 'ի շնութի՛ պոռնկութե, խորհի մեծ մտայոյզ խորհրդովք՝ մեռանել օտարին՝ և ոչ ընտանւոյն, քետացւոյն՝ և ոչ կնոջն հեբրայեցւոյ, միոյն՝ և ոչ երկուցն ։ Գրէ արդ աւասիկ ոչ կամօք թուղթ առ Յովաբ՝ կացուցանել զնա զօրավար զօրուն 'ի ձգնական տեղւոջ, զի հարցի և անդէն սատակեսցի ։ Իսկ Յովաբ իբրև ետես զթուղթն, գիտաց վասն ոյր հրամայեաց սպանանել զնա ։ Առ պահեաց առ իւր զթուղթն. և թուէր նմա եթէ զարիւնն Դաւթի ծրարեալ ունի 'ի բուռն իւրում ։

Իսկ ա̃ծ ամենագէտ և կանխագէտ, ծածկագէտ և յառաջագէտ՝ գիտէր զինչ ինչ արար Յովաբ խորամանկ ։ Առաքէ զՆաթան առ Դաւիթ, զի խայտառակեսցի արքայն 'ի ձեռն ա̃յ ողորմածի, և ոչ 'ի ձեռն անօրինին և ամպարշտին, չարին և խորամանկին Յովաբու մարդոյ ։ Եկն եհաս Նաթան մարգարէն. և զի ոչ գիր այլ դք՝ եթէ դատեցէ զԴա-

ւիթ, հնարի իմն առնել զնա դատաւոր անձին իւրոյ։ Արդ մատուցեալ զօդէր զպատմութիւս և ասէր ցնա, իբրև տրտմեալ և տխրեալ 'ի հոգւոց ելանէր․ այսպիսի ողորմուկս արկ նմա պատմութեքն իւրովք, մինչ զի արտաքս քան զօրէնսն հնարեցաւ հանել ըզխորհուրդս նորա։ Քանզի զայն՝ զոր ասացն Դաւիթ, թէ "Զորս ընդ միոջն տացէ որ սպան զորոջակն", այն յօրինացն էր․ բայց եթէ մահապարտ էր, այն չէր յօրինացն։

Իսկ մարգարէն իբրև ետես զարքայն զի պարտաւորեաց զոմն, յայնժամ 'ի տրտմութէ անտի 'ի բարկութիւն փոխեցաւ․ քանզի իբրև զիւրն ասէր 'ի դէմս՝ որ ինչ պատշաճ է իւրում՝ ասէր նա, զի զիւրն յիւրայոց տոհմականաց ծանուսցէ․ իսկ իբրև զտեառն երկրորդեաց զբարկութիւն՝ որ պատշաճ և պիտոյն էր բանիցն տէրունի, ըստ տէրունական հրամանին զգեցաւ նա․ այլափոխեցաւ նա 'ի կակղութէ 'ի խստութիւն անդր և ասէ՝ ոչ եթէ զի դու, արքայ, արարեր զայդ, այլ զի "Այր դու, դու քեզէն իսկ արարեր զայդ։ Արդ այսպէս ասէ տէր․ ես, ասէ, ետու քեզ զդստերս տերանց քոց, և զկանայս տեառն քո ննջեցուցի 'ի լանջս քո․ արդ դու աւադիկ զՈւրիա քետացի սպաներ 'ի սուր սուսերի, և զկին նորա առեր քեզ կնութէ․ ահա յարուցից անդստին 'ի տանէդ քումմէ 'ի վերայ քո զչարիս, և հանից քո յանդիման զկանայսն քո 'ի քէն, և տաց զդոսա ընկերի քում, և մտցէ առ դոսա առաջի արեգականդ այդորիկ"։

Իսկ Դաւիթ իբրև ետես՝ եթէ եղև դատաւորն դատելի, և այն՝ որ արքայն էր՝ կոչեցաւ այր, և տէրն կոչեցաւ ծառայ, ոչ ծածկեաց զմեղսն իւր յայ, այլ խոստովանեցաւ անձամբ զանձն իւր առաջի մարգարէին այ և ասէ․ "Մեղայ"։ Իսկ Նաթան՝ այն որ մեծ խորխտանօքն մատուցեալ յառաջ զնէր զդատավճիռն բարկութէ 'ի վերայ արքային, փոխեաց զնա անդէն և անդ հոգին 'ի քաղցրութի․ և ընդ կրուկն բանին՝ այն որ ասացաւն 'ի Դաւթէ՝ թէ "Մեղայ տեառն", ասաց և հոգին 'ի բերան մարգարէին, թէ "Եւ տէր անցոյց զյանցանս քո"․ զի վասն թո-

զութեն բեր զյանցանսն 'ի մէջ. զի որք ընթեռնուն զմեղս նորա, ժամանեսցեն նոցա քաւութիւն նորա, և զի քարոզեսցի դարձեալ յազգ և յազինս՝ թէ այս մի միայն յանցանք գտան տեառն Դաւթի զքառասուն ամ թագաւորութեան նորա: Եւ զի ուսուսցէ դարձեալ, եթէ 'ի վերայ Դաւթի սիրելւոյն իւրոյ ոչ խնայեաց՝ այլ խայտառակեաց զնա, արդ 'ի վերայ ո՞յր խնայիցէ՝ թէ մեղանչիցէ:

Եւ յետ թողութեան յանցանաց նորա ասաց՝ թէ վասն զի բարձրացուցեր դու զթշնամիս տեառն, այս ինքն վասն զի բացեր զբերան՝ ոչ զուղղոց զստուգաց զարդարոց զքաջաց զլաւաց զառաքինեաց, այլ զամպարշտաց զանօրինաց զամբարհաւաճից զուրացողաց զհայհոյչաց, այսու գործովս զոր գործեցեր՝ և որդին որ ծնանելոց է քեզ 'ի կնոջէս յայսմանէ, մեռանելով մեռցի: Ահա ամուլ էր առ առնն ամուսնին իւրում. զի՞արդ օրհնեցաւ արգանդն նորա յանիծեալ պոռնկութէ անտի: Իսկ մանուկն որ մեռաւն՝ թէպէտ և բարկութե մեռաւ, այլ մահն նորա ողորմութեց էր. քանզի նախատ լինէր նա ժողովրդեանն, և ոչ կարէր շինել զտաճարն սրբութէ. այն զի և ոչ մտանել իսկ իշխէր նա 'ի տաճարն սրբութեն և ոչ ժողովուրդն իսկ ունէր յանձին թագաւորել զպոռնկորդին 'ի վերայ իւրեանց: Արդ զի մի հարքն նոցա վաղիւ նախատիցին նովաւ, և զի եղիցին ափիբերան կարկեալ պապանձեալ՝ որ համդերձեալն էին մեղանչել: Եւ զի չէր պարտ և պատշաճ պոռնկորդւոյն շինել զտաճարն սուրբ Տյ, վարեաց զնա տէրն իւր 'ի դէմս բարկութե: Զի այնմ՝ որ ոչ ետ զթագաւորութիւնն ըստ երդմանն Դաւթի, տարցի տացէ նմա զարքայութիւն երկնից ըստ կամացն Դաւթի: Բայց մխիթարեաց Դաւիթ զԲերսաբէ, և մուտ առ նա և ծնաւ զՍողոմոն. և տէր սիրեաց զպատանեակն: Եւ առաքեաց զՆաթան և կոչեաց զանուն նորա Յեդիդա, այս ինքն է սիրեցեալ սիրելի:

Եւ սիրեաց Խեմնոն զԹամար քոյրն Աբեսողովմայ: Խօսել սկսաւ ընդ նա Յովնադաբ բարեկամն իւր և ասէ. զի՞ դու՝ զի՞ ընդ քեզ, զի՞ այսպէս մաշեալ մաշիս յառաւօտէ յառաւօտ. այս ինքն է, զի՞

է զի օր ըստ օրէ երթաս և տժգունիս ։ Եւ ուսոյց նմա խորամանկութիւնս Յովնադաբ, և վարեցաւ նովաւ, և բռնադատեաց զաղջիկն և անարգեաց զնա ։ Եւ սպան զնա Աբիսողոմ վասն այսորիկ, և փախստեայ եղեւ առ Մեխոթ արքայն Գաշորայ ։

Եւ յետ երից ամաց ած Յովաբ զկին մի Թեկուացի ։ և արդ առեալ կարգեալ դնէր բանս ՚ի բերան նորա ։ Եմուտ խօսեցաւ կինն ՚ի դէմս անձին իւրոյ զիրս Դաւթի և զԱբիսաղոմայ խորամանկութեամբ , և պարտեաց զԴաւիթ աշտիճանէ յաշտիճան աղերսանօք ողորմ ողորմ ձայնիւ , մինչ զի փակեաց զնա ընդ երդմամբ խորամանկութեամբ ։ “Կենդանի է, ասէ, տէրանց տէր, եթէ ոչ անկցի մազ մի ՚ի հերոյ գլխոյ որդւոյ քո ՚ի վերայ երկրի ” ։ Եւ վասն զի զայս եդ Դաւիթ ՚ի միտ իւրում, զի մեղք են՝ եթէ հաշտի նա ընդ Աբեսաղովմայ , ասաց կինն՝ եթէ “Յանցանքս այս ՚ի վերայ իմ և ՚ի վերայ տան հօր իմոյ ։ և թագաւոր և աթոռ նորա քաւեալ եղիցի ” ։

Արդ իբրև գրաւեցաւ այրն երդմամբ , սկսաւ ապա կինն ասել զճառն , մերթ յայտ՝ մերթ ՚ի ծածուկ , զի առ սակաւ սակաւ ցածուսցէ զբարկութիւն թագաւորին , անդէն և անդ ճառին մեղմասցի և իջցէ ցասումն նորա ընդ պատմութիւն խօսիցն ։ “Ընդէ՞ր , ասէ , խորհեցար իբրև զայս ՚ի վերայ ժողովրդեանն Աստուծոյ ” ։ որպէս զի ցուցցէ և յայտ արասցէ Դաւթի, եթէ զամենայն ժողովուրդն տրտմեցոյց ։ վասն զի պարծանք էր ամենայն ժողովրդեանն Աբիսողովմ ։ ոչ գոյր իբրև զնա յամենայն ժողովրդեանն Իսրայէլի ։ Զի եթէ վասն պատանեկին ոչ, գոնեայ զի վասն ժողովրդեանն ջրեսցի ոխութիւն Դաւթի ընդ Աբիսողովմայ ։

Եւ խօսեցաւ , ասէ , Դաւիթ զպատգամս զայս իբրև զպարտ , զի մի դարձցի արքայ մոռասցի զնա ։ այս ինքն՝ ընդէ՞ր , զի իբրև զպարտական՝ զի ոչ կարէ արդարանալ՝ ասացեր զբանն , և ոչ կամիս դարձուցանել ։ Մեռանելով , ասէ , մեռանիմք մեք ։ այս ինքն՝ որ մեռաւն , ասէ , մեռաւ ։ որպէս և դուն իսկ ասացեր վասն որդւոյն Բերսաբեայ ։ Արդ որպէս ուսայն ՚ի քէն , ուսուցից քեզ ։ և զոր ինչ լուայն՝ զոր ասա-

ցեր, տացից քեզ . և ոչ առնու ա̃ծ զոգի և խորհի զխորհուրդս, զի իբր ոչ էր արժանի՝ առ զսոսա և թող զմիւսն ։ Եւ արդ ահա այժմ ասացից ցարքայ՝ զոր ինչ ուսայ 'ի նմանէն, և զոր ինչ լուայն 'ի նմանէն՝ երկրորդեցից առաջի նորա ։ Իսկ զայն զոր ասաց 'ի վերուստ և.ս, եթէ “կամին շիջուցանել զկայծակն՝ որ մնացիմ,, , զի թէպէտև յորդորեսցին զուեթք աղեացն 'ի միտս լողաց՝ ասաց ցնա, այլ և զճառս թագաւորութե̃ն նշանակեաց 'ի նա . զի “Մի, ասէ, պակասեսցին որդիք քո, զի նոքօք յարմարի թագաւորութիւնդ քո,, ։ Եւ գիտաց Դաւիթ՝ թէ Յովաբ քաջաբանիկ՝ է խրատտու գործոյս այսմիկ . և չոգաւ ած զԱբիսողոմ, և զերեսս արքայի նա ոչ ետես ։

## ԳԼՈՒԽ Զ

ՄԻՆՉ գնաց Աբիսողոմ 'ի Քեբրոն և ապստամբեցաւ . և փախստեայ եղև հայրն յերեսաց նորա ։ Եւ եկն եհաս Սիբա պատարագաւ առ Դաւիթ, և եցոյց նմա վասն Մեմփիբոստեայ որդւոյն Յովնաթանու՝ զի պահանջէր 'ի նմանէն դարձուցանել առ իւր զթագաւորութիւնն տանն Սաւուղայ ։ Ետ Դաւիթ Սիբայի երախտաւորի զամենայն ինչ՝ որ և էր Մեմփիբոստի ապախտաւորի և չնորհակորուսի ։

Թշնամանէ դարձեալ Սեմէի զԴաւիթ արեամբն տանն Շաւուղի, յորում աւուր որդին Յովնաթանու՝ որ մնաւն առ սեղան նորա՝ կամէր առնուլ զթագաւորութի̃ն Դաւթի ։ Ասէ Դաւիթ ցորդիսն ծորիայ քեռ իւրոյ . թողէք լիք, թող անարգէ և դըրովէ զիս . վասն զի թէպէտ և զարիւնն Շաւուղի ոչ հեղի, սակայն զարիւնն Ուրիայ քետացւոյ անօրէնութե̃ հեղի ։ Արդ տէր՝ որ հրամայեաց զայս ամենայն 'ի վերայ իմ 'ի ձեռն Նաթանու մարգարէի, նա գըրգռեաց ընդ իս զՍեմէի . բայց տայր ոք ցիս ասացեալ եթէ վասն է՞ր եղև ինձ այսպէս . վասն այնր արդեւք Ուրիայն՝ որ յայտնէ ինձ, եթէ և այլ ևս ինչ պարտիցիմ, և ծածկեալ իցէ յաչաց իմոց ։ Եւ վասն զի բանիւք և արդեամբք մեղաւ Դաւիթ ընդ Ուրիա,

բանիւք և արգանամբք խրատեաց զնա ա̅ծ. այս ինքն բանիւքն Սեմեայ, և գործովքն Աբեսողոմայ: «Թողէք, ասէ, լիք. Թող անարգէ զիս. արդեւք տեսցէ Տէր և հատուսցէ ինձ զբարին»: Եւ ահա պարտելով իսկ պարտիս դու, Տէր Դաւիթ: Այլ եցոյց, զի առ ա̅ծ ամենայն ապաշխարող՝ որ հատուցանէ սովին այսու՝ զոր հատուցանէս, և փոխ տայ՝ զի առցէ 'ի նմանէն: Արդ հատոյց նմա զգործսն և զարդիւնսն, զի նստոյց զնա յաթոռն թագաւորութ̅ե, և հատոյց նմա զբանս. յաւել դարձեալ և խօսեցաւ զօրհնութիւնս սաղմոսարանին:

Խօսել սկսաւ Աբիսողոմ և ասէ ցԱքիտոփէլ. խրատ տուր ինձ զինչ ինչ առնեմ, որով զաշխարհս ունել մարթացից: Իսկ Աքիտոփէլ քանզի գիտէր եթէ ամենայն խիղճ մտացն և երկիւղ նորա՝ եթէ և հաշտի վաղիւ Աբիսողոմ ընդ հօր իւրում, ընկեց զիւր մտացն զխիղճն և զվնաս անձին իւրոյ խորամանկութ̅բ 'ի վերայ ժողովրդեանն. «Ջահի հարեալ է, ասէ, ժողովուրդդ և երկնչին, գուցէ թէ հաշտիցիս դու վաղիւ ընդ հօր քում. այլ մուտ դու առ հարճս հօր քում, և ահա հզօրանան ձեռք ամենեցուն որ ընդ քեզ են, գալ զկնի քո վստահութ̅բ, և լինել քեզ թիկունք օգնականութեան և ծառայք մտերիմք»: Եւ զայս զի՞ արար. զի գարշեցուսցէ զազբացուսցէ զնա յաչս հօր իւրոյ. և զի ասասցէ ցնա դարձեալ յետ այսորիկ՝ թէ հայր քո այլ ոչ է հաշտելոց ընդ քեզ. զի եթէ Յակոբ ոչ հաշտեցաւ ընդ Ռուբէնի վասն միոյ յանցանացն, թէպէտ և կարի շատ յաճախեաց պարտեաց զնա Յովսէփու, դու՝ որ զեղբայրն քո սպաներ, և անարգեցեր զկանայս հօր քո, զիա՞րդ հաշտի ընդ քեզ: Եւ զի յուսացուսցէ եթէ 'ի տեառնէ է թագաւորութ̅ի նորա, ահա, ասէ, այն ինչ զոր ասացն Նաթան մարգարէ, գործեցաւ առ Դաւիթ 'ի ձեռն Աբիսողոմայ: Արդ եմուտ լկտին պոռնկութ̅ք, և անարգեաց զամենեսեան. զի եթէ ոչ էր նա աղտեղի և յայրատ և ճակաճան, կարէր նա անարգութ̅բ միոջն տալ կարծիս՝ թէ զամենեսին անարգեաց:

Դարձեալ խրատեաց զնա Աքիտոփէլ վարել ընդ

իւր զունդ մի զօրու. և անկանել 'ի վերայ գնդին
Դաւթի։ Իսկ Հուսի իբրև ետես՝ թէ Դաւիթ անց
գնաց 'ի Գաղուլթս, քանզի հանդերձ կանամբք և որ-
դւովք գնաց նա, և վասն զի գիտաց՝ զի եթէ հալա-
ծեն մեծահանդոյց և վառեալ զունդն զկնի փախըս-
տէիցն, ժամանեն և կոտորեն զնոսա, ետ պատաս-
խանի և ասէ ցԱբեսողոմ. "Ոչ բարւոք խորհեաց
զքեզ Աքիտոփէլ, եթէ յայսմ ժամանակի պնդեալ
երթանայցեմք զկնի Դաւթի,,։ Եւ արդ սկսաւ յոր-
գել զովել բերել 'ի մէջ զքաջութիւնս Դաւթի և
զսեփհական գնդին. դու, ասէ, քեզէն գիտես զչափ
հօր. քո և զչափ սեփհական գնդի նորա, զի արք են
դառնաշունչք և դառնահոգիք, գազանք և գազանա-
սիրտք իբրև առեւծք իբրև արջք՝ որ զտանիցեն ըղ-
գէշ յանապատի։ Եւ հայրն քո՝ զոր ասաց Աքիտո-
փէլ եթէ զնա միայն սպանցուք, և ոչ ինչ այնպէս
կարի անմիտ է նա՝ եթէ յայսմ ժամանակի առ զօրուն
ագանիցի նա։ Եւ վասն զի զառաջին անգամն մար-
տընչիմք մեք, եթէ թշնամեաց զառաջին անգամն լի-
նի մեզ կոտորած ինչ՝ եթէ կայցէ ոք 'ի մեզ որ ու-
նիցի զսիրտ առեւծու, հարկանելով հարկանի յեր-
կիւղէ անտի և անդէն սատակի. քանզի ամենայն
իսկ Իսրայէլ գիտէ զչափ հօր քո, և զչափ քաջա-
մարտիկ արանցն որ էին ընդ նմա, զի 'ի բազում պա-
տերազմունս առեալ է նոցա զանուն քաջութեան։
Բայց զքեզ յայսմ առաջին մարտի փորձեն. և քեզ
պարտ և պատշաճ է իմանալ, յորժամ միագունդ միա-
համուռ միաբան ժողովեալ իցեն առ քեզ ամենայն
Իսրայէլ. և ապա չու արասցուք խաղասցուք գնաս-
ցուք և երթիցուք բանակեսցուք 'ի վերայ նորա, որ-
պէս զի անկանիցի ցօղն առաւօտին, և ոչ ապրեցուս-
ցուք 'ի նոցանէն և ոչ մի։

Իսկ Աքիտոփէլ իբրև ետես՝ եթէ զիարդ խափա-
նեաց որպիսի խորհուրդն զայնպիսի խորհուրդն,
և գիտաց եթէ որովհետև այս եղև՝ արդ չիք հնար
յաղթելոյ զԴաւիթ, և վասն զի ոչ կարէր յետ յաղ-
թութեան բառնալ զաչս իւր և նայել ընդ նա, անց
գնաց արկ խեղդ և անդէն մեռաւ։ Եւ ասէ Դաւիթ
ցգունդն իւր. եթէ փախչիմք մեք, ո՞չ ահա զայս ա

ծեն ընդ միտ՝ եթէ երկեալք ինչ մեք 'ի նոցանէն, և պնդին զկնի մեր յոր վայր երթամք. և արդ այժմ թէպէտ և շատ իցէ մեզ տասն հազար վառեալք, այլ լաւ իցէ մեզ առնել թիկունս ապաստանի զզօրն հետեւակ շինականն 'ի գեղից անտի. զի թէպէտ և եղիցի, զի ոչ են վառեալ: Վասն զի ճշմարտէր Դաւիթ՝ թէ ինքն յաղթէ, քանզի ժամ խրատու էր նորա՝ և ոչ եթէ ժամ մահու, տայր պատուէր ածել զպատանեակն կենդանի. և զի մի հպարտասցին վաղիւ 'ի վերայ Դաւթի, ապստամբն մեռանին 'ի գնդէն Աբիսողովմայ քսան հազար 'ի մարգամահէ, և ուտէ 'ի նոցանէ և գազանն անտառի աւելի քան զոր ինչ կոտորեցան 'ի սուրն սուսերի: Կախեաց և զԱբիսողոմ զծայրից ոստոցն ծառոյ, զի առանց մարտի ածցեն զնա կենդանի առ Դաւիթ: Հար սպան Յովաբ զԱբիսողոմ, և ցրուեցաւ զօրն նորա՝ որ ընդ նմայն էին՝ մեծ ամօթով: Եւ զի կանգնեաց իւր պատկեր Աբեսողովմ, և ասէ. "Վասն զի չիք ոք՝ որ յիշէ զանուն իմ". զի չիք իմ, ասէ, որդեակ՝ որ ունիցի զբազ և զբաժին իմ, և ունիցի զյիշատակ անուան իմոյ: Եւ լայր և սուգ ունէր Դաւիթ 'ի վերայ Աբիսողովմայ, զի չոգաւ նա 'ի մեղս իւր և 'ի պարտիս: Եւ երկեաւ զօրն մտանել 'ի քաղաքն. այս ինքն ամաչեցին տեսանել զԴաւիթ:

Եւ ամբարհաւաճեցաւ Յովաբ 'ի վերայ Դաւթի արքայի և ասէ ցնա, եթէ "Յամօթ արարեր տրտմութեամբդ քո այսօր զերեսս ծառայից քոց՝ որ ապրեցուցին զանձն քո և զանձինս որդւոց և կանանց քոց": Եւ արդ ահա ոչ եթէ մարդիկ ապրեցուցին զնա: Ձի՞ պարծիս պայթիս դու, Յովաբ. քանզի այն՝ որ առաքեաց 'ի վերայ գնդին Աբիսողոմայ զմարգամահն և զգազանսն, նոյն ինքն ապրեցոյց զԴաւիթ: "Ի տէր, ասէ, երդուայ. զի եթէ ոչ, ասէ, ելցես խօսեսցիս ընդ ծառայսն քո, ոչ ագանի առ քեզ յայսմ գիշերի". այս ինքն, զի վարատեմ ցրուեմ ես, ասէ, զզօրսդ առ 'ի քէն, և սակաւքն՝ որ ապրեցան 'ի գնդէն Աբիսաղովմայ, գան և սպանանեն զքեզ: Բայց զայս զի ասաց, ապաստան 'ի թուղթն զոր գրեաց վասն Ուրիայ քետացւոյ, զի ունէր ինքն

Յովաբ առ իւր. խօսեցաւ՝ որպէս ասէ ոք՝ թէ հանեմ ցուցանեմ զթուղթն, զի վասն մեղաց քոց եկն այս ամենայն 'ի վերայ մեր և 'ի վերայ քո: Եկն եւ Դաւիթ յետ նախատանացն, իբրև նախատեցաւ 'ի Յովաբէ, որպէս 'ի Սեմեայն. և խօսեցաւ ընդ զօրուն:

Որդ արկ ա̃ծ 'ի սիրտս և 'ի միտս ազգացն ամենայն. խօսել սկսան և ասեն, եթէ "Դաւիթ ապրեցոյց զմեզ 'ի թշնամեաց մերոց. և արդ այժմ եկայք փախիցուք յերկրէ աստի ". այս ինքն 'ի տեղւոջէ՝ ուր ժողովեացն զմեզ Աքիսողոմ: Եւ եկին միաբան առ Դաւիթ, և ընկալաւ զնոսա: Եւ դարձոյց Ամեսա զսիրտ տանն Յուդայ առ արքայ: Եւ արդ այնոքիկ՝ որ համդերձ ամենայն ազգօքն երկմտեցան 'ի Դաւթայ, ողքին իսկ յառաջ քան զամենայն ազգսն առաքեն առ նա՝ եթէ դարձ դու. այս ինքն դարձ դու և ծառայեա, և ընդ իմ զքեզ:

Որդ Սիբա եկեալ արկանէր զկամուրջն Յորդանան գետոյն առաջի արքային. և Սեմէի թաւալանէր առաջի ոտիցն Դաւթի արքայի, և ասէ. "Ես գիտեմ, տէր, զի մեղայ. և արդ եկեալ եմ աւասիկ յառաջ քան զամենայն տունն Յովսէփու ": Որպէս զի ասիցէ ոք, թէ ես գրդռեցի, ասէ, զտունն Յովսէփու իջանել ընդ առաջ քո: Խօսել սկսաւ Աբեսսէ և ասէր. "Ո՞չ վասն այսր յետին պարծանացս ոչ մեռցի Սեմէի, զի անարգեաց յերթալն մերում զօծեալն տեառն ": Եւ պատասխանի Դաւիթ և ասէ. "Այսօր ոք մի՛ մեռցի ". և երդուաւ նմա Դաւիթ, ոչ վասն զի ստիպեաց զնա անարգութիւն Սեմեայ, այլ վասն զի յաղթահարեաց զնա քաղցրութիւն իւր: Բայց ոչ երդուաւ նմա՝ եթէ բնաւ ամենևին ոչ մեռցիս դու, այլ զի այսօր՝ որպէս կարծեսդ՝ և որպէս յարեաւ 'ի վերայ քո Աբեսսէ, ոչ մեռանիս: Եւ ոչ թէ Սեմեայ երդուաւ, զի ոչ եթէ Սեմեայ ինչ պարտ էր երդումն, այլ աբեսսեանց երդուաւ. զ՝ 'ի պատճառս երդմանն Դաւթի խափանեսցին 'ի սպանանելոյն Սեմեայ: Եւ արար նմա որպէս և երդուաւն. և աւելի քան զայն՝ որ երդուաւն. զի որչափ կենդանի էր, յայնոցիկ՝ որ վրէժխնդիրքն էին 'ի սպանողացն նորա՝ ապրեցոյց զնա:

Եւ եկն էջ Մեմփիբոսթէ ընդ առաջ Դաւթի ոչ զմուրուսն իւր վերայեալ, և ոչ զհանդերձսն իւր փոխեալ մինչև ցօր գալըստն արքայի։ Եւ ասէ ցնա արքայ. ընդէ՞ր ոչ եկիր ընդ իս։ Խօսել սկսաւ առաջի արքայի և ասէ. Ծառայն իմ նենգեաց զիս, զի ոչ կամեցաւ հանդերձել ինձ գրաստ. բայց սակայն ոչ կարեմ արդարանալ, և ոչ խօսելով անգամ առաջի տեառն իմոյ արքայի։ Իսկ արքայ վասն ստութեն նորա, որ ասաց ցնա՝ թէ շատ խօսեցար, բայց վասն ապաշխարութեն նորա և վատթարութեն, զի վատթարեալ կայր յերեսաց նորա, և վասն սիրոյ հօր նորա, բայց աւելի վասն Աստուծոյ, ասաց՝ թէ ընդ քեզ և ընդ Սիբա բաժանեսցին անդաստանքն։

Եւ Բարզեղիա կերակրեաց զարքայն։ Իսկ իբրև ստիպեաց զնա դառնալ ընդ իւր նմա՝ շնորհն երախտեաց նորա ասաց, "Ոչ կարեմ ես լսել զձայն ազատ մանկտւոյն և զազատ կանանցն". հեբրայեցին ասէ, "Զձայն գուսանաց և վարձակաց"։

Արդ արկ ա͞ծ զնախանձ բարի ազգացն այնոցիկ. զի որք 'ի ժամ խռովութեան Դաւթի փախստեայ լինէին 'ի նմանէն, իսկ իբրև անց ժամանակն այն՝ սկսան հակառակել 'ի մէջ իւրեանց թէ ով 'ի նոցանէն աւելագոյն սիրէ զԴաւիթ։ Քանզի ասէին տունն Իսրայէլի ցտունն Յուդայեան, եթէ "Տասն մասն աւելի է մեր յարքայի". այս ինքն ազգ եմք մեք, որ պաշտեմք զարքայ, և մեզ պարտ և պատշաճ է լինել առաջին և ածել զարքայ, այս ինքն դարձուցանել առ մեզ։ Բայց զօրացաւ սաստկացաւ բանն յուդայեան քան զբանն իսրայելեան. վասն զի յազգէ նոցա էր, և 'ի վերայ նոցա թագաւորեաց յառաջ, և 'ի յառաջին և 'ի վերջին հալածմանն Դաւթի նոքա եղեն թիկունք նորա Աստուծով։

Եկն եհաս Դաւիթ յԵրուսաղէմ, և արգել ըզ-տասն կանայսն իւր որ անարգեցան՝ զի պահեսցին. և ոչ այլում ետ զնոսա, վասն զի կանայք որդւոյն նորա էին. բայց եղեն 'ի նեղութե, վասն զի ակամայ կամօք հրամայեցան պահել զայրութի։

Եւ չոգաւ Յովաբ զկնի Շամուայ որդւոյ Յովրէի. վ͞ն զի կամեցաւ ապստամբեցուցանել զժողովուրդն 'ի

Դաւթէ ։ Եւ իբրև պատրաստեցան կազմեցան յովաբեանքն դաշտել յատակել զպարիսպ աշտարականցն, խօսել սկսաւ կին մի անդուստ արտաքս և ասէ, եթէ "Յառաջագոյն հարցանելով հարցանէին 'ի մարգարէիցն, և ապա սպանանէին, որպէս և Դաւիթ իսկ առնէր մինչև ցայսօր յամենայն մարտ պատերազմի՝ իբրև ընդ հեթանոսս մարտնչէր նա. արդ ես միա՞յն տուժապարտ եմ Իսրայէլի. զի՞ պահանջիմ ես փոխանակ այլոց յանցանաց. զի՞ կամիս դու փոխանակ միոջ սպանանել զմայր մանկամբք հանդերձ". այս էինքն զքաղաքս բնակչօք հանդերձ ։ Եւ ընկէց առ նոսա զգլուխն Սամուէլայի 'ի պարսպէն, և չուեցին 'ի քաղաքէ անտի ։

Նաւ եղև զերեամ սով զկնի միմեանց. և խնդրեաց Դաւիթ 'ի տեառնէ. եւ պատասխանի տէր և ասէ. "Վասն Սաւուղի, զի սպան զգաբաւոնացիս". վասն զի նախանձեցաւ Սաւուղ ընդ գաբաւոնացիս. վասն զի մատոյց զողջակէզսն և ապրեցաւ. և եղեն անդէն նոքա պաշտօնեայք սեղանոյն փայտիւն և ջրով. բայց ասեն այսպէս, եթէ աբիմելէքեանք են նոքա ։ Եւ վասն զի պատուեցին զԱբրահամ, եղև նոցա շնորհահատոյց տէրն Աբրահամու 'ի մէջ զաւակին Աբրահամու ։ "Խնդրեաց, ասէ, Սաւուղ սպանանել զնոսա", իբրև նախանձեցաւ՝ զի մեղացուցէ զորդիսն Իսրայէլի և զորդիսն յուդայեան, որպէս զի ստեսցին [1] յերդումն զոր երդուանն, և մեղիցեն նոցա ։ Եւ ասաց Դաւիթ ցգաբաւոնացիսն. "Ո՛ զի՞նչ առնեմ ձեզ, և օրհնեսցին ժառանգութիւքն տեառն". զի ահա իբրև անիծիւքն սատակէր սովն զամենայն առ հասարակ ։ Ետուն պատասխանի և ասեն ցնա, եթէ "Այրն՝ որ կորոյս զմեզ զի մի՛ մնասցուք ընդ ամենայն սահմանս Իսրայէլի, տացեն 'ի մեզ զեւթն որդիսն նորա, զի մատուսցուք զնոսա պատարագ առաջի տեառն". Արդ ոչ պակասեցուցին 'ի թուոյն եւթանն, զի գուցէ եթէ մնացորդ մնասցէ Շաւուղի. և ոչ աւելի ասացին, զի գուցէ ելցէ և սատակեսցէ զզաւակն Յովնաթանու ։ Ետ նոցա արքայն զերկուս

1 Յօրինակին ստեցին ։

որդւոյն Ռասեփայ՝ զոր ծնաւն Շաւուղի, և զհինգ որդւոյն Նադաբայ դստերն Շաւուղի՝ զոր ծնաւն Ադարիելի. մատուցին զնոսա պատարագ առաջի տեառն։ Եւ իբրև անիծիւք ոչ տուան որդիքն Շաւուղի՝ 'ի թաղել։ Բայց նման է այսպէս, եթէ իբրև հաշտեցաւ ած ընդ երկրի, թաղեցան ընդ Շաւուղի և ընդ Յովնաթանու։

## ԳԼՈՒԽ Է

Եւ սկսաւ ասել Դաւիթ առաջի տեառն զբանս օրհնութեան այսորիկ։ "Սիրեցից զքեզ տէր զօրութն իմ". զի քև յաղթեցից զամենայն մարտ պատերազմաց իմոց։ "Եւ ուղխք անօրէնութե խռովեցուցին զիս". թշնամիք նորա են. զի իբրև ուղխք դիմեալ գային 'ի վերայ նորա ասպատակաւորքն։ "Երկունք դժոխոցն շրջեցան զինև". դառն խորհուրդքն են թշնամեաց նորա։ "Եւ կանխեցին առ իս որոգայթք մահու". ատելիքն իմ յաւուրն տըրտմութե իմոյ իբրև զԱմաղէկ ասպականիչ, աշխատեալ և վաստակեալ Իսրայելի 'ի Ճանապարհի անդ։ "Եւ լուաւ 'ի տաճարէ իւրմէ ձայնի աղօթից իմոց"։ Եւ ահա ցարդ ևս ոչ էր շինեալ զտաճարն, զի՞ յիշէր զտաճարն. և կամ զի՞նչ անուանէ զտաճարն։ Զերկինս իսկ կոչեաց և անուանեաց տաճար։ "Ել ծուխ 'ի բարկութենէ նորա, և հուր յերեսաց նորա բորբոքեցաւ". զնոյն բարկութիւն՝ որ հասուցանէր 'ի վերայ թշնամեացն ած, առակէ 'ի ծուխ և 'ի հուր։ "Խոնարհեցոյց զերկինս և էջ", առ 'ի պաշտպանութիւն փրկութե նոցա։ "Եւ զմէգ եդ 'ի ներքոյ ոտից իւրոց". վասն զի իբրև զմէգ զերկրաւ եղեն թշնամիք 'ի ներքոյ ոտից նորա։ "Ել 'ի քերովբէս՝ և էջ". և զի ուսուսցէ զի ոչ եթէ սոքա բարձեալ կրէին զնա՝ ասաց, եթէ ասացաւ առ 'ի փրկութի նոցա 'ի վերայ թևոց հողմոց։ "Եդ զխաւար 'ի ծածկոյթ իւր". զի մի երևեսցի մեծապայծառ փրկութի նոցա թշնամեացն։ "Եւ պատեցաւ զժողովրդեամբն հովանիքն այ". խաւար ջուրցն՝ որ ստեղծանէր յօդեղէնն ամպոցն, հալածական երթայր 'ի լուսաճաճանչ ճով-

նոյ նորա ։ «Արար զամպս իւր կարկուտ և կայծակունս հրոյ»․ որպէս և յաւուրսն սաղմոսացուաց և եգիպտացւոց որոտայ յերկնից 'ի վերայ թշնամեացն ։ «Առաքեաց զնետս և ցրուեաց զնոսա»․ պատգամօքն հրամանի զկործանումն թշնամեացն ։ «Եւ յաճախեաց զփայլատակունս բարկութ՟ե»․ խռովեաց վտանգեաց և արար նկուն զատելիսն առ հասարակ ։ «Երևեցան աղբերք ջուրց, յայտնեցան հիմունք աշխարհի»․ զբորբոքումն կուտակեալ սաստկութիւն թշնամեացն իւրեանց առակեաց 'ի նոսա․ զի ոչ միայն զօրութ՟ի ա՟յ մեղկացուցանէր զնոսա, այլ զի 'ի սաստէ և 'ի շնչել բարկութ՟ե նորա սատակին կործանին ։ Եւ զի ցուցցէ՝ թէ ոչ միայն յորժամ մերձ է՝ փրկէ, ասաց՝ թէ «Առաքեաց 'ի բարձանց և ընկալաւ, դադարեցոյց զիս 'ի ջուրցն․ զի նոքա են հզօր թշնամիք իմ» ։ Եւ զի ցուցցէ և յայտ արասցէ՝ թէ ոչ ակնառութ՟բ ինչ արար առ նմա՝ ասաց, «Վասն զի պահեցի ես, ասէ, զճանապարհս տեառն», հանդերձ այլովք ։ Եւ զի ասաց՝ եթէ «Ընդ բարւոյն բարի եղիցիս, և ընդ առն ամբծի անբիծ եղիցիս», ստուգութ՟ին օրինաց ուսուցանէ նմա փրկել զհեբրայեցիս՝ զժողովուրդն տառապեալ ։ «Եւ զաչս ամբարտաւանից հեթանոսաց խոնարհեցուսցես ։ Եւ դու լուսաւոր առնես զճրագ իմ տէր»․ այն իսկ է, մինչ դեռ սակաւիկ միւս ևս շիջանէր նա յերկրորդ հսկայէ անտի ։ «Տէր ա՟ծ իմ, լուսաւոր առնես զխաւար իմ»․ այս ինքն փրկութ՟ն իւրով հալածեսցէ զհալածիչս իմ ։ Եւ վասն զի քև պնդեցայ զկնի ասպատակաւորին, հասի թափեցի 'ի նոցանէն՝ զոր ինչ յափշտակեցին և փախեան ։ «Եւ Աստուծով իմով անցից ընդ պարիսպ» ։ Զի թէպէտ և 'ի ներքոյ պարսպաց պաշարեսցեն և արգելցեն զիս, իբրև զեղջերու անցից ըստ նոսա․ վասն անցելոյ ժամանակացն, իբրև վասն զառյապա ժամանակացն՝ որ ինչ հանդերձելոց էր լինել, խօսէր․ զի պաշարեսցեն [1] և զզաւակն՝ որ թագաւորելոցն էր զկնի նորա․ զի եթէ զնասցեն իբրև զնա, իբրև զնա նահատակեսցին ։ «Ա՟ծ, յանբծու-

1 Յօրինակին պաշարեսցէն․ եդաւ ըստ լուսանցին ։

թէ են ճանապարհք իւր » . վասն զի առանց ախտա-
ռութեան արդարացուցանէ և պարտաւորէ ։ «Բանք
տեառն ընտրեալ են » . այս ինքն ստուգութ̃ն օրի-
նաց իւրոց ընտրեալ է, և օգնէ ամենեցուն՝ որք յուսան
՚ի նա ։ «Վասն զի չիք ա̄ծ բաց ՚ի տեառնէ », որ կա-
րէ օգնել երկրպագուաց իւրոց . և ոչ հզօր՝ առաքի-
նացուցանել յամենայն մարտ պատերազմաց մերոց
իբրև զա̄ծ մեր ։ «Ա̄ծ՝ զի զգեցոյց ինձ զօրութի̃ », յա-
ռաջին և ՚ի վերջին հալածանս իմ ։ «Եւ եդ յանբը-
ծութէ̃ զճանապարհս իմ » . այս ինքն ճշմարիտ հա-
ւատովքն՝ որ էին նորա առ ա̄ծ ։ «Եւ զի արար զոտս
իմ իբրև զեղջերուի », ընթանալ հալածել զկնի
հալածչացն, զի դարձցին ՚ի մարտ պատերազմի ։ «Եւ
՚ի վերայ բարձանց յաղթութէ̃ կացոյց զիս . և զի ու-
սոյց զձեռս իմ ՚ի պատերազմի » . զի ձգեսցեն զնետս
՚ի փրկութեան, և կշռեսցեն կորովութ̃ն իբրև ընդ-
յօդուածս զղահից ։ «Եւ հաստատեաց զբազուկս իմ
իբրև զաղեղն պղնձի » . զի մի՛ վաստակեսցին ՚ի ժամ
կոտորածոյ թշնամեացն ։ «Եւ ետուր ինձ զվահան
փրկութեան քո » . վասն զի յամենայն տեղի՝ յոր և
երթայր՝ յաղթէր ։ Եւ աջ քո ընկալցի զիս, և հզօ-
րացուսցէ զիս ՚ի ժամ պատերազմի, և խոնարհու-
թ̃իդ քո ուսուցանելով ուսուսցէ զիս, և մի՛ նուաղե-
ցայց, զի մի՛ պարտեցայց ։ Ընդարձակեցեր զգնացս
իմ ՚ի ստորև իմ, զի մի՛ գայթակղեսցին պճղունք իմ .
վասն զի բնակեցուցեր զիս ՚ի խաղաղութեան, և ոչ
շարժեցեր զհետս գնացից իմոց դողութ̃բ յերկիւղէ,
և զպարանոցս թշնամեաց իմոց փոխանակ երեսաց
իւրեանց դարձուցեր առ իս, և զատելիս իմ ՚ի ձեռն
սրոյն սուսերի սատակեցից զնոսա ։ Աղաղակեցին առ
տէր ՚ի ժամ հարուածոյն, և մի՛ լուիցէ նոցա ։ Ման-
րեցից զնոսա իբրև զհողմ . այս ինքն ցրուեցից զնոսա
իբրև զփոշի ընդ երեսս հողմոյ, իբրև զկաւ գուեհից
կոխեցից զդիակունս նոցա ։ Ապրեցուցես ՚ի Յովաբէ
և ՚ի յեղբարց նորա՝ որ դատաւորքն էին ժողովր-
դեանն ։ Բայց և ՚ի վերայ տեառն մերոյ կատարի
այս . զի պարտաւորեցին զնա անօրէնութ̃բ քահա-
նայքն և դատաւորք ժողովրդեանն ։ Արասցէ զիս
գլուխ, ոչ ազգաց, այլ հեթանոսաց . և ժողովուրդն

'ի հեթանոսաց՝ զոր ոչ գիտէի՝ պաշտեցեն զիս, և 'ի լուր ականջաց՝ իբրև ոչ տեսեալ զիս՝ լուիցեն ինձ։ Որդիքն օտարաց անթլփատից հնազանդեսցին ինձ, և սոքին իսկ դարձեալ արգելցին 'ի կամակոր շաւղացն իւրեանց առ կուռսն օտարոտիս։ Ած, որ ետ ինձ վրէժխնդրութի 'ի ժողովրդենէն, զի ցրուեցան ընդ ամենայն կողմանս երկրի, և հնազանդեաց զապըստամբեալ հեթանոսս ընդ ինև։ Ապրեցուցիչ իմ 'ի թշնամեաց իմոց. այս ինքն փրկիչ իմ 'ի դժոխոց և 'ի մահուանէ յարութթն յերրորդ աւուրն. և յայնոցիկ՝ ոյք յարուցեալ էին 'ի վերայ իմ կասեցուցանել լռեցուցանել զատելիս յարուէ կենաց, բարձր արարեր զիս։ Արդ վասն այսորիկ զոր ինչ արարեր, ես խոստովան եղէց և գոհացայց զքէն, ոչ 'ի ժողովրդեանն, այլ 'ի հեթանոսս. և անուան քում սաղմոս ասացից, յորդորիչ մեծացուցիչ 'ի հեթանոսս զփրկկութի թագաւորի իւրոյ, և առնել զողորմութիւն ընդ օծելոյն իւրոյ Դաւթի, այլ և ընդ զաւակի նորա՝ ուստի կարգեցաւ շղթայն արդարոց, և ծագեցաւ 'ի նմանէն արքայն Քրիստոս։

Այսոքիկ վերջին բանք Դաւթի. "Ասաց այր՝ որ կանգնեաց զլուծ օծելոյ իւրոյ". այս ինքն, զի պաշտեաց զպաշտօնն օծելութեան. և ած Յակովբայ, քաղցրացուցիչ երգոցն Իսրայէլի՝ որ եղ 'ի բերանոյ քումմէ։ "Հոգի տեառն խօսեցաւ յիս զոսա, և բրբան իւր եդ 'ի լեզուի իմում". այս ինքն՝ բարբառեաց 'ի լեզու իմ։ "Ցիս ասաց սկայազօրն Իսրայէլի, որ իշխէ 'ի մարդս արդարս". այս ինքն զի հանգչի 'ի մարդս արդարս։ "Քանզի լոյս առաւօտու ընդ ծագել արեգականն, որ իշխէ երկիւղն Աստուծոյ". այս ինքն որ կատարեալ է երկիւղիւն այ, նման է լուսոյն առաւօտու ընդ ծագել արեգական. և իբրև առաւօտ ընդ լուսանալ առանց ամպոյ սոյնպէս փայլէ, և իբրև անձրև՝ որ զարթուցանէ զերկիր, այսպէս զուարճանայ երկիւղիւն տեառն։ "Ոչ է այսպէս և ընդ այ". այս ինքն ոչ եթէ այսպէս գործեցի 'ի ժողովրդեանն այ և ուխտ աշխարհի. վասն զի ուխտն 'ի սկզբանէ՝ որ 'ի ժամանակաց Մովսիսին եդեալ առ-

ռաջի աչաց իմոց ։ Եւ պատրաստ է սիրտ իմ առ ամենայն ինչ, և պահեալ է յամենայն չարեաց. վասն զի ամենայն կամք իմ և ամենայն փրկութի իմ 'ի ծածուկս և յայտնիս՝ ինքն ա͞ծ կատարեալ գործովք և արդեամբք ։ Եւ անօրէնք իբրև փուշք չարափուշք՝ զի այրին 'ի հրոյ, կոտորեսցին ամենեքեան. վասն զի ոչ եթէ ձեռն մարդոյ կարէր ժողովել զամենայն ։ Նա և մշակն յորժամ մերձենայ առ նոսա մեղեխովն տապարի ժողովէ զնոսա, և ապա յետ այսորիկ այրին 'ի հուր բորբոքեալ ։ Յիշեաց Դաւիթ զԳեդէոնն, թէ զիարդ փորձեաց նա 'ի ջուրսն անդր զհաւատացեալսն. և կամեցաւ փորձել և Դաւիթ, եթէ արդարև իցեն և ընդ նմա հաւատացեալք ։ Եւ զի փորձեսցէ դարձեալ և զայս, թէ արդարև մատնեսցի բանակն այլազգեաց 'ի ձեռս նոցա ։

Խօսել սկսաւ Դաւիթ և ասէ. կամ էր ինձ եթէ տայր ոք ինձ ըմպել ջուր 'ի գբոյն մեծէ 'ի Բեթղեհեմ գեղջէ, ուր բանակեալ էին այլազգիքն ։ Եւ ծակեցին հսկայքն երեք արանցն զբանակն այլազգեացն, և բերին ջուր Դաւթի. և ոչ կամեցաւ ըմպել, և առ հեղ զջուրն առաջի տեառն հաւատոց ։ Եւ արդ ջրովն գբոյն՝ զոր հեղ առաջի տեառն, հաճել կամեցաւ զպարտսն ջուրցն՝ զոր գողացան և արբ ։

Եւ յաւել բարկութիւն տեառն զօրանալ յիսրայէլ. վասն զի նենգեցին 'ի վերայ Դաւթի յերթալն իւրեանց զկնի Աբեսողոմայ ։ Եւ վասն զի տեսին զաւակն Ահարոնի, զի թուեալ համարէին 'ի սպանումն մահու՝ և ոչ ապրեցուցին, գրգռէ ա͞ծ զԴաւիթ թուել համարել զնոսա, իբրև չէր գիտակ մարդամահին ։ Քանզի նման է այսպէս, եթէ նախ գրեաց զնոսա Դովէկ եդոմայեցի, և ապա սպան. զի գուցէ յանկարծ ուրեք ապրեսցի մի ոք 'ի նոցանէն 'ի պատժոցն պատուհասի ։ Եւ վասն զի կոտորած քահանայիցն 'ի պատճառս Դաւթի եղև, զի ընկալաւ զնա Ահիմելէք քահանայ, ասաց. "Զի եթէ ես մեղայ՝ զի թուեցի զնոսա, այս խաշն անմեղ զի՞ մեղաւ". իբրև զայն՝ զի ասաց ցորդին Ահիմելեքայ,

եթէ «Ես եմ՝ որ եղէ պարտ ամենայն հոգեաց տան հօր քո»։

Արդ այն զի ասաց ցնա Տր, թէ «Երթ թուեա և համարեա զժողովուրդն», իբրև զայն է՝ զի խնդրեցին նոքա ելանել 'ի մարտ պատերազմի 'ի վերայ Բենիամինի, և հրամայեցաւ նոցա յՏյ, և ելին և յաղթահարեցան։ Նա իբրև թուեաց զնոսա Դաւիթ, ասաց ցնա Տէր՝ թէ «Ջերիս չարիս ածեմ 'ի վերայ քո, ընտրեա դու քեզ»։ Եւ կամ զի յաճախեաց բազմացոյց զնոսա Տր իբրև զաւազ առ ափն ծովու, և իբրև զաստեղս երկնից, որպէս խոստացաւն. և նոքա ստեցին զուխտն զոր կացուցին։ Եւ իբրև թուէր համարէր զնոսա, և ցոյց նոցա՝ զի ոչ էր սուտ խոստումն նորա, ած 'ի վերայ նոցա զհարուածս մահու փոխարէն ըստ ուխտն անցանելոյ։ Եւ իբրև ետես Դաւիթ՝ եթէ սովն և գերութիւն առ հասարակ սատակէ զարիս և զչարս, ընտրեաց իւր՝ զի մարդամահիւն անկցի 'ի ձեռս Տյ։ Վասն զի գիտէր նա եթէ Տր արդարակշիռ ստուգութբն իւրով առ յանցաւորս անդր գումարէ զպատիժս պատուհասից. զի եթէ Դաւիթ էր մեղուցեալ, 'ի վերայ Դաւթի գային պատիժք պատուհասից։ Արդ եթէ Դաւիթ՝ որ թուեաց զժողովուրդն՝ ոչ առ գան, և ժողովուրդն՝ որ համարեցաւ՝ զօրացաւ 'ի նա մարդամահն, ո՞չ ահա յայտ եղև՝ եթէ վասն զի ոչ ապրեցուցին զքահանայսն 'ի մահուանէ, մատնեցան նոքա 'ի ձեռս մահու։ Բայց մեռան 'ի ժողովրդենէն մինչև ցվեց ժամն եւթանասուն հազար. և յայտ է՝ թէ այնոքիկ են որ յանցեանն յերկոսեան. այս ինքն զի ոչ ապրեցուցին զքահանայսն, և վասն զի հրապուրեցան 'ի հրապոյրս Աբիսողոմայ։

Իսկ Դաւիթ իբրև ետես՝ զի տարածեցաւ խառնեցաւ մարդամահն ընդ ժողովուրդն, և տալ զանձն իւր փոխանակ ժողովրդեանն փոքր է, հանդերձ անձամբն իւրով զոր ետ՝ յաւել ետ և զտուն հօր իւրոյ. զի նովաւ և տամբ հօր իւրոյ արգելցի մահն 'ի ժողովրդենէն։ Եւ եկն եհաս Գադ մարգարէ առ Դաւիթ և ասէ, զի շինեսցէ զսեղանն 'ի կալն Արա-

նայ 'ի տեղւոջ՝ ուր կայր հրեշտակն: Եւ գնեաց զտեղին և զեզինսն, և շինեաց սեղան տեառն, և մատոյց զողջակէզս: Եւ յայտնեցաւ տէր ողորմութք 'ի վերայ երկրին. և 'ի ձեռն պատարագացն Դաւթի արգելաւ մահն 'ի դառնացող ժողովրդենէ անտի:

## ԿԱՏԱՐԵՑԱՒ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՄՈՒԷԼԻ

# ՍՐԲՈՅՆ ԵՓՐԵՄԻ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

## Գ. ԵՒ Դ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ

# ՏԵԱՌՆ

# ԵՓՐԵՄԻ

## ԽՈՐԻՆ ԱՍՈՐՒՈՑ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

# ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ

ԳՊԱԳՐՈՒԹԻՒՆ Թագաւորաց գրէ զամս կենաց զՅուդայի և զԻսրայէլի. և զՄի առաքինութեցն զոր արարին արդարքն՝ որ էին 'ի նոսա. և վասն հեթանոսութեան զի նորոգեցին անօրէնքն՝ որ 'ի նոսա էին։

Սկսանի արդ այսուհետև և 'ի ծերութենէն Դաւթի, և գայ կարգաւ առ թագաւորութիւն Սողոմոնի։ Եւ վասն տաճարին զոր շինեաց, և իմաստութեան զոր ընկալաւ։

Գրէ և վասն հեթանոսութեան Աքաաբու. և վասն նախանձայոյզս լինելոյ Եղիայի և Եղիշայի։

Գրէ և վասն ելանելոյն Փուայ ասորեստանեայց՝ որ արկ հարկ 'ի վերայ ժողովրդեանն. և վասն ելանելոյն Թագղաթփաղասարու և Շաղմանասարու ասորեստանեայց, որ գերեաց նախ զտունն Հռուբէնի, և զնորին ընկերն զՇամրին։

Գրէ և վասն ելանելոյն արքային եգիպտացւոց, զի տարաւ իջոյց յԵգիպտոս զԱհովայ զարքայն հրէաստանի։

Գրէ և վասն Նաբուքոդոնոսորայ արքային աստ-

րեստանեայց, զի. ել և գերեաց զՅովակիմ արքայ և զԴանիէլ և զմնկերս իւր. և ել կրկին անգամ և գերեաց զՅեքոնիա և զԵզեկիէլ մարգարէ. և ել երրորդ անգամ և գերեաց զարքայն Սեդեկիա, և այրեաց զտունն սրբութեան, և հրձիգ արար զքաղաքն, և գերեաց զժողովուրդն։

Ո այսոսիկ և որ սոցին նման են, գրեալ են՚ի նմա։

# Ի ՍԿԻԶԲՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆՆ ԻՒՐՈՑ ԱՅՍՊԷՍ ԱՍԱՑ

## ԳԼՈՒԽ Ա

"Ծեր արքայն, ասէ, Դաւիթ ծերացաւ, զի անց զաւուրբք. և արկանէին զնովաւ զզգեստ, և ոչ ջեռնոյր": Վասն զի ծերուն որդի էր, կանխեաց ծերացաւ. և վասն զովութե մարմնոյն իւրոյ ոչ ջեռնոյր նա. և վասն զի բառնալ զծանրութի զզգեստուցն՝ որ ինչ պիտոյ և պատշաճ էին ցուրտ մարմնոյն՝ ոչ կարէր. հանդուրժել ծերութիւն նորա. և մնալ յզգեստուց անտի՝ եթէ ոչ զգենուցու, վասն ծերութեն իւրոյ զովութին որ ՚ի մարմինն նորա բնականայր՝ զանհնարին զցաւսն առ ՚ի բժշկութի նիւթեր մթերէր յանդամսն նորա. գտին զդիւրին հնարսն իմաստունք հմուտք բժշկութեն ջեռուցանել զցուրտ մարմինն արիւնաստակաւ ծերութեն ՚ի ձեռն ջերմեռանդն և արիւնաշատ կուսին, իբրև առեալ տային զհաւանութիս զպատ և ցածուն առն: Վասն՝ այնորիկ ոչ ասացին՝ եթէ ընտրեսցուք կոյս մի գեղեցիկ, այլ զի "Խնդրեսցուք, ասէ, տեառն մերում կոյս մի, զի կացցէ առաջի արքայի": Իբրև կալաւ յանձին՝ զի փորձեացին միտք նորա ՚ի փորձանս ցանկութե, զի արգելցէ զմարմինն իւր ՚ի ցաւոցն զովութեան:

Խնդրեցին մեծաւ փութով յամենայն սահմանացն Իսրայէլի աղջիկ մի գեղեցիկ, որպէս զի վասն գեղոյն նորա զեռասցի ցանկութիւնն ՚ի մարմինն Դաւթի. և ջերմեռանդն ցանկութեն ցուրտ զովութի ծերութեն ջեռասցի: Բայց ոչ գիտաց զնա արքայն. մի՝ զի մի կարօտասցի յայլ կոյս. և երկրորդ՝ զի կոյս գեղեցիկ աղջկամբն սիրովմացով, որ համապազ որբու-

թէ ննջէր 'ի լանջս նորա, զպարտամն Բերշաբեայ՝ այն որ միանգամն պղծութեան հաղորդեցաւ ընդ նմա՝ հաճեցէ ։

Եւ Ադոնիա եղբայրն Աբեսողոմայ ոչ խրատեցաւ անցիւքն որ ինչ անցք անցին ընդ եղբայր նորա. այլ սկսաւ սայթաքել ճարտարասոյզ բանիւքն խօսել ընդ Յովաբու և ընդ Աբիաթար քահանայի, զի թագաւորութիւն՝ որ պրծեաւ յեղբօրէն նորա՝ առցէ զնա 'ի ձեռն Յովաբու սպանողի եղբօր իւրոյ ։ Իսկ իբրև թագաւորեցուցին սոքա երկոքին զԱդոնիա 'ի պատճառս պատարագացն և խնկոցն, ընթացաւ եկն Նաթան մարգարէն և եցոյց Բերսաբեայ մօրն Սողոմոնի ։ Իբրև սկսաւ խրատել զնա՝ թէ որով իւիք արգելցուսցէ զանձն իւր և զորդին իւր 'ի մահուանէ, զի ձեռն Ադոնիայ սպառնայր նոցա, ուսոյց նմա զոր ինչ պարտ և պատշաճ էր ասել ցարքայն ։ Ետ նմա դարձեալ պատուէր յիշեցուցանել նմա զերդումն զժամանակին՝ իբրև գողացաւ զնա յառնէն իւրմէ, և կամ զժամուն՝ յորում գողացաւ և ինքն զնա 'ի կանանց անտի իւրոց, և երդմնեցոյց զնա ։

Մուտ Բերսաբեայ մեծափոյթ փութով շտապեալ տագնապեալ, և զծածուկ երդումն որ ընդ նորա և ընդ ա̃ծ պաշտեցաւ խրատուն մարգարէի յայտնապէս 'ի ժամուն զի թագաւորեցաւ Ադոնիա, բեր եդ 'ի միջի և յիշեցոյց նմա ։ Եւ մինչ դեռ մտեալ ցուցանէր՝ թէ ով են այն՝ որ զարքայն արհամարհեցին, և զի առանց խրատու նորա եառուն զթագաւորութիւնն ում և կամեցան, և մինչ դեռ կամէր ասել նա՝ եթէ յետ մահուն քո, արքայ, սպանանեն զիս և զորդեակն իմ, և ահա Նաթան մարգարէ եկն եմուտ, երկիր եպագ առաջի արքայի ։ Ակնարկելոյն Նաթանայ ել արտաքս Բերսաբէ, զի գուցէ թէ յանկարծ ուրեք զմտաւ ածիցէ և գիտասցէ Դաւիթ՝ թէ բանս ինչ եդին նոքա ընդ միմեանս, և մտին զկնի միմեանց ։

Իսկ իբրև պատմեաց Նաթան վասն պատարագացն Ադոնիայ և վասն մեծ հացին զոր արար Յովաբու սպարապետին և Աբիաթար քահանայի և որդւոցն

արքայի և զօրավարացն առ հասարակ, գազանացաւ Դաւիթ մեծաւ ցասմամբ, և հրամայեաց կոչել զԲերսաբէէ, և նորոգեաց զհին երդումն և ասաց. «Կենդանի է տէրանց տէր, այլ որպէս երդուայ քեզ 'ի ծածուկ, սոյնպէս արարից քեզ յայտնապէս. ոչ յետ ժամանակաց, այլ 'ի սմին աւուր իսկ»: Եւ փութացոյց Դաւիթ զՍադովկ քահանայ և զՆաթան մարգարէ և զԲանի որդի Յովիդեայ տանել օծանել զՍողոմոն 'ի Սելովա:

Իսկ իբրև արարին ծառայքն Դաւթի զհրաման նորա, որպէս և հրամայեաց նոցա, ազդ եղև և լուաւ Ադոնիա և հրաւիրեալքն իւր. և մինչ դեռ ճշմարտէին գիտել՝ եթէ արդարև իցէ, հար հռչակ խրախոյս փողոյ 'ի քաղաքի անդ: Անդ զոտս 'արձակեաց Նաթան որդի Աբիաթարու վասն հօրն իւրոյ, զի թագաւորեցոյց զԱդոնիա և զրոյց ետ վասն օծմանն Սաղոմոնի: Արդ փախեան ցրուեցան յերկիւղէ ամենայն հրաւիրեալքն Ադոնիայ. և նա անդէն դիմեալ մտանէր Ադոնիա առ սեղանն ա͞յ, և առնէր թիկունս ապաւինութեան զսեղանն ա͞յ: Արդ խնդրեաց Ադոնիա զերդումն 'ի Սողոմոնէ, և երդուաւ նմա ուխտիւ. զի եթէ եղիցի խորհրդակից միամիտ, մի մեռցի վասն առաջնոյն՝ որ կամեցաւ սպանանել զնա: Ապա թէ միւսանգամ դժխիմուէ թագաւորել կամիցի, յայտ է թէ սպանանել խընդրէր զնա, և զպատիժսն պատուհասից զոր ոչ ածի 'ի վերայ նորա, վասն երկրորդին մի կարասցէ ապրել 'ի նմանէն:

Արդ իբրև մեռաւ Դաւիթ, հրաման առեալ տայր կորուսանել 'ի թագաւորութենէ անտի զխռովիչս թագաւորուէ իւրոյ: Բայց նախ զայս հրաման տայր, իբրև Աբրահամ որդւոց իւրոց, պատուիրէր նա Սողոմոնի պահել զօրէնս տեառն, զի յաջողեացի նմա 'ի թագաւորութեան անդ զոր ընկալաւ, և զի մի պակասեսցի նմա զաւակ՝ որ կարգեալ կայցէ 'ի թագաւորուէ անդ: Ետ նմա հրաման դարձեալ և վասն Յովաբայ, այն՝ որ սպան նենգութբն իւրով զերկուս զօրավարսն զզօրագլուխսն Իսրայէլի: Եւ զի ամբարհաւաճեցաւ դարձեալ 'ի վերայ Դաւթի 'ի

ժամանակի՝ զի սուգ առեալ լայր 'ի վերայ Աբիսո-ղոմայ. և ասաց՝ թէ "Ի տէր երդուայ, զի եթէ ոչ ելցես խօսեսցիս ընդ ժողովրդեանն, եթէ մնասցէ ոք առ քեզ 'ի գիշերիս յայսմիկ" ։ Եւ հրաման դար-ձեալ և վասն Սեմեայ, զի թշնամանեաց զնա իբրև փախստեայն երթայր յերեսաց Աբիսողոմայ ։ Եւ զի ասաց ցՍողոմոն, եթէ "Արասջիր նմա ըստ իմաս-տութեան քում". վասն զի թէպէտ և արժան էր մե-ռանել նոցա, մինն՝ զի սպան զերկուս զօրագլուխսն՝ որ լաւն էին քան զնա, և միւսն ևս՝ զի թշնամա-նեաց զնա, և քարավէժ առնէր զարքայն, բայց սա-կայն յանցանօքն որսասջիր սպանանել զնա ստուգու-թեամբդ քով, որոց թողաւ առաջին յանցանք նո-ցա ողորմութեամբն հօր քո ։

Եւ զի ասաց վասն Դաւթի, եթէ "Թագաւորեաց 'ի Քեբրոն եւթն ամ". զերկուս ամս միայն զոր թա-գաւորեցաւ Աբեսող որդին Շաւուղի՝ թագաւորե-ցաւ 'ի նմա. բայց սակայն և զհինգ ամն զոր հալա-ծեաց զնա Շաւուղ, թագաւոր էր նա վասն օծմանն և հոգւոյն սրբոյ, յորմէ օրէ օծ զնա Սամուէլ, առ նմա էին ։

Իսկ Ադոնիա՝ այն որ առ Դաւթաւ կենդանեաւն երկնչէր նենգել զՍողոմոն եղբայր իւր, յետ մա-հուն Դաւթի խրատեցին զնա Յովաբ և Աբիաթար առնուլ զԱբիսակ կնութեան, որպէս զի բամբասանքն զոր առնու բարեխօսութեամբ մօրն Սողոմոնի՝ առցէ և զթագաւորութիւն Սողոմոնի ։ Իսկ իբր մտաւ խորա-մանգն առ միամիտ անդր, և ստեաց և ասաց, եթէ "Ինձ արժան էր թագաւորութիւնն, և զիս կամեցաւ ամենայն Իսրայէլ թէ եղէց թագաւոր", իբրև ոչ էր նմա անկ թագաւորութիւնն. վասն զի 'ի տեառնէ խոստացեալ էր Սողոմոնի, և ոչ Իսրայէլ իսկ կա-մէր ընդ նորա. վասն զի երկիրն պատառեցաւ 'ի բարբառոյ ուրախութեան Իսրայէլի իբրև զՍողոմոն թագաւորեցուցին ։

Իսկ իբրև խնդրեաց 'ի նմանէ զԱբիսակ շէլովմայ-եցի, և խոստացաւ յառակամիտ մտօք խնդրել և տալ նմա յարքայէ, անց մուտ մայրն արքայի առ ար-քայ ։ Արքայն իբրև ետես, ընդոստեաւ յարեաւ յա

թուոյն իւրմէ, երկիր եպագ նմա և նստաւ. քանզի
գիտէր՝ եթէ արեամբ մօրն գնեալ է զաթոռ թագա-
ւորութեան իւրոյ՝ որ 'ի տեառնէ պարգևեցաւ նմա:
Իսկ իբրև խնդրեաց նա յարքայէ՝ եթէ "Տուր զԱբի-
սակ Շիլովմայեցի Ադոնիայ եղբօր քում կնութեան",
ետ պատասխանի արքայ և ասէ ցնա. ընդէ՞ր խնդրե-
ցեր նմա կին միայն լոկ 'ի լոկոյ, և ոչ խնդրեցեր նմա
յայտնապէս զթագաւորութիւնս իմ՝ զոր կամեցաւ
առնուլ 'ի ծածուկ 'ի ձեռն կնոջ: Արդ վասն զի
խորհեցան Յովաբ և Աբիաթար զի 'ի ձեռն կնոջ
մարթասցեն առնուլ յինէն զթագաւորութիւնս զոր
ետ ինձ տէր, ո՛ն և ո՛ն արասցէ ինձ տէր, այլ յորում
աւուր խորհեցաւ թագաւորել, 'ի սմին մեռցի: Արդ
եղբայր նորա կամեցաւ սպանանել զհայր իւր թա-
գաւորութեանն հօր իւրոյ՝ զոր յափշտակեաց ա՛ռ 'ի նմա-
նէն. և սա կամի սպանանել զորդի Դաւթի 'ի ձեռն
թագաւորութեան՝ որ խորամանկի կորզել հանել յինէն:
Բայց ոչ սպան զԱբիաթար քահանայ, վասն զի ան-
արգեցաւ ընդ Դաւթի. այլ առաքեաց զնա Յա-
նաթովթ քահանայից վարել զբաժինս անդաստա-
նաց իւրոց, և կեալ 'ի նմանէն. և կատարեսցի յԱ-
բիաթար յազգէ Հեղեայ բանն Տեառն, զոր ասաց 'ի վե-
րայ տանն Հեղեայ վասն անօրէնութեան զոր գործե-
ցին որդիքն Հեղեայ:

Իսկ իբրև արար ապաւէն Յովաբ զսեղանն, գի-
տաց Սողոմոն զօրինացն՝ զի ասացեալ էր, թէ "Ա-
'ի սեղանոյ անտի իմմէ, վարեսջիր զսպանօղն 'ի մահ":
Եւ վասն այսորիկ սպան զնա 'ի տունն ապաւինութեան
իւրոյ: Իսկ իբրև սպանին այլ մեղք զՅովաբ, որպէս
և հրամանն ետ Դաւիթ, ապա գիտաց Սողոմոն ե-
թէ 'ի տեառնէ էր հրամանատուութիւն Դաւթի.
և վասն այնորիկ կոչեաց զՍեմէի և ասաց ցնա, զի
նստցի յԵրուսաղէմ 'ի տեղին սրբութեան և 'ի քա-
ղաքն արքայութեան, և զժառանգութիւն՝ որ հաս նմա
վիճակաւ: Եւ զի մի փղձկեսցին միտք նորա և նե-
ղեսցի, ետ նմա զկէս քաղաքին թաղել զմեռեալս
իւր: և զբօսնուլ յառողջութեան և 'ի հիւանդութեան
իւրում: Յանձն առ Սեմէի և ընկալաւ զբան հրա-
մանի նորա, և ուրախ եղև. վասն զի ետես՝ զի փո-

խամնակ մահուն, որում արժանին էր, արար նմա ա֊
ռաւել պատիւ՝ որում ոչն էր արժանի ։ Եւ վասն զի
տեառն եւ և զայս, որպէս և հրամայեաց նմա հայրն
իւր, յետ երից ամաց փախեան ծառայքն նորա ։
Արդ նայեաց և տես, զի եթէ ոչ տեառն յանձն ա֊
ռարեալ էր զիրսն Սեմեայ, ոչ լինէր նա երկայնամիտ
զերիս ամս, եթէ ոչ սպանանէր զնա ։ Իսկ Սեմէի
եթող գիտակ առնել և ցուցանել արքայի՝ զի առա֊
քեացէ թուղթս զկնի ծառայիցն նորա, և կամ զի
թէ առցէ 'ի նմանէ հրաման երթալ ածել զնոսա. և
ապա ապաստան յայն՝ եթէ ոչ գիտէ զայս արքայ, ար֊
համարհեաց զերդումն զոր երդուաւ՝ թէ "Մի անցցէ
նա ընդ ծործորն կեդրոնի", չոգաւ նա ածել զծա֊
ռայս իւր ։ Առաքեաց կոչեաց զնա արքայ, և յիշե֊
ցոյց նմա զառաջին վրէժսն զոր արար նա ընդ Դա֊
ւիթ. յիշեցոյց նմա և զերդումնն և զվերջին պա֊
տուիրանն զոր ետ նմա, և վասն ստութեն նորա՝ որ
ստեաց զերդումնն տեառն, և զի անարգեաց զհրա֊
մանն թագաւորի. իբրև արկ զսոսա զնոքօք, և խառ֊
նեաց 'ի մի վայր զերկոսին զյանցանսն, զստութիւն
երդման, և զանարգելոյ պատուիրանին, և զթշնա֊
մանս հօրն, սպան զնա ։ Եւ յայտ եղև ամենայն մար֊
դոյ՝ եթէ ստութիւնն մատնեաց զնա 'ի մահն
սուսերի ։

Ժողովուրդն զի մատուցանէին պատարագս յա֊
ւուրս Դաւթի և Սողոմոնի 'ի վերայ մեհենիցն, ոչ
եթէ այլում ոյ մատուցանէին զպատարագսն, այլ
տեառն. քանզի ողջակէզք էին՝ որ 'ի Գաբաւոնն և
'ի Թափչաց աղբիւրն շինեալ էին ։ Արդ այսոքիկ՝
վասն զի ցարդ ևս ոչ էր շինեալ տաճարն, մատու֊
ցանէր ժողովուրդն զպատարագս 'ի վերայ սոցա ։ Եւ
յայտնեցաւ տէր 'ի վերայ Սողոմոնի. և հարց զնա
եթէ զի՞նչ կամիս զի տաց քեզ ։ Եւ խնդրեաց 'ի նմա֊
նէն ոչ զհոգին սուրբ՝ մարգարէանալ, այլ իմաս֊
տութի՝ դատել զժողովուրդն. զի նովաւ խօսեցաւ
առակս և արկ զառասպելս մանկանց ժողովրդեանն
իւրոյ՝ որ մերձն էին առ նա, և դշխոյին հարաւոյ և
թագաւորացն ազգաց՝ որ հեռաւորն էին ։ Քանզի
որպէս ընդ դատավճիռ գատին պոռնկաց, սոյնպէս և

զարմացեալ էին որդիք մարդկան ընդ ամենայն դատաստանսն՝ որ դատէր նա ։

Բաժանեաց դարձեալ զերկիրն երկոտասան գաւառապետաց . զի վասն մեծ ծախուց ռոճկաց կանանց իւրոց , և բազում երիւարացն զոր ստացեալ ունէր , բաւեսցէ մի մի 'ի նոցանէն դարմանել զարքայ համքարօք իւրովք , և զկանայսն և զերիւարս և ըզգունդն սեփհական ռոճկակեր ամիս մի յամի ։ Արդ այր՝ որոյ հրամայեցաւ թէ մի յաճախեսցէ ստանալ իւր բազում երիւարս , քառասուն հազար ապաստանաց երիւարաց արար իւր . և որում ասացաւն եթէ մի դու և մի փեսայ լինիցիս քանանացւոցն , հազար կին յամենայն հեթանոսաց արար իւր ։ Յաճախեցաւ բազմացաւ իմաստութիւն Սողոմոնի առաւել քան զեգիպտացւոց խորամանկաց , և քան զԱթենայ արևելեաց , և քան զընկերաց նորա՝ որ յայն ժամանակի իմաստութեամբ պարծէին ։ Եւ խօսեցաւ երիս հազարս առակս , և հազար և հինգ օրհնութիւս . զոր առ հեղգութեան հրէիցն , կամ վասն գերութեանն՝ որ 'ի հեթանոսաց գերի երթային , կորուսին զբազումս . և սակաւ ինչ սոյն 'ի մնոյ յիշատակս փոյթ բարեկամացն Եզեկիայ արքայի 'ի հրէաստանի պահեցան ։ Եւ խօսեցաւ 'ի մայրիցն Լիբանանու և մինչև 'ի բուսուկ՝ որ բուսանիցի յորմ . այս ինքն զի սկսաւ ասել 'ի բարձրաբերձ մայրեացն 'ի սկզբանէ , և կատարեաց 'ի դալար մի՝ որ առ օրին բուսանի , և ելանէ 'ի դալարուտ պահանգի՝ որ արկեալ է յորմ ։

Յամին չորեքհարիւրորդի և ութսներորդի ելից ժողովրդեանն յեգիպտոսէ շինեաց Սողոմոն զտաճարն տեառն . որոյ երկայնութիւն վաթսուն կանգուն , և լայնութիւն քսան կանգուն , և բարձրութիւն երեսուն կանգուն ։ Եւ զի եւթանասուն հազար փայտակոփ , և ութսուն հազար քարակոփ 'ի լերինն , ինձ այսպէս թուի՝ եթէ զթիւ կաւագործին զոր հանին վասն շինուածոյ տաճարին՝ բաւանդակեաց և գրեաց գըրիչն ։ Արդ թէպէտ և բազմութեան դաստապետացն ոչ տայ մեզ ձեռն թուել , տեսցուք այլ և զայն ևս՝ եթէ դաստապետքն ոչ թուեցան . բայց տեսցուք և զայն , զի եթէ քար ուրագի և ամենայն անօթ եր-

կամ թէ ոչ բաժանեցաւ 'ի տաճարէն իբրև շինէր, այն իսկ է՝ եթէ մի ծածկեսցես զձեռն քո երկաթագործ-ծամբ 'ի վերայ քարանց սեղանոյն, զի մի պղծեսցես նոքօք: Անդէն 'ի լերինն անդ կոփէին կազմէին յօրի-նէին մածուցանէին ընդ միմեանս, և ապա գային բե-րէին և առանց երկաթոյ հանէին դնէին 'ի շինուածս տաճարին կարգել կազմել:

Որք կատարեցաւ տաճարն, և բերին քահանայքն զտապանակն կտակարանաց և զխորանն և զզարդու-թիւնս նորա և զերկուս տախտակսն Մովսիսի, և եդին 'ի մէջ նորա: Եւ իբրև ել քահանայն 'ի սրբու-թենէ անտի, եկն լցաւ տաճարն ամպով, որպէս և յայնմ աւուր՝ զի կանգնեցաւ խորանն ժամուն: Տէր, դու ասացեր բնականալ 'ի մէգ. զի՞ է ամպս այս զոր արկեր 'ի վերայ տանս այսորիկ, զոր պատուիրեցեր դու եթէ 'ի ձեռն իմ շինեսցի քեզ: Եւ մատոյց զաղօթս Սողոմոն վասն ժողովրդեանն և վասն աշխարհին, իբրև յիշատակեր զանէծսն որ գրեալ էին յօրէնսն՝ գալ 'ի վերայ այնոցիկ՝ որ անօրինեն, որպէս զի անց-ցեն 'ի նոցանէն վասն մեծ պաղատանացն՝ որ լինէր նոցա 'ի տաճարին յայնմիկ: Մատոյց դարձեալ ա-ղօթս և վասն օտարաց, զի նկարեսցի աղօթքն որդւոյ Դաւթի. խորհուրդ տեառն Դաւթի, որ հանդեր-ձեալ էր տալ հրաման՝ եթէ աղօթս մատուցէք 'ի վերայ թշնամեաց ձերոց:

Եւ մատոյց Սողոմոն պատարագս քսան և երկու հազար զուարակս, և հարիւր և քսան հազար խոյս: Արդ նման է այսպէս, եթէ զչորեքտասան աւուրս ամենայն մատոյց զպատարագս զայս: Յայտնեցաւ Տէր կրկին անգամ 'ի վերայ Սողոմոնի, և ուղղեաց և ա-եդ զհիմունս տաճարին 'ի վերայ արդարութեան շինո-ղացն. եթէ յորժամ դարձցին նոքա 'ի Տեառնէ, մատնեսցի և տաճարն 'ի կործանումն թշնամեաց իւ-րեանց:

Որք եղև, լուաւ դշխոյն հարաւոյ 'ի վաճառակա-նացն Սողոմոնի և Խիրամայ զլուր Սողոմոնի և զնորին իւրոյ, և կամեցաւ գալ բազում պարգևօք և պատարա-գօք յԵրուսաղէմ: Եւ իբրև եկն եհաս յԵրուսաղէմ, և ետես զամենայն ինչ զոր լուաւն, ետես և այլ ևս

բազումս՝ զոր ոչն էր լուեալ: Փորձեաց զնա հարցուածովքն իմաստութե, խոստովան եղև՝ զի վաւեր եղև նմա փորձն քան զլուրն: Ուրացաւ 'ի կռոցն ստաբոտուոցն. խոստովան եղև յամ և ասաց, եթէ վասն զի սիրեաց տէր զԻսրայէլ, և արար զքեզ արքայ՝ առնել զիրաւունս և զարդարութի առաջի նորա: Ետ դարձեալ զխունկս առ 'ի պատիւ այ՝ որում խոստովան եղև, և զոսկի և զականս պատուականս արքայի՝ յորոց համբաւն եկեալ էր: Ցերից քանքարաց՝ զի արար նա վահան մի, այս ինքն 'ի հինգ շանթ ոսկւոյ, և զի եդ զվահանսն յանտառաստանն նիզակաց, այս ինքն 'ի զինու տանն նիզակաց և վահանացն ոսկւոյ: Եւ ամենայն թագաւորք վասն իմաստութե նորա, պատարագօք իւրև 'ի հարկէ յամենայն կողմանց գային և պաշտէին զնա:

Եւ սիրեաց Սողոմոն զկանայս-բազումս օտարազգիս. և զդուստրն Փարաւոնի իբրև ած նա կնութե, ոչ ինչ եպերեաց նմա այ, վասն զի մի էր և ոչ ուրացոյց զնա. իսկ իբրև անկաւ զկնի բազմաց, որք հեթանոսացուցին զնա, եպերեաց զնա վասն այլոց բազմաց, և վասն առաջին դստերն Փարաւոնի զոր յառաջին ած կնութե: Արդ զի յաճախեաց արար զկանայսն 'ի դստերաց թագաւորաց և մեծամեծաց, որպէս զի 'ի ձեռն բազում որդւոցն որ լինէին նմա, և առնուն հարք իւրեանց և մնուցանեն 'ի թագաւորութեն իւրեանց, և թագաւորեցուսցեն զնոսա վասն սիրոյն որ առ Սողոմոն, և սփռեսցի ընդ աշխարհս թագաւորութիւն նորա: Արդ զթագաւորութիւնն տեառն Դաւթի, այն որ զգուշութբ սրբութբ տարածանել ընդ աշխարհս հանդերձեալ էր, որդւոյն Դաւթի սիրոյն բազում կանանց խորամանկեցաւ առնել զնա:

Արդ զկանայս զոր սիրեաց Սողոմոն, դարձուցացին զնա առաջի երեսաց տեառն, և հանին զնա յաչաց այ: Եւ փոխանակ թագաւորութեն զոր խորհեցաւ ընդ ամենայն ազգս տիրել, և ոչ զիւրոյ ժողովրդեանն ըմբռշխնեաց. զի ազգն Յուդայի միայն մնաց առ նմա. բայց ոչ եթէ վասն լկտութեն Սողոմոնի, այլ վասն երդմանն այ զոր երդուաւ հօրն Սողոմոնի:

Եւ զի խորհեցաւ՝ եթէ 'ի թագաւորել որդւոց նորա ընդ ամենայն կողմանս՝ յամենայն կողմանց խաղաղութիւն յաճախի առ նմա, խոստորելով իւրով յայ՝ անցոյց զանցոյց զխաղաղութիւնն զոր ունէր ։ Վասն զի Բերհդադ, որ թագաւորեցաւն 'ի Դամասկոս, եղև սատան Իսրայէլի զամենայն աւուրսն Սողովմոնի ։

Պատառեաց Աքիա մարգարէ զնոր զգեստն իւր յերկոտասան պատառս. խորհուրդ ժողովրդեանն, որ նորոգապէս բաժանէին ազգ նոցա յերկուս թագաւորութիւնս ։ Խոստացաւ զթագաւորութիւն Յորոբովամու ուխտիւ. զի եթէ արդարանայ իբրև զԴաւիթ, կարգեալ հաստատի թագաւորութիւն նորա. ապա եթէ խոտորեսցի, եղիցի նմա ընդդէմ տերն չար հակառակ ։ Եւ այլ պատգամք Սողովմոնի ահա գրեալ են 'ի դպրութի պատգամաց Սողովմոնի, այս ինքն 'ի դպրութի աւուրց նորա՝ որ կորեանն ։

## ԳԼՈՒԽ Բ

ԹԱԳԱՒՈՐԵՑՈՒՑԻՆ ժողովուրդն զՀռոբովամ, և ասեն ցնա. "Թեթևացո մեզ 'ի խիստ հնազանդութէ հօր քո, զի հնազանդեաց զմեզ 'ի հարկս չարաչարս և մեծամեծս, և պաշտեսցուք զքեզ"։ Այդինքն փոխանակ զի մխիթարեսցէ զժողովուրդն 'ի չարեաց անտի, զի 'ի պատճառս եւթն հարիւր տիկնացն, և քառասուն հազար ասպաստանին հնազանդեցոյց զնոսա, նա առ յաւել նոցա ցաւ 'ի ցաւոյ վերայ. զի կրկնապատիկ քան զհարկսն հօր իւրոյ խոստանայր 'ի վերայ նոցա՝ թէ հնազանդեմ զձեզ. պարանովքն, որ են իբրև զաղի կակուղ զոր ընուն աւազով, սպառնայր նոցա՝ եթէ խրատէ զնոսա. զի վասն այսորիկ եղև գրգռութիւն, և ապստամբեցաւ Իսրայէլ 'ի տանէն Դաւթի, որպէս և ասացն Աքիա մարգարէ ։

Իսկ Յորոբովամ թող 'ի բաց զի կատարեսցէ ըղձումն մարգարէին որ օծն զնա. և չօգաւ զկնի խորամանգութեն իւրոյ ։ Յարեաւ արար նա երկուս որթա-

գլուխս ձուլածոյս, և զետեղեաց զժողովուրդն առ նոսա. զի գուցէ եթէ իբրև ելանիցէ ժողովուրդն յԵրուսաղէմ 'ի պատճառս պատարագացն և տօնից, տեսանիցեն զկազմուած գեղեցիկ յօրինեալ տաճարին, և զսպաս պաշտամանն քահանայից, և կակղանայցէ և հնազանդեալ խօսել ընդ նոսա զբանս բարուոքս, և դառնայցեն առ տէրն իւրեանց, և սպանանիցեն զիս: Խորամանկի արդ աւասիկ դարձուցանել յայ, որ ետ նմա զթագաւորութին ժողովրդեանն. և պատուիրեաց նմա զի մի՛ խոտորեսցին 'ի նմանէն: Եւ առ արար ոչ մի որթագլուխ իբրև զայն յանապատին, այլ երկուս. վասն զի ետես զժողովուրդն զի փոխանակ միոյն զոր արար Ահարոն, նոքա բազմաց երգէին և գովէին: Հնարեցաւ արար երկուս, և տարաւ եդ զմինն 'ի Բեթէլ, և զմիւսն 'ի Դան: Եւ ասէ ցնոսա, եթէ "Մի՛ ինչ աշխատիք դուք յամենայն կողմանց երթալ մատուցանել պատարագ յԵրուսաղէմ. երկիրս ամենայն երկիր պարգևաց է. և յամենայն վայրի ուր և մատուցանեմք պատարագ, յօրհնեալ երկրի մատուցանեմք": Եղև դարձեալ և քուրմ աստուածոցն զոր ձուլեացն:

Եւ մինչ դեռ ելանէր դնել զխունկս 'ի վերայ սեղանոյն, և ահա մարգարէ այ եկն 'ի Հրէաստանէ, և ասէ ցսեղանն յանուն տեառն, եթէ որդի ծնանի 'ի տանէն Դաւթի, այն որ հրաժարեցաւ ժողովուրդն 'ի թագաւորութենէն նոցա: Եւ սեղանն՝ որ համարեցաւ ձեզ՝ եթէ 'ի պատճառս դորա ըմբոշխնէք դուք զթագաւորութիւնդ ձեր, Յովսիա՝ որ 'ի տանէն Դաւթի է, այրեսցէ 'ի վերայ քո, և զքուրմս մեհենիցդ որք դնեն խունկս 'ի վերայ քո: Եւ զի տացի նշան յառաջ քան զգործն, և զի ցուցցէ նոցա եթէ 'ի տեառնէ առաքեցաւ դարձուցանել զնոսա առ իւր յերկրպագութէ որթագլխացն, խօսել սկսաւ և ասէ, թէ ահաւասիկ սեղանն պատառի 'ի ներքոյ Յերոբովամայ, իբրև կայ և վարի մոխիրն՝ որ 'ի վերայ նորայն էր: Վառեցաւ ցասմամբ արքայն 'ի վերայ մարգարէին, վասն այսորիկ՝ զի յանդիման ամենայն Իսրայէլի մարգարէացաւ 'ի վերայ քրմացն և 'ի վերայ սեղանոյն: Դարձաւ և ասէ. "Հապա կալարուք

զդա,,։ Յաւելաւ միւս եւս նշան ժողովրդեանն և ար-
քային . զի զբազուկն զոր ձգեաց 'ի նա , անդէն ցա-
մաքեցաւ , և յինքն այլ ոչ կարաց տանել զնա ։

Իսկ իբրև սեղանն պատառեցաւ , և ձեռն նորա ցամաքեցաւ , դարձաւ աղաչել մարգարէին՝ զի խնդրեսցէ յա̃յ վասն ձեռին նորա , և դարձցի 'ի տեղի իւր ։ Եւ զոր օրինակ կաց յաղօթս Եղիա 'ի լերինն անդ Կարմեղա վասն իջանելոյն անձրևոյ յանդիման ամենայն ժողովրդեանն , զի գիտասցեն եթէ աղօթք նորա իջուցանեն զանձրև , և ոչ եթէ Բահաղ . սոյնպէս եկաց յաղօթս և մարգարէն՝ որ եկեալն էր 'ի Հրէաստանէ առաջի սեղանոյն յանդիման ամենայն ժողովրդեանն ։ Զի հաւատասցեն եթէ ա̃ծ ցամաքեցոյց զբազուկ նորա և ողջացոյց , և ոչ եթէ որթագլուխքն՝ որոց նուիրէրն ։ Նա և ինքն իսկ գիտաց եթէ չիք իսկ շահ յորթագլուխս նորա . և վասն այնորիկ խնդրեաց նա 'ի ձեռն մարգարէին 'ի ճշմարիտ ա̃յ զբժշկութի̃ ցամաքեալ բազկին իւրում ։

Իսկ իբրև բժշկեցաւ արքայն , փոխանակ զի խոստովան եղիցի ամենայն Իսրայէլ եթէ տէր է ա̃ծ , և ինքն դարձեալ Յորոբովամ՝ զի բեկցէ զորթագլուխսն զոր ձուլեաց , ասաց ցմարգարէն որ բժշկեաց զնա .“Եկ ընդ իս 'ի տուն , և կեր հաց , և տաց քեզ պարգևս,,։ Եւ վասն զի բարկութի̃ առաքեցաւ նա անդ , և վասն զի ամենայն զոր ինչ և էր անդ զոր պատրաստեալ տօնին պատկերացն ձուլածոյ , պիղծ էր առաւել վասն զի պատրաստեցաւ նա . իբրև եցոյց զբարկութիւն որ գալոց էր 'ի վերայ աշխարհի . և զի հրաման առ 'ի նմանէն զի մի̃ կերիցէ անդ հաց. բայց թող զնոսա և ընդ այլ ճանապարհ անց երթալ յաշխարհ իւր ։

Արդ եկեալ որդիք մարգարէին որ 'ի Բեթէլ , պատմէին հօրն իւրեանց զամենայն անցսն որ ինչ անցք անցին ընդ սեղանն և ընդ արքայն , և զամենայն խօսսն զոր խօսեցաւ որ ինչ լինելոցն իցէ քրմաց սեղանոյն 'ի վերայ նորին սեղանոյն ։ Եւ արդ յարուցեալ ճեպ 'ի ճեպս ալևոր մարգարէն հանդերձէր զգրաստ իւր , և փնդէր զկնի մարգարէին ա̃յ , և ժամանէր նմա իբրև երթեալ նստէր ընդ բևեկնաւ

միով. և այն իսկ այս, զի արգել զգրաստ իւր և անդ նստաւ, խնդիր ինչ գոյ 'ի նմա. զի եթէ յուղէ արգելաւ, մինչև եկեսցէ մարգարէն ալևոր զի փորձեսցի նովաւ. և վասն զի թագուցք անցանէին ընդ այն ճանապարհ իբրև 'ի վաճառի աւուր: Իսկ իբրև եգիտ զմարգարէն և ուսաւ 'ի նմանէն, եթէ արդարև նա ինքն է, վասն զի թուեցաւ նմա եթէ վասն հեթանոսութեան որ էր 'ի Բեթէլ ոչ կամեցաւ ուտել անդ հաց, մատուցեալ տայր նմա զհաւանութիւնս, զի դարձցի ընդ նմա և հանգուսցէ զնա հացիւ և ջրով: Իսկ իբրև յաւել երկրորդեաց ալևորին զոր ինչ ասաց ցարքայն Յորոբովամ, ետ նմա պատասխանի՝ և ասէ ցնա. “Ես ինձէն մարգարէ եմ իբրև զքեզ, և հրեշտակ տեառն ասաց ցիս զի դարձուցից զքեզ”:

Իսկ մարգարէն որ եկեալ էր 'ի Հրէաստանէ, փոխանակ զի պահանջեսցէ նշան ինչ յալևոր մարգարէէն, ոչ զի թէ մարգարէ էր և կամ չէր մարգարէ, քանզի լուեալ էր նորա եթէ մարգարէ գոյ 'ի Բեթէլ, այն զի բազում որդւոց մարգարէից յետ այսորիկ՝ որ եղև 'ի նմա, այլ զի գիտասցէ 'ի ձեռն նշանին եթէ արդարև ճշմարիտ 'ի տեառնէ առաքեցաւ. և կամ թէ ինքն իսկ նոյն մարգարէն՝ որ եկեալ էր 'ի Հրէաստանէ՝ հարցցէ ցա̃ծ, եթէ արդարև նա՞ առաքեաց զալևոր մարգարէն թէ ոչ. արդ ոչ նշան ինչ խնդրեաց, և ոչ յա̃յ եհարց. և յարեաւ դարձաւ ընդ ճանապարհն ընդ որ երթեալն էր, այնու՝ զի վասն սորին իսկ իրի առեալ էր նորա զհրաման, զի մի՛ դարձցի ընդ նոյն ճանապարհ ընդ որ եկեալն էր:

Իսկ իբրև դարձաւ ընդ ալևորին և եմուտ 'ի տուն նորա, և իբրև կերան և արբին, մինչդեռ 'ի հացի անդ էին՝ եղև պատգամ տեառն 'ի վերայ ալևոր մարգարէին և ասէ, թէ “Վասն զի դառնացուցեր դու զբան բերանոյ տեառն, մի՛ մտցէ դիակ քո 'ի գերեզման հարց քոց”: Եւ վասն զի ոչ ցոյց՝ եթէ յորում աւուր մեռանիցի, և ոչ եթէ ե՛րբ, և կամ թէ ու՞ր մեռանիցի, յարեաւ նստաւ 'ի գրաստու իւրում, և դարձաւ 'ի Հրէաստան: Եւ մինչդեռ գնացեալ երթայր ընդ աներկիւղ ապահով ճանապարհն բազմախիտ ընդ խճա

զեալ մարդկան՝ որ խաղացեալն գնային 'ի վաճառուէ անտի, և իբրև այն ինչ զի եթէ երկիրն ծնաւ 'ի նմին ժամու զառեւծն, և իբրև զանց առեալ խուսէր յամենայն մարդկանէն և 'ի նմին մարգարէին գրաստուէն, և սպանանէր զմարգարէն միայն միայնուկ: Իսկ իբրև տեսին որք եկին դէպ եղեն և պատահեցան, զահի հարեալ երկնչէին յառեւծուէ անտի, զի զգուշացեալ պահէր զմարգարէն: Նոքա եկեալ ցուցանէին 'ի քաղաքի անդ:

Այլ իբրև զայն լուեր ալևոր մարգարէն, որ նենգեացն զնա և խաբեաց և անցոյց զպատուիրանաւն, ճեպ 'ի ճեպոյ գայր հասանէր 'ի տեղի անդր: Եւ փոխանակ զի ինքն երկեաւ առաւել քան զամենայն մարդ, վասն զի եղև պատճառ մահու մարգարէին, ինքն միայն միայնուկ իբրև վստահ ոք որ զանձինն գիտիցէ, եկն մերձեցաւ առ առեւծն գազան՝ գազանասիրտն: Իսկ առեւծն դարձեալ, որ սպան զմարգարէն՝ որ անց զպատուիրանաւն, և կայր պահէր զգրաստն, իսկ 'ի մարգարէէն՝ որ պատճառն էր պատուիրանազանցութեան մարգարէին՝ ամաչեցեալ պատկառէր. և զդիակն զոր ոչ կալաւ յանձին տալ ամենայն անցաւորաց ճանապարհին, սմա իբրև տեսան առեալ զաւանդն դարձուցանէր անդրէն: Կորացեալ արկանէր զակն իւր յալևորէ անտի, զի մի երկեցուսցէ զնա. և հաւանեալ տայր զդի մարգարէին ցմարգարէն 'ի թաղել. և 'ի շէն տեղւոյ անտի՝ ուր եբեկ զմարգարէն, փոյթ 'ի փութոյ ճեպեալ երթայր վաղվաղակի 'ի դաշտ անդր անապատ 'ի կայանսն առաջինս: Բայց մարգարէն ալևոր լաց զընկերն իւր, և թաղեաց զնա յիւրում գերեզմանի: Եւ արդ առեալ տայր պատուէր որդւոցն իւրոց, զի առ ոսկերսն նորա դիցեն զոսկերս ալևորին. վասն զի հաստատ լինելոց է պատգամն տեառն 'ի վերայ սեղանոյն 'ի Բեթէլ, և 'ի վերայ ապարանիցն, և 'ի վերայ մեհենիցն՝ որ 'ի քաղաքին Շամրինի են:

Արդ թէպէտ և 'ի վերայ սեղանոյն՝ որ 'ի Բեթէլն էր՝ մարգարէացաւ մարգարէն՝ որ 'ի Հրէաստանէն եկեալն էր, բայց սակայն 'ի վերայ մեհենիցն և ապարանիցն Շամրինի ոչ մարգարէացաւ նա: Քանզի

յայնմանէն զի ասաց՝ թէ ապրեցուցին ոսկերքն մարգարէին՝ որ եկեալն էր 'ի Հրէաստանէ՝ զոսկերս մարգարէին՝ որ եկն 'ի Շամրինէն, յայտ է՝ եթէ ինքն մարգարէս այս ալեւոր զի 'ի Շամրինէ եկն 'ի Բեթէլ, և նա ինքն մարգարէացաւ 'ի վերայ ապարանիցն և քաղաքին շամրտացւոց։ Եւ վասն զի յանգէտս հեզութն դարձոյց զնա, եթէ եպերեալ է՝ և եթէ ոչ է եպերեալ, զայս ոչ գիտեմք մեք. տաց՝ թէպէտ և համարեսցուք եթէ եպերեալ է. վասն եպերանացն նորա զի ոչ վկայեն մեզ գիրք՝ առնուլ 'ի նմանէն ըզմարգարէութիւն նորա՝ զորմէ վկայեն նմա գիրք, ոչ կարեմք մեք գիտել։

Յետ այսորիկ անկեալ դնէր յախտն մեծ Աբիա որդին Յորոբովամու. և առաքեաց զկինն իւր գիտել ճշմարտել 'ի մարգարէէ անտի որ օծն զնա՝ զինչ անցք անցանելոց իցեն ընդ հիւանդ որդին նորա, զի անկեալ դնէր 'ի մեծ ախտի։ Եւ վասն զի անարգեաց նա զքուրմսն և զմարգարէսն ձուլածոյ որթուցն, և 'ի ճշմարիտ մարգարէէ անտի առաքեաց ուսանել գիտել ճշմարտել, վասն այսր միոյ բանի՝ զոր հրամայեաց կնոջն իւրում, և եմուտ դի պատանեկին 'ի գերեզման։ Քանզի ամենայն որ և կոտորեցաւ Յորոբովամու 'ի ձեռն Բաասայու, շունք և թռչունք կերան զնոսա. բայց կոտորեցաւ և տունն Բաասայու 'ի ձեռն Զամբրեայ։ Եւ թագաւորեցաւ զկնի նորա Զամբրի, այն՝ որ շինեացն զՇամրին 'ի լեառն Շեմերեայ։

Եւ թագաւորեցաւ դարձեալ Ասաբ որդին իւր ըստ նմանէն։ Եւ վասն զի փոքր թուէր յաչս նորա երկիր պագանելն ձուլածոյ որթուցն Յորոբովամայ, յարեաւ նորոգեաց ինքն առանձինն զԲահաղ, և շինեաց Բահաղու բագին 'ի Շամրին, և շինեաց զտեղի անիծիցն Յեսուայ զԵրիքով։ Բայց կարի վասն այսորիկ առաւել շինեաց զնա, զի ցուցցէ եթէ չիք ինչ շահ յանէծսն Յեսուայ։ Եւ վասն զի այպանեաց զբանն Մովսիսի՝ զոր ասաց, “Զի եթէ մեղիցէք տեառն., արարից զերկինս 'ի վերուստ երկաթ, և զերկիրս 'ի ներքուստ պղինձ,,. և ասաց՝ զոր օրինակ ոչ եղև բանն Մովսիսի, նոյնպէս և ոչ լինի բանն Յեսու-

վայ աշակերտին նորա, քննախնդիր նախանձայոյզ լինէր Եղիա, և ձեռն յանձին հարեալ սկսաւ ասել առաջի Ախաբու և նախարարացն նորա, եթէ «Կենդանի է տէրանց տէր՝ որոյ առաջի կացի ես մարգարէ, եթէ եղիցի յայսոսիկ ամս ցօղ և կամ թէ անձրև, բայց եթէ ասացից ես»:

Արդ 'ի ժամուն զի ասաց զայս, երկինք ամպով ծուպ 'ի ծուպ ծաւլացեալ կայր. քանզի ոչ եթէ յամարանի կապէր զերկինս յանձրևոյ, այլ 'ի ժամ անձրևուն արգելոյր զերկինս յանձրևոյ: Արդ ամպքըն առաջի բանին նորա մատուցեալ անգրիձէին ըզխոնաւալից ստորոտս իւրեանց, և յոչ ինչ՝ ուստի եկեալն էին՝ դէտ արարեալ դառնային: Արդ ամպն որ փարատեցաւն 'ի նոցանէն 'ի բանէն Եղիայի առաջի դրանն Շամրնի, ոչ տեսին զնա մինչև եկն Եղիա 'ի լեառն Կարմեղա: Եւ վասն զի մի սպանցէ զնա Ախաբ իբրև գտցէ զնա, և կամ թէ երկինք ոչ բանայցեն զկապեալ արգանդն աւ 'ի տալ անձրևոց, և կամ թէ բանն Եղիայի զոր ասաց՝ թէ մինչև ասացից ես՝ սուտ լինիցի, առնու դնէ զնա 'ի ձորն առաջի Յորդանանու 'ի դարանի, և տայ նմա հրաման ըմպել 'ի ջուրց նուաղելոց. 'ի ձորոյն ծարծորակի մի արբցէ, գուցէ գտանիցէ զնա ամպարիշտ և անօրէն թագաւորուհին՝ որ 'ի խնդիրն անկեալ էր խնդրել զնա:

Իսկ զհացն և զմիսն՝ զի հրամայեաց ագռաւուցն բերել նմա, կամ 'ի տեղւոջ ուրեք լինելով լինէին և առնուին բերէին նմա, կամ իբրև թռչէին գալ առ նա 'ի ժամ ճաշոյն և ընթրեացն՝ լինէր 'ի բերանս միոյն հաց, և 'ի բերան միւսոյն ես միս. քանզի ոչ եթէ ոմանք պատրաստէին ագռաւուցն. վասն զի ոչ ասաց եթէ քահանայիցն հրամայեցի և կամ այլոց մարդոց կերակրել զքեզ, այլ զի հրամայեցի ես ագռաւուցն կերակրել զքեզ: Առեալ բերէր նմա ագռաւուն զմիսն, և ոչ մերձենայր 'ի նա. և բարձեալ ունէր ընկեր նորա զհացն, և ոչ կրծոյր 'ի նմանէն:

Իսկ Եղիա՝ որ նախանձեցաւ զնախանձ օրինացն Մովսիսի, նա ինքն իսկ եղև լուծիչ օրինացն նորա. քանզի յագռաւուց՝ որ պղծեալն էր յօրինաց՝ ուտէր Եղիա նախանձայոյզ քննախնդիր օրինացն: Պիղծ

ագռաւք դարմանիչք մարգարէին խորհուրդ եղեն պեղծ հեթանոսացն մկրտութեան ջուրց աւազանին : Եւ փոխանակ հայհոյութեան առեալ տանին զօրհնութիւնս այ . և ագռաւք դարմանիչք մարգարէին 'ի մարգարէէ անտի կերակրէին նոքա , զի 'ի նշխարաց նորա ճաշոյն և ընթրեացն կերակրէին նոքա : Դարմանիչք եղեալ էին նորա , և առ 'ի զբօսանս համարեալ էին նմա . զի յորժամ դնէին առաջի նորա՝ ուտէր , ուտէին և նոքա : Իսկ իբրև ոչ գիտաց նախանձայոյզ մարգարէն վասն անօրէնութեան Իսրայէլի զտառապանսն Իսրայէլի , ցամաքեցոյց ած զաղբերս ծործորակի . և ընդ ցամաքել աղբերականն , և կերակուրն ագռաւուց՝ զոր բերէին՝ արգելաւ 'ի նմանէն : Քանզի զի՞նչ պիտոյ էր առանց ջուրցն . զի աւելի իմն համարեալ էր նմա առանց ըմպելոյն :

Եւ զի մի իբրև թաքուցեալ կայցէ 'ի ժողովըրդեանն՝ դտանիցէ զնա ձեռն Եզաբէլի , և կորուսանիցէ զնա և առ որս թաքուցեալն էր , առաքէ զնա ած 'ի Սարեփթա հեթանոսաց , զի ցուցցէ նմա զսէրն հեթանոսաց . և ցուցցէ նմա դարձեալ՝ թէ յորպիսի նեղութեան տագնապեալ են անթլփատքն , որք ոչն այպանեցին զօրէնսն Մովսիսի իբրև զԱխաաբ : "Անց երթ , ասէ , 'ի Սարեփթա . ահա հրամայեցի ես կնոջ այրւոյ կերակրել զքեզ" : Արդ թէպէտ և 'ի Սարփաթ հեթանոսաց երթայր՝ հարցանել և գիտել մարթ էր նմա , 'ի վերայ այրւոյն՝ զոր ոչ ցոյց նմա զանունն՝ զիա՞րդ մարթ էր նա կալ : Եւ վասն զի ասաց ցնա՝ եթէ "Ահա հրամայեցի ես այրւոյն" , թուեցաւ նմա եթէ նոյն ինքն այրին ելեալ նստիցի 'ի դրացն Սարեփթու , և դէտակն ունիցի նմա :

Բայց վասն զի մի՛ թեթևասցի ծանրութիւն նորա՝ յորժամ մատուցեալ հարցանիցէ զայրւոյ կնոջէ անտի Սարեփթացւոյ , խնդրեաց 'ի տեառնէ իւրմէ զի գտցէ զնա առ դրանն քաղաքի , զայն՝ զոր յայտնութե՛ և կամ տեսլեամբ հրամայեցաւ նմա կերակրել զմարգարէն այ : Քանզի իբրև խաղացեալ երթայր նա , իբրև առ մեծատունս կին երթայր : Քանզի իբրև եգիտ զնա զի փնայր փայտ , և զգեցեալ էր թամբառակ մի , և քաղէր կրկուռս , և նման էր նա 'ի քաղցէ անտի

խանակ մահուն, որում արժանին էր, արար նմա առ ուածել պատիւ՝ որում ոչն էր արժանի։ Եւ վասն զի տեառն եւ և զայս, որպէս և հրամայեաց նմա հայրն իւր, յետ երից ամաց փախեան ծառայքն նորա։ Արդ նայեաց և տես, զի եթէ ոչ տեառն յանձն առ բարեալ էր զերդմն Սեմեայ, ոչ լինէր նա երկայնամիտ զերիս ամս, եթէ ոչ սպանանէր զնա։ Իսկ Սեմէի եթող գիտակ առնել և ցուցանել արքայի՝ զի առաքեսցէ թուղթս զկնի ծառայիցն նորա, և կամ զի թէ առցէ 'ի նմանէ հրաման երթալ ածել զնոսա. և ապա ապաստան յայն՝ եթէ ոչ գիտէ զայս արքայ, արհամարհեաց զերդումն զոր երդուաւ՝ թէ "Մի՛ անցցէ նա ընդ ծործորն Կեդրոնի", չոգաւ նա ածել զծառայս իւր։ Առաքեաց կոչեաց զնա արքայ, և յիշեցոյց նմա զառաջին վրէժսն զոր արար նա ընդ Դաւիթ. յիշեցոյց նմա և զերդումն և զվերջին պատուիրանն զոր ետ նմա, և վասն ստութեան նորա՝ որ ստեաց զերդումն տեառն, և զի անարգեաց զհրամանն թագաւորի. իբրև արկ զսոսա զնոքօք, և խառնեաց 'ի մի վայր զերկոսին դյանցանսն, զստութիւն երդման, և զանարգելոյ պատուիրանին, և զթշնամանս հօրն, սպան զնա։ Եւ յայտ եղև ամենայն մարդոյ՝ եթէ ստուգութիւնն մատնեաց զնա 'ի մահն սուսերի։

Ժողովուրդն զի մատուցանէին պատարագս յաւուրս Դաւթի և Սողոմոնի 'ի վերայ մեհենիցն, ոչ եթէ այլում ո̃յ մատուցանէին զպատարագսն, այլ տեառն. քանզի ողջակէզք էին՝ որ 'ի Գաբաւոնն և 'ի Թափչաց աղբիւրն շինեալ էին։ Արդ այսօրէնք՝ վասն զի ցարդ ևս ոչ էր շինեալ տաճարն, մատուցանէր ժողովուրդն զպատարագս 'ի վերայ սոցա։ Եւ յայտնեցաւ տէր 'ի վերայ Սողոմոնի, և հարց զնա եթէ զի՞նչ կամիս զի տաց քեզ։ Եւ խնդրեաց 'ի նմանէն ոչ զՀոգին սուրբ՝ մարգարէանալ, այլ իմաստութի՛ դատել զժողովուրդն. զի նովաւ խօսեցաւ առակս և արկ զառասպելս մանկանց ժողովրդեանն իւրոյ՝ որ մերձն էին առ նա, և դշխոյին հարաւոյ և թագաւորացն ազգաց՝ որ հեռաւորն էին։ Քանզի որպէս ընդ դատավճիռ դատին պոռնկաց, այնպէս և

զարմացեալ էին որդիք մարդկան ընդ ամենայն դատաստանսն՝ որ դատէր նա ։

Բաժանեաց դարձեալ զերկիրն երկոտասան գաւառապետաց. զի վասն մեծ ծախուց ռոճկաց կանանց իւրոց, և բազում երիւարացն զոր ստացեալ ունէր, բաւեսցէ մի մի 'ի նոցանէն դարմանել զարքայ համբարօք իւրովք, և զկանայսն և զերիւարս և ըն-գունդն սեփհական ռոճկակեր ամիս մի յամի ։ Արդ այր՝ որոյ հրամայեցաւ թէ մի յաճախեսցէ ստանալ իւր բազում երիւարս, քառասուն հազար ամպատանաց երիւարաց արար իւր. և որում ասացաւն եթէ մի դու և մի փեսայ լինիցիս քանանացւոցն, հազար կին յամենայն հեթանոսաց արար իւր ։ Յաճախեցաւ բազմացաւ իմաստութիւն Սողոմոնի առաւել քան զեգիպտացւոց խորամանկաց, և քան զԱթենայ արևելեաց, և քան զընկերաց նորա՝ որ յայն ժամանակի իմաստութեամբ պարծէին ։ Եւ խօսեցաւ երիս հազարս առակս, և հազար և հինգ օրհնութիւս. զոր առ հեղգութեան Հրէիցն, կամ վասն գերութեանն՝ որ 'ի հեթանոսաց գերի երթային, կորուսին զբազումս. և սակաւ ինչ սին 'ի մնոյ յիշատակս փոյթ բարեկամացն Եզեկիայ արքայի 'ի հրէաստանի պահեցան ։ Եւ խօսեցաւ 'ի մայրիցն Լիբանանու և մինչև 'ի բուսուկ՝ որ բուսանիցի յորմ. այս ինքն զի սկսաւ ասել 'ի բարձրաբերձ մայրեացն 'ի սկզբանէ, և կատարեաց 'ի դալափ մի՝ որ առ օրէն բուսանի, և ելանէ 'ի դալարուտ պահանգի՝ որ արկեալ է յորմ ։

Յամին չորեքհարիւրորդի և ութսներորդի ելից ժողովրդեանն յեգիպտոսէ շինեաց Սողոմոն զտաճարն տեառն. որոյ երկայնութիւն վաթսուն կանգուն, և լայնութիւն քսան կանգուն, և բարձրութիւն երեսուն կանգուն ։ Եւ զի եւթանասուն հազար փայտակոփ, և ութսուն հազար քարակոփ 'ի լերինն, ինձ այսպէս թուի՝ եթէ զթիւ կառագործին զոր հանին վասն շինուածոյ տաճարին՝ բաւանդակեաց և գրեաց գըրիչն ։ Արդ թէպէտ և բազմութիւն դաստապետացն ոչ տայ մեզ ձեռն թուել, տեսցուք այլ և զայն ևս՝ եթէ դաստապետքն ոչ թուեցան. բայց տեսցուք և զայն, զի եթէ քար ուրագի և ամենայն անօթ եր-

կաթի ոչ բախեցաւ 'ի տաճարին իբրև շինէր, այլ իսկ է՝ եթէ մի՛ ճօճեսցես զձեռն քո երկաթագործով 'ի վերայ քարանց սեղանոյն, զի մի՛ պղծեսցին նոքօք։ Անդէն 'ի լերին անդ կոփէին կազմէին յօրինէին մածուցանէին ընդ միմեանս, և ապա գային բերէին և առանց երկաթոյ հանէին դնէին 'ի շինուածս տաճարին կարգել կազմել։

Որդ կատարեցաւ տաճարն, և բերին քահանայքն զտապանակն կտակարանաց և զխորանն և զսրբութիւնս նորա և զերկուս տախտակսն Մովսիսի, և եդին 'ի մէջ նորա։ Եւ իբրև ել քահանայն 'ի սրբութէ անտի, եկն լցաւ տաճարն ամպով, որպէս և յայնմ աւուր՝ զի կանգնեցաւ խորան ժամուն։ Տէր, դու ասացեր բնականալ 'ի մէգ. զի՞ է ամպս այս զոր արկեր 'ի վերայ տանս այսորիկ, զոր պատուիրեցեր դու եթէ 'ի ձեռն իմ շինեսցի քեզ։ Եւ մատոյց զաղօթս Սողոմոն վասն ժողովրդեանն և վասն աշխարհին, իբրև յիշատակէր զանէծսն որ գրեալ էին յօրէնսն՝ գալ 'ի վերայ այնոցիկ՝ որ անօրինէին, որպէս զի անցցեն 'ի նոցանէն վասն մեծ պաղատանացն՝ որ լինէր նոցա 'ի տաճարին յայնմիկ։ Մատոյց դարձեալ աղօթս և վասն օտարաց, զի նկարեսցի աղօթքն որդւոյ Դաւթի. խորհուրդ տեառն Դաւթի, որ հանդերձեալ էր տալ հրաման՝ եթէ աղօթս արարէք 'ի վերայ թշնամեաց ձերոց։

Եւ մատոյց Սողոմոն պատարագս քսան և երկու հազար զուարակս, և հարիւր և քսան հազար խոյս։ Արդ նման է այսպէս, եթէ զչորեքտասան աւուրս տօնին մատոյց զպատարագս զայս։ Յայտնեցաւ տէր կրկին անգամ 'ի վերայ Սողոմոնի, և ուղղեաց և աեդ զհրամանս տաճարին 'ի վերայ արդարութեն շինողացն. եթէ յորժամ դարձցին նոքա 'ի տեառնէ, մատնեսցի և տաճարն 'ի կործանումն թշնամեաց իւրեանց։

Ոգզ եղև, լուաւ դշխոյն հարաւոյ 'ի վաճառականացն Սողոմոնի և Խիրամայ զլուր Սողոմոնի և զայն իւրոյ, և կամեցաւ գալ բազում փորձ և պատարագօք յերուսաղէմ։ Եւ իբրև եկն եհաս յերուսաղէմ, և ետես զամենայն ինչ զոր լուաւն, ետես և այլ ևս

բազում՝ զոր ոչն էր լուեալ ։ Փորձեաց զնա հարցուածովքն իմաստութեն, խոստովան եղև՝ զի վաւեր եղև նմա փորձն քան զլուրն ։ Ուրացաւ ՚ի կռոցն օտարոտեացն․ խոստովան եղև յած և ասաց, եթէ վասն զի սիրեաց տէր զԻսրայէլ, և արար զքեզ արքայ՝ առնել զիրաւունս և զարդարութի առաջի նորա ։ Եւ դարձեալ զխունկս առ ՚ի պատիւ այ՝ որում խոստովան եղև, և զոսկի և զականս պատուականս արքայի՝ յորոյ համբաւն եկեալ էր ։ Ցերից քանքարաց՝ զի արար նա վահան մի, այս ինքն ՚ի հինգ շանթ ոսկւոյ, և զի եդ զվահանսն յանտառատանն նիզակաց, այս ինքն ՚ի զինուց տանն նիզակաց և վահանացն ոսկւոյ ։ Եւ ամենայն թագաւորք վասն իմաստութեն նորա, պատարագօք իբրև ՚ի հարկէ յամենայն կողմանց գային և պաշտէին զնա ։

Իսկ սիրեաց Սողոմոն զկանայս բազումս օտարազգիս․ և զդուստրն Փարաւոնի իբրև ած նա կնութե, ոչ ինչ եպերեաց նմա ած, վասն զի մի էր և ոչ ուրացոյց զնա․ իսկ իբրև անկաւ զկնի բազմաց, որք հեթանոսացուցին զնա, եպերեաց զնա վասն այլոց բազմաց, և վասն առաջին դստերն Փարաւոնի զոր յառաջն ած կնութե ։ Արդ զի յաճախեաց արար զկանայսն ՚ի դստերաց թագաւորաց և մեծամեծաց, որպէս զի ՚ի ձեռն բազում որդւոցն որ լինէին նմա, և առնուն հարք իւրեանց և մնուցանեն ՚ի թագաւորութեն իւրեանց, և թագաւորեցուսցեն զնոսա վասն սիրոյն որ առ Սողոմոն, և սփռեսցի ընդ աշխարհս թագաւորութիւն նորա ։ Արդ զթագաւորութիւնն տեառն Դաւթի, այն որ զգուշութբ սրբութբ տարածանել ընդ աշխարհս հանդերձեալ էր, որդին Դաւթի սիրովն բազում կանանց խորամանկեցաւ առնել զնա ։

Արդ զկանայս զոր սիրեաց Սողոմոն, դարձուցին զնա առաջի երեսաց տեառն, և հանին զնա յաչաց այ ։ Եւ փոխանակ թագաւորութեն զոր խորհեցաւ ընդ ամենայն ազգս տիրել, և ոչ զիւրոյ ժողովրդեանն ըմբոշխնեաց․ զի ազգն Յուդայի միայն մնաց առ նմա․ բայց ոչ եթէ վասն լկտութեն Սողոմոնի, այլ վասն երդմանն այ զոր երդուաւ հօրն Սողոմոնի ։

Եւ զի խորհեցաւ՝ եթէ 'ի թագաւորել որդւոց նորա
ընդ ամենայն կողմանս՝ յամենայն կողմանց խաղա-
ղութիւն յաճախի առ նմա, խոստորելով իւրով յայ՝
անցոյց զանցոյց զխաղաղութիւնն զոր ունէր ։ Վասն
զի Բերհդատ, որ թագաւորեցաւն 'ի Դամասկոս,
եղև ստանան Խորայելի զամենայն աւուրսն Սողով-
մոնի ։

Պատառեաց Ախիա մարգարէ զնոր զգեստն իւր
յերկոտասան պատառս. խորհուրդ ժողովրդեանն,
որ նորոգապէս բաժանելին ազգ նոցա յերկուս թա-
գաւորութիւնս ։ Խոստացաւ զթագաւորութիւն Յորո-
բովամու ուխտիւ. զի եթէ արդարանայ իբրև զԴա-
ւիթ, կարգեալ հաստատի թագաւորութիւն նորա.
ապա եթէ խոտորեսցի, եղիցի նմա ընդդէմ սորին
չար հակառակ ։ Եւ այլ պատգամք Սողովմոնի աստ
գրեալ են 'ի դպրութի պատգամաց Սողովմոնի, այս
ինքն 'ի դպրութի առակաց նորա՝ որ կորեանն ։

## ԳԼՈՒԽ Բ

ԹԱԳԱՒՈՐԵՑՈՒՑԻՆ ժողովուրդն զՀռոբովամ,
և ասեն ցնա. "Թեթևացո մեզ 'ի խիստ հնազանդու-
թէ հօր քո, զի հնազանդեաց զմեզ 'ի հարկս չարա-
չարս և մեծամեծս, և պաշտեսցուք զքեզ"։ Արդ
ինքն փոխանակ զի մխիթարեսցէ զժողովուրդն 'ի չա-
րեաց անտի, զի 'ի պատճառս եւթն հարիւր տիկ-
նացն, և քառասուն հազար ասպաստանին հնազան-
դեցոյց զնոսա, նա առ յաւել նոցա ցաւ 'ի ցաւոյ
վերայ. զի կրկնապատիկ քան զհարկսն հօր իւրոյ
խոստանայր 'ի վերայ նոցա՝ թէ հնազանդեմ զձեզ.
պարանովքն, որ են իբրև զաղի կակուղ զոր լնուն ա-
ւազով, սպառնայր նոցա՝ եթէ խրատէ զնոսա. զի
վասն այսորիկ եղև գրգռութիւն, և ապստամբեցաւ
Խորայէլ 'ի տանէն Դաւթի, որպէս և ասացն Ախիա
մարգարէ ։

Իսկ Յորոբովամ թող 'ի բաց զի կատարեսցէ ըղ-
ձումն մարգարէին որ օծն զնա. և չոգաւ զկնի խորա-
մանգութե իւրոյ ։ Յարեաւ արար նա երկուս որթա-

գլուխս ձուլածոյս, և զետեղեաց զժողովուրդն առ նոսա. զի գուցէ եթէ իբրև ելանիցէ ժողովուրդն յԵրուսաղէմ 'ի պատճառս պատարագացն և տօնից, տեսանիցեն զկազմուած գեղեցիկ յօրինեալ տաճարին, և զսպաս պաշտամանն քահանայից, և կակղանայցէ և Հռոբովամ խօսել ընդ նոսա զբանս բարւոքս, և դառնայցեն առ տէրն իւրեանց, և սպանանիցեն զիս: Խորամանկի արդ աւասիկ դարձուցանել յա̃յ, որ ետ նմա զթագաւորութի̃ ժողովրդեանն. և պատուիրեաց նմա զի մի՛ խոտորեսցին 'ի նմանէն: Եւ առ արար ոչ մի որթագլուխ իբրև զայն յանապատին, այլ երկուս. վասն զի ետես զժողովուրդն զի փոխանակ միոյն զոր արար Ահարոն, նոքա բազմաց երգէին և գովէին: Հնարեցաւ արար երկուս, և տարաւ եդ զմինն 'ի Բեթէլ, և զմիւսն 'ի Դան: Եւ ասէ ցնոսա, եթէ "Մի՛ ինչ աշխատիք դուք յամենայն կողմանց երթալ մատուցանել պատարագ յԵրուսաղէմ. երկիրս ամենայն երկիր պարգևաց է. և յամենայն վայրի ուր և մատուցանեմք պատարագ, յօրհնեալ երկրի մատուցանեմք": Եղև դարձեալ և քուրմ աստուածոյն զոր ձուլեացն:

Եւ մինչ դեռ ելանէր դնել զխունկս 'ի վերայ սեղանոյն, և ահա մարգարէ ա̃յ եկն 'ի հրէաստանէ, և ասէ ցսեղանն յանուն տեառն, եթէ որդի ծնանի 'ի տանէն Դաւթի, այն որ հրաժարեցաւ ժողովուրդն 'ի թագաւորութենէն նոցա: Եւ սեղանն՝ որ համարեցաւ ձեզ՝ եթէ 'ի պատճառս դորա ըմբոշխնեք դուք զթագաւորութիդ ձեր, Յովսիա՝ որ 'ի տանէն Դաւթի է, այրեսցէ 'ի վերայ քո, և զքուրմս մեհենիցդ որք դնեն խունկս 'ի վերայ քո: Եւ զի տացի նշան յառաջ քան զգործն, և զի ցուցցէ նոցա եթէ 'ի տեառնէ առաքեցաւ դարձուցանել զնոսա առ իւր յերկրպագութե̃ որթագլխացն, խօսել սկսաւ և ասէ, թէ ահաւասիկ սեղանն պատառի 'ի ներքոյ Յորոբովամայ, իբրև կայ և վարի մոխիրն՝ որ 'ի վերայ նորայն էր: Վառեցաւ ցասմամբ արքայն 'ի վերայ մարգարէին, վասն այսորիկ՝ զի յանդիմանն ամենայն Իսրայէլի մարգարէացաւ 'ի վերայ քրմացն և 'ի վերայ սեղանոյն: Դարձաւ և ասէ. "Հապա կալարուք

զդա,,։ Յաւելաւ մին ևս նշան ժողովրդեանն և արքային. զի զբազուկն զոր ձգեաց 'ի նա, անդէն ցամաքեցաւ, և յինքն այլ ոչ կարաց տանել զնա։

Իսկ իբրև սեղանն պատառեցաւ, և ձեռն նորա ցամաքեցաւ, դարձաւ աղաչել մարգարէին՝ զի խնդրեսցէ յայ վասն ձեռին նորա, և դարձցի 'ի տեղի իւր։ Եւ զոր օրինակ կայ յաղօթս Եղիա 'ի լերինն անդ Կարմեղայ վասն իջանելոյն անձրևոյ յանդիման ամենայն ժողովրդեանն, զի գիտասցեն եթէ աղօթք նորա իջուցանեն զանձրև, և ոչ եթէ Բահաղ. նոյնպէս եկաց յաղօթս և մարգարէն՝ որ եկեալն էր 'ի Հրէաստանէ առաջի սեղանոյն յանդիման ամենայն ժողովրդեանն։ Զի հաւատասցեն եթէ ած ցամաքեցոյց զբազուկ նորա և ողջացոյց, և ոչ եթէ որթագլուխքն՝ որոց նուիրէին։ Նա և ինքն իսկ գիտաց եթէ չիք իսկ շահ յորթագլուխս նորա. և վասն այնորիկ խնդրեաց նա 'ի ձեռն մարգարէին 'ի ճշմարիտ այ զբժշկութիւն ցամաքեալ բազկին իւրոյ։

Իսկ իբրև բժշկեցաւ արքայն, փոխանակ զի խոստովան եղիցի ամենայն Իսրայէլ եթէ տէր է ած, և ինքն դարձեալ Յորոբովամ՝ զի բեկցէ զորթագլուխսն զոր ձուլեաց, ասաց ցմարգարէն որ բժշկեաց զնա. "Եկ ընդ իս 'ի տուն, և կեր հաց, և տաց քեզ պարգևս,,։ Եւ վասն զի բարկութիւն առաքեցաւ նա անդ, և վասն զի ամենայն զոր ինչ և էր անդ զոր պատրաստեալ տօնին պատկերացն ձուլածոյ, պիղծ էր առաւել վասն զի պատրաստեցաւ նա. իբրև եցոյց զբարկութիւնն որ գալոց էր 'ի վերայ աշխարհի. և զի հրաման առ 'ի նմանէն զի մի կերիցէ անդ հաց. բայց թող զնոսա և ընդ այլ ճանապարհ անց երթալ յաշխարհ իւր։

Արդ եկեալ որդիք մարգարէին որ 'ի Բեթէլ, պատմէին հօրն իւրեանց զամենայն անցսն որ ինչ անցք անցին ընդ սեղանն և ընդ արքայն, և զամենայն խօսսն զոր խօսեցաւ որ ինչ լինելոցն իցէ քրմաց սեղանոյն 'ի վերայ նորին սեղանոյն։ Եւ արդ յարուցեալ ճեպ 'ի ճեպոյ ալևոր մարգարէն հանդերձէր զգրաստ իւր, և պնդէր զկնի մարգարէին այ, և ժամանէր նմա իբրև երթեալ նստէր ընդ բեւեկնեաւ

մնալ. և սոյն իսկ այս, զի արգել զգրաստ իւր և անդ նստաւ, խնդիր ինչ գոյ 'ի նմա. զի եթէ յումէ արգելաւ, մինչև եկեսցէ մարգարէն ալևոր զի փորձեսցի նովաւ. և վասն զի բազումք անցանէին ընդ այն ճանապարհ իբրև 'ի վաճառի աւուր: Իսկ իբրև եգիտ զմարգարէն և ուսաւ 'ի նմանէն, եթէ արդարև նա ինքն է, վասն զի թուեցաւ նմա եթէ վասն հեթանոսութեն որ էր 'ի Բեթէլ ոչ կամեցաւ ուտել անդ հաց, մատուցեալ առայր նմա զհաւանութիւնս, զի դարձցի ընդ նմա և հանգուսցէ զնա հացիւ և ջրով: Իսկ իբրև յաւել երկրորդեաց ալևորին զոր ինչ ասաց ցարքայն Յորոբովամ, ետ նմա պատասխանի՝ և ասէ ցնա. "Ես ինձէն մարգարէ եմ իբրև զքեզ, և հրեշտակ տեառն ասաց ցիս զի դարձուցից զքեզ":

Իսկ մարգարէն որ եկեալ էր 'ի Հրէաստանէ, փոխանակ զի պահանջեսցէ նշան ինչ յալևոր մարգարէէն, ոչ զի թէ մարգարէ էր և կամ չէր մարգարէ, քանզի լուեալ էր նորա եթէ մարգարէ գոյ 'ի Բեթէլ, այն զի բազում որդւոց մարգարէից յետ այսորիկ՝ որ եկն 'ի նմա, այլ զի գիտասցէ 'ի ձեռն նշանին եթէ արդարև ճշմարիտ 'ի տեառնէ առաքեցաւ. և կամ թէ ինքն իսկ նոյն մարգարէն՝ որ եկեալ էր 'ի Հրէաստանէ՝ հարցցէ զնա, եթէ արդարև նա՞ առաքեաց զալևոր մարգարէն թէ ոչ. արդ ոչ նշան ինչ խնդրեաց, և ոչ յա̃յ եհարց. և յարեաւ դարձաւ ընդ ճանապարհն ընդ որ երթեալն էր, այնու՝ զի վասն սորին իսկ իրի առեալ էր նորա զհրաման, զի մի՛ դարձցի ընդ նոյն ճանապարհ ընդ որ եկեալն էր:

Իսկ իբրև դարձաւ ընդ ալևորին և եմուտ 'ի տուն նորա, և իբրև կերան և արբին, մինչ դեռ 'ի հացի անդ էին՝ եկն պատգամ տեառն 'ի վերայ ալևոր մարգարէին և ասէ, թէ "Վասն զի դառնացուցեր դու զբան բերանոյ տեառն, մի՛ մտցէ դիր քո 'ի գերեզման հարց քոց": Եւ վասն զի ոչ ցոյց՝ եթէ յորում աւուր մեռանիցի, և ոչ եթէ ե՛րբ, և կամ թէ ո՛ւր մեռանիցի, յարեաւ նստաւ 'ի գրաստու իւրում, և դարձաւ 'ի Հրէաստան: Եւ մինչ դեռ գնացեալ երթայր ընդ աներկիւղ ապահով ճանապարհն բազմախիտ ընդ խճա

զեալ մարդկաւն՝ որ խաղացեալն գնայինն 'ի վաճառէ անտի, և իբրև այն ինչ զի եթէ երկիրն ծնաւ 'ի նմին ժամու զառեւծն, և իբրև զանց առեալ խուսէր յամենայն մարդկանէն և 'ի նմին մարգարէին գրաստուէն, և սպանանէր զմարգարէն միայն միայնուկ։ Իսկ իբրև տեսին որք եկին դէպ եղեն և պատահեցան, զահի հարեալ երկնչէին յառեւծուէ անտի, զի զգուշացեալ պահէր զմարգարէն։ Նոքա եկեալ ցուցանէին 'ի քաղաքի անդ։

Եւ իբրև զայն լսէր ալևոր մարգարէն, որ նենգեացն զնա և խաբեաց և անցոյց զպատուիրանաւն, ճեպ 'ի ճեպոյ գայր հասանէր 'ի տեղի անդր։ Եւ փոխանակ զի ինքն երկեաւ առաւել քան զամենայն մարդ, վասն զի եղև պատճառ մահու մարգարէին, ինքն միայն միայնուկ իբրև վստահ ոք որ զանձինն գիտիցէ, եկն մերձեցաւ առ առեւծն գազան՝ գազանասիրտն։ Իսկ առեւծն դարձեալ, որ սպան զմարգարէն՝ որ անց զպատուիրանաւն, և կայր պահէր զգրաստն, իսկ 'ի մարգարէէն՝ որ պատճառն էր պատուիրանազանցութեան մարգարէին՝ ամաչեցեալ պատկառէր․ և զդիակն զոր ոչ կալաւ յանձին տալ ամենայն անցաւորաց ճանապարհին, սմա իբրև տեառն առեալ զաւանդն դարձուցանէր անդրէն։ Կորացեալ արկանէր զակն իւր յալևորէ անտի, զի մի երկեցուսցէ զնա․ և հաւանեալ տայր զդի մարգարէին ցմարգարէն 'ի թաղել․ և 'ի շէն տեղւոյ անտի՝ ուր եբեկ զմարգարէն, փոյթ 'ի փութոյ ճեպեալ երթայր վաղվաղակի 'ի դաշտ անդր անապատ 'ի կայանսն առաջինս։ Բայց մարգարէն ալևոր լաց զընկերն իւր, և թաղեաց զնա յիւրում գերեզմանի։ Եւ արդ առեալ տայր պատուէր որդւոցն իւրոց, զի առ ոսկերսն նորա դիցեն զոսկերս ալևորին․ վասն զի հաստատ լինելոց է պատգամն տեառն 'ի վերայ սեղանոյն 'ի Բեթէլ, և 'ի վերայ ապարանիցն, և 'ի վերայ մեհենիցն՝ որ 'ի քաղաքին Շամրնի են։

Մարդ թէպէտ և 'ի վերայ սեղանոյն՝ որ 'ի Բեթէլն էր՝ մարգարէացաւ մարգարէն՝ որ 'ի Հրէաստանէն եկեալն էր, բայց սակայն 'ի վերայ մեհենիցն և ապարանիցն Շամրնի ոչ մարգարէացաւ նա։ Քանզի

յայնմանէն զի ասաց՝ թէ ապրեցուցին ոսկերքն մարգարէին՝ որ եկեալն էր 'ի Հրէաստանէ՝ զոսկերս մարգարէին՝ որ եկն 'ի Շամրնէն, յայտ է՝ եթէ ինքն մարգարէս այս ալեւոր զի 'ի Շամրնէ եկն 'ի Բեթէլ, և նա ինքն մարգարէացաւ 'ի վերայ ապարանիցն և քաղաքին շամրտացւոց։ Եւ վասն զի յանգէտս Հեզուլթն դարձոյց զնա, եթէ եպերեալ է՝ և եթէ ոչ է եպերեալ, զայս ոչ գիտեմք մեք. տաց՝ թէպէտ և համարեսցուք եթէ եպերեալ է. վասն եպերանացն նորա զի ոչ վկայեն մեզ գիրք՝ առնուլ 'ի նմանէն ըզ մարգարէութիւն նորա՝ զորմէ վկայեն նմա գիրք, ոչ կարեմք մեք գիտել։

Յետ այսորիկ անկեալ դնէր յախտն մեծ Աբիա որդին Յորոբովամու. և առաքեաց զկինն իւր գիտել ճշմարտել 'ի մարգարէէ անտի որ օծն զնա՝ զինչ անցք անցանելոց իցեն ընդ հիւանդ որդին նորա, զի անկեալ դնէր 'ի մեծ ախտի։ Եւ վասն զի անարգեաց նա զքուրմն և զմարգարէսն ձուլածոյ որթուցն, և 'ի ճշմարիտ մարգարէէ անտի առաքեաց ուսանել գիտել ճշմարտել, վասն այսր միոյ բանի՝ զոր հրամայեաց կնոջն իւրում, և եմուտ դի պատանեկին 'ի գերեզման։ Քանզի ամենայն որ և կոտորեցաւ Յորոբովամու 'ի ձեռն Բայաշու, շունք և թռչունք կերան զնոսա. բայց կոտորեցաւ և տունն Բայաշու 'ի ձեռն Զամբրեայ։ Եւ թագաւորեցաւ զկնի նորա Զամբրի, այն՝ որ շինեացն զՇամրին 'ի լեառն Շեմերեայ։

Եւ թագաւորեցաւ դարձեալ Ախաբ որդին իւր ըստ նմանէն։ Եւ վասն զի փոքր թուէր յաչս նորա երկիր պագանելն ձուլածոյ որթուցն Յորոբովամայ, յարեաւ նորոգեաց ինքն առանձինն զԲահաղ, և շինեաց Բահաղու բագին 'ի Շամրին, և շինեաց զտեղի անիծիցն Յեշովայ զԵրիքով։ Բայց կարի վասն այսորիկ առաւել շինեաց զնա, զի ցուցցէ եթէ չիք ինչ չար յանէծսն Յեշովայ։ Եւ վասն զի այպանեաց զբանն Մովսիսի՝ զոր ասաց, "Զի եթէ մեղիցէք տեառն., արարից զերկինս 'ի վերուստ երկաթ, և զերկիրս 'ի ներքուստ պղինձ,,. և ասաց՝ զոր օրինակ ոչ եղև բանն Մովսիսի, սոյնպէս և ոչ լինի բանն Յեշո-

վայ աշակերտին նորա, քննախնդիր նախանձայոյզ լինէր Եղիա, և ձեռն յանձին հարեալ սկսաւ ասել առաջի Աքաաբու և նախարարացն նորա, եթէ "կենդանի է տէրանց տէր՝ որոյ առաջի կացի ես մարգարէ, եթէ եղիցի յայսոսիկ ամս ցօղ և կամ թէ անձրև, բայց եթէ ասացից ես„ ։

Արդ 'ի ժամուն զի ասաց զայս, երկինք ամպով ծուպ 'ի ծուպ ծովացեալ կայր. քանզի ոչ եթէ յամարանի կապէր զերկինս յանձրևոյ, այլ 'ի ժամ անձրևուն արգելոյր զերկինս յանձրևոյ ։ Արդ ամպքըն առաջի բանին նորա մատուցեալ անգրիձէին ըղխոնաւալից ստորոտս իւրեանց, և յոչ ինչ՝ ուստի եկեալն էին՝ դէտ արարեալ դառնային ։ Արդ ամպն որ փարատեցաւն 'ի նոցանէն 'ի բանէն Եղիայի առաջի դրանն Շամրնի, ոչ տեսին զնա մինչև եկն Եղիա 'ի լեառն Կարմեղա ։ Եւ վասն զի մի սպանցէ զնա Աքաաբ իբրև գտցէ զնա, և կամ թէ երկինք ոչ բանայցեն զկապեալ արգանդն առ 'ի տալ անձրևոց, և կամ թէ բանն Եղիայի զոր ասաց՝ թէ մինչև ասացից ես՝ սուտ լինիցի, առնու դնէ զնա 'ի ձորն առաջի Յորդանանու 'ի դարանի, և տայ նմա հրաման ըմպել 'ի ջուրց նուաղելոց. 'ի ձորոյն ծործորակի մի արբցէ, գուցէ գտանիցէ զնա ամպարիշտ և անօրէն թագաւորութիւն՝ որ 'ի խնդիրն անկեալ էր խնդրել զնա ։

Իսկ զհացն և զմիսն՝ զի հրամայեաց ագռաւուցն բերել նմա, կամ 'ի տեղւոջ ուրեք լինելով լինէին և առնուին բերէին նմա, կամ իբրև թռչէինն գալ առ նա 'ի ժամ ճաշոյն և ընթրեացն՝ լինէր 'ի բերանս միոջն հաց, և 'ի բերան միւսոյն ևս միս. քանզի ոչ եթէ ումանք պատրաստէին ագռաւուցն. վասն զի ոչ ասաց եթէ քահանայիցն հրամայեցի և կամ այլոց մարդոց կերակրել զքեզ, այլ զի հրամայեցի ես ագռաւուցն կերակրել զքեզ ։ Առեալ բերէր նմա ագռաւն զմիսն, և ոչ մերձենայր 'ի նա. և բարձեալ ունէր ընկեր նորա զհացն, և ոչ կրծոյր 'ի նմանէն ։

Իսկ Եղիա՝ որ նախանձեցաւ զնախանձ օրինացն Մովսիսի, նա ինքն իսկ եղև լուծիչ օրինացն նորա. քանզի յագռաւուց՝ որ պղծեալն էր յօրինաց՝ ուտէր Եղիա նախանձայոյզ քննախնդիր օրինացն ։ Պիղծ

ագռաւք դարմանիչք մարգարէին խորհուրդ եղեն պեղծ հեթանոսացն մկրտութե՟ն ջուրց առաջանին ։ Եւ փոխանակ հայհոյութե՟ն առեալ տանին զօրհնութի՟ւն ա՟յ ․ և ագռաւք դարմանիչք մարգարէին 'ի մարգարէէ անտի կերակրէին նոքա , զի 'ի նշխարաց նորա ճաշոյն և ընթրեացն կերակրէին նոքա ։ Դարմանիչք եղեալ էին նորա , և առ 'ի զբօսանս համարեալ էին նմա ․ զի յորժամ դնէին առաջի նորա՝ ուտէր , ուտէին և նոքա ։ Իսկ իբրև ոչ գիտաց նախանձայոյզ մարգարէն վասն անօրէնութե՟ն Իսրայէլի զտառապանսն Իսրայէլի , ցամաքեցոյց ա՟ծ զաղբեւրն ծործորակի ․ և ընդ ցամաքել աղբեւրականն , և կերակուրն ագռաւուց՝ զոր բերէինն՝ արգելաւ 'ի նմանէն ։ Քանզի զի՞նչ պիտոյ էր առանց ջուրցն ․ զի աւելի ի՟մն համարեալ էր նմա առանց ըմպելոյն ։

Եւ զի մի իբրև թաքուցեալ կայցէ 'ի ժողովրդեանն՝ գտանիցէ զնա ձեռն Եզաբէլի , և կորուսանիցէ զնա և առ որս թաքուցեալն էր , առաքէ զնա ա՟ծ 'ի Սարփաթ հեթանոսաց , զի ցուցցէ նմա զսէրն հեթանոսաց ․ և ցուցցէ նմա դարձեալ՝ թէ յորպիսի նեղութե՟ տագնապեալ են անթլփատքն , որք ոչն այպանեցին զօրէնսն Մովսիսի իբրև զԱխաբ ։ "Անց երթ , ասէ , 'ի Սարփաթ ․ ահա հրամայեցի ես կնոջ այրւոյ կերակրել զքեզ " ։ Արդ թէպէտ և 'ի Սարփաթ հեթանոսաց երթայր՝ հարցանել և գիտել մարթ էր նմա , 'ի վերայ այրւոյն՝ զոր ոչ ցոյց նմա զանունն՝ զի՞արդ մարթ էր նա կալ ։ Եւ վասն զի ասաց ցնա՝ եթէ "Ահա հրամայեցի ես այրւոյն " , թուեցաւ նմա եթէ նոյն ինքն այրին ելեալ նստիցի 'ի դրացն Սարփաթու , և գետակն ունիցի նմա ։

Բայց վասն զի մի թեթևասցի ծանրութի՟ւն նորա՝ յորժամ մատուցեալ հարցանիցէ զայրւոյ կնոջէ անտի սարփաթացւոյ , խնդրեաց 'ի տեառնէ իւրմէ զի գտցէ զնա առ դրանն քաղաքի , զայն՝ զոր յայտնութե՟ և կամ տեսլեամբ հրամայեցաւ նմա կերակրել զմարգարէն ա՟յ ։ Քանզի իբրև խաղացեալ երթայր նա, իբրև առ մեծատունկին երթայր ։ Քանզի իբրև եգիտ զնա զի գնայր բոկ , և զգեցեալ էր թամբատեակ մի , և քաղէր կրկառս , և նման էր նա 'ի քաղցէ անտի

իւրմէ խաբեալ խանձողդ, սկսաւ մտախոհ լինել Եղիա ընդ անձն և ասել. այս իցէ արդեւք կերակրիչն մեր, առ որ պնդեալս եկեալ եմ, եթէ այլ ոք իցէ արդեւք։ Զի եթէ ճշմարտեալ հաւատասցէ թէ նա ինքն է, տեսիլն նորա չտայր նմա ձեռն. զի եթէ զմտաւ ածիցէ եթէ ոչ է նա, նշանն զոր խնդրեաց՝ չտայր նմա թոյլ։ Եւ վասն զի ամաչեաց ինքն յինքենէ խնդրել զհաց 'ի նմանէն, խնդրեաց 'ի նմանէն ջուր։ Եւ իբրև ետես՝ զի ընթացաւ 'ի բերել նմա, յաւել խնդրեաց 'ի նմանէն և հաց։ Իսկ իբրև երդուաւ կինն ծարփաթացի 'ի տէր, յորում ժամանակի ամենայն Իսրայէլ յորթսն ձուլածոյս և 'ի դիսն օտարոտիս երդնուին, և ասաց՝ եթէ ոչ ինչ գտանի աղախնոյ քում, բայց եթէ ափ մի ալեւր 'ի սափորի անդ, և սակաւ մի եւղ 'ի սրուակի, ապա ճշմարտեալ գիտաց Եղիա՝ եթէ զոր օրինակ կերակրեաց 'ի ձոր անդր զագռաւս դարմանիչս իւր, սոյնպէս հանդերձեալ է կերակրել 'ի ծարփաթ և զայրին ասպնջական զկերակրիչն իւր։ Քաջալերեաց զնա և ասէ ցնա. մի երկնչիր 'ի մահուանէ որդւոյ քոյ. բայց միայն նախ ինձ արասջիր իբրև քահանայի զպտուղ ալեւրոյն. ոչ եթէ բազմանայ քեզ, այլ զի ոչ պակասէ քեզ։ “Այսպէս ասէ տէր, որ առաքեացն զիս առ քեզ. ալեւրն, ասէ, 'ի սափորոյն ոչ սպառեսցի, և իւղն 'ի սրուակէն մի պակասեսցէ”. ոչ մինչև ասացից ես՝ որպէս ցԱխաբն ասացի, այլ մինչև տացէ տէր անձրև 'ի վերայ երկրի։ Եւ վասն զի ետես զնեղութի՛ և զտառապանս հեթանոսաց անդէն առ դրանն ծարփաթ քաղաքի, լոյծ զերդումնն զոր երդուաւն Ախաբու արքայի առ դրանն Շամրնի։ Եւ զի ասաց՝ եթէ “Եկեր ինքն և նա և ընտանեակքն իւր”, յայտ է՝ եթէ մեծատուն էր կինն, և վասն մարդակոտոր սովոյն արձակեաց զընտանեակսն իւր, զի երթիցեն հնարիցեն ուրեք ուրեք և կեցցեն։ Իսկ իբրև բազմացաւ նմա ալիւրն, ժողովեաց զայնոսիկ՝ զորս առ 'ի չգոյէ կերակրոցն հանեալ ցրուեալ էր զնոսա։

Որպէս տրտմեցոյց զնա ած 'ի ձոր անդր ցամաքելով աղբերականն, սոյնպէս տրտմեցոյց զնա և 'ի ծարփաթ մահուամբ որդւոյ այրւոյն։ Բայց տըրտ-

մութն նորա յուրախութն դարձաւ. զի յարութն մանկանն զառաքինութիւն 'ի մէջ հեթանոսաց եւս նմա։ Նա առ զմանուկն և հան զնա 'ի վերնատունն. և զմայրն և ոչ 'ի ժամ յարութեն որդւոյն իւրոյ եւս նմա կոխել զսեմս վերնատանն։ Եւ զի կշռեցաւ 'ի վերայ նորա երիցս անգամ, զի նկարեսցէ զխորհուրդըն Երրորդութեն։ Եւ կոչեաց և դարձոյց զոգի մանկանն 'ի մարմին անդր, զի նկարեսցէ զաւրպս այնորիկ՝ որ 'ի ձայն փողոյն հանդերձեալ է արկանել զհոգիսն 'ի մարմինս ամենայն որդւոց մարդկան։ "Տես ասէ, զի կեայ որդի քո„. այն զի ամենայն աստուածքն հեթանոսաց ոչ կարէին կեցուցանել զնա։ Եւ զի ասաց՝ եթէ "Այժմ գիտացի եթէ մարգարէ ես դու այ, և բանն տեառն 'ի բերան քո ճշմարտութբ„. վասն զի թէպէտ սափորոյն և սրուակաւն՝ զի ծերացան և աճեցուցին որ ինչ արկեալ էր 'ի նոսա, և եղև խիստ տարրն անխաղաց սափորոյն և սրուակին՝ արմատք գնայունք և աճունք, և ցուցին զպտուղն, զալիւրոյն և զիւղոյն՝ որպէս և ծառ զպտուղն իւր; երևեցաւ և յայտ եղև՝ եթէ դու ես այն՝ որ զերկինս կապեաց, բայց սակայն կենդանութբ մեռելոյս՝ որ գըտաւս 'ի քեզ՝ ճշմարտեալ գիտացի, զի բանիւն տեառն զամենայն ինչ զոր և կամիս՝ առնես դու. այս ինքն և զերկինս կարող ես լուծանել դու։

Արդ թէպէտ և լուծեալ էր զերդումն Եղիայի 'ի Ծարփաթ առաջի այ, բայց սակայն տունն Աքաբուայսմ չէին գիտակ. զի վասն այսորիկ ասաց ցնա տէր իւր. "Անց երթ տես զԱքաբ, և տաց անձրև 'ի վերայ երկրի„։ Բայց սակայն ոչ ինչ դժուարեցաւ նա; խանձայոյզ քինախնդիրն, և ոչ երկեաւ անգամ 'ի սպառնալեաց անտի Եզաբելի. այլ անց երևեցաւ նախ Աբովդայ՝ որում արժանին էր, և առաքեաց զնա տալ աւետիս արքայի և ժողովրդեանն վասն անձրևու։ Բայց երկեաւ զահի հարաւ Աբդիա, զի դուցէ եթէ առնուցու զնա հոգին այ և արկանիցէ 'ի տեղի ուրեք, որպէս 'ի ձորն և 'ի Ծարփաթ, փակեաց Եղիա զանձն իւր ընդ երդմամբ՝ զի ճշմարտեալ հաւատասցէ Աբդիու, և երթիցէ ցուցցէ արքայի։ Ցոյց նմա Աբդիա և զկոտորած մարգարէիցն զոր կո-

տորեացն Եզաբէլ. և զի թաքոյց նա հարիւր մարգարէ, և կերակրեաց զնոսա հացիւ և ջրով, զի՞ աստի և յայսմ բանէ կարի նախանձայոյզ եղև Եղիա՝ եթէ որպէս արարն Իզաբէլ՝ արասցէ նմա. այս ինքն զի տուգութիւն կատարեսցէ զքուրմսն Բահաղու վրէժխնդրութեան մարգարէիցն ճշմարտութեան զոր կոտորեացն անօրէնութեամբ Իզաբէլ:

Չոգաւ Աբդիու ըստ բանի մարգարէին, և ասաց ցարքայն՝ եթէ ահաւասիկ Եղիա : Ողն բեկեցաւ Աքաբու, և եկեալ ընդ առաջ Եղիայի : Արդ թէպէտ և ընդ առաջ գալն Աքաբու թուէր այսպէս՝ եթէ պատուելով պատուեաց զմարգարէն, բայց սակայն պատգամօքն բանիցն իւրոց թշնամանելով թըշնամանեաց զնա : “Դո՞ւ ես, ասէ, խռովիչն Իսրայէլի ,,. այս ինքն չարչարիչդ Իսրայէլի. իսկ Եղիա դարձոյց անդրէն ըստ ձախող բանիցն նորա ձախողակի պատասխանի և ասէ. ես ոչ ինչ խռովեցուցի զժողովուրդն, այլ խռովեցուցեր դու և Զամբրիեայ հայրն քո. զի նորոգեցէք դուք զերկրպագութիւն որթուցն ձուլածոյ, և այպանեցէք զսուրբ օրինօքն Մովսէսի. զի վասն այսորիկ արգելան երկինք, և տառապեցաւ ժողովուրդս 'ի նեղութենէ սովոյ :

Ետ պատասխանի Եղիա՝ և ասէ ցԱքաբ. “Հրաման տուր ժողովել զամենայն Իսրայէլ 'ի Կարմեղա ,, : Զի իբրև ցուցցէ զսքանչելիսն առաջի ժողովրդեանն, և ծանիցէ ամենայն Իսրայէլ՝ եթէ չէ կանուխգիտութիւն 'ի մարգարէսն Բահաղու, այնոքիկ՝ վասն որոց կարծէինն զայս. զի եթէ գիտացեալ էր նոցա՝ եթէ սատակին կոտորին, ոչ ելանէին նոքա 'ի Կարմեղա 'ի մեծ նեղութիւն : Իսկ իբրև ժողովեցանն և եկին միահամուռ, խօսել սկսաւ Եղիա և ասէ. մինչև ցե՞րբ բաժանեալ եմք մեք 'ի տանէն Յուդայի. արդ եթէ տէր է ած, որպէս և յուդայեանքն ասեն և քահանայքն և ճշմարիտ մարգարէքն նոցա, երթիցուք զկնի նորա. և եթէ Բահաղ է, որպէս և սուտ քուրմքն նորա վկայեն, երթայք զկնի նորա. թողեալ լիցին 'ի բաց նշանքն եգիպտացւոց և անապատին՝ զոր ինչ արարեալն է ձեզ տեառն, և արդ մոռացօնք եղեն : Արդ արասցուք այժմ ես և նոքա

զողջակէզս պատարագաց տաւանց Հրոյ. և ո՛ր Ած իջուցէ զՀուր 'ի վերայ պատարագին, նոյն է այն՝ որ իջոյց զՀուր և զկարկուտ յերկիրն Եգիպտացւոց:

Իսկ իբրև արարին նոքա յառաջ և շինեցին զսեղանն, և արգելլին ընդ նովաւ այր մի Հանդերձ կրակաւ, ութ Հարիւր և յիսուն մարգարէք էին Բահաղու, ոչ ումեք ետուն մերձենալ 'ի ժամուն իբրև շինէին զսեղանն: Արդ ապաստան յայրն՝ եթէ վառէ զՀուրն յանկարծակի 'ի վերայ սեղանոյն, ետուն զանձինս իւրեանց՝ որում ոչ էին սովոր՝ խնդրել զՀուր յաստուածոցն իւրեանց: Ցայգօթս եկաց Եղիա 'ի ծածուկ. և զոր օրինակ դարձոյց 'ի վերնատանն զորդի մանկանն 'ի մարմին անդ, սոյնպէս մերկաց զոգին 'ի մարմնոյն այնորիկ՝ որ 'ի ձեռն Հրոյն իւրոյ կամէր սպանանել զամենայն Իսրայէլ: Իսկ իբրև այրն մեռաւ, անչս աւանէր այպանէր Եղիա զնոսա և զաստուածսն իւրեանց մինչև ցինն ժամ:

Սկսաւ ապա ինքն մատուցանել զպատարագն իւր, և ասէ ցամենայն ժողովուրդն. եկայք մատերուք առ իս: Եւ այսու զի մերձեցոյց զժողովուրդն իբրև շինէր զսեղանն՝ զի նոքա ոչ մերձեցուցին, այլ բացէ 'ի բաց պահէին զնոսա: Եւ ջուրքն՝ որ արկ 'ի վերայ փայտիցն սեղանոյն, յայտ արար և ցոյց՝ զի առաջնոյն ընդ սեղանովն ծածկեալ էր զՀուրն. և ցուցցէ և ծանուցէ, զի ոչ եթէ ընդդէմ օրինաց ինչ արար նա այսու՝ զի շինեաց նա զսեղանն առ 'ի մատուցանել պատարագին 'ի տեղւոջ՝ ուր ոչէր Հրամայեալ օրինացն: Ասաց՝ թէ "Եւ այսօր 'ի ձեռն Հրոյս՝ որ իջանէ, յայտնի լիցի անուն քո, որպէս զի յայտնին եղև 'ի ձեռն նշանացն՝ զոր արարեր ազգին աբրահամեան 'ի ձեռն Մովսիսի. զի դու ես Ած, և ես ծառայ քո, և 'ի պատգամ Հրամանի քո արարի ես զայս". այս ինքն քով՝ Հրամանաւ շինեցի զսեղանս զայս: Եւ էջ Հուր յերկնից, և եկեր զպատարագն և զքարն և զփայտն և զՀողն և զջուրն. որպէս զի ցուցցէ և Հուրն վերնական երկնաւոր բարձանց՝ զի չիք ինչ նենգութի ընդ սեղանովն Եղիայի: Ժողովուրդն իբրև ետես՝ խոստովան եղև առ ժամ մի պատ'ի պատէ՝ եթէ տէր Ած, տէր Ած: Հրամայեաց Եղիա ու-

նել զմարգարէսն Բահաղու. և ոչ հրամայեաց այլում ումեք սպանանել զնոսա, զի մի կորուսցէ զնոսա Եզաբէլ վրէժխնդրութե՛ն մարգարէիցն։ Եցոյց Եղիա 'ի ձեռն հրոյն՝ զոր իջոյց 'ի վերայ պատարագին իւրոյ՝ թէ տէր է ա͞ծ, և չիք այլ ոք բաց 'ի նմանէն։ Եւ հաշտեցոյց զստուգութիւն զենմամբ քրմացն Բահաղու։

Խօսել կալաւ Եղիա և ասէ. “Ձայն գոչման անձրեւու„. կանխեաց մարգարէացաւ վասն անձրեւուն, զի եղիցի կրկին աքանչելիքն։ Եւ ել 'ի լեառն Կարմեղա ծունր դնել մատուցանել զաղօթս յանդիման ժողովրդեանն, զի ուսուսցէ թէ յաղօթիցն նորա արձակին երկինք 'ի կապանաց անտի բանին. մատոյց զաղօթս, զի ուսուսցէ թէ առ ո կայցեն յաղօթս։ Եւ զի մատոյց եւթն անգամ զաղօթսն, զի խրատեսցէ զնոսա՝ զի եթէ ոչ լինին ընդունելի 'ի ժամ աղօթիցն, մի հեղգասցին մատուցանել զաղօթսն յերկար անձանձրոյթ։ Դարձեալ վասն զի եւթն անգամ պաշտեցին զծառայութի սովոյն՝ եւթն անգամուն. որպէս և յեւթներորդ ժամուն արձակեսցէ զնոսա 'ի ձեռն անձրեւուն 'ի սորկութէ[1] սովոյն։

Արդ Ախաաբ փոխանակ պատուելոյն զԵղիա վասն աքանչելեաց հրոյն և անձրեւոյ, և նստուցանելոյն զնա ընդ իւր 'ի կառս անդր, արար նմա անարգութիւն մինչեւ ցԵզրայէլ. առաջի կառացն ընթացոյց զնա։ Առաքեաց առ նա և Իզաբէլ, թէ “Օն և օն արասցեն ինձ աստուածքն, եթէ ոչ վաղիւ 'ի սոյն ժամու արարից զանձն քո իբրեւ զանձն միոյ 'ի նոցանէն„։ Արդ վաղիւն զի՞ առաքեաց առ նա. թէ մինչ երթայ ժողովուրդն յիւրաքանչիւր տեղիս՝ որ տեսին զսքանչելիսդ. քանզի երկնչէր նա զի գուցէ քարկոծեսցեն զնա, վասն զի սպանանէր նա զմարգարէսն՝ որ լոյծ զկապանս երկնից։ Երկեաւ նա 'ի մահուանէ, իբրեւ ոչ էր հանդերձեալ նա ճաշակել զմահ, զի եղիցի նա տիպք տեառնն մահու, զի վասն մարմնոյն որ զգեցաւ՝ ընդ երկիւղիւ մահու հնազանդեցաւ նա։ Զի եթէ 'ի մահուանէ երկնչէր նա, ոչ խնդրէր նա զմահն ընդ

1 Ցօրինակին 'ի սոփէութէ. եգաւ ըստ լուսանցիցն։

բևեկնեան . և եթէ դարձեալ ընդ բևեկնեան եւս
խնդրէր զմահն , ընդէ՞ր փախստեայ երթայր յերե-
սաց Եզաբելի :

Որդ փախեաւ նա 'ի մահուանէն Յեզաբելի . զի
մի՛ ասիցեն եթէ Բահաղ մատնեաց զնա 'ի ձեռն Ի-
զաբելի , զի առցէ 'ի նմանէն զվրէժխնդրութի՛ ութ
հարիւր մարգարէիցն . և խնդրեաց զմահ 'ի տեառնէ
իւրմէ , զի ցուցցէ թէ ոչ երկնչի նա 'ի մահուանէ .
այլ 'ի ձաղանաց որ յետ մահուն էր , երկեաւ նա
և փութացաւ փախչել : Եւ զի ասաց ցնա տէր իւր ,
եթէ "Մեծ է ճանապարհդ քան զքեզ" , յայտ ա-
րար՝ զի եթէ ոչ ուտես դու այսօր և ըմպես , զօրա-
նայ քան զկար զօրութե՛ քո թիւ քառասուն աւուր-
ցըն , որ պատրաստեալ ես ծոմել 'ի ճանապարհիս
յայսմիկ : Զօգաւ հաս նա 'ի Քորեբ , ագաւ յայրին .
և իբրև հարցանէր ցնա տծ , բաց նմա դուռն , զի
ասասցէ վասն երթալոյն իւրոյ 'ի Քորեբ , և ասաց .
Նախանձելով նախանձեցայ զնախանձ տեառն , և ար-
գելի զերկինս . վասն զի թողին ժողովուրդն զուխտն
քո՝ զոր ուխտեցին յայսմ լերին պահել զքեզ , և
փոխեցին զքեզ ընդ Բահաղու ընդ դիւն օտարոտիս .
զմարգարէս քո սպան Իզաբէլ , և ես միայն մնացի ,
վասն զի ծածկեաց զիս ձեռն քո 'ի ձորն և 'ի ծար-
փաթ , և ահա առաքեաց առ իս առնուլ բառնալ
զանձն իմ :

Ոծ իբրև ետես զնա եթէ որով նախանձու եկն 'ի
Քորեբ , չարչարեաց զժողովուրդն սովով , և կոտորեաց
զմարգարէսն Բահաղու փոխանակ մարգարէիցն ճըշ-
մարտութեան , և սակայն 'ի նախանձուէ անտի իւ-
րմէ ոչ ինչ կակղացաւ , ասէ ցնա . "Ել դու յայրէ այ-
տի" : Ել կաց առաջի տեառն , զի այնու իւիք զոր
ինչ առնէրն նա , եղիցի նմա ինքն տէր օրինակ և
նմանութի՛ , զի նմանեսցի նա նմա : Ահա , ասէ , ան-
ցանէ տէր զհողմ սաստիկ . բայց ոչ եթէ 'ի հողմ սաս-
տիկ՝ որ պատառէ զլերինս , և ոչ 'ի շարժումն՝ որ
շարժէ զերկիր 'ի հիմանց անտի , և կամ 'ի հուրն՝
որ այրէ զանտառս՝ յայտնի տէր 'ի վերայ քո . այլ 'ի
խօսս մեղմ և 'ի կակուղ բանս , այն որ ասացն ցքեզ
եթէ զի՞նչ գործես աստ , Եղիա : Զոր օրինակ թող

տէրն քո զսաստկութի̃ն հողմոյն և զզօրաւորութիւնն ուժգնութեան շարժմանն. և զզազանութիւն հրոյ, և յայտնեցաւ 'ի վերայ քո մեղմ խօսիւք և կակուղ բանիւք, և դու ըստ նմին օրինակի ընկեա 'ի բաց զնախանձն՝ որ բորբոքեալդ է 'ի քեզ անաչառ սաստկութե̃դ 'ի վերայ մանկանց ժողովրդեան քոյ, և լեր վասն նոցա բարեխօս, և մի դրդուիչ:

Նու յետ այսորիկ իբրև եղև նմանութի օրինակի, զի փոխեսցի նա 'ի նախանձուէ անտի իւրմէ 'ի քաղցրութի, դարձեալ ասաց ցնա. «Զի՞նչ գործես աստ, Եղիա»: Սակայն և յետ այնորիկ ոչ կակղացաւ և ոչ փոխեցաւ նա 'ի նախանձուէ անտի իւրմէ. զի չարախօսելով չարախօսէր նա զմանկանց ժողովրդեան իւրոյ իբրև զառաջինն: Եւ արդ զի՞նչ իցէ այս, զի 'ի տեղւոջն յորում հաշտեցոյց Մովսէս զԱծ ընդ երկրպագուսն ձուլածոյ որթագլխին՝ Եղիա բորբոքեալ մատուցեալ էր զցասումն նորա 'ի վերայ երկրպագուաց Բահաղու. և 'ի լերինն՝ ուր ասաց Ած ցՄովսէս, եթէ «Թո՛յլ տուր ինձ, զի ջնջեցից զժողովուրդս զայս», 'ի նըման մատուցեալ կայր Ած 'ի խնամս ժողովրդեանն 'ի ժամանակի՝ զի խնդրէր Եղիա կորուսանել զժողովուրդն: Եւ վասն զի մեղաւ ժողովուրդն յորթագլուխ անդր, քաղցրութե̃ն Մովսիսի մատուցանէր զհաւանութե̃ն անաչառ սաստկութե̃ն տեառն նոցա, զի մի ջնջեսցէ զնոսա. իսկ այսօր իբրև մեղան և երկիր պագին Բահաղու և կռոցն օտարաց, և մարգարէն՝ որ մնաց 'ի մէջ նոցա՝ մատուցեալ կայ սատոր վասն նոցունց քինախնդիր նախանձուն իւրով առաջի Այ: Իսկ Ած իբրև ետես եթէ կալան կապեցան հեբրայեցիքն 'ի մեղս իւրեանց, և ոչ 'ի ժողովրդենէն իւրեանց ոչ կարէր իբրև զՄովսէս կարկատել զխրամս յանցանացն իւրեանց, ինքն Ած խնամարհեցաւ յորդառատ քաղցրութե̃ն, հաւանեցոյց ընդ նոսա զսաստկութե̃ն՝ որ գործովքն և արդեամբքն նախանձայոյզ քինախնդրութե̃ն բորբոքեալ էր 'ի վերայ նոցա:

Արդ առաքեաց տէր զԵղիա զի օծցէ զԱզայէլ բանիւ, և զԱհով[1] իւղով, և զԵղիշէ նախփորձամբն. զի

1 Յօրինակին 'ի լուսանցսն Յէու:

Այսպէս կորուսցէ զժողովուրդն՝ որ ոչ հաւատաց հրաշից եւ անձրեւոյն, եւ Յահուլ կորուսցէ զտունն Աքաաբու եւ զքուրմսն՝ որ երկրորդեցին եւ կացուցին Բահաղու, եւ Եղիշա կորուսցէ զայնոսիկ՝ որ այպանէին զմերմանալ վարդապետին իւրոյ. եւ եւթն հազար՝ զի Թող 'ի ժողովրդենէն՝ որ էին յաւուրս Դաւթի հազարք հազարաց, ուրախ արար եւ խնդացոյց զԵղիա՝ եթէ գոն որ աշակերտեցան քեզ, զի մի երկիր պագցեն կռոցն Բահաղու. Թէպէտ եւ յերկիւղէն Եզաբէլի կասկածեն յայտնապէս դոհանալ յիս: Արդ այսոքիկ եւթն հազարս՝ նոքա հաւատացին մարգարէին, եւ եկին 'ի Շամրնէ յոր հասարակին, եւ կոտորեցին զզօրս բազումս որդւոյ Ադերայ Բարհադադու, եւ զերեսուն եւ զերկուս թագաւորացն՝ որ ընդ նմայն էին: Եւ սոքա դարձեալ 'ի միւս եւս ամ կոտորեցին յաւուր շաբաթու հարիւր հազար հետեւակ, եւ երեսուն եւ երկու զօրագլուխս՝ որ էին ընդ Բարհադադու: Արդ զԲարհադադ զայս որ կամէրն սպանանել զժողովուրդն, մատնէ զսա տէր 'ի ձեռս Աքաաբու, զի փորձեսցի սովաւ: Արդ Աքաաբ փոխանակ ընդ սպանելոյն զնա, որպէս եւ տուաւ նմա հրաման, առ նստոյց զնա ընդ իւր 'ի կառսն, եւ խաղաղութե՟ յաշխարհն իւր արձակեաց զնա. զի յայտ լիցի Աքաաբու՝ եթէ ոչ ողորմութե՟ ինչ արար զայն, այլ զպատուէր հրամանին որ տուաւ նմա՝ փութացաւ անարգել:

Հար կառափնատեաց մարգարէն զընկեր իւր պատգամաւն տեառն: Իբրեւ այն առաջին՝ որ ոչն կառափնատեացն զնա, նայելով նայեցաւ յօրէնս՝ զի ասաց, եթէ կառափնատուէ՟ փոխանակ կառափնատուէ՟: Եւ թուեցաւ նմա եթէ ոչ ասէ նմա 'ի ձեռն մարգարէին հակառակ ընդդէմ այնորիկ՝ որ ինչ ասացեալ է յօրէնսն: Զի վասն այսորիկ բեկ զնա առեւծ, զի պահեաց նա զօրէնսն, վասն զի կամեցաւ զտէր եւ զմեծ օրինացն ընդ օրինօք փակել: Եւ իբրեւ կառափնատեցաւ մարգարէն յընկերէն իւրմէ, եւ շաղախեաց մոխրով զերեսս իւր, զի մի գիտասցէ արքայն թէ 'ի մարգարէից ոք իցէ, եւ ոչ առնուցու զտեղի լսել ըդդատ նորա, աղաղակեաց եւ ասաց ցարքայ, եթէ ծա-

ռայ քո եմուտ 'ի ճակատ եդովմայեցւոց, և այր մի հեբրայեցի ած ետ ցիս այր մի յեդովմայեցւոց, և ասաց ցիս. եթէ կորիցէ այրդ, անձն քո փոխանակ ընդ նորա; և կամ քանքար մի՝ զի ոչ գոյ իմ՝ կշռեցից տաց փոխանակ ընդ նորա։ Եւ ծառայ քո մինչ դեռ նայէր յայս կոյս յայն կոյս՝ ոչ յաւարել կամ 'ի ժլատել ինչ, որպէս և դատարկ ձեռքս իմ վկայեն ինձ, այլ 'ի մարտնչել և 'ի կոտորել. որպէս և վէրքս գլխոյ իմոյ ճշմարտեալ ցուցանեն վասն իմ. և խնդրեցաւ այրն, և ոչ գտաւ։ Եւ արդ այժմ տէր իմ, փրկեա զիս 'ի ձեռաց ազգականցին իմոյ, զի կամի առնուլ զանձն իմ փոխանակ օտարական անձինն՝ որ կորեաւն յինէն։ Իսկ Ախաաբ ողորմած՝ հրամայեաց կորուսանել զանձն մարգարէին փոխանակ օտարին՝ որ մատնեցաւ 'ի ձեռս նորա, և ոչ պահեաց զնա։

Իսկ մարգարէն իբրև ետես զձախող դատաւճիռ թագաւորին, անդրէն և անդ փութացաւ անցոյց զարիւնն յերեսաց իւրոց, և ասէ ցարքայն, եթէ զդատաստանաւդ զոր դատեցերդ զիս անօրէնութբ, դատեսջիր դու անաչառ ստուգութբ. յինէն կորնչելով կորեաւ այրն, վասն որոյ 'ի մահուն հրամայեցեր մատնել զիս. բայց Բերհադադն զոր մատնեաց 'ի ձեռս քո, ոչ այլ ոք՝ այլ տէր ինքնին, նա ոչ եթէ կորնչելով կորեաւ 'ի քէն, այլ դու քեզէն քոյին արձակեցեր զնա յաշխարհ իւր խաղաղութբ։ Մեռջիր արդ այսուհետև դու ինքնին ընդ նորա, փոխանակ զի ապրեցուցեր զայրն զամպարիշտ և զնզովեալ. և զօրդ քո զի ոչ կացին ընդդէմ քո վասն սորին իրի, կորիցեն և նոքա ըստ նմանութե Բերհադադու զօրացն՝ զոր կորուսերն դու։ Արդ զԱխաաբ արքայ զոր ուրախն արար յաղթութբն՝ որ եղև նմա, տրտմեալ խռովեալ մեծաւ թախծիւ դարձոյց անդրէն 'ի Շամրին։

Բայց ինքն ողորմածս այս՝ որ ողորմեցաւն 'ի վերայ Բերհադադու անօրինի և նզովելոյ, և վասն զի ոչ կամեցաւ Նաբովթ այր արդար տալ նմա զայգին իւր, զի արասցէ զնա պարտէզ սերմանեաց, և դիցէ 'ի նմա զկուռս և զմեհեանս, որպէս և Եսայի իսկ մարգարէ նախատէ զնոսա՝ եթէ “Զոհէին 'ի պարտէզս, և ուտէին զմիս խոզի ,, վասն սորին իրի զի

ոչ եղեն նորա կամք նուիրել զնուիրս չարեաց առ 'ի կորուստ անձին իւրոյ, և ուղղել զկուռսն մեհենիւքն համդերձ յայլոց վիճակի՝ զոր կամէրն առնուլ զբաժինն արդարոյ ժանտութեան և անօրէնութեան, դայ մտանէ 'ի տունն իւր մեծաւ տրտմութե. մտանէր առ նա և Իզաբէլ քաղաքանիկ արքանեակ սատանայի՝ նուիթիչն մեղաց և անօրէնութե. և ընդ նա և Իզաբէլ խորհուրդ առեալ 'ի մէջ երկոցունց՝ երկուք յերկուց մատուցեալ գրէին զթուղթն խարդախութե քարկոծել զՆաբովթ համդերձ որդւովքն վասն վիճակին ժառանգութեան արդարոյն, որում ակն եդեալ կոգչէին 'ի նմանէն զժառանգութիւնն. որ փոխանակաւն և սպառսպուռ գնովքն ոչ կամեցաւ տալ նմա, ձրի՝ իբրև ժառանգորդաց Նաբովթայ դարձցի առ նոսա: Արդ թէ և արգել Նաբովթ՝ այր արդար՝ զայգին, համարեա իբրև զԲերհադադ՝ որ ասացն ցնա, եթէ "Կանայք քո և որդիք քո իմ են": Արդ եթէ զայն՝ որ մեծն էր՝ թող[1] Բերհադադու օտարին, զայն՝ որ փոքրս էր՝ ոչ թողոյր նա արդարոյն՝ ազգակցին իւրում:

Իսկ իբրև էջ Աքաաբ խրատուն Եզաբէլի ժառանգել զայգին, որոյ տեարքն իւր քարկոծեալք էին, առաքեցաւ Եղիա և խայտառակեաց զգործն ամօթոյ. որ թուէր նոցա եթէ նոքա միայն միայնուկ երկուք յերկուց գիտեն զնա: Ասէ ցնա. "Ահա սպաներ և ժառանգեցեր". և ահա Իզաբէլ ինքն սպան և ժառանգեաց: Զի եթէ ոչ հաղորդեալ էր 'ի սպանմանն անդ, ոչ զրկէր նա 'ի ստուգութենէն՝ որ քաւիչն է զրկելոց: Իսկ իբրև եդ զդատավաճիռն մարգարէն, և եդ զտունն նորա յաւեր յանմարդի, և զնա և զկին նորա շանց, վասն զի ոչ էր անդ մնասակարն նորա, ապաշխարեաց նա և պատառեաց զզգեստ իւր: Իսկ ած որ ետ զհաւանութիւն Եղիայի փոխանակ ժողովրդեանն 'ի Քորեբ, դարձաւ ետ նմա հաւանութիւս փոխանակ Աքաաբու յԵզրայէլ: "Տեսեր դու, ասէ, զի ամաչեաց Աքաաբ յերեսաց իմոց": Արդ վասն քրձազգած լինելոյն և բոկ գնալոյն նորա

1 Յօրինակին Թողէր:

ոչ ածից ես զչարիս՝ զոր ասացի 'ի վերայ տանն նորա զաւուրս կենաց նորա, այլ յաւուրս որդւոյ նորա ածից ես զչարիս 'ի վերայ տանն Ախաաբու, եթէ թերեւ լուէ զդատավճիռս զայս եւ ոչ ապաշխարէ առաջի իմ։

Յետ այսորիկ մատուցանէր Ախաաբ զհաւանութիւն Յովսափատ արքայի, զի երթիցէ ընդ նմա 'ի Հռամաթ Գաղաադ, զի բռնաբարեաց հան 'ի նմանէ Բերհադադն այն զոր ապրեցոյցն։ Ասէ ցնա Յովսափատ. "Հարց տերամբ, եւ եթէ հրամայէ, գամ ես"։ Արդ մատուցեալ Ախաաբ հարցանէր ցչորեքհարիւր մարգարէսն Բահաղու, եւ ետուն նմա հաւանութիւն՝ զի երթիցէ։ Յաւել դարձեալ Յովսափատ, եւ խնդրեաց մարգարէ ճշմարտութեան։ Ասէ ցնա Ախաաբ. "Կայ աստ մարգարէ մի Միքա անուն՝ որդի Ամղեայ. բայց ես ատեցի զնա, զի ոչ մարգարէանայ 'ի վերայ իմ զբարի ինչ"։ Ասէ ցնա Յովսափատ. մի այդպէս ասեր արքայ եւ զրպարտեր զնա. առաքեաց զքեզ երկիցս անգամ 'ի վերայ թագաւորիս այսորիկ եդովմայեցւոց, եւ սակաւուքն յաղթեցեր զախուրսն որ ընդ նմայն էին. եւ եթէ զբան նորա լուեալ էր քո, եւ սպասեալ էր զԲերհադադ յառաջին պատերազմն, ահա եւ զքեզ եւ զմեզ արգելեալ էր քո յայսմ պատերազմէ։ Առաքեաց Ախաաբ ներքինի մի, զի հաւանեցուսցէ զնա, որպէս զի միաբանեսցի եւ նա 'ի բանին զոր ասացին չորեքհարիւր մարգարէքն Բահաղու. եւ ասասցէ նա թերեւ զնոսա։ Իսկ Միքա քանզի ցարդ եւս ոչ գիտէր զպատգամն տեառն զինչ իցէ, սահմանեաց զանձն իւր ընդ երդմամբ, եւ ասէ յանդիման ներքինւոյն՝ որ մատուցեալ տայր նմա զհաւանութիւն, եթէ "Կենդանի է տէր, բայց եթէ զոր ինչ ասասցէ ցիս տէր՝ զայն ասացից"։

Իսկ իբրեւ եկն մարգարէն առ Ախաաբ, եւ եհարց ցնա. "Արդարեւ ասա, Միքա, դու զի՞ ասես. երթիցո՞ւք 'ի մարտ պատերազմի եթէ ոչ. օրէ՞ն իցէ, պաշա՞ճ իցէ, լա՞ւ իցէ, բարւո՞ք իցէ. դու զի՞ ասես ըստ պատգամացն տեառն"։ Նա վասն զի ոչ յայտնեցաւ տէր 'ի վերայ մարգարէին ցարդ եւս, ասաց ըստ բանին նորա. "Երթ, ասէ, որպէս եւ կամիս. եւ մատ-

նեսցէ զնոսա տէր 'ի ձեռս քո, արքայ”: Իսկ Աքաաբ վասն զի կարծեաց եթէ զայս ևեթ կալաւ յանձին ասել հաւանութեամբ ներքինւոյն՝ որ չոգաւ զնմանէն, մատեաւ երդմնեցուցանել զնա բազում անգամ առ 'ի հաճել զմիտսն Յովսափատու: “Գէն քո, ասէ, փարելի քո. մի զայլ ինչ ասեր, այլ զճշմարիտն՝ որ արդարն է”: Իսկ մարգարէն իբրև ստիպեցաւ ասել զճշմարիտ զրոյցն, եղև 'ի վերայ նորա տեսիլն հոգւոյ վասն մահուն Աքաաբու, և վասն ցրուելոյ ժողովրդեանն, և ասէ. “Տեսի ես զԻսրայէլ զի ցրուեալ 'ի փախուստ դարձեալ 'ի վերայ լերանց իբրև խաշինս՝ որոց ոչ գուցէ հովիւ: Խօսել կալաւ տէր և ասէ. ոչ գոյ արքայ այսոցիկ. դարձցի ամենայն մարդ յիւրաքանչիւր տեղիս խաղաղութ՟”: Իսկ իբրև վառեցաւ Աքաաբ ցասմամբ 'ի վերայ մարգարէին, կրկնեցաւ անդէն տեսիլն առ նմին: Եւ փոխանակ զի ծածկեսցէ զէրան 'ի սպանողէն մարգարէից իւրոց ընկերացն, փութացաւ յայտնեաց զնա առաջի կորուսչին իւրոյ հաղորդակցացն: “Տեսի ես, ասէ, զտէր զի նստէր 'ի վերայ աթոռոյ, և հրեշտակք կային ընդ աջմէ և ընդ ահեկէ նորա: Խօսել կալաւ տէր և ասէ ցնոսա. ով 'ի ձէնջ հրապուրէ զԱքաաբ, զի ելցէ և անկցի 'ի Հռամաթ Գաղաադ”: Իսկ այս՝ զոր ասէս՝ թէ սա ասաց այսպէս, և միւսն ևս նոյնպէս, նոքին իսկ են կողմանքն երկոքին երկոցունց դասուցն. զի ասէին՝ եթէ ոչ հրապուրեսցք մեք զնա, զի մի ելցէ և մեռցի 'ի մեղս իւր. Ճշմարիտ եմք մեք խնդացողք, ուրախ եղեալք ընդ ապաշխարօղս. և չեղեալ մեր երբէք սուտք կորուսիչք մեղաւորաց:

Իսկ իբրև փորձեցան անցին 'ի հանդիսի կողմանքն երկոքեան երկոցունց դասուցն 'ի ձեռն հարցուածոցս այսոցիկ, և մի ոք 'ի նոցանէն յամենեցունց ոչ կալաւ յանձին ընտրել իւր զայս, ահաւասիկ այս չար մուտ և կաց առաջի տեառն՝ իբրև ոչ կամեցաւ, և ասէ. “Ես աւասիկ, տէր. ես պատրեմ և հրապուրեմ զնա”: Եւ զի ցուցցէ և յայտ արասցէ ամ՟, եթէ զոր օրինակ հեռի է 'ի մտանելոյն նորա, այնու՝ զի իբրև ոչ կոչեցաւ և եկն յատեան հարցուկն, սոյնպէս հեռի է և 'ի խորամանկութենց նորա: Հարցա

նէ ցնա և ասէ . «Զի՞նչ այն ինչ իցէ որով իւիք հրապուրեսցես դու զնա . Եւ պատասխանի և ասէ . Ես ելից և եղէց հոգի անօրէնութեան ստութեան խաբէութեան 'ի բերան ամենայն մարգարէից նորա : Ասէ ցնա տէր . զի եթէ մոլորութիւն զոր ընտրեալն է իւր Ախաբու՝ մոլորեցուցանես զնա ; կարես դու և առնելոց ես , ել և արա սոյնպէս» : Այս ինքն , ել 'ի հրապուրել , և ոչ 'ի հնազանդել և 'ի հաւանեցուցանել և ոչ վարել բռնի :

Արդ իբրև պատմեաց Միքիա զտեսիլն , ապա մեկնեաց համառօտիւ և ասաց , թէ տէր ետ զհոգին անօրէնութեան 'ի բերան մարգարէից քոց : Բայց սակայն տէրն որ ասաց 'ի վերայ քո զչար 'ի բերան մարգարէից քոց , ինև բարի արար առ քեզ : Քանզի ցոյց քեզ ինև որ ինչ խորհուրդ խորհեցաւ վասն քո , զի եթէ արգելցիս և զտեղի առցես 'ի պարտուցն և 'ի մահուանէն Հռամոթ Գաղաադու , կարձեալ լինիս և ապրիս : Իսկ Ախաաբ փոխանակ շնորհ ունելոյ Միքիայի , զի արգել զնա 'ի մահուանէ , և զմարգարէսն նորա 'ի սրոյն սուսերի , և զԻզաբէլ յայրութէ , առմատնեաց զնա 'ի բանտ բաստարանին , իբրև տային ուտել նմա զռոճիկ նեղութեան , և տային ըմպել նմա ջուր չոր առ վատէ ոգեպահ առ ոգւոցն ունելոյ : Զի զոր ինչ ոչ կարաց առնել նմա յառաջ քան զերթալն իւր վասն Յովսափատու , արասցէ նմա յետ դարձին իւրոյ , յորժամ չուեսցէ և գնասցէ առ 'ի նմանէն Յովսափատ : Եւ զի ասաց . «Եթէ դառնաս դու խաղաղութեամբ , այլ ոչ խօսի յիս տէր» . զի երկեցուացէ զնա և արգելցէ , զի մի երթիցէ : Եւ զի ասաց՝ եթէ «Լուարուք ամենայն ազգք» , զազգն Յուդայի և զԻսրայէլի՝ որ ժողովեալն էին՝ կոչեաց ազգս : Արդ 'ի ժամ պատերազմին զահի հարեալ երկնչէր Ախաբ . և վասն խղճին մարգարէութեանն՝ որ եղև 'ի վերայ նորա , այլակերպի և մտանէ 'ի մարտ պատերազմի : Եւ վասն զի թուեցաւ նմա եթէ այլակերպութիւն ապրեցուցանէ զնա 'ի դատաւճռէն , զոր ասաց 'ի վերայ նորա տէր 'ի ձեռն մարգարէին , և ահա այր մի մատուցեալ ձգէր նետ 'ի մտաց իւրոց հանդարտագոյն մտադիւրութեամբ խառն 'ի խուռն հեբրայե-

ցուցին՝ որ փախստեայն երթային յերեսաց նոցա. և հար զԱխաբ ընդ օդս զրահիցն : Վասն զի յուսացաւ 'ի նա. զի թէպէտ և եկեսցէ, ասէ, նետն, սակայն զրեայքն իւր պահեն զնա : Մեռաւ երեկորի, որպէս զի եղիցի տեղի շանցն 'ի գիշերի լափել զարիւն նորա, և կատարեսցին նմա մարգարէութիւն Եղիայի մարգարէի :

## ԳԼՈՒԽ Գ

Յետ այնորիկ թագաւորեցաւ Ախազիա 'ի վերայ Իսրայէլի. և հիւանդացաւ յախտ մեծ, և առաքեաց գիտել 'ի Բեեղզեբուղ կռոցն Ակկարոնի, եթէ արդարև ողջանայցեմ ես : Եւ եկն պատահեցաւ նոցա Եղիա, և առաքեաց 'ի ձեռն նոցա առ տէր իւրեանց, եթէ վասն սորին իրիս վասն որոյ առաքեցեր դու գիտել ճշմարտել, մահու մեռջիր : Իսկ նա փոխանակ զղջանալոյ և երկնչելոյ, յարեաւ յղեաց զնորմանէն յիսնապետ մի յիսնիւք հանդերձ՝ ածել սպանանել զԵղիա : Եւ վասն զի սոքա և ընկերք իւրեանց 'ի նոցանէն էին, որք տեսին զհուրն իբրև էջ՝ և ոչ ապաշխարեցին, այրեաց զնոսա իջանելովն հրոյ կրկին անգամ : Իսկ զերրորդն վասն ապաշխարութեան իւրոյ կեցոյց հանդերձ յիսնիւքն : Արդ եկն էջ Եղիա ընդ երրորդումն առ Ախազիա, և եդ 'ի վերայ նորա զդատավճիռն մահու, իբրև կային առաջի նորա ընտանիք և նախարարք իւր. և մեռաւ նա անդէն վաղվաղակի, և թագաւորեցաւ Յովրամ զկնի նորա :

Եւ եղև զի վերացուցանէր տէր զԵղիա, և փորձեաց զաշակերտն իւր, այսու՝ զի ասաց ցնա՝ եթէ “Կա՛ց մնա՛յ ինձ աստ, վասն զի տէր առաքեաց զիս 'ի Բեթէլ և յԵրիքով և Յորդանան„ : Արդ եկին որդիք մարգարէիցն 'ի Բեթելայ և յԵրիքովէ, և յայտնեցին նմա վասն վերանալոյն այնորիկ. զի և ոչ 'ի նմանէն իսկ ծածկեալ էր : Իսկ իբրև արգել զնա երիցս անգամ, և ոչ կաց և զտեղի առ ուրեք, ասէ ցնա իբրև բաժանէր զՅորդանան և անց յայնկոյս. “Խնդրեա, ասէ, զինչ արարից քեզ„ : Ասէ ցնա. “Եղիցի

հոգւոյդ քո կրկին անգամ 'ի վերայ իմ"։ քանզի այն՝ որ էր 'ի քեզ, այս ինքն գործովքն և արդեամբք հոգւոյն, զինչ արար քև՝ արասցէ և ինև 'ի ժողովրդեանն։ Ասէ ցնա. կարի մեծ խնդրեցեր զնեղութիւն ժողովրդեանն. բայց արդ եթէ տեսցես զիս իբրև վերանամ ես 'ի քէն, արժանի է ժողովուրդն նեղութեցս այսոցիկ, և տուեալ լինի քեզ խնդիրն զոր խնդրեցերդ. ապա թէ ոչ տեսցես զիս, խնայեն 'ի վերայ նոցա շնորհքն, և արգելու և ոչ տայ քեզ զոր ինչ խնդրեցերդ։

Եւ մինչ դեռ նոքա խօսէին, և առեալ տայր նմա հրաման, որպէս և ամենայն արդարք որդւոց իւրեանց պահել զպատուիրանս տեառն, յափշտակեցաւ նա 'ի կառս հրեղէնս. և ճչեաց Եղիշա և ասէ. "Հայր իմ, հայր իմ, կառքդ Իսրայելի և հեծեալք նորուն". վասն զի աղօթիւք նորա առնուն զքաջութիւս յաղթութեան հեծեալք և սպառազէնք քաջամարտիկք Իսրայելի։ Առ նա զմաշկեակն, և 'ի ձեռն մաշկեկին՝ որով բաժանեաց զՅորդանան, յայտ եղև և երևեցաւ որդւոցն մարգարէից Երիքովի՝ եթէ բնակեցաւ հոգին վարդապետին իւրոյ 'ի վերայ նորա։ Եւ զի ասացին որդիքն մարգարէիցն ցԵղիշա, եթէ երթիցեն խնդրեսցեն զվարդապետն քո, գուցէ թէ առ ընկէց զնա հոգին 'ի լերինս և 'ի ձորս, որպէս և առաքեաց զնա 'ի ձորն Քաղխաղու և 'ի Քորեբ լեառն, թոյլ տայր նոցա Եղիշա, զի նոքա անձամբ անձանց տացեն զհաւանութիւն, և նոքօք ժողովուրդն ամենայն հաւատասցէ[1], եթէ Եղիա յերկինս վերացաւ։

Իսկ որդիքն մարգարէից Երիքովի իբրև տեսին զբաժանել գետոյն Եղիշայի, խնդրեցին 'ի նմանէն զի օրհնեսցէ նոցա 'ի ձեռն հոգւոյն զջուրսն՝ զոր անէծ Յեսու հոգւով. վասն զի թէպէտ և շինեաց զնա Աքաբ, սակայն զանէծս նորա ոչ կարաց առնուլ 'ի նմանէն. զի վասն այսորիկ ասացին ցԵղիշա. զի թէպէտ և նիստ գեղջս գեղեցիկ և ցանկալի է աչաց տեսանելոյ, այլ ջուրքս չար են, և երկիրս թափուր մար-

1 Յօրինակին կատարեսցին. եդաւ ըստ լուսանցին։

դաթափ նուաղեալ 'ի բնակչաց իւրոց ։ Եւ ասէ ցնո-սա Եղիշա. "Բերէք առ իս կուժ մի նոր, և արկէք 'ի նա աղ"։ խորհուրդ Մարիամու, զի նորոգապէս յղացաւ Քրիստոս յարգանդի նորա ։ Եւ զջուրսն զոր անէծ Յեսու, օրհնեաց զնոսա. խորհուրդ տեառն Յեսուայ ։ Եւ այլ ոչ եղև անդ յետ օրհնութեանն վաղամեռ և անձնեռ, որպէս և յառաջ քան զօրհ-նութիւնն ։

Իսկ իբրև ելանէր նա ընդ զառ 'ի վերականն 'ի Բե-թէլ, ծաղէին այպանէին մանկտեակն զվերանալ վարդապետին նորա. և վասն զի զծաղանսն մանկը-տւոյն 'ի հարցն իւրեանց ուսեալ էր, և սոցուն դար-ձեալ քարոզեցին որդիքն մարգարէից որ էին 'ի գեօղ նոցա վասն վերանալոյն Եղիայի՝ և ոչ կալան յան-ձին, արդ այն՝ որ օրհնեաց զորդիսն Երիքովի, զի հաւատացին յոգին զոր ընկալաւ 'ի վարդապետէն իւրմէ, անէծ զմանկտեակն 'ի Բեթէլ, վասն զի այ-պանէին զվերանալ վարդապետին նորա. և կերան զնոսա արջքն՝ որ ելին յանտառէն՝ քառասուն և եր-կուս մանկունս ։ Եւ կատարեցաւ 'ի ձեռն այսորիկ բանն այն՝ որ ասացաւ բերանով վարդապետին նո-րա, թէ "Որ ապրեսցի 'ի սրոյն Յահուայ ; սպանցէ զնա Եղիշա"։

Եւ Միշա արքայն մովաբացւոց իբրև այր մի շպետ՝ տայր զհարկս խաշանց Իսրայէլի, և ապստամբեցաւ Յովրամայ որդւոյ Աքաաբու. և հաւանեցոյց զՅովսա-փատ և զարքայն եդովմայեցւոց, ելանել և տալ մարտ պատերազմի միմեանց օգնականութեամբ ։ Իբրև երթային յանապատի անդ, անցին զեւթն օր, և ջուր ոչ գտաւ ։ Արդ Յովսափատ՝ որպէս սովորն էր՝ սկը-սաւ ասել ցարքայն Յովրամ. "Չիք ոք աստ մարգա-րէ, զի հարցցուք զպատգամ տեառն 'ի նմանէն"։ եթէ խրատելով խրատէ զմեզ տէր, եթէ վասն կորըս-տեան մերոյ սաստակէ զմեզ ծարաւով ։ Պատասխանի ետ մի ոմն 'ի նոցանէն և ասէ. գոյ աստ ոչ Եղիշա՝ որ ընկալաւ զհոգին Եղիայի, այլ զի գոյ աստ պաշ-տօնեայն Եղիայի ։ Չոգան առ նա թագաւորքն ե-րեքեան ։

Իսկ իբրև ամաչեցոյց Եղիշա զՅովրամ, և յար-

գնաց գումեաց զՅովսափատ, խնդրեաց ձայնող, զի նա է գուրշ ուղտապանաց, և կամ քնար՝ որպէս և հեբրայեցին ասէ. զի 'ի ձայն բախելոյ նորա ժողովեսցին առ նա զօրքն ամենայն, և լուիցեն 'ի նմանէն իբրև մարգարէանայ վասն ջուրցն և վասն կոտորածի թշնամեացն նոցա. զի յորժամ եղիցի, մի տայցեն զնոսա բահաղու և կռոցն՝ որոց երկիր պագանէին։ Եղև 'ի վերայ նորա հոգի տեառն և ասէ. եղիցի ձորս այս, զի էր նա ձեպանցոյց ջուրց, գուբք գուբք։ Եւ իսկ և իսկ նոյնժամայն եղեն գուբքն, և պատրաստեցան ջուրցն՝ որ գալոց էին 'ի վաղիւ անդր։ Ընդ մերկանալն առաւօտու անդէն ընդ մարգարէութիւն ցոյց առ նմին զսքանչելիսն. զի զսքանչելիսն զոր տեսին աչք նոցա, երաշխաւոր լիցի նոցա վասն գալոյ ջուրցն՝ զոր լուան ականջք իւրեանց։

Իսկ իբրև եկին հասին ջուրքն, և արբին և ընդարձակեցան 'ի մեծ նեղուէն։ Մովաբացիքն իբրև տեսին ըզ ջուրսն, զի կարմրացեալ էին 'ի ձեռն ծագելոյն արեգականն՝ զի շողայր 'ի վերայ նոցա՝ վասն զի ոչ էր երբէք անդ բղխեալ ջուր, թուեցաւ նոցա՝ եթէ աստուածքն մովաբացւոց գրգռեցին զթագաւորսն և հանին զնոսա ընդ սուր միմեանց։ Արդ թագաւորն մովաբացւոց յառաջ քան զճշմարտել գիտել թէ արդարեւ արդ այս այսպէս իցէ, փութացաւ համարձակեաց զզօրսն յաւար. և վասն զի աւարել քարոզեցին նոցա և ոչ մարտնչել, և ժլատել և ոչ պատրաստել, մի մի 'ի նոցանէն զզէն անձին իւրոյ ընկենոյր յընկեր իւր, զի թեթևընթաց հասցէ 'ի բանակն հեբրայեցւոց. և այր քան զընկեր իւր ժլատեսցի յաւար անդր ժողովել յապուռ։

Արդ յարուցեալ զօրքն իսրայէլացւոցն վառեալք պատրաստեալք, և առանց աշխատութեան հանին ընդ սուր զզօրսն մերկանդամս մովաբացւոց։ Եւ եկին հասին դարձեալ յերկիրն նոցա, խլեցին զգեօղս, և ապականեցին զաղբերակունս, և կործանեցին զպարիսպս, մինչ զի արգել զնոսա կործանեալ քարինք նոցունց պարսպացն։ Իսկ իբրև ետես արքայն մովաբացւոց եթէ զօրացաւ զայրացաւ սաստկացաւ պատերազմն, և երթալ ապրել նմա առ թագաւորն

եդովմայեցւոց զօրքն Յուդայի և Իսրայէլի ոչ տային նմա թոյլ, առ զորդին իւր զանդրանիկ, և մատոյց զնա պատարագ 'ի վերայ մեհենին 'ի պարսպի անդ. և եղև բարկութիւն մեծ յԻսրայէլի ։

Այլ են ոմանք զի ասեն՝ եթէ կռոցն իւրոց զոհեաց զորդին իւր. և վասն զի ժուժկալեաց նա 'ի ժամ նեղութեան իւրում 'ի կուռսն իւր, դարձոյց ըզբարկութիւնն 'ի վերայ Իսրայէլի. այն զի և յանդորրութեան իւրում փոխանակէր զածն իւր ընդ դիւն օտարոտիս ։ Եւ են որ ասեն՝ եթէ վասն Իսրայէլի մատոյց զորդին իւր պատարագ 'ի վերայ պարսպին, զի տեսցեն և ցաւեսցէ նոցա վասն նորա, և չուեսցեն 'ի նմանէն ։ Եւ վասն զի մատնեցաւ Մովաբ 'ի ձեռս նոցա, և ոչ արարին 'ի վերայ նորա ողորմութիւն, վասն այնորիկ դարձաւ հարուածն 'ի վերայ ժողովրդեանն ։ Եւ են որ ասեն՝ եթէ զահի հարաւ և երկեաւ ժողովուրդն իբրև տեսին զարքայն՝ զի մատոյց զորդին իւր պատարագ 'ի վերայ պարսպին. և այս, ասէ, թերահաւատութիւն նոցա դարձոյց զբարկութիւնն 'ի վերայ նոցուն ։ Եւ արդ եթէ կռոցն իւրոց զոհէր զորդին իւր, 'ի բագնի կռոցն առաջի կռոցն իւրոց զոհէր զնա. և քուրմքն դարձեալ զոհէին զնա, և ոչ եթէ ինքն ձեռօքն իւրովք փողոտէր զնա 'ի վերայ պարսպին ։ Եւ զի փողոտեաց զնա 'ի վերայ պարսպին, ոչ եթէ վասն զի անխայեսցէ ժողովուրդն 'ի վերայ նորա. զի թէպէտ և զծուխն տեսանէր ժողովուրդն, այլ թէ ո լինէր զոհն՝ զայն ոչ տեսանէին. և ինքն դարձեալ արքայն վասն զինուն՝ որ զգեցեալն էր, և յերկիւղէն նեղից ընդ վահանաւոր սպասկօքն իբրև յառագաստի կայր, և ոչ երևէր նոցա իբրև փողոտէր զորդին իւր ։ Բայց համարեսցուք եթէ երևէր. մերձաւորացն երևէր նա, և ոչ եթէ ժողովրդեանն՝ որ ցրուեալն էր ընդ ամենայն կողմանս խլել և յաւարել յառ յապուռ ։

Այլ վասն զի ետես այս որդիս Ղովթայ զնշան ջուրցն՝ որ եղև յանապատի անդ, և գիտաց եթէ ածն այն՝ որ բղխեաց զջուրս 'ի վիմէ հարցն նոցա, նոյն ինքն ած նոցա ջուր ընդ Ճանապարհն Եդովմայ. և վասն զի ետես՝ եթէ չիք այլ զօրութիւն եթէ առ-

նիցէ զայսպիսի սքանչելիս, որպէս արար ա՟ծ Խորայէլի ժողովրդեան իւրում, թող նա զզուարակս և զխաշինս մատուցանել նմա պատարագ: Արհամարհեաց նա զկուռսն իւր, և անարգեաց զտաճարս դրօշելոցն իւրոց, և մատոյց զորդին իւր զանդրանիկ 'ի վերայ պարսպին՝ ա՟յն, որ արար զնոր ծոխն 'ի հին անապատի անդ: Իսկ ա՟ծ իբրև ետես՝ եթէ միով սքանչելեօքն ապաշխարեաց թագաւորն մովաբացւոց, և 'ի ձեռն անդրանկան սիրելւոյն իւրոյ՝ որ թագակալն էր արքայութեն նորա՝ խնդրեաց զի եղիցի անխայութի 'ի վերայ աշխարհի իւրոյ, դարձոյց զբարկութիւն 'ի վերայ Իսրայէլի. այնոքիկ՝ որ յետ սքանչելեացն Ջուրցն զոր ետեսին, սիրտք նոցա յորթս ձուլածոյս Յորոբովամու կապեալ կային:

Այնն դարձեալ 'ի կանանց որդւոց մարգարէիցն՝ որ մատեաւ առ Եղիշա, ասեն եթէ կին Աբդիայ էր, այն՝ որ 'ի սովի անդ փոխ առ 'ի շտեմարանաց անտի Աքաաբու, և կերակրեաց զհարիւր մարգարէսն. և հարկ եղև զի 'ի ձեռն մարգարէին հատուսցի պարտիքն՝ որ մթերեցան 'ի պատճառս մարգարէիցն: Եւ վասն զի մի երթիցէ զաւակն արդարոյ պաշտեսցէ զծառայութիւնն Աքաաբու, և 'ի պատճառս ծառայութեանն լծեսցին նոքա 'ի լուծ ձուլածոյ որթուցն, հրամայէ նմա խնդրել զանօթս և լնուլ զնոսա ջրով: Եւ զի ասաց, եթէ անօթն որ լի իցէ՝ զայն ինձ հանջիր; զնոյն իսկ զանօթս. զայս փոխեաց Եղիշա յեւղ. և զայլ անօթսն յայսմ իւղոյ արկ լից: Եւ իբրև ասացին մանկունքն՝ եթէ սպառեցան անօթքն յորս արկանէրն յայնմ իւղոյ, կաց անդէն և անդ իւղն. այս ինքն փոխեցան առ հասարակ ամենայն անօթքն միանգամայն յիւղ: Արդ ջրովքն՝ որ փոխեցան յեւղ և ապրեցուցին զազատ որդիսն, զի մի ծառայեսցեն 'ի ստրկութիւն մարդոյ, խորհուրդ մկրտութեն աւազանին նկարէր. այն՝ որ նովաւ ապրեցան հեթանոսք 'ի ծածուկ լծոյն անօրէնութեն:

Յետ այսորիկ մատուցեալ խորատէր կինն շիլովմացի [1] զայր իւր՝ ուղղել պատրաստել նմա վերնա-

1 Յօրինակին 'ի լուսանցսն սոմնացի:

տուն մի առ 'ի պատիւ սուրբ մարգարէին : Այն զի իբրև անցանէր նա ընդ այն ճանապարհ, առ նմա մտանէր նա : Իսկ սուրբ՝ զի ասաց, վասն կուսութեան իւրոյ կոչեաց զնա : Արդ կամեցաւ Եղիշա հատուցանել զսէր նորա, այնմիկ՝ որ օրհնեալն էր բարեգքն օրհնաց, և զրկեալ էր 'ի ծննդենէն՝ զոր օրհնեցին օրէնքն : Արդ խոստացաւ նմա որդի իբրև ոչ խնդրեաց 'ի նմանէն. և ետ նմա 'ի ժամանակի՝ յորում խոստացաւ : Իսկ իբրև հիւանդացաւ և մեռաւ որդին նորա, թաքոյց զնա. և առ արկ զնա 'ի մահիճս մարգարէին այ, և փակեաց զդուրս ընդդէմ նորա, և չոգաւ ոչ խնդրել 'ի նմանէն, այլ եպերել և աղերսել նմա : Իբրև ոչ, ասէ, խնդրեցի 'ի քէն որդի, և իբրև ասացի ես ցքեզ՝ եթէ մի խնդրեր ինձ, ընդէ՞ր առեր արկեր զիս յերկունս Եւայի, զի ազատեալ էի ես 'ի նոցանէն. և իշխեցուցեր 'ի վերայ իմ զմահ, յորմէ ապստամբեալն էի և չհամարէի ինչ զնա. քանզի 'ի պատճառս անիծեալ ամլութեան յերկոցունց 'ի սոցանէն հեռացեալ էի ես. զի վասն երկիւղին մահու ոչ խնդրեցի 'ի քէն որդի, և վասն ձաղանացն մոլորելոց՝ յորում կամ ես՝ ոչ գայի ես. ասացի ցքեզ՝ եթէ մի խնդրեր ինձ որդի : Արդ թէպէտ և լեզուով իւրով եպերէր զնա, այլ ունելովն զոտս նորա՝ զկեանս մեռեալ որդւոյն իւրոյ խնդրէր նա : Քանզի ոչ ցաւէր նմա այնպէս վասն մահու մանկանն, որպէս ցաւէր նմա վասն ձաղանացն զոր 'ի մարգարէիցն Բահաղու հանդերձեալ էր կրել :

Առաքեաց Եղիշա զԳեեզի, և ետ նմա զցուպն. զի եթէ արժանի է, եղիցի 'ի ձեռն նորա յարութիւն. և եթէ ոչ է արժանի, եպերեսցի անձամբ յանձին. վասն զի անարգեցաւ 'ի նմա զէնն մովսէսեան. զի թէպէտ մինչ գայր կինն ընդ առաջ նորա ոչ գիտէր նա, այլ կասկածելով կասկածէր նա. և վասն այնր ասաց “Ողջոյն ընդ քեզ և առն քում և մանկանն” : Իսկ իբրև կալաւ զոտս նորա, և մատեաւ Գեեզի 'ի բաց առնել զնա, ասէ ցնա. “Թոյլ տուր դմա, վասն զի անձն նորա դառնացեալ է, և տէրն՝ որ ծածկեաց յինէն յառաջ քան զժամն, արդ յայտնեաց ինձ յայսմ ժամու” : Իսկ մայր մանկանն իբրև ետես ե-

Թէ առաքեաց նա զԳեւեղի, ոչ հաւատաց եթէ կեցուցանէ զմանուկն. և ասէ. կենդանի է տէր եթէ ոչ թողից զքեզ. քանզի ոչ եթէ Գեւեղի ետ զնա ինձ յարգանդէ՝ զի յաւելցէ տացէ զնա ինձ և 'ի մահուանէ. դու խնդրեցեր և տուաւ ինձ՝ իբրև ոչ էրն նա, և դիւրին է տ̃յ քումտալ զնա ինձ 'ի ձեռն քո այժմ՝ զի է նա։ Իսկ իբրև տարաւ Գեւեղի զցուպն և եդ 'ի վերայ մանկանն, և ոչ եկեաց, տրտմեցաւ վարդապետն նորա, զի անարգեցաւ 'ի ձեռն աշակերտին իւրոյ. խորհուրդ խաչին՝ որ առաքեցաւ 'ի ձեռն նորա։ Իսկ Եղիշա թէպէտ և ոչ ցպովն խորհրդով խաչին կեցոյց զմանուկն, այլ ոչ եթէ առանց խորհրդոյն խաչին յարոյց և կենդանացոյց զնա։

Արդ փոքրկացաւ ըստ տղայոյն և կծուեցաւ 'ի վերայ նորա, զի նկարեսցէ զխորհուրդն անդրանկանն՝ որ փոքրկացաւն և խոնարհեցաւ, զի բաւական լիցի նմա ծոցն մարմնոյ կուսին։ Իբրև ջեռաւ դարձեալ մարմին մանկանն 'ի ձեռն առաջին խորհրդոյն զոր նկարեաց, դարձաւ միւսանգամ յայս կոյս՝ միւսանգամ յայն կոյս, զի նկարեսցէ զնացիւքն իւրովք այսր և անդր զյայտնի խորհուրդ խաչին. ապա մտին հոգիքն 'ի մանուկ անդր։ Եւ զի յորանջեցաւ եւթն անգամ, խորհուրդ եւթներորդ հազարին, զի նոնաւ կենդանանան ամենայն մեռեալք։

Ապա յետ այսորիկ խափանեաց 'ի ձեռն ալիւրոյն զմահն 'ի կաթսայէն, և յագեցոյց 'ի փոքր գարեղէն նկանակէն զհարիւր մարգարէսն, զի նկարեսցէ զխորհուրդն զայնորիկ՝ որ 'ի հինգ գարեղէն նկանակէն յագեցոյց զհինգ հազար այր. թող զկանայս և զմանկունս։

Դարձեալ Նեեմանն զօրագլուխն եդովմայեցւոց, զի նովաւ արար տէր փրկութ̃ի եդովմայեցւոց, այնու՝ զի սպան 'ի ձեռն նետին զԱխաաբ անօրէն՝ որ դէմ եդեալ մարտնչէր ընդ եդովմայեցիսն։ Եւ վասն զի 'ի ձեռն սպանմանն զոր սպանն, ելին յանդորր մարգարէքն՝ որ նեղեալ զօղեալ էին յայրսն, 'ի ձեռն Եղիշայի հատոյց զպարտիսն՝ զոր պարտէին նմա մարգարէքն՝ որ փրկեցանն։ Բայց առ սա ոչ եղ, վասն զի շաղախեալ էին ձեռք նորա արեամբ Ախաաբու արքային

իսրայէլացւոց. ետ նմա զբժշկութիւն վասն հաւատոցն իւրոց։ Եւ վասն զի ոչ էր հաղորդ միաբան սիրտն նորա ընդ նետին որ էլ հանդարտագոյն 'ի միջոյ մատանց նորա։ Արդ ոչ եթէ վասն զի մի պղծեսցի նովաւ՝ ոչ էլ առ նա, այլ վասն զի յայտ արասցէ և ցուցցէ զհամբերութիւն հեթանոսաց։ Եւ զի ասաց ցնա, եթէ "Մկրտեսցի եւթն անգամ"։ զի արգելցէ զնա ընդ օրինօքն սրբութեան քորոտին, այն՝ որ արգելեալն էր ընդ պղծութեամբք քորոտին։ Եւ զի եւթներորդ անգամաւն ազատեսցի 'ի ծառայութենէ քորոտութեան, իբրև ծառայ հեբրայեցի՝ որ յեւթներորդ ամին ազատէր նա ըստ օրինացն 'ի յայտնի ծառայութենէն։

Արդ եկն Նէեման իբրև սրբեցաւ, և ետ Եղիշայի արծաթ և ոսկի և զգեստս. և ոչ ընկալաւ՝ զի 'ի ձեռն այնորիկ նկարեսցէ զխորհուրդն բժշկութեան, զի ձրի առանց գնոյ տուեալ լինի 'ի տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ ամենայն աշխարհաց 'ի ձեռն առաքելոց։ Խնդրեաց դարձեալ հող՝ առ 'ի կորանս ամաչեցուցանել զիսրայէլ. զի օտարն հաւատաց եթէ և 'ի հողն երկրին բնակեալ է Աստուած, զոր ինչ հեբրայեցիքն և ոչ 'ի մարգարէսն հաւատացին՝ եթէ բնակեալ է Աստուած։ Արդ ընթացաւ ձեպ 'ի ձեպոյ Գեեզի աստանդել շփոթել զճշմարիտ խորհուրդ վարդապետութեան, և ասէ ցնա, եթէ "Տէր իմ առաքեաց զիս վասն քանքարոյ միոջ արծաթոյ և երկուց պատմուճանաց"։ Քանզի յայնմանէ իսկ զի ստիպեաց զնա՝ և առ երկուս քանքարս փոխանակ միոյն, անդէն իսկ առ նմին բասրեաց զնա, և զծածուկ ժլատութիւն նորա յայտնի փոփոխելով բանի նորա։ Ետես, հարց ցնա վարդապետն իւր. "Ուստի՞ գաս Գեեզի"։ զի եթէ զղջասցի և խոստովանեսցի, թողցի նմա. ապա եթէ ուրասցի, պարտ և պատշաճ է զի ընդ արծաթոյն Նէեմանու՝ զոր առ նա 'ի ծածուկ, զի և զբորոտութիւնն Նէեմանայ զգեցցի յայտնապէս։

Յետ այսորիկ իբրև հատանէին զփայտն որդիքն մարգարէիցն, անկաւ փայտատ միոյն 'ի նոցանէն 'ի գետն անդր. և ճչեաց և ասաց. "Ահա վայ, յայլմէ

մուրացեալ էր ծառայի քո»։ Հատ Եղիշա փայտ մի, և արկ ընդ նոյն տեղի 'ի լող. և եհան երկաթն, և ընկղմեցաւ փայտն. զի նկարեսցի խորհուրդն տեառն մերոյ, որ էջն 'ի դժոխս, և հան արտաքս 'ի միջոյ նորա զԱդամ՝ որ ընկղմեալ կայր 'ի խորս նորա։

Յետ այսորիկ պաշարեցաւ Շամրին 'ի Բերհադադայ, այն՝ զոր կեցոյց Աքաբ արքայ, և տիրեցաւ սով 'ի քաղաքի անդ, մինչ զի կերան կանայք զորդիս իւրեանց։ Արդ փոխանակ զի տրտմեցի Յորոբովամ որդի Աքաբու, և զայրացի 'ի վերայ Աքաբու հօր իւրոյ՝ որ կեցոյց զնա, հատանել զգլուխն Եղիշէի ձեպեալ ընթանայր նա։ Մարգարէացաւ նա 'ի նմին ժամանակի վասն յագութեան, և ոչ հաւատաց նմա սպայազնն՝ որ առաքեցաւ ունել զնա. և ետես աչօք իւրովք, և ոչ ճաշակեաց 'ի նմանէն ըստ անիծիցն Եղիշայի՝ որ եղև 'ի վերայ նորա։

Յետ այսորիկ առաքեցաւ մի ոմն 'ի մարգարէիցն օծանել զՅեհու՝ իբրև ոչ գիտէր զնա. և իբրև ետես զզօրագլուխն և ասաց, «Բան ունիմ ես ընդ քեզ մեծիդ», պատասխանի ետ Յեհու և ասէ. «Յո՞ 'ի մէնջ ամենեցուն». ապա գիտաց մարգարէն եթէ նա ինքն է. վասն զի զայս նշան խնդրեաց նա, զի երևեսցի նա և յայտ լիցի։ Տարաւ մոյծ զնա 'ի տուն՝ և օծ զնա և հրամայեաց նմա քինախնդիր լինել վրէժխնդրութեան 'ի տանէն Աքաբու։ Իսկ իբրև թագաւորեցաւ Յեհու, և սպան զՅովրամ զորդին Աքաբայ, արդ փոխանակ զի սգասցի Եզաբէլ վասն որդւոյն իւրոյ որ մեռաւ, 'ի նմին ժամու պառաւն խորշմերես[1] մատուցեալ սևացուցանէր զմազս աչացն առ բբօքն՝ ծարրօքն. և պաճուճէր յօրինէր զգլուխն երփն երփն ներկուածովքն գունակաց առ ճակատովն, որպէս զի տեսցէ զնա Յեհու և ցանկասցի և առցէ զնա կնութէ։ Բայց ստիպեցաւ ակամայ կամօք. և փոխանակ ողջունին՝ որ պատրաստեալ էր տալ նմա, անարգեաց և թշնամանեաց զնա, և ասէ ցնա. «Ողջ եկ Զամբրի սպանող տեառն քո»։ Բորբոքեաց զնա այսու բանիւ 'ի բարկութիւն. զի 'ի նմանէն և յորդւոց նորա ա-

1 Միւս օրինակն ծմերես։

բասցէ զվրէժխնդրութիւն , որպէս արար յանդրանիկ որդւոյն նորա զոր սպանին : Եւ զի ասաց՝ եթէ «Ցերեկ-կայի տեսի ես զարիւն Նաբովթայ և որդւոց նորա», կամ թէ զմտաւ ինչ ածէր վասն որոյ երկեք խօսեցաւ ընդ նմա , և կամ թէ ՚ի տեսլեան յայտնեաց նմա՝ զի կանխեսցէ և արասցէ զվրէժխնդրութիւնն ՚ի վա-ղիւ անդր :

Արդ գրեաց առ որդիսն Շամրնի . կամ թագա-ւորեցուցանել զմի ՚ի յորդւոցն Աքաբու , և գալ ու-նել զդէմ նորա ՚ի մարտ պատերազմի , և կամ հա-տանել և տալ բերել առ նա զգլուխս եւթանասուն որդւոցն արքայի : Իսկ հատին և ետուն բերել , և կուտեցին զնոսա երկուս կոյտս , խօսել կալաւ Յա-հու և ասէ . զի եթէ ես ապստամբեցայ ՚ի տեառնէ իմմէ և սպանի զնա , զի առից զթագաւորութիւն նո-րա , որպէս և Իզաբէլն ասաց , զորդիս արքայի ո՞վ ըս-պան . զի ահա դայեակք իւրեանց սպանին զնոսա : Եւ կատարեցաւ առ նոսա բանն Աստուծոյ՝ զոր ա-սաց ՚ի ձեռն Եղիայի մարգարէի , թէ «Մի՛ մնասցէ Աքաբու որ դառնայցէ յորմ և հեղուցու ջուր . և որ կապեն և որ արձակեն յԻսրայէլէ» . այս ինքն մի՛ մնասցէ ՚ի տան նորա ՚ի մարդոյ մինչև ՚ի շուն : Յայնմ ժամանակի եղև վրէժխնդրութիւն և յԵրուսաղէմ ՚ի Գոթողիա քեռոյն Աքաբու . զի սպան զորդիս որ-դւոյն իւրոյ , և թագաւորեցաւ փոխանակ նոցա . որ-պէս զի ընաւ մի՛ մնասցէ մնացորդ յանօրէն ազգէն Աքաբու :

Արդ հիւանդացաւ Եղիշա . և եկն առ նա արքայն Իսրայէլի , և ելաց առաջի նորա . նա հատոյց վաղվա-ղակի զվարձս արտասուաց նորա : Եւ պատասխանի և ասէ ցնա . «Առ զաղեղն , և արկ զնետ ՚ի լար անդր» : Եւ եդ Եղիշա զձեռս իւր ՚ի վերայ ձեռացն արքայի . որպէս զի ՚ի զօրութենէն՝ որ բնակեալն էր ՚ի ձեռս մար-գարէին հիւանդի , հզօրասցին թոյլ և լոյծ ձեռքն արքայի կատարել զեղոմ , այն որ կոտորեացն և սպա-ռեաց զժողովուրդն . քանզի յիսուն սպառազէն և տասն կառք մնացին նոցա . այնոցիկ՝ որ յաւուրս Սա-ղոմոնին քառասուն հազար ասպաստան երիվարաց էր նոցա : Արդ հարց մարգարէն ՚ի սրտի իւրում զայն ,

թէ քանի՛ անգամ ձգեսցէ արքայն զնետն իւր ընդ պատուհանն՝ զայսչափ կոտորած կոտորեսցէ յԵդոմ։ Իսկ իբրեւ ձգեաց երիցս անգամ եւ եկաց, բարկացաւ Եղիշա. վասն զի ետես եթէ ոչ կարէ երիցս անգամ փոքր զօրուն սատակել զեդովմայեցիսն։ Իսկ իբրեւ եհար վանեաց զնոսա երիցս անգամ, եւ սկսաւ յաղթահարել, ապա գիտաց եթէ բարուք եւ յարժանի ցասեաւ ընդ նմա մարգարէն այ։ Քանզի հոգւովն գիտաց եթէ ոչ կարէ երիցս անգամ կոտորել սպառել զեդովմայեցիսն։ Քանզի յաւուրս Ախիմ արքային իսրայելացւոց եկն Փուա արքայ ասորեստանի, ետ նմա Նախինիմ[1] հազար քանքար արծաթոյ, զի կալցի զթագաւորութիւն 'ի ձեռն իւր։ Եւ յաւուրս Փակեայ թագաւորին իսրայելացւոց եկն Թագղաթփաղասար արքայն ասորեստանի, եւ գերեաց զերկիրն Նեփթաղիմեայ. այս ինքն զտունն Հռուբէլի եւ Գադայ եւ զկէս ազգին Մանասէի։ Եւ որ ամ իննն էր Հոշեայ արքայի, հար վանեաց Սաղմանասար արքայն ասորեստանի, եւ կացոյց զՇամրին 'ի ծառայութիւն, եւ գերեաց զամենայն Իսրայէլ յասորեստան, բաց յազգէն յուդայեանն։ Արդ եկ համարեաց յայսմ վայրի զամենայն կուռս օտարոտիս նոցա, եւ զի քանի անգամ բարկացուցին զնա նոքա եւ թագաւորք իւրեանց, որպէս զի եղիցին առ 'ի պատասխանի տալ ստուգութեան՝ որ գերեաց զնոսա։

Դարձեալ յամին չորեքտասաներորդի Եզեկիայ արքայի եկն եհաս Սենեքերիմ 'ի վերայ Երուսաղէմի, եւ առաքեաց առ նա Եզեկիա, “Մեղայ ես, ասէ, զի ապստամբեցի 'ի քէն. դարձ համարեա, եւ զոր ինչ արկցես 'ի վերայ իմ, բարձից„։ Եւ արկ 'ի վերայ նորա երեքհարիւր քանքար արծաթոյ, եւ երեսուն քանքար ոսկւոյ։ Եւ ետ նմա. անդէն եւ անդ 'ի բաց գնաց։ Եւ ստեաց Սենեքերիմ յուխտիս յայսմիկ, եւ դարձաւ առաքեաց 'ի վերայ նորա զտակառապետն. անկաւ կոտորեցաւ անդէն նոյն ինքն տակառապետն, եւ ամենայն զօրք բանակի նորա։

Յետ այսորիկ թագաւորեաց զկնի Եզեկիայի

1 Յօրինակին 'ի լուսանցան Մանայիմ։

Մանասէ. և վասն զի մեղաւ առաւել քան զամենայն թագաւորս, որ կացեալ էին 'ի Յուդայ, ասաց տէր՝ եթէ "Արկից 'ի վերայ Երուսաղէմի զլարն Շամրնի, և զկշիռն Ախաբու„. յայտ արար և եցոյց՝ եթէ զոր օրինակ աւերեցաւ Շամրին 'ի ձեռաց Սաղմանասար արքայի, և տունն Ախաբու 'ի ձեռաց Յաւհուայ, նոյնպէս աւերեցից զԵրուսաղէմ 'ի ձեռն Նաբուքոդոնոսորայ բաբելացւոց: Արդ համարեցաւ յայսմ վայրի զանօրէնութիւնս Երուսաղէմի, որպէս և համարեցաւ զՇամրնին. զի տացէ պատասխանի վասն աւերածոյն Երուսաղէմի, որպէս և ետ պատասխանի վասն աւերածոյն Շամրնին: Արդ զնշանն զոր տեսաւ Յովսիա 'ի վերայ գերեզմանի մարգարէին՝ որ 'ի Հրէաստանէն էր, իբրև այրէր զոսկերս քրմացն. քանզի եթէ նա միայն կայր յամենայն գերեզմանացն՝ որ էին 'ի Բեթէլ, և կամ եթէ տեսիլ ինչ ետես 'ի վերայ գերեզմանին. զի իբր հարցցէ վասն տեսլեանն, երկրորդեցեն նմա զամենայն զխօսսն որ ինչ խօսեցաւ 'ի մարգարէից անտի՝ որ յայնմ գերեզմանի թաղեալ էին: Եւ զի գիտասցէ եթէ մարգարէութիւն խթէր զնա 'ի ծածուկ, զի յայտնապէս կատարեսցէ զբանսն իւր 'ի ձեռն գործոցն և արդեանցն: Եւ զի սպանաւ Յովսիա արդար յանօրէն Փարաւոնէ, մի՝ վասն զի վաղվաղեաց և ել 'ի պատերազմ իբր ոչ հարց ցա̃ծ. և երկրորդ՝ զի ժողովեսցի խաղաղութեամբ առ հարս իւր յառաջ քան զչարութիւն, որպէս և ասաց Խողդէ կինն մարգարէ: Քանզի յետ երից ամաց մահուն նորա ել Փարաւոն արքայն եգիպտացւոց, և արկ զհարկ 'ի վերայ երկրին նորա. և կապեաց զՅաւհովախազ, և տարաւ ընդ իւր յԵգիպտոս, և մեռաւ անդէն. և թագաւորեցոյց զՅովակիմ որդի իւր ընդ նորա:

Դարձեալ՝ որ ամ երկրորդ էր Յովակիմայ արքայի, եկն Նաբուքոդոնոսոր արքայ բաբելացւոց, և գերեաց զՅովակիմ և զդանիէլեանս, և թագաւորեցոյց զՅովաքին նորուն որդի ընդ նորա: Եւ յետ երից ամաց եկն Նաբուքոդոնոսոր կրկին անգամ և գերեաց զարքայն Յեքոնիա հանդերձ կանամբք և մեծամեծօք իւրովք, և զԵզեկիէլ մարգարէ, և զարս պատերազմօղս զօրու. և թագաւորեցոյց զՍեդեկիա հօրեղ-

հայր նորուն ընդ նորա ։ Դարձեալ յամին մետասաներորդի թագաւորութեան Ծեդեկիայ եւ նաբուքոդոնոսոր երրորդ անգամ, եւ այրեաց զտունն սրբութե̃, եւ հրձիգ արար զքաղաքն առ հասարակ, եւ խլեաց 'ի գերութի̃ զժողովուրդն յուդայեան ։

## ԿԱՏԱՐԵՑԱՒ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՑ

# ՍՐԲՈՅ՛Ն ԵՓՐԵՄԻ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

## Ա. ԵՒ Բ. ՄՆԱՑՈՐԴԱՑ

ՏԵԱՌՆ

# ԵՓՐԵՄԻ

ԽՈՐԻՆ ԱՍՈՐԻՈՑ

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԴՊՐՈՒԹԵԱՆ

## ԻԲՐԱՄԵՆՈՒ

ՄԱՏԵՆԱԳԻՐՆ դպրութեան իբրամենու, զի է մեկնութիւն նորա դպրութեան՝ վարուցն աւուրց Թագաւորաց Յուդայ, յարարածոց և Յեշովայ որդւոյ Նաւեայ, և յազգաց դատաւորաց, և 'ի Սամուէլէ և 'ի Դաւթայ, և 'ի թագաւորութենէ զօդէ յօդէ. և վասն այսորիկ թէպէտ և վասն սակաւ ինչ՝ զի գոյ 'ի սմա, որ ոչ ասացեալ է 'ի մարգարէս՝ ուրուք հասու եղաք մեք, պարտ և պատշաճ է զի հաւանեցուսցուք: Այլ վասն այնորիկ՝ որ յիւրաքանչիւր գիրս գրեալ են հաւանութիւք նոցա, ընդունել կրկին հաւանութիւս աստ ոչ է արժան: Զի թէպէտ և մատենագիրն՝ վասն զի արասցէ զկարգ պատմութեանցն իւրոց, հարկ եղև նմա՝ զի յամենայն գրոց որ ինչ յօգուտ և 'ի պատշաճ իցէ նմա՝ քերցէ, բայց սակայն մեք ոչ եթէ զկնի կարգելոյ և շարելոյ պատմութեանցն ընթանամք, այլ 'ի մեկնութիւն այնոցիկ՝ որ ինչ ծածկեալն է 'ի նմին պատմութեան, փութացեալ եմք հասանել: Արդ թոյլ տացուք մեք զայն ինչ, որ ինչ յայլում կողմանս մեկնեալ է մեր. և վասն սակաւուց՝ որ ինքն յինքենէ ունի առ իւր, վասն տոցուն

որպէս և արժանի արասցեն զմեզ շնորհքն, և որպէս պիտոյ իցէ տալ պատասխանի՝ տացուք ։

Արդ սկսաւ մատենագիրս այս գրել զազգս և ըզդարս յԱդամայ մինչև 'ի Նոյ. և գրեաց դարձեալ զազգս որդւոցն Նոյի, որք ընկալան զլեզուսն 'ի շինել աշտարակին. զի են որդիք Յաբեթայ հանդերձ Յաբեթիւ հնգետասան ազգ ։ Եւ որդիքն Քամայ հանդերձ Քամաւ երեսուն ազգ., թող զայլազգիսն և զկապպադովկեցիսն՝ որ էին 'ի նոցանէն ։ Եւ որդիքն Սեմայ, հանդերձ Սեմաւ քսան և ութ ազգ. զի են ընդ ամենայն միանգամայն ազգքն ամենայն հանդերձ այլազգեօքն և կապադովկեցւովքն եւթանասուն և հինգ ազգ ։

Գրեաց դարձեալ 'ի Սեմայ մինչև ցԱբրահամ, զի լինին տասն դարք ։

Եւ գրէ դարձեալ վասն որդւոցն Աբրահամու՝ որ 'ի Հագարէն և 'ի Քետուրայէն. զի ցուցցէ և յայտ արասցէ՝ թէ յառաջ քան զծնանելն որդւոցն Յակովբու և ընդունել զօրհնութիւն ելեալ էր 'ի ձեռն որդւոց սոցա օրհնութիւն ընդ հեթանոսս ։ Որդիքն Իսմայէլի հանդերձ Իսմայէլիւ երեքտասան լինին թուով. և որդիքն Կենդուրայ երեքտասան. իսկ որդիքն Իսաւայ հանդերձ Իսաւաւ քառասուն և երկու ազգք ։

Գրէ դարձեալ և վասն ութ թագաւորացն՝ որ թագաւորեցին յԵդոմ յառաջ քան չև էր թագաւորեալ թագաւոր 'ի վերայ Իսրայէլի. զի արդեւք ընդ նոսա նախանձեցաւ Իսրայէլ յաւուրս Սամուէլի՝ առնել իւրեանց թագաւորս ըստ ամենայն հեթանոսաց ։

Գրէ դարձեալ և վասն մետասան նահապետացն որք կացին յԵդոմ զկնի թագաւորացն ։

Գրէ դարձեալ երկոտասան ազգք յորդւոցն Յակովբու, և երկոտասան Յակովբայ մինչև 'ի Դաւիթ. այս ինքն 'ի Փարեսայ 'ի Դաւիթ համարեալ ։

Դարձեալ 'ի Դաւթայ մինչև ցՅեքոնիա արքայն, որ չոգաւն 'ի գերութիւն, ինն ու տասն ազգս ։ Իսկ իբրև համարէր զորդիսն Յեքոնիայ, որ 'ի գերութիւն չոգաւ, և հասանէ մինչև 'ի Զորոբաբէլ, որով դարձաւ գե-

բութիւն, և շինեցաւ տաճարն վերջին ։ Դառնայ դարձեալ գրէ զորդիսն Զորոբաբէլի, մինչ զի եկն և պատահեցաւ այնմիկ՝ յորոյ աւուրս գրեցաւ սոյն դպրութիս այս իբրամենու ։

Յետ այսորիկ գրեաց վասն նահապետացն ազգաց տանն Հռուբէլի, իբրև համարէ մինչև յԲեերիայ Լեներորդ. յորոյ աւուրս գերեաց Թագղաթփաղասար արքայն ասորեստանի զտունն Հռուբէլի և Գադայ և զկէս ազգին Մանասէի ։

Գրէ դարձեալ և վասն փրկութեանն՝ զոր արար նոցա յառաջ քան ոչ էր գերեալ զնոսա. զի մատնեաց 'ի ձեռս նոցա զայնոսիկ՝ որ բնակեալ էին 'ի վրանս քրձեղէնս. և կոտորեցին զնոսա, վասն զի ապաւինեցան 'ի նոսա, և կարդացին առ նա ։ Եւ ապա իբրև դարձան 'ի տեառնէ, գերեաց զնոսա ասորեստանեայն, և 'ի վերայ գետոյն՝ Գոզան գաւառին Պարթևաց տարաւ և նստոյց զնոսա ։

Յետ այսորիկ գրեաց զորդիսն Ղևեայ մինչև 'ի Մովսէս, զի նովաւ եկին նոքա յԵգիպտոսէ մինչև յԱզարիայ քահանայ, զի նա առաջին պաշտեաց 'ի տաճարին՝ զոր շինեաց Սողոմոն. և յԱզարիայէ համարին մինչև 'ի Յովսեդեկ[1], այն՝ որ յաւուրս նորա գերեաց տէր զորդիսն Յուդայ 'ի ձեռն Նաբուքոդոնոսորայ բաբելացւոց 'ի Բաբելոն ։

Յետ այսորիկ գրեաց վասն անուանցն ղևտացւոց զորդիսն Գեթսոնի և զորդիսն Ղևեայ, և վասն ղևտացւոցն որդիքն Ամինադաբայ՝ կայաթեանք և ղեւեանք, զի 'ի նոցանէ Շմուէլ մարգարէ. զի և սոքին իսկ կային 'ի պաշտաման ընդ աջմէ սեղանոյն ։

Գրէ դարձեալ զղևտացիսն զորդիսն Մերարեայ յիւրեանս, որք ընդ ահեկէ սեղանոյն ունէին զտեղիս իւրեանց առ 'ի պաշտաման ըստ իւրեանց կարգի ։

Յետ այսորիկ գրեաց վասն գիւղիցն զոր առին որդիքն Գեթսոնի և կայաթեանքն և մերարեանքն, Թող զգեօղսն ապաւինութեն՝ որ յամենայն ազգաց տուաւ նոցա ։

Համարեաց դարձեալ և զազգն Բենիամենի, և

[1] Ի լուսանցս օրինակին Սադովկ ։

կարգեաց և ած մինչև 'ի մահն Շաւուղի և որդւոցն նորա ։

Նոյ գրեաց վասն թագաւորութեանն Դաւթի 'ի Քեբրոն, և վասն գալոյն նորա յԵրուսաղէմ ։ Գրեաց և վասն նահատակութեանցն զոր արարին մի մի 'ի քաջամարտիկ պատերազմողացն նորա ։

Յետ այսորիկ ասաց և զթիւ զօրուն միոջ միոջ յազգաց անտի յիւրաքանչիւր գնդէ, զի ժողովեցան կացուցանել զԴաւիթ 'ի վերայ թագաւորութեան ։ Եւ զի է միահամուռ բովանդակ ընդ ամենայն թիւն նոցա երեքարիւր հազար և երեսուն և եւթն հազար և չորեքարիւր ։

Նոյ ասաց վասն գալոյն տապանակին յերկրէն այլազգեաց . և զի ձգեաց 'ի նա զձեռնն Ոզա քահանայ ուղղել զնա, իբրև դղրդեցաւ 'ի սայլակէ անտի անկանել . և սպան զնա տէր . վասն զի 'ի վերայ ուսոցն իւրեանց ասացեալ էր յօրինացն ցքահանայսն՝ զի բարձցեն զնա, և ոչ եթէ 'ի սայլակի իբրև զայլ անօթս վրանին՝ զոր բառնային՝ ասացեալ էր բառնալ զնա ։

Նոյ ասաց դարձեալ վասն օրհնութեանցն զոր օրհնեաց Դաւիթ զտէր, այն Դաւթին Ասափայ և եղբարց նորա, այնոցիկ՝ զի պսակ դասուցն նոցա պար առեալ գալոյն փառաւորէր Դաւիթ ընդ քահանայապետսն ։ Զայսոսիկ ասէր սկիզբն օրհնութեանց՝ զոր ասաց ոչ Դաւիթ և քահայապետքն, այլ Դաւիթ . զի թէպէտ և առ նմա էին 'ի ժամանակին իբրև օրհնէր Դաւիթ, այլ ոչ եթէ ընդ նմա ասէին . զի ինքն միայն գրեալ է, զի ասէր նա ։

ԱՐԴ.

# ԱՍԱՑ ԴԱՒԻԹ ԱՌԱՋԻ ՏԱՊԱՆԱԿԻՆ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ

## ԳԼՈՒԽ Ա

ԽՈՍՏՈՎԱՆ եղերուք տեառն, զի դարձոյց առ մեզ զտապանակն կտակարանաց. և կարգացէք զանուն նորա, և մի՛ զանուն Դագոնայ՝ որ յաղթեցաւ պարտեցաւ 'ի զօրութէն որ բնակեալն էր 'ի տապանակին կտակարանաց: Յուցէք 'ի հեթանոս զառաջին գործս նորա, զեգիպտացւոցն, զծովուն, զանապատին: Եւ պատմեցէք զարուեստս սքանչելեաց նորա, զքաջութիւնս զոր արար յաւուրս մեր յայլազգիս անդր: Ուրախ եղիցին սիրտք այնոցիկ իբրև զմերս յամենայնի՝ որ խնդրեն զտէր, ըստ մերում նմանութեան: Խնդրեցէք զտէր և զզօրութիւնս յաղթութեան նորա. և կամ քննեցէք վասն տեառն և վասն մեծազօր զօրութեան նորա. և կամ նախանձիցիք 'ի նա՝ խնդրութեամբ խնդրել զվրէժ տեառն զամենայն զրկողաց նորա, այս ինքն յուրացողաց նորա՝ որք հայհոյեն զնա. որք կեանն 'ի շնորհաց նորա, և ոչ լինին շնորհահատոյցք բարութեանց նորա. վայելեն նորայովքն, և պատրաստեն զլեզուս իւրեանց իբրև զգեղարդունս խոցոտիչս առ 'ինիւթել զնիւթս հայհոյութեան և ուրացութեան: Դալարացեալ են մարմինք իւրեանց 'ի դարմանոց բարերարին, և չորացեալ են միտք իւրեանց առ 'ի տալոյ զօրհնութիւնս ամենատեառնն: Ողկուզալիցք են առնլոյն 'ի մշտնջենաւոր շնորհացն առ 'ի հաստատութեան մարմնաւոր կենացն, և խոպանացեալք են մատուցանել խոստովանութիւն առ 'ի մտաւոր հոգեղէն դարմանոցն: Նախանձայոյզք եղերուք իբրև ծառայք մտերիմք վասն սաստկայաղթ զօրութեան նորա: Յիշեցէք զքաջութիւնն՝ զոր

արար 'ի թշնամիս ձեր , և պահեցէք զհրաւունս բերանոյ նորա . զի թեպէտ և յամենայնի՝ որք տպաւորեալքն են ըստ մերում բնութեան՝ կան օրէնք նորա , բայց սակայն դուք մի մոռանայք զկտակարանս նորա . զի նա ինքն է , և պարգևք նորա ոչ խափանին . և կամ զի անդէն 'ի միում դարի անդ վասն այլափոխ հասակացն գտեալ լինին հազար դար : Երդուաւ այսուհետև Աբրահամու , զի զաւակի նորա տացէ զերկիրն քանանացւոց . և ետ զկտակարանս որդւոցն Սահակայ 'ի լեռնէն Սինայի : Զի իբրև սակաւքն էիք և բնակեալք էիք 'ի նմա , և իբրև իշխանք նորա բազումք էին , ոչ ետ միոջ 'ի նոցանէ մեղանչել ձեզ . և որք յանդգնեցան ժպրհութեամբ մեղանչել ձեզ , խիստ և անհնարին յանդիմանութիւքն սանձեցան , և առին յերասանակս , և կացին առին զտեղի : "Մի մերձենայք , ասէ ; յօծեալս իմ " , վասն Քրիստոսի՝ որ կարգելոցն էր 'ի նոցանէն : "Եւ 'ի մարգարէս իմ մի մեղանչէք " . այն իսկ է՝ եթէ "Մարգարէ է , և աղօթս արասցէ 'ի վերայ քո " : Օրհնեցէք զտէր ամենայն երկիր և Իսրայէլ . աւետարանեցէք օր ըստ օրէ զփրկութիւն անձանց ձերոց : Պատմեցէք 'ի հեթանոսս զփառս մեծութեան նորա , այն՝ որ ահաւորն է ոչ միայն 'ի վերայ թագաւորաց նոցա , այլ և 'ի վերայ աստուածոց նոցա . քանզի նոքա և ոչ ինչ ոչ արարին , իսկ ա̄ծ մեր բանիւ իւրով զերկինս արար : Առէք դուք մանկունք ժողովրդեան նորա զպատարագըս , ոչ զպատարագս անասնոց , այլ խոստովան եղերուք նմա 'ի յաղօթս բերանոց ձերոց . և երկիր պագէք նմա 'ի ձեռն սուրբ օրհնութեանն : Դողասցեն յերեսաց նորա ամենայն երկիր հեթանոսաց , և ահա հաստատեալ ուղղի աշխարհս 'ի շարժմանց և 'ի պատերազմաց : Ուրախ եղիցին երկինք և ցնծասցէ երկիր ընդ գալ տապանակին կտակարանաց . և ասասցեն 'ի մէջ հեթանոսաց՝ թէ տէր թագաւորեաց 'ի վերայ ժողովրդեանն իւրոյ , և զահի հարեալ երկիւցեն դարձեալ և այլ մարտնչել ընդ մեզ : Ցնծասցեն ծով նաւովք իւրովք , և ուրախ լիցի երկիր անդաստանօք իւրովք , և զուարճասցին ընդ մեզ ծառք անտառի յամենայն ժամ , երբ և յանդիմանէ ստու-

դութեամբ իւրով զհեթանոսս մնացականս մեր։ Արդ դուք ասասջիք. խոստովան եղերուք տեառն զի բարի է, և յաւիտեան կացցեն առ մեզ շնորհքս այս։ “Փրկեա զմեզ տէր ա̄ծ մեր, և ժողովեա զմեզ 'ի հեթանոսաց „։ Այնոքիկ են՝ որ գերեցան յաւուրս դատաւորացն 'ի ժամանակի՝ զի հեթանոսքն որ շուրջ էին զնոքօք՝ յաղթէին և հնազանդէին զնոսա։

Իսկ յետ այսորիկ իբրև օրհնեաց զնա հանդերձ քահանայապետօքն 'ի մէջ քահանայիցն, ետ զպաշտօնն 'ի ձեռս քահանայիցն՝ զի եղիցին պաշտել մի մի 'ի նոցանէն յաւուր յորում հասցէ նոցա։ Կացոյց և զԱբեդդար իդեթոմացի [1], և զընկերս նորա վաթսուն և ութ, պահել զդրունս արտաքինս։ Եւ Հածրոն քահանայ և ընկերք նորա, զի մատուսցեն զողջակէզս զառաւօտուն և զերեկորին, և զի ուսուսցեն ժողովրդեանն զօրէնս տեառն։ Կացոյց դարձեալ զՀաման և զնորուն ընկերս արդարս օրհնել և փառաւորել զտէր, ոչ 'ի փողս և 'ի թմբուկս և 'ի սրինգս և 'ի քնարս, այլ քաղցր բերանով և սուրբ աղօթիւք։ Արդ 'ի ժամ հաստատութեան օրինացն մատուցեալ Դաւիթ խափանէր զօրէնսն. զի հոգեղէն օրհնութիւքն զորս 'ի ներքս հրամայէր արկանել զպատարագսն մարմնաւորս որ դրեալ էին 'ի նմա խափանէր։ Իսկ իբրև ուղղեաց հաստատեաց կարգեաց կազմեաց զայս ամենայն, արձակեաց զժողովուրդն յիւրաքանչիւր տեղիս. դարձաւ և օրհնել զընտանիս իւր յայսմ օրհնեալ աւուր։

Արդ իբրև նստէր Դաւիթ և Նաթան մարգարէ, խօսել կալաւ Դաւիթ և ասէ ցՆաթան. պարտ և պատշաճ ինչ իցէ, եթէ փառաւորեսցի տունս իմ քան զտունն ա̄յ. զի ես նստիմ աւասիկ 'ի տաճարս մայրայարկս կոփածոյս և տախտակամած դրօշեալ վանդակակապ, և տապանակ կտակարանաց տեառն բնակեալ է 'ի մազեղէն վրանի։ Արդ առանց հոգւոյ մատուցեալ մարգարէն հարցանէր ցընկեր իւր. և առանց յայտնութեան հարցեալն հարցողին մատուցեալ վճիռ պատասխանատուութեան առնէր, թէ “Զա-

[1] Միւս օրինակն Գէթացի։

մենայն ինչ որ 'ի սրտի քում է, արա. վասն զի տէր ընդ քեզ է„: Արդ Նաթանն՝ որ 'ի տուէն 'ի բան կամաց անձին իւրոյ խօսեցաւ, եղև 'ի վերայ նորա յայտնութիւն 'ի գիշերի, և եկն ասաց ցԴաւիթ, ոչ զայն զոր ասացն՝ եթէ “Զամենայն ինչ որ 'ի սրտիդ քում է, արա„. այլ զի “Դու, ասէ, մի՛ շինէր ինձ տուն ասէ տէր„: Վասն զի և ոչ միում ումեք 'ի դատաւորաց անտի՝ զոր կացուցի ես 'ի ժողովրդեանն իմում ապրեցուցանել, և ոչ ասացի թէ ընդէ՞ր ոչ շինիցէք ինձ տուն մայրայարկս: Եւ այժմ թէպէտ և եկիր դու յղելովն հօր քո տեսանելով զողջոյն եղբարց քոց, այլ ես ածի զքեզ 'ի հօտէ խաշանց: Իբրև եկիր դու 'ի բժշկութ̃ի Շաւուղի, և սպանանել զսկայազինն յայլազգեաց, և արարի զքեզ թագաւոր՝ մինչև հովիւն էիր դու. ես եղէ ընդ քեզ զօրութ̃բ, զոր ինչ յամենայն մարտ պատերազմացն այնոցիկ արարեր քաջութ̃ի: Ես արարի քեզ անուն իբրև միոյ 'ի մեծամեծաց երկրի. այս ինքն իբրև զՆամրովթ՝ որ սկայն էր, և զնորուն ընկերսն՝ որ յառաջ քան զքեզ յամենայն մարտ պատերազմաց նահատակեալ էին: Եւ հաճեցայ ես յԻսրայէլի. և այլ մի՛ յաւելցին որդիք անօրինացն գերել զնա յաւուրս քո, որպէս և գերեցին զնա որդիքն ամոնացւոց և մադիանացւոց յաւուրս Նափեթայ և Գեդէոնի: Եւ կարգեցի թագաւորութ̃ի քո 'ի զաւակի քում, և շնորհք իմ մի՛ անցցեն յորդւոյն քումմէ՝ որ ելանէ յերանաց քոց. այս ինքն մի՛ առցի 'ի նմանէն թագաւորութիւնն՝ թէպէտ և յանցանիցէ, որպէս առաւ 'ի Շաւուղէն:

Իսկ իբրև երկրորդեաց Նաթան Դաւթի զոր ինչ 'ի տեառնէ խօսեցաւ ընդ նմա, սկսաւ ասել Դաւիթ առաջի տեառն. ո՛վ եմ ես, զի արարեր ինձ զայս զոր ինչ ոչ արարեր երբէք միում ումեք 'ի թագաւորաց երկրի. զի թէպէտ և յաչս իմ մեծ է այս՝ զի 'ի զաւակի իմում կարգեցի թագաւորութ̃ին յաւիտեան՝ որպէս և ասաց Նաթան, և կամ զի մինչև եկեսցէ այն՝ որոյ թագաւորութիւն է, որպէս և ասաց Յակոբ, այլ յաչս քո կարի փոքր է այս: Քանզի ոչ եթէ միայն ինձ արարեր դու զառաւել մեծամեծս,

այլ զամենայն՝ որ կատարեալ են յերկիւղիդ քում, համեա զնոսա 'ի խաւարէ 'ի լոյս. այս ինքն ածես դու զնոսա 'ի խոնարհութենէ 'ի բարձրութիւն: Արդ զինչ պարծեցայց սիրովս իմով առ քեզ. զի քեզ իսկ յայտնի են գործք ծառայի քո. և վասն այսորիկ բարձրացուցեր զծառայ քո: Եւ արդ այժմ զի հաներ զժողովուրդ քո 'ի մեծամեծ նշանս և յարուեստս, և ուղղեցեր հաստատեցեր զնա 'ի ժառանգութեան իւրում, զի եղիցի քեզ ժողովուրդ յաւիտեան, ուղղեսցի արդ և տունն Դաւթի մինչև յաւիտեան. այս ինքն կատարեսցի գործովք և արդեամբք զամենայն զոր խոստացար ինձ 'ի ձեռն բանի. քանզի յայտնեցեր ինձ խորհուրդ 'ի ձեռն Նաթանայ, և վասն այնորիկ կաց յաղօթս՝ զի եղիցի գործովք: Արդ դու ես տէր ա̃ծ, որ խօսեցարդ զայս, օրհնեցեր և օրհնես դու յաւիտեան զտունս արդարոց:

Յետ այսորիկ կոտորեաց Դաւիթ զայլազգիսն, և առ զլար չափանի 'ի ձեռաց նոցա: Կամ յերկրէն իւրայէլի առեալ էր այլազգեացն յառաջ քան ոչ էր թագաւորեալ Դաւիթ, և պահանջեաց 'ի նոցանէն Դաւիթ իբրև թագաւորեցաւ. և կամ այն իսկ է՝ զի մուտ յերկիր նոցա, և առ զԳաթ հանդերձ ագարակօքն: Կոտորեաց դարձեալ զմովաբացիս, որք հնազանդեցին զժողովուրդն նորա. և արար զնոսա ծառայս հարկատուս: Եւ սպան զթագաւորն Մծուբնի. և եդ սահմանս 'ի գետն Արածանի: Կոտորեաց զեդովմայեցիս՝ որ եկին հասին 'ի թիկունս օգնականութեան Ադրահազարու, և արար և զնոսա ծառայս հարկատուս: Բայց 'ի պղնձոյն զոր առ Դաւիթ 'ի հեթանոսաց, զայս ամենայն արար Սողոմոն ծովըս և սիւնս և զեզինս հանդերձ ամենայն անօթօքն պղնձի: Սրբեաց դարձեալ Դաւիթ զանօթս ոսկւոյ և արծաթոյ և պղնձոյ, զոր ետ տանել նմա Փուա արքայն անտիոքացւոց հանդերձ ոսկւոյն և արծաթովըն՝ զոր առ 'ի հեթանոսաց, որ շուրջ զնոքօք էին:[1]

Նուաճեաց դարձեալ հրեշտակս մխիթարել զՀա-

[1] Յօրինակին կայ թերակատար յաւելուած [illegible]. որ չերևի 'ի միւս օրինակն:

Նման արքային վասն մահու հօրն իւրոյ ։ Արդ որդւովըն կամեցաւ հատուցանել զշնորհսն՝ զոր արար ընդ նմա հայրն նորա, իբրև յերեսաց Շաւուղի փախուցեալ էր նա ։ Իսկ որդիքն Ամոնայ թողին նայել 'ի բարեկամութիւնն՝ որ եղև յաւուրս հալածանացն Դաւթի, և նայեցան նոքա չարաչար 'ի հրեշտակսն խաղաղութեանն՝ որ յատակամիտ մտօքն առաքեցան առ նոսա ։ "Նենգութբ, ասէ, առաքեցան լրտեսել զքաղաքս, և ոչ եթէ սիրով առաքեցան մխիթարել ըզքեզ" ։ Իսկ իբրև արձակեցին զնոսա մեծ անարգութբ առ ոտերն իւրեանց, զզջացան և երկեան յոյժ. և փոխանակ զի յղեսցեն բարեխօս առ Դաւիթ, որ դիւրինն էր, առաքեցին վարձեցան հազար քանքար արծաթոյ 'ի Մծուրնէ և 'ի Խառանէ և յԱրամայ Միջագետաց և յԵդոմայ զօրս բազումս սպառազէնս և հեծեալս ։ Կոտորեցան 'ի ձեռն Յովաբու և Աբեսսեայ եղբօր նորա յառաջին անգամն. և յաւել կոտորեաց զնոսա Դաւիթ, իբրև եկին կրկին անգամ խնդրել զվրէժ ընկերացն իւրեանց ։ Պաշտեցին զծառայութիւն և որք յանցս գետոյն էին՝ ժողովրդեանն. քանզի 'ի պարգևի անդ մինչև յԱրածանի խոստացեալ էր ծառայել նմա ։ Եւ ապա 'ի միւս ամն պաշարեցաւ քաղաք թագաւորութեան որդւոցն Ամոնայ, և ած զնոսա Դաւիթ շղթայիւք յերկիրն Իսրայէլի ։

Յետ այսորիկ ասաց, եթէ եդ սատանայ ուշ 'ի վերայ՝ ոչ 'ի Դաւիթ՝ այլ 'ի վերայ Իսրայէլի. և փութացաւ Դաւիթ համարել զժողովուրդն ։ Արդ այն՝ զի յայսմ վայրի առնու զնա 'ի վերայ սատանայի, Սամուէլին վասն էոյ՝ զի գրգռեաց զԴաւիթ թուել զժողովուրդն. ասաց սա. "Զօրացաւ, ասէ, բարկութիւն տեառն յԻսրայէլ, և գրգռեաց զԴաւիթ թուել զժողովուրդն" ։ Արդ եթէ բարկութբ եղև այս, և ստիպելով ստիպեցաւ Դաւիթ համարել զժողովուրդն. և ինքն Դաւիթ վասն այսորիկ ոչ արբդան և կամ թէ եպերեցաւ, զի ժողովուրդն միայն արբ դան. վասն այսորիկ բարւոք մեկնեցաւ այս 'ի տեղւոջ իւրում, եթէ վասն զի թուեցին համարեցին և կալան զքահանայսն 'ի սպանումն, և ոչ ապրեցուցին զնոսա, որպէս զՅովնաթան 'ի Շաւուղէ,

համարեցան նոքա 'ի կոտորած սրոյ հրեշտակին։ Հանդերձ այսու միւս ևս այլ յանցանք՝ որ սմին նման է՝ ունէին նոքա ։ Ապստամբեցան նոքա ընդ Աբիսաղոմայ սպանանել զԴաւիթ. զի վասն այսորիկ անկաւ 'ի նոցանէ եւթանասուն հազար ։

Արդ եթէ 'ի սատանայէ եղև գրգռութիւն, և կամ թէ 'ի տեառնէ եղև անփութութիւն՝ զի եղիցի այս, ընդէ՞ր զօրացաւ բարկութիւնն վասն այսորիկ։ Քանզի ահա թէպէտ և զի մի՛ համարեսցի զաւակն Աբրահամու, վասն բազմութեա՛ն իւրոյ ասացեալ էր. այլ զի թէ բնաւ ամենևին մի՛ համարեսցի, ոչ էր գրեալ։ Արդ եթէ ոչ համարեսցի, և ոչ էր համարեալ, ուստի՞ յայտ լինէր և երևէր՝ եթէ ոչ մտանէր նա 'ի թիւ համարոյ, և արտաքս քան զհամարս և զթիւս. և ո՞վ հաւատայր եթէ ճշմարիտ եղև բանն այ, եթէ այս որ եղևս՝ ոչ էր եղեալ։ Ապա եթէ վասն այսր եղև զի յայտ լիցի պարգևն այ՝ եթէ առ զկատարումն և հաստատեցաւ, եթէ այսպէս է, ոչ եթէ վասն զի թուեաց զժողովուրդն՝ արք գան. քանզի ոչ արք իսկ գան որ թուեացն, այլ այն՝ որ թուեցաւն՝ արք գան։ Յորո՞ւմ կողման դնիցեմք ըղյանցանսն. զի ուր խրատն ստուգութե՛ է, անդէն և յանցանքն ազատութե՛։ Այսուհետև տասն ազգօքն՝ որ թուեցան համարեցան՝ յայտ եղև եթէ բազում եղեն իբրև զաւազ առ ափն ծովու, որպէս և խոստացաւ ած սիրելւոյն իւրոյ։ Բայց տամբն Ղևեայ և որդւովքն Բենիամինի, զի ոչ համարեցան, վասն զի անարգեաց Յովաբ զբանն արքայի, կատարեցաւ և այն՝ զի մի՛ համարեսցին իբրև զաւազ, որ վասն բազմութե՛ իւրոյ ոչ թուի և ոչ համարի։

Արդ ած զի առաքեաց զմարգարէն, առ Դաւիթ առաքեաց՝ և ոչ եթէ առ ժողովուրդ անդր. զի թէպէտ և 'ի դատավճիռ բանին խառն էն արքայ և ժողովուրդն, այլ երեսք մարգարէին գոգջիր թէ 'ի վերայ Դաւթի ուշ եդեալ նայէր։ "Երիս, ասէ, չարիս ածեմ 'ի վերայ քո, ընտրեա քեզ"։ Արդ յականջս բարեխօսին եկն դատավճիռ, և ոչ եթէ յականջս յանցաւոր ժողովրդեանն։ Զի թէպէտ և դեմք ըստուգութե՛ն 'ի վերայ Դաւթի եւ զդատավճիռն,

այլ տակայն շնորհքն յայտնեցին նմա, զի խնդրուածովքն իւրովք կարկատեսցէ զխրամատութիւն մանկանց ժողովրդեան իւրոյ։ Արդ վասն Դաւթի առաքեցին կալեալ զքահանայսն հրամանաւ Շաւուղի 'ի սպանումն. արդ վասն նորա համարեցան և կալան, վասն զի ետ Աքիմելէք հաց, կոտորեցան։ Եւ վասն զի ապստամբեալքն դարձեալ և 'ի նմանէն ապստամբեցան, իբրև գայր վրէժխնդրութիւն որ մեղաւն յերկուսին, յայտնեցաւ այնմիկ՝ ընդ որում յանցեանն երկոքումբք, զի խնդրեսցէ երկոքումբք զպարտեացն 'ի վերայ երկդիմեան յանցաւորացն 'ի ստոյգ դատաւորէն՝ որ 'ի ձեռն հրեշտակին յարեաւ խնդրեաց զվրէժխնդրութիւն երկոցունց յանցաւորացն։ “Երիս, ասէ, չարիս ածեմ 'ի վերայ քո, ընտրեա քեզ„։ Արդ նայեաց և տես, զի թէպէտ և մինն ճշմարիտ է, միւսն եւս յայտնէ՝ եթէ ոչ է ճշմարիտ. զի թէպէտ և այն՝ թէ ընտրեա քեզ՝ ճշմարիտ է, այլ այն՝ զի 'ի վերայ քո՝ ոչ է ճշմարիտ. այլ և ոչ այն՝ զի 'ի վերայ քո՝ չէ սուտ։

Արդ այր՝ որ առ Գողիադու հսկայիւ և յամենայն մարտս պատերազմաց իբրև մարտեաւ, զանձնն իւր ետ փոխանակ ժողովրդեանն իւրոյ, յայտ է աւասիկ՝ զի իբրև զանձն իւր սիրէր զժողովուրդն իւր։ Արդ յանձն իւր ընկալէր գան միով 'ի չարեաց անտի, որ 'ի վերայ մանկանց ժողովրդեան նորա իշխէր։ Արդ ոչ եթէ 'ի վերայ Դաւթի գային չարիքն. գայր 'ի վերայ նորա չարն, զի 'ի վերայ մանկանց ժողովրդեանն իւրոյ գայր. և գայր 'ի վերայ նորա դարձեալ, զի մանկամբք ժողովրդեան իւրոյ՝ որ չարչարէին 'ի չարեաց անտի, ինքնին անձամբ իւրով չարչարէր։ Արդ Դաւիթ իբրև ետես եթէ ածէ զերեամ մի սով, գիտաց եթէ զմանկունս ժողովրդեան իւրոյ սատակէր, և ոչ եթէ զնա։ Եւ զերիս ամիսս մատնել 'ի ձեռս թշնամեաց՝ ժողովուրդն կոտորէր, և ոչ եթէ նա. քանզի մատնել ասաց, և ոչ եթէ մեռանել։ Ընտրեաց իւր, զի 'ի ձեռն տեառն՝ որ անխրպետէն ընդ մեղաւորն և ընդ անմեղն՝ մատնեսցի, և ոչ 'ի ձեռն սովոյ և թշնամեաց մատնեսցի ժողովուրդն նորա։

Արդ առաքեցաւ հրեշտակն յԵրուսաղէմ ապա-

կանել, և ասացաւ նմա՝ շատ ապականեցեր։ Ոչ եթէ զի շատ ապականեաց, այլ զի մի գործեսցէ աւելի քան զայն ինչ՝ որ հրամայեալ է նմա։ Զերիս աւուրսն գումարեաց ստուգութիւն զաւուրն 'ի ժողովուրդ անդր. և մինչ դեռ կամէր լինել երեք ժամք, զառողջ բարձին շնորհքն զդահճէն ստուգութեան եթէ յաճախեաց ապականեաց։ Եւ արդ մինչ սակաւ ապականեաց, շատ թուեցաւ քեզ՝ թէ ապականեաց. եթէ զերիս աւուրս ապականեալ էր, յաճախէր բազմանայր սուգն և տրտմութիւն շնորհացն սատակմամբն՝ որ լինէր ժողովրդեանն մարդակոտոր առ հասարակ։

Նոյնն ընդ բանին՝ եթէ շատ ապականեցեր, ետես Դաւիթ զհրեշտակն ընդ երկինս և ընդ երկիր, և կայր 'ի վերայ Երուսաղէմի մերկացուցեալ զսուսեր իւր։ Անկաւ Դաւիթ և ծերակոյտ ժողովրդեանն իւրոյ քրձազգած յերեսս իւրեանց առաջի նորա։ Տեսե՞ր աւադիկ, զի բարեխօսին յայտնեցաւ. զի քրձազգած լինելովն՝ ընդդէմ բարկութեան վառեալ կայր։ Եւ վասն զի ետես եթէ փոքր է աղէտ խնդրուածոյ նորա և ընկերաց իւրոց կալ առաջի հրեշտակին՝ որ սպառնայր, և մերկացեալ ունէր զսուսերն իւր, և ասէր ցտէր. զի եթէ ես մեղայ՝ որ ասացի թուել զժողովուրդս, այս խաշն անմեղ որ թուեցանն իբրև ոչ կամէին, զի՞ մեղան. եղիցի ձեռն քո յիս, վասն զի ես մեղայ, և 'ի տուն հօր իմոյ՝ իբր ոչ մեղան. և 'ի ժողովրդենէս միայն արգելցի մարդամահս։ Արդ ետ իբրև Մովսէս զանձն իւր փոխանակ մանկանց ժողովրդեան իւրոյ, և յաւել ետ զտուն հօր իւրոյ՝ զոր ոչն արար Մովսէս. և վասն զի թուեցաւ նմա եթէ ինքն է պատճառ յանցանացն, ետ զանձն իւր 'ի մահ։ Ստուգութեամբ մատնեաց դարձեալ զինքն և զտուն հօր իւրոյ փոխանակ ժողովրդեանն իւրոյ 'ի ձեռն շնորհացն։ Արդ եթէ կատարեալ էր այն՝ զոր խնդրեաց, ստուգութիւն անօրինէր. զի փոխանակ ժողովրդեանն՝ որ յանցեաւ, զթագաւորն զանմեղ հարկանէր. և պարգեւն Այ՝ որ ասացն ցնա՝ եթէ "Ի զաւակի քում կարգեսցի թագաւորութիւն„, սուտ լինէր՝ եթէ տուն

հօրն Դաւթի ընդ Դաւթի՝ որպէս և Դաւիթն խնդրեաց՝ մեռեալ էին ։

Արդ 'ի ժամանակի իբրև ետ զանձն և զտուն հօրն փոխանակ ժողովրդեան իւրոյ, և ահա Գադ մարգարէ աճապարեաց և ձեպեալ և ընթանայր յանուն տեառն. և ասէ ցնա, զի շինեսցէ սեղան տեառն 'ի կալն Արանայ յեբուսացւոյ ։ Եւ արդ զի մի՛ լքցի Դաւիթ՝ թէ մինչ զսեղանն շինեսցէ և զենուցու և յօշեսցէ անդամաթիւ զպատարագն՝ կոտորեսցէ հրեշտակն զքաղաքն առ հասարակ, ամբարձ զաչս իւր և ետես զհրեշտակն՝ զի ամփոփեալ էր զձեռն իւր յինքն, և ոչ ապականնէր ։ Փութացաւ Դաւիթ և հաս առ Արանն ։ Նա դարձաւ և ետես զնա, և երկիր եպագ նմա. զի եթէ շքով թագաւորութեանն իւրոյ երթայր նա ; ոչ իբրև կայր յետոյ նորա, դառնայր և տեսանէր զնա ։ Ասէ Դաւիթ ցԱրանն. "Տուր ինձ ընդ բարի գնոյ զտեղի կալոյս այսորիկ, զի շինեցից 'ի սմա սեղան հաշտութեան տեառն. և արգելցի մարգամահս 'ի ժողովրդենէս,, ։ Եւ ետ նմա որդին հեթանոսաց ոչ միայն զտեղին, այլ և զեղինսն 'ի պատարագ., և զօրանն 'ի պէտս պիտոյից պատարագին. և յաւել ետ ցորեան և նաշիհ՝ որ ոչ էին պիտոյ ։ Իսկ իբրև ոչ կամեցաւ Դաւիթ առնուլ ձրի, նեղեաց զանձն իւր Արանն, և առ ակամայ իբրև ոչ կամէր ։ Մատոյց Դաւիթ զպատարագն, և ընդունելի եղև. և էջ հուր 'ի բարձանց յանդիման ժողովրդեանն 'ի վերայ պատարագին հաշտութեան՝ զոր մատոյց նա ։ Արդ իջանելովն հրոյն 'ի բարձանց՝ վերացաւ 'ի բարձունս հրեշտակն հրեղէն, որ իջեալ կոտորէր 'ի ժողովրդեան անդ ։

Արդ վրան ժամուն՝ զոր արար Մովսէս յանապատի անդ, այն զի 'ի նմա պագանէին երկիր մինչև ցայն օր. իսկ իբրև ետես Դաւիթ՝ եթէ լսելի եղև նա 'ի կալ անդ Արանայ, երկեաւ նա դարձեալ մատուցանել զաղօթս իւր 'ի վրան ժամուն ։ Եւ ասաց 'ի վերայ կալոյն՝ զի "Սա է տաճար տեառն,,. այս ինքն սա է տեղի տաճարի տեառն, և տեղի սեղանոյ պատարագաց Իսրայէլի ։ Ուրախ եղև Դաւիթ յոյժ, զի ոչ միայն որ ինչ պիտոյ էր առ 'ի շինուած տաճարին

*պատրաստեաց նա, այլ և զտեղին եւս տաճարին համդերձ ամենայն պիտոյիւք տաճարին պատրաստեաց նա։ Իսկ իբրև յայտ եղև նմա տեղին, ժողովեաց ըզպանդուխտսն առնել 'ի նոցանէն քարակոփս և ոսկերիչս։*

*Արդ թէպէտ և յայտնապէս յանարգութիւն հեթանոսաց լինէր նա եկքն և պանդխտաքն՝ որ առ 'ի շինուած տանն ժողովէր, այլ շինուածովն պանդըխտաց՝ խորհուրդ հեթանոսաց՝ որ հանդերձեալ էին 'ի շինել զեկեղեցին Քրիստոսի՝ նկարէր։ Արդ այնոքիկ՝ որ յաւուրս Սողոմոնին՝ որ շինեցաւն 'ի նոցանէն մի տաճար յերկրպագութիւն Հօր, այսօր բեւրք բիւրուց եկեղեցեաց յերկրպագութիւն Քրիստոսի որդւոյ շինեցաւ և շինին 'ի նոցանէն։ Արդ եթէ ոսկին և արծաթն և պղինձն և երկաթն և քարքն կոփածոյք առաջի տաճարին 'ի հեթանոսաց էին, և եթէ զփայտ տաճարին Ծուրացիք և Ծայդանացիք բերէին, և եթէ զառաջին խորան ժամուն յեգիպտացւոց և յամովրհացւոց արարին և կանգնեցին նոքա, և եթէ վերջին տաճարն յստացուածոց և 'ի գանձուց տանն Գողգայ և 'ի Պարթևաց թագաւորաց Պարսից շինեցաւ, արդ ի՞ւ արդեւք պարծեսցի ժողովուրդն տառապեալ, կամ որո՞վ իւիք հպարտանայցէ. զի ահաւասիկ երկոքին տաճարքն հանդերձ վրան ժամուն որով պերճացեալն էին՝ 'ի ձեռն հեթանոսաց կանգնեցան։*

## ԳԼՈՒԽ Բ

*Ե՞ւ ասաց Դաւիթ. «Սողոմոն մանուկ է ցարդ եւս, և վասն նորա ասացեալ է՝ եթէ նա շինեսցէ զտաճարն. պատրաստեցից նմա զամենայն պէտս տաճարին»։ Եւ արդ ո՞ւր իցէ ասացեալ վասն նորա զայս. արդեւք այս իսկ է՝ զոր ասաց Նաթանն, եթէ «Զաւակն քո՝ որ ելանէ յերանաց քոց, ուղղեցից զաթոռ թագաւորութեան նորա, և տիրեցուցից զնա 'ի տան իմում և 'ի թագաւորութեան իմում յաւիտեան»։ Եւ ասաց Դաւիթ ցՍողոմոն. «Տէր ասաց ցիս 'ի ձեռն մարգարէին իւրոյ՝ եթէ դու մի*

շինեսցես զտուն անուան իմոյ. վասն զի պատերազմունս զոր արարեր, արիւն բազում հեղեր դու»։ Եւ արդ ո՞ր մարգարէ ասաց ցնա. զի Նաթան՝ որ առաքեցաւն առ նա վասն այսր, զայս ոչ ասաց ցնա. բայց զզաւակն՝ զի կարգելոց էր ազգաց յազգս՝ խոստացաւ նմա, և զթագաւորութիւն յաւիտենից պարգևեաց նմա. և ինքն Դաւիթ զմեծ խոստովանութիւն վասն այսորիկ մատոյց նմա։ Արդ եթէ յայնմ աւուր ոչ ասացաւ նմա այս, և այլ աւուրք ոչ են գրեալ վասն մարգարէին՝ եթէ ասաց ցնա։

Արդ եթէ եպերեալ էր Դաւիթ արեամբն զոր եհեղ, եպերեալ էր և Աբրահամ արեամբն զոր եհեղ զհինգ թագաւորացն։ Եպերեալ է և Մովսէս արեամբն եգիպտացւոց զոր հեղձոյց նա 'ի ծովն Կարմիր, և երկուց թագաւորացն ամուրհացւոց՝ զոր կոտորեաց նա, և մադիանացւոց և ամաղեկացւոց՝ զոր սպան նա։ Եւ եպերեալ է դարձեալ Յեսու որդի Նաւեայ, որ կորոյս սատակեաց զերեսուն թագաւորսն քանանացւոց. եպերեալ է և Նափեթ, որ կոտորեաց զորդիսն ամոնացւոց. և Գեդէոն՝ որ կորոյս զմադիանացիսն. և Սամփսոն և Սամուէլ՝ որ սպանին զայլազգիսն։ Եւ ահա ինքն իսկ ա̃ծ 'ի ձեռս Նաթանայ ասաց ցնա, եթէ «Եղէց ընդ քեզ, և կորուսից զամենայն թշնամիս քո յերեսաց քոց»։ Արդ եթէ ինքն ա̃ծ կոտորեաց զնոսա, Դաւիթ ինչ ոչ է եպերելի։

Իսկ ընդէ՞ր և վասն ո՞յր՝ 'ի պատճառս արեան՝ զի մի ոք յարդարոց անտի ոչ եպերեցան նովաւ, Դաւիթ միայն իբրև կամեցաւ շինել զտաճարն տեառն՝ արգելաւ վասն նորա զի մի՛ շինեսցէ։ Արդ վասն զի ոչ եղև պարապ Դաւթի զամենայն աւուրս կենաց իւրոց պատերազմօք զոր առնէր նա զօրութեամբ տեառն ընդդէմ թշնամեաց մանկանց ժողովրդեան իւրոյ, արգել զզովամարմին ծերութե̃ն նորա, զի մի՛ աշխատեսցի 'ի շինուածն տաճարին՝ որպէս և 'ի պատերազմունսն. զի որդւոյն նորա՝ որում յաճախէ խաղաղութիւն՝ գործ գտցի նմա, և զի մի՛ վնասեսցէ նմա դատարկութիւն, որպէս և վնասեաց իսկ նմա։ Պատրաստեցաւ նմա գործ ոչ միայն առ 'ի զբօսանս նորա

եթէ զբօսացուցանէ զնա, այլ և որ յարգէ և փառաւորէ զնա, և շքեղացուցանէ զնա 'ի թագաւորութեանն իւրում։ Վասն այսորիկ և յետ շինուածոյ տաճարին անկաւ նա 'ի լկտութիւն, զի հազար կին ընդ ազատ և ընդ հարճ արար նա. բայց յաւուրս շինուածոյ տաճարին յերկիւղ տեառն իւրոյ կայր նա, զի այլում ընդ նմա ոչ պագանէր երկիր։ Եւ զգուշութիւն յաղթեաց նա. զի ընդ դստերն Փարաւոնի, զի հան 'ի տաճար անդր որ շինեաց նմա, այլ ընդ նմա ոչ է գրեալ՝ թէ հան նա։ Եւ զի գիտասցես թէ վասն հանգստեան պատրաստեաց նմա զգործն, լուր Դաւթի, իբր յանուն ա̃յ ասէր սա զորդին իւր. "Որդի, ասէ, որ լինի քեզ, հանգուցից զնա յամենայն թշնամեաց նորա, և հանգիստ եղիցի Իսրայէլի յաւուրս նորա. նա շինեսցէ տուն անուան իմոյ"։

Արդ ոչ եթէ վասն արեանն զոր եհեղ արգելաւ նա. զի եհեղ և Մովսէս զարիւնն եգիպտացւոց և զամովրհացւոց, զամաղէկացւոց և զմադիանացւոց. և փոխանակ եպերմանն ընկալաւ նա զմեծապայծառ շուք փառացն երեսաց. և ոչ արգելաւ նա թէ մի արասցէ զխորան ժամուն։ Արդ մ̃ն գործոյ՝ զի գացի որդւոյ նորա՝ արգել զնա, որպէս և ասացաք մեք. զի խորհրդովք խօսից տեառնն իւրոյ, և վայելուչ զգուշութ̃ սրբութ̃ն նորա արգելցի նա 'ի կռոցն օտարոտւոց և 'ի ցանկութ̃ կանանց։

Արար նա յղևտացւոց գաւառապետս 'ի տանն Իսրայէլի. և զի եղիցին դարմանել զաղքատս։ Եւ կարգեաց քահանայս և ղևտացիս 'ի սպաս պաշտաման իւրեանց ըստ իւրեանց կարգին, օրհնիչս և բարապանս յիւրաքանչիւր տեղիս. և ժողովեաց զմեծամեծս զհեռաւորս և զմերձաւորս։ Եւ ասաց եթէ 'ի տանէ Յուդայ ընտրեաց տէր զտուն հօր իւրոյ. և 'ի տանէ հօր իւրոյ զիս ընտրեաց թագաւորել. և յորդւոց իմոց ընտրեաց զՍողոմոն, զի շինեսցէ տաճար տեառն։ Եւ արդ սկսաւ պատուիրել, որպէս և Մովսէս ժողովրդեանն, տայր և ինքն հրաման որդւոյն իւրում պահել զպատուիրանս տեառն։ Եւ ետ զչափ տանն, և և զնմանութ̃ սեանց սրահին, և զամենայն տանն զիւ-

րաքանչիւր պէտս եցոյց նմա . և վասն ոսկեղէն և ար֊
ծաթեղէն սեղանոցն, և վասն ամենայն կահի և կարա֊
սւոյ պաշտամանն հրամայեաց յայնմ աւուր Սողոմո֊
նի յանդիմանել ամենայն մեծամեծաց ժողովրդեանն .
ետ և զպարգևս 'ի տուն տեառն . և ուրախ եղև Դա֊
ւիթ և ժողովուրդն ։ Եւ օրհնեաց Դաւիթ զտէր և
ասաց . ո՞վ եմ ես, և կամ զի՞նչ է ժողովուրդն իմ,
զի արարեր ինձ և ժողովրդեան իմում զայս ամե֊
նայն . և վասն զի զօրէնս քո ուսուցի, քանզի ուսայ
ես . զի ճանապարհդ քո կենաց օգնեաց ինձ, այս
ինքն պահպանութիւնք պատուիրանաց քոց . այն իսկ
է՝ զի յամենայն մարտս պատերազմաց ապրեցուցեր
զիս և զժողովուրդ քո ։

Այլ մատուցին զպատարագս մեծամեծս, և նստու֊
ցին զՍողոմոն յաթոռ թագաւորութեան, և արկաւ
զնովաւ շուք վայելչութեան ։ Եւ թիւ աւուրց՝ զոր
թագաւորեաց Դաւիթ 'ի վերայ Իսրայէլի, զքառա֊
սուն ամ ։ Եւ մատոյց Սողոմոն հազար ողջակէզս 'ի
վերայ պղնձի սեղանոյն, զոր արարեալ էր Բեսե֊
լիէլ [1] յանապատի ։ Եւ եբեր զնա Դաւիթ հանդերձ
վրան ժամուն յԵրուսաղէմ ։ Եւ յայտնեցաւ տէր 'ի
վերայ նորա 'ի տեսիլ գիշերոյ, և ասաց ցնա . "Խնդ֊
րեա ինչ, և տաց քեզ" ։ Եւ խնդրեաց նա զիմաս֊
տութիւն՝ դատել զժողովուրդն . և ետ նմա իմաստու֊
թիւն առաւել քան որչափ խնդրեաց . և ետ նմա
զփառս՝ զոր ոչն խնդրեաց ։ Եւ բազմացոյց և յաճա֊
խեաց Սողոմոն զարծաթ և զոսկի և զերիւարս և
զսպառազէնս . և մոռացաւ զբանս Մովսէսի զոր ա֊
սաց . "Զի մի՛ յաճախեսցէ իւր ոսկի և երիւարս, զի
մի՛ հպարտասցի և մոռասցի զտէր" ։ Եւթանասուն
հազար փայտակոփ, և ութսուն հազար քարակոփ 'ի
ձեռն մեծ արար զնա . զի եթէ ութսուն հազար քա֊
րակոփ փոքր իցեն տաճարին, կոփեսցեն և յօրինե֊
ցեն զնոյնչափ քարանցն՝ որ յաւուրս Դաւթի հօր
նորա կոփեալ էին ։ Արդ առաքեաց առ Խիրամ վասն
մայր փայտի՝ զի բերցեն 'ի Լիբանանէ, իբրև առեալ
խոստանայր ծառայիցն Խիրամայ քան հազար քո

1 Յօրինակին 'ի լուսանցսն Բոծաղիէլ . միւս օրինակն Բոծաղիէլ ։

ցորենոյ, և քսան հազար մար գինւոյ. և քսան հազար մար իւղոյ: Արդ նայեաց և տես որչափ բերրի էր երկիր նոցա, զի Թագաւորացն ևս հեթանոսաց տային ռոճիկս: Եւ առաքեաց Թագաւորն Ծուրայ Խիրամ որդի կնոջ մի այրւոյ ճարտար յամենայն գործս:

Սկսաւ շինել Սողոմոն տաճար յԵրուսաղէմ 'ի լերանն Ամովրհացւոց. 'ի տեղի՝ ուր մատոյց Աբրահամ պատարագ զորդին իւր 'ի կալն Արանայ յեբուսացւոյ զոր գնեաց Դաւիթ: Ահաւասիկ զի տեղին ևս տաճարին հեթանոսաց էր, զի յեբուսացւոյ առեալ էր. և զարդարիչք նորա հեթանոսք էին. զի Խիրամ որդի այրւոյ միոջ քանանացւոյ պէսպէս զարդարանօք զարդարեաց զնա: Բայց նման է դարձեալ, եթէ 'ի տեղի ծառոյն զորմէ կախեալն էր գլխոյն, անդ եղև Գողգոթայն. զի անդ բուսեալ փայտն խաչի փոխանակ ծառոյն; և 'ի փայտի անդ խաչեցաւ որդի հօր Քրիստոս փոխանակ խոյին. զի խորհրդով իւրով 'ի ծառ անդր, իբրև տարածեալ իսկ էին բազուկք նորա, զգեցաւ նա: Արդ սկսաւ շինուած տանն 'ի չորրորդ ամի Թագաւորութեն իւրոյ, և կատարեաց զնա 'ի փայտս կնդրկեայս, և քանդակեաց զնա ոսկւով. և եբեր զսրբութիւս հօր իւրոյ, և տարաւ եդ 'ի տուն գանձի տեառն: Եւ ժողովեաց զամենայն իշխանս իւր, և եհան զարկղն կտակարանաց տեառն 'ի Սիովնէ 'ի գեղջէն Դաւթի, և եդին զնա 'ի մէջ սրբութեացն ընդ Թևօքն քրովբէիցն. և մածեաւ պաշտօն զսրբութիւնն, և էջ հուր յերկնից և եկեր զողջակէզսն զոր մատոյց Սողոմոն:

Եւ յայտնեցաւ դարձեալ Տէր 'ի վերայ Սողոմոնի 'ի տեսիլ գիշերոյ, և ասէ ցնա. "Լուայ ես զաղօթս քո. և եղիցին, ասէ, աչք իմ հայել 'ի վերայ տանս այսորիկ, և ականջք իմ եղիցին 'ի լսել զաղօթս զոր մատուցանեն 'ի դմա: Եւ եթէ գնասցես դու առաջի իմ արդարութեամբ, որպէս և գնաց Դաւիթ հայր քո, և հաստատեցից զուխտն իմ որ եղև ընդ նմա՝ թէ մի պակասեսցէ նմա որդի, որ կայ առաջի իմ 'ի Թագաւորութեն Իսրայէլի: Ապա թէ

դարձջիք յինէն պաշտել զկուռս օտարոտիս, կորուսից զձեզ յերկրէ՝ ուր բազմացարուքդ իբրև զաւազ առ ափն ծովու. և զտունդ պարծանաց ձերոց արարից յաւեր և ՚ի թափուր: Եւ զոր օրինակ եղերուք դուք ՚ի փառս և ՚ի գովեստս յաւուրս Դաւթի՝ որ պահեաց զպատուիրանս իմ, նոյնպէս եղերուք ՚ի զարմացումն և յառակս ազգաց, յորժամ ոչ գնայցէք ՚ի պատուիրանս իմ»: Արդ կացոյց Սողոմոն քահանայս և ղևտացիս և օրհնիչս և դարապանս ըստ իւրաքանչիւր արժանի որպէս և Դաւիթն պատուիրեաց: Եւ թագաւորեցաւ ՚ի վերայ ամենայն թագաւորութեանց յԱրածանւոյ մինչև յերկիրն այլազգեաց, և մինչև ՚ի սահմանս եգիպտացւոց քառասուն ամ:

Եւ թագաւորեցաւ Հռոբովամ որդի իւր զկնի նորա: Արդ եկն Յորոբովամ և ժողովուրդն, և ասեն ցՌոբովամ. «Թեթևացո ՚ի մէնջ զխիստ լուծ հօր քո, և պաշտեսցուք զքեզ»: Քանզի բազում երիվարօքն զոր ստացաւ, և հազար կանամբքն զոր ած, և սքանչելի շինուածովքն զոր շինեաց, և բազում ամրապարիսպ քաղաքօքն զոր հաստատեաց, և ուղկօքն որ առաքեաց թագաւորաց հեթանոսաց՝ յաճախեաց և թախծեցոյց զժողովուրդն: Դարձոյց անդրէն Ռեխոբայամ խիստ պատասխանի ժողովրդեանն. և եղև շրջուած, բայց ոչ եթէ յարքայէ. զի թէպէտ և ՚ի պատճառս բանին արքայի եղև, բայց սակայն ՚ի տեառնէ եղև, զի հաստատեսցի բանն Ախայի մարգարէի՝ որ ՚ի թագաւորութեան անդ, որ ասաց ցՌոբովամ: Ետ պատասխանի ժողովուրդն և ասեն. չիք մեր բաժին ընդ Դաւթայ, զի չիք որդի Դաւթի՝ որ նմանէ Դաւթի. այսուհետև տես զտուն քո, Դաւիթ, զի ունայնացոյց դատարկացոյց և թափուր արար հպարտութիւն որդւոյ քո զզուան իւր ՚ի մեծամեծացն խրատելոյ, որ դեգերեալ կային ՚ի դրան նորա: Եւ արար Ռոբովամ զչարիս առաջի տեառն, և ոչ գնաց բոլորով սրտիւ իւրով միամիտ ընդ տեառն: Եւ թագաւորեցաւ եւթն և տասն ամ, և հանգեաւ:

Եւ թագաւորեցաւ Աբիա որդի իւր զկնի նորա:

Եւ ասէ Աբիա ցՐոբովամ. “Դուք գիտէք, զի տէր ետ զթագաւորութիւն Դաւթի և որդւոց նորա իբրև աղ ուխտի; այս ինքն ուխտիւն ճշմարիտ սիրոյ. արդ դուք աւադիկ, ասէ, թողէք զտէր և պաշտեցէք զորթըս ձուլածոյս զոր արար Յորոբովամ. վասն այսորիկ իբրև յաւուրս Դաւթի չյաղթեցէք 'ի մարտս պատերազմաց ձերոց„։ Եւ վասն զի նախատեաց նա ձուլածոյ որթուքն, և հաւատաց՝ եթէ ոչ յաղթէ խուբայէլ 'ի մարտ պատերազմի իւրոյ, կոտորեաց 'ի նոցանէն Աբիա 'ի սուր սուսերի իւրոյ հինգ հազար։ Եւ յետ այսորիկ հար տէր զՅորոբովամ, և մեռաւ։ Թագաւորեաց և Աբիա զերիս ամս, և մեռաւ։

Եւ թագաւորեաց Ասա որդի նորա զկնի նորա։ Արար և Ասա զբարի առաջի տեառն զքառասուն և զմի ամ թագաւորութեանն իւրոյ։ Եւ եկն եհաս 'ի վերայ նորա Զարախ Հնդիկ, և հազարք հազարաց զօրք ընդ նմա, և երեսուն հազար կառք ընդ նմա։ Եւ զի եկաց յաղօթս, և հաւատաց եթէ մատնի բազում զօրն մոլորեալ 'ի ձեռն սակաւ զօրուն հաւատացելոյ, երեկ խորտակեաց հրեշտակն տեառն զզօրսն Հնդկաց. և դարձ գունդն յուդայեան յերուսաղէմ բազում աւարաւ։ Արդ բնակեցաւ հոգին 'ի վերայ Ազարիայի, և ասէ ցԱսա. “Տէր ընդ ձեզ է, որչափ դուք առ նմա էք. քանզի ահա իբրև թողին զնա հարքն մեր յաւուրս Գեդէոնի, թող լիք եղէն և նոքա 'ի նմանէն, և ոչ գոյր խաղաղութի՝ որ մտանէր և ելանէր„։ Եւ հզօրացաւ կազդուրեցաւ, ժողովեաց առ իւր զօր յամենայն ազգաց։ Եւ իբրև տեսին՝ եթէ տէր ընդ նմա է, և մատուցին զպատարագս մեծամեծս, և երդուան. ուխտ և դաշինս կռեցին մատուցանել զաղօթս յամենայն սրտէ իւրեանց առ տէր, և հեռանալ 'ի կռոցն օտարոտեաց. և ամենայն որ ոչ մատուսցէ զաղօթս առաջի տեառն, մահու մեռցի։ Եւ անցոյց Ասա և զՄմաքա մայր իւր 'ի տիկնութենէ իւրմէ. վասն զի արար նա զտօն պատկերացն։

Յետ այսորիկ առաքեաց Ասա ոսկի Բերհադադ արքայի. զի խափանեսցէ զուխտ իւր՝ զոր եդեալ էր

նորա ընդ Բայաշու արքային Իսրայէլացւոց ։ Եւ եկն եհաս Անանի մարգարէ առ Ասա, և ասէ ցնա՝ եթէ “Վասն զի յուսացար դու 'ի Թագաւորն Արամայ և ոչ 'ի տէր, փախիցէ զօրն Արամայ 'ի քէն, և միաբանեցին ընդ արքային Հնդկաց՝ գալ հասանել միանգամայն 'ի վերայ քո. և իբրև խնդրեցեր և պաղատեցեր վասն այսր՝ զինչ արարեր, ապա մատնեցին 'ի ձեռս քո։ Եւ մեռաւ Ասա, և թաղեցաւ 'ի գահոյս լիախնկայս ։

Եւ թագաւորեաց Յովսափատ որդի նորուն զկնի նորա. և եղև տէր ընդ Յովսափատու ։ Եւ առաքեաց դպիրս օրինաց 'ի ձեռն քահանայիցն և ղևտացւոցն՝ ուսուցանել 'ի գեօղս և յագարակս որդւոցն Յուդայի ։ Եւ անկաւ երկիւղ տեառն 'ի վերայ թագաւորացն՝ որ շուրջ զնոքօք էին. և ոչ մտաբերեցին այլ մարտնչել ընդ Յովսափատու. և այլազգիքն և արաբացիքն հարկս հարկանէին նմա ։ Բայց եղև նորա զօր պատերազմի հազարք հազարաց, և հարիւր և վաթսուն հազար ։ Եւ ել նա ընդ Աքաբու յՌեմաթ Գաղաադ 'ի պատերազմ. և մեռաւ անդէն Աքաբ. և դարձաւ Յովսափատ 'ի տուն իւր խաղաղութեամբ, վասն զի օգնեաց նմա տէր ։ Եւ ել մարգարէն ընդ առաջ Յովսափատու և ասէ ցնա. “Զօգար դու յօգնականութիւն ամպարշտին՝ լինել նմա թիկունք օգնականութե. և նմա ոչ օգնեցեր, և զտէր բարկացուցեր 'ի վերայ քո. բայց հաւատամ ես, զի պատգամք բարուոք եղեն 'ի բերանոյ քումմէ„ ։ Արդեւք այն իցէ՝ զոր ասաց ցԱքաբ, եթէ “Հարցջիր 'ի մարգարէէ տեառն„. և զի “Չիք աստ մարգարէ տեառն, զի հարցցուք զպատգամս տեառն 'ի նմանէն„. և զի “Մի՛, ասէ, ասեր այսպէս, արքայ„, հանդերձ այլովքն՝ զոր ինչ ասացն. քանզի չև երթեալ էին 'ի պատերազմ, որպէս գրեալ է 'ի դպրութի թագաւորաց. “Արիւն արդար, ասէ, ոչ հեղի„. այս ինքն զարիւն ճշմարիտ մարգարէիցն իբրև զտունմն Աքաբու ոչ հեղի ։

Եւ եկին հասին մովաբացիքն և ամոնացիքն տալ պատերազմ և մարտնչել ընդ Յովսափատու ։ Եւ յա-

զօլթս եկաց Յովսափատ առաջի տեառն. և եդև հոգի տեառն 'ի վերայ Ազայելի ղևտացւոյ, և ասէ ցըտունն Յուդայի. "Մի երկնչիք և մի զանգիտէք 'ի բազում զօրաց այտի, այլ քաջասրտեցէք և իջէք 'ի վերայ նոցա, և տեսջիք զփրկութիւն զոր առնէ ձեզ տէր„: Եւ ել Յովսափատ զօրուն համդերձ, և օրհնէին և ասէին. "Բարձունք, ասէ, սկսան օրհնել, և լերինք սկսան ցնծալ„. այս ինքն որդիքն Յուդայի՝ որ գնային ընդ բարձունս՝ օրհնեն. և որ շրջին իբրև այծեմունք ընդ լերինս, վասն փութահութեան իւրեանց, ահա ցնծան վասն աւարին, որ համդերձեալն են բաժանել: Անդ զելանեալն Յուդայի 'ի միջոյ լերանց տեսանէին. և ահա մարմինք զօրացս այսոցիկ հարկանէին մեռանէին. և աւարեցին զամենայն ինչ որ էր նոցա, և դարձան օրհնութ՛ 'ի տուն տեառն: Եւ մատեաւ Յովսափատ առ Ոխոզիա ամպարիշտ՝ առնել նաւս, և երթալ 'ի Թարշիշ: Եւ մարգարէացաւ Եղիազար և ասէ ցՅովսափատ. "Հաղորդութ՛ քով ընդ Ախազու, զի միաբանեցար ընդ նմա, և աստանւ գեսցէ տէր զամենայն գործս քո„: Եւ զի յառաջնումն ոչ եպերեաց նմա վասն բարի պատգամացն՝ որ գտան 'ի նմա. և վասն սորին այսորիկ՝ զի առաջին եղև յայսմ վայրի, եպերեաց զնա. վասն զի յառաջնումն, որ թողաւ նմա, պարտ և պատշաճ էր նմա արգելուլ յերկրորդէ աստի: Բայց թագաւորեաց քսան և հինգ ամ, և արար զբարի իբրև զԱսա հայր իւր, և մեռաւ:

Եւ թագաւորեաց Յահովրամ որդի նորուն ըստ նմանէն: Արդ կոտորեաց Յահովրամ զվեց եղբարս իւր, և 'ի ծերոցն Իսրայէլի. և գնաց զճանապարհս Ախաբու, և ետ ըմպել զգինի ուխտաւորաց. և ած առ իւր 'ի պատգամացն Եղիայի մարգարէի: Այս առաքեցաւ առ նա յԵղիայէ՝ եթէ "Վասն զի ոչ գնացեր դու 'ի ճանապարհս Յովսափատու հօր քո, ահա հարկանէ զքեզ տէր և զժողովուրդ քո„: Եւ ելին արտաքս աղիք նորա, և մեռաւ: Եւ չոգաւ առանց ցանկութե՛, վասն զի ապականեցաւ շուք գեղոյ նորա 'ի բազմութենէ տանջանաց նորա. և թա-

ղեցաւ 'ի քաղաքի Դաւթի, բայց ոչ եթէ ըստ պա-
տուի թագաւորաց:

Եւ թագաւորեցաւ Ոխոզիա որդի նորուն ըստ նը-
մանեն մի ամ. և արար զչարիս առաջի տեառն: Եւ
սպան զնա Յահուլ. և Գոդողիա մայր նորա սպան զոր-
դիսն Ոխոզիայ: Եւ գողացաւ Յոհոշբա քոյրն Ոխո-
զիայի՝ որ եղեւն կին Յովադայ քահանայի՝ զորդին
Ոխոզիայի, և թաքոյց զվեց ամ: Եւ թագաւորեցաւ
Գոդողիա քոյրն Ախաբու 'ի վերայ երկրին: Ի յեւթ-
ներորդ ամին չոգաւ Յովադա առ զօրագլուխս և
իշխանս և հարիւրապետս, և արկ զնոսա յուխտ
տեառն: Ուխտեցին և դաշինս կռեցին. և եցոյց նո-
ցա զորդին արքայի: Եւ ած զնա Յովադա, և եդ
թագ 'ի գլուխ նորա: Եւ լուաւ Գոդողիա զձայնն և
զբարբառ փողոյն՝ զի խրախուսէր, և եկն՝ իբրև պա-
տառէին զզգեստ նորա վասն թոռինն իւրոյ՝ զի թա-
գաւորեցաւ, և սպան զնա ժողովուրդն: Եւ երդմնե-
ցոյց զնոսա Յովադա պաշտել զտէր. և խլեցին զբա-
գինսն, և զմեհեանսն Բահաղու կործանեցին: Նորո-
գեաց Յովադա զարժանս և զօրէնս պաշտաման
տեառն, որպէս յաւուրս Դաւթի. և պահանջեաց
նա զնպաստ 'ի ժողովրդենէ երկրին առ 'ի նորոգու-
թի տանն տեառն, և յաճախեցին բերել ուրախու-
թբ: Եւ մեռաւ Յովադա հարիւրամեան և երեսնա-
մեան, և թաղեցին զնա յօրէնս թագաւորաց:

Եւ դարձան որդիքն Յուդայի 'ի տեառնէ՝ և պաշ-
տեցին զկուռս. և առաքեցաւ առ նոսա 'ի ձեռն
մարգարէի դառնալ 'ի ճանապարհաց իւրեանց չա-
րաց, և ոչ կամեցան: Եւ եկն հոգի տեառն 'ի վե-
րայ Զաքարիայի որդւոյ Յովադայ քահանայի՝ և ա-
սէ, թէ "Այսպէս ասէ տէր. մի ծաղկեսջիք. այս
իմքն մի յաջողեսցի ձեզ. զի թողէք դուք զճանա-
պարհս իմ, և ես թողից զձեզ": Եւ քարկոծեցին
զնա քարիւք 'ի սրահի տեառն: Եւ մոռացաւ Յով-
յաշ զշնորհսն զոր արար ընդ նա Յովադա, և սպան
զնորա այնոքիկ ըստ նմանէն. զի իբրև սպանանէր
զնոսա, ասէին 'ի մահուանն իւրեանց. տեսցէ տէր և
խնդրեսցէ: Եկն եհաս 'ի վերայ նորա Զամէ արքայն

եղովմայեցւոց, և կոտորեաց զնախարարս նորա, և զկապուտս գերութեան նոցա ետ տանել արքային դամասկացւոյ։ Թողին դատաւորք զՅովյաշ, և անկաւ ի ցաւս անհնարինս, և սպանին զնա 'ի գահոյս իւր. և ոչ թաղեցաւ ըստ օրինի թագաւորաց 'ի գերեզմանս թագաւորաց։

Եւ թագաւորեաց Ամոծիա որդի նորա ընդ նմանէն։ Եւ արար Ամոծիա զբարի առաջի տեառն, բայց ոչ եթէ յամենայն սրտէ իւրմէ. և սպան զսպանողս հօր իւրոյ։ Եւ ընտրեաց 'ի Յուդայէ երեքհարիւր հազար, և վարձեաց յեփրեմեան գնդէ անտի հարիւր հազար ընդ հարիւր քանքար արծաթոյ՝ տալ մարտ պատերազմի ընդ եղովմայեցիս։ Եւ սրտմտեցաւ բարկութիւն տեառն 'ի վերայ նորա 'ի ձեռն մարգարէին, վասն զի կաթոգնեցաւ նա վարձել զօր առ 'ի թիկունս օգնականութեան իւրոյ. և դարձոյց անդրէն յիւրաքանչիւր տեղիս. և կորոյս նա զհարիւր քանքարն։ Եւ չու արար խաղաց գնաց և անց կոտորեաց նա զեղովմայեցիսն. և առ զառ և զապուռ աւարին յոյժ բազում։ Եւ յետ այսորիկ երկիր եպագ առաջի դիցն լեռնագեղիցն Գաբաղայ։ Եւ առաքեաց առ նա 'ի ձեռն մարգարէին, եթէ “Ընդէ՞ր՝ վասն ո՞յր պագեր երկիր դիցն հեթանոսաց, զի զպաշտօնեայսն իւրեանց ոչ կարացին ապրեցուցանել 'ի ձեռաց քոց ,,։ Արդ ամբարհաւաճեցաւ Ամոծիա 'ի վերայ Յովաշու որդւոյ Յահովայ Ախազեայ յահովեանց. և առաքեաց առ նա՝ զի տեսցեն զերեսս միմեանց։ Եւ եկն Յովաշ, և կալաւ զԱմոծիա և տարաւ յԵրուսաղէմ. և խրամատեաց 'ի քաղաքի անդ չորեքհարիւր կանգուն, և առ զամենայն որ ինչ գտաւ 'ի տան տեառն և 'ի տան արքայի, և դարձաւ 'ի Շամրին։ Եւ յետ ժամանակին իբրև անց՝ խոտորեցաւ Ամոծիա յերկիւղէ անտի տեառն, սպանին զնա 'ի Ղաքիշ [1]։

Եւ թագաւորեաց Ազարիա որդի նորուն ընդ նմանէն։ Եւ թագաւորեաց Ազարիա զյիսուն և

1 Յերկուս օրինակս ևս գրեալ էր Եղաքիշ։

երկուս ամս 'ի թագաւորութեան իւրում. և արար զչարի առաջի տեառն իբրև զԴաւիթ հայր իւր. վասն զի ուսուցանէր զնա Զաքարիա քահանայ պաշտել և մատուցանել զաղօթս առաջի տեառն։ Եւ ուղղեաց տէր զամենայն ճանապարհս նորա. և մարտեաւ ընդ այլազգիսն, և խրամատեաց զպարիսպս Գաթայ և Ազայի և զԴաշդոդայ. և հաս համբաւ նորա մինչև յեգիպտոս։ Եւ մեծացաւ նա ընչիւք և ստացուածովք, և հպարտացաւ մոռացաւ զտէր. և մուտ 'ի տաճար տեառն դնել զբուրվառ խնկոց։ Եւ ասէ ցնա Զաքարիա. "Ոչ է քո տեղիդ այդ, արքայ"։ Եւ իբրև խոժոռեցաւ ընդ քահանայսն, եղ բորոտութիւն 'ի սրբութէ անտի, և անկաւ ընդ մէջ աչաց թագաւորին, և նստաւ 'ի տան իւրում բորոտացեալ. և Յովաթամ նորուն որդի վարեաց զթագաւորութիւն նորա։ Եւ մեռաւ Ազարիա, և ոչ թաղեցաւ նա 'ի գերեզմանս թագաւորաց։

Եւ թագաւորեաց Յովաթամ որդի իւր ըստ նմանէն։ Ի վեշտասաներորդ ամի թագաւորութեան Յովաթամայ արար նա զչարի, որպէս և արար հայր նորա. բայց յայնմանէ՝ զի ոչ ժպրհեցաւ դնել զխունկս տաճարի տեառն. և եղև քաջանուն մեծութեամբ յորդիսն Ամովսայ, և մեռաւ։

Եւ թագաւորեաց Աքազ որդի իւր ըստ նմանէն։ Արդ թագաւորեաց Աքազ վեշտասան ամ, և արար զչարիս առաջի տեառն, և անցոյց զորդիսն իւր ընդ հուր։ Եւ մատնեցաւ 'ի ձեռս Արամայ և Փակէի, և կոտորեցին 'ի տանէ անտի Յուդայի հարիւր և քսան հազար 'ի միում աւուր. և գերեցին 'ի նոցանէն երկերիւր հազար. և զորդիս նոցուն ածին 'ի Շամրին։ Պատգամ տեառն եղև 'ի վերայ Ադոնայի, և դարձուցին անդրէն զգերին 'ի տեղի իւր յԵրուսաղէմ։ Եւ դարձեալ յետ այսորիկ բարկացոյց Աքազ զտէր. և կալաւ զդրունս ներքինս և զարտաքինս տաճարի տեառն, և բազմացոյց զսեղանս յանկիւնս Երուսաղեմի. և զրգռեցան ընդ նմա եդովմայեցիքն և այլազգիք, և գերեցին 'ի նմանէն գեօղս բազումս։ Եւ եկն եհաս 'ի վերայ նորա Թագ-

ղաթփաղասար արքայ Ասորւոց։ Եւ առ Ախազ զամենայն որ ինչ էր 'ի տան տեառն, և 'ի տուն առաջնոց թագաւորաց, և որ ինչ եգիտ 'ի տունս մեծատանց, և ետ ասորեստանւոյն, զի մի՛ նեղեսցէ զնա։ Եւ մեռաւ, և ոչ թաղեցին զնա 'ի գերեզմանին թագաւորաց։

## ԳԼՈՒԽ Գ

Եւ թագաւորեաց Եզեկիա որդի իւր ըստ նմանէն։ Թագաւորեաց Եզեկիա քսան և ինն ամ, և արար զբարի առաջի տեառն։ Բայց զդրունսն տաճարի տեառն անդէն յամենայնն իբրու թագաւորեցաւ. և ժողովեաց զղևտացիս՝ որ յերկիւղէ հօր նորա ցրուեալ էին, և հրաման ետ նոցա զի սրբեսցին ինքեանքն և սրբեսցեն զտաճար տեառն։ Եւ մուտ Եզեկիա ծերակոյտ ժողովրդեամբն հանդերձ, և մատուցին զպատարագ նոխազեան՝ սրբել արեամբ նորա զտաճարն և զքահանայսն և զամենայն ժողովուրդն։ Եւ կարգեցաւ կազմեցաւ պաշտօնն 'ի սրբութեան անդ, որպէս պատուիրեաց Դաւիթ. և օրհնէին նոքա յօրհնուծիսն Գադայ և Նաթանայ մարգարէիցն Դաւթի. այս ինքն մարգարէքն՝ որ յաւուրսն Դաւթին 'ի վերայ Դաւթին մարգարէանային, և յօրհնութիւնսն Դաւթի և Ասափայ. զի սա մարգարէ կոչեաց զնա։ Բազմացան յաճախեցան պատարագքն քան զքահանայսն, մինչ զի ղևտացիքն պատարագօք քահանայիցըն եղբարց իւրեանց օգնէին նոքա։

Եւ արար զտօն քաղարջակերացն յերկրորդ ամսեանն զեւթն օր, վասն զի չժամանեաց առնել վասն անսրբութեան քահանայիցն և ղևտացւոցն։ Բայց ազգն եփրեմեան և մանասեան և իսաքարեան և զաբուղոնեան, որ կերան զզատիկն առանց օրինաց՝ այս ինքն յառաջ քան չև էին սրբեալ, յաղօթս եկաց Եզեկիա 'ի վերայ նոցա՝ զի քաւեսցին յայսմանէ։ Եւ ասաց՝ եթէ սրբութիւն ոչ է սուրբ քան ըզմեզ, զի ինքն լաւութիւն իւրով քաւեսցէ. և մեք աղօթիւք ո՞չ քաւիցեմք։ "Եւ լուաւ, ասէ, ձայնի

Եզեկիայի, և քաւեաց զժողովուրդն»: Բայց ոչ եղեալ է իբրև զայս տօն 'ի Սողոմոնէ մինչև ցԵզեկիա: Եւ հրաման ետ վասն երախայրեացն քահանայիցն, և եբեր ժողովուրդն ուրախութեամբ, մինչև յաւելաւ 'ի քահանայից անտի՝ որ ընդ ամենայն տեղիս ցրուեալ էին, և տուաւ 'ի նմանէն աղքատաց:

Յետ այսորիկ եկն եհաս տակառապետն. ձեռն 'ի վեր կալաւ, 'ի բարձր ձայն ամբարհաւաճելով խօսել կալաւ ընդ ժողովրդեանն և ասէ, եթէ «Զինչ օգուտ արար Եզեկիա, զի անցոյց զմեհեանս և զբագինս. և ասաց թէ առաջի միոյ սեղանոյ պագջիք երկիր»: Արդ նայեաց և տես, որչափ են համբաւս այսորիկ. զի զոր ինչ արար նա յԵրուսաղէմ, յասորեստան լսելի եղև. արդեւք 'ի քաղաքաց անտի՝ որ շուրջ զնոքօք էին զոր գերեացն, գիտաց նա զայսմանէն: Բայց կոտորեցաւ բանակ նոցա 'ի ձեռն հրեշտակին, և ելին որդիքն Երուսաղէմի աւարեցին, և մտին անդրէն: Բայց բազում մեծութեամբ զոր ժողովեաց Եզեկիա 'ի բանակէն ասորեստանեաց՝ զնոցուն զասորեստանեացն զոր ինչ աւարեցին 'ի քաղաքացն զոր գերեցին և բերին անդրէն, առ 'ի նոցանէն Եզեկիա. քանզի այսպիսի մեծացաւ, զի շտեմարանս արար նա ոսկւոյն և արծաթոյն և ականցն պատուականաց: Բայց հպարտացաւ նա 'ի միտս իւր, և ժամանեաց նմա խոնարհութիւն հիւանդութեան: Բայց ոչ եթէ նա միայն հպարտացաւ, զի մանկունք ժողովրդեանն նորա իբրև զնա հիւանդացեալ էին հպարտութեամբ. այլ ոչ եկն 'ի վերայ նոցա բարկութիւն յաւուրս Եզեկիայի վասն Եզեկիայի: Եւ մեռաւ Եզեկիա:

Եւ թագաւորեցաւ Մանասէ որդի իւր ընդ նմանէն: Յիսուն և հինգ ամ թագաւորեաց Մանասէ, և արար զչարիս առաջի տեառն, և շինեաց զսեղանս կռոցն՝ զոր հայր նորա աւերեաց. և շինեաց մեհեանս ամենայն աստեղաց երկնից յերկոսին սրահսն տեառն, և անցոյց զորդին իւր ընդ հուր, և արար զկախարդս և հարց ցգէտս և ցքաղդէս, և ուղղեաց զպատկերն չորեքդիմեան 'ի տաճարին տեառն. և մոլորեցոյց Մանասէ զհրէաստան գործել զգործս հեթանոսաց: Եւ

ած տէր զիշխանսն ասորեստանի, և իջուցին զՄանա-սէ շղթայիւք 'ի Բաբելոն։ Արդ երկեաւ Մանասէ յերեսաց տեառն. և յաղօթս եկաց, և դարձոյց զնա յԵրուսաղէմ։ Եւ գիտաց Մանասէ եթէ տէր է ած. և առ անցոյց զկուռսն օտարոտիս՝ զորս եդեալ էր 'ի տաճարին տեառն, և զամենայն մեհեանսն հա-տակոտոր կոտորեաց և ընկէց արտաքս քան զքա-ղաքն։ Եւ փոխանակ զի շինեաց բագինս կռոցն, շի-նեաց սեղան տեառն. և զի մոլորեցոյց զժողովուրդն, կարդաց քարոզ 'ի ժողովրդեանն առնել զտօն տն. և զի մի՛ մատուցեն զպատարագս այլոց դիցն օտա-րոտեաց, բայց եթէ տեառն միայն։ Եւ հանգեաւ Մանասէ, և թաղեցին զնա ոչ ըստ թաղելոյ օրինի թագաւորաց։

Եւ թագաւորեցաւ Ամոն որդի իւր ըստ նմանէն։ Եւ արար Ամոն յերկուս ամս թագաւորութեանն իւրոյ զչարիս առաջի տեառն. զի ամենայն պատկե-րաց զոր արար հայր նորա՝ զոհէր նա. և ոչ երկեաւ Ամոն 'ի տեառնէ իբրև զՄանասէ։ Եւ մեռաւ Ա-մոն։

Եւ թագաւորեցաւ Յովսիա որդի իւր ըստ նմա-նէն։ Եւ արար Յովսիա բարի առաջի տեառն. և զե-րեսուն և զմի ամ թագաւորեաց նա. և 'ի մանկու-թենէ իւրմէ յաղօթս կայր նա առ ած Դաւթի հօր իւրոյ։ Եւ մինչ երկոտասանամեայ էր նա, սրբեաց զՀրէաստան, և խլեաց զմեհեանս և զբագինս և ըզ-կուռս. և վայրեաց զմոխիր նոցա 'ի վերայ գերեզմա-նաց նոցուն մարդոց՝ որ զոհէին. և զոսկերս քրմացն հան և այրեաց, զի սրբեսցէ զերկիրն 'ի նոցանէն։ Կարկատեաց դարձեալ զտաճարն տեառն, և յաւել զակամս պատուականս, և զարդարեաց յօրինեաց զսպաս պաշտաման նորա. արար նա կապ քանդա-կածոյս 'ի պէսպէս գունակ գործած ճարտարաց։

Կարդացին առաջի նորա զդպրութիւս օրինաց՝ որ գտաւ 'ի տուն տեառն, մինչ չև արհամարհեալ էր տաճարն յաչս նոցա. և պատառեաց զպատմուճանս իւր, և առաքեաց մատուցանել զաղօթս վասն իւր և վասն ժողովրդեանն առաջի տեառն, զի գուցէ

գայցեն համանիցեն անէծքն օրինաց 'ի վերայ ժողովրդեանն յաւուրս նորա ։ Եւ եկին առ Խոդէ կինն մարգարէ, որ նստէրն յԵրուսաղէմ յմասունմն ․ այս ինքն ուսուցանել զժողովուրդն ։ Եւ մարգարէացաւ յանուն տեառն' եթէ "Ասացէք ցայրքայն, զի վաղվաղակի լինելոց է ժողովրդեանդ' ամենայն որ գրեալ է 'ի դպրութեանն զոր ընթերցան առաջի քո ։ Եւ վասն զի դողաց սիրտ քո և պատառեցեր զպատմուճան քո և սգացեր վասն չարութեանդ զոր ինչ գալոց է 'ի վերայ աշխարհիս այսորիկ, ահա ժողովեմ զքեզ խաղաղութբ առ հարս քո, և մի տեսցես զչարն զոր ածելոցն եմ ։ Ընթերցան զդպրութիւն օրինացն և առաջի ժողովրդեանն ։ Ուխտ եդին և դաշինս կռեցին և երդմունս երդուան, զի պաշտեսցեն զտէր, և նմա երկիր պագցեն ։ Եւ ուղղեաց կարգեաց կազմեաց զպաշտօնն զտօնիցն և զքահանայիցն և զգովչացն, որպէս յաւուրս Դաւթի ։ Եւ արար զզատիկն, զի իբրև զնա ոչ էր եղեալ, բայց եթէ յաւուրս Սամուէլի մարգարէի ։

Յետ այսորիկ ել Փարաւոն կաղ մարտնչել ընդ Մաբովկ քաղաքի, որ նստի 'ի վերայ Արածանոյ ։ Եւ ել Յովսիա մարտնչել ընդ նմա ։ Եւ առաքեաց առ նա Փարաւոն' եթէ "Ոչ գամ ես 'ի վերայ քո ․ և կամ տէր ասաց ցքեզ ոչ սպանանել զիս, այլ երկեցուցանել' որպէս զի դարձայց ․ 'ի բաց լեր յայն' որ ընդ իս է, զի մի ապականեսցէ զքեզ,, ։ Արդ թէպէտ և դառնալն յանուանէն այ' որ ոչն էր ած' ոչ էր արժան նմա այլ և լսել զայն ․ "Զի ոչ եթէ 'ի վերայ քո գամ ես,,, պարտ էր նմա ։ Այլ ոչ ասեն գիտաց զնոսա' եթէ 'ի տեառնէ եղև ․ և ոչ զի մեռցի 'ի պատերազմի, այլ զի մի մեռցի ։ Արդ ասացաւ նմա եթէ ժողովեմ ես զքեզ յառաջ քան զչարն, զոր ինքն իսկ անձամբ անձինն ած 'ի վերայ անձին իւրոյ չար ․ զի եթէ հարցեալ էր նորա 'ի տեառնէ, ահա արգելոյր և զտեղի առնոյր, և ոչ ելանէր ։ Եւ եթէ մեռանէր նա, զմահ խաղաղութե որպէս խոստացաւ նմա' մեռանէր նա ․ և վասն զի ել նա իբրև ոչ հարց, պատահեցաւ նմա անփութութբն Աստուծոյ զոր ինչ

ոչ հատ 'ի վերայ նորա ստուգութիւն այ: Արդ եթէ Փարաւոն մոլորեալ ոչ էր առանց աստուածոյն իւրոյ, որպէս և ասայն, "Զի մի ապականեսցէ զքեզ ած որ ընդ իս է", Յովսիայ որչափ ևս առաւել պարտ և պատշաճ էր, որ զճշմարիտ ածն ունէր՝ իւ ոչ ելանէր 'ի մարտ պատերազմի առանց հրամանի նորա: Հար զնա Փարաւոն նետիւ, և տարան զնա յԵրուսաղէմ և մեռաւ. և թաղեցին զնա ըստ թաղելոյ օրինի թագաւորաց:

Եւ ասէ Երեմիա. "Արքե և կանայք, արդարք և ճըշմարիտք, յիւրաքանչիւր յողբս ձեր լացէք 'ի վերայ Յովսիայ". քանզի նա եղև պատճառ արդարութեան՝ այն որ զյիսուն և զեւթն ամ յաւուրս նորա յարրմնեցաւ: Եւ ահա, ասեն, գրեալ են այսոքիկ 'ի դըպրութին ողբոց, որպէս զի ոչ գոյր մարգարէութիւն: Խանամն մարգարէն՝ որ յաւուրս Մանասէին էր, այն որ 'ի նմա գրեալ են ամենայն գործք չարք Մանասէի: Եւ մեռաւ Յովսիա:

Եւ թագաւորեաց Յահովախազ որդի իւր ըստ նմանէն. բայց ոչ ինչ անագանեցաւ սա. զի յետ երից ամսոց եկն և տարաւ զնա արքայն եգիպտացւոց յԵգիպտոս: Թագաւորեաց Յովակիմ եղբայր իւր ընդ նորա: Եւ արար Յովակիմ 'ի տասն ամի անդ թագաւորութեան իւրոյ զչարիս առաջի տեառն: Յաւուրս նորա եկ Նաբուքոդոնոսոր, և կապեաց զնա և տարաւ 'ի Բաբելոն. տարաւ և զդանիէլեանս, և յանօթոցն սրբութեան առ նա ընդ իւր: Եւ թագաւորեցաւ Յովաքիմ որդի իւր ըստ նմանէն: Արար դարձեալ և սա զչարիս առաջի տեառն զհարիւր օր որչափ թագաւորեաց նա. և առաքեաց տարաւ զնա արքայն բաբելացւոց 'ի Բաբելոն:

Եւ թագաւորեցոյց զծեդեկիա հօրեղբայր իւր ըստ նմանէն: Արար և սա զմետասան ամ թագաւորութեան իւրոյ զչարիս առաջի տեառն: Եւ ապստամբեցաւ 'ի տեառնէ և յարքայէն բաբելացւոց, և յԵրեմիայէ մարգարէէ ոչ երկեաւ. և ժողովուրդն և ծերակոյտն և քահանայքն և ղևտացիքն պղծեցին զտունն սրբութեան, և գործեցին իբրև զգործս հեթա-

նոցա։ Եւ առաքեաց տէր առ նոսա 'ի ձեռն հրեշտակաց իւրոց, այս ինքն 'ի ձեռն մարգարէից իւրոց. վասն զի խնայեաց 'ի վերայ ժողովրդեանն իւրոյ. և վասն զի անարգեցին զբանս մարգարէիցն մինչև շարժեցին զսրտմտութի̄ բարկութե̄ Տեառն։ Եւ ած 'ի վերայ նոցա զբաբելացիս երիցս անգամ. և կոտորեաց զերիտասարդս նոցա 'ի տունն սրբութե̄՝ ուր մտին ապաւինել 'ի նա 'ի ժամ բարկութե̄ն։ Բայց յառաջ քան չև էր եկեալ բաբելացին պղծել զնա յարիւն դիականց նոցուն, նոքա իսկ ամենեքին չար գործովքն իւրեանց պղծեցին զնա։ Առին բաբելացիքն զամենայն անօթս սրբութե̄ն, և հրձիգ արարին ըզտաճարն Տեառն, և խլեցին զպարիսպս Երուսաղէմի, և իջուցին ընդ իւրեանս 'ի գերութի̄՝ որք մնացին սին 'ի սնոյ 'ի սրոյն սուսերի. և եղեն ծառայք բաբելացւոց, մինչ զի ետուն զթագաւորութիւն Պարսից, զի կատարեսցի բանն Երեմիայի՝ զոր ասաց. "Զի աւերեսցի և թափուր մնասցէ երկիրս 'ի նոցանէն եւթանասուն ամ"։

Որ ամ մի էր Կիւրոս արքայի, եղև կատարեցաւ արդեամբք իւթանասուն ամն այն՝ զոր կանխեաց և ասաց Երեմիա յառաջ քան զեւթանասուն ամն։ Եւ զարթոյց տէր զոգին Կիւրոս պարսկի. և գրեաց ընդ ամենայն իշխանութի̄ թագաւորութե̄ իւրոյ պատճէն հրովարտակաց, զի գրեալ էին այսպէս. "Այսպէս ասէ Կիւրոս, թէ տէր ա̄ծ երկնից ետ ինձ զամենայն թագաւորութիւնս երկրի"։ Եւ վասն զի ամենայն թագաւորաց գերեալ էր զնոսա, սա՝ որ իշխէր 'ի վերայ ամենայն թագաւորաց, և կարօղ էր նա՝ զի յամենայն թագաւորաց դարձ քարոզեսցէ նոցա։ Եւ այս օտար և անթլփատ, որ գիտաց զտէր ա̄ծ երկնից, 'ի ձեռն սորա դարձոյց զորդիսն թլփատեալս սիրելւոյ իւրոյ, որք երկիւղիւն երկնից զոհս համդերձ կանամբք և որդւովք առնէին։ "Եւ, նա, ասէ, ետ ինձ հրաման շինել նմա տուն յԵրուսաղէմ"։

Արդ նայեաց և տես, զի և զմարգարէութիւնն Եսայեայ փութացաւ ընթեռնուլ, վասն ելանելոյն այնոցիկ՝ որ յաւուրս Երեմիայի այպանելով այպա-

նեյին զմարգարէսն՝ որ զայս ամենայն քարոզէին 'ի վերայ նոցա ։ "Ո՞ դոյ 'ի ձեզ, ասէ, յամենայն ժողովրդենէ այտր, զի տէր ա̃ծ հաճի ընդ նմա, եկեսցէ ելցէ առ իս" ։ Ցայտ արար՝ եթէ որք արժանին են՝ ելանեն, և որք ոչն կամին ելանել՝ նոքա են որք ոչն են արժանի ։ Ցապաղեցուցանէ զնոսա՝ զի մի ելցեն, որք կալանն կապեցանն 'ի սովորութիւն տեղւոյն, և կամ 'ի հանգիստ նորա, և կամ 'ի հեթանոսութե անդ ։ Ինքն տէր ոչ կամեցաւ 'ի նոսա՝ զի ելցեն, զի մի յաւելցեն և պղծեսցեն զանուն ա̃յն իւրեանց, "Որպէս զի պղծեցին հարք նոցա զանուն իմ" ։

ԿԱՏԱՐԵՑԱՒ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԴՊՐՈՒԹԵԱՆ
ԻԲՐԱՄԵՆՈՒ
ՁԻ ՍԱ ԻՆՔՆ ՎԱՐՈՒՄՆ ԱՒՈՒՐՑ ԹԱԳԱՒՈՐԱՑ
ՀՐԷԱՍՏԱՆԻ

